# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԻՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

ՋՆԱՌՆ Հ. ՂՈՒԿԱՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԻՆՃԻՃԵԱՆ
Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ

ԸՍՏ ՀԻՆ ԵՒ ԸՍՏ ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ
ԱՆՈՒԱՆԵԱԼ ԺԱՄԱՆԱԿԱՑ

*Համեալ 'ի գրոց մերոց նախնեաց և այլոց։*

*Տպագրեալ յառաջնորդութեան ԳԵՐ-պատիւ Տն Ստեփաննոսի
Արքեպիսկոպոսի և Ընդհանրական Աբբայի։*



## ՄԻՆ ՀԱՅՔ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1822 ՌՄՀԱ

# ԲԱՆ ԱՌ ՎԱՐԺԱՆՈՂՍ

Զհայաստանեայց աշխարհի զհնադրութեամբ, որպէս արդարեւ մերում հայրենւոյ ազգի եւ աշխարհի՝ ընդարձակագոյն անցանել բանիւ քան զայլոց աշխարհաց՝ հարկ 'ի վերայ առեալ ըստ օրինի հայրենասիրաց, գեղեցիկ ինձ մոլութեամբ ձեռն 'ի գործ արկաք 'ի յաճախապատում բանից նախնեաց՝ զմերս միայն բան աշխարհապատում տեղագրութե հատընտիր ծաղկաքաղեալ, առ իւրաքանչիւր ստորագրութեամբ տեղեացն կարգել։ Զի այն ինձ ցանկալի հնախօսութիւն, որ իւրով հնախօսելովն՝ ընդ նմին եւ ցուցանիցէ զիւրոց առաջնորդապետ մատենագրաց զաղբիւրսն։

Բայց 'ի սկզբան անդ հարեւանցիկ ինձ ժողովածիւք 'ի սոյն յայս մեր տնօրինեալ, յերկուս անկաք տարապարտ աշխատութիւնս․ եւ այնպէս նախ առաջին 'ի մտի եդեալ որոշեալ, հանել հաւաքել ո՛չ որչափ բերիւր

կատարեալ հնագիր աշխարհագրի, (արտա-
քոյ մերոյ առաջարկութեան տալ զայն դա-
տեալ.) այլ որչափ ինչ կարէաք [illegible] ասել նոր
աշխարհագրի բովանդակար համառօտիւքն
զհնագրութեամբ տեղեաց թեւակոխելով,
յայնմանէ զյոլովագունիւք զանց արարաք ըղ-
նախնեաց ասացուածովք 'ի ժողովել, զի օ-
րեւորօքն միայն պատաղելով: Երկրորդ՝ դիւ-
րագունի կարծեալ գործ աշխատութեան,
բուռն հարաք զհինն խառն ընդ նորոյն ստո-
րագրել: Այլ յետ մտատանջ աշխատութե՛
'ի նոյն մտաբերելոյ, վայրապար ուսաք լեալ
անտեսութիւն գործոյ եւ անհնարին, զտե-
ղեաց նոյնութիւն նորոյն ընդ հնոյն յամե-
նայնի ամենայնիւ տեղեկանալ, ստուգել,
հեշտ եւ ընտել համաձայնութեամբ առըն-
թեր պաշտել. եւ առաւել անհնարին զհին
գաւառաց բաժանմունս, զոլորտս, եւ զսահ-
մանս, ընդ նոր գաւառաց համահատուած 'ի
մի անօրինել:

Այնուհետեւ ապա կրկին մեզ բերեալ աշ-
խատութիւն բանի, վաղվաղակի 'ի բաց 'ի
նորոյն անջատեցաք զպատմագրութիւն հին
հայաստանեայց. կրկին եւ աշխատութիւն
յանձին կալեալ, փոքու իմն ընդարձակու-

կատարեալ հնագիր աշխարհագրի, (արտա-
քոյ մերոյ առաջարկութեան որոց զայն գտա-
տեալ․) այլ որչափ ինչ [illegible] առնել նոր
աշխարհագրի բովանդակ [illegible] համառօտիւքն
զհնագրութեամբ տեղեաց թեւակոխելով,
յայնմանէ զյոլովագունիւք զանց արարաք ըղ-
նախնեաց ասացուածովք 'ի ժողովել, զի ա-
րւորօքն միայն պատաղելով։ Երկրորդ՝ դիւ-
րագոյնի կարծեալ գործ աշխատութեան,
բուռն հարաք զհինն խառն ընդ նորոյն սոր-
րագրել։ Այլ յետ մտատանջ աշխատութե՛
'ի նոյն մատբերելոյ, վայրապար ուսաք լեալ
անտեսութիւն գործոյ և անհնարին, զտե-
ղեաց նոյնութիւն նորոյն ընդ հնոյն յամե-
նայնի ամենայնիւ տեղեկանալ, ստուգել,
հեշտ և ընտել համաձայնութեամբ առըն-
թեր պաշտել․ Եւ առաւել անհնարին զհին
գաւառաց բաժանմունս, զոլորտս, և զսահ-
մանս, ընդ նոր գաւառաց համահատուած 'ի
մի անօրինել։

Այնուհետեւ ապա կրկին մեզ բերեալ աշ-
խատութիւն բանի, վաղվաղակի 'ի բաց 'ի
նորոյն անջատեցաք զպատմագրութիւն հին
հայաստանեայց․ կրկին և աշխատութիւն
յանձին կալեալ, փոքու իմն ընդարձակու-

թեան տեղի տուեալ, անդրէն զպիտանիս 'ի
մատենից նախնեաց հաւաքեսցուք ։ Այլ և
յայնժամ հաւաքածոյ անկատար ։ Քանզի
միշտ զհամառօտս ութեան բանի պատուել եւեթ
փութացեալ, [illegible] ընդ զբազում բանս դա-
տեաք հաւանական կամօք, զորս զկնի ուսաք
կարեւորս լեալ և պիտանիս 'ի յիմանալ ։
Որոք մարդոյ նախ քան տարաձայնութեան
այլևայլ մատենագրաց 'ի վերայ հասանել,
նախ քան զտարակուսականացն իմանալ բան
իւրաքանչիւր հանդիսից գրուածոյ, կարծո-
զականօքն վարեալ փաստիւք, բաւական դա-
տին զմիոյ եւեթ զվկայութիւն՝ զորս առաջի-
կայ գտանեն ։

Այն անկատարութիւն թերաբանելոյ՝ եւս
առաւել պատճառ ետ ընդ վայր զժամանակս
ծախելոյ ։ և այնպէս 'ի ստորագրութեան
բազմաց տեղեաց հարկեցուցիչ ածեալ եղև
մեզ գործ՝ ստէպ ստէպ անդրէն 'ի ձեռին
առնուլ զնախնեաց մատեանս, ճշդիւ հայել
'ի զանազան նոցին ձեռագիրս, առ 'ի գտա-
նել վկայութիւն նոր յորոշումն երկբայակա-
նացն՝ ընդ առաջ ելելոց զմիոյ միայն տեղւոյ,
զաւուրս բազումս հոգողօրէն պարապեալ
անձանձիր աստ և անդ զընթերցանութեամբք

մատենից ։ Ուր և ուղղեալ և բացատրեալ զբաղում անուանս նախնի Հեղինակաց Յունաց, Հռովմայեցւոց, նա և մատենագրաց Ասորւոց ։

Այս պատրաստումն ոգւոյ՝ այս տառապանք զբադատ՝ կրկին մեզ ուսոյց միտս ճշմարտութեան, գեղեցկապէս վարժիւքն՝ ողջախոհ խորհրդովք փորձ առեալ 'ի վերայ հասեալ, որպէս թէ նախ՝ 'ի ձեռնարկս բանասիրականս յայնժամ սկսցի ոք զգործն, յորժամ կատարեսցէ • երկրորդ՝ յիւրաքանչիւր հանդէս ուսմանց՝ մինչև է հանդիսացեալ գործ ընդարձակ, մի՛ կարծեսցի թերևս արձանագրել գործ համառօտ ։

Այսպէս ահա բացածանօթացեալ ելք մերոյ աշխատութեանն, և այսչափ ինչ ծանօթութիւն բանի տուեալ 'ի լսելիս ընթերցողացդ ստուգապէս յայտարարութեամբքն, առ'ի անըստգիւտ ընծայաբերել առաջի բանասիրաց յատենի դատողականին, ուր ուրեք գտցին պակասութիւնք և նուազութիւնք անտեսելոցն առ'ի մէնջ, բե՛ր ապա այսուհետև անսաղապէս գեղեցիկ իմն վստահութե՜ կառավար զմիտս կալեալ առ ներողականաւն հնասիրին՝ հանդիսասցուք 'ի ստորագրել

զՄեծ Հայս։ Յայլում տեղւոյ և ժամանա-
կի զբոլորից թողեալ զներածութիւն հին
հայաստանեայց՝ ըստ կարգի և ոճոյ նոր աշ-
խարհագրութեան, նաև զփոքր Հայս։ Յայ-
լում տեղւոյ թողեալ նաև զհին ստորագրու-
թիւն վեցեցունց աշխարհաց, որք անդ վաղ-
ուրեմն երբեմն եղեն ընդ տէրութեամբ մե-
րոյ աշխարհակալաց։ Ոչ կարելով համօրէն
զայժմուս յամբոկ գործոյն ժամանել։



ԲԱՑՑՈՒՔ ԶԹԱՆԳԱՐԱԿԱՆ ՎԱՃԱՌՍ ՀԱՆԹԻՑ

ՎԱՃԱՌԵՍՑՈՒՔ ԱՑ ԶԴԻՒՏՍ

ԱՇԽԱՏՈՒԹԵԱՆ ՄԵՐՈՑ

ԱՌՆՈՒԼ ԶՈՒՆԿՆ ԻԹԻՒՆ ԵՒ ՏԱԼ ԶՊԱՏԺՈՒՆ.

*Ագաթանգեղոս.*

# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԻՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ



## ՆԱՀԱՆԳ ԱՌԱՋԻՆ

# ԲԱՐՁՐ ՀԱՅՔ

ԲԱՅՍ անուն գրեալ է ոչ ուրեք 'ի գործ ածի 'ի գիրս մեր, յորմէ թուի լինել անուն հին նախ քան զշինութիւն քաղաքին Կարնոյ. իսկ յետ շինութեանն՝ քանզի եղեւ քաղաք երեւելի ընդ բոլոր գաւառն, նաեւ ընդ բոլոր Հայս, Կարին անուամբ կոչի ոչ միայն փոքր գաւառ Բարձր Հայոց, այլ նաեւ նահանգն՝ Բարձր Հայք՝ գէթ ըստ մեծի մասին. Նմին իրի և Խորենացին յետ դնելոյ զանուանս Բարձր Հայոց՝ 'ի բացատրութիւն յաւել. * Այսինքն (կամ ըստ ձեռագրին) որ է Կողմ Կարնոյ ||: Եւ Յովհաննէս կաթողիկոս կոչէ Աշխարհ Կարնոյ:

Դիրք սորա բարձր՝ յորմէ և ընկալաւ զիւր անուն. * Ըստ անուանդ (ասէ Խորենացին) բարձր է քան զամենայն երկիր (1). քանզի ընդ չորս կողմանս արձակէ գետս ||: Լաստիվերտցին ('ի պատմութեան իւրում գլ. ժա.) ըստ գրոց ընդարձակ դաշտին Կարնոյ՝ յարեւմտեան կողմն նորա դնէ զԽաղտեաց գաւառ, 'ի հիւսիսակողմն՝ զՍպեր, զամուրսն Տայոց և զԱրշարունեաց, իսկ 'ի հարաւա-

(1) Արդարեւ քան զամենայն Հայաստան բարձր է, թէ նաեւ քան զամենայն երկիր, բնութենէ և երկրաչափից թողցուք 'ի խնդրել:

կողմն՝ զտարօն, զգաւառն Հաշտենից, և զմնտառուն խորձենոյ։

Ունի լերինս երիս, կամ չորս՝ ըստ այլ ձեռագրաց խորենացւոյն՝ զորոց տես 'ի Նոր Հայաստան։ Այլ [illegible]ունս երից երևելի գետոց, որք են եփրատ, երասխ, և ճ[illegible]ոխ՝ զորս արձակէ ընդ երիս կողմունս. իսկ ընդ չորրորդ կողմն՝ զոր նշանակէ խորենացին, ոչ արձակէ գետ մեծ, այլ մանունս բազումս, որք են վտակք մեծամեծացն, և խառնին 'ի նոսա։

Ըստ առատութեան ջուրց՝ նոյնչափ յուռթի է այս գաւառ և բազմարդիւն, զորմէ խորենացին յաշխարհագրութեան իւրում սակաւուք անցանէ ասելով։ Ունի * Երէս բազումս, և հաւս պիտանիս, և ջերմուկս (յորոց վերայ անատոլիս զօրավար թէոդոսի կայսեր շինեաց յարկս վիմատաշ քարանց), և աղ, և զամենայն պարարտութի ||։ Բայց 'ի պատմութե իւրում գ. 59. կոչէ զկարին գաւառ մի Երփանդակող, Տարաջնոր, և Բներրի։ Այլ ձոխագոյն գրէ ասելով թէ որչափ է անբաւութի ձկանց յակունս եփրատայ, և հաւուց ձարակաւորաց՝ զի 'ի ձուոց նոցա միայն կերակրեալ լինէին բնակիչք երկրին կարնոյ։ * Դաշտքն ունին զբազմութիւն խոտոց, և զքաջաբերութի սերմանաւոր պտղոց. և լերինքն լի են երէօք կճղակաբաշխիւք և որոճայնովք. նաև զանասուն պաձարս բազմացուցանեն մեծահասակս քաջամարմինս և յոյժ ցուցանեն համակեալս 'ի գիրութիւն ||։

Այժմ անկանի Բարձր հայք 'ի նահանգին էրզրումոյ. որոյ գաւառք ըստ խորենացւոյն են ինն։

| | |
|---|---|
| ա. Դարանաղի. | ե. Մանանաղի. |
| բ. Արիւծ (1). | զ. Դերջան. |
| գ. Մնձուր (2). | է. Սպեր. |
| դ. Եկեղեաց. կամ Եկեղեց. | ը. Շաղգոմք. |
| | թ. Կարին. |

(1) Յերկուս ձեռագիրս գրի Աղիւծ։

(2) Յերկուս ձեռագիրս գրի Մզուր։

## ԴԱՐԱՆԱՂԻ (1), այժմ ԿԱՄԱԽ.

Սահմանակից է եկեղեաց գաւառի. զորոյ զծիրս և զպատմութիւն անուանակոչութեն ըստ այսմ դնէ Երզնկացին 'ի ճառն լուսաւորչին յասելն. *Վերամբք ծաղկաւէտ. ձորովք ջրաբուղխ, եղեմաբուղխ աղբերն եփրատայ յորդառատ գետոյն ընդոստեան ... այլ և 'ի ծործորս քո լերանց 'ի ներքոյ երկրի աղբիւրս աղի դարմանացեալ ունիս, և 'ի խորութէն 'ի վեր եկեալ 'ի ջերմութէ արեգականն՝ զխառնեալ ջուրսն առանց աղի ծծէ հրոյն զօրութի. և յատակեալ պարզի աղն համեմիչ անուշահոտ. որով և Գրիգորի աղէ կոչիս յայսմ ներգործութէ||:

Յաւելու գրել անդէն՝ թէ հրաշալի իմն պատմի վասն գաւառիս, երբեմն զի յամառնային եղանակի 'ի տօթաժամու յորժամ հալին ձիւնքն սառուցեալք՝ կաթուածք ջրոյն յանձաւս սորա դիզեալ պաղին, զոր յառաջին ժամանակս 'ի հեռաւոր տեղիս (ասէ) տանէին 'ի պէտս թագաւորաց ասկս առողջարար զօրութեն. և ընդ հակառակն՝ յորժամ 'ի ձմերանի պաղին այլ ջուրք, սա յայնժամ ջերմացեալ թուլանայ:

Նախնի բնակիչք սորա կարի իմն մոլեալ էին 'ի դիւթութիւն մոլորութէ հեթանոսաց. իսկ զգիտութի ճըշմարտութէ ընկալան մեծամեծ նշանօք և անմիջական քարոզութբ նորին գրիգորի՝ որ ըստ գրելոյ ագաթանգեղոսի 'ի թուղթ յծն. *Երթեալ հասանէր 'ի Դարանաղեաց գաւառն ... ձեռնարկեալ զգաւառաւն հանդերձ միամիտ սաստութբ թագաւորին, գերել զամենեսեան 'ի հայրենեացն աւանդելոյ 'ի սատանայական դիւապաշտ սպասաւորութէն 'ի հնազանդութի ծառայութեան քրի մատուցանէր ... որ և յայտնի իսկ բնակչաց գաւառին՝ նշանք մեծամեծք երևեալք՝ կերպակերպ նմանութիւք

(1) 'ի յունականն ագաթանգեղոսի կոչի տղաւտղանօք Տարանաղիք: Նոյն համարիմ և զՏարանաղիս յիշատակեալ 'ի պտղոմէոյ Է. 13. 'ի կարգս քաղաքաց մեծին հայոց առ եփրատաւ. զի թէպէտ տառաձանք նշանակեալք 'ի նմանէ ոչ համաձայնին գրից դարանաղեաց, բայց որպէս քննեալ է մեր՝ պտղոմէոս բազում ուրեք առաւել սխալի 'ի նշանակել զատեանսն և զգիրսն, քան թէ յանուանսն: Տես սորին 'ի ստորագրութէ անուոյ 'ի վերլուծութիւ. և զԱնալիպըս:

դիւացն փախստական լինէին անկանել 'ի կողմանս խաղտեաց ||։

Մինի գլեառն Սեպուհ. կոչեցեալ (1) վասն անհնարին սեպացեալ քարաժայռ խոժոռութեց ։ Իսկ երզնկացին 'ի շարականսն 'ի Սեպհական բառէս բերել երևի զստուգաբանութիւն՝ յասելն. * Օ խորհուրդ Սեպուհոյ Սեպհական փառաց հոգւոյն սրբոյ մարգարէին ծանուցեալ ||. որ է քերթողական իմն յարմարութիւն ։

Կոչեցաւ նաև Մանեայ այրք. սակս 'ի յայրս ինչ քարանց այսր լերին միայնանալոյ սրբուհւոյն Մանեայ, որպէս դնէ Խորենացին Գ. 88. * Բնակեցաւ 'ի լերինս յայսմիկ. յայրս ինչ քարանձաւաց. վասն որոյ կոչեցաւ անուն լերինն Մանեայ այրք ||։ Իսկ յայսմաւուրս 'ի Հոկտեմբերի Ե. կոչի Դեսան դարանաղեաց։ Ըստ որում և եպիսկոպոսունքն Տէր Ռստէս և Տէր Սարգիս 'ի ժա[illegible] Գ. գրիգորի կաթողիկոսի՝ կոչին Նախկապսաք [illegible] նաղեայ լերին որդի գրիգորի (2).

Օ գաւառ լերինս որոշէ երզնկացին. * 'Ի միջոցս սահմանի երկուց գաւառացն եկեղեաց և դարանաղեաց ||։ Քանզի գոլով լեառն 'ի վերայ փոքրիկ լերանց՝ յերկուս գաւառս են տարածեր նիստ նորա, նմին իրի նոյն երզնկացին վասն Մանեայ գրէ. * Ընդ բազում լերամբք և ձորօք անցեալ՝ 'ի քեզ ('ի սեպուհդ) բարձրանայր ||։ Այլ քանզի 'ի դարանաղեաց գաւառի դնէն Խորենացին Գ. 88. և աստիկ Գ. 5. որպէս և նախանշանակեալ բան յիշատակարանին զեպիսկոպոսաց տեղւոյս, յայտ է թէ ընիկ լեառն անկանէր յայսմ գաւառի ։

Ուխտատեղիք յայսմ լերին 'ի սկզբանէ անտի են նախ՝ Լուսաւորչին Գրիգորի կարգացեալ. վասն զի ըստ երզնկացւոյն (3) օրհնութեամբ սրբոյն գրիգորի ստացաւ աղտաղտուկ ջուր սորա զբարեհամութիւն ։ * Պատուեցաւ (ասէ նոյն երզնկացին և 'ի շարականսն) լեառն Սեպուհոյ 'ի տեղ սանկրայ և աշերմանի, յորմէ բղխեաց աղբիւրն լուսոյ

(1) Չէ յայտ նախկին անուն այսր լերին. քանզի Մանեայ այրք կոչեցաւ զկնի բնակելոյ 'ի նմա սրբուհւոյն Մանեայ՝ որպէս ասացաք. իսկ անունս Սեպուհ ոչ յիշատակի առ նախնի մատենագիրս առ Խորենացւոյն, առ յովհաննու կաթողիկոսի, և առ ասողկայ, այլ առ յետագայս՝ առ խոսրովու, և առ երզնկացւոյն 'ի ճառն և 'ի շարականսն, և այլն ։

(2) 'Ի յիշատակարանս ինչ գրոց գրելոյ 'ի թուին հայոց ոխթ ։

(3) 'Ի ներբողական ճառն որդ լուսաւորչին ։

ջուրս Նորբէհամս ... որով յնծայ երկիրս 'ի բերս աւմբ-տեաց ։ Յաղբերց ասորի էարբ երբեմն սբ Հայր մեր՝ որպէս աւանդէ յովհաննէս կաթողիկոս, յասելն. * Զոգայ 'ի Նաւփհամ աղբիւրին ... որ և երասսայ վիմօք պարփակեալ շուրջանակի և դրամբք պատուեալ, և յուրոյ տեղւոյ մատուցեալն խոկ էր յարբեցուցն իւր՝ սբ և անբիծ ձեռքն գրիգորի ։

Երկրորդն է Դուրդն, ուր թաղեցաւ 'ի հովուաց սբ հայրն, զորմէ նոյն յովհաննէս կաթողիկոս. * Նա և (ասէ) հող օրհնութե և 'ի փլուզեալ Դարակէն, յորում պատուական գանձն հօրն 'ի հովուաց էր ծածկեալ. յորոյ վերայ շինեալ էր եկեղեցի նախ քան զայս խմով հրամանաւ 'ի մահարձանաց ինչ կրով ձուլածոյ ։

Իսկ առ ստորոտով լերին առ ժամանակօք յովհաննու կաթողիկոսի 'ի Թ. դարուն՝ էին բազմութի խստակրօն ճգնաւորաց աստ և անդ 'ի քարանձաւս և 'ի փապարս, զորոց զվարս ստորագրէ անդէն ասկաւուք. յորս զմենարանն ուր ընդ ժամանակս ինչ բնակեցաւ յովհաննէս կաթողիկոս, Կլասնոյ վանք կոչէ ասողիկ, յայտ է թէ վասն յովհաննու կաթողիկոսի՝ զոր 'ի կառնոյ դնեն ոմանք. և կի՛ թերևս յանուն գառնուկ ճգնաւորին ։

Երզնկացին գոլով 'ի սահմանակից գաւառէն՝ զզօրութի իւրումն ճարտասանութե յորդէ 'ի գովել զսեպուհ (1), և մի 'ի գովեստից զայս ինչ յառաջ բերէ յասելն վասն լուսաւորչին. * Ոչ էին արքայական զսպանմանն գործի՝ կենաց արքային յօրինէր 'ի կենաց գործիս. և կայ այժմ 'ի քեզ ով բարեբախտ և ամենագով Սեպուհ ։ Իսկ այսմ դնէ և 'ի Ներինք երգան շարականոցին, զոր Նոր մեկնեալ վարդանոյ աշխարհագրի՝ ասէ. 'Ի լեառն սեպուհ կայ հաւհալունի թուրն տրդատայ՝ զոր ետ նմա կոստանդիանոս թագաւորն. քանզի յորժամ տրդատ գընաց 'ի լեառն սեպուհ 'ի գտանել զսբն գրիգոր, բազում բանս մարգարէականս ասացեալ առ նա սբյ լուսաւորչին՝ էառ զսուրն զայն, և օծեալ որպէս զխաչ եդ 'ի յօդն բանիւն սբյ. և ասաց թէ յեղանել արխական ազգին՝ յայնժամ երևեսցի նշանս այս. զայն նշան 'ի գլուխ անդ լերին տեսեալ զգալի աչօք յովհաննու պլուզ վարդապետին (որ է նա ինքն Երզնկացին), ասաց զլուսաւորչի

(1) 'Ի նմին ճառի՝ զոր և ասաց սբյ լուսաւորչին, առաջի բազում 'ի սմին Սեպուհ լերին, 'ի տօնի ժողովրդեան ։

Անձինքն, և զի երինք ամենայն։ Յայս վայր վարդան,
զորմէ չունիմք ինչ ծանօթութի առ այլ մատենագիրս։

Թորդան։ (1) Ագաթանգեղոս և բուզանդ Գ. 2. դնեն
յայսմ գաւառի, զոր յաւուրս միջին Տիգրանայ խորենա-
ցին Բ. 13. կոչէ Առան (2). իսկ յաւուրս լուսաւորչին
նոյն խորենացին Գ. 11. և այլք կոչեն Գեօղ։

Ընդ էր 'ի հնումն պատկեր բարշամինայ կռոցն աստ-
ւոց 'ի փղոսկրէ և 'ի բիւրեղէ կազմեալ արծաթով, զոր
միջինն Տիգրան փոխադրեաց 'ի միջագետաց (3)։ Իսկ 'ի
ժամանակս քրիստոնէութե ս. առհասարակ գեօղն կար-
գեցաւ 'ի կալուած եկեղեցւոյ։ *Որթեալ հասանէր (ասէ
ագաթանգեղոս 'ի Թուղթ յծա.,) 'ի դարանաղեաց գա-
ւառն, զի և անդ զանուանելոց սուտ աստուածոց զբա-
գինսն կործանեսցեն՝ որ էր 'ի գեօղն Թորդան, մե-
հեանն անուանեալ Սպիտակափառ դիցն բարշամինայ,
նախ զնա կործանէին ... և զգեօղն ամենայն զաստա-
կերտօքն և զեռանովքն իւրովք հանդերձ՝ յանուն եկե-
ղեցւոյ նուիրեալ, և զամենափրկիչ նշանին օրինակ և
անդ կանգնէին ‖։

Այս գեօղ պանծալի գտաւ՝ լինելով տեղի գերեզմանաց
ս̃բյն գրիգորի։ *Չոգայ (ասէ յովհաննէս կաթողիկոս) 'ի
գեղն Թորդան 'ի տեղի գերեզմանաց պարտեզկանն ս̃բյն
գրիգորի ... և անդ ... հատի նշխար 'ի ծառոյ անտի
հացւոյ՝ զոր ս̃բյ լուսաւորչին էր տնկեալ իւրովք ձե-
ռօքն ‖։

Արժանի գտաւ լինել ընդունարան նշխարաց ս̃բյ վր-
Թանիսի, և ս̃բյ յուսկանն՝ որք յայս գեղ Թաղեցան։
Յետ ոչ սակաւ ամաց անդ Թաղեցաւ և մարմին ս̃բյ լու-
սաւորչին փոխադրեալ 'ի լեռնէն սեպուհոյ 'ի ձեռն գառ-
նուկ ճգնաւորին՝ զոր յովհաննէս կաթուղիկոս դնէ Թա-
ղեալ *Յիւր իսկ 'ի գերեզմանաց պարտիզկանն ‖։ Իսկ
վարդան՝ 'ի ներքոյ հիման եկեղեցւոյ՝ զոր իւր իսկ էր
շինեալ. ըստ որում այնպէս պատուէր ընկալեալ էր
գառնուկ 'ի ս̃բյն (4)։ Այժմ ևս կոչի այս գիւղ Թոր-

(1) Առ կիրակոսի յերկուս օրի-
նակս ևս գրի Թորդան։

(2) Յերկուս ձեռագիրս դնի։
*Հրամայէ տանել կանգնել յԱ-
նին (կամ յԱնի՝ որպէս դնի
յայլում ձեռագրի) Թորդան ‖։
Բայց 'ի տպագրեալն և 'ի միում
ձեռագրի դնի՝ յԱռանին Թորդան։

(3) Տես 'ի խորենացին Բ. 13.
և ա. 13։

(4) 'Ի Թորդանն դնեն Թաղեալ
սաղիկ և վարդան նաև զս̃բն ա-
րիստակէս՝ որ է ընդդէմ առաջին
պատմագրաց։ Այլ և այժմեան
դամբարան ս̃բյն տրդատայ որ կայ
մինչև ցայսօր. և բանք բուզան-

քան (1), Թէպէտ և յաշխարհագրական բառարանին (2) գրի՝ Թէ Թորդան Եկեղեաց գաւառին է :

Անի : Անկանի յայսմ գաւառի : * Բայց միայն (տես բուզանդ . դ . 24) . մատնեցաւ 'ի ձեռս նոցա ամուր բերդն Անի 'ի դարանաղեաց գաւառին անդ ||: Յայտ է նաև 'ի բանից ագաթանգեղոսի (յծ . և յծա .) որ դնէ Թէ սրն գրիգոր նախ 'ի դարանաղեաց գաւառին շրջեցաւ 'ի Թորդան և յԱնի, և ապա եկանց 'ի սահմանակից գաւառն եկեղեաց : Եւ ևս՝ զի սա նոյն է ընդ կամախայ. իսկ զԿամախ վարդան աշխարհագիր դնէ յերկրին դարանաղեաց : Վասն որոյ 'ի բանին անդ բուզանդայ դ . 11 . * Եւ տարան (զմարմին Ե . խոսրովու արքայի) առ իւր նախնիսն յԱնի յեկեղեաց գաւառն դարանաղեաց||, աւելորդ դնի բառդ Եկեղեաց :

Գոլով բերդ հզօր, խորենացին 'ի յիշելն 'ի վեց տեղիս ևս կոչէ Անւոյ, կամ Ամրոյն Անի . որպէս և ագաթանգեղոս, Անւոյ բերդին Անի (3) : Այլ բաց 'ի բերդէն՝ ունէր և աւան ըստ նորին ագաթանգեղոսի :

Եւ ուրեք գտանեմք 'ի գիրս գշխոց այսր անուանի բերդիս (4). այլ զառաջին յիշատակութի սորա գտանեմք առ խորենացւոյն՝ ուր յաւուրս ա արտաշէսի՝ ասէ պահեալ լինելին գանձքն արքունի . և աստ էին գերեզմանք թագաւորացն արշակունեաց . * Հասանէր (տես ագաթանգեղոս 'ի թուղթ յԺա) յամուր տեղին յԱնի 'ի թագաւորանիստ կայանսն հանգստանոցաց գերեզմանաց թագաւորացն հայոց||: Թուի թէ աստ պահեալ լինելին և մեհենական պատմութիւնք, զորմէ տեսցես առ խորե-

դայ և յովհաննու կաթուղիկոսի յայտ առնեն Թէ առ ժամանակ մի աստ փոխադրեցաւ մարմին սրյն տրդատայ, կամ գէԹ մասն ինչ յոսկերաց նորա, Թէ և այլք 'ի սկզբան անդ ցուցանեն Թաղեալ յամուրն անի :

(1) Տես 'ի նոր հայաստան . տպ . Թղթ . 104 :

(2) Տպագրեալ 'ի կոստանդնուպօլիս 'ի ՌՃՀԵ :

(3) Յայսմանէ համառօտողն պատմութե քաղաքին անւոյ՝ զայս գործածութի սեփհականէ սմա յորոշումն միւս անւոյ . * Յանի՝ քաղաքի անունն է, և ամուրն Յանի՝ ներքին բերդն է||:

(4) Նոյն համառօտողն պատմութե անւոյ՝ ստայի գրէ նոր նորոգութի բերդիս . * Այսպէս պարտ է գիտել (տես) վասն Յանւոյ . զի զմիջի բերդն յառաջն ունէին հայոց իշխանքն , բայց ոչ էր ամուր, իսկ յաւուրս խոսրովու Թագաւորին հայոց՝ ստա նախարարն յոյժ ամրութեամբ և գեղեցիկ բրգօք պատեալ ամրացոյց զնա , իւրն սեպհականեալ զտեղին||: Այլ զայս ոչ կարեմք ստուգել սոսկ բանիւ սորա՝ որ է վերջին ժամանակի մատենագիր, անկարգ 'ի յարմարութի պատմութե և ժամանակագրութե :

նացւոյն Բ. 63 ։ Ս՟ն գրիգոր 'ի ծառայութ՟ն եկեղեցւոյ նուիրեաց զԱնի, կործանեալ զոլոմպիական պատկերն դիոսի կամ արամազդայ, զոր Ա. արտաշէս առեալ էր յելլադայ ։

Շապուհ պարսից արքայ եհառ զայս բերդ 'ի ձեռն սպարապետին իւրոյ՝ ձեռնտու լինելով նախարարացն Հայոց. և գերեաց անտի զամենայն գանձս արքունի, այլև զոսկերս Թագաւորաց բաց 'ի յոսկերաց սանատրըկոյ՝ որպէս պատմէ բուզանդ Դ. 24. * Ելանէին 'ի վեր (յԱնի) և կործանէին զպարիսպ նորա, և իջուցանէին անթիւ գանձս 'ի բերդէն, և բանային զգերեզմանս զառաջին Թագաւորացն Հայոց զարանց քաջաց զարշակունւոյ, և խաղացուցին 'ի գերութի զոսկերս Թագաւորացն Հայոց, բայց միայն զգերեզման շիրմին սանատրկոյ արքային ոչ կարացին բանալ, վասն անհեթեթ սկայագործ հաստաշինած ճարտարագործ արարածոցն (1)‖ ։ Նոյն և յետ այսր առման տակաւին անդ պահեալ լինէին գանձքըն արշակայ՝ որպէս է տեսանել առ խորենացւոյն Գ. 45 ։ (2)

Նոյն Անի առ մատենագիրս մեր ԺԲ. և ԺԳ. դարուն առ սամուէլի և առ վարդանայ 'ի յետագայս կոչի Կամախ, նմին իրի ուր խորենացին Գ. 10. գրէ սակս խոսրովու որդւոյ տրդատայ՝ թէ * Դարձեալ զնա թաղեցին յԱնի առ հօրն‖, վարդան պատմիչ գրէ վասն նորա. * Կատարեալ խոսրովու զկեանս՝ թաղի առ հօր իւրում 'ի Կամախ‖ ։ Եւ զոր խորենացին Բ. 74. վասն օտայի գրէ՝ թէ ամրացաւ յամրոցն Անի, զնոյն վարդան աշխարհագիր վասն կամախայ գրէ. * 'Ի կամախ է անառիկ բերդն՝ ուր պահեաց օտա դաստիարակն‖, և այլն ։ Եւ յանուն սորա առհասարակ դարանաղեաց գաւառն կոչեցաւ Կամախ ըստ նորին աշխարհագրի ։

Իսկ առ յոյնս գտանեմք զյիշատակութի անուանս 'ի Է. դարուն. քանզի գէորգ եպիսկոպոս սորա գտաւ 'ի Զ. ընդհանուր ժողովն՝ գումարեալ 'ի կոստանդնուպօլիս 'ի 680, և 681. որ այսպէս ստորագրեաց զիւր անուն. * Գէորգ եպիսկոպոս դարանաղեաց կամ Կամախու‖ (3)։

(1) Տես և 'ի խորենացին Գ. 27 ։

(2) Թէպէտ յերիս ձեռագիրս խորենացւոյն Բ. 45. գնի Յամբոյէն Հանաց ։

(3) Յունարէն Տարանաղեաց, կամ Գամախոն, յորում համօրէն գաւառն դարանաղեաց կոչի Կամախ ։

Իսկ այլուր 'ի նմին ժողովի. * Գէորգ ողորմութեամբ այ եպիսկոպոս վիճակին դարանաղեաց գաւառին մեծին Հայոց ||: Սոյն այս Գէորգ ստորագրեաց և գրուլեան ժողովոյն՝ որ եղև 'ի 692. ուր կոչէ զինքն Եպիսկոպոս * Կամախու գաւառին մեծին Հայոց ||: Առանց յիշելոյ զանուանն Դարանաղեաց (1).

Յիշատակի և առ պերփերուժէնի. գիրք կառավարու- թեն գլ. ծ. թղթ. 135: * Կամախեան այրուձին էր ծայր զօրմնից, որպէս գեղջգինու այրուձին՝ քալտեաց (այս- ինքն խաղտեաց.) իսկ լեռն իմաստուն (կայսր) . . . զայ- րուձին զամախու և գեղջգինոյ յայնմ ժամանակի ընդ գաւառաւ (Թեմայիւ) միջագետաց կացոյց ||: Սոյն այս լեռն զԿամախ կարգեաց 'ի խ̃ կարգի մետրապօլտաց, կոչելով * Աթոռ խ̃երորդ Կամախուն Հայոց ||: Այլ ապա էանց 'ի ծ̃թ կարգի, որպէս է տեսանել 'ի ծանօթու- թիւն եպիսկոպոսարանաց 'ի ժ̃ը. հատ. բուզանդարանին:

Արդեօք այս անուն առեալ եղև յանուանէ մերձա- կայ հին գաւառին տարուց, որ յունարէն կոչի Դամմա- ղինէ (2). կամ թէ նոյն գաւառ ձգէր երբեմն մինչև ցաստ, չունիմք ինչ որոշել. այլ վասն զոմմաղինի գաւառին տես Չորրորդ Հայս: Նաև զԿամախ ըստ սամուէլի 'ի 814. Ե. լեռն կայսր հայկազուն. զայլ առումն Կամխոյ բեր- դին 'ի 1520. յիշէ շարունակօղն սամուէլի:

Չէ պարտ շփոթել զայս Անի ընդ միւսոյն՝ որ է 'ի շի- րակ գաւառ այրարատոյ, որոյ հին և այժմեան գիրք՝ ևս առաւել ցուցանեն զզանազանութիւն. զի այս Անի՝ որ մինչև ցայժմ կոչի Կամախ՝ է առ եփրատաւ, իսկ միւ- սոյն՝ աւերակք երևին առ ախուրեան փտակաւ երաս- խայ (3):

(1) Լատին թարգմանութիւնն յաւելու և զանուանս Անաւիգլայի. իբր թէ Դարանաղի է նոյն որ առ պտղոմեայ կոչի Անաւիգլա. այլ պտղոմէոս զԱնաւիգլա դնէ 'ի փոքր Հայս:

(2) Դամմաղինի անուն՝ նոյն թուի ընդ մեր երկուց անուանցս Կամախ Անի:

(3) Նաև 'ի բանից խորենաց- ւոյն Բ̃. 13. յայտնի երևի տարբե- րութիւն տեղւոյ այսր ամրոցին անոյ՝ 'ի միւս անի քաղաքէն, զի պատ- մէ անդէն՝ թէ քուրմք եկեալք 'ի յունաց ընդ արձանաց դից. առ 'ի չերթալ՝ 'ի խորագոյն հայս. պատճառեցին թէ դիք անդէն կամին բնակել. և այնպէս մնացին յամուրն անի: Եթէ այս ամուրն անի լինէր նոյն ընդ անի բերդին որ 'ի շիրակ՝ լինէր 'ի նոյն իսկ 'ի խորագոյն հայս. այլ յայտ է՝ թէ էր անի դարանաղեաց գաւառին՝ որ է յարևմտեան եզր մեծին Հայոց:

Այլ ոչ ուշ եղեալ ոմանք 'ի յեալին և 'ի միջին դարու մատե- նագրաց շփոթեն զսոսա ընդ ի- րեարս, յորոց մատթէոս՝ յերիս

## ՄՆՁՈՒՐ :

Զանուն այսր գաւառի գտանեմք գոյզն ինչ այլայլութիւն գրչաց և առ բուզանդայ Դ. 24. ուր և գրի Մզուր. և թէպէտ անդէն ինչ ոչ նշանակի՝ թէ իցէ 'ի բարձր Հայս, այլ մերձակայ գաւառքն զորս յիշատակէ՝ մինչ ընդ աղօտ ցուցանեն նոյն գոլ ընդ Մնձուր գաւառի բարձր Հայոց, քանզի գրէ նա վասն զօրացն շապհոյ պարսից արքայի՝ թէ * Ասպատակ յաշխարհն Հայոց առնէին, զի ընդ աղձնիս, և ընդ ծոփս մեծ, ընդ անգեղ տունն, և ընդ գաւառս անձիտայ, ընդ ծոփս շահունւոյ

տեղիս 'ի յիշելն զանին շիրակայ, անդ գնէ զգերեզմանս առաջին Թագաւորացն մերոց : * Ուր էին (անէ) գերեզմանք հայոց ամենայն Թագաւորացն յառաջնոցն ||: Կամ այն՝ զոր գրէ վասն յովհաննու Թագաւորին անոյ. * Թաղեցին զնա 'ի քաղաքն անի 'ի գերեզմանսն առաջին Թագաւորացն հայոց ||: Զայս անէ ոչ վասն գերեզմանացն բագրատունեաց, այլ վասն արշակունեացն. քանզի բագրատունիք, ոչ յանի, այլ 'ի բագարան և այլուր Թաղեցան :

Նոյնպէս շփոթէ և վարդան յասելն. * Մինչդեռ չև էր ընդարձակ շինեալ քաղաքն Անի՝ որ կոչի Խնամք. Թէպէտ ներքին բերդն ընդ այսու անուամբ էր, և հին ժամանակաւ շինեալ. ուր օտա նախարարն ամրացեալ պահէր ըզքոյրն տրդատայ, և զկուռս, և զգանձս Թագաւորացն արշակունեաց զկնի մահուանն խոսրովու ... կոչի Անի և Կամախն այժմ կոչեցեալ բերդ. բայց ամուրն անի ներքին բերդն է ամրացեալ ||: Յետինս այս հատուած * կոչի անի, մինչև 'ի բանն բերդն է ամրացեալ, պակասի յօրինակի միում գրելոյ 'ի Թուականին չծզ. այլ գտանի յայլ օրինակս, յորոց մին է հին՝ գրեալ 'ի խնդրոյ ստեփաննոսի ուղ. պեղեան որդւոյ տարսայիճայ :

Արդ՝ յայտ է թէ 'ի շիրակ գաւառի հին ժամանակաւ շինեալ կայր բերդ՝ Անի անուամբ, առ որով իբրև նորոգ շինեցաւ մեծ քաղաքն Անի, հինն կոչեցաւ ներքին բերդ : Այլ ընդդէմ նախնի պատմագրաց է՝ թէ յայնմ ներքին բերդի անի քաղաքին պահեաց օտա զքոյր տրդատայ, և թէ նոյն ներքին բերդն է՝ որ կոչէր Ամուրն Անի տարբեր 'ի կամախայ:

Զհետ մատթէոսի և վարդանայ գնայ և համառօտողն պատմութեան քաղաքին անոյ՝ շփոթելով զերկոսին : Այլ շփոթութիւն վարդանայ առաւել է՝ որ զկամախ՝ զոր յայս բան այլ համարի յանի քաղաքէն շիրակայ, որպէս և է իսկ. յայլ բան միացուցեալ երևի ընդ անի քաղաքին՝ յասելն վասն շապհոյ և աշոտոյ մսակերի որդւոյն սմբատայ բագրատունւոյ. * Եկեալ ըզկողմամբքն շիրակայ . . . առին զշիրակ և զաշոցք և զգաւառն տայոց. և այսպէս ըստ բախտին եղեալ աշոտի քաջի շինէ զկամախ, և բնակեցուցանէ 'ի նմա զընտանիս իւր ||: Ուր 'ի կարգէ բանին երևի՝ թէ աշոտ շինեաց ոչ զկամախ (Անի կոչեցեալ 'ի հնումն՝) որ էր 'ի դարանաղեաց գաւառի, այլ զԱնի՝ որ էր 'ի շիրակ :

նաց, ընդ Մզուր գաւառն, և ընդ Դարանաղեաց, ընդ Ե-կեղեաց կողմանս այնց գաւառացն.|| և այլն։

## ԵԿԵՂԵԱՑ (1), այժմ ԵԶՆԿԱ։

Նաղուժ ուրեք գտեալ յոգնի նմին բանս Պտղոմէի, որ-պէս յառաջն լուսաբերեցոյն գլ. ա. * Պէժմ եդեալ զայ հասանէ Եկեղեաց գաւառ|| (2)։ Այս անուն 'ի Ղ. ժողովն ընդ. նոյր՝ գրի Եկեղենսինէ. որոյ եպիսկոպոս գաւի անմիջապէս նախ քան զեպիսկոպոսն Դարանաղեաց. և քաղաք այնր վիճակի կոչի անդէն Յուստինիանոպօլիս, ուստի և փոխանակ միմեանց առեալ լինի. քանզի 'ի 16. գործ նոյն ժողովոյն այսպէս ստորագրէ եպիսկոպոս սորա. * Թէոդորոս եպիսկոպոս Եկեղենսինեայ, կամ Յուստինիանուպօլսոյ մեծին Հայոց||. Իսկ 'ի 18. գործն՝ * Թէոդորոս խոնարհ եպիսկոպոս Յուստինիանուպօլսոյ՝ քաղաքի վիճակին Եկեղենսինեայ||։ 'Ի Ե. ընդհանուր ժողովն՝ * Գէորգ ողորմութեամբ այ եպիսկոպոս Յուստինիանուպօլսեանց քաղաքին մեծին Հայոց||։

Զայս Եկեղենսինի նոյն համարի Լըքիէն ընդ Կէլէոնէ, Կէլէնէ, կամ Կէլթինէ անուամբ (3). որոյ եպիսկոպոս ստորագրեաց սինհոդոսական վճռոյն գեննատիոսի կոստանդնուպօլսեցւոյն։ Այնպէս մետրապօլիտ սորա գտաւ յայն ժողով՝ որ գումարեցաւ վասն անդրէն դարձուցանելոյ զփոտիոս 'ի Թ. դարուն։ Կոստանդին Պորփիւրոժէն 'ի գիրս գաւառաց Ը. դնէ զԿէլթինէ 'ի սահմանակցութե խաղտեաց, ըստ որում և Եկեղեաց չէ այնչափ ինչ հեռի 'ի խաղտեաց. և ըստ վիճակի իւրում ժամանակի դնէ 'ի սկիզբն փոքուն Հայոց. իսկ ըստ եկեղեցական Թեմի Կէլթինէ դասի ընդ կամախաւ 'ի ծանօթութիւն եպիսկոպոսարանաց լեւոնի կայսեր։

Զսոյն զայս Եկեղենսինի նոյն համարի Լըքիէն և ընդ Ակիլիսենէ անուամբ գաւառին կամ Նախարարութե մեծին Հայոց՝ զոր յիշէն Պտղոմէոս, և յառաջ քան զնա Ստրաբոն, որ 'ի ԺԲ. գիրս 555. դնէ սահմանակից պոնտա-

(1) Յօրինակս ինչ աշխարհագրութե խորենացւոյն գրի՝ Եկեղիք, որպէս և 'ի պատմութե անդ Բ. 57. և Փ. 2։

(2) Զնոյն 'ի կիր արկանեն և այլք ոմանք նախ քան զլատինացին, զորոց զբանս տեսցես 'ի ստորև։

(3) Լատիներէն գրի Չէլէնէ, կամ Չէլինէ։

սի և փոքուն Հայոց ձգեալ առ եփրատաւ ։ * Յայս վեր-ջին ծագ Թագաւորութե պոնտոսի փախեաւ միհրդատ հալածեալ 'ի պոմպէոսէ. զլեառն շատաջուր զԱ՛գիլիսի-նեայ գրաւեալ առ տասղիրայիւ, մինչ հեռի յեփրա-տայ՝ որ զփոքր Հայս բաժանէ յԱ՛գիլիսինեայ ‖ ։ Իսկ 'ի ժա̄. գիրս գրէ՝ թէ յառաջ ժամանակաւ էր ընդ Սօփի-նիիւ՝ որ է ծոփք, և դնէ զնա ընդ մէջ տօրոսի և եփրա-տայ ։ * 'Ի միւս կողմանէ ունելով զԱ՛գիլիսինի՝ որ անկա-նի ընդ մէջ տօրոսի և եփրատայ, մինչև է նորա 'ի մի-ջագետս 'ի հարաւակողմն խոտորեալ ‖ ։ Իսկ 'ի վերոյ 'ի գրելն զընթացս եփրատայ՝ դնէ 'ի ձախմէ նորին գե[տո]-յասելն, թէ բղխեալ սորա 'ի հիւսիսային կողմանց տօ-րոսի՝ ընթանայ ընդ մեծ Հայս յարևմուտս կոյս մինչ 'ի փոքր Հայս՝ զնա յաջմէ ունելով, իսկ զԱ՛գիլիսինի ձախմէ. և ապա 'ի հարաւակողմն խոտոր[եա]լ, յայնմ տորման քերէ առ սահմանօք կապադովկիոյ, զորս թո-ղու յաջակողմն, որպէս և զդոմաղինի. իսկ 'ի ձախ զԱ՛գիլիսինի և զսօփինի մեծին Հայոց (1) ։

(1) Եթէ ամանց ճշգիւ առեալ զպատմիկ կրկին վերջին բանս ստրաբոնի, ընդդէմ բերիցեն թէ տեղին Ագիլիսինեայ ոչ յարմարի եկեղեաց, այլ մանաւանդ չորրորդ հայոց, ըստ որում չորրորդ հայք է՝ որ անկանի ընդ մէջ տօրոսի և եփրատայ. և չորրորդ հայք է՝ որ անկանի 'ի ձախմէ եփրատայ, ասելի է՝ թէ չէ պարտ ճշգիւ առնուլ ըստ ամենայնի. քանզի յերկուց բանից՝ առաջինն տալաւալէ̄ է ըստ խոստովանելոյ քաղաւպոնի և սահմանաւ. իսկ յերկրորդումն անդ՝ ոչ դնի յերկուս տեղիս անուանս Ագիլիսինի, այլ նախ դնի Լիւգինի ; և 'ի համառօտութեան անդ՝ Ագիլիսինի, և ապա Ասիգինոնի. զորս սահմանս ուղղէ և դնէ ըստ կամաց իւրոց Ագիլիսինի ։

Թէպէտ ստրաբոն ասէն առնու զԱգիլիսինի ըստ որում ձգեալ ըստ մասին նաև 'ի չորրորդ հայս. քանզի որպէս դնէ նա ինքն՝ Ագիլիսինի յառաջ ժամանակաւ էր ընդ Սօփինիիւ որ է չորրորդ հայք. տես զընդդէմագրութիւն սահմանաւ 'ի գլ. Սօլինոսի ։

Քանզի եթէ ճշգիւ փոխանակ տեղւոյ չորրորդ հայոց առցուք՝ ընդդէմ ելանէ առաջին բանն ստրաբոնի, որ զԱգիլիսինի դնէ սահմանակից պոնտոսի. նա զի նոյն ստրաբոն այլուր զԱգիլիսինի դնէ մի 'ի գաւառացն՝ զորս արտաքսիաս (արտաշէս) և Թարիատէ զօրավարք մեծին անտիոքոսի յաւելին 'ի հայաստան, առեալ 'ի գադանոնեաց, որ ըստ նորա է գաւառ կապադովկիոյ. արդ՝ այս առաւել յարմարի եկեղեաց՝ որ անմիջապէս կից է կապադովկիոյ ։ Ընդդէմ է և գրից՝ զոր նշանակէ պրոկոպիոս ։ Այլ առ առաւելն՝ մարթ է ասել, թէ որովհետև սահմանք գաւառաց ընդ փոփոխութեամբք են, փոխեցան նաև սահմանք Ագիլիսինեայ ։

Սոյնպէս չէ մարթ ընդդէմ բերել և զգիրս պտղոմեայ՝ որ զԱգիլիսինի դնէ ստորև կամ 'ի հարաւոյ հիւսիսային քաղաքաց՝ որք անկանին մերձ յեփրատ, և զկնի

Արդ զԱգիլիսինէն դնելով սդրաւոնի 'ի անդուոջն՝ ուրանօր եփրատ նախ և յառաջ սկսանի խոտորիլ և ընթանալ 'ի հարաւ ընդ փոքր Հայս, յարմարի գրեթէ ըստ ամենայնի դրից եկեղեաց՝ որ սահմանակից է փոքուն Հայոց, և 'ի ծայր անդ խոտորման եփրատայ 'ի հարաւակողմն, համաձայն վարդանայ աշխարհագրին՝ որ ասէ. * Կոտան եփրատ յեկեղեաց գաւառին է‖: Իսկ զի յայսմ գաւառի սկսանի եփրատ դետանալ, և զընթացս իւր ուղղել, որոյ բուն և երկար ընթացք բերի 'ի հարաւ:

Համաձայնի այսմ և պրոկոպիոս որ դրէ՝ թէ եփրատ [illegible] բղխեալ 42. ասպարիզօք հեռի 'ի Թէոդոսիուպօլեայ [illegible] է Էրզիրում") անցանէ ընդ շամբս, և անտի անմիջապէս հասի յԱգիլիսինի, և ստորև՝ թէ *Ի հայաստանեայց աշխարհէն որ 'ի տաւրոս, և 'ի գաւառէն Ագիլիսինայ՝ հոսեալ ընդ աջմէ գետն եփրատ, պատէ զերբաղում յոյժ, և խառնեալ ընդ այլ գետս և ընդ[illegible]նի բղխեալ յորդութի՛ 'ի պարսկահայոց՝ մեծանայ և երթեալ մտանէ յաշխարհն՝ որ 'ի նախնեաց Լևկոսիւրիա, և այժմ անուանի Փոքր Հայք‖:

Նա 'ի նշանացս թէ Ագիլիսինի է նոյն ընդ Եկեղեաց այն է, զի ստրաւոն գիրք ԺԱ. դնէ անդ տաճար անահտայ՝ որպէս էր և յԵկեղեաց՝ յասելն, Հայք առաւել քան զայլս պաշտեն * Անահիտ, որում և այլ ուրեք կանգնեցին մեհեան, և յԱգիլիսինի‖: Նոյն դնէ և պրոկոպիոս զմեհեան անահտայ, կամ որ նոյն է արտեմեայ, զորմէ ստորև:

Սան որոյ և Անթիդիփա, որ է ասել Անահտական, գաւառ մեծին հայոց՝ զոր յիշէ պլինիոս Ե. 24. համարիմ լինել նոյն իսկ գաւառն Եկեղեաց, կամ Ագիլիսինի, վասն անահտական բագնին այսպէս կոչեցեալ, զի դնէ զայն սահմանակից կապադովկիոյ՝ որպէս էր Եկեղեաց, և անդր հոսեցուցանէ զեփրատ փոքր ինչ ստորև քան զակն իւր, որպէս այլք ընդ ագիլիսինի:

Եգիլիսինեայ իսկ և իսկ յիշէ զԱւգանիդիս, որ է Հաշտեանք 'ի չորրորդ հայս. զի նաև վասն Եկեղեաց յարմարի նոյն գիրք պտղոմեայ: Եւ զի նա ոչ դասէ զքաղաքս և զգաւառս ճշգրտիւ ըստ կարգի մերձաւորութեն գրեց նոցա. զի ահա 'ի վերոյ զԱրմաւիր, զԱրտաշատ և զՆախճաւան դնէ 'ի կարգս քաղաքացն՝ որք են առ եփրատաւ, կամ մերձ յեփրատ, որ է ընդդէմ, եթէ ճշգիւ առցուք:

Նաեւ այսպէս նոյն պարտ է համարիլ զԱկիլիսենի գաւառ մատենագրաց յունաց՝ ընդ մեր Եկեղեաց գաւառաւն, որ է սահմանակից դարանաղեաց. որպէս է տեսանել յագաթանգեղոս 'ի թուղթն ժդ:

Բայց յեփրատայ՝ ընդ մէջ նորա անցանէ և Գայլ գետ, որպէս յայտնի է յայն բան ագաթանգեղոսի, քանզի սրբն գրիգոր և բազմութի[ւ]ն իշխան[illegible]ց 'ի դարանաղեաց գաւառէն գնացին յերեզ աւան Եկեղեաց գաւառին, և անտի 'ի գնալն 'ի թիլ՝ նոյնպէս որ է յեկեղեաց՝ անցին ընդ գետն Գայլ:

Կիրակոս վարդապետ եզնկացի 'ի [illegible] իւր ընդհանրական՝ կոչէ զսա Գ[illegible] քանզի անուանէ զԵկեղեաց Մայրաքաղաք հայոց [illegible], ակնարկելով՝ թէ այս գաւառ [illegible] խալուած 'որ հօրն, կամ եկեղեցւոյ. (Տե՛ս [illegible]): Կամ թէ վասն ասելն չարչա[illegible] նորա՛ և 'ի սահմանակից լեառն Ձգնելոյ կոչէ ա[illegible]ն Մեսրոպ զԳանան եթող վերակացու գաւառի[illegible]ապետել բընակչաց:

Երէզ: Այս անուն յիշատակի ստէպ, որպէս է տեսանել առ խորենացւոյն բ. 13. և 57. և առ ագաթանգեղոսի 'ի թուղթ ժդ. և միայն 'ի թուղթ յծբ. կոչի Երէզ, որ յաւէտ թուի լինել ընիկ ուղղական, և 'ի հոլովմանէ նորին ածանցեալ անունս Երէզ: Կոչեցաւ և Յուստինիանուպոլիս. զորմէ տես 'ի վերոյ:

Անկանի յայս գաւառ ըստ վերոգրեալ մատենագրաց, կառուցեալ առ Գայլ գետով, որ առ ագաթանգեղոսի ժդ. կոչի Գեօղ. * Հասին յԵկեղեաց գաւառ 'ի գեօղն Երիզա‖: Իսկ 'ի յծբ. կոչի Աւան: Ուստի կոչեցաւ այս քաղաք Երզնկա. որ թուի լինել աղաւաղութի[ւն] Երիզա անուան. վասն որոյ մատթէոս և յայտնի ևս թովմաս՝ դնէ 'ի նմին Եկեղեաց գաւառի՝ յաւանն. * Գնաց 'ի գաւառն Եկեղեաց 'ի յԵզնկայն‖: Իսկ յայսմաւուրս 'ի մայիսի 11. ('ի տպագրեալն.) և գաւառն Եկեղեաց կոչի յայս անուն. * Ժառանգաւոր հօրն գաւառի յերկրին Եկեղեաց՝ որ է յԵզնկայ‖: Մատենագիրք տաճկաց կոչեն Արզընկան, Արզընճան և Երզընճան, և դնեն յասորիս 'ի գաւառին հռոմոց, զորս ուղղեալ Էրպլօյ 'ի մատենադարանի իւրում, դնէ 'ի հայս:

Աստ էր հռչակաւոր մեհեան անահտայ կամ արտեմիդեայ. վասն որոյ գրէ ագաթանգեղոս 'ի յծբ. * 'Ի մեծ

և 'ի բուն մեհենացն 'ի տեղիս պաշտամանցն հայոց Թագաւորացն յանահտական մեհենին յԵրիզն աւանի ։ Ի այս մեհեան չինեաց միջինն տիգրան, և 'ի նմին կանգնեաց զարձան արտեմիդայ, զոր հայր նորա ՟Բ արտաշէս Թագաւոր առեալ էր յելլադայ այսինքն 'ի յունաստանէ, և 'ի կանխել մահու նորա՝ եդեալ կայր ընդ այլ արձանս յամրոցն Անի ։

Այլ էր սա յարձանէն արտեմիդայ՝ զոր նոյն արտաշէս յասիոյ եբեր 'ի հայս. յորոյ որոշումն գրէ խորենացին Բ. 13. * [illegible]ւ զարտեմիդայ զմիւս պատկերն (կանգնեաց տիգրան) [illegible]իղ ։ Տես և 'ի Բ. 11 ։ Այս արձան 'ի ակզրան ան[illegible] ավրիս, ուր յերկնից իջեալ կեղծեն հեթանոսք, ա[illegible]րեստես որդի աղամեմնոնի (1) միանգամայն [illegible]դամեայ քեռ իւրոյ քրմուհւոյ առեալ 'ի դաղ[illegible] յունաստան, և անտի 'ի ձեռն [illegible]րտաշէսի աստ 'ի [illegible], և 'ի ձեռն տիգրանայ եդաւ յերիզայ՝ որպէս [illegible]

Յայտ առ[illegible] և պրոկոպիոս (2), որոյ 'ի յիշել զԱ[illegible]լիսին՝ (այն է Եկեղեաց գաւառ յորում էր Երիզա,) յիշէ և զայս մեհեան յասելն. * Անտի (այսինքն 'ի շամբէն), հոսի եփրատ 'ի Ակելեսինի (ագելեսինի), ուր էր մեհեան դավրիսեան արտեմիդայ՝ ուստի փախուցեալ ասի իփիգենէ ընդ ոլրեստեսի և բիլադեսի, բերելով զդրօշեալն արտեմիդայ ։ Զմին իրի Թէպէտ ամենայն ազգաց հեթանոսաց էր յարգելի այս դրօշեալ, այլ ևս առաւել յունաց. յոյր սակս ասէր տրդատ առ 'նըն գրիգոր վասն արձանիս առ ագաթանգեղոսի 'ի Թղթ. ԺԳ. * Եթէ ոչ առնուցուս յանձն պաշտօն մատուցանել դիցն, մանաւանդ այս մեծի անահտայ տիկնոջ, որ է փառք ազգիս մերոյ և կեցուցիչ, զոր և ամենայն Թագաւորք պատուեն, մանաւանդ Թագաւորն յունաց ։

Այն գրիգոր ազանչելեօք կործանեաց զայս մեհեան, յորում դեռ 'ի նմանութի վաչմանաւոր զօրու ժողովեալ մարտնչէին, և ըստ պատմէս անահտայ փշրեալ նուիրեաց եկեղեցւոյ, յորոյ պատճառս կրեալ էր զանտանելի չարչարանս 'ի տրդատայ՝ յայսմ վայրի, բայց արտաքոյ ա-

(1) Սա որդին է Ագամեմնոն առաջնորդ զօրացն յունաց 'ի տրոյական պատերազմին ։

(2) 'Ի գիրս պատերազմաց պարսից. գիրք Ա. գլ. 17 ։

ւանին՝ որպէս Թուլի, ուր բանակեալ էր տրդատ հանդերձ զօրօք։

՚Ի ժամանակս քրիստոնէութեան փոխանակ մեհենի բագնեացն հեթանոսաց զարդարեցաւ քաղաքն և շրջակայ սահմանքն բազմութբ եկեղեցեաց, վանօրէից, և անապատականաց 'ի փառաբանութիւն Ճշմարտին այ։ Մի 'ի նոցունց է ուխտ Տիրաշէնն, 'ի միւս կողմն եփրատայ՝ որ 'ի ձեռն յայտնութեան նշխարաց սբյն ներսէսի (1) կոչի Հռչակաւորն և գեղեցկաշէն։

Եւ յայլ կողմն՝ եկեղեցին յանուն Փրկչին, զոր շինեաց եպիսկոպոսն եզնկայոյ սարգիս անուն՝ մեծարեալ յամենեցունց 'ի ժզ դարուն, որպէս գրի անդէն. * 'Ի յարքեպիսկոպոսութե (2) մայրաքաղաքիս եզնկայ և գաւառիս եկեղեաց Տն սարգսի՝ յորում տունկ քաջազուարճ երևեալ 'ի վիճակիս յայս, որ է տեղի չարչարանաց և նահատակութե լուսաւորչին մերոյ սբյն գրիգորի, պատուեալ յայ, մեծարեալ յազգաց և յազանց և 'ի թագաւորաց մեծաց, բարենշան շառաւեղ մերում ժամանակիս, և սկիզբն նորոգման եկեղեցւոյ պայծառութե որ և շինեաց զհրաշազեղ խորանն այ՝ զգեղեցկայարմարն եկեղեցի՝ որ յանուն փրկչին մերոյ և տն յսի. բարեսէր և մծապարգև զաւակաւն յոհաննիսիւ ‖։ Նաև աւագ խորան եկեղեցւոյս կոչեցաւ յանուն փրկչին. երկրորդ խորանն՝ Կաթուղիկէ. իսկ երրորդն՝ յանուն Սբց առաքելոց, ուր եդ սարգիս եպիսկոպոս զաջ սբյ մեծին ներսէսի։

Միւլէյման շահ նախահաւն օսմանեանց զնախկին բնակութիւն իւր յետ թողլոյ զմահան՝ կալաւ յայս քաղաք 'ի հիճրէթի 621. (1224)։

Առին զսա Մողոլ կամ Մուղալ Թաթարք 'ի հիճրէթի 640. (1242.) նենգութբ հանելով զքաղաքացիս ար-

(1) Հեղինակ այսր ձեռի երևի լինել Յովհան եզնկացի։

(2) Սարգիս առաջնորդ գաւառիս 'ի ստորագրութիս ինչ ժողովոց եղելոց 'ի կիւլիկիայ՝ գասի 'ի կարգս եպիսկոպոսաց. ուստի զԱրքեպիսկոպոսութենդ անուն՝ զոր տայ նմա յայսմ վայրի հեղինակ այսր ձեռի, թուի թէ պարտ է առնուլ կամ իբրև զպատուանուն ինչ, և ոչ ըստ կարգի եկեղեցական իշխանութե, և կամ ասել՝ թէ 'ի ժամանակի գրութե այսր ձեռի ամբարձեալ էր նա յարքեպիսկոպոսական պատիւ, որ յառաջ 'ի ժամանակս ժողովոց էր լոկ եպիսկոպոս։ Սոյն սա Սարգիս է՝ զոր յամին յունաց 1570. (քրի՝ 1259.) յիշատակէ ապուլֆարաճիոս առ ասսեմանեայ հատ. բ. թղթ. 378. զոր թաթարաց կացուցեալ էր 'ի վերայ քաղաքիս, ուրանօր Եզնկայն գրի Արզնկան։

տարոյ քաղաքին և կոտորելով։ Իսկ 'ի 1395. Լէնկթիմուր յետ գրաւելոյ զՄիջագետս՝ եկն և սիրով եառ զԵզնկայն. այլ * Ս. մեծ կաթուղիկէն զՍ. Սարգիս (առէ Թովմաս Մեծոփեցի՝) 'ի հիմանց քակեաց, և զայլ եկեղեցիսն զամենայն կործանեաց ||։ Նա ինքն Թովմաս պատմէ և զայլ և այլ աւերումն քաղաքիս 'ի զանազան բռնաւորաց։

Աստի էր Յոհաննէս պլուզ՝ Երզնկացի անուանեալ, բազմութբ գրուածոց ծաղկեալ 'ի ԺԳ. դարուն. որ և գրեթէ վերջինն գտաւ բանիբուն մատենագրաց մերոց։

Այս քաղաք և 'ի շրջակայ սահմանս յաճախեցին երկրաշարժութիւնք, 'ի սկզբանէ անտի բազում աւերումն ածելով 'ի վերայ, որք և պատմին 'ի ժամանակագրութե՝ զոր աստի և անտի ժողովեալ Առաքել պատմագրի, մանաւանդ 'ի ժամանակագրութէ Ղուկասու կեղեցւոյ՝ դնէ զկնի պատմագրութե իւրոյ։ Զժողովեալսն նորա՝ և զոր գտաք 'ի յիշատակարանս այլ գրոց, ըստ կարգի թուականաց կարգեսցուք յառաջիկայդ։

| Թուական Հյ.։ | Ամին։ | Երկրաշարժութիւնք։ |
|---|---|---|
| ՆՂԴ. | 1045. | Առ հասարակ կործանեաց զքաղաքն պատառմամբ երկրի, և սպան զբազումս 'ի բնակչաց։ |
| ՈԺԵ. | 1166. | . . . . . . . . . . . |
| ՈԺԷ. | 1168. | Սպան ԺԸ. հազար ոգիս։ |
| ՈՁԵ. | 1236. | Կործանեաց զեկեղեցի մի։ |
| ՉԳ. | 1254. | . . . . . . . . . . . |
| ՉԺԷ. | 1268. | Սպան ԺԵ. հազար ոգիս յաւուր կիւրակէի։ |
| ՉԼ. | 1281. | Քաղաքն եհաս մերձ 'ի կործանիլ։ |
| ՉԼԶ. | 1287. | Ի մայիսի. մեռան բազմութի մարդկան։ |
| ՉԼԹ. | 1290. | . . . . . . . . . . . |
| ՊԵ. | 1356. | Յաւուրն եօթնիցս և ութիցս երերայր քաղաքն։ |
| ՊԻԳ. | 1374. | Երկին անգամ շարժեալ ըզքաղաքն, յերկրորդումն անդ կործանեաց զպարիսպս նորա 'ի դեկտ 8. յուրբաթու։ |

| | | |
|---|---|---|
| պձբ. | 1433. | Եօթն անգամ շարժեցաւ քաղաքն ։ |
| ջէ. | 1458. | Սպան լբ. հազար ոգիս ։ |
| ջլա. | 1482. | Սպան Ղ. հազար ոգիս ընդ հողով ծածկեալ ։ |
| ռիե. | 1576. | 'Ի նոյեմբերի 5. 'ի մէջ գիշերի, որ տեւեաց ցամիսս 4 ։ |
| ռլգ. | 1584. | 'Ի յունիսի 17. յերկուշաբաթի 'ի 3. ժամու. յանկարծ շարժմամբ առհասարակ զքաղաքն կործանեալ՝ ԺԵ. հազար ոգիս սպան, և Ե. հազար ընդ հողով ծածկեաց, զորս կիսամահ գտին 'ի ներքոյ աւերակաց ։ |
| ռճլգ. | 1784. | Տես զայսմանէ 'ի Նոր Հայաստան ։ |

Զերկրաշարժութիւն որ 'ի ՆՂԳ. յիշէ և Մատթէոս յանէն՝ * Բազում եկեղեցիք խախտեալ փլան 'ի հիմանց 'ի յեկեղեաց գաւառին. և քաղաքն որ Երզնկան կոչի՝ փլաւ առհասարակ, և պատառեցաւ երկիրն, և արք և կանայք ընկղմեցան 'ի խորս անդնդոց, և զաւուրս բազումս գայր ձայն աղաղակի 'ի խորս անդնդոց ‖ ։ (1)

Յաճախութիւնք այնչափ երկրաշարժութեանց յայտ առնեն՝ թէ գտանին անդէն հանք՝ յորոց գոլորշեաց պատճառին. յայտ առնեն եւս զբազմամարդութիւն քաղաքիս, ուր 'ի 1458. յետ մեռանելոյ լբ. հազարաց, զկնի ինամեաց՝ գտան 'ի նմա տակաւին Ղ. հազար ոգիք, և այն իսկ միայն թիւ մեռելոց ։

ԱՆԻԼ ։ Յեկեղեաց գաւառի դնեն զայն ագաթանգեղոս, բուզանդ, յովհաննէս կաթողիկոս, և այլք, Անան կոչելով՝ որ 'ի յունականն ագաթանգեղոսի գրի Անէտես ։ Ընդ մէջ սորա և երիզայ անցանէ գետն Գայլ՝ զորմէ տես 'ի վերոյ ։ Այս աւան կայր և յառաջ քան զժամանակս միջին տիգրանայ (2), յորում նա ինքն զա-

(1) Զհեծումն վերաւորելոց 'ի ներքոյ աւերակաց կամի ցուցանել ։

(2) Զշինութիւն այսր աւանի պօղոս տարոնեցին ընծայէ արիստակեայ, շփոթելով ընդ շինութեան

Թէոդոսայ զպատկերն՝ զոր հայր նորա ա̃. արտաշէս ա-ռեալ էր յելլադայ կանգնեաց անդէն մեհեան, և բագին շինելով անդէն։ Նա եւ առ խմմեալ Ճշգրտիւ զդիրս տեղեաց մեհենիցն, որպէս և գաւառին եկեղեաց, զոռն իսկ զըանս խորենացւոյն դիցուք աստանօր։ * Ի քեռայր իւր մեհրդատ ( տես 'ի ԺԲ. 13. կամ 14. ) հաւատացեալ զմաժաք, և զհոգս մեջերկրայցն ... դատոնայ յաշխարհս մեր։ Նախաջին գործ՝ զմեհեանսն շինել կամեցաւ. իսկ քրմացն որ եկեալ էին 'ի յունաց՝ զմտաւածեալ զի մի 'ի խորագոյն հայս վարեսցին, պատճառեցան ըղձութիւն՝ իբր թէ դիքն անդէն կամին զմնակիլն. որում հաւանեալ տիգրան՝ կանգնեաց զոլոմպիական պատկերն դիոսի յամուրն յանի, և զաթենաս 'ի Թիլ‖։

Այն պատկեր է՝ որ առ ագաթանգեղոսի 'ի յԾբ. կաղի Անեհական, որ է նոյն աստուածուհի գիտութէ, զայոյ զպատկերն ոքն գրիգոր՝ և որք ընդ նմա իշխանք՝ կործանեցին։ * Զանդէին Անեհական պատկերն ( տես ագաթանգեղոս ) գտանէրն արամազդայ 'ի Թիլն աւանի, և զցանձս երկուց մեհենիցն (յորոց մին էր յերիզա) աւառ ժողովեալ 'ի նուէրս սպասու եկեղեցւոյն Թաղին տեղւոյն հանգերձ‖։ Յայսրիկ աղագաւ բուզանդ Գ. 2. կոչէ զԹիլ Աստուածոյ գեղեցկի։ Իսկ խորենացին Գ. 88. սեպհական զնէ արիստակեայ՝ յասէն։ * Իսկ զմարմին երանելւոյն (արիստակեայ՝) բարձեալ աշակերտացն բերին յԵկեղեաց գաւառն հանգուցանել 'ի Թիլն յիւրում աւանի‖։ Նոյն Թաղեալ զնեն զմարմին նորին ոմյ նաև բուզանդ, և յովհաննէս կաթուղիկոս. այլև զմարմին մեծին ներսէսի՝ համաձայն խորենացւոյն Գ. 38. * Նարձեալ զմարմին նորա ( այսինքն մեծին ներսէսի ) արքայն պապայ՝ թաղեաց 'ի Թիլն (1) աւանին‖։

Յեկեղեցիս սորա հռչակաւոր գտաւ անուանեալն Կաթողիկէ, զոր շինեաց մեծն ներսէս՝ յորում և թաղեցաւ. բայց քակեցաւ յարշաւելն անդ ապտուռռահիմի քեռորդւոյն մահմետի ժԸ. հազարաւ 'ի հայս՝ յամին իբր 635. (2) որոյ վասն 'ի Ճառն յայտնութեն նշխարաց մեծին ներ-

վանաց՝ զոր կերտեալ առեն արիստակեայ յիւր բնակութի։

(1) Այսպէս գնի բատ երից ձեռագրաց եւս, այլ 'ի տպագրեալն գնի Թիլ։

(2) Քանզի 'ի նմին Ճառի, և առ յովհաննու մամիկոնէի 'ի ձեռագիրն՝ գնի այս Ը. ամաւ զկնի մահուան խոսրովու պարսից արքայի 'ի ժամանակս հերակլեայ կայսեր. իսկ մահ խոսրովու դիպաւ 'ի 627։ Վասն կործանման

| | | |
|---|---|---|
| պձբ. | 1433. | Եօթն անգամ շարժեցաւ քաղաքն։ |
| ջէ. | 1458. | Սպան ԼԲ. հազար ոգիս։ |
| ջլա. | 1482. | Սպան Է. հազար ոգիս ընդ հողով ծածկեալ։ |
| ռիե. | 1576. | Ի նոյեմբերի 5. ի մէջ գիշերի, որ տեւեաց ժամիս 4։ |
| ռլգ. | 1584. | Ի յունիսի 17. յերկուշաբաթի ի 3. ժամու. յանկարծ շարժմամբ առհասարակ զքաղաքն կործանեալ՝ ԺԵ. հազար ոգիս սպան, և Ե. հազար ընդ հողով ծածկեաց, զորս կիսամահ գտին ի ներքոյ աւերակաց։ |
| ռմլգ. | 1784. | Տես զայսմանէ ի Նոր Հայաստան։ |

Զերկրաշարժութենէն որ ի ՆՂԴ. յիշէ և մատթէոս յասէլն՝ * Բազում եկեղեցիք խախտեալ փլաւ ի հիմանց ի յեկեղեաց գաւառին. և քաղաքն որ Եզնկան կոչի՝ փլաւ առհասարակ, և պատառեցաւ երկիրն, և արք և կանայք ընկղմեցան ի խորս անդնդոց, և զաւուրս բազումս գայր ձայն աղաղակի ի խորս անդընդոց ‖։ (1)

Յաճախութիւնք այնչափ երկրաշարժութեանց յայտ առնեն՝ թէ գտանին անդէն հանք՝ յորոց գոլորշեաց պատճառին. յայտ առնեն եւս զբազմամարդութիւն քաղաքիս, ուր ի 1458. յետ մեռանելոյ ԼԲ. հազարաց, զկնի ԻԴ. ամաց՝ գտան ի նմա տակաւին Է. հազար ոգիք, և այն իսկ միայն թիւ մեռելոց։

ԹԻԼ։ Յեկեղեաց գաւառի դնեն զսոյն ագաթանգեղոս, բուզանդ, յովհաննէս կաթողիկոս, և այլք, Աւան կոչելով՝ որ ի յունականն ագաթանգեղոսի գրի ԹԻԱՐԵԱՍ։ Ընդ մէջ սորա և երիզայ անցանէ գետն Գայլ՝ զորմէ տես ի վերոյ։ Այս աւան կայր և յառաջ քան զժամանակս միջին տիգրանայ (2), յորում նա ինքն զա-

(1) Զհեծութիւն վերաւորելոց ի ներքոյ աւերակաց կամի ցուցանել։

(2) Զշինութիւն այսր աւանի պօղոս տարօնեցին ընծայէ արիստակեայ, շփոթելով ընդ շինութեան

թենոսայ զպատկերն՝ զոր հայր նորա Ծ՞. արտաշէս առեալ էր յելլադայ կանգնեաց անդէն ի մեհեանն, և բագին շինելով անդէն։ Նաև առ իմանալ ճշգրտիւ զգիրս տեղեաց մեհենիցն, որպէս և գաւառին եկեղեաց, զոռն իսկ զբանս խորենացւոյն դիցուք աստանօր։ * Ի քեռայր իւր մեհրդատ (տես 'ի Է. 13. կամ 4.) հաւատացեալ զմնժակ, և զհօրս մեջերկրայցն ... դառնայ յաշխարհս մեր։ Նուաջին գործ՝ զմեհեանսն շինել կամեցաւ. իսկ քրմացն որ եկեալ էին 'ի յունաց՝ զմտաւածեալ զի մի 'ի խորագոյն հայս վարիցին, պատճառեցան բղձութիւն՝ իբր թէ դիքն անդէն կամին զմնակիլն. որում հաւանեալ տիգրան՝ կանգնեաց զոլոմպիական պատկերն դիոսի յամուրն յանի, և զաթենաս 'ի թիլ‖։

Այն պատկեր է՝ որ առ ագաթանգեղոսի 'ի յծր. կոչի Նանէական, որ է նոյն աստուածուհի զխոսութե, զարոյ զպատկերն նշն գրիգոր՝ և որք ընդ նմա իշխանք՝ կործանեցին։ * Քանդէին Նանէական պատկերն (տես ագաթանգեղոս) դստերն արամազդայ 'ի Թիլն աւանի, և զգանձս երկուց մեհենիցն (յորոց մին էր յերիզա) աւար ժողովեալ 'ի նուէրս սպասու եկեղեցւոյն թողին տեղօքն հանդերձ‖։ Յայսորիկ աղագաւ բուզանդ Գ. 2. կոչէ զԹիլ [illegible]։ Նաև խորենացին Գ. 88. սեպհական դնէ արիստակեայ՝ յասելն։ * Իսկ զմարմին երանելւոյն (արիստակեայ՝) բարձեալ աշակերտացն բերին յԵկեղեաց գաւառ հանգուցանել 'ի Թիլն յիւրում աւանի‖։ Նաև թաղեալ զնեն զմարմին նորին նշէյ նաև բուզանդ, և յովհաննէս կաթուղիկոս. այլև զմարմին մեծին ներսէսի՝ համաձայն խորենացւոյն Գ. 38. * Տարեալ զմարմին նորա (այսինքն մեծին ներսէսի) արքայն պապայ՝ թաղեաց 'ի Թիլն (1) աւանին‖։

Եկեղեցիս սորա հռչակաւոր գտաւ անուանեալն Կաթողիկէ, զոր շինեաց մեծն ներսէս՝ յորում և թաղեցաւ. բայց քակեցաւ յարշաւելն անդ ապստամբաց քեռորդւոյն մահմետի ժշ. հազարաւ 'ի հայս՝ յամին իբր 635. (2) որոյ վասն 'ի ձայն յայտնութեան նշխարաց մեծին ներ-

վանաց՝ զոր կերտեալ ասեն արիստակեայ յիւր բնակութիւն։

(1) Այսպէս գնի բատ երից ձեռագրաց ևս, ուր 'ի տպագրեալն գնի Թիլ։

(2) Քանզի 'ի նմին ձայնի, և առ յովհաննու մամիկոնէի 'ի ձեռագիրն՝ գնի այս Է. ամաւ զկնի մահուան խոսրովու պարսից արքայի 'ի ժամանակս հերակլեայ կայսեր. իսկ մահ խոսրովու դիպաւ 'ի 627։ Վասն կործանման

ռէսի կոչի այնուհետև Հանգոսցեալ Էքլէղէսի, ըստ սովորութեան ազգիս՝ որ այսպէս կոչէ զամենայն կործանեալ եկեղեցիս (1) ։

Յետ քակելոյ եկեղեցւոյս՝ անյայտ մնաց նշխարք սրբոյն Ներսիսի, և յայտնեցաւ ՚ի 1275. ՚ի հայրապետութեան հայոց տն Յակոբայ, և ՚ի թագաւորութեան Լևոնի որդւոյ Հեթմոյ։ Գերեզմանն սրբոյն գտաւ երկայն է. կանգուն, լայն իբր ա. կանգուն, խոր իբր մարդաչափ, դ. աստիճանօք կազմեալ կրածած քարիւ. և ՚ի վերայ գերեզմանին՝ երեք կրկին կամարք կազմեալ ՚ի կրոյ և ՚ի քարանց։ Յարևմտեան կողմն գերեզմանին եդեալ կայր մարմին սրբոյն բազմեալ յաթոռ. իսկ առաջի նորին գտան նշխարք՝ որք էին մեծամեծ անդամք մարմնոյ՝ և ոչ բովանդակ մարմին, ծածկեալք սակաւ ինչ հողով։ Սարգիս եպիսկոպոս Եզնկայու եդեալ յերկուս արկեղս կնքեալ կնքով մատանեաւ՝ առ ահի տաճկաց՝ տարաւ յեզնկայ։

Յիշատակի ՚ի նմին ճառի և այլ վանք և եկեղեցի յանուն սբ. հայրապետաց ՚ի Թիլն աւանի, յայտ է՝ թէ յանուն որդւոց և թոռանց լուսաւորչին. կամ միայն արիստակեայ և ներսէսի։ Սարկաւագն այսր եկեղեցւոյ՝ էր Պատուական անուն, որ չորեքկին տեսլեամբ յայտնութիւ ընկալեալ վասն տեղւոյ գերեզմանի սրբոյն Ներսէսի՝ ծանոյց ամենեցուն, յորում ժամանակի առաջնորդ վանացս էր Ներսէս ոմն։

Յայս աւան շինեաց եկեղեցի (2) ըստ գրելոյ յովհաննու մամիկոնէի՝ նաև իշխանն հարքայ՝ խրատու ստեփաննոսի առաջնորդի վանից գլակայ, որ յաջորդեաց զենոբ թօթկայ ՚ի է. դարուն։ Թիլ անուամբ գաւառին և այլ կրկին տեղիք՝ զորոց այլուր։ (3)

Զարեհ ։ Աւան՝ որ ընդ ժամանակս ինչ եղև արքայանիստ, զորմէ խորենացին Բ. 60. կամ 59. * Նոյն (ա.

եկեղեցւոյս այսպէս գրի ՚ի ձեռագրի յովհաննու մամիկոնէի։ * Իսկ պատուահիմ անցանէ ՚ի հարք .... ՚ի սոյն ամի քակի եկեղեցին որ յաշտից վանին .... և Ներսիսի հայրապետին կաթուղիկէ եկեղեցին ՚ի Թիլն յեկեղեաց գաւառին||։

(1) Այժմ ռամկօրէն ՚ի հայաստան կոչէն՝ Հանքած Էքէղէսի, կամ կրճատմամբ՝ Հանքէղէսի։

(2) ՚Ի տպագրեալն յովհաննու մամիկոնէի ՚ի թղթ. ՃԼԲ. դնի ՚ի բազմաւորական Էքէղէսի։

(3) Սխալի Նալեանն որ զթորդան կոչեցեալ համարի Թիլ, յորմէ և ՚ի Թիլ դնէ թաղեալ զյուսիկ, և զորս գրեցոր՝ ընդդէմ նախնի պատմագրաց։

տիրան արքայ) գնաց զկողմամբք Եկեղեաց 'ի յաւանին Զըրմէս հաստատելով զարքունիսն ։

Խախ ։ Գեօղ յայսմ գաւառի՝ ուր պապ արքայ ետ ըրյ մեծին ներսէսի դեղ մահու, և ելոյծ 'ի կենաց ։ *Փոխեալ յաշխարհէս երանելւյն ներսէս (ասէ խորենացին Գ. 38.) 'ի գաւառին Եկեղեաց 'ի գեօղն որ կոչի Խախ ։ Օ նոյն գրեն ասողիկ. Բ. 1. յովհաննէս կաթողիկոս (1) և վարդան. զոր բուզանդ Ե. 24. կոչէ Խախ, և 'ի նմին դնէ ապարանս պապայ ։ *Նա կոչեցաւ (այսինքն կոչեաց զներսէս) յապարանս իւր 'ի Խախ աւան յԵկեղեաց գաւառի ։ (2)

Մ[illegible] ։ [illegible]Կ. Բ. 11. *Նին յաւուրս նորա (այսինքն՝ Բ. արշակայ արքայի,) սպարապետ զօրուն հայոց՝ վասակ որդի վաչէի, որ զՄաստակերտն շինեաց յԵկեղեաց գաւառին ։

Կոթեր ։ Աւան՝ զոր յիշատակէ լաստիվերտցին 'ի գլ. ԺԳ. և երևի դնել զնոյն յԵկեղեաց գաւառի, քանզի գրէ. *Ի գալ ամարայնոյն՝ առաքի 'ի թագաւորէն դատաւոր իրաւանց աշխարհին ... որոյ հասեալ 'ի գաւառն Եկեղեցայ՝ ընդ առաջ երթայ նմա ամենաչարին վրվէռ, և ամբաստան լինի զմեծարգի հայրապետէն սամուէլէ ... զոր իբրև լուաւ դատաւորն ... առաքէ զինուորս ըմբռնել ստիպաւ զերանելւյն ... առաջի իւր ։ Նա յետ այլոց բանից. *Նա երթեալ ժողովոյն բազմութի մինչև յեզր գետոյն եփրատայ՝ ուր մանանաղի 'ի նմա խառնի, լինի յայնմ ժամու եկք անձրևի, և 'ի յորդութէ անձրևին զարթեաւ եփրատէս, և գայր լի դարիւ և դարիւ ։ Իսկ զինուորքն բերեալ նաւ փութացուցանէին անցուցանել զծերունի եպիսկոպոսն զսամուէլ ... յայնկոյս յԱւանն որ կոչի Կոթեր, քանզի և դատաւորն անդ իսկ էր ։ Պատճառ երկարատող վկայութեանս 'ի լաստիվերտցոյն, եղև առ 'ի ցուցանել ըստ կարի զգիրս Կոթեր աւանի, միանգամայն և եկեղեաց գաւառի՝ որ սահմանակից է մանանաղւոյ ։

Սեղջնոր ։ Զոր՝ ուր նահատակեցաւ և թաղեցաւ մըն թէոդորոս յաւուրս գրիգորի լուսաւորչի, յորում այս շինեցաւ վկայարան 'ի լուսաւորչէն, և եղև միայնարան .

(1) Ըստ որում յօրինակս ինչ գրի նաև Խաղ. Տայ նմա արբուցումն մահու 'ի Գեղն Խաղ ։

(2) 'Ի գեղջէ աստի ասի լինել Ստեփաննոս Գ. կաթուղիկոս 'ի վախճան ԺԳ. դարուն ։

որ և կոչի Գոգորէնոյ կողմն ըստ Թովմայի․ որոյ և գաւառ նշանակի յայսմաւուրս 'ի մայիսի 11. * 'Ի յերկրին Եկեղեաց որ է յԵզընկա' 'ի կողմն արևելից' է կառուցեալ գերեզման ոք նշխարաց նորա (որդւոյն Թորոսի), վանք տեղի կուսակրօն ճգնազգեաց անձանց միայնաւորաց (1). Այժմ կոչի Սերբերուն ըստ Թովմայ։

Սուրէն, կամ Սուրէնաշէն։ 'Ի նմին պատմութե յայսմաւուրս 'ի մայիսի 11. կոչի ուրեք Ասան, և ուրեք Ասանաշէն 'ի գաւառին Սալահունեաց, կամ որպէս այլուր գրի Սահալունեաց (2)։ Կոչեցաւ Սուրէն' յանուն իշխանին հօր Թէոդորոսի։

Կարնենից դաշտ։ Յիշատակի անդէն յայսմաւուրս, և դնի ընդ մէջ Դերջանու և Եզընկայ։

Սեկեֆողն (3)։ Զոր' ուր էր գիւղ, և հանդէպ գեղջն բարեհամ աղբիւր Արբենոյ ձայնեալ, կամ ըստ տպագրեալ յայսմաւուրաց Սրբենոյ։

ՄԱՆԱՆԱՂԻ։

Սահմանակից եկեղեաց և հարքայ ծանուցանէ լինել այս բան լաստիվերտցոյն 'ի գլ. Թ. * Յարևելից կողմանէ ելեալ ընդ ապահունեաց և ընդ հարքայ գաւառն անցեալ 'ի Մանանաղի, իջեալ և յեկեղեաց‖։ Իսկ անուն նորա ցուցանէ լինել 'ի նմին' հանք ազնիւ աղի, մանանայի նմանեցուցեալ, ուստի և մեզ երևի թէ այժմ անկանի 'ի Թէքման և 'ի Խնուս' ուր ելանէ աղ ընտիր (4)։

'Ի գաւառի աստ էր այրն դժուարին' ուր ամրացան երեքկին նախարարք յափշտակօղք գանձուն գ. արշակայ, զոր Խորենացին գ. 45. ստորագրէ յասելն։ * Փախըստեայս արկանէր (սամուէլ մամիկոնեան) յամուր Այրս 'ի գաւառին Մանանաղւոյ, յոր մուտ ոչ գտանէր, բայց 'ի կողմանէ դոյզն ելք էին առ 'ի Թաւալ. և առաջի դըրաց Այրին' սեպ էր ուղղորդ միապաղաղ, և 'ի վերուստ պաղանձաւքուաւոր, որ հայի յանդունդս խորաձորոյն. և որ ինչ զերծանի յանհնարին ուխս սաստկու-

(1) Այս պատմութի ոչ գտանի 'ի հին օրինակս յայսմաւուրաց։

(2) Է գաւառ անծանօթ, զոր ոչ յիշատակէ Խորենացին։

(3) Թուի լինել անուն յունական։

(4) Տես 'ի Նոր հայաստան, 'ի թղթ. 83։

Թէ անկանի՝ անդադար հոլովմամբ գլորեալ, ոչ ուրեք լինել (1) անկուխ ‖:

Զ եպիսկոպոս գաւառիս յիշատակէ ղազար փարպեցի մի 'ի Թղթոյ Նոցա՝ որք գրեցին պատասխանի Նամակին պարսից. կոչելով 'ի Թղթ. 75. * Տէր Զաւէն եպիսկոպոս Մանանաղւոյ ‖:

Մեծատաբերդ: Լաստիվերտցին 'ի գլ. ժա. յայս անուն կոչէ զլեառն յամէն. Որս պատրաստեցաւ * Մանանաղւոյն 'ի լեառն որ կոչի Մեծատաբերդ ‖: Նաև ստորև դնէ 'ի նմա և բերդ, և առաւել ստորև 'ի բաղմաւորականն կոչէ Լերինտ ամրոց: Նոքին զայն պարսիկք և սկիւթացիք 'ի 1048. չարաչար հարուածս անեալ 'ի վերայ փախստէից անդր ամրացելոց.

Ճէրնի. Ներդաքաղաք՝ զոր արիստակէս լաստիվերտցին 'ի գլ. իզ. դնէ 'ի Մանանաղւոյ սահմանս:

Կաշէ. և Եղնոյ: Կրկին գեօղք 'ի նոյն սահմանի՝ որք էին կալուածք երկուց կանանց սահելոց յաղանդ Թոնդրակեցոց: * Անէին (աւէ) գեօղս երկուս, զնոսա կաղաղս և համգրուան պատրաստական արարին վիշապ օձին կամակորի ‖: Նաւ զինի կոչէ Եզարակս, յամէն, * Նաւ զԵզարակն որ իւրեանց բնական տեղիք էին՝ զորս յառաջ ասկաւ մի յիշեցաք, որոց անուանքն կոչին միումն Կաշէ, և միւսումն Եղնոյ. զբնակիչս տեղեայն զամենեսեան ընդ Նոքեանս միաբանեցին ‖:

Թուլխումբէթ կամ Խաչ Նուան, և Գերմոյ Քաղաքագեօղ: Տեղիք զորս լաստիվերտցին 'ի նոյն գլ. իզ. երևի դնել 'ի Մանանաղւոյ սահմանս (2): Ասան առաջինոյն գրէ. * 'Ի հատուածս լերինն Պախրոյ՝ որ այժմ կոչի Պոայլախտաղ (3), առաջին հարցն Նուան ինչ էր՝ զոր Թուլխումբէթ կոչեն, ուր զմեծային նշանն բազմապայծառ վայելչութք կանգնեալ էին, որ և զանուն դեղջն 'ի նոյն փոխեալ, Խաչ անուանեն մինչև ցայսօր ‖: Պատմէ ապա՝ եթէ զխմբով աղքանեանք երկուց կանանցն կործանեցին զխաչն 'ի գիշերի, և փախեան 'ի վերոյիշեալ գեօղս, և ապա

(1) Յայլ օրինակ խորենացւոյն Գոտնէն:

(2) Զայսոսիկ և զվերոյիշեալ տեղիս 'ի Մանանաղի կարգեցաք, հայելով 'ի խորագիր իզ. գլխոյ լաստիվերտցւոյն, ուր խոստանայ նա պատմել որ ինչ 'ի Մանանաղւոյ սահմանսն եղեն. զի գրէ * Թէ որպէս և 'ի Մանանաղւոյ սահմանն, բորբոքեցաւ հրդեհ մոլորութեն՝ ասելի է ‖:

(3) Զգրից լերանցս լիցի բան և 'ի Ներածութեն Հին հայաստանեայց:

յիւրեանց հետոյն ըմբռնեցան. քանզի գրէ յիշելով զերկրորդ տեղին՝ յասելն. * Մեց 'ի նոցանէն՝ զորս վարդապետս ասէին լինել չար և պիղծ կրօնիցն, զնոսին ձերբակալ արարեալ՝ գայ ժողովն (եպիսկոպոսաց և երիցանց հանդերձ ժողովրդովք) 'ի Պաղաքագեօղն որ կոչի Գերմայ ‖ :

## ԴԵՐՋԱՆ :

Սահմանակից է եկեղեաց յարևելից կողմանէ, որպէս յայտ է յայժմեան դրից, յոր անուն կոչի մինչև ցայսօր: Այս գաւառ եղև մի 'ի նախաշակերտեալ գաւառաց նըյն գրիգորի (որոյ բնակիչք վայրենացեալ էին 'ի խորին տգիտութե և 'ի հեթանոսական պղծութե,) զորմէ այսպէս պատմէ ագաթանգեղոս ('ի թղթ. ճծգ.) *Ապա փութացեալ հասանէր 'ի գաւառն Դերջան, զի և անդ յառաջացի նուլ զառաքելական քարոզութեանն զաւրուեստս մշակութե, և զերծուցանել զնոսա 'ի գալշելի 'ի դիւական սատանայակիր բարուցն ձիւաղութէ. ընդ խուժադուժ կողմանն աշակերտեալ՝ զխոշորագոյն և ընդ խեցբեկագոյն զբարս հեթանոսութեն շրջել 'ի զգաստութի ոծուայց իմաստութեն, ծանօթս աւետարանական աւետեացն յարդարեալ ընդելս կացուցանէր ‖ :

Զ եպիսկոպոս գաւառիս Գինթ, կամ Գնիթ անուն յիշատակէ խորենացին Գ. 57. առ ժամանակօք մեսրոպայ. *Առեալ (նըյն սահակայ) զմեսրոպ և զվարդանտայ ցեպիսկոպոսն Դերջանու ցԳնիթ ‖ : Յիշէ զնոյն և կորիւն յասելն. *Առեալ երանելւոյն (մաշթոցի) ընդ պատուական եպիսկոպոսն Դերջանոյ՝ որոյ անուն կոչէր Գինթ ... հասանէին թագաւորակաց քաղաքն կոստանդինական ‖ : Նա երանելին մեսրոպ որ և մաշթոց՝ վերակացու եթող ուսմանց 'ի Դերջան ըստ խորենացւոյն Գ. 60. Զ նոյն եպիսկոպոսն զԳնիթ :

Բագառինջ: Այսպէս կոչի առ խորենացւոյն Բ. 13. կամ ըստ այլ օրինակի 14. *Կանգնեաց (միջին տիգրան) զոլոմպիական պատկերն դիոսի յամուրն յանի ... և զՀեփեստոսն 'ի Բագառինջ ‖ : Իսկ առ ագաթանգեղոսի 'ի ճծդ. կոչի Բագայառիճ, կամ ըստ տպ. Բագայառիճ. առ տօղկայ Գ. 27. Բագառիճ : Պարթևական համարի զաւ-

Նուռն (1) ագաթանգեղոս, որ և կոչէ զնա Գոհղ, և դնէ յայս գաւառ ։

Միջին տիգրան կանգնեաց 'ի սմա զպատկեր եփեսատու դիցն հրոյ, զբերեալն յեղլադայ 'ի ձեռն ա. արտաշէսի, շինեալ անդէն մեհեան, և առաջի մեհենին բագին. որմէ տես 'ի վերոյ զբանս խորենացւոյն ։ Նոյն մեհեան ըստ ագաթանգեղոսի կոչի Միհրական մեհեան. *Գայր հասանէր (սն գրիգոր) 'ի Միհրական (2) մեհեանն անուանեալ որդւոյն արամազդայ, 'ի գիւղն զոր Բագայառիճ կոչեն 'ի պարթևարէն լեզուէն. և զայն 'ի հիմանց բրեալ, և զգանձս մթերեալս աւար հարկանէին՝ և աղքատաց բաշխէին, և զտեղին նուիրէին եկեղեցւոյ. և զբնակիչս աշխարհին հաստատէր 'ի գիտութիւն ճշմարտութեան ‖ ։

Ըստ ասողկայ գ. 27. յիշատակի և Գաշտն յանուն տեղւոյս. Սպան ասէ՝ պուտիզ զօրավար ե. վասլի կայսեր զզօրտուանել ապստամբն, * 'ի Գաշտին Բագաւանայ 'ի Գարջան գաւառի ‖ ։

Խուճբրին Վան, կամ Սբ Գրիգոր ։ Մենաստան՝ շինեալ 'ի Ժ. դարուն 'ի կրօնաւորացն հայոց հալածելոց յաշխարհէն յունաց ։ *Նոյնպէս և 'ի գաւառին Գարջանայ (ասէ ասողիկ գ. 7.) Խլաձորին անուանեալ վանք, որ ըստ վկայարանի նորին Սբ Գրիգոր կոչի, 'ի ձեռն հօր Սիոնի հիմնացեալ ‖ ։

ՍՊԵՐ ։

Ստրաբոն կոչէ զսա 'ի ԺԱ. գիրս՝ Սիսպիրիտիս, և ստորև Սիսպիրիտիս, զոր և յիշէ յետ Ակիլիսինի գաւառին՝ որ է Եկեղեաց. և որպէս Թուի՝ է նոյն զոր ստորև կոչէ Հիսպիրատիս, ուր գտանի ... անք ոսկւոյ ։ Նոյնպէս դիւն պերիփերուժէն 'ի գիրս գ... ւաց ը. դնէ զՍիսպիրիտիս 'ի սահմանակցութե խաղտեաց, (ըստ որում է և Սպեր խորենացւոյն.) և դնէ զնոյն 'ի փոքր հայս, հայելով 'ի վիճակ իւրոյ ժամանակի ըստ առման յունաց ։ Ըստ չիչերոնի յատտիկեան ճառի կոչի Սիսբիրա ։

(1) Բանդի Բոգին է բառ պարթևական, որպէս և այլուր 'ի նորին պատմութենէ յայտ է ։

(2) Թուի եղեալ բառդ 'ի Միհր բառէն պարսից՝ որ է արեգակն ։

Զայս գաւառ՝ բագրատունեաց սեփհական լինել ակնարկէ խորենացին յասելն. Գ. 34, կամ 35. * Տուր առնելով դայեկի նորա (այսինքն Գ. Արտաշէսի) Սմբատայ որդւոյ Բիւրատայ Բագրատունւոյ 'ի Սպեր գաւառի 'ի չէնսն Սմբատաւանի ‖ : Եւ Գ. 43. 'ի գրելն վասն սահակայ բագրատունւոյ, թէ * Եղև քսութի սուտ զնմանէ (առ Գ. Արշակ) յազգականաց իւրոց 'ի Սպեր գաւառէ ‖ : Առ այս և տրդատ բագրատունի 'ի փախչելն իւր 'ի բակրոյ նահապետէն սիւնեաց՝ 'ի Սպեր գնաց, իբր յիւր սեպհական գաւառ՝ ըստ գրելոյ խորենացւոյն Գ. 60. կամ 61. * 'Ի ձի ելեալ հանդերձ հարճիւն 'ի Սպեր գնաց ‖ : 'Նաև առ Թովմայի արծրունւոյ Գ. 12. գտանեմք զոմն բագրատունի՝ իշխանիկ անուն՝ բնակեալ յայս գաւառ 'ի Ժ. դարուն, որ էառ 'ի յունաց զբերդն Արամանեակ : * Եւ գնաց գուրգէն 'ի Սպեր գաւառ, և էր յայն ժամ առեալ ('ի) յունաց գողաբար իշխանիկ կոչեցեալ 'ի տոհմէ բագրատունի, զբերդն Արամանեակ (1) կոչեցեալ ‖ :

Յայսմաւուրս 'ի մարտի 30. յիշատակի և Տեառն սորա՝ ուր ասի. * Անդրէաս այն յաշակերտաց՝ սրբոյն սահակայ պապուն շուշանայ ... եկն եհաս 'ի Սպեր գաւառ ... անդէն եկաց և դադարեաց ամս Է. 'ի խորշ մի լերինն Սպերոյ ‖ :

Զնոր լուսաւորութիւն և զվարդապետութիւն մեսրոպայ՝ ընկալան բնակիչք գաւառիս 'ի ձեռն զղևոնդեայ և Ենովքայ աշակերտաց նորին երանելւոյ, զորս նա ինքն եթող վերակացուս յայս գործ : * Թողեալ (ասէ խորենացին Գ. 60.) վերակացուս յիւրոց աշակերտացն 'ի նմին տեղւոջ զղևոնդ և զԵնովք 'ի Սպեր ... ինքն եկեալ յայրարատ ‖ :

Սմբատաւան : Խորենացին (Գ. 34, կամ 35.) կոչէ Շէն Սմբատաւանի (2). իսկ վարդան՝ Բերդ, 'ի գրելն վասն աշոտոյ մանկերի. * Եւ ինքն նմանեալ նախնեացն իւրոց սմբատայ որդւոյ բիւրատայ իշխանի Սմբատաւանայ՝ որ է Բերդ 'ի Սպեր գաւառի (3) ‖ :

(1) Չէ մարթ ստուգագոյն ինչ որոշել, եթէ արդեօք այս Արամանեակ բերդ՝ էր 'ի սահմանին Սպերոյ, եթէ արտաքոյ. քանզի որպէս զԻշխանիկ բնակիչ գիտէ բանս Սպերոյ, ոչ նոյնպէս յայտնի ցուցանէ և զԱրամանեակ բերդ լինել 'ի Սպեր :

(2) Տես զբանս խորենացւոյն 'ի վեր անդր :

(3) Այսպէս գնեն երեք օրինակք. իսկ յայլ յերկուս հին օրի-

## ՇԱՂԱԳՈՄՔ (1).

Յայսմ գաւառի ըստ Խորենացւոյն էին Անապատ և Ծովանաւոր տեղիք, ուր և ուսոյց 'որն Մեսրոպ զառաջին խումբ աշակերտաց իւրոց։ * Մեսրոպայ (տես Գ. 60.) հեցեալ յԱնապատ և 'ի Ծովանաւոր տեղին որ Շաղգոմքն անուանին՝ բովանդակեաց վարդապետութիւն առաջին առելոցն խմբից ||։ Յիշէ զայն և Ղազար յառէն 'ի Թղթ. 253. * Նա ընթեալ յոքաղն (զօրավարն պարսից Հազարաւուխտ)... լսէր 'ի վաղուն Թէ մամիկոնեանն վահան մօտ է 'ի նա 'ի վարայր վարոյն 'ի հուռմ սաման 'ի գաւառին որ կոչի Շաղագոմ ||։ Նաեւլոյն մօտ է 'ի նա, խմնայ զՎերաղէ գնալու տայոց՝ որում է սահմանակից։

## ԿԱՐԻՆ.

Պլինիոս Ե. 24. կոչէ Caranitidem, զոր և անուանէ Նախարարութի մեծին հայոց, և անդ դնէ զակն եփրատայ, որպէս և Խորենացին 'ի կարին։ Ստրաբոն՝ ևս մերձաւորագոյն ընիկ հնչմամն կոչէ 'ի ԺԱ. գիրս. Թղթ. 528. Καρηνῖτιν, որպէս է տեսանել 'ի ձեռագիրս ըստ վկայելոյ Քազաւպոնի, և ըստ ուղղելոյ Սալմասիոսի. վասն որոյ և Հարտուին սոյին անուամբ բերէ 'ի վկայութի. իսկ 'ի տպագրեալն վրիպակաւ գրի Ξερξηνήν (2)։

Զսա միանգամայն ընդ Քսերքսինեի դնէ Ստրաբոն՝ Ակիլիսէնէ Փոքուն հայոց, որպէս և է ճշմարտութի. այլ յետ դնելոյ սահմանակից՝ դնէ, և ձեռն նորա այսինքն փո-

նակս՝ փոխանակ բառին Βηρυ, գրի Βιβηρυ։ Տես վասն այսր զԲռաբերդ 'ի Խաղտիս։

(1) Այսպէս ունին երկու ձեռագիրք աշխարհագրութե Խորենացւոյն. ուր օրինակ մի Շաղգոմք. իսկ 'ի տպագրեալն դնի Շաղգամք։ 'Ի պատմութե Խորենացւոյն Գ. 60. գրի ըստ ձեռագրաց Շաղգոմք. իսկ առ Ղազարայ 'ի Թղթ. 253. Շաղգոմ։

(2) Այսմ ոչ մտադրելով Մառտինեայ 'ի բառն Καρηνῖτις, տարակուսի ընդ Հարտուինն, և համարի՝ թէ Հարտուին զայլ ինչ տպագրութե օրինակ Ստրաբոնի կոչէ 'ի վկայութի, և ոչ զայն՝ որ է սովորական. զի 'ի Թուղթ 528. զոր նշանակէ Հարտուին, ոչ գտնի առ է զայն անուն։ Սխալ է նշանագրեալ առ Մառտինեայ նաև Թիւ գրոց Ստրաբոնի, զի բառս Καρηνῖτις ոչ է 'ի ԺԱ. գիրս Ստրաբոնի, որպէս եդեալ կայ անդէն, այլ 'ի ԺԲ. գիրս։

քում հայոց, որ վրիպակ Թուի գրչաց՝ զի է ներհական. վասն որոյ և մերժէ չելլարիոս զայն յետին բան ադրավո-նի: Իսկ ես չէ պարտ շփոթել զայս Դասպանիդիս ընդ Դարանա քաղաքին՝ յորմէ և գաւառն կոչեցաւ Դարանի-ղիս ըստ ադրավոնի, զոր յիշա- -կէ 'ի ԺԲ. գիրս. Թուղթ 560:

Անի դաշտ արձակ՝ որ յիշատակի առ լաստիվերտցոյն 'ի գլ. Բ. ուր ասէ վասն կայսեր վասլի. * Ի ՆԷ. Թուականին ... եկեալ ինքեամբ առնէ յընդարձակ դաշտին Կարնոյ ‖:

Պաշար յիշատակէ և զՈստին Կարնոյ՝ յասելն Թղթ. 259. * Իսկ զօրավարն հայոց վահան մամիկոնեան եր-թայր ընդ կողմն արևելից Ոստան Կարնոյ... և մտ-եալ 'ի տոհմէն մամիկոնէից, և ներսէհ կամսարական տէրն շիրակայ ընդ կողմանն հիւսիսոյ Ոստան վրիպեալք առ փոյթ ժամուն 'ի զօրավարէն հայոց... և մերձեալք 'ի գիւղ մի կարնոյ՝ որում անուն էր արծաթի ‖: Ակն ծովակ այն է՝ զորոյ խորենացին Գ. 59. ստորագրէ զծա-գումն 'ի գրեն զքաղաքէն կարնոյ. քանզի ասէ. * Ոչ կարի 'ի բացեայ տեղեացն՝ ուր եփրատայ մասինն ինչ ըղխեն աղբեւրք ականց, և հանդարտ գնացիւք յառա-ջացեալ ծովանան Մօրաբար երևութիւք, յորում ան-բաւութիւք ձկանց, և զանազան հաւուց ձարակաւորաց, յորոց 'ի ձուոց միայն կերակրեալ լինէին բնակիչքն: Իսկ զեզերբ Մօրին շամբք, և բազմութիւն եղեգանց ‖: Տես զայսմանէ և 'ի Նոր հայաստան. 'ի Թղթ. 60. 61:

Կարնոյ քաղաք (1): Յունարէն կոչեցաւ Թէոդոսուպօլիս,

(1) Այսպէս կոչի 'ի խորագրի խորենացւոյն Գ. 59. և յաշխարհագրութեն Թղթ. 33. ըստ երկուց ձեռագրաց. առ յովհաննու կաթողիկոսի և առ ասողկայ՝ բազում ուրեք. առ սամուէլի՝ 'ի ՁՂ. Թուականին, առ լաստիվերտցոյն գլ. ԺԱ. և առ կիրակոսի՝ որ գրէ վս փոքուն Թէոդոսի: * Ետ հրաման և աշխարհէին հայոց շինել քաղաք 'ի Կարին գաւառի, և անուանել զնա Թէոդուպօլիս, որ այժմ կոչի Կարնոյ քաղաք ‖: Այսպէս կոչի նաև առ յետագայ մատենագիրս, որպէս յայսմաւուրս մարտի 30: * Գրիգոր առեալ զզօրս իւր քաջ արանց իբրև երից հազարաց՝ վս զօրացն յունաց որ էին 'ի Կարնոյ քաղաքն Թէոդուպօլիս որ է Արզրում ‖: Վս որոյ ոչ ուղիղ գրի առ ոմանս Կարին քաղաք, որպէս տեսանեմք առ ստեփաննոսի օրպելեանց յոտանաւոր ողբսն. * Բագուան և Կարս՝ Է Բասենին, Կարին քաղաք՝ Բարձրը հային ‖: Առ ասողկայ 'ի Բ. 3. և 4. գրի Քաղաք Կարնայ, ըստ որոյ հնչման Թերևս բնակիչն առ ղազարայ յերես. 259. կոչի՝ Կարնացի: Թովմա արծրունի ('ի Գ. 4.) կոչէ Կարնային քաղաք:

որ հայերէն առ Խորենացւոյն գ. 59. գրի ըստ ձեռագրին Թէոդոսուպօլիս, որպէս և առ Յովհաննու կաթողիկոսի, և առ Լաստիվերտցւոյն Է: Իսկ առ Ասողկայ գ. 7. առ Կիրակոսի, և առ Վարդանայ աշխարհագրի Թէոդոսուպօլիս:

Նոյն անուն Թարգմանի առ մեզ՝ Թէոդոսի քաղաք, նմին իրի 'ի նոյն անուն կոչէ զսա Թովմա Արծրունի յասելն. * Նա 'ի հասանելն 'ի Թէոդոսի քաղաքն 'ի Կարին գաւառ, եհաս ըստ նորա առ կայսր միքայէլ‖:

Պիշինկ գրէ՝ թէ կոչեցաւ նաև Պոլինփոլս. այլ զայս անուն յիշատակեալ յապուլֆետայէ և 'ի եագութայ՝ ուղղագոյն ևս կոլլիոս առ պօտրանայ՝ համարի անուն Հասանգալայի, զորմէ տես 'ի Նոր Հայաստան, 'ի Թղթ. 87. Իսկ այժմ կոչի Էրզրում:

Շինեցաւ 'ի դաշտի Կարին գաւառի՝ առ ստորոտով լերին զորոյ զտեղին այսպէս ստորագրէ Խորենացին գ. 59. * Ոչ կարի 'ի բացեայ տեղեացն՝ ուր եփրատայ մասինն ինչ բղխեն ակունք ... և առ ստորոտով մի գեղեցկանիստ լերինն գտեալ բազում աղբիւրս ականակիտս և մանուանս բղխեալ, անդ ետեղադրեաց (1) զքաղաքն‖:

Փոքրն Թէոդոս կայսր ետ շինել զնոյն 'ի սկիզբն Ե. դարուն, 'ի ժամանակս ատտիկոսի պատրիարգին կոստանդնուպօլսոյ, 'ի լինել պատսպարան ընդդէմ պարսից, որպէս գրէ նա ինքն Թէոդոս 'ի թուղթն որ առ սահակ կաթուղիկոս առ Խորենացւոյն գ. 57. * Հրամայեցաք քաղաք շինել յաշխարհին հայոց յապաւինութիւն ձեզ մերոց զօրաց‖ (2):

Զհրաման Թագաւորին անատոլիս զօրավար նորին եդ 'ի գործ, և լրացոյց զշինութիւն (3), զորմէ պատմէ Խորենացին գ. 59. * Զորով (այսինքն զքաղաքաւն) շրջափակեալ խոր փոսիւ անդնդալիր հաստատեաց զհիմունս պատուարին, (որ է կրկնապարիսպն՝ ստորագրեալ

(1) Յոլում ձեռագրի Տեղադրեաց:

(2) Ասողիկ և Վարդան՝ որք դնեն 'ի ժամանակս մեծին Թէոդոսի:

(3) Վերակացու այսր գործոյ շինութեան դնէ Վարդան աշխարհագիր զմովսէս քերթող, և զդաւիթ անյաղթ, յորոյ յառաւել որոշումն յաւելու հեղինակն յայսմաւուրաց 'ի փետր 19. Մովսէս Խորենացի Քերթողն Գրիգորայ Վարդապետի: Այլ չէք գտանել զայս առ նախնի մատենագիրս. և լռութիւն Խորենացւոյն 'ի պատմել կամ յիշատակել զայս, նաև անհամաձայնութիւն ժամանակին ընդ հասակի Խորենացւոյն՝ ցուցանեն զստութիւն իրացդ:

'ի Նոր Հայաստան Թղթ. 66.) և 'ի վերայ բարձրաբերձ ահագինս շինեաց աշտարակս, յորոց զառաջինն Թէոդոս անուանեաց 'ի պատիւ Թէոդոսի. և 'ի նմանէ և անդր շինեաց աշտարակս ժայռաւորս իբրև զնաւացուցս, և առանցս գոգաւոր խորշիւք՝ որք ընդդէմ Հայկին լերինն. սապէս և ընդդէմ դաշտին Հիւսիսոյ. իսկ ընդդէմ արևելից և արևմտից՝ կանգնեաց աշտարակս բոլորաձևս: Նաև 'ի մէջ քաղաքին 'ի բարձրաւանդակ վայրի՝ մԹերանոցս բազմապատիկս շինեաց, և Օգոստիոն անուանեաց 'ի պատիւ Օգոստի (այսինքն՝ կայսեր): Նաև այլ ջուրս ածեալ ընդ յոլով տեղիս մտոյց անյայտ զնացիւք||:

Պրոկոպիոս (1) ստորագրէ զշինուԹի Թէոդոսուպօլիս քաղաքի ինչ 'ի մեծ Հայս: * Իբրև Թէոդոս կայսր (ասէ՝ որով իմանայ զփոքրն,) զրաւեաց զԹագաւորուԹիւն արշակայ (այն ինքն է Դ. արշակ որդի պապայ,) կառոյց բերդ 'ի բլրի ինչ՝ անուանեալ Թէոդոսուպօլիս, դիւրին յառնուլ. որպէս և էառ իսկ կաւատ արքայ պարսից 'ի խաղալն իւր յամիդ: Յետ սակաւուց անաստաս կայսր շինեաց անդ քաղաք՝ պարսպաւ շրջապատեալ զբլուրն յորում էր բերդ Թէոդոսի. և Թէպէտ յիւր անուն կոչեաց զքաղաքն, այլ զանուն Թէոդոսի զնախկին Հիմնադրի՝ ոչ կարաց խափանել... Այս պարիսպ Թէոդոսուպօլեայ էր լայն յոյժ, այլ խոնարհ ըստ բարձրուԹեն, գոլով 30 ոտնաչափ. որով և դիւրին էր Թշնամեաց առնուլ, մանաւանդ պարսից՝ 'ի ժամանակս յարձակման։ Զանէր իւր 'ի պատսպարուԹի պատուար ինչ, կամ պարիսպ փոքր, և ոչ իսկ խրամ, այլ ընդ Հակառակն՝ վերամբարձ բլուր ինչ բարձրացեալ կայր 'ի մօտոյ 'ի վերոյ քան զպարիսպն: Սորին աղագաւ Յուստինիանոս կայսր խրամ խոր առ պարսպաւ բացեալ, և զբարձրաւանդակն զայն Հարթայատակ գործեալ՝ դարձոյց զտեղի նորին 'ի վիՀս անմատոյցս և 'ի խոխոմս ահագինս: Նաև առ 'ի ըզպարիսպ քաղաքին գործել բարձր յոյժ և անառիկ, ետ շինել 'ի նմա զայն ամենայն ամրուԹիւն՝ զոր շինել տուեալ էր 'ի տարա քաղաք: 'Ի պարիսպն անդ եԹող միջոցս բացեալս՝ որչափ ինչ բաւական էր 'ի ձգել զէնս. շուրջանակի ածեալ սրաՀ քարակերտ, և 'ի նմա Թողեալ այլ ևս միջոցս բացեալս, կանգնեալ արտաքուստ և այլ պարիսպ երկրորդ. զիւրաքանչիւր աշտարակս դարձոյց 'ի մի

(1) Գիրք Գ. շինուածոց. գլ. 5:

մի բերդ՝ նման պարսպին տարայի։ Նա և այսպէս կարգեալ զսա զօրանիստ ամենայն զօրաց և զօրավարաց որ 'ի Հայս՝ անքոյթ կայցեն զազգն Հայոց յարշաւանաց պարսից ‖։

Մինչև ցաստ պրոկոպիոս, յորոյ 'ի բանս երեք ինչ անմիաբան գտանին ստորագրութե և պատմութե խորենացւոյն. Նախ՝ զի խորենացին դնէ՝ Ի ստորոտով լերին. իսկ սա՝ 'Ի վերայ բլրոյ. Թէպէտ զայս մարթ է համաձայնել։ Երկրորդ՝ խորենացին, որպէս և նոյն իսկ Թէոդոս կայսր 'ի Թղթին իւրում՝ կոչեն Մաղաք. իսկ սա՝ Իներդ, զոր նոյնպէս մարթ է միաբանել։ Երրորդ՝ խորենացին դնէ շուրջ զքաղաքաւն փոս խոր՝ որ է Խրամ, Աշտարակս բարձրաբերձս, զանազան ամրութիս. ըստ որոց համեմատութե յայտ է թէ էր և բարձրութի պարըսպին. իսկ պրոկոպիոս՝ Իներդ փոքր՝ դիւրին յառնուլ. զոր թէպէտ անաստաս ամրացոյց, այլ 'ի վերայ այսր ամենայնի՝ էր տկար, և պարիսպ նորա ցածուն։ Որով մնայ ասել՝ թէ պատմեալն աստանօր 'ի պրոկոպիոսէ՝ կամ է այլ 'ի Թէոդոսուպօլեայ խորենացւոյն, և կամ պրոկոպիոս զեղեալն նախ քան զյուստինիանոս՝ յորոյ ժամանակս էր, հարևանցի տեղեկութե գրէ, քանզի խորենացին որ բազում ամօք յառաջ է քան զյուստինիանոս և զպրոկոպիոս, ոչ կարէր դնել զխրամն և զայլ ամրութիւն՝ զորս սա տայ յուստինիանոսի, բայց եթէ գուշակելով։

Նոյն պրոկոպիոս (1) յիշատակէ և զԹէոդոսիուպօլիս ինչ քաղաք՝ զոր և դնէ * 'Ի Հայաստան առ սահմանօք պարսկահայոց ‖։ Այսինքն՝ առ սահմանօք այնր բաժնի հայաստանեայց, որ էր ընդ տէրութե պարսից. որոյ գոլով ասէ՝ զառաջինն Գիւղ ինչ, անուամբ Աեթ ունելով 'ի Թէոդոսէ արժանապատուութի քաղաքի՝ յանուն Թէոդոսի կոչէր. այլ անաստաս կայսր պատեաց զայն Անաստասիուպօլիս, նման տարա քաղաքի. որով երկոքին ևս եղեն մարտկոցք յարմար առ 'ի գդէմ ունել պարսից։

Զայս մառդինիկ համարի այլ 'ի վերոգրեալ Թէոդոսիուպօլեայ պրոկոպիոսի. և արդարև երկուս տարբերութիս ցուցանէ պրոկոպիոս. մի՝ զսա դնէ Գիւղ՝ յանուն Թէոդոսի կոչեցեալ, սակս 'ի նմանէ ընդունելոյ արժանապատուութի քաղաքի, և ոչ թէ սակս շինութե ինչ առնելոյ 'ի նմա. երկրորդ՝ անաստաս պատեաց ասէ զսա Անաստասուպօլիս. իսկ վասն պարսպաց միայն զոր շինեաց

(1) Գիրք Ա. պատերազմին պարսից. գլ. 10։

անաստաս՝ գրէ, թէ Պիւրլին էր յառնուլ։

Բայց եթէ հայեցուք յոհ՛ պրոկոպիոսի՝ պարտ է զերկոսին համարիլ մի, որք յանուն Թէոդոսի կոչեցան, յանաստասայ նորոգեցան, և 'ի յուստինիանոսէ ևս առաւել ամրացան։ Քանզի պրոկոպիոս 'ի գիրս շինուածոց 'ի բարձրացուցանել զգործ յուստինիանոսի, զտկարութի շինուածոց առաջին Թագաւորաց մանրամասն պատմէ. իսկ զամրութիւն զոր արարին այլ Թագաւորքն՝ կամ ոչինչ, և կամ 'ի հարևանցի։ Յայտ է այս և 'ի վերայ տարայի գիրք ա̃. պատերազմին պարսից գլ. [illegible]. ուր 'ի պատմելն զշինութի անաստասայ՝ կոչէ, Քաղաք հզօր, ամուր, և հոյակապ. և գիրք բ̃. գլ. 13. մի ըստ միոջէ ստորագրէ զհաստատութի պարսպաց նորին տարայի։ Իսկ 'ի բ̃. գիրս շինուածոց գլ. 1. ուր ունի պատմել զշինութիւն յուստինիանոսի, զպարիսպ տարայի շինեալ յանաստասայ ցուցանէ տկար, ոչ առ երկարութե ժամանակին՝ այլ զի բուռն շինուածն առ շտապելոյ չէր առէ՝ շինեալ խնամով. և մանրամասն ստորագրէ զտկարութիւն։ Ըստ այսմ իմաստասիրելով և վասն շինութեան Թէոդոսուպօլեայ՝ զերկոսին ևս համարիմք մի։

Իսկ զոր պրոկոպիոս 'ի գ̃. գիրս շին. գլ. 1. կոչէ զսա (այսինքն՝ զգրեալն 'ի ա̃. գիրս պատերազմին պարսից,) Նէոս Թէոդոսիուպոլիս, անդ տարբերել կամի՝ ոչ 'ի Թէոդոսուպօլեայ՝ զորմէ խօսի զկնի 'ի գ̃. գիրս շին. գլ. 5. այլ՝ զորմէ սուղ ինչ յառաջ խօսեալ էր գիրք բ̃. շին. գլ. 5. որ է կառուցեալ 'ի միջագետս առ ավօրրա գետով 'ի սահմանակցութե պարսից՝ տարբեր յերկոցունց աստի։

Բայց թէ և զերկոսին Թէոդոսուպօլիս պրոկոպիոսի որ 'ի հայս՝ համարեսցուք 'ի միմեանց այլևայլ, սակայն զայն՝ զորմէ խօսի 'ի գիրս պատերազմին պարսից, պարտ է համարել նոյն ընդ Թէոդոսուպօլեայ խորենացւոյն, որ է Էրզրում, որպէս համարի և մառդինեն. քանզի պրոկոպիոս ստորև 'ի գլ. 17. զակն եփրատայ հեռի դնէ 'ի Թէոդոսուպօլեայ աստի 42 ասպարիզօք, որ առնէ սուղ ինչ աւելի քան զ5 մղոն, յարմար դրից Թէոդոսուպօլեայ խորենացւոյն և Էրզրումայ։ Յորմէ ևս առաւել հաստատի ասացեալն մեր զպրոկոպիոսէ, զի սա ոչ յիշատակէ շինութի ինչ արարեալ 'ի Թէոդոսէ յայս Թէոդոսուպօլիս. և սակայն 'ի խորենացւոյն գիտեմք՝ որչափ ինչ արար նա անդ 'ի ձեռն անատօլեայ զօրավարին։

Յուստինիանոս կայսր 'ի Թէոդոսուպօլիս հայոց՝ շի-

նեաց և եկեղեցի յանուն Ծածնի, և մերձ 'ի Թէոդո-սիուպոլիս նորոգեաց զմնասատան Խ. մարտիրոսաց, որ-պէս գրէ պրոկոպիոս 'ի գիրս շին. գ. 4։

Եպիսկոպոսունք քաղաքիս յիշատակին յայլևայլ գիրս. այսինքն՝ 'ի ստորագրութիւս հարց ժողովոյն հռոմկլայու յամին 1179. Ծատուր եպիսկոպոս Թէոդոսիուպօլեայ։ Իսկ առ կերակոսի յիշատակեալ 'ի ԺԳ. դարուն Սարգիս եպիսկոպոս. և 'ի ԺԳ դարուն՝ Սիմէոն պէտ եպիսկոպոս Կարնոյ։

Այս քաղաք գումարեցաւ և ժողով եկեղեցական յաւուրս եզրի կաթողիկոսի, և հերակլի կայսեր 'ի սկիզբն Է. դարուն, յամի 629։

'Ի նմին քաղաքի նահատակեցան և երկու եղբարքն Սահակ և Յովսէփ յաւուրս ա. Նիկեփորոսի կայսեր յունաց յամի 808. 'ի ձեռաց հագարացւոց. որոց գերեզմանք կան մինչև ցայժմ յէրզրուում։ Տես 'ի Նոր հայաստան. Թղթ. 68։

Յետ յերկուս տէրութիւս բաժանելոյ զհայաստան՝ այս քաղաք էր 'ի բաժնին յունաց, և ընդ տէրութբ նոցա. այլ 'ի 502. յելս օգոստոսի էառ կաւատ արքայ պարսից մատնութբ կոստանդինոսի զօրավարի՝ որ հրամանատար էր տեղւոյն (1)։ 'Ի յետագայ ամին՝ անդրէն առին յոյնք։

'Ի սկիզբն Է. դարուն 'ի ժամանակս փոկասու կայսեր՝ աշոտ ոմն հրամանաւ խոսրովու պարսից արքայի առնու զքաղաքն. իսկ զբնակիչս քաղաքին, և զկաթողիկոսն յոհան յետ երկուց ամաց փոխէ յահմատան. * Աշոտ ոմն (ասէ յովհաննէս կաթողիկոս) հրամանաւ խոսրովայ հասեալ 'ի հայս, և դիմեալ 'ի վերայ՝ խորտակէր զզօրսն յունաց... և ինքն կալեալ զգործ պատերազմին ընդ Կարնայ քաղաքի՝ առնոյր զնա. և յետ երկեամ մի ամաց զբնակիչս քաղաքին յահմատան փոխէ։ Նաև վասն զի ծերունի կաթողիկոսն յոհան կայր 'ի փախստականութե 'ի նմա, ընդ նոսին և նա ևս ըմբռնեալ վարեալ 'ի գերութիւն ||։

'Ի 647. առաւ 'ի հագարացւոց կամ 'ի սառակինոսաց (2). 'ի նոցունց էառ կոստանդին կայսր կոպրոնիմոս 'ի 755. կործանելով զպարիսպ նորա. և բացեալ զտուն

(1) Գրէն զայսմանէ պրոկոպիոս, Թէոփանէս յամի 497։ Եւագրիոս գիրք Գ. գլ. 37։ և Յեսուէ, կամ Յեսու սիւնակեաց առ ասսեմանեայ հատ. ա. Թղթ. 272։

(2) Շարունակող սամուէլի։

գանձուց՝ զբնակիչս քաղաքին զսատակինսոսն նոցին ընչիւք տարաւ յաշխարհն յունաց (1). այլ՝ ի յետագայ ամին, կամ ըստ կիրակոսի՝ զկնի երկուց (թերատ) ամաց, անդրէն շինեաց եղիտ, և զայլ տաճիկս բնակեցոյց 'ի նմա:

'Ի 807. սով ընդհանուր 'ի քաղաքին կարնոյ 'ի միում աւուր և եթ սպան ոգիս երեք հազար (2):

'Ի 950. կոստանդին պերփերուժէն (յերկրորդ անգամ թագաւորութե) առաքեալ զօրու ծանու զմճկիկ, պատառեաց զխանդակ (որ է խէնտէկ), այսինքն է՝ զխրամ քաղաքին. կործանեաց զպարսպաբերձ աշտարակս նորա. և այնպէս էառ զքաղաքն 'ի հագարացւոց (3).

Յետ այլոց առմանց պարսից 'ի Թ. և 'ի Ժ. դարուն, վասիլ կայսրն առաքեալ զնիկոմիդացի զոմն իշխան 'ի 1019. սկիզբն առնէ վերստին շինել (4):

'Ի 1231. էառ խորազմն (5):

'Ի նմին ԺԳ. դարու՝ իւանէ և զաքարիա եղբարքն հայկազունք որք զօրավարք էին թամարայ թագուհւոյն վրաց՝ հարկատու կացուցին Սուլտանն կարնոյ քաղաքին, ըստ գրելոյ կիրակոսի:

Այլ փութով 'ի մէջ նոյն դարուն էանց 'ի ձեռս մուղալ կամ մողոլ թաթարաց 'ի հիճրէթի 639. յամի 1241. որոց զօրավար բաչաղուչի անուն՝ նախ դեսպան առաքեաց տալ զքաղաքն. և զի բնակիչքն զդեսպանս անարգանօք արձակեալ նախատէին զնոսա 'ի պարսպաց անտի, սոցա սաստկութբ 'ի վերայ յարձակեալ՝ առհասարակ կործանեցին զործեօք զպարիսպն. զբազումս 'ի բնակչաց կոտորեցին, և զմնացեալսն գերի վարեալ՝ հրով այրեցին զքաղաքն, որ լի էր բնակչօք 'ի քրիստոնէից և 'ի տաճկաց: Յետ ժամանակաց ինչ հրաման ետուն շինութե նոյն թաթարք. կոչեցին և զեպիսկոպոս քաղաքին զՏէր Սարգիս, որ վերստին շինեաց զքաղաքն, յորում անդրէն ժողովեցան ցրուեալ և թագուցեալ բնակիչքն:

Միւս առումն 'ի թաթարաց 'ի նմին դարու յիշատակի առ կիրակոսի, որպէս և այլ գործք՝ 'ի ժամանակագրութեն զոր հաւաքեաց առաքել պատմագիր:

Իսկ 'ի ԺԷ դարու 'ի 1735. յայս քաղաք եղև դաշնագրութի օսմանեանց ընդ պարսից:

(1) Ասողիկ Բ. 4. և 6: և Կիրակոս:
(2) Սամուէլ:
(3) Ասողիկ Գ. 7:
(4) Լաստիվերտցի գլ. Բ:
(5) Շարունակող սամուէլի:

Արծաթի ։ Գիւղ՝ 'ի հիւսիսակողմն ծովակին (կամ ըստ Խորենացւոյն՝ Մօրին) Կարնոյ, զորմէ զաղաւր Թղթ. 259. * Մուշեղ . . . և ներսէհ . . ընդ կողմանն հիւսիսոյ ծովուն վճռեալք . . և մերձեալք 'ի Գիւղ մի Կարնոյ՝ որում անուն էր Արծաթի ։ Տես զայսմանէ և 'ի Նոր Հայաստան. Թղթ. 77 ։

Բլուրս ։ Գիւղ՝ զոր լատինլերոցին դ.լ. ԺԸ. դնէ յայս կարին գաւառ ։ * Իւր եկեալք անօրինացն՝ հասեալք 'ի գաւառն Կարնոյ՝ մերձ 'ի Գիւղն որ կոչի Բլուրս, և քանզի բնակիչք տեղւոյն շրջապատեալ (էին) պարսպաւ զբլուրն ։, ևն ։ Ուր և ընդարձակ պատմէ զառումն նորա յասպատակաւոր պարսից ։

Հնձոյ վանք ։ Շինեցաւ 'ի մէջն անդ Ժ. դարուն 'ի կրօնաւորացն հայոց՝ որք հալածեցան յաշխարհէն յունաց 'ի պատճառս հակառակութեան ։ * Նոյնգունակ և նոյնօրինակ (ասէ ասողիկ Գ. 7. շինեցաւ) Ս անքն Հնձուց 'ի Կարին գաւառի 'ի ձեռն հօրն Սարգսի՝ ամենայն օրէնօք լցեալ ։ (1) Յայս մենաստան պայծառացաւ յետ անդ Ժ. դարուն՝ առաջնորդ սորա Յովսէփ անուն, գովութք հռչակեալ յասողկայ, և 'ի լատինլերոցոյն դ.լ. Ժ ։ Տես զայսմանէ և 'ի Նոր Հայաստան 'ի Թղթ. 75 ։

Մարգփայ ։ Գիւղ՝ զորմէ բուզանդ Գ. 12 (ըստ երկուց ձեռագրաց.) * Արդ այս խադ բուն էր սա 'ի Կարին գաւառէ 'ի Գիւղջէ Մարագայ ։ Ուր 'ի տպագրեալն դնի Մարգփայ ։ Իսկ Խորենացւոյն Գ. 20. գրի Մարգփայ. * Յանձն արար (մեծն ներսէս զաղքատանոցն) խադայ, որ էր 'ի Մարագայ 'ի Կարնոյ սարկաւագ իւր ։ Իսկ առ ասողկայ Ը. 1. գրեալ կայ Մարգփայ, ուր ասի վասն նորին խադայ. * Եղեալ էր 'ի Կարին գաւառէ, 'ի Գիւղջէն Մարագայ ։

Արծն ։ Յայսմ գաւառի դնէ զսա Լատինլերոցին յաւելն 'ի դ.լ. Ժ. * Հռչակեալ է քեզ Թագաւորին տեղի բնակութե 'ի Կարին գաւառին յԱրծին Արանի. և եղեալ հայրապետին (պետրոսի) գայ 'ի մեծամեծ և 'ի շահաստան Քաղաքս մեր ։ Նոյնպէս և հեղինակն սուրբագրութե չորից գետոց տպագրեալ զկնի աշխարհագրութե Խորենացւոյն, զԱրծն դնէ մօտ 'ի Կարնոյ լերինս.

(1) Եթէ սոյդ համարեսցուք զաւանդութիւն որդի բնակչաց՝ որք 'ի մեծէն ներսիսէ շինեալ ասեն զայս մենաստան, որպէս և յակոբ պատրիարք նալեան համարի՝ զհետ երթեալ աւանդութե, յայնժամ զշինուածն պատմեալ յասողկայ՝ պայծառ է համարիլ նորոգութե ։

Եփրատ ելանէ ասէ՝ 'ի Կարնոյ լերանց՝ մօտ 'ի յԱրծն քաղաք։ Իսկ Լաստիվերտցին՝ ստէպ կոչէ զԱրծն՝ Քաղաք էր․ և ուրեք՝ Հոյակապ և ականաւոր ամենայն աշխարհաց․ և Թէ՝ * Ազատաւանք սորա փառաւորք . . . և իբրև ակն պատուական լուսազեղ պայծառութբ փայլէր Քաղաքս մեր 'ի մէջ ամենայն քաղաքաց․ ամենևին գեղեցիկ, բոլորովին զարդարուն ||։

Զառումն նորա և զմնաբարձ քանդումն 'ի ժա․ դարուն յաստատակաւոր Թուրքաց և պարսից՝ ընդարձակ ստորագրեն մատենագիրք մեր, յորոց Լաստիվերտցին 'ի գլ․ ժբ․ զինի ողբոցն՝ որովք ողբայ զառումն և զկոտորած քաղաքին, յաւելու․ * Ամենայն քաղաքն լի էր դիակամբք անկելոցն․ վաճառոյ փողոցք և նրբափողոցք և ընդարձակ սրահք . . . Իսկ զԹիւ քահանայիցն՝ որք 'ի սուր և 'ի հուր վախճանեցան՝ գտաք աւելի քան զՃ․ որք վիճակի տեարք էին և եկեղեցւոյ ||։ Իսկ ուռհայեցին Մատթէոս՝ կոչէ զնոյն Հռչակաւոր և Ռազմամեծ․ * Հասանէին 'ի Հռչակաւորն և 'ի Ռազմամեծն քաղաք հայոց՝ որ կոչի Արծն, և գտեալ անպարիսպ զքաղաքն, և անԹիւ բազմութբ լցեալ ||։ Զթիւ սպանելոցն ասէ լինել իբրև բիւրս ժե։ Յիշէ և զքորեպիսկոպոս քաղաքին Դաւիթ անուն․ և ութ հարիւր եկեղեցի ասէ լեալ 'ի քաղաքին։

Համաձայն մերոյն գրեն և մատենագիրք յունաց․ յորոց կեդրենոս (1) անուանէ զանուն քաղաքին Արծէ, և կոչէ Գոլուքաղաք (յն․ Գոմբրօլիս,) Թէպէտ և բիւրաւոր բազմութբ բնակչաց լցեալ ասորւոց և հայոց, և ընիկ վաճառականաց․ * Որք վստահացեալ (ասէ) յիւրեանց բազմութիւն՝ չառին յանձն ընդ պարսպաւ լինել․ այն զի և մերձ բնակեալ էին մեծի քաղաքին Թէոդոսուպօլսոյ՝ որ ամրապարիսպն էր և անմատոյց ||։ Իսկ յետ պատմելոյ զառումն քաղաքին 'ի Թուրքաց, զԹիւ կոտորելոցն սրով և հրով՝ ասէ լինել * Իբրու հարիւր քառասուն հազար արանց ||։ Ա՛ռ այլազգ գրէ և զմնարաս ժէ․ 25․ զորոյ զլանն՝ քանզի համաձայն են կեդրենոսի, և մերոց մատենագրաց՝ ոչ առնումք 'ի մէջ։ Տե՛ս 'ի Նոր հայաստան․ Թղթ․ 83․ Արծէր քաղաք։

(1) 'Ի մատենագարանն բիւզան․ հատ․ Է․ Թղթ․ 604։ Իսկ տպ․ գեան պատմագրաց, տպ․ վենետ․ փարիզու Թղթ․ 773։

### ՆԱՀԱՆԳ ԵՐԿՐՈՐԴ

# ՉՈՐՐՈՐԴ ՀԱՅՔ

Նախկին անուն նահանգիս 'ի գիրս մեր՝ կոչի Փոթէ, կամ Փոթաց աշխարհ. և 'ի գիրս յունաց աղձատմամբ՝ Սօփենէ. որպէս ունիմք ցուցանել ստորև: Իսկ անունս Չորրորդ հայք՝ զկնի ել յետ սահմանելոյ բաժանմանս ա. բ. և գ. հայք. որպէս և նոյն իսկ անունն Չորրորդ հայք ցուցանէ. զի առ 'ի անուանել Չորրորդ, հարկաւ 'ի մէջ բերէ զերրորդ հայսն:

Առաջին՝ առ որում գտանեմք յիշատակեալ զսորայս անուն՝ է գրեթէ խորենացին մեր, որ յիշէ յաշխարհագրութեան իւրում, նաև 'ի պատմութեան ա. 13. և գ. 44. Թէպէտ և յուստինիանոս 'ի լա. Նորահրամանին իւրում՝ ակնարկէ նախ առաջին ինքեան սահմանեալ զայս նահանգ: Նաև արդարև առ յոյնս յիշատակողք անուանս Չորրորդ հայոց՝ են զկնի յուստինիանոսի, որպիսի են գաւազանագիրք եպիսկոպոսարանաց՝ որ յաւուրս լևոնի և մասոնոյ. և պերփերուժէն 'ի գիրս կառավարութե. գլ. 22: Իսկ առ մեզ՝ յետ խորենացւոյն հազիւ ուրեք 'ի գործ ածի սորայս անուն. որպէս առ ասողկայ գ. 36. և առ յովհաննու կաթուղիկոսի, բայց և այն՝ վն պատմելոյ զբաժանումն արամայ և մօրկայ, և ոչ 'ի գործ ածեալ ինչ 'ի բանի:

Անուն Չորրորդ հայոց փոխեցաւ 'ի մօրկայ կայսերէն, և կոչեցաւ Յուստինիանոս նէոս, ըստ վկայելոյ յովհաննու կաթողիկոսի. * Նաև զՉորրորդն կոչեցեալ հայք, յորում մայրաքաղաք է Մարտիւրոսացպօլիս՝ այսինքն Նփրկերտ, (կոչեցաց) Յուստինիանու նիստ ||: Եւ զայս անուն ոչ այլ ուրեք գտանեմք 'ի գործ արկեալ:

Զդիրս սորա խորենացին դնէ՝ Առ երի բարձր հայոց. յայտ է թէ՝ 'ի հարաւոյ կողմանէ նորին: Յարևմտից նորա անցանէ եփրատ գետ՝ եկեալ յեկեղեաց գաւառէն.

զի որովհետև եփրատ բաժանէ զմեծ Հայս 'ի փոքր Հայոց, և Չորրորդ Հայք՝ է վերջին արևմտեան կողմն մեծին Հայոց, ըստ ցուցանելոյ Խորենացւոյն, հարկ է եփրատայ քերել զարևմտեայ կողմամբք Չորրորդ Հայոց:

Խորենացին 'ի պատմութեան իւրում, և յովհաննէս կաթուղիկոս՝ զՉորրորդ Հայս արտաքոյ մեծին Հայոց ցուցանել երևին. քանզի Խորենացին 'ի ա̃. 13. ասէ վասն Արամայ. * Ի տեղեացն այնոցիկ մինչև ցբուն իւր սահմանն՝ զբազում անբնակ երկիր ելից բնակչօք, որք Երկրորդ՝ և Երրորդ՝ անուանեցան Հայք, այլ և Չորրորդ: Այս է առաջին և ճշմարիտ պատճառն վասն անուանելոյ զարևմտեան մեր կողմն՝ Առաջին, և Երկրորդ, այլ և Երրորդ և Չորրորդ Հայք ‖: Բուն իւր սահման ասելով՝ իմանայ զմեծ Հայս, յորմէ տարանջատ կացուցանել երևի զՉորրորդ Հայս, ըստ որում կացուցանէ զմիւս երեսին Հայս. իսկ Արևմտեան մեր կողմն կոչելով՝ իմանայ զփոքր Հայս, յորում բովանդակեալ ցուցանէ զՉորրորդ Հայս:

Որոշագոյն ևս յովհաննէս կաթողիկոս զնոյն ցուցանէ. * Եւ 'ի Ծոփաց (ասէ) մինչև ցքաղաքն մարտիրոսաց՝ և յաշխարհն աղձնեաց արևմտեայ՝ (կոչեաց Արամ) Չորրորդ Հայք, այս մինչև ցսահմանս բնիկ տէրութեան իւրոյ ‖:

Իսկ թէ բնիկ այն սահման՝ էր մեծ Հայք, նա ինքն յաւելու. * Իսկ զսեպհական և զբնիկ աշխարհ իւր համատարած՝ զատ Մեծ Հայք անուանէ ‖:

Սակայն յայլոց բանից Խորենացւոյն, և այլոց աշխարհագրաց՝ այլազգ պարտ է իմանալ զայս բան: Զի նախ՝ նոյն ինքն Խորենացին յաշխարհագրութեան իւրում զՉորրորդ Հայս կացուցանէ ը̃. նահանգ մեծին, և ոչ փոքուն Հայոց: Եւ երկրորդ՝ որպէս Խորենացին՝ նոյնպէս և այլք առհասարակ՝ զեփրատ գետ բաժանիչ դնեն մեծին և փոքուն Հայոց. և զփոքր Հայս ձգեն մինչև ցեփրատ, և ոչ երբէք յայնկոյս եփրատայ յարևելեան կողմն, ուր է Չորրորդ Հայք: Որոշակի քան զայլսն ստրաւոն զՍոփինի՝ որ է հին անուն Չորրորդ Հայոց՝ դնէ յայնկոյս յարևելեան կողմն եփրատայ, հանդէպ գոմաղինի գաւառին ասորւոց՝ զորս բաժանէ եփրատ գետ:

Եւ այսպէս բան Խորենացւոյն որ առ Չորրորդ Հայս՝ թուի ինձ վասն անուանակոչութեան եւեթ, և ոչ վ̃ն դրից ասացեալ. որպէս թէ ասել, Արամ յԱռաջին Հայոց սկսեալ մինչև ցՄեծ Հայս՝ զանբնակ կողմանս ելից բնակ-

չօք, որք Երկրորդ, և Երրորդ Հայք անուանեցան. այլև Չորրորդ Հայքն ևս վասն այսր պատճառի յանուն մերոյն արամայ կոչեցաւ, և ոչ յանուն այլոյ ուրումն ա-րամայ՝ որպէս յոյնք կեղծէին, զորմէ տես 'ի փոքր Հայս:

Յովհաննէս կաթողիկոս 'ի վերոգրեալ բանսն զՉոր-րորդ Հայս որպէս ցուցանէ լինել արտաքոյ մեծին Հայոց, նոյնպէս ցուցանէ ձգեալ մինչև յարևմտեայ մասն աղձ-նեաց: * Մինչև (ասէ) ցքաղաքն մարտիրոսաց՝ և յաշ-խարհն աղձնեաց արևմտեայ, (այսինքն՝ յարևմտեան կողմն աղձնեաց, կոչեաց արամ) Չորրորդ Հայք ‖: Սւր որպէս չէ մարթ 'ի բաց առնուլ զքաղաքն մարտիրոսաց 'ի Չորրորդ Հայոց՝ քանզի ամենեքին անդ դնեն, նոյնպէս չէ մարթ 'ի բաց առնուլ զաշխարհն աղձնեաց արևմտեայ. քանզի նախնին օրինակաւ բանի դնէ զերկոսին: Նա և ար-դարև զՆփրկերտ՝ զոր խորենացին դնէ՝ գաւառ աղձ-նեաց, յովհան կաթողիկոս և այլք ոմանք համարին լինել նոյն իսկ քաղաքն մարտիրոսաց՝ որ է 'ի Չորրորդ Հայս. և զԱմիդ՝ որ է քաղաք աղձնեաց, դաւաղանագիրք ե-պիսկոպոսարանաց կայսեր լևոնի իմաստնոյ՝ դնէ 'ի Չոր-րորդ Հայս, թէպէտ և զՉորրորդ Հայս առնու անդէն ընդարձակ յոյժ:

Յորմէ թուի՝ թէ այն ամենայն սահման աղձնեաց՝ որ ձգէր յայսկոյս տիգրիսի, այսինքն՝ յարևմտեան կողմն կամ յաջակողմն տիգրիսի, կոչեցաւ նաև Չորրորդ Հայք, կամ շփոթելով՝ և կամ կամաւոր իմն փոփոխութ̃բ, անց-մամբ ժամանակաց իբր միով անուամբ կոչել զայն ամե-նայն սահման հայոց՝ որք անկանին ընդ մէջ եփրատայ և տիգրիսի 'ի սկիզբն միջագետաց: Քանզի Չորրորդ Հայք բղխէ զմեծ գետն տիգրիս՝ որ ընթանայ ընդ մասն ինչ սահմանի սորա, և գործէ զսկիզբն կամ զվերին և զհիւ-սիսային կողմն միջագետաց, որով և մասն ինչ Չորրորդ Հայոց անկանի 'ի միջագետս՝ և կոչի ՄԻՋԱԳԵՏՔ. ոչ տիրա-պէս առեալ Գաւառ կամ Սահման միջագետաց՝ որ է 'ի հարաւոյ տօրոսի արտաքոյ հայաստանեայց, այլ ըստ որում անկանի 'ի մէջ երկուց գետոցն եփրատայ և տիգ-րիսի:

Նմին իրի վասն սորա, և վասն աղձնեաց՝ պարտ է ի-մանալ զբանն պրոկոպիոսի (1). * Միջագետք է (ասէ) անուանեալ 'ի դրից իւրոց որ 'ի մէջ գետոց, որպէս և է

(1) Գիրք պատերազմին պարսից. ա. 17:

միաբան կարծիք, Թէպէտ և մասունք նորա բաց 'ի հասարակ անուանէ աստի՝ և այլով անուամբք կոչեցան. զի ոմանք զայն սահման՝ որ ձգի (սկսեալ 'ի վերուստ 'ի հիւսիսոյ) մինչև ցԱմիդ՝ կոչեն Հայաստան ‖: Որով ծանուցանէ պրոկոպիոս՝ Թէ այն սահման Թէպէտ էր Միջագետք, այլ կոչեն Հայաստան անուամբ, որպէս և զերդեսիոյ գաւառն (ասէ ստորև՝) Թէպէտ է Միջագետք, սակայն կոչեն Օսրոէնի:

Սոյնպէս և 'ի վերոգրեալ ծանօԹուԹեան անդ եպիսկոպոսարանաց, Չորրորդ Հայք՝ կոչի Միջագետք, զի դնի խորագիր. * Գաւառ Մերին Միջագետաց, կամ Չորրորդ Հայոց ‖: Վասն այսորիկ և զմարտիրոսաց քաղաքն պրոկոպիոս ուրեք դնէ 'ի Հայաստան, և ուրեք 'ի միջագետս. և կեդրենոս 'ի Թղթ. 686. զխարբերդ քաղաք Չորրորդ Հայոց՝ դնէ 'ի միջագետս. որպէս և այլք զարշամուշատ:

Բաց 'ի գետոյն Եփրատայ և Տիգրիսի՝ ընդ մէջ Չորրորդ Հայոց անցանէ Արածանի գետ, կամ միւս մեծ վտակն եփրատայ բղխեալ 'ի ծաղկոտան:

Ունի զլեառն Կոհերայ, զորմէ ասողիկ գ. 43. * Եւ անցեալ Թագաւորն ընդ հանձիթ, և ընդ բալու՝ ելանէ 'ի լեառն Կոհերայ . . . որ ընդ մէջ հաշտենից՝ ծոփաց՝ և խորձենոյ ‖: Այլ զայսմանէ լիցի բան և 'ի ներածուԹեան Հին Հայաստանեայցս:

Ունի և զՃողովակն 'ի սահմանին իւրում, որ ըստ վարդանայ՝ մերձ է 'ի բերդն մեծկերտոյ: Զբանս նորա տես ստորև 'ի ստորագրուԹեան մեծկերտոյ:

Խորենացին յաշխարհագրուԹեան իւրում յիշատակէ ինչ ինչ և 'ի բերոց նահանգիս, յասելն. * Ունի Չորրորդ Հայք բերդս, և գետս, և լերինս, և Ախուրեղ. ունի և Երէս, և Հաւս, և Զկուհս. և 'ի գազանաց՝ զԱռիւծ ‖: Վասն առիւծուն գտանելոյ 'ի միջագետս, վկայէ նաև ստրաւոն 'ի ժզ. գիրս:

Զայս նահանգ ապականեաց և անապատ արար 'ի մարդոյ և յանասնոյ կայսրն Թէոփիլոս 'ի սկիզբն Թ. դարուն: Իսկ 'ի նմին. 'ի վերջնում աւուր քաղոց ամսոյն յամին 995, աւերակ արար Երկրաշարժութիւն, յորմէ հերձան լերինք, պատառեցան վէմք, բացան աղբիւրք և ջուրք յանջրդին տեղիս, և ցամաքեցան ելք սովորական ջուրց. և գաւառքն հաշտեանք, խորձեան, ծոփք, բալու, և պաղնատուն, և ամենայն շինուածք առհասարակ

կործանեցան 'ի հիմանէ դղրդեալք, ըստ գրելոյ առող-կայ Գ. 36:

Ութ գաւառս դնէ 'ի սմա Խորենացին, որք են.

| | |
|---|---|
| ա. Խորձեան. | ե. Ծոփք. (1) |
| բ. Հաշտեանք. | զ. Հանձիթ. |
| գ. Պաղնատուն. | է. Գորեք. (2) |
| դ. Բալահովիտ. | ը. Դեգիք. |

Յուստինիանոս կայսր այսպէս կարգէ զՉորրորդ Հայս. * Կացուցանեմք (ասէ) նաև Չորրորդ Հայք, որ յառաջ ոչ 'ի ձև նահանգի բովանդակեր, այլ ազգացն էր, և 'ի բազում խառնուածոց անուանց հաւաքեալ: Դզոփանէնէ. Անձիտէնէ. Դզոփանէ. Աստիանէնէ, և կոչեցեալն Բալաբիտէնէ. և սատրապաց հպատակեալ:

Այս անուն մեծութէ չէ հռովմայեցւոց, և ոչ նախնեաց մերոց, այլ յայլմէ տէրութէ մուծաւ:

Եւ այսպէս զարդարեցաք և զսա քաղաքական պետութբ և շքով, կարգեալ իշխանութի քաղաքական անդանօր, (3) և 'ի Մարտիրոսուպօլսեաց քաղաքին, և 'ի Կիթարիզոն բերդին ||:

## ԽՈՐՁԵԱՆ: (4)

Յայս անուն կոչէ և առողիկ, և լաստիվէրտցին գլ. ժզ. առ որում գլ. իա. գրի և Խորձայն: Կորիւն կոչէ Խորձենական գաւառ. և բնակիչն առ Խորենացւոյն Գ. 54. կոչի Խորձենացի: Առ Պտղոմէոսի՝ գրի Խորզա, զոր դնէ առ Եփրատաւ: (5) Պրոկոպիոս 'ի գիրս պատերազմին

(1) 'Ի տպագրեալն աշխարհագր. Խորէն". զկնի Ծոփաց դնի Շատախ գաւառ, որ չէք 'ի ձեռագիրս, և է ընդդէմ Թուոյ զոր նշանակէ Խորենացին. քանզի նովաւ հանդերձ ինն՝ և ոչ ութ լինէին Գաւառք Չորրորդ հայոց:

(2) Յօրինակ մի Գոհրէք. յայլ օրինակ՝ Դորէք:

(3) Ջերիս իշխանական տեղիս երևի ակնարկել բանիւս. և Թերևս Անդանօր ասելով, գիտէ իմանալ զպետութիւն Դեքսական՝ կարգեալ յեւրմէ 'ի Խորզանի. զորմէ ստորև:

(4) 'Ի տպ. աշխարհագր. Խորէն. դնի Խորձէն. և 'ի միում ձեռագրի՝ Խորձանէան:

(5) 'Ի յառաջասացեալ ծանօթութն եպիսկոպոսարանաց՝ գրի Ուրձիանիկէ. վրիպակաւ 'ի բաց թողեալ զառաջին տառն:

պարսից Ը. 24. կոչէ Խորզենենէ. և 'ի գիրս Հինուածոց Գ. 3. Խորզանն։ (1)

Որ է, ասէ, գաւառ սահմանակից պարսից տէրութեան (2) զոր յայնժամ ունէին, ձգեալ գրեթէ եւօրեայ, երկիր բազմամարդ, այլ անպատսպար 'ի վաղուց անտի. ոչ ընծիւ ինչ, ոչ գետով, և ոչ լերամբք բաժանեալ 'ի սահմանէն պարսից. յոյր սակս բնակիչք նորա երբեմն հռովմայեցւոց, այսինքն՝ յունաց, և երբեմն պարսից հնազանդէին. նաև խառն 'ի միասին բնակէին, և հաղորդէին աներկիւղ։

'Ի մէջն անդ գաւառին՝ էր Գիւղ ինչ Սարդալմոմ անուն, զոր յուստինիանոս կայսրն պատեալ ամուր պարսպաւ՝ արար բերդ հզօր, և կացոյց զօրս 'ի պահպանութեան, կարգեալ 'ի վերայ նոցա պետ՝ զոր հռոմայեցիք (այսինքն յոյնք) լատին անուամբ կոչեցին Դուքս, և այնպէս ամրացոյց առհասարակ զայն սահման։

Վկայէ ամրութեան սահմանացս և մերս Լաստիվերտցի 'ի գլ. ԺԳ. յասելն. * Զխորձեան և զհանձէթն յորժամ յիշեմ, և որ ինչ 'ի նոսա գործեցաւ ('ի սուլտանէն պարսից յալփասլանայ,) հատկլիմ արտասուօք ... (քանզի) բազում և անհամար հոգիք 'ի վերագոյն գաւառացն (այսինքն 'ի գաւառաց ներքին հայոց) վասն տեղացն ամրութեան անդր ժողովեալ էին. յորոց վերայ հասեալ անօրինացն .. և խիլ արկեալ 'ի քարանձաւս և յանտառախիտ մայրիս՝ անյագաբար կոտորեցին զորս և գտին ||։

Յիշատակէ և զանտառումն խորձենոյ՝ յասելն 'ի գլ. ԺԲ. վասն ասպատակող թուրքաց՝ թէ եկեալ զեղան * Յընդարձակ դաշտն բասենոյ և կարնոյ .. յարևմուտս մինչև

(1) Յիշատակի սորայս անուն և առ Պորփիւրոժէնի (գիրք կառավարութեան. գլ. Ծ. թղթ. 135։) * Իսկ գաւառ (այսինքն թէմա՝ ասէ) Խորզիանէ երբեմն էր ընդ սառակինացւովք, որպէս և ասմոսադուն ||։ Սովին հնչմամբ գտանեմք ուրեք և 'ի գիրս մեր մատենագրաց Խորզան անուամբ գաւառ կամ քաղաք 'ի Չորրորդ հայս, զորոց ըղձանս չէ ինչ դիւրին այլազգ իմանալ, և զյիշատակեալ տեղիդ այլ ուր քան 'ի Խորձեան կարգել։

Այլ զԽորզինէ անուն գաւառ զոր Ստրաբոն գիրք ԺԱ. դնէ 'ի հայաստան, չէ պարտ շփոթել ընդ Խորձենոյ. քանզի տեղի նորա ոչ յարմարի ոչ ընդ Խորձենոյ, և ոչ ընդ կորճէից, որ է հարաւային գաւառ մեծին հայոց։ * Քորզինէ (ասէ) և Գամլխինի անկանին յառաւել հիւսիսային կողմն, ուստի և են առաւել ձիւնապատք, վերաբերեալք առ լերինս կովկասու, առ վիրս, և առ կողքիսէ ||։

(2) Զայս գաւառ Արիստակէս Լաստիվերտցի 'ի գլ. ԺԲ. թուէ ընդ գաւառս Յեկեղեաց 'ի հոյր։

'ի խաղտեաց գաւառն ... իսկ 'ի հարաւ մինչեւ 'ի տարօն, եւ մինչեւ 'ի գաւառն հաշտենից, մինչեւ յԱնտառան Խորձենոյ ||։

Եպիսկոպոսանք գաւառիս ոչ ուրեք առ նախնիս յիշատակին նախ քան զԺԲ. դարն. յորում 'ի պատմութեն ա̃. ժողովոյն սսոյ յիշատակի՝ Փիլիպպոս եպիսկոպոս Խորձենոյ։

Այլ ստորեւ 'ի ստորագրութիւս եպիսկոպոսաց՝ կոչի նա ինքն փիլիպպոս՝ եպիսկոպոս Կեղցյ. որով իբր անտարակոյս՝ համարի Կեղի գեղ ըստ մասին լինել 'ի Խորձեան։ Տես զԿեղի 'ի Նոր հայաստան. Թղթ. 106 = 110։

Մորփրանս։ Կիւղ բերդաւոր՝ զոր լաստիվերտցին 'ի դլ. ժա̃. դնէ 'ի գլուխ գաւառին Խորձենոյ։ * Այլին (պարսիկք ասպատակաւորք դարձեալք 'ի մելիտինոյ փոքուն հայոց) ընդ Խորձայն ... եկին մինչեւ 'ի գլուխ գաւառին 'ի Պեօղն որ կոչի Մորմրանս։ Եւ այն գի Բերդ ունէր Պեօղն՝ յոր ժողովեալ էին ամենայն բնակիչք տեղւոյն.. եւ երթեալ որ գլխաւոր էր նոցա (այսինքն՝ պարսից,) բերդին առաջի՝ սկսաւ բանս ինչ խօսել առ որ 'ի բերդին իշխանն էր ... Եւ որ 'ի յԱմրոցին իշխանն էր,|| եւն։

## ՀԱՇՏԵԱՆՔ։

Յունարէն առ յուստինիանոսի գրի Ասթիանինէ. առ պրոկոպիոսի չին. գ̃. 3. Ասթիանենէ. 'ի նախայիշեալ ծանօթութեն եպիսկոպոսարանաց՝ նոյնպէս 'ի սեռականն՝ Ասթիանէգէս, ուր եւ դնի 'ի Չորրորդ հայս. իսկ առ պտղոմեայ գրի՝ Ասթադինէգէս։

Ըստ գրոցն՝ մերձ է 'ի տարօն, եւ միայն ձորով իւիք բաժանեալ յայնմանէ, որպէս ցուցանէ խորենացին Բ̃. 7. * Առաքէ զնոսա բնակել 'ի գաւառն հաշտենից, եւ 'ի ձորն նորին Սահմանակալ՝ որ է արտաքոյ տարօնոյ ||։

Այս գաւառ եւ 'ի սահմանակից ձորն բնակէին ամենայն ուստերք եւ դստերք արքային հայոց՝ որոց ոչ անկանէր թագաւորել։ Սկիզբն արար այսմ վաղարշակ արքայ. որոյ քանզի բազում ուստերք էին՝ ոչ պատշաճ վարկաւ ամենեցուն մնալ 'ի մծբին՝ ուր նստէր յայնժամ, այլ միայն զառաջին որդին իւր զարշակ պահեալ առ իւր 'ի լինել յաջորդ թագաւորութե̃, զայլսն առաքեաց աստ,

թողլով 'ի նոսա նաև զամենայն շէնս, հանդերձ յաւե-լուածով առանձին մուրց և ուղղկաց կարգելոց յարքու-նուստ. * Նաւ եղև այս (տես խորենացին Բ. Դ. Ը ձե-ռագրաց 8.) յայնմհետէ և առ յապայ օրէնք 'ի մէջ արշակունեաց՝ միոյ որդւոյ բնակել ընդ արքային, փոխա-նորդ լինել թագաւորութեան. և այլ ուստերաց և դստե-րաց գնալ 'ի կողմանս Հաշտենից յազգին ժառան-գութիւն ||:

Ս կործադրութիւն այսր օրինաց մարթ է տեսանել առ խորենացւոյն Բ. 33. կամ 36. Գ. 22: Այս արքայա-զունք քանզի յորժ բազմացան յաւուրս Ա. տիրանայ՝ զերկիրն Հաշտենից բաժանեցին ըստ մարդաթուի, և բազումք 'ի նոցանէ առ պակասութեան տեղւոյ՝ ելեալ բնա-կեցան 'ի գաւառն աղւոյովտի և առբերանւոյ, զորմէ տես առ խորենացւոյն Բ. 59. կամ 60:

Նաց յարքայազանց որք բնակէին աստ, ունէր և ա-ռանձին իշխան որ յիշատակի առ խորենացւոյն Գ. 4. առ ղազարայ, առ մեսրոպայ, և առ բուզանդայ Գ. 12. Գնիթ անուն 'ի Կամսարական տոհմէն, և ոչ յարքայազանց:

Աշոց: Գիւղ՝ յիշատակեալ 'ի վարդանայ 'ի մեկնու-թեան ծննդ. Բ. 14. ուր և դնէ զակն տիգրիսի՝ յասէն. * Տիգրիս որ Դիկլաթ կոչի՝ ելանէ 'ի Զորրորդ հայոց 'ի Հաշտէն գաւառէ, և 'ի Գեղջէ Աշոցայ ||:

Գիրեհ: (1) Գիւղ՝ զորմէ յովհաննէս մամիկոնեան. * Գնաց էջ 'ի Հաշտեանս 'ի Գիւղն զոր Գիրեհն կո-չեն, 'ի ջրառատ վայրսն ||:

Հանդիպեանք: 'Ի Հաշտեանս դնէ նոյն յովհաննէս մա-միկոնեան 'ի թղթ. ՃԷ: Այլ մեզ անծանօթ, գեօղ արդեօք, թէ այլ տեղի ինչ:

Գիւղն արձանին: * Դարձաւ (տես զենոբ 'ի թիւն ԺԳ.) (2) 'ի գաւառն Հաշտենից, և եկն բնակեցաւ 'ի Գիւղն արձանին՝ վասն ընդարձակութեան վայրացն ||: Նո-նորին զենոբայ թղթ. ԾԳ. 'ի տպ. և 'ի ձեռ". թուի որո-շել զայս տեղի 'ի հաշտենից: (3) Աներևս նոյն է սա ընդ

(1) 'Ի տպագրեալն թղթ. ՃԿԳ: Ըստ այլ ձեռագրաց՝ գնի Կիրեհ:

(2) 'Ի տպագրեալն թղթ. ՀԳ. այլազգ գնի:

(3) Այլ իմն գրէ վասն Արձա-նին հաշտենից յովհաննէս մամիկո-նեան 'ի ՃԷ. և ցուցանէ զնոյն ար-ձան իրական, և ոչ անուն լոկ, զի ասէ. " Եկն (միհրան) 'ի գաւառն հաշտենից.. մինչև յԱրձանն: Եւ իբրև ընթերցան զգիր Արձանին՝ խորտակեցին զԱրձանն քարեայ ||: Եւ փոքր մի զկնի. " Իսկ Իշխ. (զօրք) գետ. յԱրձան անդր կային||:

Երձան կոչեցեալ տեղւոյն՝ ուր անկաւ Երձան քըր-մապետ ։

Մուշեղայ ։ Օ սրմէ զենոր 'ի ձչ. * Նա երթեալ յանդիման նոցա իջանէր 'ի Մուշեղայ Գեօղն Հաշտենից ‖ ։ Ուր 'ի ձեռագրի եդեալ կայ՝ 'ի Մուշեղամարդն Հաշտենից ։

Կնուանձ ։ Եսողիկ Բ. 2. կոչէ զսա Կնապաշտ Հաշտենից. որ 'ի լա. նորահրամանին յուստինիանոսի՝ և 'ի նախատացեալ ծանօթութե եպիսկոպոսարանայ՝ յանանկան հնչմամբ և աղճատմամբ 'ի սեռական հոլովն կոչի Կիթու-րեղա, և գնի 'ի Չորրորդ հայս. (1) զոր պրոկոպիոս 'ի գիրս շին". Գ. 3. առաւել ևս որոշելով դնէ 'ի Ասթիա-նինի գաւառի՝ որ է Հաշտեանք ։

Եպիսկոպոս սորա 'ի ժողովն տրուղղեան յետ ամենե-ցուն ստորագրեաց զանուն իւր այսպէս. * Մարիանոս անարժան Եպիսկոպոս Կիթարիզացւոց ա. հայոց (2) գա-ւառին ‖ ։

Անէր բերդ ամուր և ընդարձակ, զոր շինեաց յուս-տինիանոս կայսրն 'ի վերամբարձ տեղւոջ քաղաքին, ա-ծեալ 'ի նմա ջուր առատ. և անդր հաստատեաց դուքս, մի յերից անտի՝ զորս կարգեալ էր 'ի կառավարութի իւ-րում բաժնին հայաստանեայց ։

Հեռի դնէ զսա պրոկոպիոս 'ի գիրս պատերազմին պարսից Բ. 24. 'ի Թէոդոսուպօլէայ՝ չորից աւուրց ճա-նապարհաւ ։

ԳԱՂՆԱՏՈՒՆ ։ (3)

Աւ մատթէոսի յիշատակի Գաղնայ գաւառ, որ թուի լինել նոյն ընդ սմա, և 'ի նմանէ ածանցեալ վերոգրեալ անունդ՝ իբր Գաղնայտուն ։ * Մատեան (ասէ) առ թա-գաւորն մոնոմախ . . . և մատուցանէին չարախօսութիս

(1) Առ լըքիէնի ա. 453. վրի-պակաւ է գրեալ՝ թէ յուստինիա-նոս եդ զԳիթարիզոն, կամ լատին հնչմամբ Չիթարիզա յՆերրորդ հայս ։ Նւ ինքն լըքիէն դնէ զսա 'ի կարգս քաղաքաց Բ. հայոց. զի որովհետև ստորագրութի տրուղ-ղեան ժողովյն դնէ 'ի ա. հայս. իսկ ա. հայք նախ քան զժողովն և նախ քան զյուստինիանոս կո-չէր ասէ Բ. հայք ։ Բայց յայտ է՝ թէ Բ. հայք ոչ անցանէր յայ-կոյս յարևելեան կողմն եփրատայ, ուր է Գիթարիզոն կամ Կիթուիձ. ուստի վրիպակաւ գրչաց ստրգեալ երևի 'ի բան ժողովյն՝ ա. փոխա-նակ Դ ։

(2) Տես զնախընթաց վերլու-ծութի ։

(3) Այսպէս գրի յերկուս ձե-

վասն փառաւոր իշխանացն Հայոց՝ որք 'ի Գաւառն Պաղնայ բնակեալ կային ‖ :

'Ի գաւառէ աստի էր Յովսէփ մին յառաջին աշակերտաց Ս. Թարգմանչացն՝ ըստ յիշատակելոյ կորեան և փարպեցւոյն, որք կոչեն զնա Յովսէփ 'ի Պաղնական տանէն :

Ունէր բերդ Պաղին անուն՝ յիշատակեալ 'ի սամուելէ յամին 827. և յասողկայ Գ. 7. * Իսկ 'ոք կարմիր Հայրն 'ի ծոփաց գաւառին (1) մինչև տաճկաց էր աշխարհն՝ բնակէր անդ. և յաւուր միում գնաց առ ամիրայն 'ի Բերդն Պաղին ‖ : Այժմ է գիւղ. զորմէ տես 'ի Նոր Հայաստան Թղթ. 226 :

Մատթէոս յիշատակէ առ ժամանակօք մնոմախոս կայսեր յունաց և զԹէոդորոս ամրոցն, և ցուցանէ լինել 'ի նմին գաւառի. * Մ'ի ոմն (ասէ) 'ի միաբանելոցն (իշխանացն Հայոց գաւառին Պաղնայ) Թորոսակ անուն տէրն Թէոդորոսայ ուրացաւ զերդումն ‖ :

ԲԱԼԱԽՈՀՈՎԻՏ կամ ԲԱԼԱՀՈՎԻՏ (2) :

Յայսմ գաւառի Թուի անկանիլ այժմեան բերդն Բալուայ, և յանուն նորին կոչեցեալ անուն գաւառին՝ իբր Բալուայ հովիտ : 'Ի վերոգրեալ գաւազանագիրս յիշատակի այս բերդ, կոչելով Բերդ Բալուոյ, կամ լատին հնչմամբ Պալուէս. կամ որպէս ստորև՝ Բերդ Բալէոս : Առ ասողկայ Գ. 36. յիշատակի և կործանումն բերդին Բալուայ 'ի Նիսդ. Թվ. Հայոց. * և Բերդն (ասէ) Բալու, համդերձ շինուածովն և քարն եւս փլուզանիւր ‖ :

Առ վարդանայ յիշատակի և Ձեռան Բալուայ. ուր համարի վարդան տեսեալ 'ոքյն մեսրոպայ զնշանագիրս : * Որպէս մեծին մովսեսի (ասէ) 'ի լեառն սինայ, և սմա

ռագիրս Խորենացւոյն. իսկ յայլում ձեռագրի Պալանդիւսոն. միայն 'ի տպագրեալն Բալանդիւսոն :

(1) 'Ի բանից աստի չէ պարտ կարծել՝ Թէ ասողիկ զՊաղին դնէ 'ի Ծոփս, ըստ որում և 'ի կարգէ բանիցն է ուսանել :

(2) Այսպէս ունին մէն մի ձեռագիրք աշխարհագրութեան Խորենացւոյն. ուր 'ի միում յայլ գրի Բալախովիտ. իսկ 'ի տպագրեալն Բաղահովիտ. որ է կըրճատեալն առաջնոյն. ուստի Բալախոհովիտ կամ Բաղախոյովիտ, ինձ Թուի լեալ հին անունն, և աստ ապա ածանցեալ միւսն Բալահովիտ, կամ Բաղահովիտք : Սոյն այս անունն է, որ 'ի լտ. նորա հրամանին յուստինիանոսի գրի Վալանիտինէ. և 'ի գաւազանագիրս լեոնի իմաստնոյ՝ առաւել աղճատմամբ Վիալինիտինէ :

'ի լեառն Բալուայ, որպէս տակաւին ցուցանի դղրոցին ամրագիծ վիմին՝ և նկարք գրերոյն. և պատուի տեղին խնկոց և ջահիւք միշտ 'ի տաճկաց և 'ի քրիստոնէից բնակչաց տեղւոյն‖։ Տես 'ի Նոր Հայաստան զԲալու. 'ի Թղթ. 224։

ԽՈՓՔ. ԺԻ. ՍՕՓԻՆԻ. և ՍՕՓԱՆԻՆԻ։

Գաւառ երեւելի՝ յորում ա. Մաղարշակ կարգեաց իշխանութիւն մեծ։ * Հաստատէ (ասէ Խորենացին Բ. Դ. կամ ըստ այլ ձեռագրի 8.) զՄեծ նահապետութիւնն Ծոփաց 'ի Չորրորդն կոչեցեալ Հայս‖։ Իսկ որպէս ակնարկէ՝ Ծոփք էր անուն նահապետութեան և ցեղին, զոր վաղարշակ կարգեաց իշխան համօրէն չորրորդ Հայոց. և յայնմանէ ընկալաւ անուն և գաւառն. Թէպէտ և փոքր իշխանք նստէին յայլ գաւառս Դ. Հայոց։ Այնչափ էր իշխանութիւն սորա, մինչև ստրաւոնի կոչել փոքր Թագաւորութիւն. զի գիրք ԺԲ. Թղթ. 555. զխաղտիս նմանեցուցեալ ծոփաց՝ ասէ. * Որում որպէս և Սօփինէյի (ծոփաց՝) իշխեցին փոքր Թագաւորք‖։

Սակս մեծութեան այսր իշխանութեան որպէս Թուի՝ Ծոփք կոչեցաւ ոչ միայն այս գաւառ ուր նստէր իշխանն, այլ նաև համօրէն նահանգն չորրորդ Հայոց. զի մատենագիրք զԾոփս բազում ուրեք առնուն փոխանակ Դ. Հայոց։ Յայտ է այս նախ անտի, զի ուր Խորենացին Բ. 88. կամ 89. զարքեղայս կոչէ վերակացու Դ. Հայոց, * Արքեղայոս որ էր կարգեալ վերակացու Չորրորդն կոչեցեալ Հայոց‖։ Զնոյն արքեղայոս յոհաննէս կաթողիկոս կոչէ՝ Վերակացու Ծոփաց աշխարհին։

Երկրորդ՝ զի ուրանօր յիշատակին կարգաւ իշխանք զանազան գաւառաց կամ նահանգաց մեծին Հայոց, ոչ յիշատակին ուրեք իշխանք Դ. Հայոց. իսկ ընդ հակառակն՝ բազում ուրեք յիշատակին իշխանք ծոփաց, ըստ որում է տեսանել առ ագաթանգեղոսի 'ի Թղթ. ՅԾԴ. ուր 'ի յիշատակելն զիշխանս աղձնեաց, մոկաց, սիւնեաց, ուտէացւոց աշխարհին, որք են իշխանք նահանգաց մեծին Հայոց, ընդ նոսին դասի և Իշխանն Ծոփաց աշխարհին։ Սոյնպէս է տեսանել և առ մեսրոպայ, բուզանդայ. և այլն։

Երրորդ՝ զի բազում ուրեք զԾոփս Աշխարհ անուանէ

կոչեն, յոր անուն սեպհական է կոչել զնահանգս, և ոչ զգաւառս. վասն որոյ բուզանդ Գ. 4. յայտնի յերկուս բաժանէ զԾոփս, յասելն. * Զգանիշէլ մեծ իշխանն Ծոփաց ... և զնոյն իշխանն Սիւնոյ Ծոփաց ||: Եւ յերկուց Ծոփաց սատի զմին կոչէ Ծոփք Մեծ, և զմիւսն Ծոփք Շահունեաց: Ապաստակ սփռեկին ասէ Գ. 24. * Ընդ աղձնիս, և ընդ Ծոփս մեծ, ընդ անգեղ տունն, և ընդ գաւառս անձտայ, ընդ Ծոփս Շահունեաց ||: Կոչէ Շահունեաց՝ յանուն ցեղին. ըստ որում այլուր Գ. 9. միայն Ծոփք անուանէ զսա, շատանալով դնել յորոշումն՝ զիշխանն որ 'ի նոյն ցեղէ. * Զիշխանն մեծի Ծոփաց զմար, և զիշխանն Ծոփաց Շահէի ներսէհ ||: Զսոյն զայս Ծոփք շահունեաց Գ. 12. կոչէ Ծոփաց աշխարհ. * Զաւրէկ իշխան նահապետն Մեծի Ծոփաց, և զվարազ Շահունի իշխանն Ծոփաց աշխարհին ||: Որով ըստ բուզանդայ Ծոփաց աշխարհ որ է Գ. հայք, կոչի Ծոփք շահունեաց. իսկ Ծոփաց գաւառն՝ Ծոփք Մեծ:

Առ նախնի մատենագիրս յունաց կոչի Սոփենէ, զոր և ազգային գիրք ժամ. Թղթ. 521. կոչէ Սոփենէ մեծին հայոց. և 'ի զանազան տեղիս զգիրս սորա նշանակէ, որ համաձայնի դրից Գ. հայոց, կամ աշխարհին Ծոփաց: Քանզի դնէ զսա առ եփրատաւ՝ 'ի հիւսիսոյ մծբնայ, ընդ մէջ մասիոս լերին և անտիտօրոսի, և 'ի հովտի անդ որ ձգի ընդ մէջ տօրոսի և անտիտօրոսի համդէպ գոմմագինոյ՝ սահմանակից միջագետաց. քանզի գրէ՝ թէ տօրոս լեառն է որ զՍոփենէ և զայլ [illegible] հայս 'ի միջագետաց բաժանէ: Եւ այսպէս վայրապար ստեփաննոս կոչէ զՍոփինի, Պ[illegible]նոյս որք մերձ են 'ի հայաստան: Եւ առաքէ վասն այսր 'ի ժամ. գիրս ազգայինի. զի նա ինքն ազգային ոչ 'ի մերձակայս հայոց՝ այլ 'ի նոյն իսկ 'ի հայս դնէ զՍոփենի՝ որպէս յայտ արարաք, և որպէս յայտ առնէ նաև նոյն իսկ ստեփաննոս՝ յորժամ զգոմմագինի դնէ համդէպ սոփենիի, սահմանակից մելիտինոյ. վասն որոյ և պէրքէլիոս մեկնիչ ստեփաննոսի ծանուցանէ՝ թէ զՍոփենի պարտ է դնել 'ի սահմանս հայոց:

Յառաջ քան զազգային առաւել ևս ընդարձակ ձգէր սահման Սոփենիի, մինչև նաև ազիլիսինի գաւառ հայոց էր ընդ նովաւ, որպէս նա ինքն գրէ 'ի նոյն գիրս. Թղթ. 530: Համաձայն ազգայինի և պտղոմէոս զսոփենի դնէ մերձ 'ի խոտորուածն անդ եփրատայ 'ի հարաւ: Նոյնպէս և 'ի Ծանօթութեան եպիսկոպոսարանաց

(զոր բազում ուրեք յիշատակեցաք) 'ի Դ. Հայս դնի Սոփենի՝ անմիջապէս նախ քան զՀանձիթ, համաձայն խո-րենացւոյն. ուր որպէս յայտ է՝ զգաւառն Ծոփաց կամի նշանակել հեղինակն, և ոչ զնահանգն որ է նոյն իսկ Դ. Հայք։

Լատին մատենագիրք ըստ հնչման իւրեանց գրեն զսա Սօֆէնէ. յորս պոմպօնիոս մելա (1) դնէ 'ի կարգս գաւա-ռացն ասորւոց, և ոչ Հայոց. նոյնպէս և պլինիոս (2) յա-սորիս դնէ, կամ արտաքոյ Հայաստանեայց. որպէս և 'ի գլ. 9. զբնակիչս գաւառին զՍօֆէնէանս միանգամայն ընդ ատիապէնաց արտաքոյ կացուցանէ Հայաստանեայց։

Այլ ասելի է նախ՝ թէ ամենայն հին օրինակք մելայի դնեն անդ ոչ Սօֆէնէ, այլ Բօշօֆէնէ, որպէս վկայէ իսա-հակ վոսսին. իսկ օրինակք պլինիոսի Ե. 13. գրեն Ձէ-ֆէնէ, և ոչ Սօֆէնէ. և 'ի գլ. 9. Ձէֆէնէ, որպէս ծա-նուցանէ սալմասիոս առ 37. գլ. սոլինոսի, ուղղագրելով զպլինիոս. թէպէտ զայսմանէ ինչ ոչ յիշէ հարտուին մեկ-նիչ պլինիոսի։ Ասելի է երկրորդ. եթէ Սօֆէնէ անունս ուղղութեբ դնի 'ի նոսա, սակայն նոքա զանունս [illegible] ընդարձակ առնուն. վասն որոյ և մելա յայն բան զատիապէնէ և զարբելոն դնէ յասորիս՝ որ էր յասորես-տան. որպէս և թուղլիոս զքաղդէացիս դնէ յասորիս. տես վասն այսր 'ի Ձէրարտոս վոսսին (3)։ Յուստինոս պատմագիր 'ի ստորագրելն զհայաստան (4) յիշէ զՍօֆէնէ, առանց 'ի բաց հանելոյ 'ի հայաստանեայց. 'ի նմա եդեալ զերկրորդ ակն տիգրիսի, կամ զի վեր յառնելն նորին, յետ ընկղմելոյն յերկիր։

Սոյն այս Սօփէնէ կամ Սօփենի է՝ որ Սօֆանէնէ կոչի առ արրիանոսի, ըստ վկայելոյ ստեփաննոսի առ տիօնի. գիրք ԼԹ. Նոյնպէս է տեսանել և առ պրոկոպիոսի (5) որ ասէ. *'Ի հայաստան Սօփանենի (6) կոչեցեալ՝ է քա-ղաք Մարտիրոպոլիս անուն՝ կառուցեալ առ նինփիոս գե-տով‖։ Եւ 'ի գլ. 3. *Այս է (ասէ) անուն տեղւոյն 'ի Սօփանենի հայոց‖։ Եւ այլուր. (7) *Պարսիկք անդրէն

(1) Գիրք Ա. գլ. 11։
(2) Գիրք Ե. գլ. 12։ Եւ գիրք Զ. գլ. 13։
(3) Գիրք Գ. Սկզբ՛՛. կառապաշ-տութե. գլ. 6։
(4) Գիրք ԽԲ. գլ. 3։
(5) Գիրք շինուածոց Գ. գլ. 2։
(6) 'Ի լա. նորահրամանին յուս-տինիանոսի գրի Դուզֆանենէ, առ 'ի նշանակել զհնչումն ծ տառին, որ պակասի առ յոյնս։
(7) Գիրք Ա. պատերազմին պար-սից. գլ. 21։

արշաւեցին 'ի միջագետս ... զՄարտիրոպոլիսն յորոյ պահպանութեն կարգեալ էին վուզիս և վեզան՝ պաշարեցին. այս քաղաք կառուցեալ է 'ի Սոփանենի՝ հեռի յամիդայ մՃ. ասպարիզօք 'ի հիւսիսակողմն առ Նիմփիոս գետով, որ զսահմանս հռովմայեցւոց բաժանէ 'ի պարսից ||: Զայս Մարտիրոսաց քաղաք՝ զոր պրոկոպիոս դնէ 'ի Սոփանենի, յովհաննէս կաթողիկոս որոշակի դնէ 'ի Դ. հայս. և հին թարգմանիչք վարուց սրբոյն Մարութայի կոչեն Ծոփաց քաղաք, և այսպէս Սոփանենի է նոյն իսկ Սոփենի, կամ Ծոփք:

Այլ չէլլարիոս անծանօթ աշխարհ[illegible]ոցն մերոց մատենագրաց, ուստի և անտեղեակ [illegible]ց աշխարհիս հայոց՝ ճգնի ցուցանել (1) թէ Սոփանենի պրոկոպիոսի՝ այլ է 'ի Սոփենէ գաւառէն՝ զոր ստրաբոն և պտղոմէոս դնեն 'ի հայս, սխալեալ յերկուց: Մի՝ զի Սոփենէ է առ եփրատաւ և առ անտիտօրոսիւ. իսկ Նիմփիոս գետ որ անցանէ առ Մարտիրոսաց քաղաքաւ Սոփանենի գաւառին՝ խառնի 'ի տիգրիս գետ, որով և Սոփանենի պրոկոպիոսի ձգի առ տիգրիսիւ: Երկրորդ՝ զի խառնումն Նիմփիոսի 'ի տիգրիս՝ թուի լինել 'ի միջագետս, և ոչ 'ի հայս. զի ամմիանոս՝ որպէս նաև պրոկոպիոս մերձ 'ի վերոգրեալ Նիմփիոս գետ դնեն զԱմիդ, զոր չէլլարիոս կարծէ լինել միայն քաղաք միջագետաց, և ոչ հայոց:

Այլ առ առաջինն՝ յայտ է թէ ստրաբոն ոչ դնէ զՍոփենէ ձգեալ միայն առ եփրատաւ, այլ ըստ մասին ձգի նաև առ տիգրիսիւ 'ի վերին կողմանս ընթացից նորա. զի որպէս գրեցաք 'ի վերոյ՝ յուստինոս 'ի Սոփէնէ դնէ զակն տիգրիսի, և մեր մատենագիրք 'ի Դ. հայս՝ որ է նոյն: Զայս առաւել ևս յայտ առնէ այն՝ զի Կարգաթիոկերտա՝ որ ըստ ստրաբոնի անկանէր 'ի Սոփենի՝ էր քաղաք կառուցեալ առ տիգրիսիւ, որպէս ունիս տեսանել 'ի ստորև:

Իսկ առ երկրորդն՝ ասելի է, թէ Ամիդ ըստ նորին իսկ պրոկոպիոսի՝ է 'ի հայաստան, և գոլով նոյն իսկ Տիգրանակերտ քաղաք, նաև ըստ նախնի մատենագրաց այլոց ազգաց՝ ստրաբոնի, պլինիոսի, և պտղոմէոսի՝ անկանի 'ի հայս. ուստի ևս առաւել Սոփանենի որ էր 'ի հիւսիսոյ ամիդայ՝ անկանի 'ի հայս: Այժմ թէ տեղեակ

(1) Գիրք Դ. գլ. 15. թիւ 39:

լինէր չէլլարիոս, ոչ գրէր, *Այլ է ապա այս Սօփանենէ (պրոկոպիոսի՝) ՚ի Սօփենայէ մեծին հայոց (սդրավոնի,) որ ձգի ՚ի հիւսիսային միջագետս ՚ի վերոյ քան զնխիպլին, այն է մծբին ։

Ուր յայտնի ընդդիմանայ կարծիք իւր՝ իւրոյ բանից. զի եթէ Սօփենայն ձգեալ ՚ի հիւսիսային միջագետս՝ ՚ի վերոյ քան զմծբին, է սահման հայոց, ևս առաւել Սօփանենին անկանի ՚ի սահմանս հայոց, որ ըստ պրոկոպիոսի՝ է ՚ի վերոյ կամ ՚ի հիւսիսոյ քան զԱմիդ. զի Ամիդ ՚ի հիւսիսոյ է քան զմծբին՝ որպէս յայտնի դնէ և չէլլարիոս յաշխար[illegible]դս իւր ։ Արդ՝ առաւել հիւսիսային կամ վերա[illegible] միջագետաց՝ առաւել սեպհական մասն է հայաստանեայց, քան թէ նուաղ հիւսիսայինն, որպիսի է մծբին առ ամդաւ ։

Բայց պատճառ վրիպելոյ չէլլարիոսի այն է, քանզի համարի՝ թէ ոչինչ մասն միջագետաց անկանի ՚ի հայս, վասն որոյ և այլազգ մեկնէ զբանս պրոկոպիոսի վասն միջագետաց (1). իբր զի՝ զայն վերին սահման ձգեալ մինչև ցամիդ՝ ցուցանէ լինել ընդ միջագետս սորա, կամ ՚ի հարաւոյ տօրոս լերին, և միայն պիտակաբար կոչեցեալ հայաստան. որ է ընդդէմ այլոց մատենագրաց, նա և ընդդէմ ստորագրութեան պրոկոպիոսի. զի զբաղում քաղաքս որք անկանին ընդ մէջ երկուց գետոց եփրատայ և տիգրիսի՝ գրէ թէ մինչև ցամիդ՝ դնէ ըստ այլոց ՚ի հայս (2).

Եպիսկոպոս յանուն այսր գաւառի յիշատակի առ փոտիոսի ՚ի մատենանն ծզ. ուր Սարութա կոչի Սոփենենանց Եպիսկոպոս. զոր այլք կոչեն Եպիսկոպոս քաղաքին մարտիրոսաց՝ որ էր յայսմ գաւառի ։ Եւ ՚ի ստորագրութիւն ժողովոյն հռոմկլայու յիշատակի՝ Ստեփաննոս եպիսկոպոս ծոփաց ։ Նոյնպէս ՚ի ստորագրութիւն ժողովոյն սսոյ՝ որ եղև ՚ի 1307. յիշատակի՝ Տ՟ մաւրն եպիսկոպոս Ծոփայ շահապունեաց, որ թուի լինել Ծոփք շահունեաց (3) ։

(1) Տես զբանս պրոկոպիոսի ՚ի վերոյ ՚ի ներածութեան նահանգիս եր. 39։

(2) Տես վասն այսր և ՚ի ներածութեան նահանգիս, ևս և ստորև ՚ի ստորագրութեան ամդայ. որպէս և միջագետաց՝ յայլ հատոր ։

(3) Յիշատակի ուրեք առ թովմայի մեծոփեցւոյ եղիայ ոմն աշակերտ գրիգորի տաթևացւոյ՝ լինել հայրենեօք ՚ի յԾոփայ, զորմէ չունիմք ինչ ասել հաւաստի՝ թէ նոյն իցէ ընդ Ծոփայ շահապունեաց, կամ ընդ Շահունեաց, կամ Շահենի ծոփաց՝ յիշատակելոյն ՚ի բուզանդայ. ուր և առաքել պատմիչ գլ. Է. թղթ. 412. յիշէ գաւառ ինչ մերձաւոր ըստ հնչման՝ լինել ՚ի սահմանս Նախիջևանու, զի ասէ. ՚Մերձ մայրաքաղաքին

Քաղաք Մարտիրոսաց, կամ Մարտիրոսաց քաղաք ։ Իսկ յովհաննու կաթողիկոսի կոչի՝ Մարտիրոսաց պօլիս, որպէս նաև առ Ասողկայ, որ է նոյն. զի Պօլիս՝ կամ ըստ յունական Բօլիս՝ Քաղաք թարգմանի առ մեզ ։ 'Ի գիրս յունաց գրի Մարտիրոպօլիս, իսկ 'ի գիրս ասորւոց Մէփէրգատ, որ զնոյն նշանակէ ։ Բայց յաճախ կոչի առ նոսա (որպէս և միշտ առ արաբացիս,) Մէֆարղին. ուրեք ուրեք և 'ի գիրս մեր կոչի Նփրկերտ ։

'Ի վարս մարութայի՝ զոր յասորւոց թարգմանեցին հայքն զագիկ, և գրիգոր սարկաւագ, կոչի նաև Քաղաք Ծոփաց, յանուն գաւառին. նոյնպէս կոչի և առ ասորի մատենագիրս ինչ, միայն զանունն ծոփ[illegible] աղաւաղեալ ունելով. զորմէ տես 'ի վերոյ և զբանս պրոկոպիոսի ։

Գտանի առ ասորիս և այլ հին անուն քաղաքիս, այն է Պակրէտ, որ անծանօթ է առ մեզ. և միայն զՊէգէրէ գաւառ չորրորդ հայոց գտանեմք մերձաւոր հնչման սորա ։

Յուստինիանոս կայսր կարգեաց զսա Մայրաքաղաք չորրորդ հայոց, որպէս յայտ է 'ի լա. նորահրամանի նորա. և ըստ վկայելոյ մաղաղասայ 'ի սկիզբն ժԸ. գրոց, 'ի նորոգելն իւրում զքաղաքն՝ փոխեաց նաև զանունն ։ *Նոյն կայսր զքաղաքն հայաստանեայց զանուանեալն Մարտիրոպօլիս նորոգեաց, և Յուստինիանուպօլիս կոչեաց. զհնացեալ եղծեալ պարիսպ նորա և զորահ առհասարակ անդրէն կառուցեալ, և զգունդ արևելեան 'ի նմա կարգեալ ||։ Վասն որոյ և յովհաննէս կաթողիկոս Մայրաքաղաք անուամբ կոչէ, յասելն վասն մօրկայ կայսեր. *Նա զՉորրորդն կոչեցեալ հայք, յորում Մայրաքաղաք Մարտիրոսաց պօլիս՝ այսինքն նփրկերտ, (կոչէ մօրիկ) Յուստինիանոս Ներսէ ||։ Նոյնպէս և վարդան 'ի նմին պատմութեան մօրկայ զնոյն զայս կոչէ Մայրաքաղաք Դ. հայոց. *Նա զՉորրորդն հայք՝ յորում Մայրաքաղաք Մուֆարղին (1) ։

նախչուանու կայ գաւառ մի՝ զոր անուանեն Շաբանդոյջոր, և յայսմ գաւառի կայ գիւղ մի՝ զոր անուանեն Օծօպի. և մերձ այսմ գեղջս կայ շինեալ 'ի վաղեմնոց ժամանակաց վանք մի յանուն սրբուհւոյ Ածածնին, զոր անուանեն Օծօպոյ վանք ։ Այս գիւղ յիշատակի և 'ի գրուածս ինչ ջահկաց 'ի ժԴ. դարուն ։

(1) Նոյն է սա որ առ ասորիս և առ արաբացիս կոչի Մէֆարղին, տառադարձութբ առ մեզ գրեալ Մուֆարղին, որ առ կիրակոսի գրի ուրեք Մուֆարղին. *Մինչդեռ անցանէին (ասէ՝ զօրք հուլաւուն խանին թաթարաց) ընդ Քաղաքն մարտիրոսաց՝ որ կոչի Մուֆարղին ||։ Եւ լաստիվերացին 'ի գլ. ԻԵ. 'ի գրելն վասն յա-

Այս քաղաք ըստ պրոկոպիոսի հեռի է յամդայ միօրէայ ճանապարհաւ քաջագօտի առն, կամ որպէս այլուր դնէ՝ մղ. ասպարիզօք, այսինքն է. մղոնաւ. իսկ յականց աւրդրիսի՝ ժե. մղոնաւ, (որպէս դնի 'ի ծանօթութեան եպիսկոպոսարանաց,) կառուցեալ յառաջ քան զերն մարութա ։ Այլ մարութա (որ 'ի սերնդոց մօրն էր 'ի նախարարազուն ազգէն հայոց,) շնորհս գտեալ առաջի կայսեր Թէոդոսի փոքու, խնդրեաց 'ի նմանէ ամրացուցանել զայն՝ ամրագոյն պարսպաւ (1) և 'ի մէջ քաղաքին շինել տաճար, առ 'ի նմա հաւաքել մասն ինչ 'ի նշխարաց անենայն 'որց, որպէս և եղև իսկ ։

Թիւ նշխարաց զոր մարութա հաւաքեաց անդր 'ի զանազան աշխարհաց՝ մի ըստ միօջէ նշանագրի 'ի հին վարս նորա ։ * 'Ի հռովմոց իշխանութէն Ճ և խռ. և յասորեստանեայց խռ. և յիշխանութէն պարսից Ճռ. և յիշխանութէն մերմէ (որոյ իմանայ զհայս, որպէս ակնարկի յայսմաւուրս 'ի մայիսի 28.) կռ. ։ Միահամուռ ընդ ամենայն աշխարհն բերեալ 'որցն երկերիւր և ութսուն հազար. Թողում ասել և որ յետ այնորիկ ժողովեցան, և կամ կատարեցան 'ի նոյն քաղաքի 'որ վկայք, և կան անդէն ‖ ։

Յայնմ հետէ քաղաքն Թէպէտ և անուանի գտաւ 'ի

---

կոբայ Թոնդրակեցւոյ. * Անցուցեալ զաւուրս իւր՝ երթեալ չարապէս մեռանի 'ի քաղաքն որ կոչի Մ[illegible] ‖ ։ Իսկ առ գէորգէնոսի 'ի Թղթ. 686. * Ամիրայն Մարդիրոպոլսոյ՝ որ առ նոսա (այսինքն առ սարակինոսս) Մ[illegible] կոչի ‖ ։

Այս անուն զանազան օրինակաւ գրի առ ասորի մատենագիրս՝ Մայֆարքին, Մայֆարքաթ, Մայֆարքաթա, որպէս է տեսանել առ ասսեմանեայ հատ. ա. Թղթ. 174 ։ Սոյն այս անուն Թուի լինել նոյն ընդ Նփրկերտ անուան, և փոխեալ մին 'ի միւսն, կամ Նփրկերտ յասորւոց փոխեալ 'ի Մայֆըրքին, և կամ Մայֆըրքին փոխեալ 'ի մերոց 'ի Նփրկերտ, Թերևս 'ի մերձաւորութէ անուան մօտակայ գաւառին աղձնեաց՝ (զորմէ ստորև.) ըստ որում և Նէսիպին և Մծբին են մի և նոյն անուն ։

Վասն որոյ հայրն գոգիկ և գրիգոր սարկաւագ՝ որք զվարս 'ոցն մարութայի յասորւոց Թարգմանեցին 'ի հայ, զանուանս Մայֆըրքին 'ի կրկին տեղիս Թարգմանեցին Նէփրկերտ. քանզի և Նփրըկերտ կոչել զայս քաղաք՝ սովոր ուրեք գտանեմք, զորօրինակ 'ի վարս մարութայի՝ զոր յիշեցաք, առ յովհաննու կաթողիկոսի (զորոյ զբանս եդաք 'ի վերոյ). և առ ասողկայ. իսկ սովորաբար Մուփարկին, կամ Մարտիրոսաց քաղաք կոչի ։

(1) Այս ամրութի կամ նորոգութի 'ի խնդրոյ մարութայի՝ որ պատմի 'ի հին վարս նորա Թարգմանեալ 'ի մեզ յասորւոց, շինութի կոչի յայսմաւուրս խփառեաց, ուր ասի՝ Թէ մարութա շինեաց բերդ ընդարձակ. և 'ի մէջ բերդին քաղաք մարտիրոսաց, զոր և մերժէ ասսեմանի ։

պատմութիւն, և պանծալի քան զամենեսին սակս այսչափ բազմութեան երկնաւոր գանձուցն, բայց չէր այնչափ ինչ խնամով պահեալ 'ի տէրութեան յունաց՝ գոլով հեռի յոյժ 'ի կայսերանիստ քաղաքէն՝ սահմանակից անմիջապէս պարսից տէրութեան։ Նաև ամրութիւն պարսպացն չէր ինչ մեծ՝ ըստ ասելոյ պրոկոպիոսի (1)։

Զի թանձրութիւն նորա էր 4 ոտնաչափ, իսկ բարձրութիւնն 20. վասն որոյ և կաւատ պարսից արքայ՝ յաւուրս անաստասայ կայսեր ընդ տէրութեամբ իւրով գրաւեաց զայն, երբեմն ընդ խաղս միայն ահագացուցանելով զքաղաքացիս, և ոչ թէ պատերազմելով. մինչև քաղաքացիք առ ահի առեալ զթէոդորոս իշխան սոփանինոյ՝ ընդ առաջ ելին կաւատայ, տալով նմա զերկուց ամաց զհարկն։ Իսկ կաւատ համարեալ՝ թէ նոքա նովին հարկատուութեամբ խոստովանին լինել 'ի բաժնի տէրութեան պարսից, և ոչ կայսեր՝ եանց զնաց անտի անվնաս, կարգեալ նոցա իշխան զնոյն իսկ զթէոդորոս (2)։

Յուստինիանոս կայսր ամրացոյց յոյժ զայս քաղաք. զորմէ թէպէտ մալալաս 'ի հարևանցի գրեաց 'ի վերագրեալ բանին. բայց պրոկոպիոս մի ըստ միոջէ ստորագրէ։ Քանզի հեռի (ասէ) յառաջին պարսպէն 4 ոտնաչափու՝ շինել ետ այլ պարիսպ 4 ոտնաչափ լայն, 20 բարձր 'ի հաւասարութիւն առաջնոյ պարսպաց. և զմիջոցն երկուց պարսպաց ետ լնուլ քարամբք և կրով, որով երկոքին եղեն մի միայն պարիսպ՝ բարձր 12 ոտնաչափ։ Կանգնեաց արտաքուստ և այլ պարիսպ, և յաւելեալ զայլ ամրութիւնս 'ի նմա՝ կացոյց զմին յիշխանացն հայոց՝ զոր Դուքս անուանեաց։

Պաշարեցին զսա պարսիկք յաւուրս կաւատայ (3). յորում ժամանակի սիգլաս էր կարգեալ զօրավար արևելից 'ի կողմանէ կայսեր. այլ քանզի 'ի պաշարման անդ մեռաւ կաւատ, զերծաւ 'ի թշնամեաց քաղաքն՝ որ կայր 'ի նեղութեան։ Այլ զոր ոչ կարացին առնուլ յայնժամ,

(1) Գիրք շինուածոց Գ. գլ. 2։

(2) Այս՝ ըստ պատմելոյ պրոկոպիոսի. իսկ 'ի վերոգրեալ վարս մարութայի պատմի, թէ բնակիչքն ետուն կաւատայ զոսկի բաժակն՝ զոր յազկերտ տուեալ էր մարութայի 'ի պարգևս. իբրև կաւատ ընթերցաւ 'ի վերայ նորա զանուն յազկերտի՝ յարտասուս հարեալ դարձոյց անդրէն զբաժակն՝ ոչ կամելով զյիշատակ հարցն եղծանել, և ազատութիւն շնորհեալ քաղաքին՝ մեկնեցաւ անտի։

(3) Ըստ պատմելոյ պրոկոպիոսի 'ի գիրս պատերազմին պարսից ա. 21։ Այլ որպէս յայտ է՝ երկրորդ է այս պաշարումն յեղեալն յաւուրս կաւատայ։

առին զինի յաւուրս Մօրկայ կայսեր 'ի ձեռն սիդղասայ ուրումն տամնապետի. որոյ հակառակութք բերեալ ընդ ումեմն 'ի զօրապետացն յունաց՝ եմոյծ զպարսիկս 'ի ներքս ։ 'Ի պարսից անդրէն էառ Մօրիկ 'ի 593, համդերձ այլովք աշխարհօք և քաղաքօք հայաստանեայց, փոխարէն օգնականութեանն՝ զոր ետ Խոսրովու ընդդէմ վահրամայ (1) ։

Յիններորդ և 'ի տասներորդ դարուն տէրութեան քաղաքիս էր 'ի ձեռս տաճկաց ամիրային (2). և ընդ այլ ազգս բնակէին 'ի նմ նաև տաճիկք. այլ ապլումար ոմն ամիրայ՝ քեռորդի բատ անուն երևելի ամիրայի, խաբէութք իւր զտաճիկս առհասարակ հալածեաց և կոտորեաց ։ * Մինչև (ըստ ասողկայ գ. 39.) ոչ միայն տաճիկ 'ի նփրկերտ, այլ հայ և ասորի բնակէր 'ի նմա ‖ ։

Եւ թէ հաւատացուք պատմութե Թաթարաց, յայսչափ առողաց միջի՝ ոչ ոք կարաց առնուլ զայս քաղաք առանց սիրոյ մինչև 'ի ժամանակս Թաթարաց ։ Իսկ 'ի 1260. Հուլաւուն խանն Թաթարաց սաստկապէս պաշարեաց զքաղաքն՝ արգելեալ զամենայն զել և զմուտ, և զջուրն որ հոսէր 'ի նմա. ընդ զօրս նորա կային և քրիստոնեայք՝ որոց զօրավար կացոյց նոյն Հուլաւուն զպռօշ իշխանն հայկազուն զայրն երևելի՝ զոր Հասան կոչէին ։ Յայնմ պաշարմանն որ տևեաց ամս երկուս՝ յայն թշուառութե հասին քաղաքացիքն 'ի սաստկութէ սովոյն, մինչև մի լիտր մարմնոյ մարդոյ՝ 70 դահեկանի վաճառել. բազմութի 'ի նոցանէ մեռան նաև առ անհնարին ցրտութե ձմերան ։

Յետ այսչափ տառապանաց իբրև առին Թաթարք՝ զմնացեալսն ևս սրոյ ճարակ ետուն, ընդ նոսին և զգեղեցիկ երիտասարդն սևադայ խաչէնեցի՝ որդի մեծի իշխանին գրիգորի ։ * Բայց միայն (որպէս ասէ կիրակոս,) զեկեղեցիս ոչ քակեցին, և ոչ զանթիւ նշխարս սրբ՝ զորս ժողովեաց 'ղ մարութայ յամենայն ազգաց, և եդ անդ ‖ ։ Այլ զօրքն հայոց որք էին ընդ Թաթարս՝ զբազումս 'ի նշխարաց սրց տարան յերկիրն իւրեանց. և մեծ իշխանն բագրատունեաց առեալ զաջ 'ղյն բարթուղիմէոսի տարաւ 'ի վանս իւր, զոր զինի սադուն իշխանն արծրունեաց եդ 'ի վանս հաղբատ (3) ։

(1) Եւագրիոս 'ի պատմ. եկեղ. գիրք Զ. գլ. 141 ։ Եւ Թէոփիլակտոս սիմոկատտա ։

(2) Ասողիկ. գ. 15 ։

(3) Կիրակոս, Վարդան, և Պատմիչն Թաթարայ ։

Հայք ըստ վկայելոյ յովհաննու կաթողիկոսի՝ յաւուրց մեծին ներսեսի կացուցանէին 'ի քաղաքիս գլխաւոր եպիսկոպոս Մետրապօլիտ անուամբ. * Իսկ 'ի սեբաստիա (ասէ) և 'ի մելիտենէ և 'ի Սատաղոսաց քաղաքին Մետրապօլիտս կացուցանէին ||:

Բայց 'ի վերջին ժամանակս եպիսկոպոսունք քաղաքիս 'ի ստորագրութիւնս ժողովոց ոչ վարեն զայդ պատուանուն, այլ լոկ Եպիսկոպոս, և այն՝ ոչ 'ի կարգ արքեպիսկոպոսաց, այլ սոսկ եպիսկոպոսաց. զորօրինակ 'ի ժողովն հռոմկլայի զկնի եպիսկոպոսին աշմուշատայ, և նախ քան զեպիսկոպոսն սեբաստիոյ ստորագրէ զանուն իւր՝ գէորգ եպիսկոպոս Նփրկերտայ: Իսկ 'ի ժողովն սոյ և ատանոյ 'ի չծզ. թվին՝ զկնի եպիսկոպոսին կամխոյ, և նախ քան զեպիսկոպոսն սամնոյ, ստորագրէ՝ Մևտիք եպիսկոպոս Նփրկերտայ:

Փղշուղ: Տեղի մօտ 'ի վերոգրեալ քաղաք, որպէս դնէ ասողիկ Գ. 15. * Նա երթեալ հասանէ մերձ առ քաղաքն նորա 'ի Մարտիրոսացն պօլիս՝ որ է Նփրկերտ, 'ի տեղին որ Փղշփաշն կոչիւր ||:

Կարկաթիոկերտա: 'Ի հնումն այս էր մայրաքաղաք ծոփաց ըստ դնելոյ ստրաբոնի (1): * Արքունիք (այսինքն Մայրաքաղաք) սոփինիոյ՝ է Կարկաթիոկերտա ||: Զսոյն զայս պլինիոս Զ. 9. դնէ 'ի կարգս քաղաքաց մեծին Հայոց Մէրձ յոյծ 'ի տիգրիս. և ը՟ լատին հնչման կոչէ Կարկաթիոկերտա: Այլ քանզի չէլլարիոս եդեալ է 'ի մտի՝ թէ ծոփք կամ սոփինի ոչ հասանէ 'ի տիգրիս, վայրապար ջգնի մեկնել զբանս պլինիոսի. իբր թէ պլինիոս կամիցի ասել՝ թէ առաւել մերձ է այս քաղաք 'ի տիգրիս՝ քան թէ յեփրատ:

Չիք ինչ յիշատակութիւն զայսմանէ առ այլ մատենագիրս յունաց և լատինացւոց. իսկ առ մեզ գլխովին անծանօթ այս անուն. այլ մայրաքաղաք չորրորդ Հայոց կամ ծոփաց՝ յովհաննէս կաթողիկոս դնէ զՆփրկերտ՝ որպէս ասացաք 'ի վերոյ. որում միայն վերջին վանկին նման գտանի:

Փիսոն: Պրոկոպիոս (2) կոչէ Ամրոց, զորոյ և զգաւառ որոշէ այլուր (3) յասելն. * 'Ի մարդիրոպոլեայ յարևմուտս կոյս է տեղին Փիսօն անուն, կառուցեալ 'ի սօ-

(1) Գիրք ԺԱ. Թղթ. 527: Բ. գլ. 24:
(2) Պատերազմ պարսից. գիրք (3) Շինուածոց. գիրք Գ. գլ. 3:

փանինի (գաւառ) հայաստանեայց, որ տարակայի 'ի մարդկրօրօլեայ սուղ ինչ նուաղ քան զմիօրեայ ճանապարհ ||:

Բնաբեղ: Բերդ՝ ուր սպան տիրան զտէրն յուսիկ՝ ըստ բուզանդայ, որ գրէ Գ. 12. * Զոր բարձեալ պաշտօնէիցն զդան եկեղեցւոյն 'ի Բնաբեղ բերդէն արքունի մեծ ծոփաց գաւառին, բերին 'ի գաւառն դարանաղեաց 'ի գիւղն Թորդան ||: Սոյն 'ի տպագրեալն վրիպակաւ դնի 'ի Բնաբերդէն: Քանզի և 'ի Ե. 7. բուզանդայ՝ գրի Բնաբեղ. * Սոյնպէս և յերկիրն ծոփաց 'ի Բնաբեղ բերդին գանձքն լեալ էին ընդ նովաւ ||:

Մամբրէ: Զորմէ բուզանդ Ե. 27. * Յետ մահուան (ասէ) մեծ քահանայապետին Ներսիսի՝ եկն բնակեցաւ նա 'ի մեծ ծոփս, յանապատին որ կոչի անուն տեղւոյն Մամբրէ, 'ի վերայ գետոյն՝ որ անուանեալ կոչի Մամուշեղ ||:

Խոզան: Գիւղաքաղաք կոչէ զսա ասողիկ Բ. 1. յասելն վասն 'նըյն ապխատակեայ. * Շինեաց զմեծ եկեղեցին յաշխարհին ծոփաց 'ի գիւղաքաղաքին Խոզան ||: Վասն որոյ և 'ի ծանօթութեան եպիսկոպոսարանաց լեւոնի կայսեր կոչի յունարէն Բօլէինի խօղանծ. որ թարգմանի Քաղաքաձևք, իբր Քաղաքագեօղ խոզանու, և դնի 'ի չորրորդ հայս: Իսկ մատթէոս կոչէ Գաստա խոզնայ. զի որպէս յայտ է՝ անցմամբ ժամանակաց փոփոխին սահմանք գաւառաց, և նոր գաւառք յաջորդեն ընդ հնոյն: Կայսրն Թէոփիլոս ըստ գրելոյ ասողկայ Բ. 6. * Զխոզան և զչորրորդ հայս անապատ առնէ 'ի մարդոյ և յանասնոյ ||:

Չմշկածագ: Անկանի յայսմ գաւառի, ըստ մատթէոսի որ գրէ. * Վասն զի չմշկիկն 'ի գաւառէն խոզնայ էր. 'ի տեղւոյն որ այժմ կոչի Չմշկածագ ||: Յորոյ բանիցն յայտ է՝ թէ յետ չմշկիկ կայսեր կոչեցաւ Չմշկածագ, իբր Ծագումն չմշկկայ: Զսոյն հաստատէ այն՝ զի յառաւել հնումն այլով անուամբ կոչէր, որ դնի յայսմաւուրս մարտի 27. * Սր. քահանայն յոհաննէս էր 'ի քաղաքէն Յերապօլսոյ՝ որ այժմ Չմշկածագ կոչի ||: Իսկ անուն փոքր ինչ այլայլութեամբ տառից գրի 'ի մայիսի 27. * Յոհաննէս չմշկիկն 'ի Չմշկածակուց՝ հայ էր ազգաւ ||: (1)

(1) 'Ի տպագրեալ յայսմաւուրս հանդերձ՝ որ վկայեաց 'ի սկիզբն մարտի 27. 'ի վարս յովհաննու քա- ժե. դարուն 'ի նմին քաղաքի՝ յե

Յիշատակի և եպիսկոպոս քաղաքիս 'ի ստորագրութեան եպիսկոպոսաց ժողովոյն սոյ՝ որ գումարեցաւ 'ի սկիզբն ԺԴ. դարուն՝ Հայրապետ Եպիսկոպոս Զմնկածացուց. որպէս և 'ի միւս ժողովն սոյ՝ որ առ Մխիթար կաթողիկոսիւ՝ Դանիէլ Եպիսկոպոս Զմնկածացուց։

## ՀԱՆՁԻԹ։

Առ ղազարայ Թղթ. 268. գրի՝ Անձիթ. * Առաքեալ 'ի մերձակայ սահմանակից տեղեացս՝ առ հայ մարդիկք գաւառին Անձտայ, և Ծոփաց, և Հաշտենից ||։ Նոյնպէս և առ Բուզանդայ Դ. 12. * Զվաղարշ՝ որ էր իշխան Անձտայ ||։ Նոյնպէս գրի և առ Խորենացւոյն Դ. 15. ուր և 'ի միում ձեռագրի գտնի Անձիթ. * Իսկ արքայ փախստական նորա կարգէ զազատութ տէր Անձտայ ||։ (1)

Առ պտղոմեայ (2) գրի Անձիտենէ. * Իսկ 'ի մնացեալ և 'ի հարաւային մասին 'ի մէջ աղբերացն Եւփրատայ և Դիկրիսի՝ է Անձիտինի ||։ Ուր յօրինակն բաղդատենեան ուղղագոյն ես գրի՝ Անձիտենէ. և ստորև յիշէ քաղաք Անձիտա անուն (3)։

'Ի լա. նորահրամանին յուստինիանոսի յիշատակի Անձիտենէ. և 'ի նախայիշատակեալ գաւառագրագիրս եպիսկոպոսարանաց լեռնի գտնի Անձիտենէ 'ի սեռական հոլովն զկնի Ծոփաց։ Պերփերուժէն (4) կոչէ Խանձիտ, և դնէ յաւելեալ 'ի միջագետս. * Խանձիտ և Սոփանենոյս էին փականք մելիտինեայ ... 'ի տիրելն Հռոմանոսի առ գաւառն (Թէմա) միջագետաց յաւելան նաև Սոփանենոյս և Խանձիտ ||։

Առ լաստիվերտցւոյն (5) գրի Հանձիթ, ըստ որոյ և առ ասորի մատենագիրս կոչմամբ երիցու և դինախնեայ՝ գրի Անձիթէ, կամ Հանձիթէ։ Զոր՝ գաւառ ասորւոց կոչէ դինենախոս, որպէս և զայլ տեղիս ինչ հայոց. * Սպա-

շատակի և Կորնը Սուրբ ասացեալ տեղին արտաքոյ պարսպին, և Եկեղեցի յանուն Ածածնին 'ի ներքս պարսպին, որպէս և Յովհաննէս անուն Բերդ՝ յանդիման քաղաքին։

(1) Բայց քննելի է, զի յայլում ձեռագրի գտնի անդ Անձտայ։

(2) Գիրք Ե. գլ. 13։

(3) Սխալի մատենիւէ 'ի բառն Անձիտա՝ որ է նոյն, ուր գրէ՝ թէ ըստ պտղոմեայ Ե. 7. է քաղաք փոքուն հայոց. զի պտղոմէոս դնէ զայն 'ի մեծն հայս։

(4) Գիրք կառավարութեն. գլ. 50. Թղթ. 135։

(5) Գլ. ժդ. և ժթ։

կանեցին զամենայն գաւառս ասորւոց որք անկանին առ ստորոտով լերինն Արիտի, այսինքն զԱրզուն, զՄայֆրաքդա, զԱմիտա, զՀանազէթէ, և զՍամօսատա ||: Տես յաստեման. (1) ուր կոզմաս երեց պատմէ զսքանչելիս գործեալ 'ի սիմէօնէ սիւնակեցւոյն 'ի վերայ գինեսիոսի ուրումն` որ էր 'ի հանձիթոյ յազգէս հայոց, զոր բրիսքոս կոչէ սկիւթացի:

Գիրք յայսմաւուրս 'ի սեպտեմբերի 23. թէ կայսրն յունաց թէոփիլոս յիններորդ դարու, * Եկն 'ի Հանձիթ և յԱշմուշատ, և աւերեալ կոտորեաց և գերեաց ||: Զնոյն ակնարկէ և ասողիկ բ. 6. 'ի գրեւն ընդհանրական վասն նորին թէոփիլոսի` թէ աւերեաց զչորրորդ հայս:

Խարբերդ, իբր Քարբերդ: Անկանի յայսմ գաւառի ըստ մատթէոսի` որ գրէ. * Յարուցեալ արանցս այսոցիկ գնան 'ի Հանձիթ գաւառին, և ... ունէին զամուր բերդն Խարբերդոյ ||: Գեդրենոս 'ի թղթ. 686. կոչէ Քարփերդէ, և դնէ 'ի միջագետս. * Ասան որոյ գրաւէ 'ի միջագետս զամուր բերդն` որոյ անունն Քարբերդէ, զոր յամենայն կողմանց ամրացուցեալ, և բաւական պահնակօք զինեալ` 'ի նմա դնէր զմթերեալ ինչսն ||: Սուղագոյն ևս առ կուրոպաղատայ գրի Քարբերդէ: Իսկ ասողկայ Գ. 7. կոչի Գուստա, և գրի Կարբերդ. * 'Ի սոյն ժամանակս և 'ի լիկանտոն աշխարհին 'ի Խաչրնեար տեղիսն 'ի Կարբերդ գաւառի 'ի ձեռն հօրն մոլխսի շինեցաւ վանքն` որ անուամբ նորա (2) կոչի ||:

'Ի 1124. Հնդետասան արք ծպտեալ զգեստուք մըտեալ յայս բերդ` առին 'ի ձեռաց թուրքաց, որք ըստ մատթէոսի գերի վարեալ զթագաւորն երուսաղէմի ըղպաղուին, կամ որ նոյն է պալտուին, և զայլ լատին իշխանս` արկեալ էին 'ի խորին բանտի քաղաքին. այլ զկնի` դարձեալ էառ ամիրայն թուրքաց` որ կոչէր պալակն:

Ալէլուայ Բերդ: Զայսմանէ մատթէոս 'ի թիւն ՇՀԴ. * Այս եղև 'ի Հանձիդ գաւառին 'ի յԱլէլուայ դաշտին ||: Յիշէ զայս անուն նաև 'ի վերոյ, ուր յայլում օրինակի գրի Ալուայ բերդ:

(1) Հատոր ա. թղթ. 249:

(2) 'Ի ա. ժողովն սոյն` որ 'ի սկիզբն ժդ. դարուն` յիշատակի. * Կարապետ հայր Մոլխոնցի վանից ||: Որպէս և 'ի միւս ժողովն սոյն առ միխթար կաթողիկոսիւ. * Թորոս հայր Մոլխոնցի ||: Որ երևի լինել նոյն վանք որ 'ի Խարբերդ:

ԴԻԳԻԲ :

'Ի ծանօթութեան եպիսկոպոսարանաց լեւոնի կայսեր գրի 'ի սեռական հոլովն Տիկինիսոյ, և դնի 'ի չորրորդ Հայս :

Նիկղ : Զորմէ սամուէլ 'ի 827. *Եկն և 'ի Հայս (կայսրն Թէոփիլոս) և առ զամուրն զպաղին, և զմեծկերտ, և զՆիկղ 'ի գաւառին Դեգինիս (1), և զխողան || :

Տեղիք չորրորդ հայոց, որոց գաւառք անծանօթք :

Արշամոշատ : 'Ի վերագրեալ ծանօթութեան եպիսկոպոսարանաց 'ի չորրորդ Հայս՝ գրի 'ի յոգնակի սեռականն Արշամոշատ : Զնոյն յիշատակեն և այլք ոմանք յարտաքին մատենագրաց յունաց և լատինացւոց . Արսոմոսատ, կամ Արսամոսատա անուամբ, զորոյ զդիրս պղինիոս Է. 9. դնէ 'ի մեծն Հայս Մերձ յեփրատ. իսկ պտղոմէոս՝ Մերձ 'ի տօրոս : Որպէս և տակիտոս ԺԵ. 10. զԱրսամոսատա բերդ յիշէ 'Ի մէջ տօրոսի՝ 'ի Հայս : Պղինիոս՝ արդեամբ համաձայնի և պտղոմէոս՝ զդիրս աշխարհագրական կացուցանէ ընդ մէջ եփրատայ և տիգրիսի, թէպէտ և 'ի Հայս դնեն, և ոչ 'ի միջագետս :

Քաղաք անուանէ պտղոմէոս 'ի Ը. գիրս իւր. պղինիոս և պտղոմէոս Արսամ կոչեն : Գտանի և դրամ մարկոսի աւրելիոսի կայսեր՝ տպեալ 'ի քաղաքիս յունական գրով Արսամոսատէնոն, որ նշանակէ Արսամոսատացւոց, կամ ըստ մեզ՝ Արշամոշատացւոց :

Նոյն քաղաքիս Արշամոշատ, աղաւաղեալ է յԱրշամաշատ անուանէս, զորօրինակ ուղղագոյն ևս կոչեն ոմանք, և 'ի յանուանէն յայտ լինի՝ Արշամայ թագաւորի՝ կամ այլոյ ուրուք Արշամայ շինեալ զայս քաղաք :

Հայ Եպիսկոպոս տեղւոյս յիշատակի 'ի ստորագրութիւն ժողովոյն հռոմկլայոյ 'ի ԺԲ. դարուն՝ զկնի եպիսկոպոսին կիպրոսի, և նախ քան զեպիսկոպոսն Նփրկերտոյ՝ Թէոդորոս եպիսկոպոս Արշամուշատայ :

(1) Յօրինակ մի սամուէլի գրի. 'Եւ եկն 'ի Հայս, և էառ զամուրն զպաղին, և զմեծկերտն, և զԱնկղի 'ի գաւառին Դեգինիս, և զխողան || : Այլ եգեալն մեր 'ի վերոյ՝ ուղղագոյն ևս է, և ըստ հնագոյն օրինակի :

Ի նմին ժամօթութեան եպիսկոպոսարանաց՝ բաց 'ի նախայիշատակեալ տեղեացդ գնեն 'ի չորրորդ հայս և յետագայքդ. Տաբէնձ, որ այժմ Մայրաքաղաք է սահ. Խուլնձան. Արձոն, որ է բերդ. Կարբենէ. Մանազղորձ:

Ճապաղջուր: Բերդ՝ զոր յայս նահանգ երևի գնել ատողին գ. 36. յասելն. * Ի նխդ. Թուականին շարժեցաւ երկիր, բայց սաստկագոյն աշխարհն չորրորդ հայոց . . . բերդն բալու հանդերձ շինուածովն, և քարն ևս փլուզանիւր. խարխալեալ Ճապաղաջուր բերդին, Պորկլաթայ, Աթթախայ, և Ամթայ, և ամենայն քաղաքիր գեղեցկաշէն եկեղեցեաց ||:

Թովմա Մեծոփեցի Պուաառ անուամբ յիշատակէ զՃապաղջուր, յասելն վասն լանկթամուրայ. * Ի սակաւ աւուրս եհաս 'ի վերայ նորա 'ի Պուաառն Ճապաղջրոյ ||:

Յիշատակի և եպիսկոպոսն տեղւոյս 'ի սոորագրութեն ժողովոյն սսոյ 'ի Ժէ. դարուն. Մերոբէ եպիսկոպոս Ճապաղջրոյ:

Մեծկերտ: Յայտ է թէ անկանի 'ի չորրորդ հայս, զի սամուէլ թուէ զսա մի 'ի տեղեաց՝ զոր էառ և յաւէր եած կայսրն Թէոփիլոս. արդ Թէոփիլոս ըստ ասողկայ զչորրորդ հայս յաւէր եած: Սարդան կոչէ զսա բերդ, և դնէ մօտ 'ի բալու. 'ի գրելն վասն տ. բարսղի կաթողիկոսի. * Պատահէ նմա փորձութին ինչ սակաւ 'ի Ճանապարհին 'ի բերդն Մեծկերտոյ (1) մօտ 'ի բալու 'ի յունականացն որ անդ. ոյք կամեցան կողոպտել զնոսա ||:

Յիշէ անդէն վարդան և զՍովակ՝ յասելն. * Բայց զխաչն երկաթի՝ ձեռագործ առաքելոյն Թադէոսի, որ տանէին առաջի, ընկեաց բարձողն 'ի Սովակն ||: Այլև զկզգեակն որ 'ի նմին ծովակի՝ յիշատակէ նա ինքն վարդան՝ յասելն. * Աթոռն հայոց շրջեալ 'ի բազում վայրս, 'ի կարմիր վանքն, և 'ի շուղրն, և 'ի Սովքն, զնացեալ դադարէ 'ի հռոմկլայն ||:

Նոյնպէս և շնորհալին վասն եղբօր իւրոյ գրիգորի կաթուղիկոսի 'ի յիշատակարանն Յո որդւոյ.

* Ի Սովակ անուան գղեկէն ելեալ,
զոր սեփհական ինքեան շինեալ: (2)

(1) Ի միում օրինակի գրի Մենծկերտոյ. իսկ յայլում օրինակի գրի Մենծկերտաց:

(2) Զլատուկ գաւառ տեղեացս յիշատակեն ոչ շնորհալին, և ոչ վարդան, և ոչ այլ ոք: Տես և 'ի Նոր հայաստան. Թղթ. 240:

ՆԱՀԱՆԳ ԵՐՐՈՐԴ

# ԱՂՁՆԻՔ

Կոչի ուրեք նաև Աղձն, յանուն առաջին և երևելի գաւառին իւրոյ. զի ուր Խորենացին Բ. 7. գրէ՝ թէ Վաղարշակ կարգեաց բդեշխ՝ տալով նմա գաւառ զԱղձն և զշրջակայս, անդ Յովհաննէս կաթողիկոս դնէ զանունս Աղձնեաց. * Կարգէ և բդեաշխս. մի՝ յերկրին գուգարաց հիւսիսոյ, և միւս ևս յարևմտից հարաւոյ յաշխարհին Աղձնեաց ||: Որոց ընդ մէջ չիք ինչ տարբերութիւն արմատական անուան, բայց եթէ մի միայն տառս չ՝ 'ի ղ: որպէս և 'ի միում ձեռագրի Խորենացւոյն զոր յիշեն վիսդօնեանք թարգմանիչք նորին Խորենացւոյ՝ 'ի նոյն գլուխ փոխանակ Աղձն բառին՝ գրեալ է Աղձն:

Անուն այսր գաւառի յօտար ազգաց կոչի Արզանէնէ, Արզանէ, և այլն. զորմէ տես ստորև: Ուրեք ուրեք կոչի նաև Կողմն Ասորեստանի՝ որպէս է տեսանել առ Խորենացւոյն Գ. 6. և 7. ուր զերկիր Բակրոյ աղձնեաց բդեշխին կոչէ յայս անուն, և ոչ ուրեք յանուն աղձնեաց: * Առաքեաց զՄանաճիհր ճարտարագոյն զօրօք, և զկիլիկեցի զօրս Է նմա զԿողմամբ Ասորեստանի... Ճակատ առեալ ընդ Բակուր բդեշխին՝ սատակէ զնա և զզօրս նորա ||: Յայտ է թէ պատերազմն ոչ եղև յԱսորեստան, այլ յաշխարհին Հայոց յԱղձնիս, քանզի անդ տիրապետեալ էր Բակուր:

Յայտնի ևս 'ի Ա. 5. վասն Սիմ լերին՝ որ է 'ի Սասուն գաւառին աղձնեաց, ասէ լինել 'ի Կողմանս Ասորեստանի: Նոյն իրի և աշխարհագիրս 'ի յԾր. զբդեշխն աղձնեաց, կամ զսահմանակալն յայս անուն կոչէ. * Առնոյր ընդ իւր... զչորեսին գահերէցս իւրոյ տաճարին՝ որ բդեշխն կոչէին, զառաջին սահմանակալն 'ի Նոր շիրական կողմանէն, երկրորդ սահմանակալն յԱսորեստանեայց կողմանէն ||: Արդ՝ սահմանակալ և բդեշխ ասա-

րեստանեայց կողման՝ մի միայն զգեղեչին աղձնեաց գի-տեմք 'ի պատմութենէ խորենացւոյն ։

Այս անուն տուեալ սմա սակս սահմանակցութեան ասո-րեստանեայց, և գուցէ նաև սակս բնակչացն ասորես-տանեայց սերելոց 'ի սահմանսարայ՝ որք թերևս պահէին զլեզու և զսովորութիւն իւրեանց ազգին. յաւել և զցեղ իշխանի սորա՝ որ նոյնպէս էր 'ի սահմանսարայ ասորես-տանեայ։ * Յորոց զմինն (ասէ խորենացին ա. 22. այս-ինքն յերկուց որդւոցն սենեքերիմայ արքայի,) յարևմտից հարաւոյ աշխարհիս մերոյ (յորում՝ անկանի աղձնեաց նահանգ,) մերձ 'ի սահմանս նորին ասորեստանի բնա-կեցուցանէ սկայորդին մեր քաջ նախնին, այսինքն զսա-նասարն, և 'ի սմանէ սերեալ լցին զսիմն ասացեալ լեառն. իսկ պերճքն և գլխաւորքն 'ի նոցանէ՝ յետոյ ուրեմն մեծութեան վաստակոցն առ թագաւորսն մեր ցուցեալ, բդեշխութեան կողմանցն արժանաւորեցան առ-նուլ ‖ ։

Զդիրս աղձնեաց՝ խորենացին յաշխարհագրութեան և 'ի պատմութեան դնէ յարևմտից հարաւոյ, այսինքն յարև-մտեան հարաւակողմն մեծին հայոց. որոյ աղձնիք լինի սահմանակից Դ. հայոց. որպէս և յովհաննէս կաթողիկոս 'ի պատմութեան արամայ յայտ առնէ։ Դնէ և առ տի-գրիս գետով, զոր պարտ է իմանալ վասն երկոցունց ևս կողմանց գետոյն՝ որպէս յայտ է յարզնի և 'ի տիգրա-նակերտ քաղաքէ նորա, որ է յայնկոյս տիգրիսի, և 'ի գաւառաց ինչ նորա՝ որք կան մինչև ցայժմ. (որպիսի է և սասուն,) և անկանին 'ի ձախակողմն տիգրիսի։ Նո-յնպէս պարունակէ նաև զմասն ինչ հիւսիսային կող-ման միջագետաց, որպէս առաւել ևս ցուցցի սորա ։

Ունի գետ Թուխ անուն, ըստ յիշատակելոյ թովմայի արծրունւոյ. * 'Ի սահմանս աղձնեաց 'ի վերայ գետոյն Թուխ կոչեցեալ՝ որ իջանէ 'ի ծովն բզնունեաց ‖ ։ Սա է և բլուրն Երկաթահանս անուանեալ՝ որ յիշատակի 'ի Ճառընտիրի.(1) * Հասեալ 'ի գաւառն աղձնեաց 'ի բլուրն Երկաթահանսն՝ առեալ մատուցանէր գաւառին ‖ ։ Յա-նուն երկաթոյ կոչէր և Չորն. վասն որոյ այլուր 'ի Ճառ-ընտիրի (2) փոխանակ բլրոյն՝ գրի 'Ի Չորն Երկաթահանաց,

(1) 'Ի հին վարս մծբնայ հայ-րապետին՝ թարգմանեալ յասոր-ւոց ։

(2) Յայլ հին վարս նոյն սրբոյն գրեալ 'ի մաղաքիայ աշակերտէ մարութայի ։

և դնի Մերձ 'ի Փառաւոն աղբերաց : Բուզանդ Դ. 10. կոչէ Լեառն Արծաթահատաց և Կապարահատաց : Սահմանակից էր այս լեառն ռշտունեաց գաւառին վասպուրականի առ ընձաքիսարս լերամբ : Նաև որպէս ցուցանեն վերոգրեալ մատենագիրք՝ էր 'ի նմա և տեղի ինչ անուանեալ Արծաթոյ Հոր :

Յայտ է թէ 'ի լեռնէ աստի հատանէին Արծաթ, զոր խորենացին յիշէ 'ի կարգս բերոց աղձնեաց նահանգիս : Ոսկի և Արծաթ՝ զոր ստրաբոն 'ի ԺԶ. գիրս դնէ 'ի կարգս բերոց միջագետաց, յորում ըստ մասին անկանի աղձնիք : Ոսկի և Պղինձ : Նաև 'ի թռչնոց Պեչակ՝ որ յայլում օրինակի գրի Պեղհակ. նոյն անուն յօրինակ ինչ գրի Պոհան, և յայլում՝ Պեհան :

Զայս նահանգ մեծն տիգրան ետ 'ի ժառանգութիւն արծրունեաց, ըստ գրելոյ Թովմայի արծրունւոյ 'ի վերս Բ. արտաշէսի արքայի. * Ապա դարձան (ասէ) վաչէ և արշաւիր (որդիք խուրանայ արծրունոյ) ընդ արտաշէսի, առեալ զթագաւորութիւն երուանդայ ... և դարձոյց 'ի նոսա (արտաշէս) զաշխարհն զոր տուեալ էր 'ի ժառանգութիւն տիգրանայ հայկազնոյ, զոր կալեալ էր սանատրկոյ յարքունիս՝ զլեառն Սիմ, և զԱղձնիս մինչ 'ի սահմանս ասորեստանի || : Նոյնպէս և առ խորենացւոյն այլազգ գտանեմք, զորմէ տես ստորև 'ի ստորագրութեան սասնոյ :

Վաղարշակ Ա. կարգեաց աստ իշխանութիւն (որպէս ասացաք 'ի վերոյ,) որ անուանեցաւ Բդեշխութիւն. զորմէ այսպէս պատմէ խորենացին Բ. 7. նշանակելով նաև զսահման նորա. * Նաև զշարաշան 'ի տանէ սանասարայ՝ հաստատէ Բդեշխ մեծ և կուսակալ յարևմտից հարաւոյ՝ յեզեր սահմանացն ասորեստանի առ ափն տիգրիս գետոյն, գաւառս պարգևելով զԱրզն (1) որ շուրջ զնովաւ, և զլեառն տօրոս՝ ուր և Սիմ, և զԿլզէսուրն ամենայն || :

Տրդատ արքայ կարգեաց զսա մի յութ իշխանաց՝ որք էին գահագլուխ 'ի մէջ չորեք հարիւր իշխանաց իւրոց, ըստ գրելոյ օրպէլեանն ստեփաննոսի, զոր և յիշէ զնի բդեշխին գուգարաց, և նախ քան զիշխանն անգեղտան : Այս իշխան կոչէր Բդեշխ, Կողմնակալ, Սահմանակալ և Գահերէց կամ Բարձերէց արքունի փառացն, որպէս է տեսա-

(1) Յօրինակ մի խորենացւոյն գրի աստ Աղձն :

նել առ ագաթանգեղոսի 'ի յՃԺԹ. և առ բուզանդայ Գ. 9. * Մեծ իշխանն աղձնեաց՝ որ անուանեալ կոչէր Բդեշխ, որ էր մի 'ի չորից գահերեց բարձերեց տաճարին արքունի‖:

Ագաթանգեղոս՝ երկրորդ դասէ զկնի բդեշխին Նոր շիրականի կողման՝ որ է բդեշխ գուգարաց. այլ 'ի գիրս բազում պատուով յիշատակի այս բդեշխ քան զգուգարացն. և նոյն իսկ ագաթանգեղոս 'ի յԾԴ. ('ի ձեռագրի) 'ի յիշելն զիշխան սորա ըստ խորենացւոյն՝ կոչէ ԲԴԵՇԽ ՄԵԾ. երկրորդ դասելով զկնի իշխանին անգեղտան: Իսկ 'ի խորագրի բուզանդայ գլ. 16. դպր. Ե. բդեշխք աղձնեաց կոչին ԹԱԳԱՒՈՐՔ:

Վասն որոյ և 'ի ժամանակագրութեան եդեսիոյ (առասեմանեայ՝) զԹագաւորսն եդեսիոյ՝ զորս մի ըստ միոջէ շարայարէ հեղինակն ասորի, համարիմ լեալ բդեշխս աղձնեաց, զի գտանին 'ի նոսա անուանք թագաւորաց՝ որք առ մեզ են անուանք բդեշխին աղձնեաց. զորօրինակ Բակրոս և Պակարոս՝ որ առ մեզ է Բակուր. Մանոս՝ որ է Մաժան՝ յիշատակեալ 'ի մեսրոպայ. Վաղէշ՝ որ է Վաղինակ. այլ վասն այսր տես և 'ի միջադէպս:

Արդ՝ այս բդեշխութիւն երևելի՝ 'ի Գ. դարուն ապստամբեցաւ 'ի մէնջ, կամ ըստ ասից բուզանդայ Գ. 9. * Հատաւ յերկրէն իշխանութիւն հայոց‖: Զորոյ զպատճառն դնէ խորենացին Գ. Դ. * Քանզի 'ի վախճանել երանելւոյն տրդատայ՝ մեծ իշխանն բակուր՝ որ Բդեշխն աղձնեաց անուանէր՝ տեսեալ զանատրուկ թագաւորեալ 'ի փայտակարան, զնոյն և ինքն խորհեցաւ, թէպէտ ոչ թագաւորել՝ զի ոչ էր արշակունի, այլ Տիրագլուխ կամեցաւ լինել. Ձեղքեալ 'ի միաբանութէ հայոց՝ ձեռն ետ յորմիզդ պարսից արքայ‖:

Իսկ թէպէտ հայք ձեռնտուութեամբ յունաց բարձին զապստամբն 'ի միջոյ, և զվաղինակ սիւնի կացուցին բդեշխ, (1) այլ սուղ ինչ զկնի՝ յորժամ որդի բակրոյ Հեշա անուն կալաւ զժառանգութիւն տանն՝ այս նահանգ զատուցեալ մնաց 'ի տէրութենէն հայոց 'ի ժամանակաց անտի Բ. խոսրովու որդւոյ տրդատայ. որ ոչինչ փոյթ կալաւ նուաճել զնոսա, ըստ ասելոյ խորենացւոյն Գ. 8. * Այլ

(1) Խորենացին Գ. 18. զվա- անուանէ արևելեան զօրուն: ղինակ սիւնի միայն սպարապետ

և ոչ վասն հաստուածելոյ կողմանցն (որք էին փայտակարան, և աղձնիք,) հակառակեցաւ ինչ յետ միոյ նուագի (պատերազմի), զոր 'ի յունականացն կրեցին զօրաց. այլ 'ի կամս թողեալ զարքայն պարսից՝ խաղաղութի ընդ նմա առնէ, բաւական համարեալ՝ մնացելոց սահմանացն տիրել ‖:

Յաւուրս Է. տիրանայ յաջորդին խոսրովու՝ դարձեալ անկաւ ընդ տէրութբ հայոց, որպէս երևի 'ի բանից բուզանդայ Գ. 14. զի անդ դնէ բնակեալ զտիրան: Նոյնպէս և յաւուրս Է. արշակայ յաջորդին տիրանայ էր ընդ տէրութբ հայոց. քանզի նոյն բուզանդ Դ. 20. դրէ վասն արշակայ. *Զուեայ ընդ աղձնիս ընդ իւր իշխանութին ‖:

Այլ յաւուրս սորին արշակայ անդրէն ապստամբեցաւ. *Եւ զօրն և տունն տոհմին Աղձնեաց կողմանն (ասէ բուզանդ Դ. 50.) ապստամբեցին յարքայէն հայոց արշակայ, և չոգան կացին առաջի արքային պարսից շապհոյ, և պարիսպ ածէին 'ի հայոց կուսէ՝ որ Ձորայ կոչէին. դրունս դնէին, և զատուցին զիւրեանց աշխարհն 'ի հայոց ‖:

Մուշեղ սպարապետ պապայ արքային յաջորդին արշակայ՝ վերստին գրաւեաց 'ի հայս, և վերակացուս և ոստիկանս կարգեալ յերկրին աղձնեաց՝ 'ի հարկի կացոյց, ըստ գրելոյ բուզանդայ Ե. 16:

Այս սակս ապստամբութի է՝ որով աղձնեաց նահանգ իբր օտար համարի յաշխարհէն հայոց առ մատենագիրս այլոց ազգաց, և առ մերում եղիշէի իսկ՝ ընդ օտար աշխարհս յիշատակի, ընդ վիրս, ընդ աղուանս և այլն. իբր զատուցեալ ինչ առանձին աշխարհ: *Ըստ այսմ պատճէնի (ասէ թղթ. 9.) հրովարտակ եհաս յաշխարհն հայոց, 'ի վրաց և յաղուանից, 'ի լփնաց և 'ի ծոփէից, 'ի կորդուաց և յԱղձնեաց ‖: Եւ 'ի թղթ. 92. *Քակեաց և զմիաբանութի աշխարհին վրաց 'ի հայոց, և աղուանիցն ոչ ետ յառաջ խաղալ, և զաշխարհն Աղձնեաց ըստ նմին իսկ օրինակի յետս կալաւ ‖:

Աղձնեաց Եպիսկոպոս 'ի Ը. դարուն յիշատակի առ յովհաննու կաթողիկոսի, և առ այլ՝ Սիոն կոչեցեալ, որ զկնի եղև կաթողիկոս:

Գաւառք սորա են տասն. որոց կարգ 'ի վերջին գաւառս զանազան օրինակաւ գրին 'ի ձեռագիրս աշխարհագրութե խորենացւոյն:

ա. Արզն:
բ. Նփրկերտ (1).
գ. Քեղ (2):
դ. Կեթիկ (3):
ե. Տատիկ:
զ. Աղձնեաց ձոր (4).
է. Սերհեթք (5).
ը. Գուզէղ (6):
թ. Սալնոյ ձոր (7).
ժ. Սասուն:

ԱՐԶՆ:

Այսպէս գրի 'ի տպագրեալն և 'ի միում ձեռագրի աշխարհագրութեան խորենացւոյն (8), իսկ յայլում՝ գրի Արզնն, և 'ի միւսում Արզնէ (9): 'Ի պատմութեան խորենացւոյն բ. 7. կամ 8. կոչի Արզն. ըստ այլ օրինակի Արծն:

Սոյն այս անուն է՝ որ նոյնպէս զանազան օրինակաւ գրի առ մատենագիրս յունաց. զի պրոկոպիոս 'ի գիրս շինուածոց գ. 2. կոչէ Արզանէ. *Յայնմ վայրի նիմփիոս (գետ) բաժանէ զհռոմայեցիս 'ի պարսից, որք 'ի վաղուց անտի ընդ իւրեամբք գրաւեալ ունին զԱրզանէ գաւառ՝ որ յայնկոյս գետոյն||: Նոյն 'ի գիրս պատերազմաց պարսից ա. 8. գրի Արզանինէ. *Գնէլեր իւրովքն հանդերձ եկանց ընդ գետն նիմփիոս՝ որ ընթանայ մերձ

(1) Զորմէ տես 'ի վերոյ 'ի ստորագրութեան Մարտիրոսաց քաղաքին:

(2) Յերկուս օրինակս խորենացւոյն՝ Քեղ:

(3) 'Ի տպագրեալն Կեթիկ. 'ի միում ձեռագրի Քեթիկ:

(4) 'Ի միում ձեռագրի՝ Աղձնաց ձոր: Յայլում ձեռագրի՝ Սաղձնաց ձոր: իսկ յերրորդում Աղձնող ձոր:

(5) Այսպէս յերկուս ձեռագիրս. իսկ 'ի տպագրեալն և 'ի միում ձեռագրի՝ Խերհեթք:

(6) 'Ի տպագրեալն միայն գնի Գուզէ:

(7) 'Ի միում ձեռագրի՝ Սանոյձոր:

(8) Արզն անուն յիշատակի և առ Թովմայի արծրունւոյ յաւելն. *Տէրէր յայնժամ Արզնայ և ներքոյ կողմանն Աղձնեաց մերձ 'ի սահմանս տարօնւոյ||: Եւ այլուր. *Իսկ գուրգէն օրըստօրէ աճէր զօրութեամբ 'ի բազում քան թէ 'ի սակաւ տեղիս, զոր 'ի տարօն, և զոր յանձաւացիս, և զոր յԱրզն||: Սոր ստորև յիշէ և զԱրզնոյ զօրսն:

Եւ ուրեք յառաջ բերեալ զերիս պատճառս վասն անուանակոչութեան արծրունեաց, ասէ՝ թէ մի պատճառ այսպէս կոչելոյ նոցա՝ եղև վասն բնակելոյ նախնեաց նոցա ագրամելէքայ և սանասարայ յԱրզն գաւառ, յորմէ ընկալան զանուանս Արզրունիք, և փոխմամբ Արծրունիք:

(9) Այլ Արզնի է նոր անուն, որ 'ի հնումն առ մատթէոսի կոչի Արզնի, զորմէ ունիմք գրել ստորև:

'ի մարտիրոպօլիս, և յԱրզանինի յարձակեալ, հապ ձեպ տագնապաւ զգաւառն յապականութի ածեալ, փութանակի անդրէն դարձաւ: Յայս անուն կոչէ և 'ի Է. 15:

Իսկ այսպէս յերկս տեղիս ևս պրոկոպիոս դնէ 'ի սահմանին պարսից 'ի ձեռն նիմֆիոս գետոյ բաժանեալ 'ի սահմանէն մարտիրոսաց քաղաքին որ 'ի Դ. հայս: Որով որպէս մերձաւորութի անուանն' նոյնպէս և տեղի նորա' յարմարի այսմ Արզն գաւառի. և նիմֆիոս վտակ որ խառնի 'ի տիգրիս' յայսմ կողմանէ լինի բաժանիչ ընդ չորրորդ հայս և ընդ աղձնիս:

Սոկրատ (1) կոչէ Արզանինէ. * Որ ընդ հայաստան 'ի պարսս յարձակեալ' զմին 'ի գաւառաց նորա Արզանինի կոչեցեալ, յաւարի առ: Զոր սորև յայտնի ևս դնէ 'ի հայաստան, յասելն. * Արդ' վասն զի որպէս ասացի 'ի վերոյ' պատերազմն 'ի գաւառէ հայաստանեայց փոխեցաւ 'ի միջագետս: Իսկ քանզի 'ի վերոյ ոչ յիշէ այլ գաւառ' բայց եթէ զԱրզանինի, յայտ է թէ զոր սորև կոչէ Պարսահայաստանեայց, զնոյն ակնարկէ:

Թէոփանէս յամի տն 417. կոչէ զսա Արզանինէ, կամ ըստ այլ օրինակաց Արզանինէ, զոր և վալէսիոս 'ի լուծմունս սոկրատայ' նոյն համարի ընդ Արզանինէ գաւառին սոկրատայ: Ամմիանոս գիրք ԻԵ. կոչէ լատին հնչմամբ Արզանենէ, զոր և դասէ մի 'ի հնգից գաւառացն որ յայնկոյս տիգրիսի. որով երևի թէ այս գաւառ ըստ մասին անկանէր 'ի ձախմէ տիգրիսի' ըստ դնելոյ ամմիանոսի. և ըստ մասին յաջմէ տիգրիսի, ըստ որում պրոկոպիոս դնէ զայն առ նիմֆիոս գետովն որ է աջակողմեան վտակ տիգրիսի:

Վալէսիոս նշանակէ անդէն և 'ի լուծմունս ամմիանոսի գիրք ԻԵ. գլ. 7. որպէս և բաձիոս յամն 503. թիւ ԺԴ. թէ այս գաւառ կոչի նաև Արզանենէ, Արզանինէ. և 'ի օդրավմնէ թղթ. 73. և 509. կոչի Արզանէնէ, այլ մեզ Արաքսինի յիշատակեալ 'ի օդրավմնէ' նոյն թուի ընդ Արզանինեան գաւառ' զոր յիշէ նա ևւքն 'ի 527. և դնէ առ երասխաւ, ուստի և հեռի յաղձնեաց նահանգէն: Այլ թէպէտ 'ի 73. դնէ զսա 'ի հարաւոյ քան զվերակամ նահանգն պարսից, բայց զորոշումն սահմանաց չէ պարտ ճշգրիւ յուզել առ նախնիս. զի և զաղձնենի գաւառ հայոց' այն է շակաշէն, դնէ անդէն 'ի հարաւա

(1) Գիրք Է. գլ. 18:

կողմն քան զԿլըկան, որ է 'ի Հիւսիսոյ. գոլով մի 'ի գաւառաց ուստի նահանգին: Տես ստորև և զԱրզն:

Արզն: Զորմէ ասացեալ է. 16. *'Ի սմանէ զարհուրեալ մեծ ազգն Համտանայ (1) որ էին բնակեալ 'ի դաշտին Տարօնոյ՝ թողին զամուր քաղաքս իւրեանց զՆփըրկերտ, զԱմիդ, զԱրզունն, և զայլն ամենայն, փախստեայ գնացին յաշխարհն յունաց‖: Դնէ զսա 'ի դաշտին Տարօնոյ, վասն զի աղձնիք և չորրորդ Հայք ըստ մասին անկանին 'ի միջագետս. զոր սովորութիւն է 'ի գործ ածել, յօդելով ընդ անուանս Ասորւոց, և ոչ վասն գոլոյ յատուկիս արտաքոյ Հայոց. զի և զՆփրկերտ դնէ 'ի դաշտին Տարօնոյ՝ որ էր 'ի Հայս:

Ասողիկ յիշէ զքաղաքն. իսկ ասորի մատենագիրն դիոնեսիոս պատրիարգ յակոբեան՝ յիշէ զգաւառն Արզն անուամբ, յասեն յամին յունաց 706, որ է ամ. տն. 375. (2) Թէ Հոռմք * Ապականեցին զամենայն գաւառս ասորւոց՝ որք առ ստորոտով լերինն Արիոս, զԱրզուն, զՄայփերաքդա (որ է Նփրկերտ), զԱմիդ, զՀանադէթ (որ է Հանձիթ,) և զՍամոսատ‖:

Զայս Արզուն գաւառ յիշէ դիոնեսիոս նաև յամին յունաց 735 (3). ուր գրէ Արզոնիդէս: Այլ զի գաւառք ըստ մեծի մասին 'ի գլխաւոր քաղաքէն առնուն զանուն իւրեանց, երևի թէ սա էր գլխաւոր քաղաք գաւառին՝ յորոյ անուն և գաւառն կոչեցաւ 'ի մեզ Արզն. յասորիս Արզուն, և առ յոյնս Արզանէ կամ Արզանենէ և այլն. որպէս և ասսեմանն իսկ համարի նոյն: Այժմ կոչի այս քաղաք Հազրօ, զորմէ տես 'ի Նոր Հայաստան, Թղթ. 242:

## ՍԱՍՈՒՆ:

Ի աղաւաղեալն անուանս Սանասուն: Կոչեցաւ այսպէս յանուն սանասարայ որդւոյ սենեքերիմայ արքային ասորեստանեայց, որոյ փախուցեալ յաշխարհս մեր ընդ եղբօր իւրոյ՝ բնակեցաւ 'ի կողմանս աղձնեաց, և 'ի նմանէ սերեալ որդիք լցին բնակութբ զայս գաւառ, և յա-

(1) Յայլում օրինակի գրի Համ. Թուղթ 249: ...տունայ:

(2) Առ ասսեմանեայ հատ. ա. սեմանեայ ա. 196:

(3) Որպէս է տեսանել առ ա...

նուն Նախնոյն Իւրեանց կոչեցին. ուստի գրէ Լաստիվերտ-
ցին. (գլ. Իա.) *Ի մտանել նորա 'ի սահմանս տարօ-
նոյ՝ իջին զօրք 'ի լեռնէն Սիմ կոչեցեալ, զոր մարդկան
սովորութիւք Սանասուն ասեն, ըստ անուան Նախնոյն Իւ-
րեանց ‖։ Տես և զբանս Խորենացւոյն Ա. 22. զոր յա-
ռաջ բերաք 'ի վեր անդր։ Յայս հայեցեալ Վարդանայ
աշխարհագրի գրէ՝ թէ զՍասուն շինեաց Սանասար որդի
Սենեքերիմայ (1)։

Դիրք սորին գաւառի քանզի ձգի 'ի վերայ տօրոս լե-
րին, ուրեք ուրեք փոխանակ կոչելոյ զբնակիչս Սասուն
անուամբ, կոչեն Բնակիչք տօրոս լերին։ Օրօրինակ յով-
հաննէս կաթողիկոս, և ասողիկ Բ. 2. զսպանիչս ապու-
սէթ ոստիկանին՝ որք էին Սասունք, կոչեն Բնակիչք տօ-
րոս լերին։ Նմին իրի սամուէլ 'ի բացայայտութե՝ զերկո-
սին անուանս ևս 'ի կիր առնու յասելն. *Իսկ Բնակ-
չաց տօրոս լերինն՝ որ Սասունք արդ անուանին, յա-
ղագս վրէժ խնդրելոյ զբագրատայ՝ 'ի միասին ժողովեալ
միաբան զլխուորութե սպանին զապուսէթ ‖։

Այս Սասուն անուն յիշատակի 'ի ծանօթութեան
եպիսկոպոսարանաց Լևոնի և Անդրոնիկոսի (2), այլ վրի-
պակաւ գրի Նասուն. *Իւ բնակին 'ի լեառն Տօրոս,
մանաւանդ այնր գաւառին (այսինքն մեծին Հայոց)
երկու ժողովուրդք, մին անուանեալ Խոռձիտք, իսկ միւսն
Սասունիտք ‖։

Այլ այս մասն տօրոսի՝ ուր ձգի Սասուն, առանձին
անուամբ կոչի Սիմ. յայտ է 'ի Խորենացւոյն Բ. 7.
որ ասէ. *Իւ զլեառն Տօրոս՝ ուր և Սիմ ‖։ Յայտ է
և 'ի Լաստիվերտցւոյն Իա. որ վասն Սիմ լերինն գրէ՝ թէ
կոչի Սանասուն, կամ որ նոյն է Սասուն. զոր սամուէլ
վասն տօրոս լերինն գրէ։

(1) Այլ ոչ ճշգրտիւ գրէ ան-
դէն Վարդան աշխարհագիր յասելն,
Արծրունիք Սասուն է։ Զի արծ-
րունիք ըստ Խորենացւոյն չէին 'ի
Սանասարայ, այլ յԱդրամելէքայ
'ի միւս որդւոյն Սենեքերիմայ, և
բնիկ երկիր նոցա չէ Սասուն, այլ
Վասպուրական։ Բայց եթէ յայլ
դէմս այսպէս առեալ ասիցէ, ըստ
որում 'ի սկզբան գաղթեան Իւ-
րեանց՝ 'ի Սիմ, կամ որ նոյն է 'ի
Սասուն բնակեցան և՛ Սանասար
և՛ Ադրամելէք՝ յորմէ են Արծրու-
նիք, որպէս գրէ և Թովմա Արծ-
րունի։ Թէպէտ և ըստ Խորենաց-
ւոյն Ադրամելէք բնակեցաւ Յարևե-
լից հարաւոյ նորին կողմանն, այսինքն
Սիմ լերին։ Եւ զի ըստ Նորին
Թովմ. մեծն Տիգրան զհամօրէն
զաղձնիս ետ 'ի ժառանգութիւն
Արծրունեաց։

(2) Որ գտանի Նաև 'ի ԺԶ. հա-
տոր Բուզանդարանին Թղթ. 559։

Նաև անուանեցաւ այսպէս յանուն սեմայ միոյ յորդւոցն քսիսութրեայ՝ այսինքն Նոյի, որպէս նշանակէ խորենացին ա. 5. յանգիր աւանդութեց ոլոմպիոդորայ իմաստնոյ։ *Յետ նաւելոյն քսիսութրեայ 'ի Հայս, և դիպելոյ ցամաքի՝ գնայ մի յորդւոց նորա կոչեցեալն Սիմ ընդ արևմուտս հիւսիսոյ՝ դիտել զերկիրն։ Նաև դիպեալ դաշտի միում փոքու՝ առ երկայնամատիւ միով լերամբ (իմա զգօտի տօրոսի.) գետոց ընդ մէջ նորա անցանելով 'ի կողմանս ասորեստանի, դադարէ առ գետովն երկլուսնեայ աւուրս, և անուանէ յանուն իւր զլեառն Սիմ։

Յայս հայեցեալ Թովմայի արծրունւոյ՝ գրէ. *Ադրամելէք և Սանասար գան մտանեն 'ի լեառնն Սիմ, որ յանուն հաւոյն իւրոյ սեմայ անուանեալ էր լեառնն... և ելեալ նոցա 'ի Սիմ լերինն մինչ 'ի տիգրանն հայկազնեաց։ Նաև այսպէս Սիմ է հին և նախկին անուն տեղւոյն, իսկ Սասուն՝ անուն բնակչաց զինի եղեալ, և 'ի բնակչաց նաև տեղին յորջորջեալ։ Բաց յերից անուանց աստի Սասուն, Տօրոս և Սիմ, որովք կոչի այս սահման, ունէր և այլ չորրորդ անուն, որ է՝

Խութ. *Բայց 'ի լեռնայնոցն (ասէ Թովմա արծրունի,) որ յամուրս իւրեանց մնայլն 'ի լերինն Խութ անուանեալ։ Կիրակոս զայս անուն 'ի սեռականն 'ի կիր առնու. *Օ որ իմացեալ բնակիչք լերինն Խութայ՝ որ Սասունք անուանին, եկեալ սպանին զապուսէթ։

Նաև զորօրինակ տօրոս և սիմ տիրապէս են անուանք լերինն որ 'ի սասուն գաւառի, սոյնպէս և զԽութ կամ զԽութ երկու վերոգրեալ պատմագիրք սեպհականացուցանեն յանուն լերինն (1). իսկ անունն առեալ է ոչ

(1) Ըստ Թովմայի մեծոփեցւոյ յիշատակի լեառն Մօշոնոյ 'ի կարգի լերանցն Խութայ. մանաւանդ իբրև բարձրագոյնն 'ի նոսա և անմատչելի, քանզի ասէ. *Եւ քրիստոնէիցն ապստամբեալ՝ ոչ կամէին ելանել 'ի լեառն Խութայ և Սասնոյ ... իսկ նա բանուք ... եհան զմեզ զառ 'ի վեր լերինն Խութայ. և նոյն օր հասին զօրք Ճաղաթին 'ի վերայ մեր։ Եւ ըղկնի. *Թուրքման փիրհասանն (իբրև) կամէր ելանել 'ի ժողովարանն, և գնալ 'ի լեառն Մարաթու, յանկարծակի դիպեցան զօրացն Ճաղաթին։

Պատմէ աստանօր զպատերազմն՝ որ եղև ընդ գաւառականացն և զօրացն Ճաղաթային, և զպարտութիւ նոցա. և 'ի կամիլն լանկթամուրայ դիմել վերստին 'ի վերայ լեռնականացն՝ պատասխանի արար նմա առաջնորդն որ ածէր զնոսա, թէ չէ *կարողութիւն մարդոյ ընթանալ զհետ նորա, զի ելեալ է 'ի լեառն Մարաթու։

'ի Խոյթ գաւառէն տուրուբերանոյ, այլ 'ի Խորխոռունէ խասից եւ բարուց բնակչաց։

Սահմանակից է Սասուն՝ տարօն գաւառին տուրուբերանոյ, զի 'ի վերայ լերին տորոսի է սասուն, եւ առ ստորոտով նորին տարօն, որպէս յայտ է 'ի բանից մատթէոսի ձլթ. * Վնաց զօրքն այլազգեաց 'ի գաւառն տարօն, որ եւ բնակեալ առ ստորոտ լերինն տորոսի մերձ 'ի Սասուն. եւ լուեալ զայս իշխանն հայոց զօրաւոր եւ քաջ որդին մուշեղայ թոռնիկն, եւ ժողով արարեալ զամենայն Սասուն, եւ հասանէր 'ի վերայ զօրացն այլազգեաց ‖։

Նոյն է տեսանել եւ առ խորենացւոյն ՟Բ. 81. ուր զՍիմ լեառն՝ որ է Սասունք, սահմանակից դնէ տարօնոյ. * Նահապետն ազգին ողկունեաց՝ ամրանայր յամրոցին՝ որ անուանեալ կոչի ողական, ապաւէն առնելով իւրեան զբնակիչս Սիմ կոչեցեալ լերին, եւ ընդդիմացեալ թագաւորին՝ աղմկէր զերկիրն որ մերձ առ լերամբն ‖։

Զբնակիչս սորա յովհաննէս կաթողիկոս բարուք կոչէ Խուժադուժս։ Այլ զկատարեալ համգամանս բարուց եւ սովորութեանց նոցա, որպէս եւ զպատճառ անուանակոչութեանն՝ ձախագոյն ունիմք գտանել առ թովմայի արծրունոյ, զորոյ զբանս՝ քանզի չէ ամենեցուն առաջի ունել, 'ի դէպ համարիմք յառաջ բերել 'ի զուարճութիւն հնասիրաց։

* Աստանօր (ասէ) սակաւուք բացայայտեցից զորպիսութիւն բնակչաց (Խոյթ) լերինն, թէ զիարդ կամ որպիսի ոք են, եւ որպէս հնարաւորեալ յապրուստ անձանց վճարեն զկարեւոր պէտս իւրեանց լի աշխատութեամբ եւ սաստիկ տառապանօք։ Նա բնակութիւն նոցա 'ի խորաձորս եւ 'ի փապարս լերանց, եւ 'ի պրակս մայրեաց 'ի գագաթունս լերանց. եւ բնակեն առանձին ըստ տունս ազգաց։ Նա այնչափ 'ի բացեայ են 'ի միմեանց՝ մինչ թէ ոք յարանց զօրաւորաց 'ի բարձրաբերձ տեղեաց ուժգին խանչիցէ, հազիւ թէ ուրեք կարիցէ առնուլ զբոմբիւն ձայնին, իբրեւ 'ի վիմաց ինչ արձագանք լինելոյ կարծիս բերելով։

" Նա կեսքն վրիպեալք 'ի բնական հայրենի լեզուէն յաղագս հեռաբնակն լինելոյ, եւ անհամբոյրք միմեանց համդիպեալք, եւ խօսս միմեանց եդեալ կարկատուն մուրացածի բանիւք. եւ այնքան խրթնի անծանօթք պատա-

հէն առ միմեանս՝ մինչև թարգմանաց անդամ կարօտա-նան ։

» Այլ զայծոս կերակրոցն վճարեն 'ի սերմանց ինչ, առաւել 'ի կորեակ կոչեալ սերմանէն, զոր ոմանք 'ի սով ժամանակի հաց անուանեն. և զնոյն ոռոգեալ ոտիւք 'ի միջոցս պրակացն, կամ երկմատնի փայտատովք սերմա-նեալք ։

» Այլ է զգեստ նոցա ասուիս 'ի ծածկոյթ մերկութ՟ն, և օդ ոտիցն հնարաւորեն զձև կօշկաց 'ի մորթոց այծից կազմեալ ; և միով կերակրով և միով հանդերձիւ բաւա-կանանան զամառն և զձմեռն ։ Այլ են ստացեալ զէնս աշտեայս, համապազ կրելով ընդ ինքեանս 'ի պատրաս-տութ՟ի գազանացն՝ որք 'ի լերինս բնակեն. այլև 'ի ժա-մանակս հասելոց թշնամեաց յերկրին իւրեանց՝ գան միաբան լեռնայինքն յօգնութիւն իշխանացն՝ զի են տի-րասէրք ։

» Իսկ վասն ձեանն անկայուն զօրութ՟ն՝ որ այն ինչ յամպոյն 'ի վ՟ր զեղեալ լինի, հնարաւորեալ իւրեանց փայտս իբրև զանուրս չուանօք պարուանակեալ շուրջ զո-տամբ, դիւրաւ ընթանան 'ի վերայ ձեանն իբրև ընդ ցամաք երկիր ։ Այլ են գազանաբարոյք արիւնարբուք, առ ոչինչ համարելով զսպանումն եղբարցն հարազատաց, նաև զանձանց ևս ։

» Այլ կոչին սոքա մեկնակաղէնք սուրհանդակք, բնա-կեալք 'ի լերինս՝ որ բաժանէ ընդ աղձնիս և ընդ տա-րօն, և յաղագս խրթնի և անհետազօտելի խօսիցն և բարուցն՝ կոչին Խութ. յորոց անուն և լեառն Խութ ա-նուանի ։ Այլ գիտեն զսաղմոսն զհին թարգմանեալսն վարդապետացն հայոց՝ զոր համապազ 'ի բերան ունին ։

» Սոքա են ... զէնի ադրամելէքայ և սանասարայ որդ-ւոյ սենեքերիմ արքայի թագաւորի ասորեստանի և նի-նուէի, յորոց անուն ինքեանք Սանասեանք զինքեանս անուանեն. և են հիւրասէրք, օտարընկալք, պատուա-դիրք ։ Տես զՍասուն և 'ի Նոր հայաստան. թղթ. 200 ։

'Ի տասներորդ դարուն բազմամարդ էր այս գաւառ. քանզի Թոռնիկ իշխանն ընդդէմ հոռոմացեալ փիլար-տոսի բռնաւորին, 'ի ժողովելն զամենայն սասուն ըստ ա-սելոյ մատթէոսի՝ կարաց հանել Ծ. հազար հետևակ զօրս, և Ղ. հազար հեծելազօրս ։ Ունէր իշխան առան-ձին, յորոց մի էր և վիգէն՝ յիշատակեալ 'ի վարդանայ 'ի ԺԲ. դարուն ։

Իսկ 'ի ժը. դարուն՝ համօրէն սասուն անձնատուր եղև 'ի հնազանդութիւն մուղալ Թաթարաց, որոց և խանն հուլաւուն անուանեալ՝ կարգեաց 'ի վերայ սասնոյ իշխան զսադդուն քրիստոնեայ հաւատով՝ զայրն անձնեայ և քաջամարտիկ. զոր նոյն խանն ընդ առաջին ախոյեանսն ունէր, որպէս պատմէ կիրակոս:

Մարդան աշխարհագիր զերկուս տեղիս դնէ յայս գաւառ՝ յասելն, Սոփոնէք և Մանախոս ջուրն 'ի սասուն է. այլ զկոգովիտ գիտեմք լինել գաւառ արարատ նահանգին. իսկ Մանախոս ջուր անյայտ է մեզ:

Խութեան: Ի յայսմ գրի առ վարդանայ, և թուի դնել 'ի սասուն. յասելն, * Խուռն վիգենայ շահնշահ քեռորդի ՚ին գրիգորի կաթողիկոսի ... առեալ զիւրսն անկանի 'ի Սասունս, և անդ անկաւ 'ի ձեռս նորա բէկ դամուրն, որ էր իշխան ամենայն տանն շահին. և առնու 'ի նմանէ զբերդն որ Խառաձեան կոչի. և ուխտիւ արձակեաց. որ և առեաց ուխտին 'ի տիրելն իւրում աթոռոյ շահին, և զայն ևս (այսինքն զԽառաձեան) և զամենայն Սասունս եհան 'ի նմանէ ||:

Յիշատակի սա և առ յովհաննու մամիկոնէի 'ի թղթ. հը. ուր կոչի Խութեն. բայց ոչ գտանի 'ի ձեռագրի, այլ փոխանակ այնր դնի Հոյթեան, մօտ յարածանի գետ:

### Տեղիք ուշնեաց, որոց գաւառ անծանօթ:

Տիգրանակերտ: Ըստ ղանդ Ե. 27. կոչէ Ամիդ և Բաղեշ. որ է հուշակաւոր առ մատենագիրս մեր, և առ մատենագիրս հռովմայեցւոց և յունաց: Է մի 'ի քաղաքաց աշխարհի՝ որք 'ի սկզբանէ անտի շինութե իւրեանց ծաղկեալ կան մինչև ցայժմ:

Յոյնք գրեն Տիգրանոկերտա, և հռովմայեցիք իւրեանց հնչմամբ Տիգրանոցերտա: Կոչեցաւ այսպէս՝ սակս կերտեալ գոլոյ 'ի մեծէն տիգրանայ արքայէ՝ որպէս անունն յայտ առնէ առ մեզ: Ստեփաննոս բիւզանդացի զբառս Կերտ՝ 'ի բարբառ պարթևաց համարի նշանակել Քաղաք. այլ ուղղագոյն Իսիքիոս հմուտ քան զայլս 'ի քննութիւն բառից, գրէ լինել՝ բառ հայոց. միայն երկոքին ևս յայնմ սխալեցան՝ զի զԿերտ, կամ ըստ նոցա Գերտա՝ համարեցան նշանակել Քաղաք, որ յայսմ վայրի ճշդիւ նշանակէ Կերտեալ, շինեալ:

Ի չորրորդ և 'ի հինգերորդ դարուն առ մատենագիրս օտար ազգաց՝ եւ անունս Աղձն. և առաջին անունն առ սակաւ սակաւ ըստ ամենայնի խափանեցաւ առ նոսա: 'Ի գործ ածէ զնոյն և ագաթանգեղոս որ 'ի չորրորդ դարուն, առ որում 'ի Թղթ. յհղ. կոչի Աղձնայոց Դրաղաւ. և Թովմաս արծրունի՝ յասելն. *Տարադէմ զնացին յԱմդացւոց քաղաքն առ աՀմատ‖: Իսկ այլ բազում մատենագիրս մեր սովորական ինաց առաջին անունն:

Վասն որոյ վերջին պատմագիրք մեր ուրեք ուրեք 'ի բացատրութիւն յաւելուն և զերկուսին անուանս. զառաջին անունն իբր մեզ սեպհական, իսկ զերկրորդն՝ զոր և գրեն Արզն, կամ Աղձն, իբր սեպհական և սովորական առ օտար ազգս. *Իջանէր (ասէ մատթէոս) 'ի վերայ Տիգրանակերտ քաղաքին՝ որ անուանեալ կոչի Ամիդ, 'ի վերայ Օդգղատ գետոյ‖, այսինքն է տիգրիս գետոյ: Նաև վարդան. *Տիգրան շինեաց զՏիգրանակերտ, որ ասի Ամիթ‖: Նոյնպէս գրէ և վարդան աշխարհագիր:

Ուստի հաստատէ և այն՝ զի ուր խորենացին 'ի պատմելն զառումն շապհոյ՝ կոչէ Տիգրանակերտ, զնոյն յոյն պատմագիր 'ի նմին պատմութեան կոչէ զայն Ամիդ: Այլ այս անուն 'ի հին վարս յակոբայ մծբնայ՝ գրի Ամդ, ըստ հնչման արաբացւոց՝ առ որս տառս ա երբեմն այնպէս հնչի, որ բերէ և զհնչումն է տառիս:

Անդրէաս մասիոս որ 'ի վեշտասաներորդ դարուն, և այլք ոմանք՝ զԱմիդ 'ի հնումն կոչեցեալ համարին 'ի պտղոմեայ Ամմեա, որ 'ի միջագետս: Այլ պտղոմէոս յիշէ զՏիփկրանոկերտա քաղաք 'ի մեծ հայս, որ է նոյն իսկ Ամիդ՝ որպէս ցուցաք:

Բաց յերկուց անուանց աստի՝ ընկալաւ այս քաղաք և այլ երրորդ անուն յանուանէ կոստանդիոսի կայսեր՝ ըստ վկայելոյ ամմիանոսի, որպէս թէ Կոստանդիա, ըստ մեզ Կոստանդիա: Այլ այս անուն ոչ 'ի գործ ածի, ոչ առ ամմիանոսի, և ոչ առ այլ նախնիս (1):

Գիրք Տիգրանակերտ քաղաքին անկանի յայս նահանգ՝ ըստ գրելոյ բուզանդայ Դ. 24. *Նաև առին աւերեցին զմեծ քաղաքն Տիգրանակերտ՝ որ էր 'ի գաւառին Աղձ.

(1) Մառդինիէ 'ի բառն Օստհեջնէ՝ զԿոնստանդիա քաղաք՝ զոր գաւառագրագիրք դնեն 'ի Օսրոենի գաւառ, համարի լինել Ամիդ. բայց երկուքին ևս գաւառագրագիրք երուգլի և լևոնի իմաստնոյ՝ որք զԿոնստանդիա դնեն 'ի Օսրոենի, տորև յիշեն նաև զԱմիդ, դնելով 'ի միջագետս:

նեաց, յիշխանութեան բդեշխին ‖ : Նոյնպէս յաղձնիս դնէ և 'ի Ե. 27. և զի սա նոյն է ընդ ամիդ քաղաքին՝ որպէս ասացաք, անկանի յայն սահման աղձնեաց՝ որ յաջմէ է տիգրիսի 'ի վերին կողմն միջագետաց:

Օտար ազգաց մատենագիրք զՏիգրանակերտ դնեն 'ի մեծ Հայս, իսկ զգիրս նորա սղրաւոն ակնարկէ լինել 'ի միջագետս, 'ի դնելն զմասիոս լեառն 'ի վերոյ՝ այսինքն 'ի հիւսիսոյ մծբնայ և տիգրանակերտի:

Զի մասիոս ըստ սղրաւոնի է մասն տօրոսի՝ որ բաժանէ զհայս 'ի միջագետաց. ուստի և անկեալքն 'ի հարաւոյ մասիոսի՝ զօրօրինակ են մծբին և տիգրանակերտ, անկանին 'ի միջագետս. վասն այնորիկ և զտիգրանակերտ յիշատակէ միանգամայն ընդ մծբնայ, յայտ առնելով՝ թէ ըստ մծբնայ է քաղաք միջագետաց. մանաւանդ զի ըստ մեզ՝ սոյն այս մասիոս հայոց յիշատակեալ 'ի սղրաւոնէ՝ է նոյն իսկ մասիոս միջագետաց՝ յիշատակեալ 'ի պտղոմեայ, որպէս ունիմք գրել 'ի խօսելն զլերանց հայոց:

Նոյնպէս 'ի միջագետս լինել ակնարկէ սղրաւոն (1) յասելն. * Զի զամենեսին 'ի բաց հանեալ յիւրեանց տեղեաց՝ փոխադրեաց (տիգրան) 'ի միջագետս, և զմեծ մասն Կիլիկրանոգերդեայց բազմացոյց 'ի նոցունց‖: Եթէ զամենեսին բնակեցոյց 'ի միջագետս՝ որպէս ասէ սղրաւոն, զհետ գայ և տիգրանակերտին լինել 'ի միջագետս: Սամն որոյ յայտնի վրիպակ է առ սղրաւոնի (2), ուր զտիգրանակերտ դնէ մերձ յիվերիա, այսինքն 'ի վիրս, ընդ մէջ վրաց և զեվգմաի՝ որ է առ եփրատաւ, նմին իրի և շփոթ 'ի լուծմունս չէլլարիոսի զԽվերիայն ուղղագրէ 'ի Ախվար, զոր սղրաւոն (3) երևի կոչել նաև Խմվար:

Պլինիոս Է. 10. դնէ 'ի մեծ հայս զՏիգրանակերտ, և ակնարկէ լինել 'ի բարձր վայրի առ տիգրիսիւ: Տակիտոս ԺԵ. 4. դնէ առ նիկէֆորիոս գետակաւ. * Առ սովաւ (այսինքն Տիգրանակերտիւ) նիկէֆորիոս գետակ ոչ փոքր ինչ լայնութեամբ զմասամբ պարսպացն պատի, և ահագին ածեալ փոս, որով զատուցեալ կայր 'ի գետոյն‖: Այս գետակ անծանօթ է այլոց, բայց Նիկէֆորիում

(1) Գիրք ԺԲ. Թղթ. 539:
(2) Գիրք ԺԱ. Թղթ. 532: Նաև բանք պատմութեան սղրաւոնի ոչ ներէ առնուլ վասն միւս տիգրանակերտին որ 'ի փայտակարան:
(3) Գիրք ԺԱ. Թղթ. 531:

կամ ըստ յունաց՝ Նիկեփորիոն անուն քաղաք դրանի 'ի միջագետս. և 'ի ժԵ. 5. նոյն Տակիտոս հեռի դնէ զՏի-գրանակերտ 'ի Մծբին քաղաքէն միջագետաց լԷ. մղոնաւ:

Արդ՝ գիրք նշանակեալք 'ի սոցանէ՝ ոչ կացուցանեն զՏիգրանակերտ արտաքոյ միջագետաց, այլ մանաւանդ Ստրաբոն և Տակիտոս ակնարկեն լինել 'ի միջագետս՝ որ-պէս ասացաք. բայց Պտղոմէոս Ե. 13. արտաքոյ կացու-ցանէ՝ դնելով զՏիգրանակերտ ընդ աստիճանօք 76. 45. և 39. 40: Իսկ զաղբիւրն տիգրիսի՝ 74. 40: 39. 40:

Բայց յայտ է թէ աստիճանք չեն ճշգրիտ նշանա-կեալք առ Պտղոմեայ, որպէս և զՏօսպ գաւառ և քա-ղաք՝ զոր կոչէ Թոսբիտ, դնէ ստորև, այսինքն՝ 'ի հարա-ւոյ հանձիթ գաւառին, յարևմտից կամ յաջմէ աղբեր տիգրիսի ընդ աստիճանօք 74. 20: 39. 50:

Նոյնպէս և բազում քաղաքաց տեղիք վրիպական նշա-նագրեալ կան առ Պտղոմեայ. որպէս զարմաւիր, զար-տաշատ, և զնախիջևան դնէ առ եփրատաւ, զոր պարտ էր դնել առ երասխաւ, ըստ որում ծանուցանէ և սալ-մասիոս. և վասն զի այլուստ քաջայայտ գիտեմք թէ տի-գրանակերտ նոյն է ընդ ամդայ. անդ պարտ է դնել ըզ-տիգրանակերտ՝ ուր է ամիդ:

Այլ թէ ծանօթ լինէր չէլլարիոս՝ ոչ զհետ երթայր Պտղոմեայ յաշխարհացոյցն իւր նկարեալ ըստ միջին դա-րու, և ոչ այլ քաղաք կացուցանէր զտիգրանակերտ՝ դնե-լով 'ի ձախմէ տիգրիսի, և ոչ զամիդ՝ յաջմէ տիգրիսի 'ի միջագետս:

Արդ՝ վասն գրեց Տիգրանակերտի այսչափ ինչ գտա-նեմք առ նախնիս. իսկ զգիրս Ամդայ մատենագիրք ա-սորւոց դիոնեսիոս պատրիարգ յակոբեանց, և հեղինակն ժամանակագրութեան եդեսիոյ (1) 'ի միջագետս կացուցա-նեն, և կոչեն Ամիդ Միջագետաց: Նոյնպէս և եւագր՝ որ գրէ (2). * Իբրև առին զքաղաքն թէոդոսուպոլիս՝ խաղացին 'ի կողմն Ամիդի, որ է քաղաք միջագետաց, ըստ բաւականին ամրացեալ: Նա և գաւազանագիրք Ե-րոկղի մի միայն քաղաք միջագետաց զԱմիտա դնէ. և 'ի մերոց յայտնի եւս կիրակոս, որ գրէ վասն մուղալ թա-թարաց 'ի ժԳ. դարուն, թէ ասպատակ սփռեցին

(1) Գիրք Դ. գլ. 37: Թղթ. 395. և 273.
(2) Առ ասսեմանեայ հատ. ա.

* 'Ի միջագետս ասորւոց, յԱմիդ, և յուռհայ, և 'ի Մծբին, և 'ի շամբին, և յայլ բազում գաւառս ‖ :

Այլ այս ոչ ընդդիմանայ ինչ դրից Տիգրանակերտի՝ որ է յաղձնիս. զի որպէս ասացաք՝ չորրորդ Հայք և աղձնիք ըստ մասին անկանին 'ի միջագետս : Հաստատէ զայս պրոկոպիոս՝ որ զԱմիդ դնէ 'ի Հայս, յասելն 'ի գիրս շինուածոց . Գ . 1 . * Ո՛չինչ տարադէպ համարիմ դառնալ անտի առ Հայս՝ որք յԱմիդ քաղաքէն մինչև ցմիւս Թէոդոսիուպոլիսն բնակին առ պարսիւք ‖ : Նոյն ստորև . * Իսկ միւս Հայոց՝ որ գետոյն Եփրատաւ շրջափակեալ՝ ձգի մինչև ցԱմիդ քաղաք, Նախարարք հինգ Հայկազունք կային 'ի վերայ ‖ :

Իսկ 'ի գիրս պատերազմին պարսից Ա . 17 . ևս առաւել բացատրէ զայս, ուր զնոյն զԱմիդ քաղաք դնէ 'ի միջագետս և 'ի Հայս, յասելն . * Ոմանք զայն սահման (միջագետաց) որ ձգի մինչև ցԱմիդ՝ կոչեն Հայաստան ‖ : Ուր զԱմիդ պա՛րտ է առնուլ փաղառութե . զի անտի 'ի վայր կոչի ասէ Սոփենի գաւառ՝ յորում ո՛չ անկանի Ամիդ :

Զնոյն հաստատէ և ծանօթութի եպիսկոպոսարանաց լևոնի կայսեր, որ զԱմիդ դնէ մայրաքաղաք չորրորդ Հայոց (ընդարձակ առեալ). և զնոյն չորրորդ Հայս՝ կոչէ Վերին միջագետք :

Այլ թէ յորում կողման միջագետաց անկանի Ամիդ, որոշէ պրոկոպիոս 'ի գիրս պատերազմին պարսից Ա . 21 . ուր զմարտիրոսաց քաղաքն դնէ 'ի հիւսիսոյ Ամդայ . որով Ամիդ լինի 'ի հարաւոյ նորա, հեռի 'ի նմանէ 240 ասպարիզօք՝ որ առնէ 30 մղոն : Նոյն 'ի նոյն գիրս գլ . 8 . զտեղի նինփիոս գետակին՝ ընդ որ եանց գելեր զօրավար, (որպէս մեկնէ չելլարիոս) (1) հեռի դնէ յԱմդայ 300 ասպարիզօք, որ առնէ առաւել քան զ37 մղոն :

Նոյնպէս և ամմիանոս գիրք ԺԸ . գլ . 9 . 'ի հարաւոյ ամդայ անցանէ ասէ տիգրիս, որ փոքր ինչ 'ի վերոյ յառնէ (այսինքն յընդերկրեայ անցից իւրոց) . յարևելից հայի 'ի դաշտս միջագետաց, 'ի հիւսիսոյ մերձ է 'ի նինփիոս գետակ՝ պատեալ լերամբք տորոսի (2), որք բա-

(1) Գիրք . Գ . գլ . ԺԵ . Թիւ 39 :

(2) Ամմիանոս յայսմ վայրի ըզլերինս տորոսի դնելով 'ի հիւսիսոյ ամդայ, զհետ գայ՝ ամիդ քաղաքին լինել 'ի հարաւոյ տորոսի, ուստի և արտաքոյ հայաստանեայց, ըստ որում տորոս լերինք են բաժանիչ հայաստանեայց և միջագետաց . այլ վասն այսր տես 'ի միջագետս :

ժամենն զաջգս որ յայնկոյս տիգրիսի, և զՀայաստան։

Այս քաղաք՝ որովհետև է յայն սահման Հայաստանեայց՝ որ կոչի նաև միջագետք, որպէս յայտ եղև յառաջելոցս մինչև ցայսվայր, ուրեք ուրեք 'ի գիրս մեր կոչի Ուռհայ Ասորւոց կամ 'ի դաշտին Ասորւոց։ Ուստի սովորութիւն է զանուն միջագետաց 'ի գործ ածել յարակցելով ընդ անուանս Ասորւոց, որպէս ունիմք գրել 'ի միջագետս։ Իսկ այսմ գրէ կորիւն. * Երթեալ համանէր 'ի կողմանս Արամի՝ 'ի քաղաքս երկուս Ասորւոց, որոց առաջինն Եդեսիա կոչի, և երկրորդն Ամիդ անուն‖։ Նոյնպէս և ասողիկ. * Իսկ խոսրեմ անցեալ ընդ Ասորիս՝ հնազանդեցոյց զԱմիդ, զուռհա, և զանտիոք‖։ Զնոյն գրէ և 'ի գ. 16. զորս զբանս եդաք 'ի վերոյ։

Շինեաց զՏիգրանակերտ մեծն տիգրան, և անդ բնակեցոյց զքոյր իւր զկին աժդահակայ, որպէս պատմէ խորենացին տ. 29. * Յուղարկէ թագաւորապէս զքոյր իւր տիգրանուհի մեծաւ ամբոխիւ 'ի հայս, յԱման զոր շինեաց իւրով անուամբ տիգրան, որ է Տիգրանակերտ. և զգաւառն զայնոսիկ 'ի ծառայութիւն նմա հրամայէ, և զոստանն անուանեալ կողմանցն այնոցիկ ազատութիւ‖։ Եւ մատթէոս. * Այս եղև յԱմիդ քաղաքն՝ զոր շինեաց տիգրան արքայ հայոց‖։ Յաւելու վարդան աշխարհագիր, թէ մասնաւորապէս վասն քեռ իւրոյ շինեաց՝ յորժամ սպան զաժդահակ (1)։

Նորոգեաց զայս քաղաք միջին տիգրան, որպէս երևի 'ի բանից յոյն մատենագրաց. քանզի սդրավոն 'ի 532. պլուտարքոս 'ի վարս լուկուլլեայ, զՏիգրանակերտ շինեալ աւանդեն 'ի տիգրանայ արքայէն հայոց՝ որ էր 'ի ժամանակս միհրդատեան պատերազմի, որ առ մեզ կոչի Միջին տիգրան. յայսմանէ և աքքիանոս կոչէ Տիգրանոկերտն։

Բայց՝ զայս շինութիւ քանզի չէ մարթ համարել իբր առաջին, զի մարիբաս (յորմէ առնու խորենացին զպատմութիւ շինութե տիգրանակերտի 'ի մեծէն տիգրանայ,) յառաջէ ժամանակաւ քան զմիջին տիգրան, ապա հարկ է համարել նորոգութիւն կամ յաւելուած այլոց շինուածոց։

(1) Պատմութիւն պարսից զԱմիդ համարի շինեալ 'ի դահմուրես արքայէն պարսից յառաջին ցեղէ. այլ առաջին ցեղն կոչի փիշտատեան՝ որ յառաջէ քան զջրհեղեղ, ուստի և է կեղծեալ պատմութիւն անծանօթ դարու։

Յայնմ ժամանակի Տիգրանակերտ էր ծաղկեալ և բազմամարդ յոյժ, քանզի միջին տիգրան բազմութիւն կապադովկացւոց բնակեցոյց 'ի նմա ըստ ստրաբոնի, նաև բազմութի այլոց յունաց, ըստ Նորուն' որ գրէ այլուր (1). * Թագաւոր կառոյց (միջին տիգրան) մերձ յլիվերիա ('ի վերս), ընդ մէջ սորա և զեւգմաի' որ է առ եւփրատաւ (եփրատաւ), զոր Տիգրանոգերդա անուանեաց, ածեալ 'ի նմա մարդիկ 'ի ժբ. յունական քաղաքաց' զորս աւերեաց ||: Պաչիդոս կոչէ. * Թագաւոր բազմութբ պաշտպանողաց և մեծութբ պարսպաց' զօրաւոր ||: Սէքստոս ռուֆոս գլ. ժե. կոչէ զՏիգրանակերտ * Թագաւոր հայաստանեայց մեծ յոյժ ||: Իսկ պղուտարքոս' էր ասէ Թագաւոր' լի ձոխութբ և զարդուք, զի ամենեքին ընդ արքայի գուն գործէին յընդարձակել և 'ի շքեղազարդել:

Յորժամ էառ զնա լուկուլլոս հռովմայեցի' բաց յայլոց գանձուց' ութ հազար տաղանդ հատեալ դրամոյ գտաւ 'ի նմա. յորոց ութ հարիւր դիդրաքմայս բաժին եհան առ իւրաքանչիւր զինուոր: Եւ 'ի նմա և թատրոն շինեալ 'ի տիգրանայ, զորոյ զհանդէս նորոգ ունէր կատարել: Կային 'ի նմա բազմութի յունաց, տարպատականաց, ասորւոց, կորդուաց և կապադովկացւոց, զորոց զհայրենի աշխարհ կործանեալ տիգրան (որ է միջինն,) բերեալ բնակեցոյց աստ անդէն:

Յետ այնորիկ տրայիանոս կայսր զԱմդ արար Մայրաքաղաք' ըստ գրելոյ մալալասայ գիրք ժա: Յասորւոց պատմագրաց' ժամանակագրութիւն եդեսեան (2), և դիոնեսիոս պատրիարգ յակոբեանց' գրեն, թէ կոստանդ որդի մեծին կոստանդիանոսի 'ի 349. շինեաց զԱմդ:

Այլ յայսպիսիս զշինութիւն պարտ է առնուլ փոխանակ նորոգութե, որպէս ծանուցանէ նաև ասեմանն' օրինակաւ այլոց քաղաքաց: Քանզի Սիմէոն Եպիսկոպոս Ամդայ' գտաւ 'ի ժողովն նիկիոյ, որ յառաջ է քան զկոստանդ (3). և զմայրն 'ոյն եփրեմի աւանդեն լինել յԱմդ քաղաքէ' որ նոյնպէս յառաջ է քան զկոստանդ. յորմէ ևս առաւել հաստատի' նոյն լինել Ամդայ ընդ Տիգրանակերտի: Զի թէ այլ և այլ քաղաք համարեսցուք' ոչ ուրեք կարեմք գտանել 'ի գիրս ճշմարիտ պատմութեց զառաջին շինութի կամ զհիմնելն Ամդայ:

(1) Գիրք ժա. Թղթ. 532:

(2) Աս. ասսեմանեայ հատ. ա. հատ. ա. Թղթ. 196:

(3) Աս. նորին ասսեմանեայ Թղթ. 21:

Պատմագիրք գործոց կայսերացն յունաց առաւել ևս որոշեն զշինութիւն կոստանդեայ լինել միայն 'ի պարիսպս, և ոչ առհասարակ ընդ քաղաքն. զի գրէ ամմիանոս գիրք ԺԲ. գլ. 9. * Զայս քաղաք անձուկ 'ի նախնումն՝ կայսրն կոստանդ 'ի ժամանակին յորում կառոյց զԱնդօնինուպօլիս զայլ աւան, պատեաց ընդարձակ աշտարակօք և պարսպօք, որպէս զի բնակիչքն գտցեն ամրոյթ ապաւէն, և կանգնեաց անդէն մթերանոց զինուց պարսպաց, ահաւոր կացոյց թշնամեաց, և յիւր անուն կոչել հրամայեաց ‖ : Զսոյն շինութիւն պարսպաց 'ի կոստանդեայ՝ յիշէ և Թէոփանէս, դնելով յամին 332 : Զնոյն վկայէ և մակագրութիւն յոյն և լատին յանուն կոստանդեայ՝ զոր եստես դաւէռնիէ ճանապարհորդ 'ի ԺԷ. դարուն 'ի վերայ արևմտեան դրան քաղաքիս :

Այլ զնոյն իսկ զշինութիւն պարսպաց պարտ է համարել նորոգութիւն. քանզի խորենացին Գ. 28. զպարիսպ սորա որ կայր մինչև 'ի Դ. դարն զինի կոստանդեայ, գրէ լինել շինեալն 'ի հայկազուն տիգրանայ որ է մեծն կամ առաջինն՝ բազմօք յառաջ քան զկոստանդ :

Քանզի պատմէ՝ թէ յաւուրս Ե. արշակայ արքային մերոյ, և կայսեր վաղենտիանոսի՝ յարձակեցաւ 'ի վերայ քաղաքիս Ե. շապուհ պարսից արքայ, յորում ժամանակի վերակացու քաղաքին էր անտիոք նահապետ սիւնեաց աներ արշակայ, այլ ոչ կարաց առնուլ. իսկ 'ի յարձակելն երկրորդ անգամ՝ զօրք շապհոյ * Նգահար արարեալ զայն որ 'ի հայկազնոյն տիգրանայ հօծեալ և յարմարեալ որմունսն՝ քակեալ ընկեցին ‖ : Նաև այնպէս աւերին զքաղաքն, (1) կոտորելով անխնայ զբնակիչսն : Յայնմ ժամանակի էին 'ի նմա քառասուն հազար երդք կամ տունք, զորս պարսիկք առհասարակ 'ի գերութիւն վարեցին՝ որպէս դնէ բուզանդ :

Զայս առումն շապհոյ՝ զոնարաս 'ի ԺԳ. գիրսն՝ դնէ յաւուրս կոստանդեայ կայսեր. շապուհ ասէ առաքեաց պատգամ առ կոստանդ, խնդրելով առ պարսս դարձուցանել զՄիջագետս և զՀայաստան, իբր 'ի վաղուց հետէ սեպհական գաւառս պարսից : Իսկ կոստանդ՝ քանզի հեգնութեամբ արար պատասխանի, շապուհ 'ի վերայ յարձակեալ եառ զԱմիդ :

Այլ անդրէն եանց 'ի ձեռս յունաց, և նորոգեցաւ

(1) Ըստ պատմելոյ խորենացւոյն Գ. 26. 28 :

'ի մեծէն Թէոդոսէ՝ եթէ հաւատասցուք վարդանայ աշխարհագրի։ Եւ 'ի ժամանակին յորժամ մասն ինչ աշխարհիս մերոյ անկաւ ընդ տէրութեամբ յունաց, և մասն ինչ ընդ տէրութեամբ պարսից, որպէս 'ի հիւսիսային կողման Թէոդուպօլիս էր զօրաւոր բերդ յունաց ընդդէմ պարսից, նոյնգունակ 'ի հարաւակողման՝ այս քաղաք էր զօրաւոր բերդ նոցա, ըստ որում է տեսանել առ պրոկոպիոսի։

Երևելի եղև և առումն կաւատայ պարսից արքայի, որ պաշարեաց զԱմիդ յամին 502. 'ի հոկտեմբերի 5. և էառ 'ի 503. 'ի յունվարի 10, որպէս գրեն յօսուէ կամ յեսու սիւնակեաց, և ժամանակագրութիւն եդեսեան[1]։ Եւ քանզի 'ի 5 էն հոկտեմբերի մինչև 'ի 10 յունվարի են աւուրք 97, վասն որոյ 'ի նոյնչափ աւուրս դնէ տևեալ զպաշարումն՝ ժամանակագրութիւն եդեսեան։

Բազումք գրեն վասն այսր առման, բայց ընդարձակ քան զամենեսին պրոկոպիոս[2], որ մի ըստ միոջէ պատմէ զամրութիւնս պարսպաց՝ զոր ոչ կարաց կաւատ կործանել, և զնորագիւտ զարուեստաշէն հողաբլուրն՝ զոր ետ բարձրացուցանել 'ի վեր քան զպարիսպն, առ 'ի համարձակ պատերազմիլ ներընկեցութեամբ ընդ քաղաքն. զհնարս քաղաքացւոց՝ որք ական հատանէին, և 'ի ներքուստ դատարկելով կործանեցին զայն հողաբլուր. ընդ նմին և զբազմութիւն պարսից որք ելեալ էին 'ի վերայ նորա, զչարաչար նախատինս քաղաքացւոց ընդդէմ պարսից, և ապա զմտանելն պարսից ընդ նոյն ական 'ի քաղաքն, և զկոտորածն անխնայ։

Զայս առումն կաւատայ յիշէ և սամուէլ, բայց յամին 515. յոր յաւելու և շարունակօղն զԹիւ սպանելոցն՝ որք եղեն 80 հազար ոգիք։

Զկնի ամի միոյ ջանացին յոյնք անդրէն գրաւել զԱմիդ. այլ քանզի չարաչար հարուածս ընկալան 'ի զօրացն պարսից՝ որք էին 3000 'ի մէջ քաղաքին. հուսկ յետոյ

(1) Առ ասսեմանեայ հատ. ա. Թղթ. 273։

(2) Պարտ է ուղղագրել զԹիւ պրոկոպիոսի՝ որ զտևողութեան պաշարման դնէ զաւուրս 80, նոյնպէս և զմարչելլինոս՝ որ դնէ զամիս 5. քանզի ընդդէմ է եւստաթիոսի, և սիւնակեացն յեսուայ՝ ժամանակակից պատմագրաց։ Սոյն այս եւստաթէոս առ եւագրի սխալի դնելով զառումն կաւատայ 'ի ժբ. ամի անաստասայ կայսեր. սոյնպէս և Թէոփանէս՝ որ դնէ յամին 497։

մեծ կշիռ ոսկւոյ տուեալ նոցա, (1) այնպէս առին զԱմիդ յամին 505, և զպարիսպ նորա նորոգեցին: Նաև յուստինիանոս կայսր ըստ պրոկոպիոսի նորոգեաց զմեծ և զփոքր պարիսպս սորա, որք առ հնութեան մերձ էին ՚ի կործանիլ:

՚Ի տասներորդ դարուն՝ այս քաղաք էր ՚ի ձեռս տաճկաց, յորոց ոչ կարացին առնուլ զօրքն նիկեփորայ կամ նիկեփորոսի կայսեր. այլ 50 հազարք ՚ի նոցանէ կոտորեցան, և քառասուն իշխանք կենդանւոյն կալեալ եղեն: (2) Ապա եկն ՚ի վերայ չմշկիկ կայսրն կամ կիւրժանն յաջորդ նիկեփորայ՝ երդուեալ քակել զպարիսպ քաղաքին. բայց քանզի յայնմ ժամանակի տիրէր նմա քոյրն համաւոյ ամիրային տաճկաց՝ որում բարեկամ էր չմշկիկ, ոչ եմուտ. այլ խորհրդեամբ նորին տիկնոջ քակեալ զԼտրդարս կոչեցեալ տեղին, որ էր ՚ի վերայ աղդաղաթ՝ այսինքն տիգրիս գետոյ մերձ ՚ի քաղաքն, առ ՚ի կատարել զերդումն իւր, և առեալ զանձ բազում՝ խաղաղութեամբ մեկնեցաւ անտի: (3)

Առ զսա և լէնկթիմուր, և ըստ մասին հրձիգ արար՝ ընդդէմ խստաման իւրոյ՝ զոր արարեալ էր, ՚ի հիճրէթի 796. (1393:) Յետ այնորիկ տիրեցին նմա և Ուզուն Հասան, և այլ թագաւորք պարսից. այլ ա̃. Սուլթան Սելիմ էառ ՚ի ձեռաց Շահ իսմայիլի թագաւորի նոցա ՚ի հիճրէթի 921. (1515:) (4)

Զայլ ոկեսպէս անցս Ամդայ տես առ Թովմայի մեծոփեցւոյ:

Երկու դրունք քաղաքիս յիշատակին ՚ի գիրս, դուռն Սար շօրայի, զոր յիշատակէ զաքարիաս մելիտինեցի: Կոչեցաւ այսպէս սակս տաճարին յանուն Զօարասայ որ կայր առ նովաւ. և Չաւանդից դուռն, յիշատակեալ ՚ի մատթէոսէ, որ մինչև ցայժմ ՚ի նոյն անուն կոչի Սագ գափուսի:

Զմայր եկեղեցին Ամդայ շինեաց հերակլ կայսր ՚ի 629. (5) որ նորոգեցաւ ՚ի 769. հրկէզ եղև ՚ի 847. և

(1) Յորոյ ՚ի չափն տարաձայնեն պրոկոպիոս, թէոփանէս, և զաքարիա մելիտինեցի ասորի մատենագիր՝ որ էր անդ:

(2) Մատթէոս գլ. խա:

(3) Ասողիկ գ. 10: Մատթէոս գլ. խգ:

(4) Թէպէտ ՚ի պատմագրութե առաքէլի թղթ. 548. եդեալ կայ ՚ի թուականին ջկե. որ է քնի՝ 1516:

(5) Որպէս պատմէ դիոնեսիոս պատրիարգ յակոբեանց առ ասսեմանեայ հատ. բ. թղթ. 102:

առատաձեռնութեամբ բագրատայ աշոտոյ որդւոյ ա̃ն մովսէսի անդրէն նորոգեցաւ ։ (1) Այս եկեղեցի նոյն երևի լինել ընդ Եկեղեցւոյն ա̃ծածնի, որ այժմ է Սվու-ճամի քաղաքին՝ զորմէ տես 'ի Նոր Հայաստան թղթ. 216 ։

Շինեաց յայս քաղաք և Սկայանոց ո̃քն եպիփան անապատաւոր՝ որ ետես զամբառնալ մեծին ներսէսի յերկինս ։ (2) Մերձ յԱմիդ էր և Զուքնէն կամ Զուքնէն մենաստան ասորւոց, ուստի էր յեսու սիւնակեաց մատենագիր յելս Ե. դարուն ։ (3)

Ռառաւէջ ։ Աւան՝ զորմէ բուզանդ Դ. 14. * Եւ առին զնա (այսինքն զծերունին դանիէլ,) . ածին առ Թագաւորն տիրան 'ի գաւառն Աղձնեաց, 'ի Ռառաւէջ յԱւան ‖ ։

Ռէլու ։ Գիւղ՝ զոր հին վարք յակոբայ մծբնայ հայրապետին որ 'ի Ճառընտրի՝ երևի դնել 'ի գաւառին Աղձնեաց . * Հասեալ (ո̃քն) 'ի գաւառն Աղձնեաց, հանդէպ Գեղջին Ռելու կոչեցեալ, և անհետանայր 'ի տեսութէ̃ երկիրն ուշտունեաց ‖ ։ Մերձ է սա 'ի տեղին՝ ուր բղխեցոյց ջուր յապառաժ վիմէ, որ այն ինքն է Ընձաքիարս լեռան ։

Սեղմ. Հողց, կամ Հողս. և Պալէ ։ Տեղիք՝ որք յերկուս հին Ճառընտիրս 'ի պատմութե̃ գիւտի կամ փոխադրութե̃ նշխարաց ո̃քն Թովմայի դնին յայս նահանգ ։ * Իբրև եհաս (ասէ) յաշխարհն հայոց 'ի գաւառն Աղձնեաց, 'ի տեղի մի՝ որ է մերձ 'ի Բերդն Սեղմ (4) կոչեցեալ որ էր ընդ իշխանութե̃ տաճկաց, և առ դեղջն Հողց (5) կոչեցեալ, և անուն տեղւոյն Պալի (6) կոչի . . . Եւ էր 'ի տեղւոջն յայնմիկ եկեղեցի մի . . . և բնակեցաւ 'ի տեղւոջն նշխարօքն, և անուանեցաւ տեղին Պալի վանս ‖ ։ (7)

Զհողցն յիշատակէ և յովհաննէս կաթուղիկոս 'ի գրելն վասն պատերազմին սմբատայ արքայի ընդ ահմատայ այլազգի իշխանին աղձնեաց, որ տիրեալն էր և գաւառին տարօնոյ ։ Այլ քանզի որոշակի դրէ գդրից տեղ-

(1) Զայս պատմէ գրիգոր պարհէպրէոս ժամանակագիր ասորի առ ասսեմաննեայ հատ. Բ. թղթ. 348 ։

(2) Բուզանդ Ե. 27 ։

(3) Ասսեման հատ. Ա. թուղթ. 260 ։

(4) Յերկրորդ Ճառընտրի՝ որ է գրեալ 'ի ռկգ. թուականին՝ գրի Սեղմ ։

(5) 'Ի նմին Ճառընտրի՝ գրի Հողց ։

(6) 'Ի նմին Ճառընտրի՝ գրի Պալ ։

(7) 'Ի նմին Ճառընտրի՝ գրի Տալէվան ։

ւոյն՝ կամք են մեզ աստանօր ընդարձակագոյն քաղել ըզբանս նորա. * Պատմարտակ արարեալ արքայի զնախարարս Հայոց, և համագումդ զամենայն զօրս իւր . . . երթայ հասանէ մինչ 'ի հանդէպ լերինն ըստ արևելից տարօնոյ՝ բանակետղ անդ կալեալ՝ տեսանել զօրպէսն: Իսկ բերդ բռնաւորին աշխատ՝ նստէր յարևմտից տարօնոյ . . . առ ափն Եփրատ գետոյ: Իսկ քանզի բան միակամութե էր առ Աշմառայ 'ի դաշտին իշխանացելոյն վասպուրականի գագկայ՝ նենգապատիր խաբէութե՛ քաղցրացոյց 'ի կամս արքայի՝ չուել գնալ անտի 'ի հարաւակողմ կոյս հանդէպ Մրաւ քագեղջն Ծողայ, իբր թէ յայնմ մարզէ գոլ նոցա պատշաճ՝ զգործ իւրեն վճարել‖:

Յիշէ և Թ վմաս Արծրունի 'ի գրեւն վասն նոյն պատերազմի. * Իջեալ արտաքս 'ի ռազմէն (արքայն Սըմպատ՝) դարձաւ փախստեայ ընդ Ճանապարհն Ծողցայ‖: Իսկ զտեղի պատերազմին 'ի խորագրի գլխոյն դնէ լինել 'ի սահմանս Աղձնեաց:

Խուլխ. կամ Խուլղի: Յայտ է թէ՝ էր սա առ Խուլխ գետով՝ յորմէ գետն ընկալաւ զանունն: Յայսմաւուրս 'ի հոկտեմբերի 5. դնի յայս նահանգ. * Իսկ այլք գնացին 'ի տեղին որ կոչի Խուլխ, 'ի գաւառն Աղձնեաց, որ այժմ կոչի Խողց‖: (1) Թովմաս Արծրունի 'ի Գ. 5. 'ի խորագրի, զվերյիշեալ պատերազմին սմբատայ արքայի դնէ լինել * 'Ի սահմանս Աղձնեաց 'ի վերայ գետոյն Խուլխ կոչեցեալ՝ որ իջանէ 'ի Ծովն բզնունեաց‖: Իսկ յովհաննէս կաթողիկոս յիշէ զգիւղն և զջուր գեղջն, յասելն. * Հասանէին 'ի ջուր ինչ գեղջ մի Խուղխ անուն‖: Առ որով և զպատերազմն ասէ լեալ, հանգոյն Թովմայի:

Կոտոմ: Գիւղ բերդաւոր՝ յորոյ քարանց գագիկ արքայ արծրունեաց շինեաց եկեղեցի յաղթամար, որպէս գրի առ Թովմայի արծրունւոյ 'ի վարս գագկայ: * Տեսեալ (գագիկ,) մերձ 'ի դրունս աարեստանի ամրոց մի յիշխանատանն Աղձնեաց 'ի գեօղն Կոտոմ կոչեցեալ, լինելով սեպհականաբար՝ զուրարիկն կոչեցեալ ազգի, ապառապուռ կորուսեալ ջնջէ զազգն: Իսկ զշինուածս

(1) Խողց, կամ որ նոյն է Հողց, և կամ Հողչ՝ ոչ եթէ է անուն առհասարակ Աղձնեաց, այլ գեղջ ինչ 'ի գաւառին Աղձնեաց, որպէս յայտ է 'ի վերոգրելոյդ, և որպէս դնի 'ի նոյն իսկ յայսմաւուրս օգոստոսի 22. * Եւ առեալ տարան 'ի հայս 'ի գաւառն Աղձնեաց 'ի գիւղն որ կոչի Խողց‖:

ամրոցին 'ի հիմանց տապալեալ՝ զքարինս նորա բարձ-
ըեալ բերէ 'ի վերայ մկանաց ծովուն, ընծայելով 'ի նիւթ
շինութեան 'որ' եկեղեցւոյն. կանգնելով փոխանակ բագ-
նաձև պղծալից յարկացն՝ զտաճար փառաց || յԱղթա-
մար ։ (1)

Կողճոյոյ Կեող ։ Յիշատակի յայսմաւուրս 'ի սեպտեմ-
բերի 21. լինել մերձ Ոստայ ։

Կղէսուր ։ Յիշատակի այս անուն առ Խորենացւոյն Բ.
7. զորմէ խօսիմք յայս նահանգ, ըստ որում Խորենացին
անգէն դնէ յիշխանութեան բդեշխին Աղձնեաց, այլ տեղի
սորա անյայտ է մեզ ։ Յայս անուն յիշէ պրոկոպիոս 'ի
գիրս շին. Գ. 3. երկուս Կապանս սուղ ինչ տարակացս
'ի միմեանց 'ի Սօփանինի գաւառին հայոց. և յունարէն
կոչէ Կղէսուր. մուտք միոյն կոչէր ասէ 'ի բնակչաց Իլլի-
րիսիս, իսկ մուտք միւսոյն Սաֆքէ. զորս և ամրացոյց յուս-
տինիանոս կայսր, և պահապանս 'ի նմա կացուցեալ՝ ար-
գել զմուտս պարսից. զի ամենեցուն որոց կամք էր ասէ
'ի պարսկահայոց մտանել 'ի Սօփանինի՝ որ է Ծոփք, հարկ
էր ընդ այսոսիկ կապանս անցանել ։ Բայց սովին անուամբ
կոչէ պրոկոպիոս ոչ միայն զերկոսին զայսոսիկ, այլև զայլ
կապանս 'ի Լազիկէ, և 'ի յունաստան, որպէս է տեսա-
նել 'ի գիրս շին. Գ. 7. և Գ. 2 ։

'Ի գիրս մեր մերձաւոր այսր անուան ոչ զայլ ինչ գտա-
նեմք, բայց եթէ զանուանս Խլաձոր, զորոյ զվանս յիշէ ա-
ռաքելն՝ դնելով 'ի գաւառին դերջանայ. այլ քանզի այլ-
ազգ ևս մարթ է ստուգաբանել զԽլաձորդ անուն, տես-
ցուք զայլ յարմարագոյն նմանութիւն ։

Յաշխարհին ասորւոց է և գաւառ ինչ՝ զոր յոյնք կո-
չեն Կէլէսիրիա, որում կարէ յարմարիլ անունս Կղէսուր.
զի յունարէն Կէլէ՝ 'ի մեզ դառնայ Կեղջ կամ Կղջ. իսկ
Սիրիա՝ դառնայ Ասորիք կամ Ասոր, որոյ համառօտեալն
լինի Սուր ։ Զայս առաւել հաւանական համարելով վեր-
դանեանք լատին Թարգմանիչք Խորենացւոյն 'ի Բ. 7. ա-
ռաջի բառիս Կղէսուր, եդին Կէլէսիրիա, կամ ըստ լատին
հնչման Չելէսիրիա, որոց կարծիք չէ ինչ անտեղի ։

Վասնզի յայտ է նախ՝ թէ վաղարշակ որ կարգեաց
զբդեշխութիւն Աղձնեաց, առեալ էր յեղբօրէն իւրմէ ար-
շակայ Զօրն ինչ յարևմտեայց ասորւոց և զդաշտաւորն, որպէս

(1) Երկու այս գեօղք Թուոխ և Կոգոն նովին անուամբ կան մինչև ցայսօր՝ ոչինչ հեռի 'ի ծովէն բզնունեաց, որպէս և գետակն համանուն որ իջանէ 'ի ծովն վանայ ։

է տեսանել առ Խորենացւոյն ա. 7: Որոյ աղագաւ և հարկ էր նմա կացուցանել զոք իշխան այնր կողման. և այսմ յարմար էր բդեշխն Աղձնեաց՝ ըստ սահմանակցութեան, որ և սակս այսորիկ թերևս կոչեցաւ Բդեշխ կողման Ասորեստանի.

Երկրորդ՝ Խորենացին որ 'ի բ. 7. մի ըստ միոջէ պատմէ զզանազան իշխանս՝ զորս Վաղարշակ կարգեաց ընդ զանազան կողմանս աշխարհին իւրոյ, ոչինչ պատմէ վասն իշխանի կողման Ասորւոց. ապա յայտ է թէ՝ Կղեսուր անուամբ զոր գնէ ընդ իշխանութեամբ բդեշխին, իմանայ անդէն զԿոելէսիրիա, յոր անուն կոչեն ոմանք (1) առհասարակ զամենայն Ասորիս.

Երրորդ՝ զնոյն ցուցանէ և շարագրութիւն Խորենացւոյն, յասելն. *Գաւառս պարգևելով (բդեշխին աղձնեաց)... զԿղեսուրն ամենայն ||: Զի բառս Յունաց, յարմարի աշխարհի ինչ կամ գաւառի, որպիսի է Կոելէսիրիա, և ոչ Կապանի կամ Կրճից և Նեղ անցից՝ ըստ որում է Կլիսուրն պրոկոպիոսի:

Չորրորդ՝ անունս Կղեսուր ինքնին յայտ առնէ՝ թէ է տառադարձեալ անուն օտար ազգի, և ոչ հայկական. ուստի և զտեղի նորա պարտ է խնդրել ոչ 'ի Հայաստան աշխարհի, այլ յաշխարհ օտար ազգի: Արդ՝ յաշխարհ օտար ազգաց ոչ գտանեմք զայլ անուն մերձաւոր և յարմար ըստ սահմանակցութեան, և ըստ պատմութեան Խորենացւոյն՝ բայց եթէ զԿոելէսիրիա: Այլ այս սահման սակաւ ժամանակ եկաց ընդ տէրութեամբ մերով:

(1) Ըստ այսմ գնէ ոգրավոն գիրք ԺԶ. և պլինիոս Ե. 23, ընդարձակ առեալ քան զոր գնէ պտողոմէոս. իսկ տիրապէս առեալ Գէլէսիրիա, կամ Չէլէսիրիա՝ զորօրինակ կոչէ պլինիոս, է փոքր աշխարհ՝ ձգեալ 'ի մէջ լերանց լիբանանու և անտի լիբանանու, որպէս գրէ անդէն ոգրավոն: Եւ յայնմանէ կոչեցաւ Գէլէսիրէա, այսինքն Խորին Ասորիք, վասն գոլոյ 'ի ցածուն գիրս 'ի մէջ լերանց, ըստ մեկնելոյ հարտուինի:

# ՆԱՀԱՆԳ ՉՈՐՐՈՐԴ

# ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆ

Սակաւ ուրեք յիշատակի անուն նահանգիս, և ոչ միօրինակ գրի. զի յերկուս յայլ ձեռագիրս աշխարհագրութեան Խորենացւոյն գրի Տուրուբերան։ (1) Կարեմք ստուգաբանել զայս անուն՝ Տարօնոյ բերան, կամ Տօրոսի բերան։ Նաև կամ Դռնաբերան։ Եւ եալ նոյնպէս 'ի գրմանց և 'ի բերանոյ որ 'ի լերինս տօրոսի։

Եւ երի կայ Չորրորդ Հայոց՝ ըստ դնելոյ Խորենացւոյն յարևելեան կողմանէ Նորին։ Յայս նահանգ դնէ և ըղձոյն բզնունեաց, զորմէ գրեսցուք 'ի Ներածութեան աշխարհիս Հայաստանեայց։

Իսկ 'ի բերոց՝ դնէ Դաղպէ (զորմէ տես և 'ի Նոր Հայաստան Թղթ. 56.) և Մեղր, Մաշկամիրդ, Պխատակ, Նորկաթ, և Նաւթ։ (2)

Սահման սորա այժմ ըստ մեծի մասին անկանի 'ի փաշայութեան Մանայ։

Ունի գաւառս զ̃. որոց անուանքն են՝

| | |
|---|---|
| ա̃. Խոյթ. (3) | դ̃. Աշմունիք. |
| բ̃. Ասպականունիք. | ե̃. Մարդաղի. |
| գ̃. Տարօն. | զ̃. Դասնաւորք. (4) |

(1) Վասն Եպիսկոպոսի նահանգիս տես սորև 'ի ստորագրութեան Արբերանի գաւառին վասպուրականի 'ի վերլուծութեան։

(2) Այսպէս դնի յերկուս ձեռագիրս, իսկ 'ի տպագրեալն փոխանակ բառիս Պխատակ՝ դնի Սղէփայ Նաւթ։

(3) 'Ի բարուց բնակչաց երևի առեալ զանուն, կամ 'ի մերձակայ բնակչաց սասնոյ, որոց լերինք եւս կոչէր Խութ. տես զՍասուն 'ի վերոյ։

(4) Այսպէս դնի 'ի միում ձեռագրի և 'ի տպագրեալն աշխարհագրութեան Խորենացւոյն. նոյնպէս գրի և առ յովհաննու կաթողիկոսի. որ զբ̃. Տրդատ կաթողիկոս գրէ լինել 'ի Դասնաւորէց։ Զնոյն առնէն և այլք, որպէս ասողիկ բ̃. 2. վարգան, և կիրակոս։

Է. Տուարածատափ. (1)
Ը. Դալառ. (2)
Թ. Հարք.
Ժ. Վարաժնունիք. (3)
ԺԱ. Բզնունիք.
ԺԲ. Երեւարք. (4)
ԺԳ. Աղիովիտ.
ԺԴ. Ապահունիք.
ԺԵ. Կորի. (5)
ԺԶ. Խորխոռունիք.

## ՏԱՐՕՆ:

Գաւառ հռչակաւոր 'ի գիրս, որ զհնութիւն անուան իւրոյ և բնակութեան 'ի ժամանակաց անտի նոյն ունի, առ խորենացւոյն ա. 5. առեալ յօլոմպիոդորայ անգիր զրուցաց: * Իսկ 'ի կրտսերագունից որդւոցն նորա (այսինքն քսիսութրեայ, որ է նոյ՝) Տարբան անուն՝ երեսուն ուստերօք, և հնգետասան դստերօք, և նոցին արամբք մեկնեալ 'ի հօրէն, բնակէ անդրէն 'ի նոյն գետեզերըն (որ է եփրատ,) յորոյ անուն և զգաւառն անուանէ Տարօն, և զանուն տեղւոյն ուր բնակեցաւն՝ կոչէ Ցրօնս, զի անդ զառաջինն սկիզբն եղև բաժանելոյ որդւոց նորա 'ի նմանէ ||:

Յարմարի այսմ և աւանդութիւն բնակչաց, որք աւանդեն մինչև ցայժմ, թէ երկիր իւրեանց 'ի սկզբան անդ ծածկեցաւ ջուրբք, և ապա 'ի մեկնիլ ջրոյն՝ ձևացան այն հողաբլուրք՝ որք տեսանին 'ի գաւառին իւրեանց, որ է ծանօթութիւն պատմութեան ջրհեղեղին նոյի: Սան այսր բնակութեան որդւոյն նոյի՝ թերևս * Տուն հայոց անուանեալ առաջին ասէին զՏարօն || բնակիչքն՝ որ 'ի ժամանակս Թովմայի արծրունւոյ, որպէս գրէ նա ինքն:

Սոյն այս գաւառ է որ յիշատակի առ դաշինդոսի գիրք ԺԴ. գլ. 24. ընդ մէջ արտաշատայ և տիգրանակերտի, որ յայլևայլ օրինակս այլևայլ տառիւք գրի. Դաարանցեսամ. Դաարամնիչէսամ. Դաարամնիցեսամ, զոր չէլլարիոս ստուգաբանէ՝ Տօրոսագետ. որպէս թէ սակս առողեալ

(1) 'ի միում ձեռագրի Տուար-ծատափ. նոյնպէս և առ ղազարայ՝ զորոյ զբանս տես 'ի բագրեանդ, 'ի գիւղն Արամանայ: Առ լաստի-վերտացւոյն 'ի դլ. ԺԶ. գրի Տուա-րածոյ փափ:

(2) Այսպէս գնի 'ի տպագ-րեալն և 'ի միում ձեռագրի. իսկ յերկուս ձեռագիրս՝ Գոհէառ:

(3) 'ի միում ձեռագրի՝ Վարժ-նունիք: Տես վասն այսր յԱշխա-րաա:

(4) Յերկուս ձեռագիրս Երէ-ւարք:

(5) Այսպէս գնի յերկուս ձե-ռագիրս, և 'ի միումն՝ Կոր. միայն 'ի տպագրեալն գնի՝ Տիւրի:

գոլոյ 'ի գետոյ՝ որք իջանեն 'ի տօրոսէ՝ այսպէս կոչեցեալ։ Բայց զՀայկական գաւառ անդէպ էր Հռովմայեցւոց և դաշխդոսի՝ լատին անուամբ վերածայնել. և ոչ իսկ գտանեմք այսմ օրինակ. այլ զքաղաքս և զգաւառս Հայաստանեայց գրեթէ միշտ Հայկական Հարազատ անուամբ ջանան կոչել Հռոմայեցիք ։

Նա՝ ընդ Հակառակն թուի ինձ՝ թէ տօրոս լեառն որ մօտ առ գաւառաւս ձգի, 'ի սկզբան անդ կոչէր Թերևս յանուն տարօնոյ՝ որ է անուն Հին յոյժ ըստ աւանդութե վերագրեալ ոլոմպիոդորայ. ապա մակեդոնացիք 'ի ժամանակս արշաւանաց աղեքսանդրի՝ զանունս Տարօն մերձ գտեալ առ բառն իւրեանց Դաւրոս՝ այն է Տաւրոս կամ Տօրոս, զայն յարմարեցին նմա. որպէս սովորութի էր նոցա զանուանս այլոց աշխարհաց յարմարել կամ ըստ անուանց աշխարհին իւրեանց, և կամ ըստ պատմութե և ըստ լեզուին ազգին իւրեանց. և նոյն անուն 'ի զրոց նոցա եկանց ապա առ մեզ իբր նոր և այլ անուն Այլ զայս՝ զստուգաբանութ յուզողաց և զՀնութի անուան սիրողաց եդաք բան՝ իբր առաւել Հաւանական քան զայլ անստոյգս ։

Կոստանդին պերփերուժէն 'ի գիրս կառավարութե գլ. 43. յիշէ զայս գաւառ՝ Դարօն կոչելով։

Այս գաւառ Տարօնոյ սաՀմանակից էր գաւառին Հաշտենից՝ որ անկանի 'ի չորրորդ Հայս, ընդ մէջ բաժանելով զնոսա արածանի գետոյ, այն է եփրատ ։ Յայտ առնէ յովՀաննէս մամիկոնեան 'ի ձլդ. զի 'ի գրեւն զպատերազմաց գայլ վաՀանայ որ 'ի տարօն՝ ասէ. * Սմբատ (որդի վաՀանայ) 'ի մէջ անցեալ գաղտաբար՝ կորեաց 'ի նոցանէ (այսինքն 'ի պարսից) չորս Հարիւր երիվարս, և անցոյց յայնկոյս Արածանոյ 'ի կողմն Հաշտենից ‖ ։

Պտղութի օդոյ, դրից, և բերոց այսր գաւառի, և մանաւանդ քննակնեան տեղեաց՝ գտանի յաւարտ գրոցն զենոբայ 'ի տպագրեալն թղթ. ղք. և 'ի ձեռագիրն ։ * Բարի է (ասէ) երկիրս և վայրքս, և անուշ օդս, բազմաջուր, դաշտաձև, և շուրջ զլերամբքս ամրոցք բազումք. երկիրս խոտաբեր և մեղրաբուղխ, և որպէս մանանայն իջանէր յերկնից անդ առ Հրէայս՝ նոյնպէս և աստ 'ի մերում երկրիս 'ի վերայ անտառացս իջանէ՝ քաղցր առաւել քան զմեղր, որ կոչի գազպայէն... Այս երկիրս ամենայն բարութե լի է, աջողակ և առողջ ‖ ։

Նոյնպէս և նորն գրիգոր առ զենոբայ 'ի թուղթն իւր

որ առ ղեւոնդ հայրապետ կեսարիոյ՝ զդիրս Տարօնոյ, կամ որ նոյն է երկրին մամիկոնէից՝ ըստ այսմ ստորագրէ. * Զի ասա յերկիրս հայոց՝ 'ի չորրորդ բաժնի հայոց, և յերրորդ հայոց՝ աւարտին 'ի լերինն, որ բնակութի նորա կոչի Տօրոս, (1) և հատեալ անցանէ մինչև 'ի դուռն պալհաւայ պարսից. և առ սովաւ բնակի երկիրն մամիկոնէից, բաղում վայելուչ տեղօք և առատատուր պտղովք ||:

Տարօն զառաջինն սեփհական կալուած էր Սլկունեաց ազգին, բայց քանզի նահապետ ազգին որ 'ի ժամանակս Տրդատայ՝ ապստամբեցաւ յարքայէ, և միաբանեցաւ ընդ Շապհոյ, Տրդատ արքայ խոստացաւ՝ թէ * Որ ոք ածցէ առ իս զնահապետն ազգին Սլկունեաց, տաց նմա յաւիտենական իշխանութիւն զգեօղս և զդաստակերտս, և զամենայն իշխանութիւնս ազգին Սլկունեաց ||: (2)

Եւ քանզի իշխանազունն Մամգոն առաջին նահապետ ազգին մամիկոնէից, որ նորոգ փ[ախս]տական եկեալ էր 'ի հայս յաշխարհէն Ճենաց՝ կատա[ր]աց զամենայն քաջութիւն, հրովարտակաւ ընկալաւ յարքայէն զիշխանութիւն այնր երկրին վասն իւր, և վասն ժառանգաց իւրոց, անուանելով յայնմ հետէ զգաւառն Մամգոնեան տուն, ըստ գրելոյ ասողկայ Գ. 1. որ և ինքն ասողիկ էր 'ի տարօնոյ: * Կարգէ (ասէ՝ Տրդատ) զնախարարն Մամգոն 'ի տեղի ապստամբին, անուանելով զՏարօն յանուն իւր Մամգունեան տուն ||:

Նմին իրի մատենագիրք մեր զգիւղօրէս և զայլ տեղիս տարօնոյ սեպհականս գրեն ազգին մամիկոնէից. և յովհաննէս կաթուղիկոս զանուն Մամիկոնեան՝ դնէ իբր մականուն գաւառին. * Եւ եպիսկոպոս (ասէ վասն կոմիտասայ կաթուղիկոսի) զկնի 'ի Մամիկոնեան Տարօնոյ ||. մինչև զի 'ի պատմութեան ժողովոյն մանազկերտի՝ Սահակ Եպիսկոպոս Տարօնոյ՝ կոչի Եպիսկոպոս Մամիկոնէից, զազգն ժառանգօղ՝ եդեալ փոխանակ անուան երկրին: Եւ գրիգոր մագիստրոս (3) զհամօրէն գաւառէն

(1) 'Ի տպագրեալն թղթ. ժա. գրի. * Եւ յերրորդ հայոցս աւարտին (այսինքն 'ի ծայրին) 'ի լերինն որ կոչի Տօրոս ||: Իսկ թովմաս արծրունի գրէ ուրէք. * Մերձ 'ի սահմանս Տարունոյ Առաջին կոչեցեալ հայոց ||:

(2) Խորենացին 'ի Բ. 81. և 'ի Գ. 67:

(3) 'Ի թուղթն ծԳ. որ առ յովհաննէս ալբանիսկոպոսն սիւնեաց:

տարօնոյ գրէ. * Մեք առ ժամանակս՝ այսր եմք 'ի Տա-րօն յաշխարհէս Մամիկոնէից ‖:

Նոյն իսկ զԷնոբ՝ որ ուրեք զգիւղօրէս և զաւանս Տարօնոյ դնէ սեփհական կալուածս ազգին Հնդկաց եկելոց 'ի Հայս, այլուր (որպէս 'ի Թղթ. ժա.) Նրէէր Մադէ-նէէյ կոչէ զՏարօն. և այլուր՝ առ ծանօթութիւն աւանաց ինչ Տարօնոյ՝ առաքէ 'ի գիրս իշխանացն Մամիկոնէից: Ըստ այսմ և յայսմաւուրս մարտի 30. 'ի պատմութեան խաչին Նունեայ՝ Տարօն կոչի Բնակութիւն ճոխ չուշանայ զատեր վարդանայ մամիկոնոյ: Խոէպէտ բուզանդ (1) զՏարօն, կամ զմասն ինչ Տարօնոյ՝ սեպհական ցուցանէ լինել Մարդպետ իշխանին, կամ ներքինապետին ար-քայի: Տես և 'ի Նոր հայաստան զՏաղօնք. Թղթ. 192:

Այս գաւառ Տարօնոյ 'ի 964. եանց ընդ տէրութեամբ հոռոմոց, յորժամ վախճանեցաւ իշխան նորա աշոտ: (2)

Աշտիշատ: (3) Տեղի հնագոյն յայսմ գաւառի, որ առ ագաթանգեղոսի 'ի ժԹ. գրի Յաշտիշատ, որ թուի ուղ-ղագոյն. զի և բառս աշտ յընտիր օրինակս սովորաբար գրի յաշտ: Կոչեցաւ այսպէս սակս յաղթութեան պաշտա-մանց և զոհից՝ որք լինէին 'ի հուչակաւոր մեհենին իւ-րում: * Որ և անուանեալ (ասէ ագաթանգեղոս) ըստ յաղթականաշտ պաշտամանն տեղեացն Յաշտիշատ ‖: Իբր Աշտարան կամ Աշտատեղի ասէ. զի առաջին մասնն Յաշտ ելեալ 'ի պարսից բառէս Աշտի, նշանակէ Աշտութիւն, որ է վախճան աղօթից և զոհից. իսկ վերջին մասնն Շատ,(4) է բառ կամ մասնիկ՝ որ 'ի յօդիլն յանուանս քաղաքաց, նշանակէ Տեղի կամ Քաղաք, զորօրինակ՝ Արտաշատ, Երուանդաշատ, Վարդանաշատ, Վասակաշատ, ևն: Վասն որոյ և ագաթանգեղոս սուղ ինչ 'ի վերոյ՝ կոչէ. * Յաշտից տեղիք թագաւորացն հայոց մեծաց ‖. իբր թարգմանութիւն Աշտիշատու. որպէս և խորենացին բ. 13. Յաշտից տեղի անուանէ զԱշտիշատ:

Այս գիւղ, կամ աւան՝ որպէս կոչէ բուզանդ գ. 19. կառուցեալ կայր 'ի բարձրաւանդակի առ եփրատ գե-

(1) գ. 14. և ե. 3:
(2) Ասողիկ. գ. 8:
(3) Զսորա սեռականն բազումք Աշտիշատու դնեն. բայց առ կերպ-կոսի հոլովի ուրեք և Աշտիշատայ. կայ առ սաղկայ բ. 1. հոլովեալ և Աշտիշատի:
(4) Անծանօթ է մեզ արմատ նշանակութեան այսր Շատ բառիս. կամ մասնկան. այլ միայն 'ի բար-բառս Թուրքաց գտանեմք մերձ այսմ զբառս Շար, առ որս նշա-նակէ Քաղաք, ելեալ 'ի բառէն պարսից Շէհր:

տով՝ 'ի մէջ լերինն քարքեայ, հանդէպ լերինն տօրո-սի՝ ըստ որում նշանակէ անդէն ագաթանգեղոս։ Զա-ռաջինն էր սեպհական վահունեաց զարմին, այլ միջինն տիգրան ցասուցեալ ընդ Նոսա վասն աստ դնելոյ զպատ-կեր հերակլեայ՝ (զորմէ ստորև,) գրաւեաց յարքունիս։ Զկնի ընդ համօրէն գաւառին էանց 'ի ձեռս մամիկո-նէից. վասն որոյ խորենացին գ. 68. 'ի պատմելն զթա-գուհն մեծին սահակայ՝ Խորեանց Գեղ կոչէ զԱշտիշատ, զմամիկոնեանս իմանալով. որոց տիկինն դխտիկ կամ դստրիկ անուն՝ ասէ բերեալ հանգոյց զմարմին նորա, որպէս վկայէ և սողին է. 1։

Յայսմանէ վրիպակ գրչաց է 'ի պատմութե ղազարայ թղթ. 63. ուր ասէ վասն մամիկոնէից. * Տարան (զնըշխարս նըշն) 'ի գաւառն տարօնոյ 'ի բնիկ գիւղն Խոր սեպհական, (փոխանակ գրելոյ՝ Խորեանց) յանուանեալն Աշտիշատ»։ Քանզի առհասարակ տարօն՝ որպէս գրե-ցաք 'ի վերոյ՝ յաւուրց անտի տրդատայ՝ էր սեպհական մամիկոնէից։

Մեծագանձ Մեհեան գեղջս՝ չինեալ կայր յառաջ քան զմիջինն տիգրան, յորմէ գեօղն կոչէր Յաշտիշատ. այլ միջինն տիգրան ըստ ակնարկելոյ խորենացւոյն է. 13. կամ 'ի հիմանց՝ և կամ ըստ մասին նորոգեաց։ Այս մե-հեան բաժանեալ կայր յերիս մեհեանս, յորոց յիւրա-քանչիւրսն էին մի մի բագինք զանազանք։ (1)

Առաջին մեհեանն կոչէր Վահէվահեան, յորոյ անուն և առհասարակ մեծ մեհեանն կոչէր Վահէվահեան։ 'Ի սմա էր բագին առնապատկերն Հերակլեայ պղնձաձոյլ ոսկե-զօծ, զոր չինեալ էր երկուց անուանի Ճարտարացն կրե-տացւոց Սկիւլեայ և Դիպինոսի. սոքա ըստ գրելոյ պլի-նիոսի լզ. 4. նախ առաջին ծաղկեցուցին զքանդակա-գործութի մարմարինեայց. և հրամանաւ պատգամաւո-րին ապողոնեայ, և 'ի խնդրոյ սիկիոնացւոց՝ չինեցին ար-ձանս դիցն անահտայ, հերակլեայ և աթենասայ։

Զայս արձան Հերակլեայ գործեալ 'ի սոցանէ՝ ա. ար-տաշէս մեր գտեալ յասիա, եբեր յաշխարհս հայոց առ 'ի կանգնել յարմաւիր։ Այլ քրմապետքն վահունիք՝ որք էին սերունդք վահագնի թագաւորին մերոյ, կարծելով

(1) Ցայտ առնէ զայս ագաթան-գեղոս, որ նախ խօսի իբր զմիոջէ մեհենէ, և կոչէ զայն Վահէվահեան մեհեան. ապա ստորև զերիս մե-հեանս թուէ 'ի նմա, դնելով զան-ուանս իւրաքանչիւր մեհենից և բագնաց որ 'ի նոսա։

պատկեր վահագնի նախնոյն իւրեանց, (1) յետ մահուան արտաշիսի կանգնեցին 'ի գեօղն Աշտիշատ, որ և եղև Ութերորդ արձան վահագնի յաշխարհիս հայոց. որ ձևացուցանէր զհատանելն կամ զքաղելն հերակլեայ զգլուխ վիշապին, որպէս բացայայտ դնի 'ի յունականն ագաթանգեղոսի. զի ուր գրեալ է 'ի հայկականն. * Ութերորդ պաշտօն հուշակեալ անուանեալ Վիշապաքաղն (2) վահագնի ||, 'ի յունականն դնի. * Նուանէր Սեղան Ութերորդ արձանին հուշակաւոր Վիշապահեղձոյցն հերակլեայ ||։ Զդիրս մեհենին բուզանդ 'ի Դ. 14. ասէ լինել 'ի Աշտիշատ վայրի, երբև քարընկէց մի 'ի վերոյ տեղւոյն կոչեցելոյ Հացեաց դրախտ. տես զբանս նորա ստորև ։

Երկրորդ Մեհեանն էր Ոսկեմօր Ոսկեծին դից, յոր անուն կոչէր և բագինն նորին նաև Ոսկեհատ, որք են անուանք Անահտայ։ Այս բագին և մեհեան էր հին, զի միւս երկուքն յետ մահուան Ա. արտաշիսի եղան։ Սորա արջառք էին՝ զորս ետես լուքուլլոս հռոմայեցին. քանզի գրէ պլուտարքոս, թէ 'ի գալն իւրում 'ի սինոպայ 'ի սօֆինի՝ այսինքն 'ի Ծոփս, և յանցանելն ընդ եփրատ՝ եգիտ լուքուլլոս զարջառս որք էին ձօնեալք 'ի զոհ անահտայ, զոր մեծապատիւ տօնէին ասէ բնակիչք յայնկոյս եփրատայ։ (3) Այս արջառք շրջէին արձակ աստ և անդ 'ի ճարակել, այլ ունէին զնշան անահտայ՝ յորս ոչ ումեք օրէն էր մերձենալ։

Երրորդ Մեհեանն էր Աստղկան դից, Սենեակ Վահագնի (կամ հերակլեայ) կարգացեալ ըստ յունականին, որ է Ափրոդիտէ, որպէս մեկնէ նա ինքն ագաթանգեղոս։ Զսորա արձան Ա. արտաշէս եբեր յելլադայ, իսկ մի-

(1) Տես 'ի խորենացին Բ. 11։ Զայս այսպէս կարծեցին վահունիք՝ վն զի վարք մերոյն վահագնի նման էր վարուց հերակլեայ, մինչև զի նոյն իսկ վիշապամարտութն հերակլեայ՝ զոր ձևացուցանէր այս անդրապատկեր, պատմեալ լինէր և զմերոյն վահագնէ, որպէս ասէ յոհաննէս կաթողիկոս յետ խորենացւոյն ։ * 'Ի կանոնացահար աղէբախս՝ (որով իմանայ զերգս գողթան գաւառին՝ զոր աղեբախս քնարաւ երգէին,) ընդ վիշապաց համբաւէին կռուել նմա և յաղթել. և ընդ քաջին հերակլեայ նահատակութեցն զնա համեմատեալ||։ Եւ յայսմանէ զՀերակլէան եւս կոչէին Վահագն, որպէս յայտ է 'ի թարգմանութե ածաշունչ գրոց, ուր 'ի Բ. մակ. Դ. 19. Հերակլէան թարգմանի Վահագն. և որպէս թուի՝ մեր վահագն է մի 'ի բազմաց հերակլեայց՝ զորս թըուեն կիկերոն և այլք։

(2) 'Ի տպագրեալն վրիպակագնի՝ Վիշապաքաղ։

(3) Անահիտն որ յիշէզ՝ ոչ անկանէր լուքուլլոսի յայնկոյս եփրատայ՝ որ գայր 'ի սինոպայ, այլ՝ յայսկոյս։

ջինն տիգրանն կանգնեաց աստէն ։ * Բայց զԱփրոդիտայ պատկերն (ասէ Խորենացին Բ. 13.) իբրև Երակղեայ տարփաւորի՝ առ նորին պատկերին Երակղեայ հրամայեաց կանգնել յԱշտից տեղւոջն ||։ Օ այս մեհեան լի ոսկւով և արծաթով՝ զորս Գրիգոր կործանեաց 'ի հիմանց. * Եւ այնչափ կորոյս (ըստ ասելոյ ագաթանգեղոսի՝) զի յետ այնորիկ ոչինչ ոք յայնմ տեղւոջ նշմարանս կարէր գտանել, ոչ քարի՝ և ոչ փայտի, ոչ ոսկւոյ՝ և ոչ արծաթոյ. և ոչ բնաւ երևէր թէ լեալ ինչ իցէ անդ ||։

Որչափ պատուեալ էր այս գեօղ 'ի ժամանակս հեթանոսութեան սակս մեհենիցն, նոյնչափ պատուեցաւ 'ի ժամանակս քրիստոնէութեան սակս իւրոյ եկեղեցւոյն. քանզի եկեղեցի նորա կառուցեալ 'ի ձեռն լուսաւորչին՝ եղև առաջին ընդ համօրէն աշխարհս հայոց, յորում կանգնեցաւ առաջին սեղան և առաջին աւազան մկրտութեան ։ [1] Վասն որոյ բուզանդ Գ. 3. և 14. կոչէ զայն Մայր եկեղեցի, յասելն. * Եւ ունէր սա (այսինքն ծերն դանիէլ) զաստիճան աթոռոյն գլխաւորութեան տարօնոյ 'ի Մեծն և Նախ զառաջին եկեղեցին՝ 'ի Մայր եկեղեցեացն ամենայն հայաստանեայց, այսինքն Նախ և զառաջին և Գլխաւոր տեղին Պատուական, զի յառաջ նախ անդ շինեալ էր զօր եկեղեցին, և ուղղեալ սեղան յանուն տ՛ն ||։ Ապա գրէ վասն սորա, և վասն մատրանն յովհաննու. * Արդ՝ այս տեղիք վասն յառաջկարգութեան կանոնաւ 'ի հայրապետացն և 'ի թագաւորացն պատուեալք լինէին ||։ Մինչև 'ի նմա գումարիլ ժողովոյ՝ ըստ նորուն ասելոյ 'ի Դ. 4. * Ժողովեցան 'ի գիւղն Աշտիշատ՝ ուր զառաջինն զեկեղեցին էր շինեալ. զի նա էր Մայր եկեղեցեացն, և 'ի տեղի լեալ նախնեացն ժողովոց սինհոդոսին ||։ Յորոց մի էր և ժողովն գումարեալ 'ի մեծէն ներսիսէ. իսկ յետ այնր եղեն և այլ երկու ժողովք ։

Այլ այս եկեղեցի հիմնարկեալ 'ի լուսաւորչէն՝ քակեցաւ, յորժամ ապուռռահիմ քեռորդի մահմէտի արշաւեաց 'ի հայս, որպէս գրի առ յովհաննու մամիկոնէի, և 'ի ձեռն յայտնութեան նշխարաց մեծին ներսէսի, առ որս կոչի. * Եկեղեցին որ Յաշտից վանսն ||։

Եւ երևի թէ՝ այլ էր 'ի սմանէ այն եկեղեցի՝ յորում հանգեաւ մարմին ձեռն մեծին սահակայ. զի գրէ ղազար՝ Թղթ. 64. թէ մամիկոնեանք յետ թաղելոյ անդ զնշխարս

(1) Տես յագաթանգեղոս 'ի յկԴ։

՚նըսն՝ շինեցին զայն եկեղեցի մեծապայծառ և վկայարան ՚նըց, և հիմնեցուցին * Սանս բազմութե պաշտօնէից, կարգեալ գարման անսպառս պտղոց ՚ի հասս խոտ առաւելեալ եղբայրութեն, ժողովս տարեորս աշխարհայուդոր բազմութը հաստատեցին ՚ի տեղւոջն ||: Իսկ զվերագրեալ եկեղեցի շինեաց (որպէս ասացաք՝) ՚նըն գրիգոր: (1) Եկեղեցին հանգստեան ՚նըյն սահակայ՝ քակեցաւ ՚ի լէնկթիմուրայ. զորմէ տես ՚ի Նոր հայաստան ՚ի գեօղն Սբ սահակ. թղթ. 193:

Հայեաց Դրախտ: Կոչեցաւ այսպէս սակս փոքրիկ անտառին Հացի ծառոց՝ որ էր առ ստորոտովլ բարձրաւանդակի Վահէվահեան մեհենին Աշտիշատու, որպէս դնէ բուզանդ Գ. 14. * Իսկ յաջմէ (լինէր բնակութի ՚նըյն դանիէլի) յակն աղբերն ՚ի ներքոյ սարաբարձր մեհենատեղւոյն հերակլեայ, որ կայ դէմ յանդիման լերինն մեծի՝ որում Յուլն (Գաւրոս այսինքն Տօրոս) անուանեալ կարդան. ՚ի բազմին տեղւոջէ ՚ի բացագոյն իբրև քարընկէց մի ՚ի ներքոյ կուսէ, ՚ի դոյզն ծործորակին, ՚ի սակաւ անտառակին, ՚ի Հացուտ պուրակին՝ որում անուն տեղւոյն իսկ Հացեաց դրախտ կոչէին ||: Աստանօր թաղեցին զմարմին ՚նըյն դանիէլի աշակերտք նորին՝ որպէս հրամայեալ էր ՚նըն. և ՚ի սորին աղբիւր մկրտեաց ՚նըն գրիգոր զբազմութի զօրաց ըստ գրելոյ նորին բուզանդայ:

Մատրավանք: Այսպէս կոչի առ յովհաննու մամիկոնէի. իսկ յայսմաւուրս ՚ի 18. նոյեմբերի՝ բաժանաբար Վանք մարտրաց: (2) Իսկ բուզանդայ Գ. 14. կոչի Մարտրա-

(1) Թովմաս արծրունի թուի նոյն դնել զեկեղեցին յորում թաղեցաւ ՚նըն սահակ ընդ եկեղեցւոյն մատրավանից՝ զի ասէ. * Տարեալ հանգուցանեն զնշխարս ՚նըյն (սահակայ) Յաշտիշատ տարօնոյ ՚ի տեղւոջ վկայարանի ՚նըյն յովհաննու մկրտչին և աթանագինէի վկային ||: Արդ՝ նշխարք ՚նըյն յովհաննու և աթանագինեայ՝ ըստ մասին եդան յիննակնեան վանս, և ըստ մասին ՚ի մատրավանս: Իսկ ՚ի վերոգրեալ Մայր եկեղեցին՝ որ շինեցաւ ՚ի տեղւոջ մեհենին հերակլեայ, ոչ գտանեմք առ ագաթանգեղոսի, թէ եդան նշխարք վերոգրեալ ՚նըցն, բայց եթէ ՚ի հարևանցի ՚ի թղթ. յկե. յասելն. * Կանգնէր սեղան ՚ի վկայարան ՚նըցն հանգստի՝ զոր շինեաց ||:

Սոյնպէս անյայտ է մեզ. որդեօք զնախայիշատակեալ Մայր եկեղեցին՝ թէ զՄատրավանս կամի նշանակել նոյն թովմաս արծրունի. յասելն. * Էր երթեալ ընդ նմա (այսինքն ընդ արշակայ) և մեծն ներսէս կաթողիկոսն հայոց, և հասեալ Յաշտիշատ տարօնոյ ՚ի վկայարան ՚նըյն յովհաննու մկրտչին ||:

(2) Յօգոստոսի 11. ՚ի տպ. և ՚ի միում նոր ձեռագրի գրի Մատրավանք. յայլ երկուս ձեռագիրս՝ ՚ի միումն գրի Մատրաւանք, իսկ յերկրորդումն՝ Մատրավանք:

բեմանոց յոլժանոս. * Նոյնպէս և 'ի ներքոյ քան զնա (այս լինքն՝ քան զեկեղեցին յաշտիշատու) Մարգարէանոցն յովհաննու. Նոյնպէս մօտ 'ի տուն նոր Հանգիստ առաքելոյն ||: Ի[illegible]մ և 'ի Գ. 16. * փառէն ոմն երեց 'ի գաւառէն տարօնոյ 'ի մեծէ Մարգարէանոցէն յովհաննու, որ էր նախ շինեալ տուն աղօթից և խնդրուածոց, և հանգիստ նոցին ||. յորոյ ագարակի թաղեցաւ և նոյն փառէն: Այսպէս կոչեցաւ սակս անդէն շինելոյ մատուռն, և 'ի նմա ամփոփելոյ նոյն գրիգորի յայտնութեամբ հրեշտակի՝ զնշխարս նորա յոսկերաց յովհաննու մկրտչի, և նոյն աթանագինեայ, (1) որ սակս փոքրիկ գոլոյ՝ Մատուռն կոչի առ ագաթանգեղոսի և առ բուզանդայ:

Զտեղի սորա ագաթանգեղոս 'ի յկգ., և զենոբ 'ի հբ. և 'ի հգ. նշանակեն լինել 'ի փոքր ձորակի՝ ընդ որ անցանէր ջուր նուազ՝ մօտ 'ի գետն եփրատ իբր երկու աշաւանօք ձիոյ: Իսկ ըստ բուզանդայ՝ գոլով 'ի ներքոյ բարձրաւանդակի Մայր եկեղեցւոյն յաշտիշատու՝ էր 'ի գիւղն անդ յաշտիշատ, կամ առընթեր գեղջն և 'ի միջակի նորին: Նմին իրի և զփառէն կամ զփառէներսէհ երէց՝ որ եղև կաթողիկոս, այլք դնեն լինել յԱշտիշատէ, զոր բուզանդ 'ի վերոյ՝ եդ 'ի Մատրավանից ասէ:

Ըստ պատմելոյ զենոբայ՝ յորդորեաց ղևոնդիէ հայրապետ զորն գրիգոր, մի շինել 'ի սմին տեղւոջ մենաստան, այլ՝ աղքատանոց, կացուցանելով քահանայս և քորեպիսկոպոսունս, զի ժողովուրդն համարձակ դիմեսցէ անդր 'ի բժշկութիւն: Սովորութիւն էր առ նախնիս՝ հայրապետին հանդերձ թագաւորաւ և մեծամեծ նախարարօք գալ յայցելութիւն եկեղեցւոյն յաշտիշատու, և առաւել այսր մատրան, ըստ գրելոյ բուզանդայ Գ. 3. * Մանաւանդ յայն 'ի գլխաւոր տեղին՝ յեկեղեցին, (սովոր էին) ժողովել 'ի յիշատակ նոցին որ էին անդ, և կատարել անդ ամի ամի եօթն անգամ որք զնոյն ունէին սովորութիւն, առաւել ևս 'ի մեծի Մարգարէարան մատրանն յովհաննու ||:

Ըստ կարգի պատմութեան զենոբայ և ագաթանգեղոսի՝ նախ հիմն եդաւ 'ի նոյն գրիգորէ՝ եկեղեցւոյն որ յիննակնեանն, բայց շինութիւն զկնի էառ լրումն. յայն սակս առ զենոբայ բաղումս ուրեք 'ի յիշատակեալն՝ հիմնարկեալ ասի 'ի նոյն գրիգորէ, և ոչ շինեալ. զկնի հիմնար-

(1) Տես յագաթանգեղոս թղթ. յկբ. և 'ի զենոբ թղթ. 54:

կուլթէ նորին շինեցաւ 'ի նմանէ այս մատուռն. յետ այնորիկ շինեցաւ եկեղեցին յաշտից տեղիս, որ և եղև առաջին եկեղեցի՝ որպէս եդաք 'ի վերոյ. զի առաջինն չէր լրացեալ, իսկ երկրորդն՝ մատուռն էր կամ վկայարան, և ոչ եկեղեցի:

Կործանեցաւ և այս վկայարան 'ի նոյն ամի՝ յորում և վերոգրեալն. * 'Ի սոյն ամի (ասէ յովհաննէս մամիկոնեան,) քակի եկեղեցին որ յաշտից վանս (1) հիմնարկեալն 'ի Տեառն գրիգորէ, և կարապետին յիննակնեանն, և Մատրավանսն 'ի տարօն ||: Տես 'ի նոր Հայաստան Թղթ. 193:

Գլակայ վանք: Մենաստան հռչակաւոր՝ որ կոչեցաւ այսպէս յանուն զենոբայ՝ որ մականուանէր Գլակ, որպէս գրէ լուսաւորիչն առ եղիազար եպիսկոպոս եղբայր նորուն, 'ի գիրս նորին զենոբայ. * Անդ (յիննակնեան տեղւոջն) զքո եղբայրն եմ ձեռնադրեալ եպիսկոպոս. և ըստ կարի աղաչանացն՝ զանուն տեղւոյն փոխեցաք յիւր անունն յաւելեալ, (2) (և) հաստատեցաք (զանունն) Գլակայ վանք ||: Նմին իրի Թովմաս մեծոփեցի երկքումբք անուամբք ևս կոչէ զմենաստանն՝ յասելն. * Մեծահամբաւս Այրաքաղաք վանք Գլակայ սորոյ Զենոբայ վարդապետին ||:

Նաև կոչեցաւ յանուն նորա, նախ՝ ըստ խնդրոյ նորին, որպէս ակնարկէ վերոգրեալ բանն: Երկրորդ՝ զի նա ինքն զենոբ շինեաց զեկեղեցի սորա, որպէս գրէ լուսաւորիչն առ եղիազար վասն զենոբայ. * Նուանց այլոց սատարութե՜ ինքն շինեաց զեկեղեցին՝ զոր ես միայն հիմնարկի ||: Երրորդ՝ զի զենոբ կամ գլակ կացուցաւ 'ի լուսաւորչէ առաջին առաջնորդ մենաստանիս: (3)

Կոչեցաւ և յանուն Սբ Կարապետին. * Իսկ իմ աղաչեալ (ասէ զենոբ) զՏէրն գրիգոր գնալ 'ի վանսն՝ զոր ինքն հիմնարկեաց յանուն Տեառն Կարապետին ||: Ըստ այսմ կոչի և առ յոհաննու մամիկոնէի, առ մատթէոսի, և առ կիրակոսի: Զայս անուն ընկալաւ վանքն յանուանէ եկեղեցւոյն, վասն որոյ յայսմաւուրս 'ի 30. սեպտեմբերի՝

(1) Այս եկեղեցի է նոյն՝ զոր շինեցին մամիկոնեանք 'ի հանգուցանել զմարմին Տեառն սահակայ, վասն որոյ՝ ասա կոչէ հիմնարկեալ 'ի Տեառն գրիգորէ. և թէ էր 'ի յաշտից վանսն՝ զի նոքա շինեցին և վանս:

(2) 'Ի տպագրեալն. Ցիւր անուն, այն է՝ մականունն:

(3) Ցոյց է 'ի պատմութէ յովհաննու մամիկոնէի:

վասն եկեղեցւոյն սոփ. * Էջեալ հասին 'ի գաւառն տա-
րօնոյ, և անդ շինեալ եկեղեցի յանուն սրբ. Կարապետին
'ի տեղիս մեհենիցն‖:

Լեառն՝ յորում շինեցաւ մենաստանն՝ կոչէր Քարքէ, զի շինեցաւ 'ի տեղւոջ գիսանեայ և գեմետրեայ բագնեացն, զորս զենոբ (1) դնէ 'ի լեառն Քարքէ: Իսկ տեղի կամ կողմն լերին՝ ուր էր մենաստանն, կոչէր Իննակնեան փեղիք, որպէս է տեսանել առ զենոբայ 'ի Թղթ. ԻԴ. * Պատգարեալ աւուրս ԻԵ. 'ի վանս Գլակայ յԻննակնեան տեղիս‖: Այլ սրբն գրիգոր գրէ առ ղևոնդ հայրապետ կեսարիոյ՝ առ նորուն զենոբայ. * Զոր Իննակնեան կոչեն տեղւոյն՝ հնդիկք և պարսիկք, որով պանծան յոյժ բնակիչք տեղւոյն‖: Այլ յայտնանէ նաև մենաստանն Իննակնեան վանք կոչի առ յովհաննու մամիկոնէի, և առ վարդանայ աշխարհագրի, որ և դնէ զպատճառն երկուց ևս անուանակոչութեց՝ յասելն. * Կոչի Իննակնեան վանս՝ վասն ինն ականց քաղցրահամ աղբերացն. և կոչի Գլակայ վանս՝ վասն առաջնորդի վանաց հօրն‖: (2)

Սոյն այս Իննակնեան տեղիք կոչէր նաև Բարէխօսու. * Զիննակնեան տեղիսդ՝ զոր և շարեբուլի (3) ասեն ո-մանք, շինեսցես զգա բնակութե դասուց կրօնաւորաց‖, գրէ ղևոնդ հայրապետ առ սրբն գրիգոր՝ առ զենոբայ:

Զառաջինն էին յայսմ վայրի երկու բագինք և արձանք, մին՝ յանուն գիսանեայ 'ի պղնձոյ, որոյ երկայնութե երկոտասան կանգուն. (4) իսկ միւսն յանուն գեմետրեայ հնգետասան կանգուն: Սոքա էին եղբարք երկու յազգէ հնդկաց, որոց յաւուրս վաղարշակայ արքայի փախուցեալ 'ի հայս՝ ժառանգութե ընկալան 'ի նմանէ զերկիրն տարօնոյ, զորս և որդիք նոցա յետ մահուան 'ի կարգս դից դասեալ՝ պաշտեցին, և բագինս կանգնեցին:

Սրբն գրիգոր կործանեաց զնոսա, (5) և հիմն արկ եկե-

(1) 'ի Թղթ. ԿԴ. ԿԹ. և Ճ:

(2) Յայսմաւուրս 'ի 30. սեպտեմբերի գրի՝ Իննակնեայ վանք:

(3) 'ի տպագրեալն և 'ի միում ձեռագրի գնի այսպէս, իսկ յայլում ձեռագրի գնի՝ Բարէխօսք:

(4) Այսպէս գնի 'ի տպագրեալն զենոբայ Թղթ. ԿԷ. իսկ 'ի ձեռագրի գնի՝ Երեսուն կանգուն երկայնութե, և երկու կանգուն և Թզաւ լայնութե:

(5) Վասն կործանման բագնացս, և շինութե եկեղեցւոյ վանաց Գլակայ, ոչինչ գտանեմք յիշատակութե առ ագաթանգեղոսի. վասն որոյ մեծապէս սխալէ հեղինակն յայսմաւուրաց 'ի նաւասարդի Ժ. կամ 'ի 11. օգոստոսի, ուր զոր ինչ պատմէ ագաթանգեղոս 'վասն մեհենիցն յաշտիշատու, սա զնոյն պատմէ վասն մեհենին՝ որ էր 'ի տեղւոջ վանացն Գլակայ, յաւել-

ղեցւոյ՝ զոր կատարեաց զենոք. անդ ամփոփեաց զմեծ մասն նշխարաց սրբոյ կարապետին և աԹանագինեայ, զորմէ և վկայեն եօԹն խոստաճարակքն յաղօԹեն իւրեանց. * Նորոգեցի փառք քո տէր 'ի տաճարս յայս, զոր ընտրեցեր հիմնարկուԹբ սրբոյն գրիգորի, և բնակուԹբ սրբոյ կարապետիս ‖ ։ Յորմէ և եկեղեցին առ յովհաննու մամիկոնեի կոչի Սբ Կարապետ ։

Գործակից եղև այսմ շինուԹե իշխանն սիւնեաց՝ ըստ գրելոյ ստեփաննոսի օրպելեան. * Բազում գանձիւք և ջանիւ գործակից լինի շինուածոյ հանդստարանի սրբոյ կարապետին, և կանգնէ անդ 'ի վանսն գլխոյ արձան զնորշանն տէրունական՝ յիշատակ իւր ‖ ։

Հաստատեաց ապա սրբն գրիգոր և Սանս, որպէս ղևոնդիոս հայրապետ ԹղԹով իւրով յորդոր տուեալ էր ժողովել 'ի նմա արս իբրև հարիւր. այլ սրբն գրիգոր՝ ժողովեաց անդր կրօնաւորս Թուով քառասուն և չորս ։ Օենի՝ Թոդիկ որ էր քսաներորդ հայր վանաց յեօԹներորդ դարուն, բազմացոյց անդ նաև զանապատաւորս՝ Թուով իբրև երեք հարիւր յիսուն և ուԹ ։

Նա 'ի կալուածս վանացն սահմանեաց սրբն գրիգոր դաստակերտս երկոտասան, որք են գիւղօրէք (զորս կարգեսցուք ստորև.) յորոց զերկուսն քանզի իշխան ոմն մամիկոնեից 'ի բաց եհան, վարդ պատրիկ իշխանն արծրունի անդրէն դարձոյց, զորմէ գրի 'ի ձեռագրի պատմուԹե յովհաննու մամիկոնեի. * Նոյնպէս և զսրբ Կարապետն 'ի գլխոյ վանսն մեծաշուք փառօք զարդարեաց. սա դարձոյց զԿուառս և զՊարեխ 'ի սրբ Կարարով գնի. * Եդ (զնշխարս սրբոյն յովհաննու) 'ի տեղիս մեհենեացն (վահագնի, անահտայ, և աստղկան) որ կործանեցան. և այն կոչեցաւ Վանս Իննակնեան՝ վասն իննն ական բարեհամ աղբերացն, որ են անդէն 'ի տեղւոջն. այլ և կոչեցաւ Վանք Գլակայ՝ վասն հօր վանացն, զոր կարգեաց սրբն գրիգոր զմի ոմն յաշակերտաց իւրոց գլակ անուն հայր վանացն՝ զեղբայրն զազարու ‖ ։

Սխալէ ևս՝ 'ի նաւասարդի ա. դնելով զտօնն կարգեալ 'ի տեղւոջ մեհենիցն յաշտիշատու. զի 'ի նաւասարդի ա. կարգեցաւ տօն սրբ նշխարացն յոհաննու և աԹանագինեայ, որք եդան յեկեղեցւոջ որ 'ի բագուանն. իսկ սրբ յաշտիշատու եկեղեցւոյն կարգեցաւ տօն 'ի սահմի է. որպէս ուսուցանէ ագաԹանգեղոս ։

Կայ այլ օրինակ յայսմաւուրաց Տէր Իսրայէլի, հնագոյն քան զստվորականն՝ որ դնէ զտօն եկեղեցւոյն յաշտիշատու՝ հաստատեալ 'ի սահմի Ն. բայց և սա՝ յայտ է Թէ սխալէ, զԹիւն Ն. ընԹերցեալ յագաԹանգեղոս՝ (յորմէ և բազում ինչ ընդօրինակէ,) Թիւ Է. զի և 'ի յունականն ագաԹանգեղոսի դնի Իզօրն ։

պեան ||, տուեալ 'ի գին նոցա առ իշխանն տարօնոյ քսան և երկու հազար դահեկան; նաև զերկուս գեօղս յաւել 'ի գաւառէն վասպուրականի ։ Նոյնպէս և զայլն վահան ութ և տասն գեօղս ազատեաց և ետ եկեղեցւոյն, ջնջեալ զանուանս նոցա յարքունի դիւանէն ։

Յեկեղեցի սրյ կարապետին արգելեալ էր կանանց մտանել, զի ըստ գրելոյ զենոբայ ('ի Թղթ. կէ.) սրն գրիգոր եդ զայս պատուէր՝ գրելով 'ի տախտակս պղնձիս. և յովհաննէս մամիկոնեան պատմէ զհարուածիլն մարիամու կնոջ վերոգրեալ վարդ պատրկի՝ սակս մտանելոյ 'ի ներքս յաւուրս Թոռնկայ վանահօր ։ Արգելեալ էր նոյնպէս երիվարաց անցանել առ նովաւ, կամ գնալ մինչև դդուռն նորա ։

Կործանեցաւ Սբ կարապետ յերկրաշարժութենէ, և մուշեղ իշխան տարօնոյ՝ (զոր և մարզպան կոչէ յովհաննէս մամիկոնեան,) տուեալ գանձ բազում շինեաց քարակոփ ։ Ընդ որէն քանդեցաւ յորժամ արշաւեաց 'ի հայս ապուռռահիմ քեռորդի մահմէտի (1) ։ 'Ի 1058. 'ի ժմ. դարուն՝ զորք պարսից այրեցին զշինուածս՝ զոր գրիգորի մագիստրոսի էր շինեալ 'ի ձեռն իւրոյ գործակալին. *'Ի սոյն ամի (ասէ լաստիվերտցին 'ի գլ. իա.) այրեցին զգեղեցիկ ապարանս Սբ կարապետին, զոր հրահատ ոմն 'ի գործակալացն մեծին գրիգորի որդւոյն վասակայ մեծաւ ջանիւ շինեալ էր՝ մինչ երկրին տէր էին. զժամատունն՝ որ առաջի Սբ կարապետին էր, զոր գեղեցկայարմար պատրաստութ յարդարեաց 'ի փառս և 'ի պատիւ մեծի վկային և կարապետին քոի. նաև զայլ շինուածն, և զփայտակերտ եկեղեցին՝ զոր Սբ գրիգոր կոչէին ։ Այս էր Թուականին մերոյ ամք չէ. յորժամ այս այսպէս եղև ||։

'Ի վանսն գլակայ Ստեփաննոս վանահայր յաջորդ Թոռնկայ շինեաց և եկեղեցի յանուն սրյն ստեփաննոսի, որպէս յայտ առնէ յովհաննէս մամիկոնեան, յասելն. *Այս յայնմ ամի վախճանեցաւ սմբատ, և ետ տանել զինքն 'ի տապանատուն հարցն 'ի վանսն գլակայ 'ի դուռն սրյն Ստեփաննոսի, զոր շինեաց Ստեփաննոս այն՝ որոյ մայրն հերձաւ (որ է վերոգրեալն մարիամ), և ետ 'ի նշխա-

(1) Առ յովհաննու մամիկոնէի, և 'ի ճառն յայտնութեան նշխարաց մեծին ներսէսի, ուր և կոչի եկեղեցի Յ[illegible] խորադէփի ոչ յինն- ընծայեան ։

բաց 'ի յս Ստեփաննոսի նախավկային զձախ բոյթ ոտին անյայտ ||: Տես վասն այսր զՍբ կարապետ 'ի Նոր Հայաստան. Թղթ. 194:

Այլ է 'ի սմանէ այն եկեղեցի՝ զորմէ գրի 'ի պատմութեն ծիծառնեկի խաչին, թէ վահան մամիկոնեան 'ի մէջ բլուրն շինեաց զեկեղեցի 'յս Ստեփաննոսի, * Յանուն կրտսեր որդւոյ՝ որ կայ 'ի նորին դրանն Թաղեալ ||:

'Ի մենաստանի աստ և արտաքոյ՝ են զանազան գերեզմանք. երեք քայլ հեռի յեկեղեցւոյն յարեւելեան կողմն նորա՝ Թաղեցաւ վարդ պատրիկ իշխանն արծրունի, ըստ վկայելոյ յոհաննու մամիկոնէի: Առ նովաւ Թաղեցաւ զկնի և մուշեղ, զոր նա ինքն կոչէ մարզպան: Իսկ առ դրան 'ոյ կարապետին՝ գայլն վահան:

Յարեւելս հիւսիսոյ եկեղեցւոյն է՝ ՀԱՅՐ ԲԵՒՈՐ կամ ՀԱՅՐԱԲԵՒՈՐ (1) կոչեցեալ տեղին, ուր Թաղեցաւ Թոդիկ քամներորդ հայր վանացն գլակայ, և ստեփաննոս յաջորդ նորա, նաև այլք 'ի վանահարց: 'Ի հարաւակողմն եկեղեցւոյն փոքր ինչ հեռի՝ են գերեզմանք 'ոյն անտոնի և կրօնիդեայ. առ նոքօք 'ի մէջ դրախտին՝ են գերեզմանք եօթն խոստաձարակացն (2):

ՂԱԶԱՐՈՒ ՎԱՆՔ: Սմն գրիգոր 'ի գնալն իւր 'ի հռոմ ընկալաւ 'ի պարգեւս 'ի կայսերէն և 'ի պապէն հռոմայ ըդմասն ինչ նշխարաց 'ոյն պետրոսի, և զաջհեակ ձեռն անդրէի առաքելոյն. և իբրև եկն յաշխարհս հայոց՝ 'ի հրեշտակէ 'ոյ ծանուցեալ զտեղի յարմար հանգստեան նոցա, եդ անդր զոր նշխարսն՝ որ էր 'ի ստորոտ լերինն տօրոսի, պատրաստելով զնիւթ առ 'ի շինել վկայարան, կարգեաց պաշտօնեայս եկեղեցւոյ զարս երկոտասան. * Իսկ եա զտեղին զայն ղազարու, և անուանեաց Ղազարու վանք || (3):

Յետ ժամանակաց սակս նշխարաց առաքելոցն՝ կոչեցաւ ՍԲ ԱՌԱՔԵԱԼՔ. վասն որոյ գրէ վարդան աշխարհագիր. * Ղազարու վանք Սբ առաքեալքն է, ուր կայ աջհեակ աջն անդրէի առաքելոյն, և այլ բազում սրբու-

(1) 'Ի տպագրեալն յոհաննու մամիկոնէի կոչի՝ ՀՈՂԱԲԵՒՈՐ:

(2) Որպէս գրի 'ի ձեռագրի յովհաննու մամիկոնէի, ուր և յիշատակի վասն խոստաձարակացն՝ թէ * Բնակեցան ոմանք յիննակնեան վանս. իսկ այլք 'ի ՔԱՐԱՅՐՆ 'ի հարաւակողմն արեւելից 'ի Թաղուցած խաչին կողմանն ||:

(3) Այսպէս գրի 'ի ձեռագրին զենոբայ. այլ 'ի տպագրեալն Թղթ. Է. փոխանակ Ղազարու՝ գնի Եղիազար:

թիք ‖ ։ Այժմ յորոշումն կոչի Մշոյ ... ։ Իսա այսմ և յայսմաւուրս (1) գրի ․ * Նկեալ առ նա արեղայ մի անդրէաս անուն՝ ՚ի Պաղարու վանաց որ է Սբ առաքելոցն մօտ, և ՚ոքն շուշան ․․․ եա զխաչն յանդրէաս արեղայն տանել ՚ի Սբ առաքելոցն ՚ի Պաղարու վանսն ‖ ։ Միոյն այս թուի լինել՝ որ առ բուզանդայ Դ ․ 3 ․ կոչի Իշտ... ։

Մուշ ։ Իւր զենոբայ կոչի՝ Տարոն ․ * Նա այլքն ամենեքեան երթեալք էին ՚ի Մուշն Իւանն ‖ ։ Այսպէս կոչի յայս բան զենոբայ ՚ի ձեռագրի և ՚ի տպագրեալն, որպէս և առ յովհաննու մամիկոնէի ․ բայց յայլ տեղիս ՚ի տպագրեալն զենոբայ՝ կոչի Մուշ Քաղաք ․ իսկ ՚ի ձեռագիրս փոխանակ այնր՝ ուրեք ուրեք դնէ լոկ Քաղաք ։ Որպէս՝ ՚ի տպագրեալն թղթ ․ ՀԷ ․ դնի ․ * Գնացին մինչ ՚ի դուռն Մուշ Քաղաքի ‖ ․ ՚ի ձեռագրի՝ * Գնացին մինչև ցդուռն Քաղաքին ‖ ․ որ է նոյն ․ քանզի Մուշ գոլով գլխաւոր քաղաք տարօնոյ՝ սոսկ Քաղաք կոչի ։ Իսա այսմ և թովմաս արծրունի նախ յանուանէ կոչէ Մուշ Քաղաք , և ապա լոկ Քաղաք՝ յասելն ․ * Նա նա ինքն եկն ձմերել ՚ի Մուշ Քաղաքի տարոնոյ ‖ ։ Իսկ ստորև ․ * Ամենձրութե ձեռնն հարթայատակ դիզաւ շուրջ զստորոտով լերինն՝ յորում տեղւոջ Քաղաքն տարոնոյ շինեալ էր ‖ ։ (2)

Եկեղեցի սորա Սբ Փրկիչ՝ յիշէ ասողիկ Գ ․ 14 , և զկոտորածն որ եղև ՚ի նմա յաւուրս կայսեր վասլի ՚ի բատայ ամիրայէն խլաթայ և նփրկերտոյ՝ յասելն ․ * Արով և գերութե անմարդացոյց զգաւառն տարօնոյ , յաւարի առեալ զքաղաքն Մուշ , խողխողեալ զքահանայս յեկեղեցւոջն՝ որ Սբ փրկիչ անուանի՝ ողորմելի տեսակաւ ․

(1) ՚Ի 30 ․ մարտի , ՚ի պատմութն սբյ խաչին նունեայ ։

(2) Յաւանդութէ ունիմք (ասէ Նալեանն) Մուշեղայ որդւոյ քաջին վասակայ շինեալ զայս քաղաք յաւուրս մեծին թէոդոսի , և յանուն նորին փոխանակ Մուշեղեան կոչելոյ , համառօտութեամբ Մուշ անուանեալ ։ Բայց որպէս նշանակեցաք , այս անուն յիշատակի առ զենոբայ՝ որ յառաջ է քան զմեծն թէոդոս ։

Յարմարէ ապա և զայլ ստուգաբանութի , եթէ զի ՚ի բազմութէ կաղնի ծառոց՝ որ տաճկերէն Մէշէ ձայնի , կոչեցաւ ապաւանօք Մուշ ։ Նայլ նոյնպէս հակառակի այն՝ զի նախայիշատակեալ մատենագիրքն՝ զենոբ , յովհաննէս մամիկոնեան , յաւէլ և զթովմաս արծրունի , և զասողիկ՝ յիշատակեն զայս անուն , որք բազմօք յառաջէն քան զտէրութի օսմանեանց՝ յորոց մուծան տաճկական անուանք ։

Բնակիչքն յարմարեն զայլ ստուգաբանութի , զորմէ տես ՚ի Նոր հայաստան թղթ ․ 180 ։

որում արեան ներկուածք՝ ցարդ ևս ցուցանի 'ի նոյն եկեղեցւոջ ||։

Զայս եկեղեցի շինեաց հուշակաւոր իշխանն բագարատ 'ի Թ. դարու՝ որպէս գրէ Թովմաս արծրունի. * Բայց ինքն կարծեցեալ մարզպանն փախստեայ անկանի 'ի բարձրաբերձ եկեղեցին՝ որ յանուն փրկչին մերոյ շինեալ էր յիշխանէն բագարատայ, 'ի ծախս մեծամեծ գանձուց իբր Ռ. հազարաց, և անդ 'ի միջոյ գմբեթին ջօղեալ սալարեալ սարսռալից դողմամբ զետեղեալ լինէր ||։

ՀԱՑԵԿԱՑ ԳԵՕՂ։ Ըստ այսմ կոչեն զայս կորիւն, զազար, և ասողիկ, և դնեն 'ի տարօն գաւառի, ուստի էր երանելին Մեսրովբ, կամ Մաշթոց. այլ խորենացին գ. 47. սոսկ զանունն դնէ. * Մեսրովբայ որ էր 'ի Հացեկաց տարօնոյ ||, առանց յօդելոյ զանունս Գիւղ։ Զնոյն առնէ և յովհաննէս կաթողիկոս, յասելն. * Մեսրոպ որ 'ի Հացեկաց տարօնոյ ||։ Յոր անուն և այժմ կոչի Հացեկ, և քրդերէն՝ Խասաւէք։ Տես 'ի Նոր հայաստան Թղթ. 191։

Բուզանդ գ. 19. զայս Հացեկ Թուի կոչել ՀԱՑԵԿԱՑ ԳԵՕՂ՝ յասելն. * Էր նորա (այսինքն պապայ որդւոյ յուսկան) հարճ մի 'ի գաւառէն տարօնոյ, 'ի Հացեաց գեղջէն կարճազատացն, և մնաց որդի 'ի հարճէ անտի 'ի Հացեկացոյն ||։

ԾԱՂԻԿ։ Գիւղ՝ սահմանակից հաշտենից՝ որպէս դնէ զազար Թղթ. 258. * Զօրավարն հայոց վահան մամիկոնեանն հանդերձ արամբքն որ ընդ նմա էին, բանակէր 'ի գիւղ մի մերձ որ էր ընդ իշխանութեամբ մամիկոնէից (այսինքն 'ի գաւառին տարօնոյ,) որում անուն էր Ծաղիկ, կամեցեալ անցանել 'ի կողմն սահմանակցութեան հաշտենից ||։

ԹԻԼ։ Գիւղ՝ զորմէ ասողիկ գ. 6. * Զսա (այսինքն զկայսրն վասիլ մակեդոնացի, որ Թագաւորեաց 'ի 867.) ասեն լեալ 'ի տարօնոյ գաւառէն, 'ի գեղջէն Թիլայ ||։ Նոյնպէս դնէ և սամուէլ 'ի պկե. Թուին, որպէս և առ կիրակոսի (1)։

(1) Յիշատակի և առ յովհաննու մամիկոնէի 'ի ձնբ. անծանօթ ստուգաբանութեամբ ինչ անուան, յասելն. "Եւ այնչափ կոտորեցին զնոսա (այսինքն զպարսիկս), մինչև հեղեղատք արեանց եղեն, որ և Թիլ կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ ||։

Գոմկունք։ Գիւղ՝ յիշատակեալ առ բուզանդայ դ. 15. ուր ասի. * Պարգեւ առեալ յերիցուն զգիւղն՝ ուստի իսկ ինքն էր 'ի նախնական տարօն գաւառէն, որում անուն Գոմկունք կոչէին ‖։

Կուառս, կամ Կըւառս։ Քաղաքագեօղ կամ աւան 'ի պալունեաց փոքրիկ վիճակին, կամ գաւառին տարօնոյ. * Նշկեալ յերկիրն պալունեաց (1) (ասէ զենոբ 'ի թղթ. խը.) յաւանն մեծ Գիսանէ 'ի Քաղաքագեօղն Կուառս ‖։ Շինեաց զսա Կըւառս՝ (կամ որպէս է 'ի տպ. զենոբայ՝ Կուառ) մի յորդւոցն գիսանեայ և դեմետրեայ իշխանացն հնդկաց, որք եկին 'ի հայս յաւուրս վաղարշակայ արքային մերոյ, որպէս գրէ զենոբ. 'ի թղթ. կթ. * Նա շինեաց Կուառ իւր աւան, և կոչեաց յանուն իւր Կուառս ‖։

Մի էր յերկոտասան դաստակերտից վանացն գլակայ, կառուցեալ առ ձորով. ունէր երդս 3012. հեծեալս 1500. հետեւակս 2200 (2)։

Յայնկոյս ձորոյն Կուառաց էր աղբիւր յորդաբուղխ՝ ուրանօր սբն գրիգոր պահեաց զնշխարսն։ Իսկ ստեփաննոս՝ երրորդ հայր վանաց գլակայ՝ շինեաց եկեղեցի, և կացոյց կրօնաւորս վաթսուն (3)։

Մեղտի։ Աւանագեօղ՝ մի յերկոտասան դաստակերտից վանաց գլակայ, զոր շինեաց Մեղտէս մի յորդւոց դեմետրեայ և գիսանեայ իշխանացն հնդկաց. * Նա մեղտէս (ասէ զենոբ կթ. ըստ ձեռագրին,) շինեաց 'ի դաշտի անդ զաւան, և կոչեաց զանուն նորա Մեղտի ‖։ Կոչի 'ի զենոբայ և Քաղաքագեղ՝ յասելն. * Յետ ժը. աւուր երթեալ իջանէաք 'ի Քաղաքագեղն Մեղտի ‖։

Ունէր երդս՝ 2080. հեծեալս՝ 800. հետեւակս՝ 1030 (4)։

(1) 'Ի ձեռագրին գրի, 'ի Գաւառին Պալունեաց։ Թովմա մեծոփեցի զրում իսկ զտեղին գլակայ վանից դնէ յերկրին Պալունեաց 'ի գաւառին տարօնոյ, յասելն. * Իսոյս տուեալ 'ի Ճագաթայէն (լանկթամուրոյ) եկեալ հասին յերկիրն Պալունեաց 'ի գաւառն տարօնոյ 'ի քնարան սբ կարապետին յոհաննու, 'ի մեծահանդէս մայրաքաղաք վանն գլակայ սուրբ զենոբայ վարդապետին ‖։ 'Ի բանից սոսի, որպէս և 'ի բանից զենոբայ՝ որ զգիւղօրէս ինչ տարօնոյ դնէ յերկրին պալունեաց, որպէս և զգիւղ մի յանուն պալունեաց; յայտնի մակաբերեմք՝ թէ այլ է սա 'ի պալունեաց գաւառէն որ 'ի վասպուրական, զոր յիշատակէ և խորենացին յաշխարհագրութեն։ Տես և զվերլուծութին Պալունեաց։

(2) 'Ի տպագրեալն զենոբայ հա. դնի * Երդահամարս 612. հեծեալս 1030։

(3) 'Ի զենոբ. թղթ. ծ։ և 'ի յոհան մամիկոնեան. ղդ։

(4) 'Ի տպագրեալն զենոբայ դնի.

Յիշատակի անուն սորա և առ յոհաննու մամիկոնէի 'ի Թղթ. Ճէ։ Իսկ լեառն սորա յիշատակի 'ի ձեռագրին զենոբայ. * Իսկ զօրքն հայոց ելեալք անցանէին ընդ ստորոտ լերինն Մեղտեայ॥։ Նոյնպէս և գետն Մեղտեայ (որ ընթանայ ընդ տարօն,) յիշատակի ստէպ 'ի գիրս յովհաննու մամիկոնէի.

**Խրթամ.** կոչի և **Տուամ**։ Աւանագեօղ՝ մի յերկոտասան դաստակերտից վանաց գլակայ, որ ունէր երդս՝ 900. հեծեալս 400 (1)։

**Խորնի** (2)։ Աւանագեօղ՝ մի յերկոտասան դաստակերտից վանաց գլակայ, որ ունէր երդս՝ 1906, հեծեալս՝ 700, հետևակս՝ 1008 (3)։

Աստի ասի լինել քերթողահայրն Մովսէս՝ որ և կոչի ստէպ 'ի հայրենեացն Խորենացի. զոր Տարօնեցի ևս կոչեն պատմիչք 'ի գաւառէն՝ ուր էր Խորնի։ (4)

**Պարէխ.** կոչի և **Բրէխ** (5)։ Աւանագեօղ՝ 'ի կարգս երկոտասան դաստակերտից վանաց գլակայ, որ ունէր երդս՝ 1680. հեծեալս՝ 1030. հետևակս՝ 400 (6)։

**Կեղէծ.** կոչի և **Կեղծ.** կամ (ըստ տպ. զենոբայ Ղ.) **Կեղծ**։ Աւանագեօղ, մի յերկոտասան դաստակերտից վանաց գլակայ, որ ունէր երդս՝ 1600. հեծեալս՝ 800. հետևակս՝ 600 (7)։

**Բաղրամ** (8)։ * Իսկ Բաղրում (ասէ զենոբ՝) որ Թարգմանի Բագմաց կայան, (ունի) երդս՝ երեք հազար երկերիւր. հեծեալս՝ հազար քառասուն (9). աղեղնաւորս՝

* Մուշ և Մեղտի ունի ծուխս ՌՃԾ॥։

(1) 'Ի տպագրեալն զենոբայ Ղ. որպէս և 'ի միում ձեռագրի ոչ գնի վրիպակաւ 'ի կարգս դաստակերտացն, սակայն ստորև 'ի ստորագրել զնոյն դաստակերտս 'ի Ղա. գնի և կոչի Տուամէ. * Տուամբ (ունի) ծուխս ԹԾ, և հետևակս ՌՌ և երկերիւր॥։

(2) Այսպէս 'ի տպագրեալն զենոբայ 'ի Ղա։ 'Ի միում ձեռագրի՝ Խոհրնի, որ յայլս վրիպակ գրչութբ գրի՝ Խրթնի։

(3) 'Ի տպագրեալն զենոբայ. ՌՃԾ։ 'Ի միում ձեռագրի *Խոհրնի ունի ծուխս ՌԹԾ, և ՂԾ հեծեալս, և հետևակս ՌՃԾ॥։

(4) Թէպէտ հայելով յանուն գեղջն, եթէ աստի էր քերթողահայրն, պարտ էր կոչել առաւել Խորնեցի։

(5) Որպէս գնի յայտնի 'ի ձեռագրի զենոբայ. իսկ 'ի տպագր. Ղ, և Ղա. կոչի միշտ՝ Բրէխ. միայն 'ի ծփ. կոչի՝ Պարէխ, յասելն. * Աղբ Պարխոյ և աղբ Մեղտոյ॥. ուր 'ի ձեռագրի գնի. * Աղբ Պարխեաց և Մեղտեայ॥։ Կայ յայլում ձեռագրի և Բրէհ։

(6) 'Ի տպագրեալն ըստ այլ ձեռագրի այլազգ գնի՝ այսպէս. * Բրեխ ունի ծուխս՝ ՌՃՃ. և հեծեալս՝ ՃԾ. և հետևակս՝ ՂԾ॥։

(7) Զորոց 'ի տպագրեալն զենոբայ ոչ յիշատակի ինչ։

(8) 'Ի ձեռագրին զենոբայ կոչի նաև Բաղրամ, կամ Բարղրամ, որք են աղաւաղութիւնք առաջնոյն։

(9) 'Ի տպագրեալն որպէս և

ութ հարիւր քառասուն, և տիգաւորս՝ վեցհարիւր ութսուն (1)‖։

Մի է և այս 'ի կարգս երկոտասան աւանագեօղից՝ որք էին կալուած վերոգրեալ վանաց, և յերկոտասանից անտի՝ միայն սոքա եօթնեքին արձանագրին 'ի գիրս զենոբայ. որոց լինելն 'ի տարօն գաւառի յայտ անտի է, զի յետ ստորագրելոյ՝ ասէ. *Արդ՝ այսոքիկ աւանագեօղքս՝ որք 'ի բնէ տուեալք էին 'ի ծառայութիւն կռոցն, զոր իշխանքն հաստատեցին 'ի սէր եկեղեցւոյն‖։ Կռոց անուամբ իմանայ զդեմետր և զգիսանէ, որոց 'ի կալուած տուաւ գաւառն տարօնոյ 'ի վաղարշակայ արքայէ։ Իւր սուղ ինչ 'ի վերոյ 'ի տեղեկութեան սոցա՝ առաքէ 'ի գիրս ցեղին մամիկոնէից՝ որոց կալուած էր տարօն. *Քանզի աւանք են (ասէ) նոքա մեծամեծք, որպէս կայ 'ի գրի իշխանացն մամիկոնէից‖ (2).

Հոռեան։ Աւան՝ զոր շինեաց Հոռեան մի յորդւոց դեմետրեայ և գիսանեայ, որ էր կրտսերն։ *Իսկ Հոռեան (ասէ զենոբ) շինեաց գիւղ աւան 'ի գաւառին պալունեաց, և կոչեաց զանուն նորա Հոռեանս (3)‖։

Ողական։ Ամրոց՝ զորմէ գրէ խորենացին Բ. 81. *Իսկ նահապետն ազգին ողկունեաց՝ ամրանայր յամրոցին որ անուանեալ կոչի Ողական (4)‖։ Սոյնպէս կոչի և առ բուզանդայ Ե. 3. *Ապա մինչդեռ մարդպետն հայր զիւրով իշխանութեամբ շրջէր յերկրին տարօնոյ, և մուշեղ սպարապետն հայոց էր 'ի նմին գաւառին՝ յիւրում բերդին, որում անուն Ողական կոչէին, որ կայ 'ի վերայ գետոյն եփրատայ (5)‖։ Գրի ուրեք առ բուզանդայ համառօտելով Ողկան. որպէս և առ զենոբայ, առ յոհաննու

'ի միում ձեռագրի գնի, Հէծէուլ՝ քուխ։

(1) 'Ի տպագրեալն գնի՝ ծուխս՝ 500, հեծեալս՝ 2040, հետևակս աղեղնաւորս՝ 740, տիգաւորս՝ 606, պարսաւորս՝ 280։

(2) Իսկ որ գրի 'ի ձեռագրին զենոբայ՝ թէ *Ընդարձակեալ ունէին սոքա իւրեանց խաշանց արօտականս զգաւառն հաշտենից‖, չէ պարտ իմանալ վասն սահմանի աւանացս, այլ վասն հանելոյ ընակչաց նոցա զխաշինս իւրեանց յարօտս սահմանակից գաւառին հաշտենից. որպէս յայտնի ցուցանէ բանն։

(3) 'Ի տպագրեալն զենոբայ գնի Հոռանս, որպէս և յայլ ձեռագրի՝ Խոռեանս։

(4) Այսպէս գնի յերկուս ձեռագիրս, որ 'ի տպագրեալն վրիպակաւ գրի Ոզկան. իսկ թարգմանիչք խորենացւոյն ընթեռնուն Սեղկան, ըստ որոյ և թարգմանեն։

(5) Այսպէս գնի 'ի ձեռագրի յերկուս տեղիս նոյն գլխոյն. իսկ 'ի տպագրեալն յերկուս տեղիս վրիպակաւ գրի Ողական։ Կայ առ զենոբայ միայն 'ի տպ. և Ոզկան։

նու Մամիկոնէի, և առ աստղկայ ծ. 4: Այժմ ըստ ասելոյ ոմանց՝ կոչի սա Պօկլու, ուստի ելանէ որիզ:

Կառնա: Քաղաք՝ որ յիշատակի 'ի ձեռագիրս զենոբայ, 'ի կողմանս Ողկան ամրոցին:

Զիմնկերտ: Քաղաք՝ որ զկնի 'ի վախտանկայ զօրապետէ պարսից նորոգեալ կոչեցաւ Պօրպէս. *Այն 'ի գլուխ տարօնոյ (ասէ յոհաննէս մամիկոնեան,) և շինեաց զաւերեալն Զիմնկերտ քաղաք մեծ, և փոխեաց զանուն քաղաքին ըստ անուան կնոջ իւրոյ զոր եած ընդ իւր՝ Պորպէս, այսինքն Համեղ ‖:

'Ի ձեռագրի միում յոհաննու մամիկոնէի գրի Պօրպ, ըստ որոյ յիշէ և Թովմաս արծրունի դ. 5. *Տիկինն սպարապետականի (այսինքն մամիկոնէից) տարունոյ եկեալ, և նշանացի զգի նորա (այսինքն աշոտոյ որդւոյն սմբատայ) գտեալ՝ տարաւ 'ի Պորպ յիւր աւան, և եդ 'ի գերեզմանի ‖:

Օձ: Քաղաք՝ որոյ մուտք անձուկ, առ որով կայր և Սօր (1): Սորա բերդ է Թերև՝ զոր շինեաց Դաւիթ որդի աշոտոյ մսակերի. զորմէ գրէ վարդան. *Դաւիթ եղբայր սմբատայ շինէ զՕձ բերդ ‖: Այժմ երևի աւերակ սորա:

Աշտող: Տեղի՝ ուր շինեցաւ աւան (2): Այժմ կոչի Աշտող՝ որ է գիւղ: Տես 'ի նոր հայաստան Թղթ. 189:

Աղնոյ բերդ. զկնի կոչեցաւ Աղնուտ. *Այս տանիլ (ասէ յոհան մամիկոնեան) յԱղանց բերդն, զոր դեռ Աղնուտն կոչեն (3) ‖: Յիշատակէ զսոյն և լաստիվերտցին 'ի գլ. ժդ. 'ի գրելն վասն իւանէի որդւոյ լիպարտին, որ իշխան էր աւանին երիզայ հաշտենից. *Գնաց և խաբանօք էառ զամուրն Աղանց բերդ կոչեցեալ ‖. և զկնի կոչէ Աղնուտ՝ յասելն. *Այլ զինքն եդ 'ի յԱղնուտն 'ի բանդի ‖:

Կորէ: Տեղի՝ մօտ յարածանի: 'Ի տպագրեալն յոհաննու մամիկոնէի 'ի ձիը, որպէս և 'ի միում ձեռագրի՝ դնի Կորեայ գետն. իբր զի ասէ՝ զօրք պարսից պաշարեալ գոլով 'ի Թշնամեաց, աղաղակէին՝ *Այս մեզ կո-

(1) Յոհան մամիկոնեան 'ի ձծզ:

(2) Վասն սուգաբանութեան սորա գրէ յոհան մամիկ''. 'ի ձիւ. *Եւ միւս ընկերն առեալ աւագ տայր ցմիւսն և ասէր. պարսից խորտակարարդ Աշտող, և կոչեցաւ անուն տեղւոյն Աշտող մինչև ցայսօր, որ և անուանեցաւ 'ի վահանայ ‖:

(3) 'Ի տպ. 'ի ձիա. որպէս և 'ի միում ձեռ''. գրի՝ Ողնոյ բերդ:

ըեալք, և եդաւ անուն գաւառին Կորեայ լերին ‖ [1] ։

Գուրհուր ։ Ամրոց՝ ՚ի վերայ լերին տօրոսի մօտ ՚ի Ս․ Կարապետ, շինեալ ՚ի վախտանկայ զօրապետէ պարսից ․ * Նա ՚ի վերայ լերինն տօրոսի (ասէ յոհան մամիկոնեան ՚ի ՃԻԳ ․) շինեաց զամրոց, և կոչեաց զանուն նորա Գուրհուր [2], քանզի անդ ոմանք Գուռհաձէծ եղեն ‖ ։

Գորգոսս ։ Աւան՝ զոր կառոյց վերոդրեալ վախտանկ ․ * Նա (ասէ յոհան մամիկոն ․ ՚ի ՃԼԳ ․) և ՚ի վերայ գոռոզ լերինն, և շինեաց անդ աւան, և անուանեաց զնա Գորգոսս, յանուն որդւոյ իւրոյ Գորգոսի ‖ ։

Արտէնչ ։ Տեղի՝ զոր յիշատակէ յոհան մամիկոնեան ՚ի ՃՂԸ ․ [3] ։ Այժմ կոչի Արտէնձ, որ է գիւղ ։ Տես ՚ի Նոր հայաստան ․ Թղթ ․ 191 ։

Աշծէշ բերդ ։ Զոր յիշէ յոհան մամիկոնեան ՚ի ՃԽԷ ։ Առ մատթէոսի՝ կոչի Աշծեաց բերդ ․ յառաջագոյն կոչէր Արծուիս, որպէս գտնի ՚ի ձեռագրին յոհաննու մամիկոնէի ։ Կոչի նաև Արծրունի, որպէս գտնի ՚ի ձեռ″ ․ և ՚ի տպ ․ ՃԽԹ ։ Այն է սա որ առ զենոբայ ծէ ․ կոչի Արծուիք, ուր և յաւելու զպատուգարանութիւն ․ Իբր զի իշխանն հաշտենից հեգնելով՝ Արծուոյ ջոկ կոչեաց զիշխանն սիւնեաց ․ իսկ իշխանն սիւնեաց ՚ի սատակելն զիշխանն հաշտենից՝ ասաց ․ * Տեսցեն զքեզ անկեալ՝ և ասասցեն թէ յԱրծուոյ հարած նապաստակդ ․ և ինքն դարձաւ ․ զոր տեղին մինչև ցայսօր Արծուիք կոչեն ‖ ։

Արտոյ գիւղ ։ Սօտ է ՚ի Ս․ Կարապետ, ուր էր և անտառ նոյն մենաստանին ըստ ձեռ″ ․ յոհաննու մամիկոնէի ։ Ունէր այս գիւղ նաև ամրոց, որպէս գտնի ՚ի ձեռ″ և ՚ի տպ″ ՃԾԴ ։

Մեծամօր ։ Ամրոց՝ զորմէ յոհան մամիկոնեան ըստ ձեռագրին ․ * Խաղացեալ էին ՚ի բլուրն ՚ի փոքրն ամրոցին ՚ի Մեծամօրին արք երեք հարիւր ՚ի ներքոյ անդաստակայ ‖ ։

Մոկկոնս, կամ Մոկաց գերեզման ։ Յիշէ յոհան մամիկոնեան ըստ ձեռագրին, յասելն ․ * Զգեցին զգլուխս

(1) Այս բան այլազգ պարագայիւք կրկնի և ՚ի ՃՀԶ ․ և ՃՀԷ ․ ուր և ըստ ձեռ″ գրի անուն տեղւոյն Կոտրան կամ Կորան, և կամ Կորեան ։

(2) ՚ի ձեռագրի միում և ՚ի տպ″ ՃԼԶ ․ և ՃԼԳ ․ գրի՝ Գուհուր ։

(3) Յաւելու նա ինքն յոհան մամիկոն″ և զպատուգարանութիւն, յասելն ․ * Եւ նոցա (այսինքն զօրացն պարսից) աղաղակեալ ասեն, Արտէնչ դարձայք անդրէն ՚ի պատերազմ ով աւելախօսք, և կոչեցաւ անուն տեղւոյն Արտէնչ ‖ ։

հինգհարիւրս 'ի մօր անդր, և կոչեցաւ տեղին այն Մո-ղուց գերեզմանն, որ է Մոկկունս ||: (1) Այժմ կոչի Մո-կաճոյ. տես 'ի նոր հայաստան Թղթ. 188:

Աղաբերդ: Յիշատակի 'ի ձեռագրի յոհաննու մա-միկոնէի, որոյ եկեղեցին զոր կոչէ Մեծ կաթողիկէն, կոր-ծանեցաւ ընդ այլ եկեղեցիս յորժամ Ապտուռռահիմ արշաւեաց 'ի հայս:

Յիշատակի և Արտաձոյ, և Արտաճոյ. որ 'ի տպ՛. ՃՀԶ. գրի Արտեղծոյ, և 'ի ՃԷ. Արտեղծն ամրոց. իսկ 'ի միում ձե-ռագրի նաև Արտեղուտոյ. * Անցեալ յԱստեղունս ամուրն կային աւուրս Է||: Եւ փոքր մի զկնի. * Եւ նա խնդրեաց 'ի նմանէ զԱստեղունս ամրոցն ||: Որ 'ի տպ՛. ՃԺԵ. գրի յԱրտեղծոյ, և զԱրտեղծոյ. որ թերևս նոյն են ը Աստ-ղաբերդին (2): Տես զԱղաբերդ 'ի նոր հայաստան. Թղթ. 188:

Յիշատակին առ նորին յոհաննու մամիկոնէի, և այլ բազում անուանք անծանօթք. որք են,

Խաչ Գեող: Որ յայլում ձեռագրի, որպէս և 'ի տպ՛. ՃԺԶ. գնի Հարցս: Այժմ կոչի Խարծ: Տես 'ի նոր հայ-աստան. Թղթ. 191:

Մօրայ դուռն: Յիշատակի 'ի ձեռագիրս և եթ:

Մանասայի ծմակ: 'Ի տպ՛. ՃԺԲ. և ՃԺԹ. որ 'ի ձեռա-գիրս խնչ գրի Նործմակ: Տես և 'ի նոր հայաստան զՆործմակ Թղթ. 182. 191:

Անդակ, և Արդակ: Մօտ յՇննավներան վանսն, զորմէ գրի 'ի ձեռագիրս յոհաննու մամիկոն՛. *'Ի հարաւոյ կուսէ վանացն որ 'ի գլուխն Արդակայ, և հայի 'ի փոքր ամրոցն մեծամօրն՝ ներքոյ Կարդակայ՝ (3) զոր Արդակն կոչեն ||: Այժմ ևս կոչի Անդակ:

Կոթ, կամ կոթ: Անուն ձորոյ՝ որ յիշատակի առ յոհան-նու մամիկոնէի 'ի ՃԺԸ. յասելն. * Փախստական արարին զնոսա 'ի բերդակոյս Կոթ ձորոյ.. և արք բերդին ընդ-դէմ ելեալ քարամբք և գլովք ||: Եւ փոքր մի զկնի. * Եւ վահան առեալ զզօրսն իջուցանէր 'ի բուն ձորն ||: Իսկ բերդին անունն ոչ յիշատակի անդէն:

Սահու ափարակ: Ոլոր՝ յորում սմբատ որդի գայլ վա-

(1) 'Ի ձեռագրի միում, և 'ի տպ՛. ՃԿԵ. այլազգ գնի այսպէս. * Եւ կոչեցաւ անուն գեղջն Մո-ղուց Գերեզման, որ էր Մոկ գաւառ||:

(2) Անունս Աստղօնք գտանի յիշատակեալ և 'ի ձեռագրին զե-նոբայ, որ 'ի տպ՛. վրիպակաւ գնի Աշտէնք:

(3) Յայլ օրինակի, որպէս և 'ի տպ՛. 'ի Ճ. գրի Սորակայ:

համայ Թաղեաց գլխաւորն Թչնամեացն (1)։ Այժմ կոչի Մահագրակ, որ է գիւղ. տես 'ի նոր Հայաստան. Թղթ. 191։

Մահոր բերդ։ Յիշատակի առ յոհաննու մամիկոնէի 'ի ձխէ, ուր պատերազմեցաւ ահեատ ընդ վախտանկայ պարսկի, և յաղթեաց։

Մրենոց քար, և Գողոց ողբեր։ Յիշատակին առ նորին յոհաննու մամիկոնէի 'ի ձճզ։

Մրեճաքար, կամ Մերեճաքար։ Անուն անտառի՝ ուր անկաւ Մրհէմ անն 'ի զօրացն հայոց։ Յիշատակի առ յոհ. մամիկոն". 'ի ձճդ։

Քողոփ, կամ Քողոփ։ Տեղի ինչ յիշատակեալ 'ի նմին հեղինակէ 'ի ձճդ։

Մահանովիտ։ Յիշատակեալ 'ի ձճդ. զոր շինեաց վահան որդի վարազայ իշխանին պալունեաց։

Ոսկերաքար։ Յիշատակեալ 'ի ձճթ։ Այսպէս կոչեցաւ՝ սակս անդ ննջելոյ խոցոտեալ զօրացն։

Մարաղաբերդ։ Այսպէս անուանեալ վասն կոտորածոյն՝ զոր արար իշխանն պալունեաց վարազ։ Յիշատակի 'ի ձճթ։

Կենաց հայրք։ Էր գեօղ վանաց, և կոչեցաւ զկնի Րէրաքանէք. ըստ այլ ձեռագրի Րէրենէք։ Յիշատակի 'ի յոհ. մամիկոն". 'ի ձկ։

Հաճընկեց, կամ Խաճընկեց ըստ միում ձեռագրի։ Յիշատակի 'ի տպ. 'ի ձկդ, և ձկե։

Բռարագլուխ, կամ Բռարգլուխ։ Որ է համդէպ Լերինն տորոսի։ Յիշատակի 'ի ձկզ. և 'ի ձկէ։

Գիող գալանեաց։ (Եթէ իցէ այլ 'ի կուասս և 'ի Հոռեան աւանաց։) Յիշատակի 'ի ձկը։

Մարերոց քող։ Յիշատակի 'ի ձհա։ 'Ի ձեռագրին Մարերոց քող։

Մրքուլ (2)։ Յեղանէ։ Յիշատակի վերջինս 'ի տպ. 'ի ձհբ։ Իսկ 'ի ձեռագրի միում փոխանակ Յետանկ անուան գրեալ կայ Այծեան։ Յայլում ձեռագրի՝ ոչինչ գնի։

Մահոր ոտիթ։ Յիշատակի 'ի ձհը։

Կաղնեաց բերդ. կամ ըստ տպ". 'ի ձհզ. ըստ այլ ձեռագրի Կաղամնեաց բերդ։ Իսկ 'ի ձձա. Կաղամնեաց լեառն։

(1) Յիշատակի առ յոհաննու մամիկոնէի 'ի ձխա։

(2) Այս անուն չիք 'ի տպագրեալն։

Մօտ յարածանի (կամ յարծնի) գետ՝ ուր էր անտառ ծառոց։

Պարսից նողն։ Գիւղ՝ յիշատակեալ 'ի ճզր։ 'Ի ձեռագրի միում գրի Պարսից դէհն։

Ընձանիս։ Յիշատակեալ 'ի ճճ։ Այսպէս կոչեցաւ վասն Ընձանիս անելոյն վարազայ իշխանի ցոհն իշխանացն պարսից։ Բայց 'ի ձեռագրի կրկին տեղիք յիշատակին, կոչեցեալք Ներքին Ընձնիս, և Վերին Ընձնիս։

Պողէ։ Ըստ ձեռագրի Պողէ։ Յիշատակեալ 'ի ճճ։

Փանդէէ։ Հայկերտ, կամ ըստ ձեռ․ Հայրկերտ։ Այս այլև այլ տեղիք յիշատակեալք 'ի յովհաննու մամիկոնէէ 'ի ճճա։

Այն սա յիշատակէ 'ի ճա․ և զՄռնէղէցի որ ածածնի՝ զոր վարդ պատրիկ իշխանն արծրունի շինեաց և զարդարեաց հրաշալի սպասիւք և կազմութեամբ 'ի յիշատակ հոգւոյ իւրոյ մարիամու։

'Ի գիրս զենոբայ յիշատակին յետագայ տեղիքս. Արտոյ ծոցոյ, կամ Արտաւ ծոցոյ (1). կոչի սա նաև՝ Արեւելեայ ծոցոյ։ Տեղի՝ ուր ճգնէին 'որն անտոնն և կրոնիդէս, մօտ 'ի Բարեհամ աղբերն, որ յայլում ձեռագրի կոչի՝ Բաղցրահամ աղբեր։

Մեսակէս։ Տեղի՝ ուր անկաւ դի Մեսակեսի քրմին յաղթուշատու. 'ի տպ. ծը. վրիպակաւ դնի Մեսակող, որպէս և յայլ ձեռ․ Մեսակող։

Արճոյ ջոր. 'ի տպագրեալն ծը. ըստ ձեռագրի Արճոյ ջոր։ Տեղի՝ ուր անկաւ իշխանն արջուց։

Մեղաց դաշտ։ Տերակարար դաշտ։ Առաջինն յիշատակի 'ի զենոբայ 'ի ծդ. իսկ երկրորդն 'ի ծդ։

Արջառ։ Անուն լերին. այսպէս անուանեալ՝ սակս անդ անկանելոյն արձանայ քրմապետին։ Յիշատակի 'ի ծդ։

Ձոր եմանոյ։ Դնի * Յարևելից կուսէ համդեպ Կամձենից Արադոնից ||, 'ի տպագրեալն կէ. ըստ այլ ձեռագրի փոխանակ ձորոյն եմանու՝ գրի Ձոր արծաթոյ։

Թանկարդ։ Տեղի՝ 'ի հարաւակողմն անտառի ինչ, ուր կոտորեաց տրդատ արքայ 1700 այր 'ի հիւսիսականացն (2)։

(1) 'Ի տպ. հէ. դնի Յարոյ ծոցոյ, կամ ըստ ձեռ․ Արոյ ծոցոյ։

(2) Զայսոսիկ անուանս հաւաքեցաք 'ի գրոց զենոբայ, և յովհաննու մամիկոնէի. որոց ձեռագիրք մեծապէս տարբերին 'ի տպագրելոյն, և ուրեք ուրեք նաև 'ի միմեանց, յորս բազում ինչ յաւելեալ երևին 'ի յետագայից, մանաւանդ 'ի գիրս յոհաննու մա-

Մծուրք։ Տեղի հին քաղաքի շինելոյ 'ի սահմանակոյ արքայէ, զոր բուզանդ Դ. 13. այսպէս ստորագրէ. * Ապա գնայր մարդպետն հայր 'ի Սբ տեղեացն (յեկեղեցւոյն և 'ի վանացն յաշտիշատու), և էջ յափն գետոյն Հոսանացն Եփրատու՝ առ հովիտն Թանձրախուռն անտառուին (1), 'ի գետախառնուրդն երկուց գետոցն 'ի Թաւուտ խարձիցն մամխեացն՝ որ 'ի տեղւոջն 'ի հնոցն իմն շինած քաղաք, զոր շինեալ սահմանրուկ արքայի, որում անուն տեղւոյն Մծուրք կոչի ‖։

Հոսանք Եփրատայ զոր դնէ աստէն, երևի լինել նոյն՝ որ այժմ կոչի Կարճաղճահասան Եփրատայ, որ մօտ է 'ի լեառն Սբյ կարապետին. որով և Մծուրք լինի մօտ 'ի նոյն լեառն, և 'ի տարօն գաւառի։

## ԱՇՄՈՒՆԻՔ կամ ԱՐՇԱՄՈՒՆԻՔ [2]։

Գաւառ՝ սահմանակից Հաշտենից որ 'ի չորրորդ Հայս, ըստ ղազարայ որ գրէ 'ի 260. * Գնայր (վահան) 'ի սահմանս Հաշտենից, և հասեալ բանակէր 'ի գաւառին Արշամունեաց՝ 'ի գիւղն որ կոչէր Երէզ (3), կամեցաւ հանգչել աւուրս երկուս ... և հաւանեցուցեալ զարսն 'ի գեղջ Երիզայ‖։ Նաև ըստ ասողկայ Գ. 43. * Եղանէ (կայսրն վասիլ) 'ի լեառնն կոհերայ .. որ ընդ մէջ Հաշտենից, ծոփաց, և խորձենոյ, և անտուստ գայ հասանէ 'ի գաւառն Արշամունեաց 'ի քաղաքն Երիզայ‖։

Եպիսկոպոս գաւառիս՝ Թէոփիլոս անուն յիշատակի

միկոնէի։ Բազում տեղիք 'ի նոսա են աննշանք, և ստուգաբանութի անուանց նոցա՝ մանաւանդ ոմանց, առաւել Թուին հնարեալ իմն յարմարումն քան Թէ հարազատ պատճառ անուանակոչութե։ Այլ մեք եդաք աստէն, զի ոմանք 'ի նոյն տեղեացն ոմնն անուամբ կանգուն կան մինչև ցայսօր։

Եւ համարեցաք զնոսա լինել 'ի գաւառին տարօնոյ, քանզի նոյն մատեանքն որք են յանուն զենոբայ, և յանուն յոհաննու մամիկոնոյ, եդեալ են՝ Թէ ինչ ինչ յաւելան 'ի յետագայից, սակայն Ճառեն զերկրէն տարօնոյ՝ կամ զերկրէն մամիկոնէից, և զանցից՝ որք եղեն անդէն։

(1) Զայս անտառ յիշէ և Թովմաս արծրունի Ա. 14. 'ի սմին պատմութե, այլ առանց մասնաւոր ինչ անուան։

(2) Յերկուս ձեռագիրս աշխարհագրութե խորենացւոյն գնի Արշամունիք, որպէս և առ ասողկայ Գ. 2։ Այլ Աշմունիք անուամբ յիշատակի և առ զենոբայ։

(3) Գրութիւն Երէզ՝ առ ղազարայ՝ Թուի վրիպակ գրչի. յորժ զանազանելոյ զբոլորգիրն Ւ 'ի Զ տառէն. քանզի առ նմին ղազարայ փոքր մի զկնի գրի անուն տեղւոյն Երէզ, և բնակիչքն՝ Երիզացիք։

'ի ստորագրութեան անդ ժողովոյն դունայ, զկնի եպիսկոպոսին վանանդայ ։

ՆՈՐԷՆ։ Գիւղ կամ Աւան Նորէնայ։ Անկանի յայսմ գաւառի ըստ աստղկայ գ. 43. և ըստ ղազարայ 'ի թղթ. 260. որ և զԾնակիչսն կոչէ՝ Նորէնայիս ։ Տես զբանս երկոցուն ևս 'ի վերոյ (1) ։

ՈՍԽՆՈՑ։ Գիւղ յարշամունիս, յիշատակեալ առ աստղկայ Ե. 2. յասելն վասն յոլովմանն մանդակունեաց. * Օ այսու ժամանակաւ երանելին յոհան մանդակունի՝ որ էր 'ի գաւառէն Արշամունեաց, 'ի գեղջէ ծախնոտայ, զհայոց բազում կարգս ուղղութեամբ կատարեաց ‖ ։

## ՄԱՐԴԱՂԻ (2) ։

Գաւառ՝ զոր աստղիկ գ. 15. ցուցանէ կոչել նաև Սևոյ Բերդոյ, զի ասէ. * Խոստանայ տալ նմա ... և զՍևուկ բերդակ, որ և Մարդաղի ‖ ։ Այլ պարտ է իմանալ՝ թէ Սևոյ Բերդոյ՝ էր բերդ երևելի 'ի մարդաղի գաւառին, յորոյ անուն կոչէ նաև զգաւառն առհասարակ ։

Եպիսկոպոսք գաւառիս յիշատակին նախ՝ առ եղիշէի 'ի ստորագրութիւն եպիսկոպոսաց ժողովոյն արտաշատու առ ա̅. յովսէփ կաթողիկոսաւ զկնի եպիսկոպոսին Մարդաստանի, Նուղաղ եպիսկոպոս Մարդաղւոյ ։

Նոյն 'ի ստորագրութիւն եպիսկոպոսաց ժողովոյն դունայ առ գ̅. Ներսէսիւ, զկնի եպիսկոպոսին Տայոց, Յովհաննէս եպիսկոպոս Մարդաղւոյ ։

(1) Զայս գիւղ կամ քաղաք՝ որ այլ է 'ի միւս Նորիգայէ՝ որ յԵկեղեաց, լաստիվերացին գլ. ժը. կոչէ Մեծ Աւան, և դնէ զայն 'ի գաւառն հաշտենից. զի ասէ. * Որդի Ըսպարտին իւանէ անուն, որում տուեալ էին 'ի պարգևի տեղիս բնակութեան զմեծ աւանն Նորիգայ 'ի գաւառն հաշտենից, և որ շուրջ զնովաւ դաստակերտքն ‖ ։ Թերևս վասն մերձաւոր սահմանակցութեանն հաշտենից համարի զՆորէգ 'ի հաշտեանս, զոր ղազար և աստղիկ դնեն յարշամունիս, ըստ որոց եդաք և մեք։

Իսկ բուզանդ գ. 15. 'ի յիշելն զարշամունիս՝ ասէ. * Ապա դրան երէց ոմն արքունի՝ որ էր 'ի ժամանակին յայն, որում անուն Մրջիւնիկ յԱրշամունեաց տեղեաց՝ 'ի Նահանգէն Տարօն գաւառէն ‖ ։ Թերևս կամի ասել, թէ ծննդեամբ էր 'ի տարօնոյ, այլ կայր յարշամունիս ։

(2) Յերկուս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն գրի Մարդոյ ողի. որպէս և 'ի միում ձեռագրի եղիշէի. այլ 'ի տպագրեալն նորին թղթ. 26. դնի Մարդողի. իսկ յայլում ձեռագրի Մարդոյ ողի ։

## ՀԱՐՔ:

Այս գաւառ եղև առաջին վայր բնակութեան Հայկայ՝ յետ դարձի իւրոյ 'ի բաբելոնէ. և նա ինքն ետ զայս անուն 'ի նշանակել ըստ մարիբասայ (առ խորենացւոյն ա. ց.) թէ *Աստէն բնակեալքս ազգ 'ի տանն Թորգոմայ‖: Այսինքն՝ մեք այժմ աստէն բնակեալքս՝ եմք 'ի տան հարցն մերոց Թորգոմայ, և այլն, որք էին հարք մեր: Զյիշատակ հարց իւրոց կամեցեալ սովաւ արձանագրել. քանզի հայաստան էր վայր բնակութեան Թորգոմայ, և այլոց հարց հայկայ, որպէս և հարց ամենայն ազգաց:

Եւ յայս անուն կոչեաց նա զբարձրաւանդակն դաշտին, կամ զլեռնադաշտակն՝ յորում բնակեցաւ. ապա 'ի նորին անուն կոչեցաւ և գաւառն առհասարակ, որ և անկաւ 'ի ժառանգութիւն մանաւանդ որդւոյ հայկայ, և 'ի նմանէ սերելոյ ազգին:

Եկեղեցի այսր գաւառի և Եպիսկոպոսարանն հիմնեցաւ զառաջինն 'ի ձեռն գրիգորէ լուսաւորչէ. որոյ և Եպիսկոպոսունք ուրեք ուրեք 'ի գիրս կոչին և յանուն Մանազկերտոյ գլխաւոր քաղաքի յայսմ գաւառի. տես զերլուծութիւն 'ի ստորև: Եւ առաջինն՝ որ կարգեցաւ եպիսկոպոս՝ եղև յորդւոց անտի քրմացն Աղբիանոս (1): Իսկ 'ի ժամանակս վարդանանց՝ եպիսկոպոս գաւառին

(1) Զայս Աղբիանոս՝ ագաթանգեղոս ասէ լինել եպիսկոպոս Եփրատական կողմանցն. իսկ բուզանդ ե. 29. կոչէ Եպիսկոպոս Մանազկերտոյ. և 'ի դ. 4. 'ի պատմելն վասն պատերազմին մանուազեանց և որդունեաց՝ գրէ. *Առաքեցին Թագաւորն խորհրդով և մեծ եպիսկոպոսապետն վրթանէս զպատուական Մեծ Եպիսկոպոսն Աղբիանոս 'ի մէջ նոցա խօսել 'ի հաշտութեան‖: Իսկ 'ի ջնջել վաչէի զօրավարի զերկուս ցեղսն՝ տուաւ յարքայէ Մանաւազակերտ ամենայն սահմանօքն յեկեղեցի (այսինքն՝ 'ի վիճակ եկեղեցւոյ) Եպիսկոպոսին Աղբիանոսի: Տես զբուն բանն բուզանդայ 'ի կարգի անդ 'ի բառն Մանազկերտ:

Առ յոհաննու կաթուղիկոսի 'ի գաւազանագիրս կաթուղիկոսացն՝ Աղբիանոս ասի լինել Եպիսկոպոս Հարքայ: Յորմէ երկու ինչ մարթ է իմաստասիրել. նախ՝ թէ մի և նոյն թեմ եպիսկոպոսի էր Հարք գաւառ, և Մանազկերտ քաղաք Հարք գաւառի, որոյ վասն և 'ի գիրս՝ է զի ուրեք մի և նոյն եպիսկոպոս՝ կոչի Հարքայ, և այլուր Մանազկերտոյ: Եւ 'ի ժողովական գործս՝ ուր կայ յիշատակեալ Եպիսկոպոս Մանազկերտոյ, չէք անդ Եպիսկոպոս Հարքայ, և ընդ հակառակն: Յորմէ զհետ գայ հարկաւ՝ թէ մի և նոյն թեմ ենթագրին երկոքին: Երկրորդ՝ թէ մանազկերտ էր սեպհական ժառանգութի եպիսկոպոսին հարքայ:

էր մելիտէ. (1) որ և գտաւ 'ի ժողովն արտաշատու ։ 'Ի ժամանակս ժողովոյն դւնայ առ տ̃. Ներսիսիւ շինողիւ՝ Ներսէս եպիսկոպոս (2) ։ Նոյնպէս և 'ի ժողովն Մանազկերտի յիշատակի Ներփիոս եպիսկոպոս ։

'Ի ժամանակս գրիգորի մագիստրոսի՝ Թուի Թէ երկու եպիսկոպոսարանայ՝ այսինքն են Մանազկերտոյ կամ Հարքայ, և Մոկաց մի և նոյն էր առաջնորդ՝ Գրիգոր եպիսկոպոս. առ որ գրէր երբեմն և նա ինքն մագիստրոս, որպէս է տեսանել 'ի խորագիրս Թղթոց նորա ։ Իսկ 'ի ստորագրուԹիս Հարց ժողովոյն հռոմկլայու կարգի և գէորգ եպիսկոպոս մանազկերտոյ ։ Որպէս և 'ի յիշատակարանս ինչ գրոց 'ի Թուականին չկե՝ յիշատակի Աբրահամ եպիսկոպոս Մանազկերտոյ ։

Հայկաշէն ։ Առաջին գիւղ յաշխարհիս հայոց՝ յետ ջրհեղեղոյ անուն ազգաց, զոր շինեաց հայկ, և անուանեաց յիւր անուն. որ 'ի բանից խորենացւոյն ա̃. Գ. յայտնի երևի լինել 'ի սմին Հարք գաւառի ։

Մանազկերտ ։ Այս անուն կոչի բազում ուրեք առ պատմագիրս մեր, որպէս առ ասողկայ և առ սամուէլի. իսկ առ վարդանայ, և մանաւանդ առ մատԹէոսի՝ կոչի և Մանծկերտ, որ չէ այլ 'ի Մանազկերտոյ. քանզի զայն անցս՝ զոր այլ պատմագիրք պատմեն վասն Մանազկերտոյ՝ սոքա զնոյն պատմեն վասն Մանծկերտոյ ։ Սոյն և առ այլս գտանեմք, զի զնոյն մելիտէ՝ զոր եղիշէ կոչէ Եպիսկոպոս Մանազկերտոյ, ղազար կոչէ Եպիսկոպոս Մանծկերտոյ ։ Ուրեք ուրեք գրի և Մանածկերտ, և Թուի յառաջ եկեալ առաւել յաղաւաղելոյ գրչաց՝ քան Թէ 'ի բարբառոյ ռամկին, զի ուր առ զենոբայ ըստ ձեռագրաց ինչ, որպէս և 'ի տպագրեալն հե. գրի. * Նկեալ հասին 'ի գաւառն ապահունեաց 'ի քաղաքագեղն Մանծկերտ ‖, անդ յայլ ձեռագիրս գրի Մանազկերտ ։

(1) Կայ առ ղազարայ գրեալ վասն մելիտեայ կաթուղիկոսի՝ Թէ Էր յաջորդ Մանազկերտեցւոյն. որպէս և վասն յաջորդի նորա մովսէսի՝ Թէ էր և նա 'ի նոյն ազգէ ։ 'Ի բանից աստի կրկին ինչ մարԹ է իմանալ. նախ՝ Թէ մելիտէ և մովսէս կաԹողիկոսք իցեն 'ի զաւակացն մեծին աղբիանոսի առաջնոյ. յորոց զաւակացն էին և այլք ոմանք յառաջ քան զսոսա. որ Շահակ կմ Սահակ, Զաւէն, և Ասպուրակէս՝ որք նստան կաԹուղիկոս ըստ վկայելոյ բուզանդայ, խորենացւոյն, և այլոց ։ Երկրորդ՝ մարԹ է 'ի կարծիս լինել՝ գէԹ վասն մովսէսի, եԹէ նախ քան զկաԹողիկոսուԹիւն կացեալ իցէ իբրև զնախորդն իւր եպիսկոպոս Հարքայ, կամ Մանազկերտոյ ։

(2) 'Ի ստորագրուԹիս եպիսկոպոսաց ժողովոյն դւնայ կարգի անուն սորա անմիջապէս զկնի կաԹուղիկոսին ։

Առ կոստանդին պերփիրուժենի (1) կոչի Մանծի-կիէրտ. * Նոյնպէս՝ և Մանծիկիէրտ համադերձ գաւառաւն Ապախունեայ, և Արծէսոյ, և Պերկրոյ (որ են Ապահունիք, և Հարք, և Կորի,) էր ընդ տէրութեամբ նորին իշխանաց իշխանի ‖: Իսկ կուրապաղատ կոչէ Մանծիկիէրտ, դնելով զնա քաղաք հռոմայեցւոց, այլ գրաւեալ 'ի սուլդանէն:

Այս քաղաք կառուցեալ կայր 'ի սահմանագլուխն (2) այսինքն 'ի վերջին ծայր Հարք գաւառի. յայնմ ծայրի՝ որ սահմանակից էր ապահունեաց գաւառին. վասն որոյ ոմանք դնեն 'ի Հարք գաւառի, և ոմանք յապահունիս. ըստ որում Թովմաս արծրունի, յասելն. * Իսկ զի էր պաշարեալ նորա (այսինքն աշոտոյ իշխանաց իշխանի) յայնժամ զքաղաքն Մանազկերտ Ապահունեաց աշխարհին՝ որ 'ի ձեռս ապլբառայն էր ‖:

Իսկ որ առաւելն է՝ մի և նոյն մատենագիր ուրեք դնէ 'ի Հարք, և ուրեք յապահունիս, որպէս ասողիկ Գ. 8. յասելն. * Իսկ 'ի նմին Թուականին՝ վարդ եղբօրորդի նիկեփոռայ զօրու ծանու գայ յԱպահունիս, պաշարէ զՄանազկերտ քաղաք, և առեալ զնա՝ 'ի հիմանց բրեաց խրամատեաց զպարիսպ նորա ‖: Ի նոյն գաւառ դնէ և 'ի Բ. 1: Իսկ 'ի Գ. 43. գրէ. * Իսկ ինքն չուեալ անցանէ 'ի գաւառն Հարք 'ի Մանազկերտ քաղաք ‖: Ի Հարք գաւառին դնէ և 'ի Բ. 2: Նոյնպէս և լաստիվերտցին 'ի գլ. ԺԳ. դնէ յԱպահունիս. * Եկեալ բանակեցաւ (կայսրն վասիլ) շուրջ զքաղաքաւն որ կոչի Մանազկերտ 'ի գաւառին Ապահունեաց ‖: Իսկ 'ի Ի. գլ. դնէ 'ի Հարք. * Երթեալ անցանէ (ասէ) ընդ Հայք (այսինքն Հարք) և ընդ Մանազկերտ (3) ‖:

Սակայն մի և նոյն քաղաք կամ գիւղ է՝ զոր վասն լինելոյն 'ի սահմանագլուխ վայրի, մատենագիրք երբեմն 'ի Հարք, և երբեմն յապահունիս դնեն, և ոչ թէ կրկին քաղաք կամ գիւղ. զի զոր սամուէլ և կիրակոս վասն շահկայ կաթուղիկոսի գրեն լինել 'ի Հարքայ 'ի Մանազկերտոյ,

(1) Գիրք կառավարութ. գլ. 44:

(2) * Այս (ասէ ասողիկ վասն օձնեցւոյն Բ. 2.) արար ժողով 'ի Մանազկերտ քաղաք 'ի Սահմանագլխոյն Հարքայ ‖:

(3) Պարտ է զՀայոց փոխանակ Հարք անուան առնուլ, մի՛ զի Հայք ո՛չ էր գաւառ՝ այլ գաւառակերտ ինչ հայկայ 'ի գաւառին Հայոց ձորոյ, յորում գաւառակերտի ոչ յիշատակի ուրեք քաղաք ինչ Մանազկերտ անուն. երկրորդ՝ զի 'ի պատմելն ասողկայ ըզնոյն պատմութիւն երթալոյ նորին կայսեր, Հարք գրէ. * Չուեալ անցանէ 'ի գաւառն Հարք 'ի Մանազկերտ քաղաք ‖:

(1) ասողիկ Բ. 1. զնոյն շահակ դնէ լինել 'ի գաւառէն Ապահունեաց . . . 'ի Մանազկերտ գեղջէ:

Եւ 'ի պատմութեն ժողովոյն մանազկերտի 'ի մի և 'ի նոյն բան՝ 'ի վերոյ դնի 'ի Հարքս, իսկ ստուգ ինչ ստորև յԱպահունիս. * Շնորհեցաւ ինձ յոհաննէս կաթուղիկոսի առնել է. ժողով 'ի Մանազկերտ գիւղ 'ի սահմանս նագրուխ վիճակին Հարքայ, բազմօրեայ ժամանակաւ, միատեղովք. այս եղև 'ի ՃՀԵ. թուականիս հայոց. 'ի Է. տրէ ամսոյ, որոյ ժողովեալ 'ի մի վայր յԱպահունեաց գաւառ 'ի գիւղն Մանազկերտ (2)‖: Յայտ է թէ ժողովն եղև 'ի միում մանազկերտի, և ոչ յերկուս:

Այժմ վկայէ մի և նոյն լինելն եպիսկոպոսացն Հարքայ և մանազկերտոյ, (որպէս տեսաւ 'ի վերոյ): Իսկ եպիսկոպոսունք Ապահունեաց յամենայն ուրեք ուր և յիշատակին, այնպէս որոշակի կարգին, մինչև ոչ ումեք 'ի կարծիս լինել՝ թէ նոյն իցեն ընդ եպիսկոպոսացն Հարքայ կամ մանազկերտոյ:

Սոյն այս Մանազկերտ է՝ որ առ բուզանդայ Դ. Դ. կոչի Մանաւազկերտ. զի բաց յանուանցն մերձաւորութէ, նաև գաւառ երկոցունց նոցա համաձայնի, զի դնէ զնա իշխանանիստ գիւղ սեպհական նահապետի ցեղին մանաւազեանց. * Եւ ետ (ասէ) զաւանն և զբուն գահոյից գիւղն նահապետին մանաւազենից եպիսկոպոսին աղբիանոսի յեկեղեցի՝ զՄանաւազկերտ ամենայն սահմանօքն և գաւառական հանդերձ որ շուրջ զնովօք էր՝ որ կայ 'ի կողմանս գետոյն եփրատայ‖: Արդ սեպհական տեղի մանաւազայ՝ է Հարք գաւառ, որպէս դնէ խորենացին Ա. 11. որ և յայտ է՝ թէ եղև սեպհական նաև համօրէն տոհմի նորա:

Այս Մանաւազկերտ անուն՝ որոյ համառօտեալքն են Մանազկերտ և Մանծկերտ, յայտ առնէ՝ թէ շինեցաւ 'ի Մանաւազայ յորդւոյ հայկայ. զոր և ակնարկէ խորենացին 'ի Բ. 7. 'ի գրելն՝ թէ վաղարշակ զնախարարութին մանաւազեան որպէս և զբզնունեանն՝ կոչեաց յանուն շինից նոցա և գաւառաց, յայտ արարեալ՝ թէ շինեալ էր մանաւազայ շէն ինչ յիւրում սահմանին Հարքայ՝ որ բերէր զանուն իւր, այն է Մանաւազկերտ:

(1) Յայլում օրինակի կիրակոսի՝ գրի Մանաւազկերտ, բայց զվերոգրեալն հաւատարմացուցանեն և այլոց գործածութի:

(2) Յայլում օրինակի ստորին բանքն սկսեալ 'ի Է. տրէ ամսոյ և այլն, պակասին:

Առաջինն՝ էր Պոլուղ կամ Ուան, ապա ընդարձակեալ եղև Քաղաք, մի յերևելի և յամուր քաղաքաց Հայաստանեայց՝ զոր այսպէս ստորագրէ գէտրէնոս, դնելով 'ի վասպրագանի՝ որ է վասպուրական. * Մանդզիկերդէ՝ է քաղաք կառուցեալ 'ի դաշտի երրեակ պարսպօք շրջապատեալ, և 'ի ներքս բազում աղբերօք ոռոգեալ ։ Պարիսպ նորա էր ընդարձակ, և քաղաքն լի բազմութե բնակչաց՝ որպէս դնէ լաստիվերացին ։

Բազում անգամ պաշարեցաւ և բազում անգամ առեալ եղև ։ Յամին 968, եառ վարդ եղբօրորդի կայսեր Նիկեփորոսի 'ի տաճկաց՝ խրամատեալ զպարիսպ նորա ։ Դարձեալ եառ 'ի տաճկաց կուրապաղատն տայոց Դաւիթ, և 'ի բաց հանեալ զտաճիկս՝ և զտունս աղօթից նոցա կործանեալ, փոխանակ նոցա բնակեցոյց զհայս և զվիրս ։ Այլ 'ի մեռանելն՝ ետ զայն կայսեր. * Յայնմ ժամանակի վախճանեցաւ ( ասէ վարդան ) կուրապաղատն Դաւիթ անժառանգ գոլով, և տայ անդարձ գրով զհայրենիսն 'ի վասիլն, զուխթիս, զմանրուան, և զքաղաքն ապահովնեաց զՄանածկերտ ‖ ։ Բայց զկնի 'ի նմին դարու բատ անուն ամիրայն խլաթայ և նփրկերտոյ վերստին առեալ՝ շինեաց զՄանազկերտ ։

Այլ զանազան առումնք և կռիւք պատմին առ պատմագիրս, յորս երևելի քան զամենայն եղև պաշարումն տուղրիլ սուլտանին 'ի 1053. որ զամիսս երկու բանակ հարեալ 'ի Բորոգոլու կոչեցեալ վայրի՝ երկիցս յիւրաքանչիւր աւուր մարտ դնէր ընդ քաղաքին. այլ զերծաւ յայնժամ քաջութե քաղաքապետին յազգէն յունաց որ կոչէր վասիլ, կամ ապուքապա, ճարտարութե հայկազուն երիցու՝ որ մեքենայիւք զքարինս բաղստրաց թշնամեաց անդրէն յետս 'ի վերայ նոցունց դարձուցանէր, և հնարիւք ուրումն գաղղիացւոյ՝ որ այրեաց զահագին բաբան թշնամեաց (1) ։

Եառ ապա զՄանազկերտ ալփասլան եղբայր նորին տուղրիլայ՝ առանց պահապանի գտեալ զքաղաքն. յորում ժամանակի չարաչար հարուածս եած 'ի վերայ քաղաքացւոյ ։ Իսկ զկնի եառ 'ի ձեռաց այլազգեաց դիոժէն (2) կայսր յունաց, որպէս յիշատակէ կի-

(1) Պատմեն զայսմանէ լատի. վերացին 'ի գլ. ժդ. որպէս և գէտրէնոս կամ կեդրէնոս, այլ առաւել ընդարձակ՝ մատթէոս ։

(2) Սա է ռոմանոս դիոժէնն՝ թագաւորեալ յամին 1068, մինչև 'ի 1071 ։

րակս ։ Տես և զՄանակերտ 'ի վասպուրական ։

Տողոտափ ։ Տեղի՝ մերձ 'ի Մանազկերտ, զոր յիշէ Մատթէոս Ուռհայեցի՝ յասելն. * Թագաւորն տիօժէն եկեալ հասանէր 'ի տեղի պատերազմին մերձ 'ի Մանծկերտ՝ 'ի տեղին որ կոչի Տողոտափ ‖ ։

Հերեան ։ Գիւղ՝ ուստի էր Դաւիթ Անյաղթ՝ ըստ ատողկայ Ե. 2. * Նա Դաւիթ (ասէ) աշակերտ մովսիսի 'ի Հարք գաւառէ՝ 'ի Հերեան գեղջէ ‖ ։ Այլ շնորհալին 'ի մեկնութեան բարձրացուցէք Ճառին՝ զգիւղն ուստի էր Դաւիթ՝ կոչէ Հերի, զոր և եգիտ նշանակեալ 'ի հին յիշատակարանս գրեալ 'ի ժամանակս Թարգմանչաց ։ 'Ի տօնապատճառ գիրս ասի վասն Դաւթի լինել 'ի Հարք գաւառէ 'ի Հերեւան գեղջէ ։ Իսկ 'ի խորագիրս գրոց ինչ Դաւթի կոչի Ներգինացի ։

Խոզեգաղ ։ Գիւղ՝ զոր յիշատակէ ասողիկ Ե. 2. 'ի գրելն վասն Ե. սահակայ կաթուղիկոսի. * Տէր սահակ 'ի գաւառէն Հարքայ 'ի գեղջէն Խոզեգակայ (1) ‖ ։ Այլ առ յոհաննու կաթուղիկոսի գրի, 'ի գաւառէ Հարքայ Ոզնայ գեղջէ ։ Իսկ 'ի գաւազանագիրս միխայէլի ասորւոյ, Ե. սահակ կաթուղիկոս դնի լինել 'ի գեղջէն Ոզնայ ։

Մանկանգոմ ։ Քաղաքագեօղ՝ զոր յիշէ Լաստիվերտցին 'ի գլ. ԺԷ. յասելն. * Գիշերազնաց եղեալ զօրք անօրինացն, և եկեալ 'ի Քաղաքագիւղն Հարքայ՝ որ կոչի Մանկանգոմ, և .. սուր 'ի վերայ եդեալ կոտորեցին զամենեսեան, և որ շուրջ զնովաւ Գիւղք և Ագարակք էին ‖ ։

Դոնեվանք ։ Գիւղ՝ յիշատակեալ 'ի յիշատակարանս ինչ գրչագիր աւետարանի 'ի ՉԿԵ. Թվին հայոց, 'ի ԺԴ. դարուն, ուր գրի այսպէս. * Արդ՝ գրեցաւ 'ի գաւառիս Հարքայ, 'ի գեղս որ կոչի Դոնեվանք, ընդ հովանեաւ սրբուհւոյ Ածածնիս ‖ ։

## ԲԶՆՈՒՆԻՔ ։

Թովմա արծրունի կոչէ Գաւառ Բզնունեաց ։ Ընկալաւ զանուանս 'ի Բագայ որդւոյ մանաւազայ 'ի Թոռնանէ հայկայ. * Իսկ որդի նորա բազ (ասէ խորենացին Ա. 11.

(1) Յիշատակի առ եղիշէի Թղթ. ւառ Հայրենիք արշէնի երիցու, 181. Եղեգէ 'ի Բագրեւանդ գա. որ այլ է 'ի սմանէ ։

...ռանգէ) յարեւմտից հիւսիսոյ զեզր ծովուն աղւոյ. ... զգաւառն և զծովն անուանէ իւրով անուամբն‖ : Ըստ յու-նացն՝ ժառանգէ զարեւմտեան հիւսիսային եզր ծովուն Բզնունեաց, զի յայնմ կողման անկանին քաղաքք սորա Խլաթ և Արծկէ՝ որք կան մինչև ցայժմ։

Եպիսկոպոսարան այսր գաւառի հիմնեալ 'ի ժամանակի լուսաւորութեան ազգիս 'ի նոյն գրիգորէ. բայց զառաջինն յԵպիսկոպոսաց նորա յիշատակի 'ի գիրս՝ Մորմոկ եպիսկոպոս. այն՝ որ եղև հակառակաթոռ նորին սահակայ, և զկնի եկաց եպիսկոպոս այսր գաւառի (1), և ...սա աւանդելոյ յոհաննու կաթուղիկոսի և այլոց՝ 'ի ժամանակս տեղակալութե նորին յովսեփայ՝ սա ինքն կատարէր զձեռնադրութիւն. որ և գտաւ 'ի ժողովն արտաշատու։

'Ի ստորագրութիւն կարգի առ ղազարայ թղթ. 74. և առ եղիշէի թղթ. 26. զկնի եպիսկոպոսին բագրեւանդայ՝ որ է արշարունիք, նախ քան զեպիսկոպոսն տայոց, երանելին Աբրահամ աշակերտ ղեւոնդեանց՝ յետ դարձի իւրոյ յաքսորանաց կարգեցաւ եպիսկոպոս գաւառիս (2)։ Իսկ Յոհան եպիսկոպոս 'ի ստորագրութիւնս ժողովոյն դւնայ՝ դասի զկնի եպիսկոպոսին տայոց, բայց յառաջ քան զեպիսկոպոսն արշարունեաց։ Սոյնպէս կարգաւ դասաւորի և 'ի ժողովակն մանազկերտոյ առաջնորդ գաւառիս՝ Թէոդորոս եպիսկոպոս։

'Ի վախճան Է. դարուն, և 'ի սկիզբն ութերորդին՝ նախ քան զկաթուղիկոսութիւն եկաց առաջնորդ այսր գաւառի՝ Եղիա եպիսկոպոս։ Իսկ 'ի Ժբ. դարու 'ի ստորագրութիւն ժողովոյն հռոմկլայու՝ զկնի եպիսկոպոսին նախջաւանու, և նախ քան զեպիսկոպոսն մանազկերտոյ՝ դասի Ստեփաննոս եպիսկոպոս Բզնունեաց։

Խլաթ (3)։ Անկանի յայս գաւառ, ըստ Թովմայի արծրունւոյ՝ որ գրէ Բ. 6. * Եւ անցանելով ընդ գաւառն Բզնունական՝ գայ մտանէ 'ի Խլաթ‖։ Վասն որոյ Կիրակոս կոչէ զսա Քաղաք Բզնունեաց, յասելն վասն զաքա-

(1) Տես զբանս խորենացւոյն 'ի ստորև 'ի վերլուծութեան Արծկէ քաղաքի։

(2) Զորմէ պատմէ ղազար։

(3) Առ կոստանդին պերփիւրոժէնի 'ի գիրս կառավարութե նե. 44. ուրեք ուրեք գրի Խալէատ. ուրեք ուրեք Խալիատ. իսկ առ կուրոպաղատայ Խլիատ. թէպէտ պանտուրինոս 'ի լուծ". պերփիւրոժէնի դնէ, թէ առ կուրոպաղատայ կոչի Խլիատ. իսկ առ գետրենոսի Խլիատ։ 'Ի գիրս տաճկաց և արաբացւոց կոչի Խլաթ, կամ Ախլաթ։

րեայ և Իւանէի, թէ * Կամեցան առնուլ և զՃոյակապ «Քաղաքն Բզնունեաց՝ որ կոչի Խլաթ (1)||: 'Ի Բզնունիս գնի և յայսմաւուրս 'ի սեպտ. 16. յասելն. * Զայս օրէն (մանրմէտի՝ վասն ոչ սպանանելոյ զհայս հարկաւորու՝) 'ի Խլաթ քաղաքի եդին 'ի գաւառն Բզնունեաց||:

Էր քաղաք բազմամարդ, և ունէր պարիսպս մեծակառոյցս, զորմէ բազում ինչ պատմին առ պատմագիրս մեր. ունէր և ամրոց որ յիշատակի առ Թովմայի Արծրունւոյ. * Իբրև եհաս ամիրայն 'ի Խլաթ, եմուտ բանակեցաւ յամրոցին՝ որ 'ի քաղաքին||:

Զերկու եկեղեցիս նորա զՍբ Խաչ, և զԳամաղիէլ զԵպիսկոպոսարան և զուխտատեղի արտաքոյ քաղաքին յիշէ Ասողիկ 'ի Գ. 40:

Յամի 977. պաշարեաց զԽլաթ քաղաք կուրապաղատն տայոց Դաւիթ: 'Ի Հիջրէթի 578, այսինքն յամին 1182. եառ Շահարմէն: Յետ մահու նորա գերեք տիրապետեցին քաղաքին: 'Ի Հիջրէթի 581 (1185.) սալահատտին ձեռն արկ 'ի վանել զնոսա, և ոչ կարաց. այլ եղբօրորդի նորա 'ի Հիջրէթի 604 (1207) կատարեալ նուաճեաց զնոսա: Իսկ 'ի Հիջրէթի 607 (1210) Ճէլալէտտին Խարէզմ Շահ եառ 'ի ձեռաց մէլիք Իւլ Էշրէֆի միւս եղբօրորդւոյ սալահատտինի. այլ մէլիք Իւլ Էշրէֆ աջակից ունելով զալայէտտին սուլթանն սէլճիւգեան՝ անդրէն եառ 'ի ձեռաց նորա, փախուցանելով զնոսա 'ի պարսս:

Ապա մողոլք աւերեցին զքաղաքն, յորոց առ 'ի ապահովանալ՝ ալայէտտին 'ի Հիջրէթի 630 (1232) անձնատուր եղև ուքթայի որդւոյ Ճինկիզ խանին, և զօրացեալ՝ եառ նաև զԽլաթ. և այնպէս առաւել քան զ100 ամ մնաց 'ի ձեռս սէլճիւգեանց, մինչև եանց 'ի ձեռս օսմանեանց: Յետ այնորիկ 'ի Հիջրէթի 955 (1548) Շահ Թահմաս առեալ՝ հարթայատակ կացոյց զբերդն. ուստի սուլթան սիւլէյման յառնուլն՝ 'ի բաց թողեալ զՀինն, շինեաց նոր բերդ յեզր ծովուն:

Եղև 'ի սմա և սաստիկ երկրաշարժութիւն 'ի Հիջրէթի 644 (1246.) յորմէ կործանեցան բազում շինուածք նորին: Տես և 'ի Նոր Հայաստան. Թղթ. 164:

Արծկէ, գրի նաև Արծխէ (2): Գիւղ՝ զոր Ասողիկ Է. 1.

(1) Այսպէս գրի յերկուս օրինակս Կիրակոսի, փոխանակ անուանս Խլաթ:

(2) Առ Կոստանդին պերճէ

դնէ յայս գաւառ՝ յասելն վասն սորմակայ հակառակա-թոռ կաթողիկոսի թէ՝ էր ՚ի գաւառէն Բզնունեաց ՚ի գեղ-ջէն Արծկէոյ (1) : Նոյնպէս և յայլ գաւառագնացիրս կա-թողիկոսաց, և առ Թովմայի մեծոփեցւոյ դնի ՚ի Բզնու-նիս. իսկ Լաստիվերտցին ՚ի գլ. ժդ. կոչէ՝ Արծուէ, և դնէ ՚ի ծովուն՝ յասելն վասն տուղրիլ սուլդանին, ՚ի չփ. թուականին. *Երթեալ հանդիպի քաղաքի միոջ որ կոչի Արծկէ, որ է ՚ի մէջ ծովուն Բզնունեաց, և ունի մօտ յինքն բերդ ամուր և անառիկ. և քաղաքացիքն յայն ապաստան եղեալ ՚ի ծովն և յամրոցն՝ յանհոգս կային||. Այլ տուղրիլ ծանծաղ տեղի գտեալ ՚ի ծովուն՝ եմուտ ՚ի քաղաքն, և զբազումս կոտորեալ, և զբազումս գերի վարեալ՝ մեկնեցաւ անտի.

Խօսիմս զզանազան առմունս սորա պատմէ, և մօտ առ այն դնէ զտեղ ուխտն Ստեփաննոսի [illegible] անուա-նեալ, զոր այլուր կոչէ և Պտաղաւ՝ վասն նշխարաց գտա-տակի ՚ոքյն : Անդ ծաղկեցաւ Գրիգոր Խլաթեցի՝ Ճոխա-ցուցիչ յայսմաւուրացն, և յօրինող պատմութե՛ երից ժամանակաց, որ և ՚ի 1455. կատարեցաւ ՚ի քրդաց՝ որք տիրեցին Արծկէ քաղաքին :

Այս Արծկէ՝ նոյն երևի լինել ընդ քաղաքին, զոր ՚ի գլ. Թ. Լաստիվերտցին կոչէ Արծոէ՝ ՚ի կողմանս Բերկ-րոյ, որպէս էր և Արծկէ. *Երթեալ դադարեաց հե-ռագոյն ՚ի Բերկրոյ՝ ՚ի տեղւոջ ուրեք, որ կոչի Արծակ||:

Նորաշխաւոր : Մենաստան՝ որ յիշատակի ՚ի վարս վա-հանայ գողթնացւոյ՝ ուր ասի. *Նա յուղարկեալ անտի եկին հասին ՚ի Մե՛ Նորաշխաւորան ՚ի վանսն Արծկեցւոյ ՚ի Բզնունեաց գաւառին|| : Այսպէս դնի ՚ի հին Ճառ-ընտրի. իսկ ՚ի յայսմաւուրս ՚ի տպ. և ՚ի ձեռագրի. *Նա անտի եկեալ հասին ՚ի գաւառն Բզնունեաց յոտն մասեաց՝ ՚ի վանս Արծկոյ որ կոչի Նորաշխաւոր||:

Բաղէշ : Վարդան աշխարհագիր դնէ զայս ՚ի Բզնու-նիս յասելն. *Բզնունիք՝ Արծկէ, և Խլաթ, և Բա-ղէշ մինչ ՚ի Հիզան. այս միջոցս ամենն Բզնունիք ասի|| : Այլ բնակիչքն զԲաղէշ ասեն լինել ՚ի Սալնոյ ձոր, որ

րուժէնի ՚ի գիրս կառավար". գլ. 44. յունարէն գրի՝ Արճէշէ:

(1) Խորենացին գ. 63. գրէ վասն սորմակայ կամ սուրմակայ լինել Արծկեցի (՚ի տպ. Արճէ-շեցի). և ՚ի գ. 64. գրէ դարձեալ վասն նորին սուրմակայ, *Զեւրոյ գաւառին զեպիսկոպոսութին Բզ-նունեաց ՚ի պարսից արքայէն եդիտ ունել աղգաւ|| : Որով նշանակէ յայտնի զԱրծկէ լինել ՚ի Բզնու-նիս :

է գաւառ աղձնեաց ։ Անուն սորա յիշատակի առ Թովմայի արծրունւոյ, զոր և կոչէ Ճահուքան, յասելն. * Այլ մնացեալքն 'ի սորոյն՝ փախստական անկանէին յամուրս մայրեացն, և կէսքն հասանէին մինչ 'ի Ճահստանն Բաղէշ ||։ (1)

'Ի գիրս սակաւ ուրեք գտանեմք զանուն սորա, և զայն՝ առ վերջին անծանօթ մատենագիրս, և 'ի յիշատակարանս ինչ գրոց, յորս կան ուրեք ուրեք յիշատակք Եպիսկոպոսաց և Առաջնորդաց քաղաքիս. զորօրինակ 'ի ռճլգ. Թուին հայոց յիշատակի ուրեք Աւետիք վարդապետ առաջնորդ, և նախորդն նորա Մեսրոպ վարդապետ. յիշատակի այլուր և Ստեփաննոս Եպիսկոպոս ։ Բայց թէ երբ զառաջինն սկիզբն եղև Առաջնորդութեան՝ կամ Եպիսկոպոսարանին՝ ոչ ուրեք գտաք 'ի գիրս ։

## ԵՐԵԽԱՐՔ ։

Անուն գաւառիս յերկուս ձեռագիրս աշխարհագրութեան Խորենացւոյն գրի Երեխարք, առ Թովմայի արծրունւոյ գրի՝ Երեւարք ։ Ի 'ի սահմանակցութենէ առուենից ձորոյն՝ որ է գաւառ Մոկաց նահանգին, ըստ ակնարկելոյ նորին Թովմայի 'ի գրեն վասն գագկայ արքայի. * Վարձեալ գայ (ասէ գագիկ) 'ի գաւառն անուանեալ Երեւարք, առնու և անդ զԲերդն Պաղայ և զՎարհնոյ ։ Գայ և 'ի ձորն Առուանից, առնու և զայն ևս ամրոցն, և տիրէ գաւառացն || ։

## ԱՂԻՈՎԻՏ ։

Մի է սա 'ի գաւառացն՝ յորս բնակէին արքայազունք ըստ Խորենացւոյն 'ի Բ. 21. ուր գրէ վասն Ա. Արտաւազդայ արքայի. * Փառանգեցուցանէ զեղբարս իւր և զքորս 'ի գաւառին Աղիովտի (2), և առբերանւոյ,

(1) Տես 'ի վերլուծութիւնս Ապահունեաց գրանս Թովմայի մեծոփեցւոյ ։

(2) 'Ի տպագրեալն Բ. 22. սեռական հոլովն սորա գտնի Աղիովտից. բայց 'ի միում ձեռագրի գտնի Աղիովտի որպէս 'ի վերոյ. իսկ յերկուս ձեռագիրս Աղիովտի ։ Նոյն երևի ընդ այսմ այն գաւառ որ առ Թովմայի արծրունւոյ գրի՝ Աղուոյովիտ, զորոյ գրանս տես յԱռբերանի գաւառ վասպուրականի ։

Թողլով 'ի նոսա զմասն արքունի՝ որ 'ի շէնսն այնց գաւառաց ||:

Այլ մատենագիրք մեր ցուցանեն զսա լինել սեպհական գաւառ Գնունեաց. զի շարունակօղ Թովմայի արծրունւոյ զԱրճէշ դնէ 'ի Գնունեաց գաւառի (1) որ էր յԱղիովիտ: Յայտնագոյն ես վարդան՝ գնունեաց սեպհականեցուցանէ զայս գաւառ, յասելն. * Առ սա (այսինքն առ աշոտ բագրատունի մսակեր) բողոք կալեալ ազգին գնունեաց Թափել զնոսա յիսմայելացոցն. որոյ երթեալ հազար արամբք յԱղիովիտ գաւառ, և առ ինքն գումարեալ զամենայն ազգն ախուն իւրեանց, տանի բնակեցուցանէ 'ի տայս ||:

Եթէ 'ի սկզբանէ անտի էր գաւառ Գնունեաց, պարտ է ասել՝ թէ արքայազունքն արշակունիք զմասն ինչ սորա միայն ժառանգէին, որ էր արքունական՝ որպէս եդ 'ի վերոյ խորենացին. իսկ մնացեալն էր 'ի ձեռս գնունեաց. և կամ զեկամուտս ինչ կալուածոց սորա ժառանգէին: Իսկ եթէ զկնի եղև գաւառ գնունեաց, մարթ է յայնժամ կարծել՝ թէ համօրէն գաւառն սեպհական եղև գնունեաց՝ յորժամ ինքնին բարձան արշակունիք, և կամ յորժամ գնոյ առին 'ի յետագայից արշակունեաց զմասն արքունի, կամ թէ տիրեցին, և այլն:

Զարիշատ: Յայտ է յանուանէս՝ այսպէս կոչեցեալ յանուն զարայի ուրուք, որ և գրի զուրա. զորօրինակ գրի և զուրա իշխան ուտունեաց: Քաղաք արքունական կառուցեալ 'ի դաշտի, որպէս դնէ խորենացին գ. 23. * Իջուցեալ 'ի դաշտն Աղիովտի զգին գնելոյ՝ Թաղեաց յարքունական քաղաքին Զարիշատի ||:

Կործանեցին զնա պարսիկք 'ի ժամանակս Է. արշակայ հայոց արքայի ըստ գրելոյ բուզանդայ դ. 55. որ դնէ նաև զթիւ բնակչաց նորա. * Առնուին և զքաղաքն մեծ Զարիշատ, որ էր 'ի գաւառին Աղիովտի, Ռ. երդ հրէայս (2), և ԺՌ. երդ հայս. և զնա 'ի հիմանց քանդեալ ապականէին ||: Այլ դարձեալ շինեցաւ, զի Թովմաս մեծոփեցի 'ի ԺԵ. դարուն յիշէ զԶարիշատ՝ կոչելով ընդ նոյն Գիւղաքաղաք. * Այս երջանիկ ... վարդապետս յոհաննէս .:. էր 'ի գաւառէն քաջբերունեաց, 'ի Գիւղաքաղաքէն Զարիշատոյ (3) ||:

(1) Առ խորենացւոյն Գնունիք ոչ գաւառ 'ի կարգս գաւառաց, այլ միայն 'ի կարգս ցեղից:

(2) 'Ի միում ձեռագրի գրի արձակ Զօրեփառան հազար երեք հրեայս:

(3) Սեբեոսն գիրք ժը. Թղթ.

Արճէշ։ Ալաղաք՝ սոէպ յիշատակեալ առ կոստանդին պերփիւրոժէնի (1), առ որում և գրի՝ Արճէշ։ Յոհաննէս կաթողիկոս դնէ զսա յԱղիովիտ գաւառի, զոր և կոչէ Գիւղ՝ յասելն. * Յաջորդէ զաթոռ հայրապետութեան եղիա 'ի գեղջէ Արծիշոյ յԱղիովտոյ յեպիսկոպոսութէ ընտրունեալ ||։ Նոյն դնէ և վարդան աշխարհագիր, որպէս և յայսմաւուրքն 'ի սեպտ. 16։ Իսկ նմա ցուցանէ լինել և Թովմաս Մեծոփեցի. զի զքաղաքն Արիշատ՝ զոր խորենացին դնէ յԱղիովիտ գաւառի, նա դնէ յԱրճէշ գաւառի. յայտ է թէ՝ Արճէշ քաղաք 'ի ժամանակս Թովմայի գոլով երևելի՝ յանուն նորա կոչեցաւ շրջակայ սահմանն՝ որ էր գաւառ Աղիովտի. Թէպէտ և անուամբ Արճէշ՝ ելեալ թուի յԱրծիշակովիտ անուանէս, որ էր գաւառ վասպուրականի։

Շարունակող Թովմայի արծրունւոյ դնէ զԱրճէշ 'ի Գնունեաց գաւառի՝ յասելն վասն սրահանգայ հագարացի ներքինւոյն՝ որ 'ի մէջն անդ ժա. դարու, թէ էառ * զԱրճէշ քաղաք Գնունեաց գաւառին ||։ Իսկ Թովմաս Մեծոփեցի, և վարդան աշխարհագիր՝ զսահման կամ զգաւառ Արծիշոյ կոչեն Աղջբերունի. որ առ նախնիս նոյնպէս է անուն ցեղի՝ և ոչ գաւառի. այլ յայտ է թէ՝ երկիր այնր ցեղին էր յայս գաւառ, վասն այսորիկ և գաւառն 'ի յետագայից կոչեցաւ յանուն ցեղին։

Ի Է. դարուն հերակլ կայսր այրեաց զԱրճէշ՝ ուր բնակէին զօրքն պարսից (2)։ Իսկ 'ի Ժ. դարուն՝ կոմիանոս՝ (զոր Բ. վասլի կայսեր կացուցեալ էր տէր գաւառին վասպուրականի՝) գրաւեաց ընդ տէրութբ յունաց. * զԱրճէշ (ասէ լաստիվերտցին 'ի գլ. Է.) խւրով զաստակերտօքն նա ած ընդ ձեռամբ հոռոմոց ||։ Բայց և 'ի ժգ. դարու էր 'ի ձեռս պարսից, զորմէ բաղում ինչ պատմէ կիրակոս, և զաղէտալի անցսն ստորագրէ Թովմաս Մեծոփեցի։

Խաչատեսաւոյ գիւղ։ Ի յերկրին Աղջբերունեաց կամ Արծիշոյ. որոյ Մենաստան կամ Սուխտ համանուն

747. յիշէ քաղաք ինչ, որ 'ի տպ". գրի Արշամա, իսկ 'ի ձեռագիրս Արշիա, որոյ հնչումն յայտնի ցուցանէ լինել Զարիշատ. իսկ թէ գիրք տեղւոյն ոչ յարմարի, իբր զի դնէ զայն առ տիգրիսիւ 'ի միջագետս, բայց որպէս ասացաք այլուր. նախնիք յունաց բաղում ուրեք առաւել սխալեցան 'ի նշանակել զտեղիս քաղաքաց օտար ազգաց, քան թէ յանուանել։ Սոր և տիգրիսիւ կարեմք իմանալ զգետակ նորա։

(1) 'Ի գիրս կառավարութեան գլ. 44։

(2) Ասողիկ գիրք Բ. 3։

եւ անուանի է քան զգիւղն, զոր և սոէպ յիշա-
Թովմաս Մեծոփեցի, և ուրեք կոչէ զնոյն՝ * Ծա-
և Հրաշագործ ուխտ տիրամօր ամենածնին 'ի Սայ-
լաք վանն Սուխարայ՝ որ այժմ Խաչաճապաղ վանք
Յիշատակէ և զԵպիսկոպոսունս զառաջնորդս տե-
զԽաչատուր և զՕսքէոս :
գեղջէ սոսի էր և Եղիսաբէթ՝ զորմէ դրի յայս-
րս 'ի 24. ապրիլի. * Էր նա յերկրէն Արճիշոյ
ջէն Խառաբաստայ ∥ :
Տանէց : Յիշատակի այս գիւղ 'ի յիշատակարանի
մխիթարայ յելս Ժ՟. դարուն. * Ի Թագաւորու-
այոց յաշխարհին կիլիկեցւոց օշնի և որդւոյ նորին
, 'ի կաթողիկոսութե տէր յակոբայ անուարդեց-
. ամաշնորհ մեծ վարդապետս մխիթար գոլով 'ի
ուէն Քաջբերունեաց 'ի գեղջէ Կերմանեց ∥ :
լիւղ կայ մինչև ցայժմ. տես 'ի նոր հայաստան.
. 166 :
ծոճայ ուխտ : Զորմէ բազում ուրեք յիշատակէ
նս մեծոփեցի, և պատմէ զառումն և զաւերումն
'ի Թուրքմանաց և յայլոց բռնաւորաց : Յոհաննէս
ապետ վերակացու Մեծոփայ՝ շինեաց 'ի սմա 'ի
օթն ամաց տաճար մեծակառոյց յանուն տիրա-
յայնմ դառն ժամանակի՝ յորում հրամանաւ չա-
յի բռնաւորին քանդէին այլ եկեղեցիք : Այլ սա
յնուի այնչափ հաճոյ երևեցաւ բռնաւորին, մինչև
նքն եած զառաջին քարն հիման՝ բառնալով 'ի վե-
ւաց իւրոց :
յամ ուխտի Մեծոփայ բնակէր գրիգոր տաթևացին
ւ 'ի նահանգէն սիւնեաց հանդերձ աշակերտօք իւ-
, յորոց մի էր և Թովմաս պատմագիր, որոյ վասն
ու Մեծոփեցի :
ո Թաղեալ կայ Մխիթար վարդապետ՝ որպէս դնի
շատակարանի նորին գրոց. * փոխի առ քս ( մխի-
) 'ի Թուականութեն հայոց չձղ. յամենայն հոռի
յաւուր ուրբաթու, որ և պատուական մարմինն
ւ կայ 'ի նոյն վանս Մեծոփոյ ընդ հասարակաց գե-
մնս՝ որ է 'ի հարաւոյ կողմանէ անապատին ∥ : Տես
այսր և 'ի նոր հայաստան. Թղթ. 166 :
րճէշ զնէ վարդան աշխարհագիր և զայլ մենաս-
՝ յասեն ըստ ձեռագրաց. * Արծիսլիտ և Քաջբե-
Արճէշ է, ուր կան որ ուխտքն Արծուաբէր, և

Սարդամ որոշէ զգաւառ սորա, այլ կոչէ Արծուաղ՝ յաւելն։ * Նա խաբկանօք առ ինքն կոչեաց զտիրան, և խաւարեցոյց զաչս նորա 'ի գաւառին Ապահունեաց, 'ի գեօղն՝ որ Արծուղն կոչեցաւ 'ի պատահմանէ ||։ 'Ի նմին գաւառի դնէ և աստղիկ ͞է. 1. այլ զգիւղն կոչէ Արճէշ, որ թուի լինել վրիպակ գրչաց, զի զայն պատմութի և անուանակոչութի առնու 'ի բուզանդայ, որոյ պատմութե ոչ յարմարի անուանս Արձկաղ. իսկ բանքն աստղկայ են այսպէս. * Խաւարեցոյց զաչս նորա (այսինքն տիրանայ) յԱպահունեաց գաւառին՝ 'ի գիւղն որ Արձկաղն կոչեն, որպէս պատմէ բիւզանդ ||։

Աղի որսք։ Յիշատակէ բուզանդ 'ի ͞դ. 20. * Այլ յերկրին Ապահունեաց՝ յոտինն մեծի լերինն մասեաց, տեղին զայն որսասցուք, տեղւոյն՝ որում անուն կոչի Քաղաք Աղի որսք ||։

Խարձափոնք։ Գիւղ՝ զոր յիշէ աստղիկ ͞է. 3. յասելն վասն կայսեր հերակլեայ. * Նա անցեալ ընդ Ապահունիս՝ բանակի 'ի գիւղն որ կոչի Խարձաւոնք ||։

Գոմաղ ծըմբոյ։ Յիշէ աստղիկ ͞դ. 41. * Նա չուեալ երթան 'ի գաւառն Ապահունեաց, բանակին յանդիման բանակին մամլանայ 'ի բարձրաւանդակ ամրագոյն տեղւոջ մի, 'ի սահմանս գեղջն Ծըմբոյ։

Խորոն։ Գիւղ՝ զոր մատթէոս ուռհայեցի դնէ յԱպահունիս։

Թոնդրակս, կամ Թոնդրակ. որոյ բնակիչք կոչեցեալ Թոնդրկեցիք, կամ Թոնդրակեցիք։ Գիւղ, կամ Աւան՝ զոր լաստիվերտցին 'ի գլ. իբ. դնէ յայս գաւառ. * Նշեալ գայ անցանէ 'ի գաւառն Ապահունեաց 'ի բնակարանն սատանայի յանծուրաց ժողովն, և 'ի գազանաց գայրագիղն՝ որ կոչի Թոնդրակս ||։

Այս տեղի անուանի գտաւ յիններորդ և 'ի տասներորդ դարու վասն որ 'ի նմա աղանդոյն. իսկ 'ի սկիզբն ժա. դարուն 'ի ձեռն գրիգորի մագիստրոսի բարձաւ աղանդն այն 'ի տեղւոջէ անտի։ Կայ մինչև ցայժմ կանգուն այս գիւղ, և կոչի Թոնդրակ, մերձ 'ի մանազկերտ։ Տես 'ի նոր հայաստան. Թղթ. 112։

## ԽՈՌԽՈՌՈՒՆԻՔ (1):

Յայտ է թէ որպէս ցեղն՝ նոյնպէս և գաւառն կոչեցաւ այսպէս յանուանէ խոռայ որդւոյ Հայկայ, զի և ըստ գրելոյ վարդանայ պատմագրի՝ շինեցաւ 'ի խոռայ, որում և առաջնորդէ բան խորենացւոյն 'ի ա. 11. *Իսկ խոռն 'ի կողմանս հիւսիսոյ բազմանայ, կարգէ զշէնս իւր. և 'ի նմանէ ձգեալ ասի մեծ նախարարութիւն ազգին խոռխոռունեաց||:

Գրէ նոյն վարդան, թէ Խորխոռունիք է Խոշոռնի, և Խորբակերտ. նոյնպէս և վարդան աշխարհագիր. *Խոռխոռունիք Խոշոռնի է իւր վիճակովն||: Որովք յայտ է՝ թէ 'ի ժամանակս սոցա կոչէր Խոշոռնի (2):

(1) Այսպէս գրի 'ի ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն, միայն 'ի տպագրեալն գրի Խորխոռունիք: Առ այլս 'ի մատենագրաց գտանի ուրեք ուրեք և Խորխոռունիք:

(2) Իսկ Թովմա Ծոփեցի զԱղիովիտ գաւառն կոչէ ուրեք Տուն Խոռխոռունեաց. Թերևս վասն մերձաւոր գոլոյ միմեանց երկուց այս գաւառացս:

Այլ դժուարին է յօժ միաբանել ընդ ճշգրիտ գրեց խոռխոռունեաց գաւառին՝ զբան մեծին վարդանայ զոր գրէ վասն գուրգենի կրտսեր եղբօր ը. սմբատայ արքայի 'ի Յ. դարուն. *Քառանդէ զՏաշիր սեպհականն ձորագետին, և զԿայեն, և զԿայծոն, զԽորխոռունիք որ 'ի Խոռայ շինեցաւ. որ է Խոշոռնի և Խոռակերտ, և զԲազունիք որ է Բագկերտ 'ի գաւառն Տաշրոյ. և այլ բերդք անուանիք եհաս գուրգենայ՝ զոր վիրք Սոմխէթ կոչեն. և 'ի նմանէ սերեցան թագաւորքն դաւիթ, աբաս, և կիւրիկէ||. որք և տիրեցին 'ի կողմանս աղուանից: Քանզի նշանակեալ տեղիքդ 'ի վարդանայ՝ են յուտի և 'ի գուգարս. իսկ ծանուցեալ գաւառն խոռխոռունեաց՝ 'ի տուրուբերան մերձ 'ի ծովն բզնունեաց. և զիարդ մարթ էր գուրգենի՝ տիրելով ուտի գաւառին և մասին գուգարաց, տիրել և խոռխոռունեաց, խորոց 'ի միջի ունելով բազում գաւառս, և զողջոյն իսկ նահանգն այրարատեան, որում բագրատունիք ոչ երբէք տիրեցին բոլորովին. ուր գաւառքն տուրուբերանոյ առ տէրութբ բագրատունեաց մեծաւ մասամբ անկեալ էին ընդ տէրութբ այլազգի իշխանաց, որպէս և մերձագաւառքն խոռխոռունեաց՝ հարք և ապահունիք ունէին օտարազգի ամիրայս:

Այլ զայսոսիկ քաջ կշռեալ, ոչ անտեղեակ գոլով և պատմութեց ժամանակին, և աշխարհագրական գրոց՝ թերևս ոչինչ անտեղի համարեսցի կարծել մեզ զԽոռակերտ յիշատակեալ 'ի վարդանայ այլ գոլ 'ի Խոռխոռունեաց գաւառէն, յորում էր և Մեծ Նախարարութիւն ազգին Խոռխոռունեաց ըստ գրելոյ խորենացւոյն, յորոց թերևս հատուած մի բնակեցեալ 'ի կողմանս տաշրոյ՝ հայրենական անուամբ զտեղի բնակութեն կոչեցին, և կամ լաւ ևս 'ի նմին իսկ 'ի նահապետէ ազգին կառուցեալ և անուանակոչեալ է այս՝ և այն տեղի. զինի ուրեմն 'ի նախարարութի մեծ և յաւագութի ամբարձեալ իշխանն տոհմին բնակելոյ 'ի սեփական գաւառին:

Առ այսոքիւք և զԲազունիք

Յաւուրս վաղարշակայ խուժխուժնիք ընկալան զպատիւ Թիկնապահութեան արքայի. և զի առաջին Թիկնապահն կոչէր Մաղխազ, բազում ուրեք և այլ Թիկնապահք յանուն նորին կոչին Մաղխազ, որպէս և տոհմն խուժխուժնեաց Մաղխազունիք. զորոց գրեսցի և 'ի ներածութեան հին հայաստանեայցս:

Եկեղեցի գաւառիս հիմնեալ է նախ քան զեօթներորդ դարն, և Թերևս 'ի սկզբան անդ լուսաւորութեան ազգին, այլ Եպիսկոպոս նորին ոչ յիշատակի ուրեք՝ բայց յստորագրութիւն ժողովոյն դւնայ առ Ներսիսիւ շինողիւ 'ի է. դարուն, Գրիգոր եպիսկոպոս Խուժխուժնեաց:

Այս և 'ի վերջ գրոցն պարապմանց 'սբյն կիւրղի աղեքսանդրացւոյ (ըստ տպագրեալ օրինակին), հատուած բանի վասն անապականութեան մարմնոյն քի, մակագրեալ, Տեառն Յեսուայ Խուժխուժնեաց եպիսկոպոսի, որոյ ժամանակ անյայտ:

որ է Բաղկերտ յիշատակեալ 'ի վարդանայ, ո՞ արդեօք իշխէր այլ համարիլ 'ի Բզնունեաց (որ և է առ դուրս Խուժխուժնեաց,) եթէ ըստ դիպաց իմն ոչ 'ի վերայ բերէր վարդան՝ 'ի Գաւառն Փաղչայ: Թողում զայն, զի այս բան վարդանայ ոչ միայն զԲաղկերտ, այլ և զԽուռակերտ կարող է ակնարկել 'ի գաւառին տաշրայ: Նպաստէ այսոցիկ և այն, զի 'ի Թղթի հիւսիսային վարդապետաց հայոց առ դ. Գրիգոր կաթողիկոս տղայ կոչեցեալ, յիշատակի և Մխիթար Ճորտողէս Խուռակերտոյ՝ ընդ սանահնեցիս, հաղբատացիս, և քոբայրեցիս:

Զայսոսիկ գրելով՝ չեն մեզ կամք հաստատել ինչ անստոյգ, այլ զիրուացի և զբանաւոր տարակոյս աշխարհագրական՝ առաջի առնել հետաքննին ընթերցողաց 'ի ստուգութիւն:

## ՆԱՀԱՆԳ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՄՈԿՔ

Անկանի յարևելեան կողմն աղձնեաց. և ընդ այս անցանէ զօտի տօրոս լերին՝ յորում ունի ամուր տեղիս. վասն որոյ յոհաննէս կաթողիկոս երիս մակադրական անուանս տայ, յասելն վասն գրիգորոյ իշխանին մոկաց. * Սա ինքն Խորափիտ և Պնժուարաժայռ և Ամուր աշխարհաւն իւրով փրծանէր ողջ ամբողջ 'ի գերչացն նեղչաց ||: Սա 'ի Ճառն ապարանից խաչին կոչի. * Լեռնահոլով և կարծրախարխուխ գաւառ մոկաց ||: Իսկ առ Թովմայի արծրունւոյ յերկրորդ վարս գաղկայ՝ գրի. * Լերինս բարձրաբերձս և փապարս անտառախիտս ունի Երկիրն մոկաց ||:

'Ի մրգաց ունի զԱռահրշակ (1), և զՄանրագոր (2). իսկ 'ի կենդանեաց՝ ինձ գեղեցկախայտուց, և կաքաւ, ըստ խորենացւոյն :

Վաղարշակ արքայ կարգեաց 'ի սմա նախարարութիւն. իսկ յաւուրս ա̃. սմբատայ եանց ընդ տէրութեամբ իշխանացն վասպուրականի՝ որպէս գրէ Թովմա արծրունի. * Վասն զի իշխանն Մոկաց և իշխանն անձաւացեաց նուաճեալ էին ընդ ձեռամբ վասպուրական իշխանութեանն ||: Վասն որոյ 'ի չտալն զհարկս իւրեանց առ գագիկ արքայ, դարձեալ պատերազմաւ տիրեաց գագիկ գաւառաց նոցա :

Եպիսկոպոսարան Մոկաց հիմնեալ է 'ի ներքս լուսաւորչէն, կամ գէթ նախ քան զաւուրս վարդանանց, առ որովք յիշատակի 'ի ստորագրութիւնս պատասխանւոյ նամակին պարսից 'ի ժողովն արտաշատու՝ Բարսեղ կամ

(1) 'Ի տպագրեալն խորենացւոյն՝ գրի. Եւ հաւուն կրճատամամբ. իսկ յերկուս ձեռագիրս ոչ գոն այս անուանք :

(2) Մանրագոր լատինք անուանեն զայն, զոր մեք լոշթակ կոչեմք : Տես 'ի Ներած". հին հայաստանեայց :

Բասիլ եպիսկոպոս Մոկաց։ Իսկ 'ի Ժ. դարուն յիշատակին 'ի պատմութեան ապարանից խաչին Սբն Գուրիթ նշանագործ, և յաջորդ նորա ազգականն նորին 'ի նոյն աթոռն՝ Ստեփաննոս եպիսկոպոս, որ և յոմանց իբրև առասական անուամբ կոչի Մոկացի։

Նոյնպէս և 'ի ԺԱ. դարու եկաց եպիսկոպոս Մոկաց Գրիգոր ոմն, առ որ գրեաց բազում անգամ թուղթս Գրիգոր մագիստրոս, զոր և անուանէ Եպիսկոպոս Մոկաց, և Մանազկերտի։ Թերևս 'ի ժամանակին իշխէր առաջնորդ միոյն՝ նաև միւսոյ գաւառին։

Գաւառք Մոկաց են ինն, որք այժմ անկանին 'ի սահմանս փաշայութեան Վանայ։

Ա. Իշայր։
Բ. Միջն Իշայր։
Գ. Իշոց գաւառ (1)։
Դ. Առուենից ձոր։
Ե. Միջս (2)։
Զ. Արանձնակ ձոր։
Է. Արքայից գաւառ։
Ը. Արգաստովիտ (3)։
Թ. Ջերմաձոր (4)։

## ԱՌՈՒԵՆԻՑ ՁՈՐ։

'Ի միում ձեռագրի աշխարհագրութեան խորենացւոյն գրի՝ Խոյանստանից ձոր, յայլում՝ Խոյանոստանից ձոր. այլ են վրիպակք, զի և ուրեք առ Թովմայի արծրունւոյ՝ նաև այլուր յերկրորդ վարս գագկայ՝ գրի Առուանից, զի ասի. * Դարձեալ գայ (գագիկ արքայ) 'ի գաւառն անուանեալ Արուարէ, առնու և անդ զբերդն Պաղայ, և զՓառահօսայ. գայ և 'ի Ձորն Առուանից. առնու և զայն ևս ամրոցն, և տիրէ գաւառացն‖։ Օ այս վրիպակ յայտ առնէ և այժմեան անունն՝ որով նոյնպէս կոչի Առուանից ձոր։ Տես 'ի Նոր հայաստան. թղթ. 162։

Թովմա արծրունի 'ի Գ. 2. ակնարկէ լինել սահմանակից ռշտունեաց գաւառին վասպուրականի, որպէս և այժմեան դիրք նորին զնոյն յայտ առնէ։

(1) Յերկուս ձեռագիրս՝ Իշոց գաւառ։

(2) 'Ի միում ձեռագրի Միջան. իսկ յերկուս ձեռագիրս Միտայ։

(3) Յերկուս ձեռագիրս Զարբէտայ ովիտ։

(4) Անուանք գաւառացս չեն մեզ ծանօթ, բայց եթէ յաշխարհագրութեան խորենացւոյն, որպէս և քաղաքք և գիւղօրէք սորա՝ հազիւ ուրեմն յիշատակին 'ի գիրս մեր։

## ՋԵՐՄԱՁՈՐ ։

Այս գաւառ յիշատակի առ պերփերուժենի 'ի գիրս կառավարութե. գլ. 44. ուր առ պակասութե յունական տառից՝ գրի Պուճերմաձուր ։ Յիշատակէ զնոյն և զևոնդ պատմիչ 'ի գլ. Է. 'ի գրելն վասն մահմետի ուրումն ոստիկանի. * Նա գնացեալ խրոխտալով 'ի գաւառն Ջերմաձոր ելանէր, և զօրս միանգամ գտանէր ... կոտորէր անխնայ ॥։ Նոյնպէս և Թովմաս արծրունի յիշէ 'ի գրելն վասն գուրգէնի եղբօր գագկայ. * Անուն զԱերդն Ոսէն և զգաւառն կոչեցեալ Ջերմաձոր՝ որ է մասն երկրին Մոկաց ॥։

Այլուր առ նմին Թովմայի 'ի ա. 15. գլխի յայս գաւառ Ոսղոյլ ամրոց՝ որ Թուի լինել նոյն ը վերոգրեալ բերդն, և մխիպակաւ գրչաց այլայլեալ. * Վարդան մամիկոնեան (ասէ) ... խոյս տուեալ գնաց (զ)կողմամբքն Մոկաց 'ի խոխոմն տօրոսական լերինն 'ի լեռուրս Ջերմաձորոյ, և բնակէ յամրոցին՝ որ այժմ Ոսղոյլ վասն անխեղեդ ամրութեն գեղջակարամնեն ॥։ Փոքր մի զկնի 'ի ը. 1. այլազգ ես գրի այսպէս. * Այս լուր դառնութե եհաս առ մեծն վարդան մամիկոնեան, որ էր ամրացեալ 'ի տօրոսական Ոսոյլ ॥։

### Տեղիք Մոկաց՝ որոց գաւառք անծանօթ ։

Ատիձանս ։ Գեօղ զոր յիշատակէ շարունակող Թովմայի արծրունւոյ. * Ընտրեաց ած զամենիմաստն զպրոտու կուրապաղատն զԱբդլմսեհ զորդի մեծ իշխանին և սբ մարտիրոսին Թոռնկայ, որ յաւուրս մեծի տօնի ծննդեանն քնի և մկրտութեն՝ արժանի եղև առնուլ զպսակ մարտիրոսութե բազում արամբք ընտրելովք 'ի գաւառին Մոկաց 'ի գեօղն Ատիձանս ॥։

Աձաւ ։ Տեղի՝ որ Թուի լինել 'ի Մոկաց նահանգի, զորմէ գրէ խորենացին 'ի բանն որ յաղագս Ձանապարհորդութե հռիփսիմեանց. * Աձաւն կոչեցեալ տեղի՝ դիւաց լցեալ պաշտամամբ, հասեալ անդ առաքելանմանս քահանայիցն և սրց կուսանացն զընդդիմամարտն սրբելուլին զձիոցն. յորում զայրացեալ դիւացն՝ դիմեալ 'ի

վերայ խեղճին ծուէին ոնչատէին զպաշտօնեայս իւրեանց. որ և ընդ առաքելանման քահանայքն հալածեալ գնա-ցս ... բժշկէին զխեղեալսն, վասն որոյ տեղին կոչեցաւ Կծառ ... որ և զտեղին յետոյ հաստատէ վանս ՙսբն գրիգոր ։

Մարդան աշխարհագիր գրէ վասն մոկաց ՚ի տպա-գրեալն (1). *Մոկաց գաւառն է իշխանանիստ՝ ուր կան բազում վանորայք, նախ Ա. Քնարքէնէն՝ ուր կայ գե-րեզման Թագաւորին մոգուց գասպարայ, և Սբ Մարգա-նայ, և Սբ Կանանց վանքն՝ որ այժմ Սբ Խաչ ասի, ուստի էր անանիա կաթողիկոսն մոկացի ։

Ընդարձակ գրի յայսմաւուրս ՚ի հոկտեմբերի Է. վասն այսր մենաստանի առեալ ՚ի խորենացւոյն՝ որ ՚ի բանն յաղագս Ճանապարհորդութե հռիփսիմեանց գրէ. *Անու-տի (այսինքն ՚ի բզնունեաց գաւառէն) փոխին, և գնա-ցեալ ՚ի գաւառն Մոկաց՝ Սբ Խաչ կոչեցեալ տեղի ։

Ապարանք ։ Հռչակաւոր ուխտ եպիսկոպոսանիստ ՚ի Ժ. դարուն, զորմէ բազում բանք լինին ՚ի Ճառն կամ ՚ի պատմութե Ապարանից խաչին, ուր և յայտնի նշանա-կի լինել ՚ի սահմանս գաւառին մոկաց, քանզի գրի նախ ՚ի խորագրի Ճառին. *Բերեալ հանգուցաւ (նշան ՙսբյ խաչին) ՚ի սահմանս վայրից գաւառին մոկաց ՚ի շինուած բնակութե (ուխտին սրբութե) որ կոչի Ապարանք ։ Իսկ ապա ՚ի խօսելն զմօրեղբօրէ դաւթի եպիսկոպոսին մոկաց՝ գրէ. *Փողեալ լքեալ և արտաքսեալ ՚ի յար-կէ բնակութե հայրենեացն իւրոց ՚ի գաւառէն Մոկաց, ՚ի լեռնէն կորդուաց ։ Իսկ ՚ի ստորև զտեղի վանացն դնէ լինել *՚Ի ծործորս միջոցի լերանցն կորդուաց մե-Ճակին Մոկաց ։ Իսկ ՚ի յիշատակարանին զՍտեփաննոս առաջնորդ տեղւոյն կոչէ, *Ներինդ Մոկաց հզօր դե-տապետ ։ Այլ թէ այս տեղի նոյն իցէ ընդ վերոյիշեալ տեղւոյն կոչեցելոյ Սբ Խաչ, կամ ընդ միւս ևս տեղւոյ կոչեցելոյ Կծառ, չունիմք ինչ ասել հաւաստի, որպէս և ոչ զտեղւոյ կամ զառանձին գաւառէ Ապարանից ։ Տես ՚ի Նոր Հայաստան. Թղթ. 162 ։

(1) ՚Ի ձեռագիրս չէք յիշատա- նմա *Բազում վանորայք, և մեծ կուժն այնչափ վանորէից, այլ ուխտ Ցուցակ. ուստի էր անանիա այսչափ ինչ միայն, թէ կան ՚ի կաթուղիկոսն ։

ՆԱՀԱՆԳ ՎԵՑԵՐՈՐԴ

# ԿՈՐՃԷՔ

'Ի տպագրեալն աշխարհագրութե Խորենացւոյն, և 'ի միում ձեռագրի գրի Կորճայք. այլ յերկուս ձեռագիրս գրի Կորճէք: Նոյնպէս 'ի պատմութե Բ. 61. կամ 62. ըստ այլ ձեռագրաց. և առ Բուզանդայ Ե. 43. յասելն. * Թողցուք զքանակ զօրացն պարոյից 'ի գաւառէն Կորճէից ‖: Սոյնպէս Կորճէք կոչի և առ Վարդանայ աշխարհագրի: Այս անուն սակաւ ուրեք 'ի գործ ածի 'ի գիրս. իսկ յաճախակի կոչի Կորդուաց աշխարհ՝ յանուն գաւառին իւրոյ, որպէս ցուցցի 'ի ստորագրութեան նոյն գաւառի:

Ընկանի յարևելեան կողմն մոկաց ձգեալ առ Ասորեստանիւ, որպէս ակնարկէ Խորենացին յաշխարհագրութե, և 'ի պատմութե Բ. 50. կամ ըստ այլ օրինակի՝ 51. 'ի գրելն վասն Սմբատայ. * Բնակէ 'ի տոհմըս, որ այժմ կոչի Կորդրիք, 'ի յալկի նստուցեալ զբազմութի գերւոյն ‖:

Իսկ առ երի պարսկահայոց ամկանի յարևմտեան կողմն, որպէս յայտ առնէ Խորենացին 'ի ստորագրութե պարսկահայոց: Զերկոցունց սահմանակցութեցս՝ այսպէս գրէ Թովմա Արծրունի. * Գանձի խառն դրակցութբ սահմանին առ միմեանս փոքր աղբագ, և Եւ խարհն Կորճէից և Պարսկահայոց. և համատպաղ առ միմեանս զզժտութին կեղծաբերելին մարզպան՝ և որ ընդ Կորճէիցն ունէին զգործավարութին ‖:

Սոյն գոտի լերանց յանուն կորդուաց կոչեցեալ, զորմէ տես 'ի ներածութեան 'ի լերինս աշխարհին հայոց: Նոյնպէս և 'ի հանքաց՝ ունի զշաւիղ. և 'ի պտղոց՝ ընդ շագանակ (1):

(1) Այսպէս ունի տպագրեալ օրինակն, ուր յերկուս ձեռագիրս

Տիգրան վերջին կարգեաց աստ մասնաւոր ցեղ նախարարութեան՝ որպէս գրէ Խորենացին 'ի Բ. 61. կամ 62. * Նաև այլ որ ինչ կրտսերագոյն ազգ, եթէ աստ՝ և եթէ զկողմամբ Կորճէից՝ հաստատէ այս Տիգրան, որք միանգամ անազգիք էին 'ի վաշտս, և անձամբ երևելիք, և վասն նորա փրկութեան պատերազմեալ ընդ յոյնս, որք 'ի Կորճէից՝ և որք 'ի մերմէ կողմանէս ||:

Գաւառք սորա են տասն:

| | |
|---|---|
| Ա. Կորդուք (1): | Զ. Մոթողանք (4): |
| Բ. Կորդրիք (2): | Է. Որսիրանք: |
| Գ. Այտուանք: | Ը. Կարտաունիք (5): |
| Դ. Այտառանք (3): | Թ. Ճահուկ: |
| Ե. Այ: | Ժ. Փոքր աղբակ (6): |

## ԿՈՐԴՈՒՔ:

Անուն այսր գաւառի բազում ուրեք 'ի գործ ածի փոխանակ համօրէն նահանգին կորճէից՝ որպէս յայտնի ցուցանէ վարդան աշխարհագիր՝ նոյն դնելով զլեառն կորդուաց ընդ լերին կորճէից. յասէն. * Կորդուաց լեառն՝ կորճեաց լեառն է, որ այժմ Կորճէք ասի անունն աշխարհին այնորիկ ||: Որով իմանամք՝ թէ անունս Կորդուաց առեալ լինի փոխանակ անուան Կորճէից,

գրի Շարդունոյ, և 'ի միում այլ՝ Շահնդայ: Նոյնպէս և նախընթաց բառն Ջառէլ գրի 'ի ձեռագիրս և 'ի տպագրեալն աննախդիր:

(1) 'Ի միում ձեռագրի Կորդոյք, և յայլում Կարդուք:

(2) 'Ի միում ձեռագրի գրի Կոդրիք, իսկ յայլում, որպէս և 'ի տպագրեալն Կոգրիք՝ որ և ոչ ուրեք առ մատենագիրս 'ի գործ ածի:

(3) Այսպէս գնի յերկուս ձեռագիրս. իսկ 'ի տպագրեալն՝ Այգրուանք:

(4) Այսպէս 'ի միում ձեռագրի, որպէս և 'ի տպագրեալն Մոտողանք, իսկ յերկուս ձեռագիրս գրի Մողթանք:

(5) Այսպէս գնի յերկուս ձեռագիրս. իսկ 'ի միում ձեռագրի Կարաթոունիք. և 'ի տպագրեալն՝ Կարթոունիք: Յիշատակի առ Խորենացւոյն 'ի բանն որ յաղագս Ճանապարհորդութէ հռիփսիմեանց՝ տեղի ինչ Կորիթ անուն մերձ 'ի սահմանս մարաց, որ թերևս է յայս գաւառ կորճէից: Տես զնոյն և 'ի սորին 'ի տեղիս մեծին հայոց որոց գաւառք անծանօթք:

(6) Թիւ գաւառացս յերկուս միայն ձեռագիրս նշանակի լինել Ժ. իսկ 'ի տպագրեալն գրի ԺԱ. բայց 'ի յիշեալն զանուանս, ութ և եթ յիշատակի. միայն 'ի միում ձեռագրի գտանին տասնեքին ևս յիշատակեալ, որ յաւելու զԱյտառանս և զԱյ: Սոյն այս երկոքին անուանք գտանին և յայլում ձեռագրի՝ բայց աղաւաղանօք, որ և 'ի բաց թողու զչորրորդ գաւառն Այտառանս:

որպէս 'ի վերայ լերին՝ նոյնպէս և 'ի վերայ աշխարհին կամ նահանգին ։ Նմին իրի սակաւ ուրեք յիշատակի անուամբ Կորճէք՝ որպէս ասացաք 'ի վերոյ . և բազում ուրեք անուամբ Կորդուաց՝ որպէս և առ Բուզանդայ Գ . 9 . յանուանէ յիշատակի իշխանն Կորդուաց Ջոն անուն ։

Նաև առ Խորենացւոյն Բ . 7 . 'ի պատմելն զկարգմանւորութիւն զանազան իշխանութեանց՝ զորս կարգեաց Վաղարշակ արքայ՝ ոչ յիշատակի իշխանութիւն կամ նախարարութիւն ինչ յանուն Կորճէից , կամ յանուն այլ ինչ գաւառի Կորճէից , բայց եթէ Կորդուաց , որ յանուն նորա կոչեցաւ Կորդուացիք ։ Նոյն ևս Խորենացին որպէս զԿորճէս դնէ յաշխարհագրութեան առ ասորեստանիւ , նոյնպէս և 'ի պատմութեան զերկիրն Կորդուաց համաձայն գրոց Կորճէից դնէ սահմանակից ասորեստանեայց , և յիշէ զայն իբրև նահանգ , կամ իբրև մեծ ինչ գաւառ , և ոչ իբրև լոկ գաւառ . յասեղն . ա . 13 . * Հալածական ընդ մէջ Կորդուաց 'ի դաշտն ասորեստանի արկանէ ‖ ։ Նոյն 'ի Բ . 71 . կամ 72 . * Մարելով զնա ընդ ասորեստան՝ հանեն զառեզերբ սահմանացն ատրպատականի ընդ մէջ Կորդուաց ‖ ։

Սոյն այս Կորդուաց նահանգն է՝ և ոչ լոկ գաւառն , որ առ բազումս յարտաքին մատենագրաց յիշատակի , և զանազան օրինակաւ գրի ։ Սդրաւոն (1) , և Ստեփաննոս Բիւզանդացի կոչեն Կորդուէա ։ Պլուտարքոս 'ի վարս պոմպէոսի՝ Կորդուէնէ ։ Պտղոմէոս 'ի Ե . 13 . Կորդուէնէ ։ Պլինիոս (2) Կորդուանէնէ . Ամմիանոս (3) Կորդուանա , յոր անուն և բնակիչքն 'ի սէքստոս ռուֆոսէ 'ի գլ . Ի . կոչին Կորդուէնք ։

Նոյնպէս կոչեցան ասէ ստեփաննոս յանուն կորդիսի որդւոյ դրիբդոլէմայ , որ 'ի խնդիր եօայ եկն յարկոսէ յասորիս ։ Զգալուստ նորին կորտիսի՝ յառաջ քան զստեփաննոս յիշէ և ստրաւոն (4) , որոյ զոմանս յընկերաց հօր իւրոյ ընդ իւր ունելով ասէ՝ ճանապարհորդակիցս , եած բնակեցոյց 'ի Կորտիէա , և նոքօք բազմացոյց զերկիրն ։ Նոյն զայս պատմէ ըստ աւանդութեան այլոց , որ և բերէ յինքն զասորական կեղծիս հին զրուցաց յունաց ։

(1) 'ի ԺԱ . գիրս . Թղթ . 746 ։
(2) Այն է Տիոն գասսիոս գիրք ԼԷ ։
(3) Գիրք ԻԵ . գլ . 7 . ըստ տպագրութեան վալէսիոսի . իսկ ըստ տպագրութեան կրուգերայ՝ գլ . 23 ։
(4) Գիրք ԺԱ ։

'Ի Նախնումն կոչէր Գուգարք, որպէս վկայէ պլինիոս յասելն զ. 15. վասն բնակչաց. * Մտխապէնաց առ երի կամ Գուգարաց կոչեցեալք 'ի Նախնումն, իսկ այժմ Ջօրփոշէնք, առ որովք ընթանայ տիգրիս ‖ ։ Զնոյն վկայէ և ստրաբոն (1) ։ Ուստի նոյն իսկ բնակիչք կորդուաց են՝ որ առ դիոդորոսի սիկիլիացւոյ գիրք ժդ. կոչին Ս̇ւք Գուգարացեանց ։

Յայտ է այս և յանուանէ լերանց կորդուաց, յորս բազումք յօտար ազգաց մատենագրաց դնեն իջեալ զտապանն Նոյի, զի ոմանք զնոյն իսկ լեառն տապանին կոչեն Լեառն Կորդուաց, և ոմանք Լեառն Գուգարացւոց կամ Գուգարաց. և որ առաւելն է՝ յայնմ պատմութե տապանին՝ եպիփան զգաւառն կոչէ յայս անուն 'ի հերձուածն. ժշ. * Մինչև ցարդ (ասէ) մնացորդք տապանին Նոյի ցուցանին 'ի գաւառին Կարտիեանց ‖ (2) ։

Նաև այսպէս՝ որպէս լերինքն կոչեցան Կորդուեան և Գուգարեան, նոյնպէս և գաւառն. և այս յայտ է թէ՝ այլայլութբ հնչմանն փոխելով զտառս ա և ո, և կամ յանուն միւսոյ գաւառին, որ ըստ որում գրեցաք 'ի վերոյ, յօրինակի միում աշխարհագրութեան խորենացւոյն գրի Կարդոնանէք, և 'ի տպագրեալն Կորդոանէք (3) ։

Ըստ գրոցն՝ պտղոմէոս դնէ զսա 'ի կարգս գաւառաց մեծին հայոց 'ի հարաւային սահմանս նորա (4), և յարևելեան կողմն տիգրիսի. զի յարևելից ականց տիգրիսի դնէ զՍակրաւանդինի գաւառ, և ընդ նովաւ զԿոր-

(1) 'Ի թուղթ 747. զի նախ գրէ՝ թէ * Առ տիգրիսիւ են տեղիք պարթևաց, զորս նախնիք Գարտուքս կոչեն ‖ ։ Եւ սուղ ինչ ստորև սկսանի խօսիլ զԿորտեեանց իբրև զնոցունց. յայտ արարեալ՝ թէ նոյն են Գարտուքք և Կորտիք, որպէս և եդ պլինիոս։ Եւ դարձեալ՝ զի որպէս զԿորտիէս, նոյնպէս և զԳարտուքս դնէ առ տիգրիսիւ ։

(2) Վասն լերանցն կորդուաց, և աւանդութե ոմանց յաղագս նոյեան տապանին 'ի նոսա իջանելոյ, տես 'ի Ներածութե հին հայաստանեայց, 'ի ճառելն յաղագս լերանց հայաստանեայց։

(3) Հարտուին 'ի լուծմունս պլինիոսի՝ 'ի մակեդոնացւոց կարծէ զԳարդուացն նուրբ հնչելով փոխեալ 'ի Կորդիս ։

(4) Համաձայն մերոց մատենագրաց. յորոց շատ լիցի բան եղիշէի Է. թղթ. 125. ուր ասէ. * Եւ այլք բազումք ('ի հայոց երթեալ ամրացան) 'ի կողմանս հարաւոյ յանմատոյց ամուրան ամրոց ‖ ։ Իսկ զՏմորիս յիշելով զԿորդուք և զայլ գաւառս կործէից ոչ 'ի բաց հանէ. զի սահմանակիցք են միմեանց, և 'ի Հարաւակողմն միջնագաւառացն հայոց՝ որոց բնակիչք առ ժամանակօք եղիշէի 'ի ծայրս հայաստանեայց՝ յամուր տեղիս խոյս տուեալք զանձինս ապրեցուցանէին յերեսաց պատերազմաց ։

տինի՝ որ կարէ յարմարիլ դրից կորճէից ։ Պլինիոս դնէ առ Տիգրիսիւ, որպէս յայտ է 'ի նախայիշատակեալ բանից նորա ։ Նաև Ստրաբոն, որ նախ զԿորտիէա դնէ մերձ յայն տեղի՝ ուրանօր Տիգրիս յետ ընկղմելոյն անդրէն 'ի վեր յառնէ ։ Նա և ասորև զգաւառս որ է նոյն՝ դնէ առ Տիգրիսիւ ։ Նոյնպէս և Ստեփաննոս բիւզանդացի համաձայն Ստրաբոնի զքաղաքն Կորտիէա դնէ Առ Եղեա Տեգրիտի · այսինքն ուրանօր Տիգրիս յետ ընկղմելոյն կրկին անգամ 'ի վեր ելանէ ։

Նոյնպէս առ Տիգրիսիւ դնելով արտաքին մատենագրացս զԿորդուս կամ զԿորտիէս (որով իմանամք զարևելեան կողմանս Տիգրիսի,) զհետ գայ՝ թէ զԿորդուս դնեն արտաքոյ նահանգին կորճէից ։ Բայց կամեցեալ միաբանել զարտաքին և զմեր մատենագիրս ընդ միմեանս, պարտ է ասել, թէ դնելն սոցա զԿորդուս առ Տիգրիսիւ՝ չէ 'ի բաց հանել 'ի նահանգէն կորճէից, այլ ընդարձակել զԿորդուս, սկսեալ 'ի նահանգէն կորճէից մինչ 'ի մօտ, մինչ 'ի յաղձնիս, որ ձգի առ Տիգրիսիւ ։

Զայս հաւանեցուցանէ այն՝ զի Ստրաբոն (1) զԿորդուս դնէ 'ի միջագետս յարևմտից, կամ յաջմէ Տիգրիսի, որ լինի ընդարձակ ձգելով զԿորդուս. զի ասէ վասն Տիգրիս գետոյ. *Անցանի առ Օրին, և առ Սեմիրամեան (կամ Շամիրամեան) պարիսպն ընթանայ, զԿորդիս և զհամօրէն միջագետս յաջմէ թողեալ ։ Նոյնպէս և այլուր (2) անուամբ Կարտուքեանց յիշէ զմիջագետս ։

Իսկ առ մեզ յայսմաւուրս ('ի մայիսի 11.) կողմանք ինչ բարձր հայոց կոչին Կորդուաց աշխարհ. * Կայր հասանէր բազում զօրօք յաշխարհն Կորդուաց՝ 'ի գաւառն Սալահունեաց, 'ի յաւան Սուրենաշէն ։ Զոր ոչ կարեմք միաբանել ընդ այլ մատենագիրս մեր, եթէ ոչ ընդարձակ առեալ զաշխարհն Կորդուաց ։

Պատճառ այսչափ ընդարձակ ձգելոյ սորա զԿորդուս (եդեալ թէ չիք վրիպակ գրչաց՝) է վասն լերանցն կորդուաց, որոց գօտի ձգի մինչ 'ի Տիգրիս. նաև ըստ պլինիոսի՝ մինչ մերձ 'ի խաղտիս, որպէս ունիմք գրել 'ի ճառելն զնոյն լերանց ։ Սակայն նոյն Ստրաբոն (3) զատու-

(1) Գիրք ԺԶ. Թղթ. 529։

(2) Գիրք ԺԲ. Թղթ. 747. ուր ճառէ զմիջագետաց. և որպէս առ եփրատաւ դնէ զմիգդոնիա՝ որ է գաւառ միջագետաց, նոյնպէս և առ Տիգրիսիւ 'ի միջագետս դնէ զԿարտուքս ։

(3) Գիրք. ԺԶ. Թղթ. 532։

ցանել երեւի՝ առանձին առեալ զԿորդիս եւ զՄիջագետս ուրոյն ուրոյն յիշելով զնոսա։

Նոյն այսպէս տիրաբար առեալ Կորդուաց աշխարհապետ է իմանալ մանաւանդ առ մատենագիրս մեր զնահանգն Կորճէից, 'ի Կորդուաց գաւառէն իւրմէ այսպէս մականուանեալ. իսկ ընդարձակ առեալ՝ մանաւանդ առ օտարքին մատենագիրս, նաեւ զնահանգն մոկաց եւ զաղձնեաց՝ դէթ ըստ մասին։

Բաժանիչ ընդ մէջ կորդուաց կամ որ նոյն է գարտուքաց, եւ ընդ մէջ հայաստանեայց՝ քսենոփոն եւ դիոդորոս սիկիլիացի դնեն զգետն Կենտրիտէ, լայն իբր երկու բլեթրօն, այսինքն 200 ոտն. ուստի հեռի էին լերինք գարտուքեանք իբր 6. կամ 7. ասպարիզօք, որք էին լերինք դժուարամատոյցք. իսկ ճանապարհքն անձուկք եւ դըժուարինք (1)։

Ըստ մասին տէրութեան այս նահանգ կորճէից կամ կորդուաց, որպէս եւ շրջակայ կողմանքն, ընդ զանազան տէրութիւ փոփոխեցան. եւ յոլով անգամ զատուցեալ մնացին 'ի հայաստանեայց՝ ըստ որում գրեցաք եւ զաղձնեաց։ Յայն սակս օտարազն զգարտուքս դնէ 'ի պարթեւս (2) եւ ստեփաննոս զգարտուքս կոչէ Ազգ մարաց. իսկ զկորտիեա՝ կոչէ Գուատտա պոթոնական, ոչ զի էր ընիկ սեպհական գաւառ պարսից, այլ զի կամ նախ քան զինքն, եւ կամ 'ի ժամանակս իւր՝ պարսիկք տիրէին նմա։

Բայց պտղոմէոս որ զկորտիինի դնէ 'ի հայս (3), զգարտուքս դնէ 'ի մարս իբրեւ այլ յառաջնոյն (4), զոր կամ

(1) Տես 'ի քսենոփոն 'ի կիւրու սակրթանս. գիրք. Դ։

(2) Վէսսէլինկ 'ի լուծմունս գիոդորոսի՝ վրիպակաւ գրչաց համարի ստրգեալ 'ի բանս օտրաւոնի զբառս պարթեւաց, քանզի ոչ ոք ըդպարթեւս դնէ առ տիգրիսիւ. բայց մարթ է ասել եւս, թէ վասն զի նաեւ ստեփաննոս հետեւօղ օտրաւոնի զկորտիեա դնէ 'ի պարսս, որոց անուն 'ի բազմաց իբր նոյն առեալ լինի ընդ անուան պարթեւաց, թուի թէ նոյն իսկ օտրաւոն եդեալ էր 'ի պարթեւս, ոչ վասն ընիկ սահմանին պարսից կամ պարթեւաց, այլ վասն տիրելոյ նոցա մինչեւ ցայն տեղիս։

(3) Գիրք Ե. գլ. 13։

(4) 'Ի Զ. գիրս. գլ. 2. ըստ բաղադրինեան օրինակի. զի ըստ այլ օրինակաց փոխանակ Գարտուքաց անուան՝ դնի անդէն Գորդուաց, որպէս է տեսանել յընտիր տպագրութեան պէրցիոսի, որ մեզ թուի լինել այժմեան Պէրթիուս, առաւել յարմար աշխարհին մարաց։ Այլ եդեալ եւս՝ թէ ուղղութիւ գրի անդէն անունս Գարտուք, սակայն յայտ է թէ՝ այս գիրք պտղոմեայ հակառակի այլոց մատենագրաց՝ քսենոփոնի եւ դիոդորի, որք ըդԳարտուքս եւ զԳարտուքեան լերինս յայտնի դնեն առ տիգրիսիւ, ուր է Կորտինի եւ Կորտիեա՝

վրիպակաւ դնէ, և կամ վասն փոփոխութեան գաւառաց՝ տէրութեան՝ և բնակչաց մինչև ցայն վայր. որպէս և զմարտս պատերազմաց նոյն պտղոմէոս նախ դնէ 'ի Հայս՝ 'ի յիշելն զայն զկնի Կորտինիի և Գոզդեայի. ապա դնէ 'ի Մարս՝ յիշելով նախ քան զԳաբրուտս. որպէս և մերս խորենացի զնոյն գաւառս դնէ 'ի Հայս, նաև 'ի վերս՝ վասն տիրելոյ վրաց:

Յաւուրս միջին տիգրանայ Կորդուքք յարտաքին մատենագրաց յիշատակին իբրև մանաւոր ժողովուրդ կամ ազգ՝ զորս ընդ իւրև էառ նոյն տիգրան. * Ընդ իւրով հնազանդութե՟ նուաճեաց (ասէ ստրաբոն վասն տիգրանայ) (1) զադրօբադինեանս (որք են ատրպատականք), և զԿորտիս, ը՟ որս և զմիջագետս, և զասորիս‖: Սոցա տեղիք թէպէտ էին ը՟ տէրութե՟ հայոց, այլ զկնի հռովմայեցիք առին՝ ըստ նորին ստրաբոնի (2). զորմէ այսպէս գրէ անուամբ Գորտուքեանց. * Առ տիգրիսիւ են տեղիք պարթևաց՝ զորս նախնիք Գորտուքս կոչէին, և քաղաքք ինչ՝ յորոց սակի են Սարիսա, (ըստ այլ. Սարասա,) և Սէտալկա, և Պինակա, ամուր հզօր՝ որ ունի բերդս երիս ուրոյն ուրոյն պարսպաւ պատեալ, որով երևին իբր քաղաքք երրեակք. այլ այն ընդ հնազանդութե՟ եղև Արմենիոսի (3), և հռովմայեցիք բռնութե՟ կալան‖:

Իշխանն կորդուաց 'ի ժամանակս տրդատայ արքայի՝ էր մի յութից անտի գահագլուխ իշխանաց 'ի մէջ չորեք հարիւր իշխանաց նորին տրդատայ, և մի 'ի չորից հրամանատարաց թագաւորութեան, կարգեալ 'ի վերայ արևմտեան կողմանն քսան և մի իշխանօք, որպէս է տեսանել առ ստեփաննոսի օրպէլեան: Բայց նաև յառաջ քան զտրդատ այնչափ էր իշխանապանծ ձոխութե՟ նախարարի սորա, մինչև պլուտարքոսի Թագաւոր կոչել զնա. * Թագաւորն Կորտեաց (ասէ) զարբիենոս՝ դժգմնեալ ընդ բռնակալութե՟ տիգրանայ (միջնոյ,) գաղտնի միաբանութե՟ կալաւ ընդ լուկուլլոսի՝ թարգմանաւ ապպիոսի որպէս ասացաւ.

որպէս ցուցանէ պօշար 'ի գիրս փալէկ կամ փաղէկ. հատ. ա. թղթ. 18. և 19. ըստ տպ". որ 'ի լուկտուն տպագրեալ՝ յամի 1692:

(1) Գիրք ժա. թղթ. 532:

(2) Գիրք. ժզ. թղթ. 747:

(3) Եթէ չէ վրիպակաւ եդեալ բառս Արմենիոս փոխանակ բառին Արմենեանց, կամ Արտենեանց, պարտ է ասել թէ ստրաբոն Արմենիոս անուամբ իմանայ զԱզգ արամեանց. որ ըստ կեղծեաց յունաց (զոր ինքն ստրաբոն այլուր յառաջ բերէ՝) եղև նահապետ արամեանց կամ հայոց:

այլ վասն զի յայտնի եղև՝ սպանաւ, ընդ նմին և որդիք և կին նորա կոտորեցան յառաջ քան զարշաւանս հռովմայեցւոց 'ի Հայս ‖ ։ Իսկ այսմ և պլինիոս զուլթուտամն մեծամեծ գաւառս ինքնակալ տէրութե̃ պարթևաց՝ կոչէ Թագաւորութիւնս ։

Զկնի պատմէ նոյն պլուտարքոս, թէ որպէս յորժամ եհաս անդր լուկուլլոս հռովմայեցի, մեծաշուք յաղթակաւորութբ̃ բարձեալ զմարմին նորա՝ եդ 'ի գեղեցկաշէն հանգստարանի, և բարեկամ և ընկեր կարդաց զնա ժողովրդեան հռովմայ ։ Այլ և 'ի գիրս եղիշէի Թղթ. Գ. Կորդուք յիշատակին ը̃ օտար ժողովուրդս՝ ը̃ աղուանս, ընդ լփնիս, ընդ ծովդէս, իբր զատուցեալս 'ի ժողովրդենէն հայոց . զնոյն է տեսանել և 'ի թուղթն 93 (1) ։

Այս կորդուք՝ որք (որպէս ասացաք՝) կացուցին մասնաւոր և առանձին ժողովուրդ, կարի խիտ հաւանական երևի՝ թէ խառնեցան ընդ սահմանակիցս իւրեանց ընդ մարս, կամ թէ մարք ընդ սոսա՝ գէթ ըստ մասին . առ որ նպաստէ և կոչելն ստեփաննոսի զգաւառս՝ այսինքն զկորդուս, Մդ ճորաց . և պտղոմեայ դնելն զնոսա յաշխարհին մարաց ։ Զորմէ չէ ինչ անհիմն կարծիք արդեաց որք ասեն, թէ անունս Քիւրդ՝ որով կոչի այժմ Մդ մարաց (2), ածանցի յանուանէս Կորդուք կամ Կորդիք . որպէս և տոլիլ աշխարհագիրն թագաւորին գաղղիոյ, և յետ նորա մառդինիէ դնեն, թէ Գորդուք անուանեալ ժողովուրդն 'ի գիրս քսենոփոնի՝ են նոյն իսկ Քիւրդք, զորոց զաշխարհ հռովմայեցիք կոչէին Գորդուէնէ, կամ որ նոյն է՝ Կորդուք. թէպէտ և Քիւրդիստան այժմ ընդարձակ ձգի քան զերկիր նախնի Գորդուաց, վասն զի անունս Քիւրդ ընծայի առհասարակ մարաց ։

Զերկիր կորդուաց ամմիանոս կոչէ [illegible] . քսենոփոն, երկիր գինեւէտ, լի պաշարօք, և տունք նորին զարդարեալ պղնձի անօթովք ։ Իսկ պլուտարքոս պատմէ՝ թէ 'ի ժամանակին յորժամ գնաց անդր լուկուլլոս՝ գտան անդ զանձ բազում, և բազում համբաւք ցորենոյ . * Նոքաւ զանձք (ասէ) դրամոյ՝ և ոսկի

(1) Ուրանօր թէպէտ Կորդիք կամ ըստ ձեռագրաց Կորդրիք գրի, սակայն Կորդրեաց անուամբ ինձ թուի իմանալ անդէն զնահանգն կորճէից, գէթ ըստ մեծի մասին ։

(2) Եւ ոչ ազգ քաղդէացւոց՝ որպէս կարծէ գուռնըֆօռ, և յետ նորա մառդինիէ 'ի բառն Քիւրդ ։ Զի զքաղդէացիս այժմ Քէլտանի անուամբ բացատրեն, և ոչ Քիւրդ ։

և արծաթ գտան յարքունիս զարմինոյ թագաւորին. 'ի շտեմարանս ամբարեալ կայր ցորեան՝ տամնիցս երեքհարիւր հազար մէտիմնոս (1) ||:

Բնակիչքն էին քաջ նետընկէցք՝ որք 'ի ժամանակս քսենոփոնի զերկուս երեւելի արս 'ի յունաց սպանին՝ զկլէօնիմոս լակեդեմոնացին, և զվասիաս արգաս. *Նոքա (ասէ) նետաձիգ քաջավարժք. աղեղունք նոցա գրեթէ 'ի չափ երից կանգնոց, և նետք աւաւել քան զերկուս կանգնաչափս ... որք ընդ վահանս և ընդ զրահս թափանցանց անցանէին ||:

Համաձայն սմա գրէ և դիոդորոս սիկիլիացի յասելն (2). *Նոյն յոյնք զաւուրս եօթն Ճանապարհորդէին ընդ լերինս գարտուքաց՝ բազում վնասս կրեալ 'ի բնակչաց տեղւոյս, որք էին ազգ քաջք և ծանօթք տեղեաց: Սոքա թշնամի էին թագաւորին, և ազատք. հմուտք պատերազմի, փորձք աւաւել 'ի ձգել պարսիւք քարինս մեծամեծս, և 'ի կիր առնուլ զաղեղն ահագին մեծութեամբ. Ի յարձակիլն սոցա 'ի բարձանց 'ի վերայ յունաց՝ զբազումս թափանցանց խոցեալ սպանին, և զյոգունս չարաչար վիրաւորեցին. զի նետք նոցա երկկանգնաչափ երկայնք՝ ընդ վահանս և ընդ զրահս թափանցէին, մինչև ոչինչ զինուց կարել զդէմ ունել սոցա բռնութեան ... Նախերև այսպէս բազում դժուարութեան Ճանապարհորդեցին (յոյնք) ընդ այս գաւառ (գարտուքաց), հասին 'ի Կենդրիտի գետ, ընդ որ անցեալ մտին 'ի Հայաստան ||:

Այն հմտութեան կորդուացւոց 'ի կազմել զպատերազմական գործիս՝ վկայէ և ստրաբոն 'ի ԺԶ. գիրս, յասելն. *Կորդիք գերագոյն Ճարտարապետք համդիսանային, և ներհուն արուեստաւորք գործեաց որովք օրէն էր կռուիլ ընդ քաղաքս, վասն որոյ և տիգրան (միջինն) յայսպիսիս զնոցին սատարութիւն 'ի կիր առնոյր ||:

Քրիստոնէական կրօնն թուի տարածեալ և յայս գաւառ առ ժամանակօք լուսաւորութեան ազգիս, այլ և հիմնեալ անդ աթոռ եպիսկոպոսի, զորոյ զեպիսկոպոսն յիշատակէ բուզանդ 'ի Գ. 15. յասելն. *Հրաման տայր թագաւորն կոչել զամենայն եպիսկոպոսս Հայոց աշխարհին՝ զի եկեսցեն ձեռնադրեսցեն զմանուկն 'ի կաթողիկո-

(1) Որ առնէ երեք միլիոն մէտրիմնոս, այն է մար. և մի Մէտրինոս հռովմայեցւոց տանի վեց Մոտ, որ է չափ հռովմայեցւոց:

(2) Գիրք ԺԴ. Թղթ. 662. և 663. ըստ տպ''. վէսսէլինկայ:

տութի Հայոց (Հակառակաթոռ մեծին Ներսէսի)։ Եւ ոչ մի ոք ոչ հաւանեաց գալ, բայց միայն աղձնեաց և Կորդուաց Եպիսկոպոսք եկին, և զՉոնակն (կամ զՉունակն) ձեռնադրեցին 'ի կաթողիկոսութի‖։

## ԿՈՐԴՐԻՔ, կամ ՏՄՈՐԻՔ։

Այն այս Կորդրիք գաւառ յառաջին ժամանակս նախ քան զխորենացին կոչէր Տմորիք, որպէս վկայէ նա ինքն 'ի Բ. 50. կամ 51. յասելն. * Բնակէ 'ի Տմորիս՝ որ այժմ կոչի Կորդրիք‖ (1)։ Բայց Թուի Թէ՝ կամ Տմորիք՝ և կամ Կորդրիք՝ էր փոքր գաւառ, այսինքն վիճակ պարունակեալ մինն 'ի միւսն, որ ապա փոխանակ միմեանց 'ի գործ ածաւ. զի եղիշէ յայտնի զանազանէ զերկոսին 'ի Թղթ. 93. յասելն. * Այնպէս առնէր և ընդ ամենայն կողմն աշխարհին ամրականացն, 'ի Տմորիս, և 'ի Կորդրիսն (2)‖։

Ըստ այսմ և բուզանդ Դ. 50. * Ապստամբեցին յարշակայ արքայէ (այն է արշակ Բ.) և ամուր գաւառն Տմորեաց, և ամուր աշխարհն Կորդրեաց (3). ապա և տէր գաւառին Կորդուաց‖ և այլն։ Յայտնագոյն ևս 'ի Ե. 10. գրէ Թէ մուշեղ սպարապետ դարձեալ ընդ տէրութե պապայ հնազանդեցոյց զԿորդուս, և զԿորդիս, և զՏմորիս (4)։

Գաւառն Տմորեաց միշտ դասի 'ի գիրս Ը ամուր գաւառս Հայաստանեայց, ըստ որում և եղիշէ Թղթ. 125. կոչէ անմատոյց զամուրս նորա. * Եւ այլք բազումք (ամրացան) 'ի կողմանս հարաւոյ յանմատոյց ամուրսն Տմորեաց‖։ Իսկ Թովմա արծրունի յիշատակէ և զամրոց ինչ այսր գաւառի, զորոյ զանունն տես ստորև 'ի վերլուծ" (5)։

(1) 'Ի միում ձեռագրի գրի աստէն Կորդիք։

(2) 'Ի տպագրեալն 'ի Կորդիսն, իսկ յայլ ձեռագրի 'ի Կորդիսն։

(3) Յայլում ձեռագրի Կորդեաց. կայ միւս այլ ձեռագիր, որպէս և տպագրեալն՝ յորս գրի Կորդեաց։

(4) Որպէս վասն Կորդուաց անուանն ասացաք՝ Թէ բազում անգամ առեալ լինի փոխանակ անուանս Կորճէից, նոյնպէս ուրեք Թուի Թէ և անուն այսր գաւառի՝ առեալ լինի փոխանակ անուանն նահանգին Կորճէից, գէթ վրիպակաւ գրչաց։

(5) Թովմա արծրունի 'ի ժամանակս աժդահակայ արքային մարաց՝ դնէ զայս գաւառ ընդ տէրութե նորա. * Խոստանայ (աժդահակ) տալ նմա (այսինքն կիւրոսի) զտէրութի զչորրորդ մասն սենեքերիմացն, զկողմամբքն Նինուէի, և զՏմորիս Ամրոցաւն

'Ի բերոց՝ ունի զԿինամոմոն ըստ վկայելոյ մեկնչին Եւրեմիայի՝ որ ասէ. * Մի 'ի խառնուածոցն իւղոց Կինամոմոն է, պտուղ բանջարոյ՝ որ և գտանի 'ի Տմորիս Հայոց, և յայլ աշխարհ ||։ Եւ ե վարդանայ՝ որ 'ի մեկնութեան ելից Է. 23. գրէ. * Կինամոմոն .. արմատ է բանջարոյ՝ որ լինի 'ի Տմորիս Հայոց || [1]։

## ՈՌՍԻՐԱՆՔ։

Որպէս գրի յերկս Ճեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն [2], նոյնպէս և առ Թովմայի արծրունւոյ՝ ուր սկսանի պատմել երկրորդ անգամ զգագկայ. * Իսկ իշխանն աշոտ (ասէ՝) եղբարբքն հանդերձ և ամենայն զօրօքն խոյս տուեալ ամրանայ 'ի Ձորն Որսիրանից ||։

Ընդ այս գաւառ անցանէ Օաւ գետ՝ զոր յիշատակէ Թովմա արծրունի, յասելն. * Եւ զօրքն որ ելեալ էին զհետ գուրգենայ, եկին հասին 'ի սահմանս երկրին՝ ուր կայր գուրգէն զօրօքն իւրովք, և բնակեցան յեզր գետոյն Օաւ կոչեցեալ ||։ Իսկ գուրգէն զօրավար որ յաւուրս բուղայի, մեկնեալ էր յայնժամ 'ի գաւառն Որսիրանից, որպէս յայտ է 'ի բանից նորին Թովմայի արծրունւոյ՝ զոր տեսցես յառաջիկայդ։

Գուխաղ Նոռայի, և Որբեան ԼԷԺ։ Են մերձ առ միմեանս՝ զորս յիշատակէ Թովմա արծրունի. * Իսկ նա (այսինքն

որ 'ի նմա ||։ Եւ ապա քսերբսեանք՝ որք էին սերունդք ադրամելէքայ և սանասարայ, և բնակէին 'ի հայս, առին ասէ 'ի պարգևս. ' Իբրև յաջողութն գործոյն գլխաւորեցաւ՝ եղև դառնալ քսերբսեանց, առեալ 'ի պարգևի զՏմորիս Ամրոցաւն, և զգետափնեայսն նինուէի ||։ Այլ զայս պատմութն չեք գտանել 'ի գիրս խորենացւոյն։

(1) Սովին անուամբ որ լատիներէն առ պլինիոսի գրի Չինամօմոմ, արդի բնաբանք կոչեն զՏարչինն, որ է երկրորդ կեղև փոքրիկ ծառոյ՝ որ 'ի սէյլան կղզի. այլ յայտ է թէ՝ այս կինամոմոն տմորեաց՝ որ է պտուղ բանջարոյ՝ տարբեր է անտի, որում մեկնիչն երեմիայ ընծայէ անուշահոտութն և այլ զօրութիւն ինչ 'ի հրաշալեաց կարգի։ Եունիոս ֆիլարճիրիոս հին մեկնիչ վիրգիլիոսի զբոյսն կոչեցեալ Ամօմում, և զայլ անուշահոտ բերս գնէ 'ի քօրտուէնէ, որով գուցէ իմանայ զայն՝ զոր մեկնիչն երեմիայ և վարդան կոչեն Կինամոմոն, քանզի ասէ. ' Առ քօրտուէնս Ամօմում, և այլ ազնիւ հոտաւոր (բոյսք) լինին ||։ Զայս Ամօմում այլք տան ասորեստանեայց, կամ զի անդ եւս բուսանի, և կամ մանաւանդ Կորդրիք և Կորդուք գոլով սահմանակից ասորեստանեայց՝ չփոթեն զսահմանսն, երբեմն այսմ, և երբեմն այնմ տալով։ Տես վասն այսր և 'ի բերս հայաստանեայց 'ի ներածութեն։

(2) Յայտ է թէ վրիպակ գրչի է՝ որ 'ի տպագրեալն աշխարհագրութն խորենացւոյն գրի՝ Գուխրանք։

գուրգէն զօրավար ) անցեալ 'ի գաւառն Որսիրանից, և ընդ նմա բազմութիւն ազատաց, և մեծացն արծրունեաց նախարարութեց, և ամենայն զօրաց նոցա, և բանակեալ կային 'ի լերինն՝ որ 'ի վերայ գեղջն Թուայի, 'ի հովիտս նորա՝ որ կոչի Արեան լիճ, զի է անդ լիճ մի մեծ, մօտ 'ի տեղին որ էր տեղի ասպարիսի ճակատամարտ զօրու նահատակութե քաջացն մերոց ||:

Յիշատակէ անդէն Թովմա արծրունի և տեղի մի կոչեցեալ՝ Անապատ Սմբատայ բերդին. * Նշանակեն գունդք գունդք հեծելոցն ընդ կողմն Անապատին Սմբատայ կոչեցեալ բերդին. զի էր աւերեալ առ նախնեօքն 'ի զօրացն պարսից ||: Այլ չէ մարթ որոշել՝ արդեօք յայս գաւառ անկանիցի՝ եթէ 'ի շրջակայսն. և ոչ դարձեալ՝ նոյն համարիլ զսա ընդ Սմբատաբերդի մանանաղւոյն, որում հակառակի և տեղւոյն տարակայութիւն, զոր ցուցանէ անդէն պատմութիւնն Թովմայի:

## ՃԱՀՈՒԿ:

Այսպէս գրի յերկս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն, և միայն 'ի տպագրեալն գրի Ճահուկ. իսկ 'ի միում օրինակի Թովմայի արծրունւոյ միշտ գրի Ճախուկ. * Տալով նմա զԱւերդն ագարակաց, և զգաւառն Ճախուկ ||:

Ունէր և Աւերդ յիւր անուն կոչեցեալ, որ և յիշատակի առ նորին Թովմայի՝ որ ասէ. * Ամուրք յոյժ և անկասկածելիք 'ի ձեռս նոցա էին. ամուրն Գըմարն և Սրինգ և Ճախուկ բերդն ||: Իսկ Աւերդն ագարակաց՝ յիշատակեալն 'ի վերոյ 'ի բանս Թովմայի, չէ յայտ թէ իցէ 'ի նմին գաւառի:

## ՓՈՔՐ ԱՂԲԱԿ:

Յօրինակին Թովմայի արծրունւոյ միշտ գրի Փոքր Աղբակ. ուր էին երկու ամուրք երևելիք Գըմար և Սրինգ՝ ստէպ յիշատակեալք առ նորին Թովմայի. * Բայց կին ոմն յազգէ աժդահակայ բնակէ յամուրսն Գըմար և Սրինգ 'ի գաւառին փոքր աղբակ, և անուն կնոջն Ջայլմար՝ որ և զամուրն յիւր անուն անուանէ ||: Յայլ տեղիս գրի Գջմար. * Իսկ իշխանն աշոտ և եղբարք (իւր) խոյս տուեալ զկողմամբքն փոքր աղբակոյ՝ մերձ առ յա-

մուրան Գըմար և Սըրնգ։ Նոյն յերկրորդ վարս Գագկայ գրէ. *Կոչեալ մեծանուն իշխանին Գագկայ զեղբայր իւր զԳուրգէն, և տայ նմա բաժին զԱնձեւոփն (1), և 'ի ձորոյն Ընջահէց՝ մինչև ցերկուս ամրոցս Սրնգայ և Գըմարայ։

### Տեղիք կորճէից որոց գաւառք անծանօթք։

Սաղամաս։ Զառաջինն յիշատակեալ 'ի Բուզանդայ 'ի Դ. 48. յաւելն. *Գնայր հասանէր 'ի գաւառն կորճէից 'ի Սաղամաս։ Նոյն անուամբ յիշատակի առ Թովմայի Արծրունւոյ յերկրորդ վարս Գագկայ Է. 3. *Գնան հասանեն (իսմայելացիք) մինչև ցքաղաքն Սաղամաս, երդմունս ուխտից դնեն առ միմեանս՝ վրէժս առնուլ, քանդել աւերել զերկիրն վասպուրական, մինչև առցեն զամիւկ, և խնդրեսցեն զքէն արեան ազգին ութմանաց։ Նորին լինել սահմանակից ատրպատականի 'ի բանից անտի Յովհաննու կաթողիկոսի, զոր գրէ վասն զօրաց Յուսփայ ոստիկանին. *Գնային զհարաւային կողմամբքն ռոտկաց գաւառին 'ի Հեր և 'ի Սաղամաս, և անտի 'ի քաղաքս ատրպատականի։ Այժմ կոչի Սալամաս։ Տես 'ի Նոր Հայաստան. Թղթ. 249։

Եպիսկոպոսն այսր քաղաքի՝ որ յիշատակի 'ի ստորագրութիւն ժողովոց յետին դարու, կոչի Եպիսկոպոս Սաղամաստոյ և տրանն դաւրսից. որպիսի են 'ի ժողովն Հռոմկլայու՝ Ստեփաննոս եպիսկոպոս։ Նոյն 'ի ժողովն Ատանայ որ յամի տն 1316. Յակովբ եպիսկոպոս։

Սհեր։ Քաղաք՝ յիշատակեալ 'ի Թովմայէ Արծրունւոյ Դ. 11. ուր ասէ. *Յինքն հանէ (մարզպանն) զՏաշբէր և զԲոհա գաւառ, և որ ասի Բաղահերի բերդ 'ի Սհեր քաղաք կորճէից, զիւր կացուցանէ ոստիկանս 'ի պահպանութիւն ամրոցին։

(1) Թերևս զԱնձևացիս։

## ՆԱՀԱՆԳ ԵՕԹՆԵՐՈՐԴ

# ՊԱՐՍԿԱՀԱՅՔ

Պատմագիրք յունաց որ 'ի միջին դարու, կամ 'ի ժամանակս քրիստոնէութեան, Պերսարմենիա անուամբ՝ որ 'ի լեզու նոցա Պերսօարմէնիա լսի, կոչեն ոչ սոսկ զայս նահանգ, այլ զամենայն երկիրս մեծին Հայոց՝ որք ընկանէին ընդ իշխանութեամբ պարսից, (որպէս ունիս տեսանել 'ի ներածութեան հին Հայաստանեայց՝ 'ի Ճառին որ զբաժանմանէ Հայաստանեայց,) որով և 'ի զանազան ժամանակս զանազան էին սահմանք Պերսարմենիոյ, կամ Պերսօարմէնիոյ, որ յիշատակի 'ի գիրս այլ և այլ պատմագրաց նոցա. յայն սակս չէ պարտ շփոթել զայս անուն ընդ այնր անուան յունաց:

Իսկ զանունս Պերսարմենիոյ՝ առ մատենագիրս մեր՝ բաց յաշխարհագրութենէ խորենացւոյն հազիւ ուրեք գտանեմք յիշատակեալ, որպէս առ Թովմայի արծրունւոյ՝ որ յիշէ յերկուս տեղիս, և զայն 'ի Թուելն զգաւառս նահանգաց, և ոչ 'ի պատմելն ինչ. զի 'ի պատմութիւնս՝ գրեթէ ամենայն մատենագիրք մեր զերկուս գաւառս սորա՝ զՀեր և զԶարաւանդ կամ զԶարեհաւանդ յիշեն իբրև անուն միոյ գաւառի կամ նահանգի, որպէս ցուցանեն առաջիկայ վկայութիւնք 'ի գրոց նոցա:

Ագաթանգեղոս ('ի Թղթ. յճզ.) 'ի Թուելն զիշխանս բազում նահանգաց մեծին Հայոց՝ ոչ յիշէ զիշխանն պարսկահայոց, այլ զիշխանն երկուց գաւառացն նահանգին, յասելն. * Իշխանն շահապ՝ Զարեւանդ (1) և Հեր գաւառին ||: Բուզանդ 'ի Գ. Ը. իբրև մի գաւառ յիշէ զերկոսին. * Յանկարծակի գուշակ հասանէր առ խոս-

(1) 'Ի ձեռագրի միում գրի Զարաւանդ, որ պարտ է լինել Զարաւանդ՝ որ է նոյն. իսկ 'ի յունարէնն ագաթանգեղոսի գրի Սարաւանդ:

բոլ 'ի Հեր և 'ի Զարաւանդ գաւառ ‖ ։ Այնպէս և ղազար Թղթ. 116. * Նուան եթէ զօր եհաս բազում 'ի Հեր և 'ի Զարևանդ գաւառ ‖. և 'ի Թղթ. 278. * Զգոյշ լեր նախ ժողովել առ քեզ զայրուձին ատրպատականին՝ որ մօտ 'ի հայս իցեն, և զայրուձին Հեր և Զարևանդ գաւառի ‖ ։ Այնպէս և յովհաննէս կաթուղիկոս՝ յասելն վասն յուսիկայ ոստիկանին. * Յուղի անկեալ գնայ զկողմամբ Հեր և Զարևանդ գաւառի 'ի նահանգս ռոտկաց ‖ ։ Ըստ այսմ և Ասողիկ բ. 3. * Ճանապարհ կալեալ 'ի Հեր և 'ի Զարևանդ գաւառ ‖ ։ Յորմէ յայտնի երևի՝ թէ յանուն երկոցունց գաւառացս իմանան զպարսկահայս առհասարակ ։

Դիրք սորա ձգի յարևելեան կողմն կորճէից՝ առ ատրպատական նահանգաւ աշխարհին մարաց, ուստի և է վերջին նահանգ մեծին հայոց յայնմ կողմանէ ։

Երևելի բերդք նորա են վայրի երեք՝ որք են Յխու և Ալծեանն ։

Եպիսկոպոս Հեր և Զարևանդ գաւառի՝ այսինքն Պարսկահայոց, յիշատակի առ Թովմայի արծրունւոյ գ. 2. յամի իբր 886. Դաւիթ եպիսկոպոս ։ Եւ 'ի ստորագրութիւնս ժողովոյն հռոմկլայի 'ի ժբ. դարու՝ Ղազար եպիսկոպոս ։

Գաւառք սորա համարին ինն ։

ա. Այլի. (1) զ. Տամբեր.
բ. Մարի. է. Զարեհաւան.
գ. Թորայի. (2) ը. Զարաւանդ.
դ. Աշոտերս. (3) թ. Հեր.
ե. Բռնա.

ԱՅԼԻ ։

Այս գաւառ յաշխարհագրութեան խորենացւոյն կոչի և Այլախան. որ ոչ երևի ուրեք յայլ մատենագիրս ե-

(1) Այսպէս գրի յերկուս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն, նաև 'ի տպագրեալն, որպէս և առ Թովմայի արծրունւոյ. վասն որոյ վրիպակ թուի գրելն՝ որ 'ի միում ձեռագրի գրի Այլ։

(2) Այսպէս յերիս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյ". իսկ 'ի տպագրեալն վրիպակաւ գրի Թորայի ։

(3) Յերկուս ձեռագիրս Աշոտերս ։

ղեալս առ մեզ՝ առաջին անուանն լինելով 'ի գործածու-
թե, ըստ որում և առ Թոլեմայի արծրունեայ Զ. 11. յա-
սեյն. * Մարզպանն հայոց գուրգէն ելեալ զհետ նոցա
հազար արամբք՝ վառեալ 'ի զէն և յասպազէն, և գնա-
ցեալ եհաս յՍ.ըլն գաւառ ||:

Սոյն այս գաւառ թուի լինել՝ որոյ բնակիչք առ Պլի-
նիոսի Զ. 26. կոչին Ս.ըլնք. քանզի դնէ զսոսա սահմանա-
կիցս կորդուաց՝ այն է կորճէից, որպէս և էր և համօրէն
պարսկահայք. * Իսկ կորտիեանց (ասէ) առ երի կամ
Ս.լոնք, ընդ որս Զէրպէս գետ 'ի տիգրիս անկանի ||:
Զսոյն Զէրպիս գետ՝ հարաւային համարի նոյն՝ որ առ
պտղոմեայ կոչի Գորղոս՝ վասն երագութե: Ս.րդ՝ Գոր-
ղոս է ձախակողմեան վտակ տիգրիսի, (1) որ կարէր ընդ
Ս.ըլն կամ Ս.լոնք գաւառ պարսկահայոց ընթանալ:

Սովին Զէրպիս անուամբ թուի մեզ նշանակել Պլի-
նիոսի զայն վտակ տիգրիսի՝ որ այժմ կոչի Զաբ, զի բաց
'ի մերձաւորութե անուան՝ նաև զսահմանս նորա մարթ
է յարմարել սմին, որչափ ինչ ունէր յայնժամ տեղեկու-
թիւն Պլինիոս զընթացից գետոց այնչափ հեռաւոր սահ-
մանաց:

Դարձեալ սոյն այս երևի գոլ և որ առ ստրաբոնի (2)
կոչի Ս.ալինէտիս, ուրանօր տիգրիս յետ ընկղմելոյն յեր-
կիր՝ 'ի վեր յառնէ ասէ. և դնէ 'ի կողմանս Օբինի,
(որ ըստ մեզ է Տոսպ,) և 'ի կողմանս Պարսպին շամի-
րամայ, և Կորտիեանց՝ (որ է Կորդուաց երկիր:) Նու-
թէպէտ ըստ ամենայնի ոչ համաձայնի դիրքն և անունն
ուրանօր էր Ս.ըլն գաւառ, և ուր անկանի Ս.լոնք Պլի-
նիոսի. բայց յայտ է թէ առ նախնիս՝ զանազան ազգաց
մատենագիրք յիշեն զմի և զնոյն անուն այլևայլ գրու-
թբ, և 'ի նշանակել զտեղին՝ ոչ համաձայնին միմեանց.
նոյնպէս և զընթացս գետոց ոմն այսպէս ընթացուցանէ՝
և ոմն այնպէս, զորս զամենեսին պարտ է հետևեցուցանել
մատենագրաց նոյն ազգին՝ որոյ է այն գաւառ, կամ գետ:

(1) Ցայնսակս չէ պարտ համարել թէ պլինիոս անդէն խօսի միայն և եթ զմիջագետաց, զի ըստ այսմ Զէրպիս, կամ որ նոյն է՝ Դորղոս լինէր աջակողմեան վտակ տիգրիսի, այլ բաց 'ի միջագետաց՝ խօսի և զտեղեաց աստրեստանեայց որ յայնկոյս տիգրիսի. տես և 'ի հարաւուն: Արդ զհարաւակողման վերջին գաւառս մեծին հայոց՝ երբեմն Է մարս, և երբեմն ընդ ասորեստանեայս խառնյօդեն նախնիք: Զնոյն է տեսանել և յաշխարհս այլոց ազգաց, որպէս՝ զեկբատան որ էր 'ի մարս, դնեն ոմանք 'ի պարսս:

(2) Գիրք ԺԱ. Թղթ. 529:

## ԹՐԱՓԻ· ՌՈՆԱ· ՏԱՄԲԵՐ։

Առաջին գաւառն առ Թովմայի արծրունւոյ գ. 11. գրի Թրաբէ, յասելն. * Իսկ այլազգեացն անցեալ գնացեալ մօտին 'ի Թրաբէ, և 'ի Ռոնաս‖։

Երկրորդ գաւառն յերկուս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն գրի Ռոնա, բայց առ Թովմայի արծրունւոյ գ. 12. յերկրորդ վարս գերմանիկին՝ հօրն գագկայ՝ գրի Ռոնայ։ Առնու ասէ գերմանիկ * Նաև զգաւառն Ռոնայ, զոր այնքան վաղագոյն այլազգեացն յափշտակեալ էին, զորոյ և ոչ զհամբաւն ոք դարուց 'ի դարս յիշատակել կարողանայր առ նա հասելոցն. բռնաբար կորզէ 'ի ձեռաց այլազգեացն, ընդ նմին և զայլ բազում քաղաքս յատրպատականէ‖։

Իսկ երրորդ գաւառն յերկուս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն գրի Տամբեր, որոց համաձայնի և օրինակն Թովմայի արծրունւոյ գ. 11. * Ելանէ մարզպանն 'ի վերայ նոցա, և յինքն հանէ զՏամբեր և զռոնայ գաւառ‖։ Որով յայտ է թէ՝ ոչ ուղիղ գրի 'ի տպագրեալն և 'ի միում ձեռագրի աշխարհագրութեան խորենացւոյն՝ Տանբեր։

## ՋԱՐԵՀԱՒԱՆ։

Այսպէս գրի յերկս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն. նոյնպէս գրեթէ ուրեք և յօրինակին Թովմայի արծրունւոյ գ. 11. ուր ասէ. * Ելեալ 'ի համամակերտ քաղաքէ յինն ժամու ուրբաթու աւուրն, և անցեալ ընդ ծովակն յըմբեա և ընդ վարագի Ջարևհաւանի, և ընդ այգն ընդ առաւօտն յռենայ յամաց գեօղ, և գիշերագնաց հասեալ մինչ 'ի տարօնայ կոչեցեալ գետ, և 'ի միւսում առաւօտին հասին 'ի վերայ բանակին‖։ Բայց 'ի տպագրեալն աշխարհագրութեան խորենացւոյն գրի Ջարեհաւան, որպէս և առ Թովմայի արծրունւոյ գ. 4. * Եւ անդ լինէին (ասէ) ժողովեալ ամենայն բազմութիւն աշխարհակոյտ ամբոխից գաղթականաց գաւառացն կողմանցն աղբագոյ, Ջարեհաւանի և Արճէշոյ, և լեռնակողմանցն Աղբակոյ, և Ոստանոյ‖։

## ՋԱՐՈՒԱՆԴ:

Որպէս գրի յերկուս ձեռագիրս և 'ի տպագրեալն աշխարհագրութե խորենացւոյն . իսկ 'ի միում ձեռագրի, և առ բուզանդայ, որպէս և առ եղիշէի թղթ . 74 . և ըստ ձեռագրի միում, գրի Ջարուանդ : Այլ գրչութիւս Ջարաւանդ յաւէտ սովորական թուի, ըստ որում տեսանի՛ և 'ի վկայութեց անտի նախնեաց՝ զորս եդաք 'ի ներածութե նահանգիս : Իսկ առ խորենացւոյն Ջարուանդ գրի, ոչ միայն յաշխարհագրութե, այլ նաև՛ յերկս ձեռագիրս պատմութե նորին 'ի ա . 5 . ըստ ձեռագր". 6 . ուր դնէ և զպատճառ անուանակոչութեն յանուն միոյ յորդւոցն քսիսութրեայ, այսինքն է՝ նոյի, բերելով յանգիր զրուցացն ոլոմպիոդորայ . * Քանզի կողմանքն արևելից Զրուան զսեմ կոչեն (զորդի նոյի,) և Ջարուանդ զգաւառն (1) անուանեալ ասեն մինչև ցայժմ‖ : Որ նախնիս բազում ուրեք ընդ Հերայ 'ի գործ ածեալ՝ նշանակէ զպարսկահայս առհասարակ, որպէս գրեցաք վերագոյնդ :

Սոյն այս անուն երևի մեզ լինել, որ առ պլինիոսի Զ . 27 . ըստ ձեռագրաց կոչի Ջօրոանդա, կամ ըստ տպ . Ջօրօանդա : Որ է տեղի՝ ուրանօր զտիգրիս 'ի վեր յառնել՛ ասէ յետ անցանելոյ ընդ դաւրոս (կամ ընդ տօրոս) ընդերկրեայ Ճանապարհաւ, և ոչ ուր յերկիր ընկղմի առ 'ի անցանել ընդ տօրոս՝ որպէս համարի քալմէ 'ի բառարանի իւրում 'ի բառն Տիգրիս : Իսկ թէպէտ սալմասիոս 'ի լէ . գլ . սոլինոսի զայս յասորեստան կարծէ լինել, բայց յայտ է թէ՝ սահմանք վերջին գաւառաց և նահանգաց մերոց բազում ուրեք 'ի գիրս նախնեաց խառն յօդին ընդ սահմանակից աշխարհս :

(1) Այսինքն է՝ զգաւառն բընակութե նորա, ուր բնակեցաւ յետ դառնալոյ իւրոյ 'ի սիմ լեռնէ՝ յարևելս հարաւոյ հայաստանեայց, յոր կողմն անկանի Ջարուանդ և Պարսկահայք . տես առ խորենացւոյն ա . 5 : Այլ թովմա արծրունի զնոյն աւանդութե յիշատակէ յաւելուածով, յասելն ա . 1 . * Ադրամելէք և սանասար գան մտանեն 'ի լեառն Սիմ, որ յանուն հաւոյն իւրոյ սեմայ անուանեալ էր լեառնն, որպէս և պարսկային ձայնին 'ի զրուանն անուն զՋարուանդն անուանեն‖ :

## ՀԵՐ։

Ուրեք ուրեք գրի Հեր ։ Անի քաղաք համանուն՝ զոր Թովմաս արծրունի դ. 2. դնէ 'ի հովտաձև դաշտի, առ որով սպան զմեծ իշխանն վասպուրականի զդերանիկ՝ ապլփերս քաղաքապետ նորին Հերայ ։ Յիշատակի և առ Ասողկայ Գ. 19. յասելն. * Առաքէ առ ամիրայն ատրպատականի ապլհաճայ , տալ ցնա խոստանայր զքաղաքն Հեր , միայն եթէ զվրէժ արեան որդւոյ նորա խնդրեսցէ յաշխարհէն վասպուրականի ‖ ։

Այլուր 'ի պատմութեան Թովմայի արծրունւոյ դ. 12. գրի Խեր քաղաք ։ Որպէս և զԴաշտ Հերայ՝ (յորում որպէս թուի կառուցեալ է և քաղաքն,) կոչէ Խերական դաշտ , յասելն անդանօր. * Չու արարեալ ընդ Ձորն անձահոյ՝ եկն 'ի Խերականն կոչեցեալ դաշտ ‖ ։

Զբերդս Հեր քաղաքի յիշատակէ և Մատթէոս 'ի գլ. խէ. 'ի պատմելն վասն կապանաց դերենիկ արքային անձևացեաց յապլհաճայ ամիրայէն. * Յայնժամ հաւցուկ լինէր ( ասէ՝ ապլխարիպ ) վասն Թագաւորին , եթէ յորում բերդի կայ արգելած 'ի Հեր քաղաքի , և . . . ապլխարիպ Թագուցեալ կայր 'ի մէջ անտառախիտ ծառոց դրախտեացն Հերայ ‖ ։ Յիշէ սորև և զԽորկաթի դուռն քաղաքին ։

Նշանաւոր ։ Գիւղ՝ զոր յիշատակէ ղազար փարպեցի Թղթ. 279. * Այլ դադարեալ 'ի գաւառին որ կոչէր Հեր՝ 'ի գեօղն որում անուն էր Նշանաւոր ‖ ։

Փերոզակ ։ Գիւղ՝ հանդէպ Հեր քաղաքի , զորմէ Թովմա արծրունի դ. 2. * Նա եղև 'ի գնալ դերանիկն 'ի ձմերոցս վասպուրական իշխանացն՝ Ճանապարհ արարեալ ընդ ձորն ընձահից ( այն է՝ արձախի ձոր ,) որոյ ելքն ընդ գաւառն Հեր քաղաքի . . . և անցեալ օթագայեալ (1) 'ի գեօղն Փերոզակ յանդիման քաղաքին ( Հերայ ) ‖ ։

(1) Յօրինակին գրի Օթագայեալ ։

## ՆԱՀԱՆԳ ՈՒԹԵՐՈՐԴ

# ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ

Մեծ է քան զայլ ամենայն նահանգս հայոց, և աթոռ առանձին թագաւորութե. և կաթողիկոսութե. և զի սեպհական է արծրունեաց տոհմին, կոչի և Աշխարհ կամ Նահանգ Արծրունեաց, (1) որպէս և Տէրութիւն կամ Թագաւորութիւն Վասպուրականի, որ ձգի յարևմտից պարսկահայոց, և առ երի կորճէից:

Յիշատակի անուն սորա առ կաստանդեայ պէրփիւրոժէնի, (2) ուր վրիպակաւ գրի Վասպուրագագ. և այլուր (3) ուղղագոյն ևս ընակիչքն կոչին Վասպուրագանեայք: Իսկ կեդրենոս 'ի վարս Է. վասլի՝ կոչէ Վասպրագանիա, և զնոյն անուանէ Վերին Մադիա. * Յայնժամ նաև սենաքերիմ իշխան Վերին Միդիոյ, (4) զոր այժմ Վասպրագանի անուանեն, համդերձ ամենայն ընտանեօք իւրովք մատեաւ առ կայսր՝ տուեալ նմա զիւր տէրութի, վասն զի շրջակայ հագարացւոց որք նեղէին զնա՝ չունէր զօրութի բաւական առ 'ի դգէմ ունել ||:

Առ յուստինիանու ստիլիծիսի կամ գուբօքալադայ գրի Վասբուրագան: Նոյն սոյն այս անուն է՝ որ առ սդրաւոնի ժմ. 528. գրի Վասոռոբէտա. յասելն վասն զօրավարաց մեծին անտիոքոսի՝ թէ զհայաստան ընդարձակեցին յափշտակելով զշրջակայս, և * 'Ի Միդաց (այսինքն 'ի Մարաց) գրաւեցին զԿասպիանէ, զՓաւնիտիդէ, և զՎասոռոբէտա ||:

(1) Առ լաստիվէրտցւոյն գլ. Ծ. * Բերդաքաղաքն որ կոչի բերկրի, որ է 'ի վիճակէ Արծրունեաց աշխարհին ||: 'Ի գլ. Փ. գրի և Գաւառ Արծրունեաց, որպէս և 'ի ժա. Գաւառ Վասպուրականի: Յայտ է թէ զԳաւառն առեալ յընդարձակ մտս փոխանակ Նահանգի: Զնոյն է տեսանել և առ մեսրոպայ, և առ այլս:

(2) Գիրք կառավարութե. գլ. խԳ:

(3) Գլ. խն:

(4) Միդիա, կամ լատին հնչմամբ Մեդիա անուանի Մարաց աշխարհն:

Օ իշխանութիւն արծրունեաց հաստատեաց Վաղարշակ արքայ. իսկ տրդատ կարգեաց զիշխան նորա` լինել մի յութից անուն գահագլուխ իշխանաց 'ի մէջ չորեքհարիւր իշխանաց Թագաւորութեան, որպէս դնէ ստեփաննոս օրպէլ 'ի Է. գլ. պատմութեան իւրոյ: Այլ տէրութիւն արծրունեաց յայս նահանգ` էր կարի վաղնջական 'ի նախնի Թագաւորացն հայոց հաստատեալ, վասն որոյ և 'ի մատենագրացն մերոց Վասպուրական նահանգն կոչի` Սեպհական արծրունեաց, ըստ որում 'ի Ճառընտրի մ՟ համազասպայ արծրունւոյ (որ ը̄ եղբօր իւրում սահակայ նահատակեցաւ 'ի Ը̄. դարու,) գրեալ է. * 'Ի ժամանակին յայնմիկ էր հաստատեալ մարզպանութիւն` համազասպայ` 'ի տանէն արծրունեաց. սա տիրէր Սեպհական տէրութեան Վասպուրական կոչեցեալ իշխանութեան ‖: Նաև Թովմաս արծրունի կոչէ. * Բարձրագոյն և Սեպհական (արծրունեաց) Վասպուրականն կոչեցաւ նահանգ ‖: Սմին իրի և գագիկ արծրունի 'ի պահանջելն զնախճաւան քաղաք վասպուրականի 'ի ա̄. սըմբատայ արքայէ, որ տուեալ էր զայն 'ի պարգև իշխանին սիսականի, զիրաւունս հին ժառանգութեան տոհմին 'ի մէջ բերէր: * Առ ինքն զքաղաքն նախջւան խոկայր դարձուցանել (ասէ յովհան կաթողիկոս,) իբր Թէ 'ի հաւու և 'ի հօրէ` նոցունց իսկ տան և ազգի պատշաճեալ ‖: Յորմէ և զորոշումն քաղաքին առ յիւրմէ` զրկումն իւր համարէր, որպէս գրէ անդէն նա ինքն:

Այլ այս տէրութիւն նոցա 'ի Վասպուրական` սկիզբն էառ պայծառանալ յելս անդ Թ̄. դարուն, յորում աշոտ և դերենիկ սկսան զսահմանս երկրի իւրեանց զորս յափշտակեալ էր այլազգեաց` ընդ տէրութեամբ գրաւել: Նաև ինչ ինչ արտաքուստ 'ի պարսկահայոց 'ի վերայ յաւելուլ. զի գրէ յովհաննէս կաթողիկոս զդերենիկն գրիգորէ. * Ձեռն զգաւառօքն և զքաղաքօքն արկեալ զկողմամբ հերայ և զարաւանդայ (որ է պարսկահայք,) 'ի հնազանդութիւն ընդ իւրեաւ զկողմանն զայնոսիկ նուաճէր ‖:

Առաւել ևս ընդարձակեցաւ, յորժամ երեքին որդիք նախայիշատակեալ գրիգորի դերենկին, և քեռորդիք ա̄. սմբատայ արքային բագրատունւոյ` աշոտ, գագիկ, և գուրգէն, յետ մահուան հօրն իւրեանց քաջութեամբ զանազան տեղիս գրաւեցին. * Բաժանեն զաշխարհս (տէրութեան իւրեանց` ասէ Թովմաս արծրունի 'ի Դ. Կ.) յերիս մասունս, գոլով աշոտի` որպէս աւագ յառաջագոյն,

զգահն նախնական իշխանութեն՝ այլովք յոլովագոյն մե-ջօցօք աշխարհիս մինչև յամուրն նախճաւանու : Իսկ զագիկ զկողմանս բաշտունեաց այլովք մօտակայիւք գա-ւառօք , և որքան իցէ հաստումն ուժոյ՝ անդր եա յաշ-խարհն մոկաց : Նա գուրգէն զկողմանս յարևելից՝ յե-լից աղբագոյ և որ շուրջ զնովաւ ամենայն պարսկահայք , մինչև 'ի մուտս կողբաց , և ուր և ըստ այնմ իցէ հնար ածել զձեռամբ || :

Այս երրեակ բաժինք զկնի յերկուս ամփոփեցան՝ յորժամ մեռաւ աշոտ , և մնացեալ եղբարքն գագիկ և գուրգէն բաժանեցին 'ի մէջ իւրեանց , զորոց զգաւառս մի ըստ միոջէ Թուէ Թովմաս արծրունի 'ի Դ . 11 . * Զբա-լոր երկիրս իւրեանց բաժանեցին յերկուս մասունս՝, յելս կոյս և 'ի մուտս՝ որ առ հիւսիսի զհայեցածն բերէ՝ ա-ռեալ էր 'ի բաժնէ գագիկ իշխանի զՃուաշ գաւառն , և զԹոռնաւան , Արտազ , Մարդաստան , Գառնի , Առ-բերանի , Աղանդառոտ , Բառիլովիտ , Պալունիք , և Մեծ-նունիք , Տոսպ , Ռշտունիք , Բոգունիք , Գուզան գա-ւառ , Արտաշեսեան . այսոքիկ գաւառք անուանիք . . . : Իսկ գուրգենի մարզպանի հայոց՝ առեալ 'ի բաժնի յելս կոյս՝ և որ ելանէ 'ի հարաւակողմն , զԿնձահից ձոր , զԿրճունիս , զԿուղանովիտ , և զբուն զՄարդաստան գաւառ , զԱրճիշակովիտ , զՈտն առնոյ , զԱղբագ մեծ , Տագրեան , (1) Բռնայ , զԱրևհաւան : Բայց զՏամբեր , և զԲռնայ , և զԱրևհաւան գաւառ հանեալ էր 'ի պարսկահայոց . իսկ Նախճաւան քաղաք և զԳողթն գա-ւառ (2) 'ի ժամանակի կատարման որդւոյն Սահանայ ամին ձձղ . Թուականութեց , յորում ամի կատարեցաւ որդին Սահան՝ որ էր որդի խոսրովայ գողթան տեառն || :

Մինչ դեռ այսպէս ընդարձակ ձգեցաւ տէրութիւն արծ-րունեաց 'ի ձեռն երկոցունց հարազատացս , յաւելաւ 'ի վերայ և թագաւորութիւն պատիւ՝ զոր էառ նոյն գագիկ 'ի յուսփայ ոստիկանէն 'ի սկիզբն Ժ . դարուն : (3) Այս

(1) Յօրինակին գնի ատեղն . Եղփոքրաջէփամբէր . բայց Տամբեր է այլ գաւառ , (որպէս յայտ է նաև 'ի յետագայ բանից իւրոց) վրի-պակաւ գրչի յօդեալ ընդ փոքրա-ջէ բառիս : Իսկ փոքրաջէ , թերևս պարտ է լինել փոքր Աղբակ . կամ Արփաղաջ , և կամ լաւ ևս գաւառն Աղէ , որ մի է 'ի գաւառացն վաս-պուրականի :

(2) Աւելորդ գնի ատեղն (վրի-պակաւ գրչի մուծեալ՝) գողթն գաւառ , զոր և յիշատակէ ստորև :

(3) Որպէս պատմէ Թովմաս արծ-րունի , բայց անաչառ ևս Յովհան-նէս կաթողիկոս :

Թագաւորութիւն տեւեաց առաւել քան զամ 100, յորում պայազատեցին վեց Թագաւորք ։ (1)

Իսկ յաւուրս վերջին Թագաւորաց՝ (որք էին գուրգէն և սենեքերիմ երկոքին եղբարք,) տէրութիւն նոցա գոլով 'ի վերջին հարաւային սահմանս հայաստանեայց, անհնարին տառապանս կրեր 'ի հարաւային խառնիճաղանջ փոքր տէրութեանց՝ որք բազմացեալ էին յայժ յայնմ ժամանակի, մինչև 'ի գալ Է. վասլի կայսեր 'ի կողմանս արևելից, հարկադրեալ՝ հրովարտակ ընկալան 'ի նմանէ առ մերձաւոր ամիրայս տաճկաց, մի ինչ հարստահարել զսահմանս վասպուրականի, որով ըստ գրելոյ ասողկայ դադարեցաւ բռնութիւն նոցա ։ Իսկ յարշաւել անդ Թուրքաց 'ի Վասպուրական, սենեքերիմ արքայ՝ որ յետ մահուան եղբօր իւրոյ գուրգինայ առանձին Թագաւորէր, զսահմանս տէրութեան իւրոյ ետ 'ի վասիլ կայսր 'ի ՆՀ. Թուականիս, այսինքն 'ի 1021. յետ տևելոյ նեղութեանց զամս 22. (որպէս գրէ ընդարձակօղն սամուէլի՛) զորս կրեաց նախ 'ի հագարացւոց, և ապա 'ի Թուրքաց ։

Օ Թիւ քաղաքաց և բերդից՝ զորս ետ սենեքերիմ վասլի՛ գտանեմք յայսմաւուրս 'ի յունիսի 1. ուր ասի. * Նա կայսերն զկալուածս իւր, բերդս ՀԷ, գիւղս ԴՌ, և ԴՃ. լայնանիստ և արդիւնաւորս, և քաղաքս Ժ. ըղխլաթ, և զխողց, զխիզան, և զկեացն, զարճէշ, և զարծկէ, և զմանկերտ (մանծկերտ,) զբոլոր Թումանս (2) խլաթայ, 'ի լերանցն սասնոյ մինչ 'ի սևան, և 'ի նուանս, 'ի սալամաստ, և 'ի ջղամաթ, որ է ջուլամերկ ॥ ։ (3) Բայց 'ի փետրվարի 27. դնէ բերդս Հ. գեօղս ԴՌ. քաղաքս Ը ։ (4)

(1) Զորոց զկարգս դնեն առզևկ Գ. 46. և վարդան ։

(2) Թուման է աղճատեալն անուանս Թէմա, որ առ յոյնս առեալ լինի փոխանակ գաւառի ։

(3) Համաձայնին 'ի Թիւն և երկու ձեռագիր յայսմաւուրք, բայց 'ի համարելն յանուանէ՝ տարբերին, զի 'ի միումն դնի. * Եւ է Վասպուրական՝ խլաթայ Թումանս, 'ի սասնոյ լերանցն մինչ 'ի նըւան, և 'ի սալամաստ, խլաթ, և արծկէ, և մանծկերտ, արճէշ, և բերկրի, վան, և ոստան, խողց, և խիզան, բաղէշ, և մուշ, զայս ամենայն ետ գրով 'ի վասիլն ॥ ։ Իսկ յայլում ձեռագրի դնի. Ետ 'ի վասիլ. * քաղաքս Ժ. զխլաթն, զխողց, զխիզան, զեանց, զոստան, զվան, զբերկրի, և զարճէշ, զարծկէ, և զմանծկերտ, զբոլոր Թուման խլաթայ, 'ի լերանց սասնոյ մինչև 'ի սևան, և 'ի նըւան, 'ի սալամաստ, և 'ի ջուլամերկ. զայս ամենայն ետ սենեքարիմ 'ի կայսր վասիլ. զՍեպհական Թեմն՝ զվիճակս իւր ॥ ։

(4) Այսպէս դնի յերկուս ձեռագիրս, յորոց ոչ տարաձայնի տպագրեալն՝ բայց եթէ 'ի Թիւն

անդ 'ի ժառանգաւորաց, և 'ի ժամանակս հալածմանցն ամրացաւ 'ի կղզին աղթամարայ: Նա և զի ասեն՝ աթոռ է և այս Թագաւորացն արծրունեաց, և վայել է լինել և պատրիարգութեան‖:

Սակայն՝ որպէս գրէ անդէն. * Ոչ եղև ընկալեալ, Թէ և շատիցս եղև աշխատ ընծայիւք և աղաչանօք, մանաւանդ 'ի յանոյ գլխաւորացն‖: Միայն մասն ինչ արևելեայց ընկալան զնա իբրև հարազատ կաթուղիկոս, և հերձուած 'ի մէջ արկեալ զկնի մահու նորա՝ զայլս և դին յաջորդութեան, որ կայ և տևէ մինչև ցայսօր:

Բազում երևելի անձինք և վարդապետք ծաղկեցան յայս նահանգ, մանաւանդ յետ Ժ. դարուն, յորոց մի էր և գէորգ վարդապետն Մեղրիկ անուանեալ, որ վախճանեցաւ ըստ սամուէլի 'ի Թուին շկբ. (1113.) զորմէ գրէ մատթէոս. * Նա էր ինքն 'ի հայոց աշխարհէն 'ի Վասպուրական գաւառէ, 'ի գեղջէն՝ որ և զայն գիւղն իւր կոչի (իբր Թէ՝ յիւր անուն կոչի,) և է մեծ‖:

Գաւառք վասպուրականի են լէ. որոց անուանքն են:

ա. Ռշտունիք.
բ. Տոսպ.
գ. Բոգունիք.
դ. Արճիշակովիտ.
ե. Աղովիտ. (1)
զ. Կուղանովիտ.
է. Գուառնի. (2)
ը. Բալախովիտ. (3)
թ. Առբերանի.
ժ. Բուժունիք. (4)
ժա. Առնոյոտն. (5)
ժբ. Անձևացիք. կամ Անձաւացիք.
ժգ. Արդաստունիք. (6)

(1) Այսպէս գնի յերկուս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն. ուր 'ի տպագրեալն գնի Աղուանս: Իսկ 'ի միում ձեռագրի՝ չիք այս անուն. քանզի և աղիովիտ անուն գաւառ գտանի 'ի տուրուբերան:

(2) Այսպէս գրի 'ի տպագրեալն և 'ի միում ձեռագրի, նաև առ Թովմայի արծրունւոյ. իսկ յերկուս ձեռագիրս գրի Գառնի, որպէս և առ ղևոնդեայ գլ. բ. ուր ասէ. * Եւ առեալ (զօրաց Թէոդորոսի ռշտունւոյ) զկապուտ անկելոցն... գնացին 'ի գաւառն Գառնի‖: Յայս անուն կայ և ամրոց ինչ յայրարատ:

(3) Այս անուն գտանի 'ի տպագրեալն և 'ի միում ձեռագրի. իսկ յերկուս ձեռագիրս ոչ գտանի: Բայց կայ և համանուն գաւառ 'ի չորրորդ հայս: Տես և 'ի ստորև:

(4) Այսպէս գնի յերկուս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն, ուր 'ի տպագրեալն գնի Բուժունիք: Իսկ 'ի բանն նորին խորենացւոյն յաղագս ճանապարհորդութեան հռիփսիմեանց՝ գրի Բժնունիք:

(5) Այսպէս գնի 'ի տպագրեալն և յերկուս ձեռագիրս. այլ 'ի միումն՝ Առնոտն. իսկ առ Թովմայի արծրունւոյ՝ Ոփն առնոյ:

(6) Յերկուս ձեռագիրս գրի

ԺԴ. Երուանդունիք.
ԺԵ. Մարդաստան.
ԺԶ. Արտազ.
ԺԷ. Ակէ.
ԺԸ. Աղէաց ձոր.
ԺԹ. Անձախաձոր.
Ի. Թոռնաւան.
ԻԱ. Ճուաշ.
ԻԲ. Արճունիք.
ԻԳ. Մեծնունիք.
ԻԴ. Պալունիք.
ԻԵ. Գուկան. (1)
ԻԶ. Աղուանդրոտ. (2)
ԻԷ. Պարսպատունիք. (3)
ԻԸ. Արտաշիսան. (4)
ԻԹ. Արտաւանեան.
Լ. Բոգան. (5)
ԼԱ. Գաբիթեան.
ԼԲ. Գազրիկան. (6)
ԼԳ. Տանգրեայն. (7)
ԼԴ. Վարաժնունիք. (8)
ԼԵ. Գողթն.
ԼԶ. Նախճաւան.
ԼԷ. Մարանդ. (9)

Տրպատունիք. ըստ որոց գրի և առ Եղիշէի. 'ի Ն. Թղթ. 98. 'ի յիշելն նիզակակցացն վարդանանց զնահատակս և զգունդս գաւառաց նոյն. * Եւ Վռոյեանքն (սոէ) և Ընկէացիքն, և Տրպատունիքն, և որդին Ուշտունեաց, և ամենայն կործակալքն որդւոցն || : Յաղագս Ընկէացւոցն, տես սորև և ըղ-տանս Խորենացւոյն և այլոց:

(1) Այսպէս 'ի տպագրեալն և 'ի միում ձեռագրի. իսկ յայլ եր-կուս՝ Գուկան: Առ Թովմայի արծ-րունւոյ՝ գրի Գուգան:

(2) Այսպէս 'ի միում ձեռա-գրի. առ Թովմայի արծր". գրի՝ Աղանդրոտ. 'ի տպագրեալն աշ-խարհագրութեան Խորենացւոյն Աղաանդոտ. և յերկուս ձեռա-գիրս Աղանդոյտ:

(3) Այսպէս 'ի տպագրեալն աշխարհագրութե Խորենացւոյն. իսկ 'ի միում ձեռագրի գրի՝ Պա-րտպարունիք. և յերկուս ձեռա-գիրս՝ Պարսպատունիք:

(4) 'Ի միում ձեռագրի Արտա-շէսեան. առ Թովմայի արծրունւոյ Գ. 17. Գաւառ Արտաշիսեան, որ թուի ուղղագոյն: Յերկուս ձե-ռագիրս աշխարհագրուե. Խորե-նացւոյն վրիպակաւ գրի Արտա-շէսան:

(5) Յերկուս ձեռագիրս Ծաղր". Խորեն". գրի Բոգեան. իսկ 'ի միում՝ ոչ գտանի անուններ ընդ ա-նուանց այլ գաւառաց ինչ վաս-պուրականի:

(6) Այսպէս յերկուս ձեռա-գիրս, ուր 'ի միումն պակասի. իսկ 'ի տպագրեալն գնի Գազրէ-կեան:

(7) Առ Թովմայի արծրունւոյ գրի՝ Տոգրեան, և յերկուս ձեռա-գիրս աշխարհագր". Խորեն". վրի-պակաւ գրի՝ Մոգեան. իսկ 'ի միում այլ՝ պակասի:

(8) 'Ի միում ձեռագրի և նթ գրի Վարէժնունիք: Տես վասն այսր և յայլոց:

(9) 'Ի տպագրեալն աշխարհա-գրութե Խորենացւոյն գտանի և գաւառ ինչ անուանեալ Բասիլ-եհկիք, որ ոչ յիշատակի յերկս ձեռագիրս. միայն առ Թովմայի արծրունւոյ յիշատակի Բաղիսե-նիք գաւառ. յոր անուն թերեւս գրի Բաղեսավնք, զի այս գաւառ ոչ յիշատակի առ նմա. վասն որոյ զանց արարաք և մեք դնել 'ի կարգս գաւառաց, և փոխանակ այնր ե-դաք ուրոյն զգաւառն Ակէ, զոր յիշէն երեքին ձեռագիրքն ևս, որպէս ունիս տեսանել 'ի սորա-գրութե նորին: Եւ այնպէս լի-նին ընդ ամենայն ԼԷ. գաւառք, ըստ թուոյն զոր նշանակեն տպա-գրեալն և երկու ձեռագիրք. միայն 'ի միում ձեռագրի գնի վն թուոյ գաւառաց վասպուրակա-նի՝ թէ են ԼԹ. յորում ձեռագրի

## ԸՌՇՏՈՒՆԻՔ, կամ ՌՇՏՈՒՆԻՔ*:

Մի է յերևելի գաւառաց Վասպուրականի, որոյ անուն անյայտ է և Խորենացւոյն, արդեօք բնակիչքն յանուն գաւառին անուանեցան այսպէս, թէ գաւառն յանուն բնակչաց. (1) որք և 'ի սիսական գաւառէն հատուածեալ եկին յայս գաւառ, զորս Վաղարշակ ամբարձ 'ի նախարարութե պատիւ:

Կիրք սորա ձգի առ ծովեզերբ բզնունեաց, որպէս յայտնի տեսանի յայս բան Թովմայի արծրունւոյ Բ. 2. * Իսկ վարդապետն եղիշէ էր 'ի ժամանակին յայնմիկ բնակեալ 'ի գաւառին ռշտունեաց 'ի ծովեզերին, յորում տեղւոջ և հանգեաւ իսկ 'ի քս ‖: Վասն որոյ և բուզանդ Գ. 10. զծովն յանուն գաւառիս կոչէ Ռշտունեաց:

Երկիր գաւառիս բարեբեր և զուարճալի՝ մինչև գրել հեղինակի հին վարուց սրբոյն յակոբայ մծբնայ հայրապետի 'ի Ճառընտիրս. * Ասաց ոմն 'ի պատմագրաց՝ եթէ նախ քան զանէծան սրբոյն յակոբայ, նման էր երկիրն Ռշտունեաց՝ դրախտին ադենայ ‖: Զի վասն սպանութեցն մանաճհրի անէծս ընկալաւ այս գաւառ 'ի սրբոյն, և յայնմ ժամանակի ասէ խորենացին Գ. 7. * Պտղաբերութի գաւառին դարձաւ յաղտաղտուկ, եղեալ 'ի վերայ երկրիս պղնձի ըստ գրեցելումն, և ծով հակառակ ելեալ յինքն ընդունի զսահմանս անդաստանացն ‖: Այլ յետ երից ամաց՝ որպէս դնի յայսմաւուրս, ժառանգորդք նորին ապաշխարեալ ընկալան բժշկութի գաւառին:

Զիշխան սորա յիշատակէ ագաթանգեղոս 'ի յծզ. ուր և կոչէ զգաւառն Աշխարհ, զի ասէ. Տասներորդ իշխանն Ռշտունեաց աշխարհին, զոր և այլ դնէ 'ի հնգետասաներորդ իշխանէն արծրունեաց աշխարհին: Այս իշխան ընդ ժամանակս ինչ կացուցաւ միանգամայն և սպարապետ հայոց

պականին և անուանք այլոց բազում գաւառաց: Եթէ 'ի բաց հանցուք 'ի վերագրելոցս զԲուզնունիս, յոր անուն գտանի և գաւառ 'ի չորրորդ հայս, յայնժամ ընդ ամենայն լինին գաւառք ԼԷ. ըստ այսմ ձեռագրի:

(1) Խորենացին Բ. 7. (կամ ըստ ձեռագրաց ինչ 8.) գրէ. * Իսկ զՌշտունիս, և զգողթնեցիս գտի պատմեալ 'ի սիսականէն արդարև հատուած, ոչ գիտեմ թէ յանուն արանցն զգաւառսն անուանեն, և թէ յանուն գաւառացն զնախարարութեան կոչեցեալ ‖:

ւայլին զօրաց հայոց. քան զի Մանաճիհր, և յետ նորա Օւրա կամ Օարա՝ էին նահապետք Ռշտունեաց, և միանգամայն սպարապետ հարաւային զօրաց։ Ի մէջ համօրէն իշխանաց գաւառիս երևելի գտաւ Թէոդորոս 'ի Է. դարուն, որ էր զօրավար, միանգամայն և մարզպան։

Եպիսկոպոսունք Ռշտունեաց բազում ուրեք յիշատակին 'ի գիրս, և նախ՝ որ ընդ ղևոնդեանսն կատարեցաւ՝ Սբն սահակ եպիսկոպոս Ռշտունեաց։ Որ և յիշատակի 'ի ստորագրութիս ժողովոյն արտաշատու 'ի պատասխանին նամակին պարսից, զկնի եպիսկոպոսին մոկաց, և նախ քան զեպիսկոպոսն վանանդայ։ (1)

Յայտնի է 'ի պատմութեց՝ և Աբրահամ եպիսկոպոս Ռշտունեաց 'ի Է. դարուն, որ զկնի եղև կաթուղիկոս։ Նոյնպէս 'ի նմին Է. դարու, 'ի ստորագրութիս ժողովոյն դւնայ առ Գ. ներսիսիւ յիշատակի զկնի եպիսկոպոսին խոռխոռունեաց և նախ քան զեպիսկոպոսն վանանդայ՝ Տէր Միքոն եպիսկոպոս Ռշտունեաց։

Իսկ 'ի ժամանակս վարդ պատրկի առաջնորդ էր գաւառիս՝ Գրիգորիոս եպիսկոպոս (2)։ Նաև 'ի Թ. դարու 'ի ժամանակս Բ. գէորգայ կաթողիկոսի յիշատակի առ Թովմայի արծրունւոյ Դ. Կ. Գրիգոր եպիսկոպոս. որ և յահագին սասանութեն դվնայ վախճանեցաւ՝ ընդ փլատակաւ մնացեալ։ Իսկ 'ի ժամանակս սենեքերիմայ արծրունւոյ յիշատակի ուրեք Սահակ եպիսկոպոս Ռշտունեաց։

Ընջաքէարս, կամ Ընծաքէարս, որ առ յովհաննու կաթողիկոսի կոչի Ընծաքէարք։ Լեառն բարձր 'ի ծովեզեր անդ, որպէս յայտնի դնէ բուզանդ Գ. 10. ընդ մէջ երկրին Ռշտունեաց և ընդ մէջ լերին երկաթահատաց. * Գայր հասանէր (ասէ վասն 'սբյն յակոբայ) 'ի լեառն երկաթահատացն և կապարահատացն, և որ ընդ նմայն էին (3) և ընդ Ռշտունիս, և բաժանէր լեառն բարձր՝ ուստի երևէին գաւառքն բոլանդակ, որում անուն Ընձաքիարս կոչէին ‖։ Որով Ռշտունեաց գաւառ յայսմ կողմանէ լե-

(1) Այս ըստ եղիշէի. զի Ե ղողարայ՝ չորրորդ դասի զկնի կաթուղիկոսին նախ քան զեպիսկոպոսն մանձկերտի, և զկնի եպիսկոպոսին տարօնոյ։

(2) Յիշատակի 'ի պատմութե հացիւնեաց խաչին։

(3) Այսինքն է՝ զսահմանսն որ ընդ մէջ լերին երկաթահատաց էին և ընդ Ռշտունիս՝ բաժանէր այս լեառն Ընձաքիարս, որպէս և հին վարք 'սբյն որ 'ի ճառընտրի՝ զայն ակնարկէ։

նի սահմանակից աղձնեաց, զի լեառն երկաթահատաց է յաղձնիս։

Յետ ժամանակաց կոչեցաւ լեառնս Կապուտոյն, որպէս յայտ է 'ի պատմութէ բուզանդայ և յայսմաւուրացն, զի ուր բուզանդ զլեառնս յոր եւ'ոբն յակոբ անիծանել զերկիրն ըռշտունեաց, և զլեառն յորոյ ստորոտին բղխեցոյց աղբիւր, կոչէ Ընձաքարս, յայսմաւուրքն 'ի դեկտ. 15. 'ի նմին պատմութե զերկոսին դիպուածս ևս դնէ 'ի լեառն Կապուտոյն. յայս անուն կոչի մինչև ցայժմ Կապուտկող, զոր մէ տես 'ի Նոր Հայաստան. Թղթ. 147։

Իսկ իբրև զկնի ժամանակաց փոխադրեցաւ անդ մասն խաչ'ի նշխարաց 'ոբյն յակոբայ, կառուցաւ անդէն և եկեղեցի, զորոյ զտեղւոյն նշանակէ հին վարք 'ոբյն որ 'ի Ճառընտրի. զի յորժամ բերողք նշխարաց խչին յայս կոյս ընդ զառ 'ի վայր երկաթահատ լերին 'ի ձորակն նորին, և կամէին մուծանել 'ի սահմանս գաւառին ըռշտունեաց, անշարժ արգելան, մինչև հրեշտակ ՚այ երևեալ՝ հրամայեաց անդանօր հանգուցանել։ Որոց ասէ, * Նկատեալ 'ի ձորակէն (նոյն երկաթահատ լերին,) տեղի մի բարձրաւանդակ, (որ է նոյն իսկ ստորոտ ընձաքիարս լերին,) և անդ հիմնարկութի առնէին 'ոբյ եկեղեցւոյ, և ելեալ համբաւ 'ոբ աջին, և անդր հասանէին 'ի մօտաւորաց և 'ի հեռաւորաց ընծայաբերեալ‖։ Նոյա շինեցաւ անդէն և վանք մեծափառ, և անուանեցաւ ՍԲ Յակոբ, որպէս գրեալ կայ 'ի միում ձեռագիր յայսմաւուրաց։

Իսկ թէ բարձրաւանդակ տեղին ուր շինեցաւ եկեղեցին՝ և զկնի մենաստանն՝ էր 'ի ստորոտ Ընձաքիարս լերին, յայտ է և անտի՝ զի յայսմաւուրք զաղբիւրն բղխեալ 'ի ձեռն 'ոբյն յակոբայ դնէ լինել'ի վանս Ընձայից, որ է սոյն այս մենաստան։ Իսկ աղբիւրն էր 'ի ստորոտ Ընձաքիարս լերին ըստ յայսմաւուրաց, և ըստ բուզանդայ գ̃. 10. ուր ասէ. * Սոյնպէս և առ ստորոտն ընձաքիարս լերինն 'ի ծովեզերին ըռշտունեաց ծովուն (բղխեցոյց 'ոբն յակոբ աղբիւր,) որ ըստ առաջնոյն օրինակի՝ կոչի և այս աղբիւր յակոբայ՝ մինչև ցայսօր ժամանակի‖։ Նշխարք 'ոբյն որ աստ փոխադրեցաւ՝ էր ճկոյթ աջոյ ձեռին, և հող տապանին՝ որպէս դնի յայսմաւուրս. իսկ 'ի հին վարս նորին դնի՝ կռճ մատին աջոյ ձեռին։

Շինութի մենաստանին որպէս երևի՝ եղև 'ի ժամանակս՝ Թագաւորացն արծրունեաց, յորոց և նորոգեցաւ եկեղեցին. քանզի գրի 'ի հին վարս 'ոբյն՝ թէ զայն տեղի

ՙՈրց նշխարաց զնոյն առեալ Թագաւորին Հայոց յազգէ Արծրունեաց՝ շինեաց փառաւորդ եկեղեցիս, և կարգեաց քահանայս և կրօնաւորս ։ (1)

Ոստան ։ Վան ծովեզերեայ յըռշտունիս, վասն որոյ և Թովմա Արծրունի 'ի յիշելն զայս՝ կոչէ միշտ Ոստանն Ռշտունեաց ։ Ասի և ամրոց շինեալ 'ի գագկայ արքայէ Արծրունեաց, որոյ շինութի և զուարճալի դիրք տեղւոյն՝ ձոխագոյն ստորագրի յերկրորդ պատմութե վարուց գագկայ առ Թովմայի Արծրունւոյ Ե. 6 ։

* 'Ի բազում ամրոցաց պարսպելոց յիւր անուն (այսինքն գագկայ,) յերկուս տեղիս կարի իմն յոյժ հաճեալ նուաճէ անձնակառոյց լինելով. մինն առ եզերբ ծովուն՝ որ է Վանն Ոստան 'ի գաւառին ըռշտունեաց, որ է յոյժ բարեխառն, 'ի չորից ծագաց երկրի օդոց առհասարակ 'ի նա հնչելով. նաև ծառովք պտղաբերովք սաղարթեալ, և այգեւէտ բազմութեք յոյժ վայելչացեալ զարդարի. բղխեն և աղբիւրք բարեխառնք շուրջ զքաղաքաւն՝ օգնականութի մատուցանելով մարդկան 'ի բազում պէտս ։

» Այլ և 'ի հարաւակողմն ուսէ ամրոցին մերձ կայ բարձրաբերձ լեառնն Վարագ, որ 'ի գարնանայինն հասարակաւորութեն մինչև ցաշնանայինն եղանակ ամբարեալ պահէ յինքեան զդալարութի արմատոց և ծաղկանց, և զձիւնահոսն՝ ամբարեալ 'ի պէտս Թագաւորաց, և անմնայնի որ ցանկասցի ոք առնուլ ։ Նաև 'ի գլխոյ լերինն հոսեալ իջանեն գետք սահմանակարկաջք յորդահոսք՝ որով ոռոգանի երկիրն առհասարակ, որք և 'ի ծով անկանելով բղխեն ձկունս մանունս առ 'ի պէտս վայելչութե բնակչաց աշխարհին, և համբարեն ինչս բազումս 'ի գանձս Թագաւորաց, զոր և արքայի առեալ նուիրէ 'ի դարմանս աղքատաց ։

(1) 'Ի նոյն հին վարս սրբոյն յիշատակի Մոգս անուն սահման ինչ՝ յառեալն. « Սահմանն ուր բնակեցաւ սրբն յակովբ՝ ընդ Թրակացւոց իշխանութբն էր, որ այժմ կոչի Մոգս ։ Ուր եթէ բնակութբն իմանայ զհանգիստ նշխարաց սրբյն. Մոգս՝ է անուն տեղւոյն՝ յորում շինեցաւ վերոգրեալ եկեղեցին. իսկ թէ իմանայ զբնակութին 'ի կենդանութե, 'ի պէսպէս տեղիս բնակեցաւ նա, յորմէ չէ մարթ որոշել՝ թէ զինչ տեղի իցէ անուանեալն Մոգս ։ Տես 'ի Նոր հայաստան. Թղթ. 160. 161 ։ Նոյնպէս և վասն Թրակացւոց անուան չունիմք ինչ ծանօթութի, բայց միայն գիտեմք զԹրակի գաւառ պարսկահայոց, որ 'ի տպագրեալն աշխարհագրութեան խորենացւոյն գրի՝ Թրակի ։ Կամ թէ իմանալով 'ի վերայ բնակութե սրբոյն, Թրակացի անուանէ զկայսերս Ե որոց ձեռամբ էին այն տե-

» Նոյն ինքն գագաթն ամրոցին է ծովահայեաց, և յոյժ վայելուչ. եթէ շարժեսցի ծով յուզեալ 'ի հողմոց՝ ծաղկաձև ալիքն զբօսացուցանողք և վա[յել]ուչք երևին. և եթէ մաքուր յօդոյ լինիցի՝ զամենեցուն աչս գրաւէ զնուրն տեսանել ծաւալումն:

» Սան որոյ և արքայի ձեռն արկեալ շինէ 'ի նմա տաճարս և սենեակս և փողոցս հրաշալիս պատկերակերպս և ազգի ազգի յօրինուածս, զոր ոչ բաւեմ պատմել. պարըսպէ և զծովակողմն զօրաւոր վիմօք, դնելով զհիմունսն յանհնարին խորութե: Շինէ և 'ի գլուխ պարսպին ընդդէմ ծովուն տաճար մի ձեմարանոց ոսկեզարդ և պէսպէս պաճուճեալ դեղովք՝ արեգակնահրաշ ճառագայթաձևս 'ի խաղտանս աչաց և յուրախութի սրտի՝ նոքեան և իւրոց արժանեացն: Իսկ զդրունս կազմեալ կամարաձևս օդաբերս զովացուցիչս, միանգամայն և լուսանցոյցս շողախաղացս, որք 'ի ծագել և 'ի մտանել արեգականն՝ փայլատակելով 'ի վերայ ծովուն՝ շող գործեն 'ի սիրտս տաճարին. և յերփն երփն շրջշրջելով զդրօշեալ պատկերատիպն և զզանազան յօրինուածսն՝ զմիտս հիացուցանէ զտեսողացն, և 'ի վեր անդր անցանէ քան ըզպատմողաց դիտութին. իսկ մեր 'ի բազմաց զսակաւն յիշատակելով՝ ահա ասացաք որ ինչ յաղագս Ոստանն աւանի ||:

Պատմէ այլուր դ. 11. և զշինութի կամ զնորոգութի եկեղեցւոյ տրը կուսին 'ի նմին գագկայ արքայէ. * Շինեաց գագիկ պարսպաւոր ամրափակութե զբլուրն յՈստանին ուշտունեաց՝ զաւերեալն 'ի բազում ամաց շինեալ նորոգեաց. և զեկեղեցին որ 'ի նմա՝ յանուանակոչութի տր ածածնին մարիամայ, և զարդարեաց զնա մեծագանձ սպասուք, և եդ 'ի նմա զխաչն զոր յիշեցաք վերագոյն, յորոյ ձեռն ծանուցաւ զօրութի հրաշագործ ||:

Ոկնի այսր շինութե գագկայ երևելի եղև ոստան, վասն որոյ յայսմաւուրս փետրվարի 27. ոստան միանգամայն ընդ վանայ կոչի աթոռ հայրենեաց սենեքարիմայ արքային արծրունեաց՝ իբր մի յարքայանիստ քաղաքաց:

Յամի 1396. յայս քաղաք նահատակեցաւ զաքարիա կաթուղիկոս աղթամարայ: (1) 'Ի պհբ. (1423.) սքանդար պէկն յաւեր դարձոյց զվան քաղաք, և զոստան ան-

ղեբ. և կոչին Թրակացի՝ զի մայրաքաղաք Նոցա բիւզանդիա է 'ի Թրակիա գաւառի:

(1) Յայսմաւ". 'ի 26. յունիսի=

մարդաբնակ աւար ։ (1) Տես 'ի Նոր Հայաստան. Թղթ. 158 ։

Աճաւաշտ ։ Պնեօղ՝ մերձ 'ի յոստան, ուր էին ապարանք վարդ պատրկի, և յորում վերոգրեալ գագիկ արքայն աւրար այլ շինութիւս նախ քան զԹագաւորելն իւր մինչդեռ էր զօրագլուխ ։ * Իսկ 'ի տիրական զօրավարութեան գագկայ (տես Թովմա արծրունի դ. 11.) սկզբնաւորեալ ձեռակերտ իւր՝ շինեաց զհողաբլուր բարձրաւանդակն 'ի Աճաւաշտ գեօղ, յափն գետոյն յեւս կոյս՝ որ հայի յոստանն ըռշտունեաց, յորում տեղւոջ ապարանք պարըսպաւորք վարդ պատրկի ըռշտունոյ հայկազնոյ, և վերնակացու նման Թողդըր զյովհաննէս ոմն քահանայ .. յորում տեղւոջ բանակ կրօնաւորաց կարգեաց, և հաւատաց զառաջնորդութիւն նախատացեալ քահանայն ... և զատուցանէ զօրավարն վանիցն գեօղս բաւական առ ընկալումն հիւրոցն 'ի տեսչութիւն աղքատացն, շինէ անդ եկեղեցի վայելչապէս պայծառութբ, և անուանէ զնա յանուն սր Պետրոսի առաքելոյն ։

Նորագեօղ ։ Ըստ՝ զորմէ Թովմա արծրունի դ. 2. * Ըստ գուամիկ Նորագեղջ աւանին ուշտունեաց առեալ ածէն 'ի տեղի վաճառուն ոստանին ուշտունեաց, արկեալ տուռունս 'ի պարանոցս, հանեն ընդ սուր (աստպատակքն բուղայի) ։ Զնոյն յիշատակէ և այլուր դ. 13. * Առեալ 'ի զէն և յասպազէն 'ի Նորագեօղ ըռշտունեաց ։ Այժմ կրկին գտանին Նոր գեղ. 'ի կողմանս վանայ ։

Ոստանիկերտ ։ Տեղի ծովեզերեայ՝ ուստի մանաճիհր ըռշտունի զգերեալն վիճակի սբյն յակոբայ մծբնայ հայրապետի եւ գահավիժել 'ի ծով. յիշէ զայս տեղի և Թովմա արծրունի դ. 2. կոչելով Բերդ Ոստանիկերտ, որ զբերդ նորա յայտ առնէ յապառաժի ։ (2)

(1) Որպէս պատմէ անանուն շարունակողն սամուէլի ։

(2) Անունս Ոստանիկերտ՝ ուրեք ուրեք գրի և Ոստանագիկերտ, զի բերդն՝ ուր մանաճիհր զգերեալն եդ 'ի կապանս, 'ի վերոգրեալ հին վարս սբյն (գրեալ 'ի Թուականին ռհգ.) գրի Ոստանագիկերտ. * Պնձեր զերկոտասան սարկաւագունսն 'ի բերդին Ոստանագկերտ կոչեցեալ ։ Իսկ յայլ վարս նորին սբյ (որ գրեալ է 'ի մաղաքիայ աշակերտէ մարուգէի, և գտանի 'ի հին ճառընտրի ուղղագիր քան զվերոգրեալն.) նոյն բերդ գրի Ոստանիկերտ. * Եւ մանաճիհրն ուշտունի տարեալ գերի յերեցանց և 'ի սարկաւագաց որ շուրջ զքաղաքաւն էին՝ և գնաց յերկիր իւր, և տարեալ զնոսա 'ի բերդն որ մերձ էր 'ի սահմանս ուշտունեաց՝ որ կոչի Ոստանակերտ ։ Ցայսմանէ 'ի ձե

Անկանի 'ի ռշտունիս. քանզի յայսմաւուրս 'ի 15 դեկտեմբերի զերկիրն զոր 'ի վերոյ կոչէ Գուատա ռշտունեաց, ստորև կոչէ՝ Գուատա Մանակերտոյ. * Նաև գաւառն Մանակերտոյ (1) մնաց այնպէս ընդ անիծիւք (ոբյն յակոբայ) զամս Է‖ Ըստ 'ի հին վարս Ներսիսի ոբյ որ 'ի Ճառընտրի՝ գտնի. * Նաև զերիս ամս ընդ անիծիւք եկաց երկիրն ռշտունեաց‖ Այժմ կոչի Աբարաջուր ըստ վկայելոյ յայսմաւուրաց՝ որ կայ մինչև ցայսօր։ Տես 'ի Նոր Հայաստան. Թղթ. 159։

Պարծիս։ Գիւղ՝ որ յայսմաւուրս 'ի 22 օգոստոսի գտնի յայս գաւառ. * Գնացեալ հասին 'ի գաւառն ռշտունեաց 'ի վերայ գեղջին՝ որ կոչի Պարծիս, և անդ դադարեաց եկաց աստղն 'ի բարձրահայեաց տեղւոջ. և անդ եդին զնշխար ոբ առաքելոյն (Թովմայի) 'ի քարեայ տապանի, և շինեալ եկեղեցի՝ եդին 'ի դրանդի եկեղեցւոյն. և շինեցաւ տեղին վանք միաբանակեցաց‖ Այսպէս գտնի և 'ի ձեռագիր յայսմաւուրս։

Սակայն յերկուս հին Ճառընտիրս 'ի նմին պատմութեան պատմի՝ թէ հուսկ յետոյ նշխարք ոբյ առաքելոյն փոխադրեցաւ ոչ 'ի Պարծիս գիւղ՝ որպէս գտնի յայսմաւուրս, այլ 'ի Պծէծօ գիւղ՝ 'ի մօտակայս մանազկերտոյ. * Գնաց

ռագիր օրինակ ինչ յայսմաւուրաց 'ի վարս Ներսէսի ոբյն յակոբայ՝ 'ի վերայ Մանակերտ անուանս 'ի կրկին տեղիս ևս եդեալ կայ տառս Զ. զՄանակերտն ուղղելով 'ի Մանազկերտ. և հակառակ այսմ այլուր 'ի հին Ճառընտրի 'ի բաց բարձեալ է տառն Զ. առ 'ի զՄանազկերտն ուղղել 'ի Մանակերտ։ Տես զայսմանէ և 'ի ստորև 'ի վերլուծութիս Պործիս գեղջն։

Այլ զՄանազկերտ գիտեմք լինել 'ի հարք գաւառի, և երևի լինել հեռի 'ի ծովեզերաց, և ո՛չ առ ծովեզերբ՝ որպէս Մանակերտն ըստ ցուցանելոյ յայսմաւուրաց, ուստի և մանաճիհր զգերեալսն ետ ընկենուլ 'ի ծով, (թէպէտ և 'ի Ճառընտիրս Մանակերտն յիշատակի միայն իբրև տեղի՝ ուր մանաճիհր ետ զգերեալսն 'ի կապանս, և ո՛չինչ յիշատակի թէ և անտի ընկեց 'ի ծով։) Մարթ է ևս ասել, եթէ գուցէ փոխանակ գրելոյ Մանաճիհրկերտ (իբր Մանաճիհրակերտ,) վրիպակաւ գրեցաւ Մանաչկերտ, կամ Մանակերտ։

Եւ այսպէս այս տարբերութիւնք կարծիս արկանեն 'ի միտս քննողաց՝ թէ կամ յաղաւաղելոյ գըրչաց, և կամ յաղաւաղելոյ բերանոյ ռամկին առեալ է ո՛չ մի անգին փոխանակ միւսոյն՝ զանազան տեղիս կարծելով զմի և զնոյն տեղի. այլ մի անուն փոխանակ միւսոյն, այսինքն կամ անուանս Մանազկերտ փոխանակ Մանակերտի, և կամ Մանակերտ փոխանակ Մանազկերտի. և յերկբայս արկանեն՝ թէ քաղաքն Մանծկերտ, զորմէ յայսմաւուրս 'ի 1. յունիսի պատմի՝ եթէ Սենեքարիմ արքայ արծրունեաց ետ կայսեր՝ (զոր և ոմանք գրեն Մանծկերտ.) թերևս է նոյն այս բերդ, և ո՛չ Մանազկերտն որ 'ի հարք։

(1) 'Ի միումն 'ի ձեռագիր յայսմաւուրաց գրի ստէն՝ Գուատա Մանակերտոյ. և 'ի վերոյ՝ Մանակերտ։

զկնի լուսոյն մինչև ցբլրակ մի՝ որ կայ հանդէպ մանազ-կերտոյ (1) 'ի վերայ գեղջն որ կոչի Պծիծս (կամ ըստ ուղղագոյն օրինակի՝ Բծէծս)... և նախարարք աշխար-հին՝ որ էին 'ի մեծ տանէն արծրունեաց, վանք շինեցին զտեղին, և կարգեցին 'ի նմա քահանայս հանդերձ կրօ-նաւորօք, և փառաւորեցին զտեղին առաւելապէս ||։

Գռուկանան ։ Գիւղ՝ յիշատակեալ 'ի ղևոնդեայ 'ի գլ. Է. յաւելն. * Օ այնու ժամանակաւ դարձեալ այլ հէն դայր 'ի վերայ զօրուն՝ որ 'ի կողմանս վասպուրականի աշխար-հին, և եկեալ յանդիմանեալ լինէին 'ի գաւառն ռըշտու-նեաց՝ 'ի գիւղն որում Գռուկանան կոչեն, անդ յանդի-ման լինէին միմեանց ||։

Տըղ ։ Գիւղ՝ յիշատակեալ 'ի յիշատակարանս ձնչ գրոց, ուր ասի. * Գրեցաւ 'ի Թուականիս հայոց պնդ. 'ի յերկիրս ռըշտունեաց, 'ի գեաւղս՝ որ կոչի Տըղ... 'ի հայրապետութե տն դաւթի ||։

Նարէկ ։ Այս անուն կոչի Ոստան կամ Մենաստանն՝ որ հռչակաւոր գտաւ վասն սրբութե և հռետորութեան տեառն Գրիգորի որդւոյ տն խոսրովու անձևացեաց եպիս-կոպոսի, որ փայլեցաւ 'ի սմա 'ի Ժ. դարուն, և յանուա-նէ կոչեցաւ Նարեկացի ։ (2)

Շինեցաւ այս մենաստան 'ի նմին Ժ. դարու 'ի կրօ-նաւորաց հայոց բնակելոց 'ի փոքր հայս, ուստի հալա-ծեալ 'ի յունաց՝ աստ և անդ 'ի մեծն հայս շինեցին միայ-նարանս. * Այսպէս և յայսմ ժամանակիս (ասէ ասողիկ Գ. Է.) շինեցաւ Նարեկ յռըշտունեաց գաւառին նոյն կարգադրութբ՝ (3) բազմազարդ պաշտօնատպայծառ եր-գեցողօք, և գրական գիտողօք ||։

(1) 'Ի միւս ձեռագրի ևս նոյն-պէս գրեալ կայ Հանդէպ Մանազկեր-տոյ. այլ զկնի 'ի բաց բարձեալ է տառս Զ, որպէս գրեցաք 'ի վերոյ. որով եթէ անուն գեղջն ոչ յար-մարի ընդ անուան որ դնի յայսմա-ւուրս, դէթ յարմարի անուն գաւառին. քանզի գաւառն ռըշ-տունեաց 'ի նոյն իսկ յայսմա-ւուրս 'ի 15 դեկտ". կոչի նաև գա-ւառ Մանակերտոյ՝ որպէս ցու-ցաւ 'ի վերոյ. և արդարև զնոյն ցուցանեն նաև բանք ձեռագրացն՝ որք գրեն, թէ արծրունիք շինե-ցին անդէն վանս, քանզի արծրու-նեաց սեպհական էր վասպուրա-կան նահանգ՝ ուր էր Մանակերտ, և ոչ տուրուբերան՝ ուր Մանազ-կերտն էր ։ Զնոյն հաստատէ և նոյն իսկ Վանք նըյն թովմայի ա-ռաքելոյն՝ որ կայ մինչև ցայսօր մերձ 'ի ծովեզր աղթամարայ, և ոչ ուր էր մանազկերտ ։ Տես 'ի Նոր հայաստան. թղթ. 146 ։

(2) Լըքիէն 'ի հատորն ա. թղթ. 1440. զՆարեկ կարծէ լինել Քա-ղաք Եպիսկոպոսանիստ, որպէս և զՏէրն գրիգոր նարեկացի Եպիսկո-պոս, զհետ երթեալ վրիպանաց կղեմէս գալանոսի ։

(3) Այսինքն՝ ըստ կարգադրու-թե կամրջաձոր և հոռոմոց Վա-

շարայարեալ տողադրէ զհաստակառոյցն վիմաց դարգս․ յորոյ վերայ լար եդեալ ձգէ զպարիսպն շուրջանակի՝ իբր ձիարշաւանօք հինգ։

« Այլ պարիսպն է հրաշակերտ ահեղակերպ բարձրաբերձ, լայնանիստ բրգամբք և բարձրացեալ աշտարակօք զարդարեալ, անկիւնաւոր խորանանման՝ տախտաձև յինքեան ունելով գահոյք սրուանաց․ յորում հանդերձ որդւովք և ազատակոյտ զօրօք միշտ ուրախանայր արքայ։ Իսկ և զգլուխս պարսպին ածեալ ՚ի կիրճս դըժուարածս քարանձաւին ՚ի համբոյրս միմեանց մերձեցուցանէ, ՚ի շրթունս խորայատակ հիմանց ծովուն դնէ դրունս ահաւորատեսս հաստահեղոյս բևեռափակս։

« Որով և զմասն ինչ ծովուն ՚ի կղզին կոյս հատանելով հրաշալիս իմն ներգործեաց, բազում նաւաց յօրինեալ խաղաղ և անքոյթ նաւահանգիստ․ բարձրագոյն հրաշակերտեաց քան Աղեքսանդրին ՚ի մակեդոնին քաղաքի․ և որպէս ինձ թուի՝ զանցոյց զարմանալեօք զՇամիրամեան փորուածոյ սենեկօքն, և զամբարտակաւ պետոյն (1) որ առ ստորոտաւ լերին վարագայ, զի նորայն գմնեայ ՚ի վերայ ցամաքի, իսկ սա ՚ի մեծ խորոց ծովուս արուեստակալ հարստահարէ զամենայն միտս և զգործս իմաստնոցն յառաջ քան զինքն եղելոց ‖։

Պատմէ ապա զշինութի քաղաքին՝ զոր կառոյց ՚ի խընդրոյ այլոց․ * Այնուհետև ժողովեալ (ասէ) ՚ի դուռն արքայի իշխանաց և տերանց, ազատաց և ռամկաց, եպիսկոպոսաց և կրօնաւորաց, զի ամենեքեան ան ունդր փութապէս շինուածս և ձեռակերտս հաստատեսցեն, հրաման տայցէ՝ զի լինիցի տեղի ապաստանի ամենայն հինից ՚ի թշնամեաց եկելոց։ Այլ թագաւորն զթացեալ՝ ոչ արգելու զխնդրեալ պարգևսն, և զկնի հնգից ամաց՝ յորմէ հետէ սկսան շինել՝ պայծառացեալ բարձրացաւ շինութի քաղաքին առաւել քան զառաւել։ Յայնժամ և իւր իսկ արքայի ամենիմաստ հաստողութեն հանդերձ բազում արուեստաւորօք զլար ճարտարութե ՚ի ձեռն առեալ՝ գծել միանգամայն և գծագրել նշանակել առ ստորոտաւ լերինն՝ որ է գագաթն կղզւոյն զտեղիս սրբացուցանողս վայելչաւորս ըստ արժանի կայենից արքայա-

(1) Այսպէս յօրինակին, որ թերևս ստուգագոյն օրինակօք ուղղագրեսցի ըստ ժամանակին. զի մեզ ընտրելի է յաւէտ յանստոյգս սխալիլ հաւատարմութբ, քան թէ ըստ մտի ուղղագրել։

կամ խուրջն համգստեան, ձգելով պարսպունս, յարդարելով զփողոցս, և դարս դարաստանաց, և գահ ըստ գահից տէրութեց, և բուրաստանս և պարտէզս բուրաստանաց և ծաղկոցաց, որոշեալ հովիտս, զորս վաղվաղակի ածեալ 'ի կատարումն հասուցանէ զամենայնն. Եւ և ծառաստունկ բազում, զոր ոռոգեալ արբեցուցանեն 'ի բարեհամ և անսպառ աղբերէն՝ որ ակնարկելովն խնամողին ա̃յ՝ կայ 'ի մէջ քաղաքին ||:

Նաև որպէս յայտ է՝ նախնիք չէին շինեալ անդ քաղաք, այլ միայն ամրոց 'ի պատսպարել. իսկ գաղիկ ոչ միայն հիմնեաց և 'ի կատար հասոյց զքաղաքն, այլ և յամրոցի անդ արար զանազան շինուածս, քանզի * Պարսպէ (ասէ) անմերձենալի ամրութբ և զծայրս ամրոցին, և շինեալ 'ի նմա շտեմարանս մեծամեծս և համբարանոցս, միանգամայն և տունս զանձուց և ապաղինաց անհուն բազմութբ ||:

Սքանչագործ եղև և շինուած տաճարին, որ էր պալատ 'ի պէտս զբօսանաց համդիսի, և ոչ 'ի պէտս եկեղեցւոյ. * Հրամայէ (ասէ գաղիկ) Թագաւորին շինել տաճար մի քառանկիւն ինն. կանգնաւ ունելով զչափ լայնութն և երկայնութն, նմանապէս և 'ի բարձրութի. որոյ որմոյն լայնութին երիւք մեծաքայլութբ չափով ունի զպարզուածսն. գունդ անապակ կրոց և քարի իբրև զհալուածս կապարի և պղնձոյ ընդ միմեանս խառնեալ։ Նաև շինուած տաճարին 'ի հիմանց անտի մինչև ցդլուխ նորին 'ի Թուխս կազմեալ, առանց սեանց ունի զհաստատութի... Ունի և խորանն կամարակիցս և անկիւնս և շրջապատս գեղապաճոյճս, անթիւ մտաց և անզննելի աչաց. ունի և գումբէթս երկնահարթս ոսկեզարդս և լուսաճաճանչս... Նաև է կարգ շինուածոյ տաճարին ահեղին և զարմանալի... Նա 'ի նմա ոսկէզարդ դահոյք՝ յորս բազմեալ երևի արքայ նայելի ձոխութբ. շուրջ զիւրեաւ ունելով պատանեակս լուսատեսակս սպասաւորս ուրախութե. ընդ նմին և դասս կուսանաց և խաղս աղջկանց զարմանալոյ արժանիս. անդէն և սուսերամերկաց հոյլք, և ըմբշամարտաց պատերազմունք. անդ և դասք առեւծուց և այլոց գազանաց. և անդ երամք հաւուց զարդարեալք 'ի պէսպէս պաճուճանս... Նդեալ են 'ի նա (այսինքն՝ 'ի տաճարն) դրունք հաստուածոյք մանր յօրինուածովք և հրաշալի գեղգեղմամբ. 'ի բանալն իւրեանց երկբացիկք են օդաբերք զովացուցիչք.

իսկ հուպ առ միմեանս գոլով երկեքին իբրև զմի պատկեր։

Պատմեաց մեզ և հաւատարիմ ոստիկան մի 'ի գործավարաց քաղաքին, եթէ եմուտ 'ի շինուած տաճարին երկաթ՝ լտերս իբրև երկերիւր հազար... Իսկ և դմրա փառաց տաճարին՝ յամենայն կողմանց զաւ      մէջ քաղաքին երևի իբրև զմեծ մի բլուր, ոչինչ նուաղեալ բարձրութեամբ քան զքարանձաւ ծայր կղզւոյն ‖ ։

Ըստ այսմ ստորագրէ ստորև Ե. Ց. և զհոյակապ շինուած եկեղեցւոյն. * Նա քանզի ճարտարապետ արուեստին (ասէ) էր Սնունէն՝ զոր 'ի վեր անդր ցուցաք, այր լի իմաստութեամբ և զօրաւոր 'ի գործս իւր, հրաշակերտէ զեկեղեցին զարմանագործ արուեստիւ. և զոր վերագոյն ցուցաք կրօնաւորն՝ ձեռն տայ նկարագրել զքարինս ճշգրտագործ նմանահանութեամբ, սկսեալ յաբրահամայ և 'ի դաւթէ, և մինչև ցտէր մեր յս քս, զդասս մարգարէից և առաքելոց յօրինեալ ըստ իւրաքանչիւր հանդիսի զարմանագործ տեսլեամբ ստեղծագործեալ ջոկադրէ։

Նաև 'ի կարգս եկեղեցւոյն զհոլովս երկոց և զերամս հաւուց, միանգամայն և զդասս գազանաց խողից և առիւծուց, ցլուց և արջոց ընդդէմ միմեանց զարդարեալս զկենդանականին նոցա յուշ առնելով զմարտ՝ որ է յոյժ ըղձալի իմաստնոց։ Ածեալ զթիկամբք եկեղեցւոյն՝ և շրջապատ պարունակ մի պանծալի մանրամասն հատուածովք յօրինեալք, կերպագրեալ որթս խաղողաբերս, այգեգործովք և գազանովք հանդերձ համակեալք. որոց և կերպարանքն այլ և այլ զանազանութեամբք ըստ իւրաքանչիւր մասին առբերեն զտեսակս։

Իսկ 'ի չորից կողմանց 'ի վերայ գագաթան սրբութեցն ճշգրտագործեալ զչորից աւետարանչացն պատկերս... նմանագրելով և զփրկչական պատկերն՝ որ .. է 'ի կամարս արևմտական խորանին։ Նմանահան ճշգրտութեամբ յօրինեալ է ընդդէմ փրկչին և զփառազարդ պատկեր արքային գագկայ, որ մեծապարծ հաւատով բարձեալ ունի զեկեղեցին 'ի վերայ բազկացն...։

Նաև 'ի հարաւակողմ կուսէ խորանին 'ի վերայ դրան եկեղեցւոյն՝ յօրինեալ է տեղի գահոյից 'ի բարձանց 'ի խոնարհ, կամարաձև աստիճանօք զէջսն ունելով, որպէս զի իցէ տեղի աղօթից թագաւորին զուսպ և զերծ 'ի մարդկանէ... Իսկ 'ի ներքուստ կողմանէ զսրբութիւն սրբութեցն հրաշալիս իմն յօրինէ նկարապաճոյճ դեղովք, դրամբք արծաթապատօք, և լի ոսկեհուռն զար-

դիւք, ոսկեպատ պատկերօք, և ականիք պատուականօք, և մարգարտաշիւս զարդիւք, և պէսպէս երևելի և պայծառ սպասիւք ||։ Այս դրօշուածք ըստ մասին երևին մինչև ցայժմ, զորոց տես և 'ի Նոր Հայաստան. Թղթ. 152.

Ո՛չ յիշէ աստէն Թովմա արծրունի՝ թէ յորում անուն կառուցաւ եկեղեցին, բայց այլք կոչեն յանուն սրբ խաչին. զնոյն ակնարկէ 'ի հարևանցի և նոյն ինքն Թովմաս յառաջին վարս Գագկայ։ Նաև վասն այսորիկ զուխտն կամ զմենաստանն աղթամարայ վարդան աշխարհագիր կոչէ յանուն սրբ Խաչի, յոր անուն կոչի մինչև ցայսօր (1)։ Տես և 'ի Նոր Հայաստան ։

Ճարտասանական պատմութիւն Թովմայի արծրունւոյ յիշատակէ զայլ ևս նշխարս որք գտանէին աստէն՝ յասելն. * Հանապազ սպասաւորէր սրբ ուխտեացն՝ որ էին 'ի սրբ կաթողիկէն յանձազարդ և 'ի գեղապաճոյճ սրբ եկեղեցւոյն և գեղապանծ անուանակոչութիւն սրբ Խաչին. զի զնա ընտրեաց ած, և հաճեցաւ բնակել 'ի նմա. և եդ 'ի պահեստի զգանձս ածայինս՝ զԱթոռ մերոյ սրբ լուսաւորչին զպարթևին գրիգորի, և զՍեղանն սրբարար ածային խորհրդոյն, և զԳօտի սրբ միջոյն, և զԳաւազան ամենազօր աջոյն՝ որ հովուէր զժողովուրդն ած ... և զՀողաթափս աշխատասէր ոտիցն սրբ կուսին Հռիփսիմեայ, և զՓողապատն ներկեալ սրբ արեամբն, և զԲազուկ մարտիրոսին տղային աբդլմսեհի՝ ազգակցի (2) պրոտոս (3) կուրապաղատին, և զայլ ևս նշխարս մարտիրոսացն ||։

(1) Թերևս ասա բերեալ եղև խաչն դպրեվանից, և վասն այնորիկ կոչեցաւ յանուն Սբ խաչի. քանզի վարդան յետ գրելոյ՝ թէ Թէոդորոս չինեաց զեկեղեցին աղթամարայ. իսկ և իսկ յարէ. *'Ի դպրավանից տարան զխաչն՝ որ յանուն սրբ ածածնին || և այլն։ Մանաւանդ զի երկու օրինակք (թէպէտ և նորք և ոչ հնագիր՝) յաւելուն զյօդս Ն՝ յասելն. * Շինեաց զեկեղեցին աղթամարայ, և 'ի դպրավանիցն տարան զխաչն ||. և այլն ։

(2) Յօրինակին վրիպակաւ գրի Աշոտոյի ։

(3) Պրոտոս՝ է յունական անուն պատուոյ. որ առնուա գրի՝ Բրօտօ. սովին անուամբ կոչէ այս հեղինակ զԱբդլմսեհ արծրունի՝ որ իշխէր ամուկ բերդին, և այլ տեղեաց ինչ 'ի վասպուրական աշխարհին՝ զկնի բառնալոյ իշխանութեան յունաց 'ի նոյն նահանգէն ։ Իսկ թէ զիարդ Աշոտոյ իցէ Աբդլմսեհի վկայի, չունիմք ինչ հաւաստի գուշակել։ Կամ թերևս այլ ոք իցէ Աբդլմսեհդ այդ 'ի ծանուցեալ վկայէն՝ զոր տօնեմք։ Միայն թէ չիցէ եդեալ գործ զԱշոտոյի բառդ փոխանակ Աբասայի, որ չէ ինչ զարմանք, զի ճշգութիւնք բառից և կշռութիւն եղերաց սակաւ է յոյժ 'ի գիրս

Մենաստանն աղթամարայ 'ի սկիզբն ԺԷ. դարուն եղեւ աթոռ կաթուղիկոսի՝ զորմէ գրեցաք 'ի վեր անդր 'ի ներածութեն նահանգիս. տես անդ, և 'ի թուղթս մեծոփեցին՝ որ գրէ վասն գրիգորի տաթևացւոյ, թէ ընդդէմ զինեցաւ նա այսմ աթոռոյ բանիւ և գրչաւ իւրով (որ է երրև թուղթ շրջաբերական,) և 'ի բաց եհան 'ի հնազանդութենէ նորա զերկիրն քաջբերունւոյ՝ այսինքն զարճէշ:

Յայս գաւառ դնէ վարդան արհադիր զանազան ուխտս՝ այսինքն մենաստանս, յասէ ա. *Յոռըշտունեաց գաւառին կան Սբ ուխտն Նարեկ, Սբ յակոբ, Սբ վարդան, Սբ թումա, Ծնծղնապատ, Նկարէն, և Աղթամար կղզին 'ի մէջ ծովուն, ուր կայ Սբ ուխտն խաչն հրաշաքար՝ զոր շինեաց գագիկ թագաւորն արծրունեաց‖: Այսպէս դնի 'ի տպագրեալն, բայց 'ի ձեռագիրս ոչ յիշատակին այսչափ մենաստանք, այլ միայն Աղթամարայ Սբ խաչն, Նարեկավանք, և Նկարէն:

Ոչխարաց, կամ Ոչխարանից վանք: Յիշատակի 'ի ճառընտիրն 'ի վարս Սրբոց ատոմանց. * Եւ Սրբն մանաճիհր ռշտունի իւր Սրբ ընկերօքն յառաջ անցեալ 'ի սահմանս իւրեանց աշխարհին (որ է ռշտունիք,) կատարեցան 'ի տեղւոջն որ կոչի Ոչխարաց վանք, որ և ամփոփեալ նշխարք ոսկերացն ծածկեալ կան յեկեղեցւոջն որ 'ի բլրին‖:

Յայսմաւուրս օգոստ. 19. ըստ միում ձեռ". գրի Ոչխարանց, և ապա Ոչխարանից. *Իսկ մանաճիհր Սրբն ռըշտունեաց՝ անց, դիմեաց յամուրս իւրոյ գաւառին, որոց զհետ ընթացեալ պարսիցն, և հասեալ կոտորեցին զնոսա 'ի տեղւոջն՝ որ կոչի Ոչխարանց‖: Եւ զկնի՝ վասն մարմնոյ Սրբոցն գրէ. *Եդին 'ի տեղւոջն՝ որ կոչի Ոչխարանից վանք‖:

## ՏՈՍՊ (1):

Է երկրորդ գաւառ երևելի յայսմ վասպուրական նահանգի, որ առ պտղոմեայ կոչի Θωσπῖτις (2): Զնոյն՝

Թովմայի արծրունւոյ, և ևս տուեալ 'ի գրուածս շարունակողի ըղպատմութեն նորա:

(1) Ստէպ գրի այսպէս, և սակաւ ուրեք Տոսբ:

(2) Ե. 13. Թղթ. 156. ըստ տպ". պէրցիոսի: Եւ թէպէտ պտղոմէոս դնէ զնոյն զկնի Անձիտ

Պտղոմ. անուամբ յիշէ Երատոսթենէս առ Ստրաբոնի գիրք ժա. Թղթ. 80. մերձ 'ի պարիսպն Շամիրամայ (1)։ Նոյնպէս և 'ի քաղուածս նորին Ստրաբոնի գիրք ժա. Դաւրոս (ըստ մեզ տօրոս) լեառն մերձ գնի Թէոփանէս և Պոսիդոնէս գաւառաց մեծին Հայոց։

Վան։ Հնագոյն քաղաք 'ի մէջ Հայաստանեայց, և մի յերևելի հին քաղաքաց համօրէն աշխարհի, ուր շինեցան 'ի նախնի ինքնակալաց և 'ի դիւցազանց։ 'Ի սկզբան անդ կոչէր Շաւան (2), ապա կրճատմամբ կոչեցաւ Վան, որպէս յայտ է 'ի բանից Սամուէլի՝ որ ասէ. *Շամիրամ շինէ զՇամիրամն Շաւան, որ այժմ կոչի Վան‖։ Որպէս և Շիրակայ աւանն համառօտելով կոչեցաւ Շիրակվան։ Նաև Եղիշէ Թղթ. 67. ուրոյն յիշէ զՎան, և ուրոյն զՇաւան իբրև յարակցեալ. *Շաւանն զանմատոյց ամուրսն, զգառանի քաղաքն, զանելն, զարտագերս, և զաւանս իւ-

դաւառին 'ի մէջ ականց եփրատայ և տիգրիսի, բայց յայտ է թէ նախնիք բազում ուրեք սխալեցան առաւել 'ի նշանակելն ըստ տեղի կամ զգիրս քաղաքաց ինչ կամ գաւառաց, քան թէ 'ի նշանակելն զհնչումն անուանց նոցա։

(1) Առ նորին Ստրաբոնի Թղթ. 529. յիշատակի 'ի հայաստան տեղի ինչ Օբին անուն՝ 'ի կողմանս պարսպին Շամիրամայ և կորդուաց, որ է եղծեալն Տոսպ անուան։

(2) Անունս Աւան է բնիկ անուն նաև այլում քաղաքադեղջ որ յիշատակի առ յովհաննու կաթուղիկոսի՝ յայլում նահանգի։ Այլ Աւան անուամբ կոչէ զՎան և Մեսրոպ երէց 'ի պատմութեան սբյն Ներսէսի՝ ստորագրելով և զգիրս նորա այսպէս. Եւ անուն անցեալ (մեծին Ներսէսի) ընդ վասպուրական գաւառ, և բազում աւուրս հանգեաւ ուրախութեամբ մեծաւ 'ի մեծ և յանուանի Գիւղաքաղաքն՝ որ ունի զքարաբլուրն մեծ բերդ, աղբերք բարեհամք և պողաբերք անտառք շուրջ զամրոցովքն. և անուն Գեղջին (այսինքն Գիւղաքաղաքին որպէս եդ 'ի վերոյ.) Աւան կոչեցեալ. և սբյն Ներսէսի հանգեաւ 'ի նմա վասն վայելչական տեղւոյն այնորիկ, և լուսազարդեալ սբ եկեղեցեացն որ անդ կային. և վայելչական ծովուն հայելոյ, և օրհնեալ զնոսա սբյն Ներսէսի այսպէս ասելով. Մի նուազեսցիս 'ի բարութեանց քոց յաւիտեան‖։

Բայց ընդարձակօղ Վարդանայ աշխարհագրի յայլուստ ածանցեալ բերէ զանունս Վան, որ անհնին երևի լինել. քանզի *Նինոս (ասէ) ունէր կին զՇամիրամ, որ երկուցեալ 'ի կնոջէն՝ փախեաւ 'ի յելլադա. և նա առաքեաց առ զարմ (այն է՝ որդայ) Հայոց Թագաւորն՝ զի երթիցէ առ նա, և լինիցի նմա այր. և նա անարգեաց զնա, և ոչ կամեցաւ զնայ. և Շամիրամ բազում զօրութեամբ եկն 'ի վերայ զարայի, և պատերազմեալ սպան զարայ, և ինքն Թագաւորեաց Հայոց ժն. տարի։ Եւ շինեաց զերկրդն վանայ, և կոչեաց զանուն քաղաքին Ամորոփան, զոր յետոյ երուանդ փոխեաց, և եդ զանուն քաղաքին Երուանդաւան. զոր յետոյ հրամանաւ արտաշէսի զԵրուանդն բարձին, և ճնաց անուն քաղաքին Վան‖։ Այլ զԵրուանդաւանն այլուր գիտեմք լինել 'ի պատմութեան խորենացւոյն։ Հաւանական թուի և աւանդութիւն՝ թէ Վան թագաւոր հայկազուն նորոգեալ զայդ քաղաք, յիւր անուն անուանեաց։

րեանց . . . զՎանն աւան, ընդ նմին զաւառաւն իւր ‖ ։

Այս քաղաք անկանի 'ի Տոսպ գաւառի՝ ըստ որում գնէ յովհաննէս կաթուղիկոս. * Նաւ իբրև եկն նա (այսինքն գագիկ արծրունի) 'ի վան 'ի Տոսպ գաւառի ‖ ։ Յայսմանէ առ խորենացւոյն գ. 35. կոչի քաղաքս Վանտոսպայ ։ Իսկ առ Թովմայի արծրունւոյ իբրև մի անուն յիշատակի Վանտոսպ. որպէս յասելն գ. 17. * Կատարեալ աշտտ զկենանս իւր մեռաւ 'ի Վանտոսպ՝ յԻգ. Թուականութեան հայոց ‖ ։ Այսպէս գնի՝ իբր յեօթն տեղիս ։ Յայսմանէ Թերևս և առ պտղոմեայ յանուն գաւառին և այս քաղաք անուանի Թոսպէա ։

Կոչի նաև Քաղաք շամիրամայ, որպէս յայտ է 'ի խորենացւոյն, որ 'ի Բ. 18. գրէ՝ թէ Նաքափրան զգերութիւն հրէից բնակեցոյց 'ի Քաղաքին շամիրամայ. զոր 'ի գ. 35. ('ի խօսելն զնացանց գերելոց հրէից՝) կոչէ Վանտոսպայ ։ Ըստ այսմ և վարդան 'ի նմին պատմութեան. նոյնպէս և Թովմաս արծրունի՝ յասելն. * Քաղաքն շամիրամայ հրաշակերտն յոյժ և փառաւորագոյն յամենայն կողմանց վասպուրականի ‖ ։ Յայսմի ևս ասէ վան ափշնի ոստիկանին. * Յեղակարծումն եկն եմուտ 'ի Քաղաքն շամիրամայ 'ի Վանտոսպ ‖ ։ Զնոյն է տեսանել և 'ի ա. 14 ։

Իսկ շարունակողն Թովմայի արծրունւոյ կոչէ զվան Շամիրամաշէն. * Առնէին (սենեքերիմ և դերանիկ եղբայր նորին) զանմատոյց ամրոցն զՇամիրամաշէնն զաւանն ըզվան ‖ ։ Նաև յայսմաւուրս 'ի 8 հոկտեմբերի կոչի Ներք Վանայ. * Բնակեցան հանդէպ Շամիրամակերտին, այս է հանդէպ Վանաբերդին ‖ (1) ։

Այսպէս կոչեցաւ վան շինելոյն 'ի Շամիրամայ հրաշակաւոր տիկնոջէն, որոյ յետ մահուան՝ արայի շրջեալ յամառնային ժամանակս 'ի հարաւակողմանս հայաստանեայց, և յոյժ հաճեալ՝ կամեցաւ անդէն շինել քաղաք ինչ յիւր ամարանոց ։ Նաւ Ճանապարհորդեալ ընդ արևելս՝ եհաս յեզր ծովակին աղւոյ, որ այն ինքն է՝ ծով բզնունեաց, և եգիտ անդ երկայնաձև բլուր ձգեալ յարևմուտս հիւսիսոյ. իսկ 'ի միջօրեայ կամ 'ի հարաւոյ կողմանէ՝ քարանձաւ իմն, այսինքն քարալեառն կանգուն և ուղիղ, առ նովաւ բացագոյն անտի՝ հովիտ ինչ դաշ-

(1) Այս հաստատէ զասացեալս դիոդորոս սիկիլեցւոյ, որ (գիրք Բ. Թղթ. 128. ըստ տպ. վեսսէլինկայ՝ յետ պատմելոյ զզանազան շինուածս շամիրամայ՝) գրէ, թէ Բազում շինուածք կառուցեալք 'ի նմանէ յասիա՝ կան մինչև ցայժմ, որք կոչին Գործ շամիրամայ ‖ ։

տանձև և երկայնաձիգ, որ յարևելից կողմանէ լերինն իջանէր մինչև յեզր ծովուն ։

'Ի նոյն հովտին ետես հոսանս ջուրց բարեհամից, և շինս բազում յօրինեալս յաջմէ և յահեկէ ջուրց․ իսկ յարևմտից կողմանէ բլրոյն՝ լեառն փոքրագոյն․ * Ըստ իմն (ասէ Խորենացին ա̃․ 15․) ակնակառոյց լեալ այրասիրտն այն և կաթոտն Շամիրամ, հրամանն տայ բիւրուց և երկու հազար արանց անարուեստից գործաւորաց յասորեստանեաց, և յայլոց իշխեցելոց, և վեց հազար իւրոց ընտրելոց յամենայն արուեստաւոր գործաւորաց՝ փայտի և քարի, պղնձոյ և երկաթոյ որք ամենեքին կատարեալք իցեն 'ի յարուեստ գիտութեն, ածել անխափան 'ի փափագեալ տեղին ։

Եւ նախ առաջին ետ շինել ամբարտակ գետոյ 'ի մեծ վիմաց․ * Որ կայ (ասէ հաստատուն որպէս ասեն՝) մինչև ցայսօր ժամանակի ։ Եւ 'ի պատառուածս նոյն ամբարտակի գետոյն՝ այժմ որպէս լսեմք, մարդիկ աշխարհին 'ի հէն և 'ի գաղթականս փախստեամբ ամրանան իբր 'ի ծայրս քարանձաւաց լերանց ամրացեալք ։ Եւ թէ ըղփորձ առնուլ դէպ ումեք լինիցի, և ոչ իբր պարսատկաց քար մի արժանաւոր 'ի շինուածոյ ամբարտակին խլել ոք զօրեսցէ, թէ և մեծաւ աշխատութ̃ ջանասցէ ։ Զայս հրաշալի ամբարտակ հատոյց մինչ 'ի քաղաքն, և 'ի միջոցս տակաւ ամաց կատարեաց ամրագոյն պարսպօք և պղնձակերտ դրամբք ։

Ապա շինեաց Ապարանս կրկնայարկս և եռայարկս, (որպէս գնի 'ի ձեռագիրս՝) 'ի պէսպէս գունաւոր քարանց զարդարեալ․ արար և Լուալիս [illegible] [illegible]․ և զմասն ինչ գետոյն անցոյց ընդ մէջ քաղաքին․ * Իսկ զծայր քաղաքին (ասէ), և որ ինչ 'ի նմա գործոյ հրաշակերտութիւնք՝ բազմաց 'ի մարդկանէ ոչ հասու լեալ [1], և ոչ պատմել է կարողութի ։ Զորոյ պարսպեալ [2] ըզգագաթն՝ դժուարամուտս ոմանս և դժոխելանելիս 'ի նմա յօրինէ շինուածս արքայանիստս ... ամենայն թագաւորականաց գործոց որպէս լուաք՝ առաջին և վեհագոյն համարեալ ։

Կառոյց և պէսպէս Տաճարս, Սենեակս օթից, Տունս

(1) 'Ի ձեռագրի միում․ * Ո՛չ սու լեալ, և ոչ պատմել է ։ հասու լինել, և ոչ պատմել է ։ (2) Յերկուս ձեռագիրս․ * Զոխկ յայլում ձեռագրի․ * Ո՛չ հա․ բոյ պարսպեալ զգագաթն ։

զանձուց, և Մլհս երկարս 'ի յարեգդէմ կողմն անդ քարանձաւին, ուր այժմ ոչ ոք կարէ ասել՝ երկաթով գծել ինչ. և ընդ ամենայն երեսս քարին իբր 'ի մոմ բազում գրուածս եա դրոշմել. * Որոյ հայեցուածն միայն զամենայն ոք 'ի զարմանս ածէ ‖ (1).

(1) Առ ստրաբոնի գիրք ԺԱ. թղթ. 529. և գիրք Բ. թղթ. 80. յիշատակի 'ի հայաստան Պուրեւզն Շամիրամայ՝ 'ի կողմանս Օբինի՝ որ մեզ թուի լինել Տօսպ. որպէս գրեցաք 'ի վերոյ: Իսկ առ դիոդորոսի սիկիլիացւոյ գիրք Բ. թղթ. 127. (ըստ տպ. վէսսէլինկայ յամստեղլոտամ 'ի 1746.) յիշատակի շինութի Շամիրամայ՝ զոր արար յեկբատան մարաց, որ մեզ թուի լինել նոյն իսկ շինուն զոր արար 'ի վան. յոյս կարծիս բերեալ 'ի զանազան պատճառաց՝ զորս համառօտիւ կարգեսցուք յառաջիկայդ:

Նախ՝ զի զընիկ զեկբատան մարաց ոչ ոք դնէ 'ի Շամիրամայ շինեալ, և հակառակի երոդոտոսի, և հեղինակի գրոց յուդիթայ՝ որք յայլմէ շինեալ ասեն. Նորին աղագաւ բազումք յարգեաց մերժեն զդիոդորոս՝ իբր յառաստելեաց անտի առեալ զայս շինութի եկբատանայ 'ի Շամիրամայ: Երկրորդ՝ զի Եկբատան կոչեցաւ ոչ մի և եթ քաղաք, այլ նաև այլք 'ի պարսս և յասորիս. ըստ այսմ դուցէ և դիոդորոսի ժողովուրդք մարաց՝ որ յաւուրս նորին, Եկբատան կոչեցին զՎան զմօտակայ քաղաք՝ յանուն Եկբատանայ քաղաքին որ գտանէր յաշխարհին իւրեանց. որպէս և յոյնք զբազում քաղաքս ասիոյ՝ կոչեցին յանուն քաղաքաց որք էին 'ի յունաստան: Երրորդ՝ զի դիոդորոս մի ըստ միոջէ պատմէ զպէսպէս շինուածս՝ զոր արար Շամիրամ յայլ և այլ աշխարհս, և միայն զշինուածս արարեալ 'ի հայաստան՝ (ուրանօր այնչափ երթևեկէր Շամիրամ յամարայնի) ոչինչ յիշատակէ, զորով ոչ արդեօք զանց առնէր եթէ չէր բովանդակեալ զայն կողմն հայաստանեայց 'ի մարաց աշխարհի: Չորրորդ՝ այն ամենայն շինուած՝ զոր պատմէ արարեալ Շամիրամայ 'ի յեկբատան մարաց, նաև գիրքն՝ յարմարին գրից և շինուածոց որ 'ի վան և 'ի շրջակայսն. զի զեկբատան դնէ 'ի դաշտի մերձ 'ի Զուրգէն լեառն՝ որ երկայնաձգի ընդ բազում ասպարէզս, յայն կողմանս արարեալ Շամիրամ ճանապարհ՝ հատանելով զապառաժս, որ մինչև ցայժմ Յիւր տնան կոչի. 'ի քաղաքին շինեաց արքունիս. և զի կարօտութի ջրոյ էր 'ի քաղաքին՝ եած ջուր բազում աշխատութբ և ծախիւք. առ լերամբն էր լիճ ահագին և գետ՝ ուստի եած ջուր. լայնութի ձորոյն 15 ոտնաչափ, բարձրութին 40: Մինչև ցայսվայր դիոդորոս վասն այսր եկբատանայ:

Արդ այս ամենայն յարմարի շինութե և գրից վանայ. զի Զուրգէն լեառն՝ յայլ օրինակս գնի Վուրգէն, որ այն ինքն է Վարագ. դուցէ եղեալ 'ի բառէս Վուրգէ օսն որ թարգմանի՝ Վարգէ կամ Վարագայ լեառն: Երկայնաձև բլուր առ վանաւ յիշատակի և առ խորենացւոյն. արուեստաձև ճանապարհ հատեալ ընդ ապառաժս՝ տեսանի մինչև ցայսօր առ ոստանաւ. մերձ յայն է և ջուրն՝ որ մինչև ցայսօր Յիւր տնան, այսինքն՝ Շամիրամայ ջուր կոչի. բարձր և լայն ձորով, որ ոռոգէ զայգիս և զպարտէզս վանայ: (Տես և 'ի նոր հայաստան 'ի թղթ. 160. 142:) 'Ի վան շինեցան պէսպէս ապարանք. շինուածք արքայանիստք. այն է արքունիք վասն բնակութե Շամիրամայ յամարայնի. առ նովաւ և լիճ ահագին՝ ծովն անուանեալ բզնունեաց: Յաւել և զայն յարմարութի. զի որպէս խորենացին վասն արքայանիստ շինուածոյն վանայ գրէ՝ թէ ամենայն թա-

Իսկ այնչափ էր հաճեալ շամիրամայ ընդ այս քաղաք, զի ամի ամի հանապազ յամառայնի աստ գայր 'ի բնակել. Նմին իրի խորենացին ա. 16. կոչէ զՎան . Շամիրամակերտ : Իսկ արդի ստորագրութիւն՝ ցուցանէ թէ սակաւ ինչ մնացորդք երեւին այժմ 'ի հին շինուածոց աստի շամիրամայ, զորմէ տես 'ի Նոր հայաստան . Թղթ. 139 :

Բարականուր բերդ քաղաքիս առ Թովմայի արծրունւոյ Դ. 11. կոչի Արշակեան թագաւորանիստ, կամ Արշակ : Իսկ միջնաբերդն յիշատակի առ բուզանդայ. Դ. 59. *'Ի միջնաբերդն վան բերդի, որ էր քաղաքն 'ի տոսբ գաւառի: Յիշատակի անդէն և աշտարակ նորին. * Համէին (զհամազասպուհի տիկնին ռշտունեաց) 'ի բարձր աշտարակն որ կայր 'ի վերայ բարձր դահուն քարին՝ որ հայի 'ի կողմն ծովակին 'ի գետոյ կուսէ: Իսկ Թովմա արծրունի ա. 14.

դաւաճանական գործոց զաս շինեաց վէհագոյն, սոյնպէս վասն այսր Եկբատանայ և վասն արքունեաց Նորին գրէ գիոդորոս, թէ քան այլոց տեղեաց [illegible]:

Եւ այսպէս կարի իմն 'ի դէպ դպայ յայս բան գիոդորի՝ զմարս առանուլ փոխանակ հայաստանեայց, ուր 'ի բազում տեղիս շամիրամ արար շինուածս. իսկ 'ի մարս ոչ ոք գնէ թէ շինեաց զեկբատանն: Եւ չէ ինչ օտար 'ի գիոդորայ՝ ըզ հարաւային կողմն հայաստանեայց ուր է վան, կոչել յանուն մարաց. քանզի և սուղ ինչ յառաջ 'ի Թղթ. 125. յայս անուն կոչէ զնոյն կողմն հայաստանեայց. զի գրէ վասն ընթացից եփրատայ և տիգրիսի, թէ յետ անցանելոյ ընդ մարս՝ մտանեն 'ի միջագետս, որք յայտ է թէ նախ քան զիջանելն իւրեանց 'ի միջագետս՝ ընդ հայաստան անցանեն, և ոչ ընդ մարս, որպէս դնեն ամենայն նախնիք. Բ այսմ և գէտրէնոս զբոլոր վասպուրական կոչէ Մարք. զորոյ զբանս եդաք 'ի վերոյ:

Եւ թէպէտ ամենայն բանք գիոդորոսի զԵկբատանայ՝ ոչ յարմարին ճշգրտիւ զվանայ, բայց յոյսպիսի հնութիւն՝ և 'ի մասնագիրս այսչափ հին ժամանակաց՝ բաւական պարտ է համարել զընդհանուր յարմարութիւն, յորժամ ճշգիւ իմանալ զբան հեղինակին յայլուստ բերէ ընդդիմութիւն. (որպէս բերէ ընդդիմութիւն իմանալ վասն բնիկ Եկբատանայ մարաց.) և ոչ պահանջի 'ի հեռաւոր մատենագրէ՝ (որպիսի էր սիկիլիացին գիոդորոս,) ճշգրիտ ստորագրել զամենայն ինչ, զերկիրս ասեմ, և զլիճս հեռաւոր աշխարհի՝ (որպէս էր նմա մարք և հայաստան):

Ըստ այսմ և պտղոմէոս զՏոսպ դնէ վերպակաւ 'ի մէջ ականց տիգրիսի և եփրատայ, և զարտաշատ առ եփրատաւ, և այլն. այսպէս և գիոդորայ չէին ինչ զարմանք դնել զայս Եկբատան երկոտասան ասպարիզօք հեռի յՈրոնդիս լեռնէ՝ որ էր 'ի մարս, և զլիճն համարիլ՝ անոյշ ջուրց, և զգետն 'ի նմանէ ելանել: Եւ զի Որոնդիս լեառն էր գետեւոր, գուցէ գիոդորոս զերկրինս կողմանցն վանայ նոյն համարելով՝ 'ի նոյն անուն կոչեաց. որպէս և ամմիանոս հակառակ գիոդորայ զլեառն առ որով էր Եկբատանն մարաց, ոչ կոչէ Որոնդիս, այլ Յասոնիոս:

րով Նեբրդաքաղաք կոչէ զվան, ուր յետ գրելոյ թէ * Քոյր վարդանայ մամիկոնենի ածեալ 'ի վան տոսպ 'ի քաղաքն շամիրամայ ||, սուղ ինչ զկնի գրէ. * Տանին հանեն (զքոյրն վարդանայ) 'ի բարձրաւանդակ ամրական Նեբրդաքաղաքն, կախեն զհիւսիսային աշտարակէն ||:

Նորոգեաց զայս քաղաք նախ վաղարշակ Ա. Թագաւոր արշակունի` յորոյ ժամանակս էր բազմամարդ. քանզի 'ի քանդելն զօրացն շապհոյ պարսից արքայի զվան առ Ե. արշակաւ` Թիւ գերելոց միայն եհաս 'ի Ծդ. հազար երդ ըստ բուզանդայ, և կամ ոգի` որպէս ցուցանէ Թովմա արծրունի (1):

'Ի վախճան իններորդ դարու` նորոգեաց ինչ ինչ և դերանիկ արծրունի, այլ բազմօք առաւել գագիկ արքայ արծրունեաց որդի դերանկին, որ 'ի բերդին վանայ շինեաց տունս, որպէս գրէ Թովմա արծրունի 'ի Դ. 11. * Շինեաց և 'ի վերայ ամրական քարանձաւին յելս և 'ի մուտս կոյս` Տունս խորախիցս ոսկեզօծս պատկերամեալ, յաւելլով 'ի յառաջագոյն 'ի հօրէ նորա դերանկէն շինեալ ||:

Նաև զճանապարհն ջրոյ 'ի բարձանց բերդին մինչ 'ի ստոր աստիճանաւոր շինեաց. * Իսկ հարաւակողմն կուսէ 'ի ջրամբար արձանագործ քարեղինէն ճանապարհ աստիճանեալ ներքուստ 'ի վեր մինչ 'ի կատար անձաւին` հեշտալիր զել և զէջն յօրինեալ. քարագործ աւազանած կրագործութբ: Այլև պատկանաբար իմաստութբ պատապարեաց ջրմուղ ներքսագոյն երկրի 'ի քարանց տաշելոց փողոցս գնացից ջրոյն կազմեալ. զալ իջանել յելից 'ի ստորոտէ լերինն վարագայ` շեղեալ 'ի հարաւոյ 'ի հիւսիսի 'ի խաղաղ, ընդ լայնանիստ գոգաձև դաշտա-

(1) Բուզանդ Դ. 55. գրէ. * Առին և զամուր քաղաքն` վան որ է 'ի գաւառին տոսպայ, և հրձիգ արարեալ քանդէին զհիմունս նորա, և խաղացուցանէին անտի երդս հինգ հազար հայ, և ութ և տասն հազար երդս հրէայս ||: Այսպէս գնի նաև յերիս ձեռագիրս: Իսկ առ Թովմայի արծրունւոյ. Ա. 14. գրի. * Գան դարձեալ մեհրուժան և վահան ('ի կողմանէ պարսից) և առնուն ըզվան տոսպ, քանդեն աւերեն զգեղեցկաշէն ամրական տեղին, վարեն 'ի գերութն զբնակիչս քաղաքին հինգ հազար զհրէայսն, ութ և տասն հազար զքրիստոնեայսն||: Խորենացին Գ. 35. ոչ պատմէ 'ի մասնաւորի, թէ քանդեցին զվան, այլ ընդհանրապէս յասելն. * Եհաս հրաման շապհոյ զի քանդեալ աւերեսցեն զամրութի ամենայն քաղաքաց || հայոց աշխարհին: Եւ ապա պատմէ թէ զհրէայսն զորս բնակեցուցեալ էր անդէն բազափրանայ զօրապետի միջին տիգրանայ` վարեցին յասպահան:

կանգնեցան եղանել 'ի գագաթն ամրական անձաւին . զբօսնուլ նովաւ առ վճարումն բաւականութե , ըստ մասանց ողորմութեան օժանդակութե քաղաքայարդար ապարանից թագաւորական պաղատի իւրոյ ձեռակերտին' առ հօրն յաւելեալ զարդարեալ դշխուածս իւր ‖ ։ Տես վասն այսր և 'ի Նոր Հայաստան . թղթ . 140 ։

Ի Նմին բերդի կառոյց եկեղեցի յանուն Սրբոյն Գէորգեայ . * Շինեաց ( ասէ ) եկեղեցի մի յամրական քարանձաւի 'ի կատար քարանձաւին' յանուն քաջամարտիկ զօրավարին Սրբոյն Գէորգեայ , և նոյնգունակ զարդու զարդարեաց զնա ‖ ։

Իսկ ստորև բերդին' այլ եկեղեցի յանուն Սրբոյն Սիոնի . * Ստորև ամրականին ( ասէ Թովմա արծրունի ) 'ի գոգաձև տեղւոջն որ առ հիւսիսի առ 'ի շեղ տեսանի , շինեաց եկեղեցի հրաշագործ հրաշագան յօրինուածով , եկեղեցի 'ի տաշեալ քարանց 'ի մանաւազեան քաղաքին (1) 'ի վասն տոսպ . և հիմնեցուցեալ յանուն Սրբոյն Սիոնի որ 'ի Սբ. քաղաքին երուսաղէմ , և յաջմէ սեղանոյն շինեալ ընդ նովիմբ հիմամբ 'ի տեղի յիշատակարանի խաչելութե նն գողգոթայ տեղւոջ . և 'ի վերայ նորա շինեաց եկեղեցի զվերնատանն խորհրդական խորհրդածութեն ... Իսկ 'ի յահեակ կոյս սեղանոյն' շինեաց եկեղեցի 'ի յիշատակ յարութեն քնի ... և 'ի վերայ նորա շինեաց եկեղեցի զհամբարձմանն 'ի յերկինս ‖ ։

Ի ժա . դարու էառ զՎան քաղաք Սրահանգ անուն բռնաւորն' սուղ ինչ զկնի առման անոյ յալփասլանայ , զորմէ գրէ շարունակողն Թովմայի արծրունւոյ . * Ի [illegible] ամն Ներքինի ( ասէ ) ժամդ ... սրահանգ անուն եկեալ էառ յաւարի զգաւառն վասպուրական , և եկն եկաց մինչև ցաւանն Վան , և զնա պաշարեալ տառապեցոյց 'ի տառապանս խիստ , և զնա ես մաշեաց 'ի սուր սուսերի , և զբնակութիւն այրեաց հրով ‖ ։

Նառ և ընկղմիմուր յեւս անդ ժԴ . դարուն . զբազմութի բնակչացն բաց 'ի կանանց և 'ի մանկանց' 'ի բեր-

(1) Օրինակն Թովմայի զոր ունիմք առ մեզ' աղաւաղեալ է յանհմտութե գրչին , վասն որոյ և Մ՛անազաւեան քաղաքն որպէս Թուի 'ի նորին իսկ Թովմայի գրելոցն այլուր' ոչ այլ ինչ է , բայց եթէ Մ՛անազաւեան քաղաքն . որով նշանակի Մ՛անաւազակերտն կամ Մ՛անազկերտն հայքայ ։ Իսկ յայտնի է մասն առաջինկայ բանից Թովմայի' երևի լինել այս , եթէ զի զեկեղեցին սիոնի շինեաց գագիկ 'ի վան' 'ի քարանց տաշելոց 'ի Մ՛անաւազեան քաղաքի ։

դէն 'ի վայր հոսելով, մինչև 'ի բազմութե̃ դիականց՝ վերջին անկեալքն ոչ մեռանէին, որպէս պատմէ Թովմա Մեծոփեցի վկայ ականջալուր և ականատես: Եւ ոչ դադարէր ասէ՝ հարուածն՝ եթէ ահաւոր ձայն ուրուք որ 'ի մինարէէն յիշեցուցանէր զօր դատաստանին՝ ոչ ազդէր 'ի սիրտ բռնաւորին (1):

'Ի սկիզբն ԺԶ. դարուն եառ և Աքմատար՝ յետ ընդերկար պաշարման: Այլ վերջին առումն եղև օսմանեանց 'ի պարսից 'ի հիճրէթի 940 (1533,) որպէս դնէ Ճիհաննիւմայն (2):

Կոխպանից և Մշահաքանից գիւղ: Յիշատակեալ 'ի Թովմայէ արծրունւոյ, յասելն. * Դառնայր աշոտ ընդ զերծ քարանձաւի 'ի յարևելից կուսէ լերինն վարագայ 'ի վերայ գեղջն Կոխպանից, հանդէպ եկեղեցւոյն սրբյն Հռիփսիմեայ. զոր շինեալ էր սրբյն գրիգորի 'ի վերայ գեղջն Մշեականից 'ի կատարածի լուսաւորութեն. քանզի էր և տեղին այն յառաջագոյն տեղի մեհենից վահեա վահանի‖: Գրէ ուրեք առ նորին Թովմայի և Մշահաքանից:

Զորոյ վանք: Վերջին մատենագիրք կոչեն Զորավանք: Ընկանի յայս գաւառ՝ որպէս դնէ յովհաննէս կաթուղիկոս, յասելն. * Եդին զնա (այսինքն զգէորգ կաթուղիկոս) 'ի քնարանի Զորոյ վանոյ որ 'ի տոսպ, մերձ յեկեղեցին՝ ուր եդեալ իսկ էր սրբոյ լուսաւորչին մերոյ զգաւազանն իւր, և զսեղանն տէրունական խորհրդոյն՝ զոր նախ քան զհաստատելն եկեղեցեաց սրց 'ի հայս՝ ընդ իւր շըրջեցուցանէր‖:

Եւ էր Զորոյ վանքն հանդէպ վերոգրեալ գեղջն Կոխպանից, և 'ի վերայ գեղջն Մշեականից, քանզի եկեղեցի կամ վկայարան սրբյն Հռիփսիմեայ՝ զոր յիշէ Թովմա արծրունի 'ի վերոգրեալ բանի, էր 'ի ձորոյ վանս՝ ըստ ակնարկելոյ նորին Թովմայի տ. 14. * Տարեալ հանդու-

(1) Իսկ բան Թովմայի այս է. * Մուղրի մի յոյժ բարձրաձայն եղեալ 'ի մինարայն 'ի քաղաքէն բերկրոյ զղխամաթի սալայն կոչեաց: Աստ ասէ օր դատաստանին հասան: Եւ պղծոյն անօղորմի մտօ եդեալ ասէ. զի՞նչ է ձայնն այն. ասեն մերձակայքն. որ դատաստանին հասեալ է՝ որ յեսէն առնելոց է. և զայն դու արարեր այսօր: Զի ըստ նմանութեն փողոյ ձայն լալական գոչեաց մուղրին: Ասէ (լէնկթիմուրն). բերանն այն բեկեալ լիցի, սակաւ մի այլ թէ յառաջ գոչեալ էր՝ ընաւ երբէք մարդ ոչ սպանանէի: Եւ նոյն ժամայն հրամանս տուեալ այլ մի արկանել 'ի վայր զմնացեալսն, այլ ազատել զամենեսեան‖:

(2) Էրպլօ՝ որ զվան դնէ 'ի կողմանս ական եփրատայ, զթուական առման օսմանեանց նշանակէ 'ի հիճրէթի 955. (1548:)

ցանեն (ասէ՝ զմարմին համազասպուհւոյ տիկնոջն ռշ-տունեաց) 'ի տեղւոջն զոր այժմ Ձորոյ վանս անուանեն, 'ի վկայարան նոցա հռիփսիմեանց՝ զոր շինեալ էր նորին գրիգորի, ուր զսեղանն նր, և զզաւազանն հովուական, և զմատանին պատկերեալ, և զգօտին աշխատասէր մե-ջոյն՝ թողեալ 'ի համապազորդ յիշատակ լուսաւորութեն մերոյ հօրն ‖: Այլին իրի՝ որպէս 'ի վերոյ զեկեղեցին նորին հռիփսիմեայ եդ 'ի վերայ գեղջն Ահեւականից, նոյնպէս այլուր զՁորոյ վանս դնէ 'ի վերայ նորին գեղջ՝ յասելն դ. 6. *Իսկ առեալ զմարմին նորա (այսինքն ապուռմուա-նայ) տիկնոջն սեդայի կնոջն աշոտի՝ և եդ 'ի գերեզմա-նի՝ 'ի տեղւոջն որում Ձորոյ վանքն ասեն, 'ի վերայ գեղջն Ահաւականից ‖: Զ շինութի եկեղեցւոյս թովմա արծրունի (որպէս տեսանք) ընծայէ նորին գրիգորի. այլ Սանքն շինեցաւ 'ի նորին ներսիսէ, որպէս գրէ մատթէոս:

Այս Ձորավանք 'ի վերջին ժամանակս կոչեցաւ Սուլէ-նապատ. որպէս վկայէ վարդան աշխարհագիր յասելն ծ ձեռ". թէ 'ի վասպուրական է *Ձորավանս՝ որ է Սուլ-նապատ ‖. Սան որոյ և շարունակօղն սամուէլի գրէ վասն պետրոսի գետադարձի. *Նկաց չորս ամ 'ի Ձորա-վանս Սալնապատի, զոր շինեալ էր տէր ներսէսի ‖: Իսկ թովմա մեծոփեցին միայն Սուրբ անապատ կոչէ զՁորա-վանս՝ յասելն վասն վարդանայ վարդապետի, թէ գնաց 'ի տուսպ, և անդ հանգեաւ 'ի նր ուխտն Սալնապատի 'ի պծե. թուին: Տես 'ի նոր հայաստան թղթ. 148:

Լէզու գեղ: Առընթեր վան քաղաքի, որ յիշատակի առ թովմայի արծրունւոյ դ. 17. *Պակիշ արարեալ յայնկոյս քան զՍանտուպ, 'ի տեղւոջն արձանաշար քա-րակարկառ գոգաձև միջոցի յերկուց բլրակաց՝ որ հայի յերիվարաց արկման դաշտն, և 'ի վերայ Լեզու գեղջն, որ զօրացն գեղեցիկ առասպելաբանեն ‖. և այլն: Տես 'ի նոր հայաստան Լեզկ. թղթ. 149:

Արտամետ: Յայսմաւուրս 'ի դեկտ". 15. 'ի վարս նորին յակոբայ մծբնայ հայրապետի, դնի յայսմ գաւառի. *Իսկ եկեալ եհաս 'ի տուսպ գաւառ 'ի գեւղն որ կոչի Ար-տամետ (կամ ըստ այլ օրին. Արտեմետ) ‖: Այլ 'ի միուսն հին վարուց նորին նր՝ յիշատակի այս անուն առանց գաւառի, և կոչի Աւան գեօղ. կամ զի այնպէս կոչէր, և և կամ շփոթէ ընդ վանայ՝ որ կոչէր Աւան. *Իսկ զհեր (ասէ) աղձկանցն 'ի սպիտակութի դարձոյց վասն այպա-նելոյն զնա՝ յԱւան գեօղն որ Արտամետն կոչի ‖: Զա-

ւայլինն կոչէր Արտամատ, զոր շինեաց Ե. արտաշէս ար-քայ 'ի հովտի մերձ 'ի ծովեզր, և հանդէպ վան քաղաքի, ուրանօր ամրացեալ կայր 'ի փախչելն յերեսաց երուան-դայ:

Զ դիրս սորա, զստուգաբանութիւն անուանն, և զպէս-պէս շինութիւն՝ զոր արար անդ արտաշէս, մի ըստ միոջէ գտանեմք ստորագրեալ առ Թովմայի արծրունւոյ ա. 11. *Յիշէ (ասէ Ե. արտաշէս) զնժդեհանալն իւր 'ի վիմամէջսն՝ զոր վերագոյն գրեցաք. գայ դարձեալ 'ի տե-ղին զբօսնուլ 'ի նմա, և հաճոյ թուեալ այս նորա, շինէ զքարաբլուրն ապարանս արքայանիստ աշնանայինս պայ-ծառայարդարս գեղեցկայարմարս պարսպաւորս, ընդդէմ ծիծաղելով ծովուն 'ի հիւսիսի նայեցուածով, արեգակ-նայինն 'ի վերայ խաղալով ճառագայթաձիգ ճեմականացն յելս և 'ի մուտս, ձկանն իմն թուելով 'ի վերայ մկանաց ալեացն խաղալով. ընդդէմ նայեցածն ունելով զմեծ լեառնն մասիք (1) կոչելով, բարձրագագաթն ձիւնալից սպիտակափառ՝ իբր զթագաւոր մեծավայելուչ պատուա-կան ալօք (2) զուարճացեալ 'ի մէջ ճոխ նախարարութեց, առաջի տեսանելով զկապուտակ ծիրանափայլ դաշտաձե-ծովն, դաստակերտս մեծամեծս շուրջ զեզերբն անտառա-խիտ ծառովք, և գինեբեր որթովք, և զանազան պտ-ղովք զշէնս պատրաստեալ:

» Նաև շուրջ զամրոցաւն տնկախիտս բուրաստանս ծաղ-կաւէտս անուշահոտս 'ի զանազան ծաղկանց. ոչ միայն 'ի տեսիլ խտղտանս աչաց և 'ի զուարճութիւն հոտոտելեաց, այլև 'ի կազմութիւն դեղոյ բժշկական հնարագիւտ իմաս-տասիրութեց կազմեալ ասկղեպեա վարժմամբն:

» Իսկ շուրջ զբերդամամն ապարանօքն պարսպէ զբլուրն շուրջանակի յապառաժուտ տաշելոյ քարանց, քաղաք ա-մենալից զհովիտն ամրացուցանելով. իսկ 'ի վերայ բըղ-խեալ աղբերն դարձեալ պարսպէ զքարաբլուրն 'ի պահ-պանութիւն ջրոյն ամրագունիւք շինուածովք, և շէն մար-մարգարիտ (3) զքարաբլուրն յօրինէ պարսպէւորս ան-կասկածելիս անմատչելիս ձեռաց պատերազմողաց՝ հեշ-տալիր առ զգուշութիւն յօրինեալ՝ 'ի խորագոյնս ծովուն զպարիսպն յօրինեալ կազմէ:

(1) Այսպէս յօրինակին, որ թուի լինել Մասիս:
(2) Այսպէս էր յօրինակին:
(3) Այսպէս ունէր օրինակն, որում թերևս ըստ ժամանակին պէսպիսութեան օրինակաց, կամ ուղղութեն կամ սաստկութեն ընծայեսցէ:

» Իսկ 'ի մէջ երեքարմատեան գոգաձև հովտին փոքու՝ որ յերից բլրոցն խոնարհի, շինէ աշտարակ բարձրաբերձ փորուածոյ միջոցաւ. և 'ի վերայ նորա կանգնէ զաստղկեան պատկերն, և մօտ նորա զտուն գանձու պաշտպանութեան կոոցն: Կարգէ և յօրինէ 'ի նմա փողոցս վաճառուց ամենայնիցս և բաւականս: Դնտանէ և 'ի վերագոյն լերինն անդր 'ի հարաւոյ կողմանէ աղբիւր սակաւաբուղխ, որոյ ջրմուղս կազմեալ՝ ածեալ հասուցանէ 'ի մէջ հովտին: Իսկ ըստ բաւականութեան աչաց տեսութեց դաշտավայրին 'ի մուտս կոյս և առ եզերբ ծովուն պարսպաւորս յօրինէ զգոցն, ընդ այգեստան տնկախիտ պատրաստութբ անհախխտս վայելչութբ: Եւ իբրև կատարեաց զյօրինուած շինութեան քաղաքին, և անմատչելի անկասկածելի զամրոցն պատրաստեաց, կոչեաց զանուն ամրոցին Օրէր, այսինքն Պայծառութի, 'ի վերայ պայծառայարդար պատրաստութեան շինուածոյն: Եւ ածեալ զտիկինն սաթինիկ զբօսնուլ զաշնանային եղանակն՝ յամարաստն գեղաղէշ ապարանս զարդարեալ բերդին: Իսկ զանուն քաղաքին կոչեաց Արտամա, որ թարգմանեալ ստուգաբանի Արտաշէսի եկք, զի ըստ պարսիկ ձայնի Ամա՝ Եկք թարգմանի. զի 'ի գնալն արտաշէսի յայսմ տեղւոջէ, ոչ ևս յաւել ձեռն երուանդայ տագնապել զնա»:

Իսկ թէ յոր կողմն անկանի վիմամէջ տեղին՝ ուր կառոյց արտաշէս զայս քաղաք, ցուցանէ թովմաս ա. 10. *՝ Նոյն ժամայն առեալ սմբատայ զարտաշէս՝ գայ անցանէ 'ի վայր 'ի լեռնէն (վարագայ), և թափառական (գոլով՝) զվէմն ապաստան արարեալ, յանկասկածագոյն տեղւս դարանի 'ի փոքր վիմամէջս, 'ի կարկառս հովտաձև, հանդէպ հարաւոյ քաղաքաբերդին վանի, մօտ յայն տեղի՝ յորում բղխէ աղբիւրաբար առ ստորոտով բլրակի միոյ՝ մօտ յեզր ծովուն, յորմէ հնչէ օդք բարեխառն»(1):

'Ի ժամանակս քրիստոնէութեան ունէր եկեղեցի, զոր

(1) Խորենացին 'ի պատմութեն բ. արտաշէսի ոչ ուրեք յիշէ՝ թէ եկեալ իցէ նորա 'ի վարագ, և կամ 'ի կողմանս վանայ, այլ թէ սմբատ շրջեցուցանէր զմանուկն արտաշէս ընդ երկաս լերանց և դաշտաց՝ մինչև փախոյց 'ի պարսս: Նոյնպէս ոչինչ յիշատակէ թէ երուանդ եկն զհետ արտաշէսի մինչև 'ի վարագ, այլ թէ հետայոյզս առաքեաց 'ի գտանել զարտաշէս: Եւ 'ի բ. 46. պատմէ զշինութիւն արտաշատ քաղաքի, և ոչ արտամատ քաղաքի:

յիշէ նոյն Թովմ. արծր. գ. 2. *Գնաց անտի ժիրաք, և եկն եմուտ 'ի վանտոսպ, և 'ի յանցին հրձիգ արար զմեծ եկեղեցին յաւանին Արտամետայ‖ (1) :

Ասորի էր սոփիաննոս վարդապետ որդի Տն յաւսկան 'ի Ժե. դարուն, որպէս աւանդի յայսմաւուրս 'ի 8. յունվարի : Տես և 'ի Նոր հայաստան. Թղթ. 144 :

Անէղ: Գիւղ մերձ յարտամէտ, յիշատակեալ յայսմաւուրս 'ի 3. յունվարի :

Վարագ: Անկանի յայս գաւառ, որպէս դնի 'ի Ճառընտրի 'ի պատմութե երեւման խաչին 'ի վարագ. * 'Ի նաւահանգիստ խաղաղութե փութացեալ 'ի լեառն 'ի տոսպ գաւառի որ կոչի Վարագ‖ : Այլ 'ի բանից Թովմայի արծրունւոյ երեւի լինել 'ի ծայրի կի՟ 'ի սահմանագլուխս սորին գաւառի, զի ասէ ՟ա. 10. *Իսկ սմբատ առեալ զարտաշէս գնայ բնակէ 'ի բարձրաւանդակ լերինն վարագ. իսկ երուանդայ հետապօտեալ՝ գայ բնակէ առ ստորոտով լերինն՝ 'ի գլուխս տոսպ գաւառի, և կոչէ զտեղին Երուանդաշատ‖ : Նոյնպէս 'ի տոսպ գաւառի դնէ և խորենացին 'ի բանն որ յաղագս Ճանապարհորդութե հռիփսիմեանց, յասելն. * Իսկ ոմն 'ի տոսբ գաւառ եկեալ՝ վէմ նշանն Թողուն հանդէպ Վանի, (և) 'ի հարաւակողմ լերինն փոքրագոյն խրճիթս շինեալ վանից, և եդին անդ վասն կասկածի հալածանաց 'ի վերայ կացելոց : Այլ անդ 'ի լեառն Վարագ ամփոփեցեալ, զի լուան խնդիր լինել ինքեանց. ցան՝ և ցիր 'ի խորշ լերինն բնակեցան՝ արարեալ իւրեանց գետնափոր դադարս‖ : (2)

(1) Գրի առ յովհաննու մամիկոնէի Թղթ. Ճ՟Է. վասն վարդ պատրըկի. Եւ և երկու աւանս յիւր իշխանութեն ոչ կարապետին զԱրտամետ և զԳոմս‖ :

(2) Ցայսմ լերին ոմանք եդին իջեալ զտապանն Նոյի, ՟Ի որում դնի 'ի ծանօթութիւս եպիսկոպոսարանաց լեւոնի և անդրոնիկոսի, որ և գտանի 'ի Ժը. հատորն բուզանդարանի, ուր ասի. * Եւ է լեառն բարձրագագաթն վարաթիքէն անուն (այսինքն է՝ վարագ) յորում տապանն Նոյի բարձեալ 'ի ջուրց՝ հանգեաւ 'ի գլուխ նորին, և է այս յայտնի ամենայն բնակչաց նորին մինչև ցայսօր ժամանակի‖ : Ուր երկու ինչ պարտ է 'ի միտ առնուլ, մի՝ զի զՎարագ համարի 'ի Թուոյ լերանցն գաւրոսի (այսինքն՝ տօրոսի), յորմէ և ոմանք Թերեւս մի 'ի լերանցն կորդուաց համարեցան. և երկրորդ՝ յայսմանէ գուցէ ոմանք զմասիս լեառն ուր հանգեաւ տապանն ըստ հաւանական կարծեաց՝ շփոթեցին ընդ վարագայ, զՎարագ կոչելով Մասիս, որպէս կասկածիմք զԹովմայէ արծրունւոյ՝ 'ի վերոգրեալ բանն զԱրտամետայ, կամ Թէ զմասիս գնելով 'ի հարաւային եզերս հայաստանեայց կի՟ 'ի սահմանս ասորեստանեայց: Այլ զայսմանէ տես նաև 'ի նկարագրութե հին հայաստանեայց՝ որ զկերանց :

ն գրիգոր զառաջինն շինեաց 'ի վարագ եկեղեցիս ,
ասելոյ յայսմաւուրաց 'ի 26 . փետրվարի ։ Նաւ
քան զնորին գրիգոր ըստ գրելոյ խորենացւոյն (1).
կուք ոմանք 'ի քահանայիցն նոցա բնակեցան 'ի նմին
ոջ, մինչև ցօր կոչման և կատարման իւրեանց առ
և տեղիք նոցա կոչին Սրբճանայրք, քանզի 'ի յուրբաթ
ցանէին զորբոյն պատարագն , և բաշխէին արժա
ապէս նոր կանանցն (ընկերացն հաւիսխմեանց` որք
ն 'ի լերինն վարագ ), զմարմինն և զարիւնն տն ||։
կ 'ի մէջն անդ է . դարուն քանզի աղօթիւք Թոդիկ
որին յայտնի եղև նոր խաչն որ 'ի վաղուց հետէ
եալ կայր , զայն եկեղեցի կամ զտունն աղօթից` ուր
ո նոր խաչն , Թուուցեալ 'ի վիմէ անտի լերին (2), ընդ
կեալ նորոգեցին , և հաստատեցին վանս միան
որ յանուն լերին կոչեցաւ Վարագ (3) ։ Շինեցին
երկոտասան եկեղեցիս 'ի տեղի երկոտասան լուսա
եանցն` որք երևեցան յախժամ ըստ պատմելոյ
նաւուրաց ։ Իսկ 'ի Ճառընտրի գրի . * Մեծաւ
ով պատուեցին զտեղին աշխարհին նախարարք ,
ով եկեղեցիս երկոտասանս յանուն իւրաքանչիւրոցն
տեսչուն լուսաւորացն որ ցուցաւ , և զտեղի յար
և զնմանութի նոր խաչին` առաւել քան զառա
ծարեցին ||։

պահարան սորա աշոտ արքայորդին 'ի Ժ . դարուն
արեաց ակամբք և մարգարտովք` երեսուն հազար
ծախեալ յայն , զորս տուեալ էր նմա խալիֆային
ատու , որպէս պատմէ մատթէոս 'ի գլ . լէ . (4) ։
յառաջ քան զնա գագիկ Թագաւոր արծրունեաց
արեաց զնոր խաչն, զորմէ գրէ Թովմա արծր . դ . 11.
խոր առեալ 'ի ներքուստ 'ի վեր 'ի լեառն Վարագ, և
պագեալ ոծազարդ քնապսակեալ փայտի խաչին քնի

'ի բանն որ յաղագս Ճա
հորդութեան նոցա հաւիսխ.
։
Որպէս նշանակի և 'ի շա
ցի . * Թուուցեալ եկաւորի
ան Վարագայ բնակել 'ի

Ըստ այսմ վարգան աշխար
. * Վասպուրական վան է,
այ նր ունոն Վարագ . և
ե նր նշանն` զոր եբեր նր
հաւիսխմէ ||։

(4) Գլխակարգութի պատմու
թեն մատթէոսի` զոր ուրեք յիշա
տակեցաք , և ունիմք եւ յիշատա
կել , է համեմատ երից ձեռագրաց ,
որոց մին կայ 'ի փարիզեան գրա
տան , ընդ մի համար ընդ պատ
մութեն մեսրովպայ երիցու , որ
հասանէ մինչև 'ի իէ . գլուխն , և 'ի
իԹ . գլուխն սկսանի մատթէոսին ։
Իսկ իը . գլուխն է գործ ուրումն`
որ յետոյ է ժամանակաւ քան
զԹովմաս մեծոփեցին ։

պատուանդանի ոտիցն ոյ, որով պարծի՛ և պատկի 'ի քն հաւատացելոց Թագաւորաց երամք. և ոսկեգործ ականակապ կազմեալ պատեաց ոսկով զփրկագործ ոք խաչն. և ընելուզեալ մարգարտով զարդարեաց զսխրագործ փայտն հիմնեալ 'ի մէջ անուշահոտ փայտից. Թողեալ մնան ևս արտաքս ոսկեպատ պահարանին՝ յառաջնում խուրց քառածրագիծ փայտեղէն գզրոցկանն ... և յետ խաչայարդար պայծառութեան իջեալ 'ի լեռնէն դագիկ 'ի ստորոտ լերինն՝ ուր աբեղէիցն բնակէին աքեմանձևքն||: (1)

Յայսմանէ յայտ է՝ թէ շինութիւն սենեքերիմայ արքայի էր նորոգութիւն, զորմէ գրէ շարունակողն պատմութեան Թովմայի արծրունւոյ, թէ 'ի հովտի լերինն վարագայ ուր են աղբերք բարեհամք, և ուր եկաց ոք խաչն, * Շինեաց (սենեքերիմ) 'ի նոյն տեղւոջ եկեղեցիս մեծամեծս, և 'ի ստորոտ լերինն շինեաց զխոյակապ և զհռչակաւոր մայրաքաղաք մենաստանացն զՎարագ, և կարգեաց 'ի նմա արս հաւատարիմս. և զարդարեաց բազում կրօնաւորօք, և երկնագումար դասիւք ոք քահանայիւք, և կարգեաց նոցա ռոճիկս||: Ի մենաստանի աստ ոք նշանի էր գերեզմանատուն Թագաւորացն արծրունեաց, որպէս գրէ մատթէոս 'ի գլ. կէ: Իյլ վանն այսր տես ստորև և զՎարագ:

Յետ անդ Ժ. դարուն փոխադրեցաւ այս ոք խաչ 'ի սեբաստիա, և յետ մնալոյ անդէն ժամանակս ինչ, դարձեալ ընդ մարմնոյ սենեքերիմայ արքային բերաւ աստ:

Իսկ 'ի 1651, սիւլէյման պէկ միաբանեալ ընդ չօմարայ ապստամբին՝ փոխադրեաց 'ի բերդն խօշափ՝ ուր ինքն տիրէր յայնժամ, յաւարի առեալ զծածուկ գանձս եկեղեցւոյն. բայց 'ի 1655. քրիստոնէից առեալ յիպրահիմ պէկէն՝ որ յաջորդեաց զնի սիւլէյմանայ, ածին յեկեղեցի տիրամօրն որ 'ի վանն քաղաք: Վասն այսր ընդարձակագոյնս տեսցես 'ի պատմութեան առաքելի:

Սղգայ գաւառ: Ի ստորոտով վերոգրեալ լերին զնի յերկրորդ վարս դերանկին առ Թովմայի արծրունւոյ Է. 12. * Սա դարձեալ վերստին սեպհականեաց իւր և ինքեան զնի եկելոց զԳաւառն Սղգայ 'ի տոսպ գա-

(1) Բարձրաեղի լերինն՝ յորում բնակեցան հոփսիմեանք՝ յայսմաւուրս կոչի Գուլխա, և այժմ Վէրէն Վարագ, ուր և երևեցաւ խաչն 'ի վիմին. իսկ ստորին կողմն լերին՝ ուր շինեցաւ մենաստան, այժմ կոչի Սթօրէն Վարագ, զորոց տես 'ի Նոր հայաստան. Թղթ. 147:

ռաւէ, որ առ ստորոտով լերինն Վարագայ ։ Մտոր-ջնէ 'ի նմա և ամրոց՝ յասելն. *Ռ.ընու զՇ.մրոյն (Սզզայ) և տիրէ գաւառին ։

## ԲՈԴՈՒՆԻՔ. և ԿՈՒՂԱՆՈՎԻՏ ։

Սոյսպէս գրի առաջինն յերկուս ձեռագիրս աշխարհագրութե Խորենացւոյն, իսկ 'ի միումն որպէս և 'ի տպագրեալն գրի Բոդոնիք ։ Սա Թովմայի արծրունւոյ 'ի կրկին տեղիս գրի Բոգունիք. յորում և 'ի Գ. 11. դնի գիւղ մինչ Ներսոսի անուն. *Վերակացու (ասէ) նմա Թռղթր զյովաննէս ոմն քահանայ 'ի Բոգունի գաւառէ 'ի յՆերսատն գեղջէ ։

Երկրորդ գաւառն գրի Կողանովիտ յերկուս ձեռագիրս աշխարհագրութե Խորենացւոյն. միայն 'ի տպագրեալն գրի Կողանովիտ ։ Սա Թովմայի արծրունւոյ Գ. 4. ուրոյն ուրոյն գրի, Ովիտ այսինքն Հովիտն Կողան. *Նա հասեալ 'ի մի վայր՝ զան յՈվիտն Կուղան, ուր զուրգէն բանակ արարեալ էր 'ի Կարճինեանս տեղւոջ ։

## ԱՌԲԵՐԱՆԻ ։

Սա Խորենացւոյ (1) կոչի և Բերկրայայոց գաւառ. յայտ է թէ՝ վասն գլխաւոր քաղաքին եղելոյ 'ի սահմանի իւրում, ըստ որում դնէ և վարդան աշխարհագիր յասելն. *Առբերանի և Տարբերունի (2) Բերկրի է՝ ուր կայ

(1) 'Ի բանն որ յաղագս ճանապարհորդութե հռիփսիմեանց ։

(2) Զտարբերունիդ անուն յիշատակէ և եղիշէ 'ի ստորագրութես եպիսկոպոսաց նամակին հայոց ընդդէմ պարսից, ուր 'ի կրկին օրինակս գրի Քասսու եպիսկոպոս Տարաբերունւոյ. իսկ յօրինակն տպագրեալ Թղթ. 26. գրի Տարբերունեաց ։ Այլ առ ղազարայ գրի Տարբերունեաց ։ Զոր թէպէտ մարթ է կարծել ոմանց թէ Տարուբերանն կամ Տարբերունին ոչ զԱռբերանի գաւառ (որ 'ի վարդանայ կոչի Տարբերունի,) այլ զՏուրուբերան նահանգն նշանակիցէ. բայց քանզի 'ի գիրս եղիշէի՝ զկնի եպիսկոպոսին Տարբերունւոյ անմիջապէս յարի եպիսկոպոսն Մարդաստանի, որ է գաւառ վասպուրականի մերձ յԱռբերանի, յայն սակս ոչ անպատճառ կարծիմք, թէ Տարբերունիդ կամ Տարուբերանն անգանօր զայս գաւառ յաւէտ, քան թէ զՏուրուբերան նշանակեսցէ զնահանգն ։ Թող զայն՝ զի եթէ էր Եպիսկոպոս նահանգին, ստորակարգեալ գաւառաց եպիսկոպոսունքն՝ որպէս տարօնոյ, աշմունեաց, հարքայ, բզնու-

նը ուխտն տէր յուսկան որդւոյն ‖ (1) ։

ՆԵՐԿԷՐ ։ Քաղաք բերդաւոր՝ որպէս է տեսանել առ լատինլերոցոյն 'ի գլ. Թ. ուր ասի. * Բերդաքաղաքն որ կոչի Ներկրի, որ է 'ի միջակէ արծրունեաց աշխարհին, զոր վաղնջուց յափշտակեալ էր պարսից, համդերձ խուռովք դաստակերտօք, և ունէին ընդ ձեռամբ ‖ ։ Յիշատակէ զնոյն և Թովմա արծրունի դ. 12. * Հրամանաւ բռնհայի համանել 'ի վերայ գուրգինի, և ընդ նմա քաղաքացիքն Ներկրոյ՝ որ ուԹմանիկքն կոչին ‖ ։ Եւ փոքր մի 'ի վերոյ. * փուԹանակի հասեալ (ամիրայն նախճաւանու) 'ի քաղաքն Ներկրի ‖ ։ 'Ի յիշատակելոյ խորենացւոյն իմանամք՝ Թէ էր Քաղաք հին, այլ մինչև 'ի վարդան աշխարհագիր՝ զորոյ զրանս եդաք 'ի վերոյ՝ ոչ ոք 'ի մատենագրաց յիշատակեաց զգաւառ նորա ։ Յիշատակի ուրեք ուրեք և 'ի գիրս յունաց, որպէս 'ի դ. գլ. կառավարուԹեց կոստանդեայ պերփերուժէնի, ուր ըստ ձեռագրին գրի ՆԵՐԳԷՐ, և ըստ տպագրելոյն ՆԵՐԳԷՐԻ. իսկ առ գէտրենոսի Թղթ. 732. կոչի՝ ՆԵՐԳԷՐԻ (2) ։

'Ի սկիզբն ժա. դարու ըստ պատմելոյ լաստիվերտցոյն բազում պատերազմաւ էանց այս քաղաք 'ի ձեռս յունաց. և այլն. (որք յիշատակին 'ի գիրս և 'ի ժողովական Թուղթս,) պարտ էր հաստատել նմա, և կամ գոնէ սմա պարտ էր նախագահ բազմել նոցա, և յառաջ նշանակիլ անուան սորա քան զնոցայն. ուր ընդ հակառակն բազումք 'ի նոցանէ՝ յառաջ ստորագրուԹբ անուանց՝ նախագահ և երիցագոյն երևէին քան զսա, և սմա ոչ այլ ինչ մնայ, բայց եԹէ համառօտ այլոց եպիսկոպոս գոլ մասնաւոր ինչ գաւառի, և ոչ նահանգի ։ Այլ եԹէ ստուգագոյն ինչ կամիցիմք ասել, եպիսկոպոսական աԹոռք կարգեալ էին ըստ կարգի աշխարհական իշխանուԹե, վասն որոյ և նահանգաց ինչ՝ (որք էին 'ի ծայրս սահմանաց մեծին հայոց՝) որպէս սիւնեաց, մոկաց, և տայոց, և այլն. որոց մի միայն էր գլխաւոր տիրող իշխան, 'ի գիրս՝ մանաւանդ նախնի հեղինակաց, մի եւեԹ եպիսկոպոս յիշատակի բոլոր նահանգի, և ոչ ուրեք մասնաւոր գաւառացն այնց նահանգաց ։ Այլ 'ի նահանգսն, մանաւանդ որ 'ի միջոցի աշխարհին հայոց, որպէս յայրարատ, 'ի վասպուրական, և 'ի տուրուբերան, չէ ուրեք տեսանել զայն, ուր էին բազում նախարարուԹիք որք տիրէին առանձին գաւառաց՝ անկախք յիրերաց, և ըստ իշխանացն՝ նաև եպիսկոպոսունք առաջնորդք գաւառացն ։ Այսչափ ինչ առ ժամս վասն այսր եպիսկոպոսական աԹոռոյ, մինչև ժամանակն ընծայեսցէ ստուգագոյն տեղեկուԹիւն ։

(1) Զայս ուխտ հեղինակն յայտմաւուրաց յունվարի 3. 'ի վարս նորին ստեփաննոսի որդւոյ տն յ.ուսկան կոչէ ԱՐԳԷՇԵԱՆ ՀԱՆԷՍ, ուր և Թաղեցաւ մարմին նորա զկնի մահուանն ։

(2) Ուր և վրիպակաւ դնի մերձ 'ի բաբիլոն, զի ասի. " Նաև ըզբերդն՝ որ կոչէր Բէրդրիս մերձ 'ի բաբիլոն՝ ալիմ սառակինոսն հրամանատար նմին՝ ետ կայսեր ‖ ։

նաց ․ զի նախ յոյնք առին 'ի ձեռաց պարսից, և 'ի յունաց դարձեալ պարսիկք՝ կոտորելով արս իբրև լդ․ հազար (1)։ Դարձեալ եառ 'ի ձեռաց նոցա 'ի նմին ժամանակի զանձի անուն իշխանն հայոց, այլ վերստին առին այլազգիք (2)։ Յաւել միքայէլ կայսր առաքել զօրս առնուլ զՄելիտի, որոց յայնժամ կամաւ ետուն այլազգիք՝ գնացեալ յաշխարհն իւրեանց․ *Նոյն յայնմ օրէ և առ յապայ բարձաւ (ասէ լաստիվերտցին) տէրութիւնն պարսից 'ի տեղւոջէ անտի‖։ Այլ զկնի իբր հնգետասան ամաց՝ պաշարեալ զայն տուղրիլ անուանի սուլտանն պարսից՝ և առեալ, երկաթի կապանօք 'ի գերութիւն խաղացոյց զիշխանս քաղաքին (3)։

Առ աստղկայ յիշատակի և ԲԵՐԿՐՈՅ ՁՈՐ 'ի գրեն Է․ Կ․ վասն զօրացն իսմայելացւոց․ *Նոյն զօրն իսմայելի յատրեստանէ ընդ Ճանապարհ ձորոյ՝ յԱրկիրն տարօնոյ ընդ բզնունիս, ընդ Բերկրոյ ձորն յայրարատ թափեցան, և առին զգուղն‖։ Իսկ զԷ եառն ՄՈՂԷԻ Բերկրացւոց գաւառին յիշէ խորենացին 'ի վերջիշեալ բանն Ճանապարհորդութեան հռիփսիմեանց, և առ նովաւ զԲաղաքագեօղն ԹՈՒՐՔԻՆ։

ՆՈՐԷԿԱ։ Բերդ յԱղացովտի, այլ 'ի սահմանի Բերկրի քաղաքին, զոր քանզի մանաւազեցիք հանեալ էին 'ի ձեռաց բերկրեցոց, ա․ սմբատ արքայ անդրէն դարձոյց առ նոսա՝ ըստ գրելոյ թովմայի արծրունւոյ Գ․ 10․ *Առնըլով (ա․ սմբատայ) հարկս և պատանդս, և զբերդն Նորէկաւ յաղացովտի, զոր հանեալ էր մանազաւեցոյն (4) 'ի բերկրեցւոյն, նոցա հանեալ էր 'ի գլխոյն ազգէն՝ 'ի զարմէ մեժէժի գնունւոյ, 'ի վասպուրական բաժնէ․ նաև Բերկրի բաժին եղեալ էր վասպուրականի, և դարձուցանէ անդրէն առ Բերկրեցին (5)‖։

ԱՌԵՍՏ ԲԵՐԴ։ Առողիկ Է․ 2․ դնէ զայս յԱռբերանի գաւառի, յասելն վասն ղևոնդեայ կաթուղիկոսի, թէ էր *'Ի գաւառէ Առբերանոյ 'ի Գեղջէ փոքր Առես-

(1) Շարունակօղն սամուէլի Տաճիկս ասէ, զորս լաստիվերտցին Պարսիկ անուանէ։

(2) (3) Գրէ զայսցանէ մատթէոս ուռհայեցի․ իսկ լաստիվերտցին 'ի գլ․ ժէ․ հարևանցի յիշատակէ՝ յասելն վասն սուլտանայ․ *Զանց արարեալ զԱրճիշաւ և զԲերկրովն‖։

(4) ՄԱՆԱԶԱՒԵՑԻՆ՝ որպէս աստցաք այլուր, ո՛չ այլ ինչ է, բայց թէ ՄԱՆԱԶԱՒԵՑԻՆ, այնինքն է այլազգի ամիրայն մանազկերտոյ՝ որ 'ի հարք գաւառի, որ տիրէր նաև աղահունեաց, որպէս գրէ թովմա արծրունի Գ․ 10։

(5) Յօրինակին վրիպակաւ գրի ԱՌ ԲԵՐԿՐԵՑԻՆ։

տու ։ Ըստ յովհաննու կաթուղիկոսի գրի անդէն Առես-տոյ. * Եւ զկնի սորա զգեւոնդ՝ որ էր 'ի փոքր Առես-տայ՝ կացուցանեն յաթոռ սրբութեն ։ Որ թուի լինել վրիպակ գրչաց, կամ վրիպակ խօսից ռամկին ։ Այս է սա թերեւս ընդ Առեստ աւանի, զոր յիշատակէ նոյն յովհաննէս կաթուղիկոս, կամ թէ՝ Առեստն էր աւանն, յոր հայելով՝ գիւղն մերձակայ կոչեցաւ Փոքր Առեստ ։

Ընկանէր սա առ ծովեզերբ, ըստ դնելոյ բուզանդայ Գ. Ծ. * Եւ դիպեցան միմեանց առ ափն ծովուն բզնու-նեաց յԱռեստն աւանի 'ի Զենաքենանն արքունի՝ 'ի վե-րայ գետակին ։ Այս Զենաքենանս 'ի Դ. 22. կոչի եւ Զենաքէնք՝ ըստ երից ձեռագրաց եւս. * Հասեալ մածեալ բանակէին 'ի վերայ Զենաքենիցն Առեստեայ ։ Ղա-զար փարպեցի կոչէ զսա Քաղաքագեօղ. * Եւ մինչդեռ ժողովեալ գնային 'ի ճանապարհի՝ մերձեալք 'ի Քաղա-քագեօղն որ կոչի Առեստ ։ Այս աւան յիշատակի եւ առ Թովմայի Մեծոփեցւոյ՝ որ գրէ. * Բազումք որ անդ մնային՝ մեռանէին, եւ որք էկին Առեստ աւանի, եւ ձկամբք եւ բանջարովք շատանային ։

Յիշատակէ ղեւոնդ 'ի գլ. Դ. եւ զՊայտակն կոչեցեալ Առեստակողմն. * Պէմ եդեալ գնացին 'ի կողմանցն վաս-պուրականի, 'ի դաշտավայր մարզին՝ որում Առեստա-կողմն կոչեն ։

ԱՆՁԵՒԱՑԻՔ ։

Այսպէս գրի 'ի տպագրեալն, եւ յերիս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն, նաեւ առ այլս սովորաբար. բայց յօրինակին Թովմայի արծրունւոյ ամենայն ուրեք գրի Անձաւացիք, որպէս եւ առ այլս ուրեք ուրեք ։

Դիրք սորա թուի թէ յարմարեցոյց 'ի վերայ համա-րէն բնակչաց գաւառիս զանուանս Անձաւացիք, քանզի լի են 'ի սմա անձաւք, խորաձորք, ծործորք, եւ այլն. եւ գաւառն ողջոյն է իբր բերդ մի, եւ տեղի ապաւինի յե-րեսաց թշնամեաց՝ որպէս յայտ առնեն մատենագիրք, եւ 'ի մէջ այլոց յովհաննէս կաթուղիկոս, յասելն վասն ատովմայ անձեւացեաց իշխանի, թէ՝ զգաղթ տէրութեն իւրոյ * Ամրառնայր 'ի գլուխս ամուր լերանց աշխար-հին (անձեւացեաց), ամրապահեստս զնոսա առնելով 'ի խորաձորս, է 'ի խողխոր վիհս փոսոց, եւ 'ի ծործորս բըլ-

րոց ||: Զնոյն ցուցանէ և ռամկական անունս Ըարպահ, յոր անուն կոչի այժմ անձևացիք՝ ըստ ասելոյ յայսմաւուրաց 'ի փետրվարի 27 :

Վաղարշակ արքայ կարգեաց աստ նախարարութիւն՝ որ ընդ ժամանակս ինչ եղև իբր առանձին իշխանութի. իսկ յաւուրս տ. սմբատայ արքայի նուաճեալ կայր *Ընդձեռամբ վասպուրական իշխանութեն ||, որպէս գրէ թովմա արծրունի գ. 10 : Յայսմանէ 'ի ժամանակս թագաւորացն արծրունեաց ուրեք ուրեք անուանի տէրութի. *Յետ բազում յուզիցն և պատերազմացն (ասէ թովմաս արծրունի գ. 14. վասն գուրգենի ) եհաս տիրել նմա Անձաւացեաց տէրութեն ||. և վասն այսորիկ, կամ վասն նստելոյ անդէն ոմանց արքայազանց արծրունեաց՝ կոչի ուրեք նաև թագաւորութի :

Եպիսկոպոսունք անձևացեաց բազում ուրեք յիշատակին 'ի գիրս, և նախ առ եղիշէի թղթ. 26. և առ ղազարայ թղթ. 75. 'ի ստորագրութես եպիսկոպոսաց ժողովոյն արտաշատու՝ Եղբայր եպիսկոպոս Անձևացեաց: Եւ զկնի յիշատակի 'ի թովմայէ արծրունւոյ տ. 15. Շմաւոն եպիսկոպոս Անձաւայեաց (1): Եւ 'ի ստորագրութեն եպիսկոպոսաց ժողովոյն դվնայ յիշատակի Գրիգոր եպիսկոպոս Անձևացեաց : Այլ քան զամենեսեան երևելի գտաւ 'ի Ժ. դարու փայլեալ գրութբ և առաքինութբ հայրն 'մերն գրիգորի նարեկացւոյ՝ Խոսրով եպիսկոպոս Անձևացեաց:

Կանգուառք: Առ խորենացւոյն 'ի ճանապարհորդութե հռիփսիմեանց գրի Կանգուառս, ուր և կոչի Իերդ առնոյ : Եւ 'ի բանից թովմայի արծրունւոյ գ. 14. երևի լինել յայս գաւառ. *Ամուտ (գուրգէն) յամուրն Կանգուար և կատարեալ զոր ինչ ախորժեացն՝ տիրեաց Անձաւացեաց մեծաւ զօրութբ ||: Այնպէս և յայլ բանից նորին թովմայի՝ ուր ասէ. *Եւ գուրգէն (Անձաւացեաց տէր) դարձեալ գնաց յաշխարհն իւր յամուրն Կանգուար ||:

(1) Ժամանակն Շմաւոնի եպիսկոպոսի ոչ է որոշակի նշանակեալ 'ի թովմայէ արծրունւոյ, միայն ցուցանէ լինել 'ի ժամանակս մեծին վարդանայ, զի ասէ. 'Կոչեալ առ ինքն (վարդանայ) զեպիսկոպոսն ըշտունեաց սահակ, և զեպիսկոպոսն Անձաւացեաց շմաւոն, և կարգէ զգասս պաշտօնէից ||: Բայց և անուն իշխանին անձաւացեաց 'ի ժամանակս վարդանանց՝ էր Շմաւոն, որպէս յայտ է 'ի գրոց եղիշէի և ղազարայ:

Սոյն այս տեղի թուի լինել՝ որ այլուր 'ի նոյն գիրս Գ. 16. գրի Կանգուամար Բերդ։

Արճառակաց գեաղ։ Ցայսմանէ թուիմ արծրունի Գ. 16. * Նախն եմուտ յերկիրն Անձաւացեաց, և ել աշտ բնակեցաւ 'ի գեղջն Արձաւակաց ‖ ։

Պարբերոյ բեր. Ագռառայ բեր. Հոգեաց վանք։ Տեղիք մօտ 'ի բերդն Կարգուար, զորոց ընդարձակ գրէ խորենացին 'ի պատմութեան պատկերի տիրամօրն առ սահակ արծրունի, և դնէ յաշխարհին անձաւացեաց. * Նա եկեալ (բարթողիմէոս առաքեալ) յաշխարհն Անձաւացեաց՝ 'ի համբաւ քարի միոջ՝ քանզի դևք բազումք բնակեալ էին անդ, և պատրէին զմարդիկ տեղւոյն՝ տուեալ յայնմ տեղւոջէ դեղս ախտականս առ 'ի կատարել զպղծութիս ախտից, կռանաձայնս դարբնաց ահաւոր հրաշիւք արհաւիրս գործէին. յորս մարդիկ աշխարհին սովորեալք՝ անդ առ քրայլն դեգերէին, առեալ 'ի չաստուածոցն Որբարս թարախածորս 'ի պատիր ախտիցն ... և անուանէին զանուն տեղւոյն այնորիկ Պարբերոյ բեր։

„ Հասեալ սբ առաքեալն այ անդ՝ հալածեաց զդարբինսն ... և զկուռսն փշրեաց որ յանուն անահտայ էր։ Յոր ժողովեալ բազմութիւն դիւացն 'ի վերայ լերինն բարձու 'ի հիւսիսոյ կողմանէ քարածիգս առնելով անթիւ բազմութիւ յոյժ, և ձայնս և ձիչս, և գոչիւն սաստիկ արձակէին։ Իսկ սբ առաքեալն նշանագրեաց խաչ մի փոքրիկ, և կանգնեաց 'ի վերայ քարի լերինն, և անդէն դևքն չևք լինէին։ Որ յետոյ սբ հայրապետն գրիգորիոս զխաչն առաքելական ընդ իւր շրջեցուցանէր ..։

„ Նա է տեղին այն յորում դևքն էին՝ լեռնամէջ վիմաց՝ 'ի վերայ գետոյն մեծի որ կոչի տիգրիս, հուպ 'ի բերդն ամուր՝ որ կոչի Կանգուառ, և միւսոյն Ագռառայ բեր, ուստի ջուրք բազումք հոսին 'ի լերանց ամրոցին ըստ գարնանային մասանցն՝ գան անցանեն ընդ հիմունս տաճարի տիրուհոյն, և խառնեալ օժանդակեն զգետն մեծ տիգրիս։ Ընդ հիմնարկեալ սբ առաքեալն զհիմն տաճարի սրբուհոյն իւրովք իսկ ձեռօքն՝ շինեալ եկեղեցի փոքրագոյն, և անուանեաց զնա ՍԲ ԱԾԱԾԻՆ, և եդ 'ի նմա զպատկեր տիրուհոյն, և տայ զնա սբ կանանց. և զլուխ կացուցանէ անդ զքոյր յուսկանն և զքոյրն որմզդատայ և զմաքովտորի, և զայլ կանայս ընդ ձեռամբ նոցա կացուցանէ. շինէ խրճիթս վանիցն. և տեսուչ հրամայէ լինել հաւատացելոյն, և քահանայ կացուցանէ անդ յիւ-

րոց աշակերտացն . և անուանէ զտեղլն Հոգեաց վանս (1) յանուն տիրամօրն . . :

» Իսկ քոյր յուսկանն մարիամ կոչեցեալ՝ անցանէր յայնկոյս գետոյն մեծի, շինէր իւր խրձիթ առ ստորոտով քարին փոքրագունի . . . և 'ի նմին տեղւոջ կացուցանէ տեսուչս տեղւոյն զքոյրն զաննա և զմարթա . . . Իսկ աննա շինէր իւր խրձիթ յայնկոյս ձորոյն որ Գառբնաքարն կոչեն . . . տուեալ զտեսչութիւն տեղւոյն մարթայի . . . Զոր եկեալ յետոյ 'որյն գրիգորի՝ վանս հաստատեաց զտեղին՝ շինեալ եկեղեցիս . բայց զտաճար սրբուհւոյն ոչ քակեաց՝ զի ձեռագործ առաքելականն էր . . և կայ մինչև ցայսօր ժամանակի ‖ :

Ընդարձակ գրեցաք զբանս խորենացւոյն, որ ոչ սակաւ տեղեկութիւն տայ զգըրից երկրին անձաւացեաց . որ թէ ոչ յընդարձակ միտս առնու զԸնձաւացիս, (նմին անուամբ իմացեալ և զմերձակայ գաւառս,) յայտնի ընդ տիգրիս գետ՝ կամ գէթ զկողմն ինչ նորա՝ սահմանակից գնէ անձաւացեաց : Տես 'ի Նոր հայաստան Հոգւոց վանք . թղթ . 157 :

ԵՐՈՒԱՆԴՈՒՆԻՔ :

Այսպէս գրի յերկրուս օրինակս աշխարհագրութեան խորենացւոյն, որպէս և առ ղազարայ թղթ . 221 : Իսկ 'ի միում ձեռագրի աշխարհագր" . խորեն". Երիխոանիք : 'Ի տպագրեալն միայն գրի Երուանդունիք՝ որ թուի լինել ուղիղ, ըստ որում Երուանդ՝ յորոյ անուն երևի կոչեցեալ այս գաւառ՝ դ տառիւ գրի, և ոչ թ : Յօրինակին թովմայի արծրունւոյ գրի Առուանդունիք :

Հայոց ձոր : Այսպէս անուանեցաւ յանուն Հայք կամ Հայկ դաստակերտին՝ զոր շինեաց նախնին մեր հայկ . * Բայց զտեղի ճակատուն (ասէ խորենացին ա . 10 .) շինէ դաստակերտ, և անուն կոչէ Հայք (2) վասն յաղթութեան պատերազմին . այսորիկ աղագաւ և գաւառն այժմ անուանի Հայոց ձոր ‖ : Գաւառ անուամբ յիշատակի և 'ի յայսմաւուրս 'ի 20 դեկտեմբերի . յորում ճգնէր երա-

(1) Զտեղի Հոգւոց վանաց՝ ուր հանգուցեալ կենդանագիր տիրամօրն յառաքելոյն բարթողիմեայ, տէր իսրայէլ յայսմաւուրս իւր կոչէ Հնջանիս :

(2) Յօրինակի միում գրի Հայկ :

նելոյն աբրահամ աշակերտ 'որ զնմանէ եղեալ յետ դարձին իւրոյ 'ի բաբելոնէ. զի ասէ. * Պնացեալ (աբրահամ) գագարեաց 'ի գաւառն Հայոց ձոր ‖. և զկնի. * Խնա- ղեցին զմարմին աբրահամու յիւրում յանապատին. և կոչի տեղին՝ Սէ աբրահամոս մինչև ցայսօր ժամանակի ‖ ։

Այլ խորենացին ոչ ուրեք յիշատակէ յաշխարհա- գրութեան իւրում 'ի կարգս գաւառաց վասպուրականի, յայտ արարեալ՝ թէ այս ձոր էր վիճակ ինչ կամ փոքր գաւառ բովանդակեալ 'ի միում 'ի գաւառացն վասպու- րականի ։ Իսկ թէ յոր գաւառ անկանիցի՝ Թովմա արծ- րունի ուրեք դնէ լինել 'ի սահմանի, կամ յաւէտ 'ի սահ- մանակցութե Առուանթունի գաւառին՝ յասելն. * Հան- դիպեցան միմեանց յՍէրդոս գիւղ, 'ի գլուխս Զորոյն հայոց՝ որ հանէ յԱռուանդունի գաւառն ‖ ։

'Ի հայոց ձորն անկանի և Պերբեղմոս անուանեալ բլուրն որով կոչեաց հայկ զտեղին՝ ուր սպանեալ անկաւ բէլ (1) ։ Տես 'ի Նոր հայաստան Թղթ. 144. 145. զվիճակն կա- չեցեալ Հաճոս ձոր, և որ զկնի ։

МАРДАСТАН ։

Որպէս գրի յերկս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն, այլև առ յովհաննու կաթուղիկոսի, և առ Թովմայի արծրունւոյ, որպէս և յօրինակս ինչ եղիշէի. նոյնպէս գրի ուրեք և 'ի հին քերականութե նախնեաց ։ Իսկ 'ի տպագրեալն աշխարհագր". խորեն". գրի Մարդաս- տան ։ Թովմա արծրունի 'ի յիշելն՝ գրեթէ ամենայն ու- րեք զանունս Պաւառ յարակցէ յայն, որպէս 'ի Գ. 13. * Իսկ զՄարդաստան գաւառն՝ զոտն բաժին գուրգենայ, դարձոյց առ նա դերանիկն ‖ ։ 'Ի բանից յովհաննու կա- թուղիկոսի երևի լինել սահմանակից կամ մերձակայ տոսպ գաւառի, զի գրէ. * Պայր հասանէր զկողմամբք Մար- դաստանի և Տոսպ գաւառի ‖ ։

Եպիսկոպոս գաւառիս յիշատակի առ եղիշէի և առ ղազարայ 'ի ստորագրութիս հարց ժողովոյն արտաշատու առ վարդանաւ. Ներսեհ եպիսկոպոս Մարդաստանի ։

(1) 'Ի ստորագրութեան հարց ժո- ղովոյն գծեալ՝ յօրինակի միում զնի տառն և մարզպետական ե- պիսկոպոսին յիշատակի Ներսէս Հայոց Եպիսկոպոս, զոր մարթ էր կարծել այսր վիճակի եպիսկոպոս, եթէ այլ օրինակ ոչ ուղղագրեր գրելով Ներսէս Եպիսկոպոս Հարքայ։

Իսկ 'ի Ժ. դարու փոխադրեցաւ յայս գաւառ աթոռ Մարդպետական եպիսկոպոսին 'ի Նախճաւան քաղաքէ, որպէս յիշատակէ Թովմա արծրունի՝ գոլոյ զամս գե-ցուք 'ի ստորագրեալ աւանի ։

Համբոյրաղամ ։ Գրէ զայսմանէ Թովմա արծրունի Դ. Դ. * Դրուանդ մի հարուստ անցեալ միացին 'ի Համբոյրաղամ աւանի Մարդաստան գաւառի, ուր եպիսկոպոսական աթոռ Մարդպետականին՝ յայնժամ փոխեալ դնէր 'ի Նախճաւան քաղաքէ ‖ ։

Մխոտահոս ։ Նուան՝ զորմէ գրէ Թովմա արծրունի. * Դան համաննեն 'ի Մարդաստան, յաւանն Մխտահոս, հանեն ընդ սուր ‖ ։

Զոր հասկոյ ։ Յիշատակի առ Թովմայի արծրունւոյ. * Նա խոյս առեալ շրջէր զկողմամբքն Մարդաստանի (1), և Զորոյն հասկոյ ‖ ։

## ԱՐՏԱԶ և ԱԿԷ ։

Այսպէս գրի յերկս ձեռագիրս աշխարհագրութեան, նաև 'ի պատմութեան նորին խորենացւոյ, և առ այլս ։ Իսկ առ Թովմայի արծրունւոյ՝ թէպէտ ուրեք գրի Արտաշխան գաւառ՝ և Դ. 11. Արտաշխան գաւառ, իբր անուն ածանցակերտ, բայց այլուր գրի Արտազ՝ համաձայն այլոց. վասն որոյ վրիպակ գրչաց է անունս Արտաշխէ, որ գտանի 'ի տպագրեալն աշխարհագրութեան խորենացւոյն, զանուանս երկոցունց գաւառաց 'ի մի յօդելով՝ որք ուրոյն ուրոյն գրին 'ի ձեռագիրս (2) ։ Կիրակոս կոչէ Արտաւազ, յասելն. * Պատմեաց մեզ վարդապետն յոհան՝ որ շինեաց զվանսն գերեզմանի Թադէոսի առաքելոյն յԱրտաւազն գաւառի, յետ աւերածոյն և ամայի լինելոյն ‖ ։ Ըստ այսմ կոչէ և Թովմաս մեծոփեցին ։

Յառաջինն կոչէր այս գաւառ Շաւարշական, որպէս

(1) Յօրինակին վրիպակաւ գրչին գրի Մարդաստան ։

(2) Եւ թէ Ակէ էր առանձին գաւառ, յայտ առնէ և անուն ցեղի ինչ կոչեցեալ Ակէացիք կամ Ակէացիք՝ որ յիշատակի առ խորենացւոյն Բ. Դ. կամ ըստ ձեռագրաց. Տ. առ եղիշէի, և առ Թովմայի արծրունւոյ. զի իւրաքանչիւր ցեղ գրեթէ ունէր իւր գաւառ առանձին ։ Արդ՝ թէ զայս Ակէ միացուսցուք ընդ Արտազայ ոչ գտանեմք զգաւառ բնակութեան այսր ցեղի. այն զի՝ խորենացին յայն գլուխ յայտնի ցուցանէ՝ թէ ունէր գաւառ սեպհական, զի ասէ. * Նոյնպէս և զԿորդուացիս, և զԱնձևացիս և զԱկէացիս 'ի նոյն գաւառաց ‖ ։

յայտ առնէ Խորենացին Բ. 31. յասելն. *Ի գաւառին Շաւարշան՝ որ այժմ կոչի Արտազ ||։ Իսկ Արտազ՝ է անուն գաւառի ինչ երկրին ալանաց, և 'ի նոցունց ալանաց կոչեցաւ այս մերս Արտազ. զի իբրև գերի վարեալ բնակեցան 'ի Շաւարշան հրամանաւ Բ. Արտաշէսի, կոչեցին զայն յանուն երկրին իւրեանց՝ ուստի գերեցան. *Հրամայեալ Արտաշիսի (ասէ Խորենացին Բ. 49.) բնակեցուցանել զնոսա 'ի հարաւոյ յարևելից կուսէ Մասեաց՝ որ կոչէր Շաւարշական գաւառ, 'ի վերայ պահելով զանիկ անուանն (Երկրին իւրեանց) Արտազ. քանզի և աշխարհն ուստի գերեցանն՝ Արտազ (1) կոչի մինչև ցայսօր ժամանակի ||։

Այս գաւառ անկանի 'ի հարաւոյ արևելից Մասեաց՝ որպէս ցուցին բանք Խորենացւոյն, և մերձ 'ի կոգովիտ գաւառ այրարատու՝ ըստ որում դնէ Թովմաս Մեծափեցին։

Եպիսկոպոսարանն որ յԱրտազ՝ որպէս Թուի հաստատեալ 'ի հին ժամանակաց, բայց եպիսկոպոսունք նորա ոչ յիշատակին յանուն գաւառին, այլ յանուն սրբոյ առաքելոյն Թադէոսի, որպէս 'ի ԺԴ. դարու՝ Տիրացու եպիսկոպոս։ Նաև 'ի ԺԴ. դարուն՝ Զաքարիա արքեպիսկոպոս, Խորձորեցի անուանեալ (2)։ Որպէս և միւս մի՛ Զաքարիա Արքեպիսկոպոս՝ Պարոն տէր կոչեցեալ 'ի վախճան նոյն դարու, 'ի պխա Թուին հայոց։ Նոյնպէս և 'ի ԺԵ. դարու՝ Գրիգոր եպիսկոպոս, որ յետոյ եղև կաթողիկոս յէջմիածին ըստ պատմելոյ մեծոփեցւոյն։ Յիշատակի առ նորին Թովմայի և Պետրոս եպիսկոպոս Արտազու։

Շաւարշան։ Քաղաքագեօղ՝ ուր էր ամարանոց արքունի. յիշատակի 'ի Ճառընտրի 'ի հին վկայաբանութե առաքելոյն Թադէոսի. *Հասանէր յաշխարհն հայոց առ Թագաւորն սանատրուկ՝ 'ի գաւառին Արտազ, 'ի քաղաքագեօղն Շաւարշան, յապարանս արքունի՝ որ էին հովլոց գետինք Թագաւորացն հայոց ||։ Յայսմաւուրս 'ի 23. դեկտեմբերի կոչի, *Հովանոց քաղաքն Շաւարշան ||, և դնի նոյնպէս յԱրտազ գաւառի։

'Ի մօտակայս սորա յայսմաւուրս 'ի 30. մայիսի դնի

(1) Յօրինակի միում Խորենացւոյն՝ գրի առս Արտոզ. յայլում՝ Արտաւազ. իսկ 'ի միում այլ՝ գրի Արտազ։

(2) Առ սա գրեաց Թուղթ երկիցս Յովհաննէս ԻԲ. պապն 'ի 1321. և 'ի 1329։ Տես 'ի Լըքիէն հատ. Ա. Թղթ. 1445։

լեառն և դաշտ՝ Սանատրուկ անուամբ. * Բնակէր ՚ի լերինն Սանատրուկ՝ մօտ ՚ի Շաւարշան քաղաք յԱ՛րտազ գաւառի‖ (1)։ Եւ ստորև.* Յայտնեցաւ նմա տեսիլ ՚ի մէջ Սանատրուկ դաշտի‖։

Մակու։ Յայս գաւառ դնէ վարդան աշխարհագիրն, յասելն. * Արտազ Մակու է, ուր կայ ՚ի առաքելոյն թադէոս‖, այսինքն ուխտն ՚սրբոյն թադէոսի։ Նոյնպէս և Մխիթար ապարանցի ՚ի յիշատակարանի երգերգոց մեկնութե վարդանայ՝ զոր նա ինքն օրինակեաց. * Գրեցի զսա (ասէ) ՚ի գաւառս Արտազու, ՚ի գեօղս որ կոչի Մակու ... ՚ի թվ. մարդեղ". ՌՆ ՌՅՂԷ‖։

Նոյն է սա թերևս ընդ վերոգրեալ Շաւարշան գիւղաքաղաքին, զկնի կոչեցեալ Մակու. քանզի առաջին ՚ի մատենագրաց (որք ծանօթ են մեզ՝) զթովմա արծրունի գիտեմք, որ զայս անուն յիշատակէ յասելն ՚Բ. 3. վասն խոսրովու պարսից արքայի՝ թէ ետ կայսեր մուրկայ (2) * Զերկիրն հայոց մինչև ցգետն հուրազդան, և զգաւառն կոտայից՝ մինչև յաւանն գառնի, յեզր ծովուն բզնունեաց՝ և մինչև յառեստն աւան, և զկոգովիտ գաւառ մինչև ցհացիւն և ցՄակու‖։ Եւ ընդ հակառակն Շաւարշան քաղաք անծանօթ իմն է յետագայից մատենագրաց։ Եւ թերևս ՚ի մերձակայ հին գաւառէն Ակէ, անուն սորա ապա ածանցեալ փոխեցաւ ՚ի Մակու. թէպէտ և էր ՚ի յԱրտազ գաւառի։ Ունէր սա և բերդ, քանզի ՚ի պատմութե թովմայի արծրունւոյ ՚Է. 3. յերկրորդ վարս գագկայ յիշատակի Բերդ մակուայ՝ զոր եառ գագիկ։

Իսկ մենաստանն ՚սրբոյն թադէոսի, յայտ առնէ՝ թէ յայսմ վայրի եղև կամ կատարումն նորին ՚սրբոյ առաքելոյն և ընկերացն, և կամ յաւէտ գիւտ և հանգիստ նշխարացն, քանզի յայս անուն կոչէ զայն թովմա արծրունի ՚Գ. 11. * Գրէ առ ՚ի եպիսկոպոսն գրիգոր ամատունեաց տանն, որ նստէր (3) ՚ի հանգստի ՚սրբոյն թադէոսի

(1) ՚Ի տպագրեալն՝ վերջին երկոքին անուանքն վրիպակաւ գրին Շաւարշան, և Արտազ։

(2) Այսպէս գրի միշտ առ թովմայի արծրունւոյ, և առ այլս ոմանս այս անուն, ուր յայլ ազգաց գիրս որոց է անունդ՝ գրի Մաւրիքիոս, կամ Մաւրիկիուս, և կամ Մաւրիցիուս, որպէս և մեր ձեռագիր մատեանք ունին Մաւրիկ, զոր նորք սովորեցան գրել Մօրիկ։

(3) Զեպիսկոպոսական աթոռ տանն Ամատունեաց՝ մարթ էր կարծել յայս գաւառ գոլ հաստատեալ, եթէ յայլուստ չունեմք զառաւել ստուգութի լինել ՚ի գաւառն Արագածոտն յայլուրոտ.

առաքելոյ Որդողական գաւառի, դնել զելս իւրացն եկեալ հասեալ հինին ||:

Նախնիք՝ որպէս խորենացին Բ. 71. և Ճառընտիրք՝ զկատարումն առաքելոյն՝ և զհանգստարան և զգիւտ նշխարացն՝ դնեն 'Ի Գողթնայինն տեղւոջ, և 'ի շրջակայս շաւարշան գիւղաքաղաքի: Յայսմ վայրի ասեն լինել և զյղութին նըյն գրիգորի՝ զորմէ տես 'ի նոյն գլուխ խորենացւոյն, և յայսմաւուրս 'ի 18. նոյեմբերի:

'Ի ժդ. դարուն կործանեցաւ այս մենաստան, ըստ որում գրէ ստեփաննոս օրպէլ գլ. կԹ. * Ըմբռնեցին և զեպիսկոպոսն առաքելոցն զտէր տիրացուն՝, և ազգի ազգի անարգանօք ձաղեցին, և առին զամենայն ինչ նորա. բայց զվանքն նորա՝ որ էր շիրիմ սրբ. առաքելոյն Թադէոսի քանդեցին, զշինուածս տանցն աւերեցին, կողոպտեցին և իսպառ կործանեցին ||:

Եւ 'ի նմին ժդ. դարու յովսէփ վարդապետ ոմն նորոգեաց զայս մենաստան Թադէոսի առաքելոյն: Իսկ Ա. կոստանդին կաթուղիկոս բարձրբերդցի ճոխացոյց պարգևօք. * Յորժամ ոհբ. էր Թուականն հայոց (ասէ կիրակոս), առաքինի կաթուղիկոսն կոստանդին առաքէ յաբեւելս եկեղեցեացն ընծայս... 'ի ձեռն Թէոդոսի սպասաւորի իւրոյ 'ի պատուաւոր վանորայս, և շքաբերական նամակ շիրիմի առաքելոյն Թադէոսի, տալ նմա վիճակ զշրջակայ գաւառն և զքաղաքս, և ոսկի յղել 'ի շինութին գաւթին, որ շինէր վարդապետն յովսէփ յետ աւերածոյն որ 'ի Թուրքացն և 'ի հինին վրաց. քանզի յոլով ժամանակս աներնակ էր 'ի մարդոյ և ամայի: Եւ յովսէփայ երթեալ առ զօրագլուխ Թաթարին՝ որում անուն էր անգուն նուին, որոյ իշխանքն իւր յաւուրս ամառնայնոյ հուպ էր 'ի գերեզման առաքելոյն Թադէոսի. և նորա հրամանաւ սրբեալ զեկեղեցին, և նաւակատիս կատարեալ՝ շինեաց զվանս, և ժողովեաց 'ի նա կրօնաւորս բազում ||:

Իսկ 'ի չհը. (1319.) յահագին երկրաշարժութե՛ կործանեցաւ նոյն վանքն նաև եկեղեցին, և շրջակայ տունք՝ սպանեալ ոգիս հե. զորս անդրէն շինեաց տէր զաքարիա արքայազուն կաթուղիկոս աղթամարայ (1):

տես անդ: Իսկ զբանս Թովմայի՝ չէ պարտ առնուլ, Թէ գրիգոր եպիսկոպոս նստէր 'ի հանգստի նըյն Թադէոսի յարտազ իբրև յիւրական աթոռ, այլ վասն այլ ինչ պատճառի, և ըստ դիպաց ինչ:

(1) Պատմէ շարունակօղն սամուէլի:

Ծործորոյ վանք ։ 'Ի վիճակ նորին Թադէոսի դնէ զայս մենաստան յովհան երզնկացի 'ի յիշատակարանի մեկնութեան մատթէի, յասելն վասն իւր. * Ես նուաստս 'ի քս․․ յովհան երզնկայեցի սպասաւոր բանի՝ բնակեալ 'ի վիճակ Սրբ առաքելոյն Թադէոսի 'ի վանս Ծործորու կոչեցեալ՝ ընդ հովանեաւ նոր ածածնիս ‖ ։ Այսպէս երկար բնակելոյն յայս մենաստան կոչի սա ինքն յովհան և ծործորեցի, որպէս և զաքարիա եպիսկոպոս արտազու առժամանակօք նորին յովհաննու ։

Ներսեհապատ ։ Յայսմանէ Ղազար թղթ. 223. * Զուեալք 'ի դիմաց զօրքն հայոց ըստ աւուրց օթեվանացն՝ երթեալ հասանէին 'ի գաւառն Արտազ, և մտեալք 'ի գունդն պարսից՝ բանակէին 'ի գիւղ մի՝ որում անուն էր Ներսեհապատ ‖ ։

Աւարայր ։ Գեօղ՝ զորոյ զգիրս նշանակէ Ղազար յառաջեն. * Այսպէս և ս առաւել ստիպով եկեալ հասանէին գունդն պարսից 'ի գաւառն Արտազ, հուպ 'ի գեօղն որ կոչի Աւարայր 'ի շրջափակ տեղի Տղմուտ դաշտին ‖ ։ Իսկ Տղմուտ է անուն գետոյն՝ յորոյ անուն կոչէ Ղազար զմիթերակայ դաշտն ։

Եղիշէ զայն դաշտ կոչէ Դաշտ Աւարայրի. թղթ. 191. * Ամաւ և Դաշտն Աւարայրի (1) պայծառացեալ ծաղկալից լինի, ոչ յանձրևաբեր ամպոց, այլ 'ի նոյ և յարիւնաբուղխ վտակաց՝ ցանեալք և ցրուեալք 'ի սպիտակութեն նոյ ոսկերացն ‖. ուր վերջին բանքն յայտնի առնեն լինել զայն դաշտ՝ տեղի նահատակութեան վարդանանց։ Զնոյն ցուցանեն և բանք ասողկայ 'ի ե. 2. ուր ասէ զնահատակութե վարդանանց լինել * 'Ի դաշտին Աւարայրի 'ի գաւառին Արտազու ‖ ։ Այլ և Թովմա արծրունի ( ե. 1. ) * Բայց իբրև եղև (ասէ) մեծ պատերազմ նորին վարդանայ ընդ մշկանին և ընդ զօրս պարսից 'ի յԱւարայրեան դաշտին յԱրտազական գաւառին (2), և անդ յոյժ խրախուսեալ նոյ ածաբնակ զօրացն հայոց կատարեցան 'ի քս ‖ ։

Ոշկնոց ։ Յիշատակի առ Ղազարայ. * Եւ եկեալ մամիկոնեանն վահան 'ի գաւառն որ կոչի Արտազ, 'ի գեօղն որ անուանեն Ոշկնոց ‖ ։

(1) Այսպէս 'ի ձեռագիրս, ուր 'ի տպագրեալն դնի Դաշտ և այլն։
(2) Յայլում օրինակի վրիպակաւ գրի՝ * Աւարայրին դաշտին յԱրտազական գաւառին ‖ ։

## ԱՂԲԱԿ. կամ ԱՂԲԱԳ։

Ի գիրս՝ մանաւանդ ստէպ առ Թովմայի Արծրունւոյ կոչի սոսկ Աղբակ՝ առանց յարակցելոյ զանուանս Ձեձ, որ է որոշիչ փոքր Աղբագոյ որ 'ի Կորճէս, ըստ այնմ 'ի Բ. 6. ուր ասէ Թովմա Արծրունի. *Նախ եմուտ 'ի գաւառն Աղբագ, և ասպատակ սփռեր ընդ կողմանս երկրին Վասպուրականի‖:

Հադամակերտ։ Քաղաք ոստան տանն Արծրունեաց՝ յիշատակեալ զառաջինն 'ի Խորենացւոյն Բ. Դ. իբրև տեղի սեպհական Արծրունեաց. *Նա զԱրծրունիսդ գիտեմ ոչ Արծրունիս, այլ Արծիւ ունիս, որք արծուիս առաջի նորա (այսինքն վաղարշակայ) կրէին: Թողում զառասպելեացն բաջաղանս՝ որ 'ի Հադամակերտին պատմին. մանկան նիրհելոյ անձրև և արև հակառակեալ, և հովանի թռչնոյ՝ պատանւոյն թալկացելոյ‖:

Ի քաղաքի աստ շինեաց Գուրգէն եղբայր Գագկայ արքային Արծրունեաց՝ եկեղեցի. *Մարզպանն հայոց Գուրգէն (ասէ Թովմա Արծրունի Դ. 11.) հրաշագան յօրինուածով շինէ զեկեղեցին 'ի քաղաքին Հադամակերտ 'ի մեծն Աղբագ, 'ի բուն իշխանական սեփհականութեն իշխանութե զարմին Արծրունեաց. հարուստ մի հեռի ըղքարանցն տաշելոյ զհոլովումն բերելով առ տրամադրութի կոչարանին, իբրև ասպարիսօք երիւք զբացադոյնն մօտագոյնս գործելով սայլիցն հոլովմամբ‖:

Այլուր նա ինքն Թովմաս կոչէ Ոստան Արծրունեաց՝ յասելն. *Նախ եմուտ ընդ կողմն ատրպատական յԱղբագ գաւառ յերկիրն վասպուրական, և բնակեցաւ 'ի Հադամակերտ (1) Ոստանին Արծրունեաց‖: Ի պատմութե Թովմայի Արծրունւոյ Ե. 2. 'ի պատմելն կրկին անգամ զաշոտոյ որդւոյ Դերենկին կոչի Ոստան:

Օձ: Գիւղ՝ զորմէ Թովմա Արծրունի Դ. 11. *Նա տիկինն սեդայ առեալ զգի նորա (այսինքն զաշոտոյ վասպուրական իշխանի,) տարեալ հանգուցանէ 'ի յԱղբագ 'ի գեօղն Օձի, 'ի վանս Մե խաչի‖:

(1) Այսպէս Յադամակերտ գրի և յօրինակի միում պատմ. Խորենացւոյն, որպէս և առ Ղազարայ Թղթ. 15. որ 'ի գրեն զաղանայ արծրունւոյ ասէ. 'Կատարեալ զընթացս նահատակութե իւրոյ հանդիսէր. և եդեալ 'ի մատրանն 'ի Յադամակերտն‖:

Իսկ մենաստանն Խոչի (1) բազում ուրեք յիշատակի առ Նորին Թովմայի, ուր էին գերեզմանք իշխանացն արծրունեաց նախ քան զԹագաւորութիւն, զի ասէ Դ. 17. վասն աշոտոյ իշխանին. * Իսկ կատարեալ աշոտ զկեանս իւր մեռաւ 'ի վան տօսպ ... և տարեալ հանգուցանեն ընդ եղբարս 'ի վանս սբ խաչին յԱղբագ գաւառին||. Այսպէս 'ի գրելն զմահուանէ դերանկին ասէ Դ. 3. * Աշոտ որդի դերանկին առեալ զդի նորա տարեալ հանգոյց առ հարս իւր յԱղբագ գաւառի 'ի վանս Սբ խաչին||: Յորմէ յայտ է՝ թէ նախնիք դերանկին, որպէս նաև եղբարքն աշոտոյ անդ էին Թաղեալ, անդ Թաղեցաւ և տիկինն սոփի (2) կին Նորին դերանկի:

(1) Առ խորենացւոյն 'ի բանն որ յաղագս Ճանապարհորդութե՛ հռիփսիմեանց յիշատակի տեղի ինչ Սբ Խաչ անուանեալ. ուր զախտաւորս ջուրն բժշկեցին, և խաչ կանգնեցին նքքն. որ և 'ի յայսմաւուրս 'ի 5. հոկտեմբերի ասի լինել 'ի յաղբակ, քանզի գրի՝ եթէ եկեալ 'ի գաւառէն մոկաց՝ գնացեալ հասին 'ի յաղբակ ... և զախտաւոր ջուրն բժշկեցին || և այլն: Այլ քանզի չէ յայտ թէ ո՛ր Աղբակն իցէ, մեծն՝ որ 'ի վասպուրական, թէ փոքրն՝ որ 'ի կորճեայս. վասն որոյ զբանս խորենացւոյն, և յայսմաւուրաց դնեմք 'ի ստորև 'ի մէջ տեղեաց մեծին հայոց՝ որոց գաւառք անծանօթք:

(2) Այլ որ բերէ մեզ տարակուսանս՝ այն է, զի Թովմա արծրունի յետ պատմելոյ Դ. 2. զմահ և զԹաղումն սոփեայ, յաւելու գրել. * Գագիկ և աշոտ և գուրգէն (որդիք սոփեայ և դերանկին) ... եառուն 'ի սբ եկեղեցին Դ. ագարակս զՎանքն Փշոց, և զՄծառոյն Ահաւանք՝ յանդիման եկեղեցւոյն որ 'ի կղզի, և զԲաղին Մանակերտ՝ որ է հանդէպ հարաւոյ կուսէ, և զԲերկրի, և այլ բազում տեղիս՝ զոր աւանդեցին որդիք Թագաւորին (այսինքն դերանկին), յետ մահուան հօր և մօր իւրեանց 'ի պէտս Սբ խաչին Աղթամարայ||: Ուր ցուցանէ՝ թէ այնմ եկեղեցւոյ և վանաց ուր Թաղեցան հայր և մայր նոցա՝ եառուն զչորեսին ագարակս. և զի նոքա Թաղեցան 'ի վանս խաչի որ 'ի յԱպրագ, երևի 'ի բանից սոսա՝ թէ այն վանք նոյն էր ընդ վանաց խաչի որ 'ի յԱղթամար: Իսկ մատթէոս ուռհայեցի՝ զգերեզմանս Թագաւորացն արծրունեաց՝ դնէ ո՛չ յայս վանս խաչի, և ո՛չ յաղթամար, այլ 'ի վարագ, զորոյ զբանս յիշեցաք 'ի ստորագրելն զՎարագ, տե՛ս անդ: Զիա՛րդ և իցէ՝ քանզի զաղթամար ո՛չ ոք դնէ յաղբակ, այլ մանաւանդ յըռշտունիս, մեք ևս ուրոյն ուրոյն եդաք զսոսա:

Իսկ առ միաբանելոյ զայլ և այլ բանս հեղինակաց՝ մարթ է ասել, թէ գուցէ յայլևայլ ժամանակս փոփոխեալ իցեն տեղիք գամբարանաց տերանցն վասպուրականի, քանզի և 'ի վերոգրեալ բանն Թովմայի երևի լինել յաւելուածք ինչ բանից մուծեալ 'ի յետնոց, կամ յարմարեալ ժամանակի Թագաւորութե՛ն արծրունեաց, որ պատճառէ շփոթութի այլոց բանից նորին Թովմայի արծրունւոյ. յորս ստորագրէ զեղեալսն 'ի ժամանակս իշխանաց:

Յաւելուած լինել զվերոգրեալ բանն 'ի գրոց Թովմայի արծրունւոյ՝ Թէպէտ ո՛չ իշխեմք հաստատել, բայց կարի հաւանական երկբայութբ կասկածիմք ընդ հարազատութի այնց բանից, վասն կրկին պատճառաց: Մի՝ զի Դերանիկն

Որոտրանից ջոր։ Յիշատակէ Թովմա արծրունի յերկրորդ մասին աշոտոյ որդւոյ դերանիկին Ե. 2. 'ի գրեանն անդ զդեմեան ափշնի արաբացի ոստիկանի 'ի վերայ աշոտոյ. * Իսկ իշխանն աշոտ եղբարբքն համդերձ, և ամենայն փորօքն խոյս տուեալ ամրանայ 'ի Ձորն Որոտրանից ։ Սակաւ մի զկնի ցուցանէ զնոյն տեղի լինել 'ի գաւառն աղբագ, յիշելով և զգիւղն անուանեալ Կոջէնից. * Սա ինքն (ափշին) երթեալ 'ի գաւառն Աղբագ՝ դադարէ 'ի Հադամակերտն աւանի, և առաքէ զայր մի ներքինի ... զօրօք բազմօք զի երթեալ պատերազմեսցի ընդ իշխանին. և քանզի նոքա ամրացեալ էին 'ի դժուարս Կակէնից գեաւղջ՝ դառնայ ներքինին մեծաւ ամօթով ոչ ինչ կարացեալ սատանել նոցա վասն տեղւոյն ամրութե, և զօրացն քաջամարտիկ լինելոյ ։

Զհամանուն գիւղ 'ի նմին յաղբագ գաւառի յիշատակէ և յովհաննէս կաթուղիկոս 'ի գրեանն զնահատակութի երկրորդ ատովմեանց. * Նոյն գլխաւորի նոցա ատոմ Ճանաչիւր 'ի գաւառէ Աղբագայ յՈրսիրանս գեղջէ ։ (1) ։

ԱՆՁԱԽԻՁՈՐ։

Յերկուս ձեռագիրս աշխարհագրութե խորենացւոյն գրի Անձախի ջոր, իսկ 'ի տպագրեալն և 'ի միում ձեռագրի

Թագաւոր կոչի 'ի բանս անդ, զոր ոչ ուրեք է տեսանել 'ի գիրս Թովմայի ։ Երկրորդ՝ յեղանակէ բանիցն, որ յաւէտ պատշաճի յետնոյ ուրուք՝ (զկնի շինութե աղթամարայ, մանաւանդ թէ զկնի լինելոյ աղթամարայ արքունիք, և այնուհետև 'ի ժամանակս յաջորդացն գագկայ առաջնոյ արքայի.) քան Թովմայի արծրունւոյ ։

Զայս յայտ առնէ այն՝ որ ինչ զկնի վերոգրեալ բանից դնի անդէն. * Իսկ են հրամանք սոցա իբրև զվէմ հաստատուն. և թէ ոք խախտել ջանայ, 'ի հրամանէն ծոյ ոչ ժառանգէ նա զաթոռ իւր և զթագաւորութի. և թէ հաստատել կամեսցի՝ անսասանելի կացցէ նա յայսմ աշխարհիս. ամէն ։

Բանք զորս անդէպ է ընծայել Թովմայի, որպէս թէ գրել նմա 'ի գիմաց յետնոյ ուրուք, և այն թերևս զկնի լինելոյ աղթամարայ աթոռ կաթողիկոսի, (որպէս կասկածիմք ոչ միայն վասն այսց բանից. այլ և վասն այլ ինչ ինչ բանից 'ի գիրս Թովմայի.) մինչև գրեալ էր նորա զթագաւորել գագկայ ։

(1) Առ տողիւ Ե. 2. գրի Որոտրան. * Գլխաւորին անուն Ատոմ կոչիւր, որ էր 'ի յԱղբակ գաւառէ յՈսիրան գեղջէ ։ 'Ի մերձաւորութէ անուանց կրկին այսոցիկ գիւղիս Որոտ. և Որոտրան, կամ Որոտրանոյ՝ մարթ է 'ի կարծիս լինել՝ եթէ մի և նոյն իցեն ։

գրի Անձախաձոր։ Թովմա արծրունի ա. 10. ուրոյն ուրոյն գրէ Անձախից ձոր, կամ Ձոր անձախից, յասելն. *Պատանայ երուանդ առ սահմանօքն ատրպատականի 'ի Ձորն անձահէյս. իսկ Անձահից ձոր վասն այնր կոչեցին՝ բազում [illegible] 'ի կոխակս բարձրաւանդակս, և կիրճս նրբականս, և զերծս, և խոխոմս ձորոյն 'ի Թոխ և 'ի բոխ երկրին անբնակ մարդկան ||։ Ուրեք ուրեք 'ի նմին օրինակին Թովմայի գրի Ձոր ընջանից՝ որ է նոյն, որպէս տեսցի ստորև։

Այս ձոր ըստ նորին Թովմայի գ. 2. աւարտի 'ի կողմանս հեր քաղաքին պարսկահայոց. *Իսկ եղև 'ի գնալ դերանկին 'ի ձմերոցս վասպուրական իշխանացն՝ ճանապարհ արարեալ ընդ ձորն Անձահից, որոյ ելքն ընդ գաւառն հեր քաղաքի ||։

Աղտոր։ Բերդ՝ որ բազում ուրեք յիշատակի առ Թովմայի արծրունւոյ, որպէս 'ի գ. 4. ուր ասէ վասն ապուբուանայ, թէ *Զ գուրգէն (եդ) 'ի Աղտորն բերդ ||. և 'ի Ե. 2. յերկրորդ վարս աշոտոյ և գագկայ. *Բարձեալ տանի յամրոցն յԱշխնոր՝ ուր էր գուրգէն, նմանապէս և 'ի Բերդն Աղտորոյ 'ի ձորն անձահոյ ||։ Իսկ այլուր գ. 4. գրի 'ի Ձորն ընջանից։ Ապուամբուան յինքն գրաւեաց (ասէ) * Զամուրն Աղտոր 'ի ձորն ընձահից ||։ Յորմէ յայտ է թէ կամ վրիպակաւ գրչաց գրի Ձոր ընջանից, և կամ այնպէս ևս կոչէր յոմանց։

Աստ մեռաւ Ստեփաննոս գ. կաթուղիկոս, զորմէ ասողիկ գ. 8. *Իսկ զստեփաննոս 'ի Աղտորոյ բերդն փոխեցին, որ և մեռաւ 'ի նմին ||։

## ԹՈՌՆԱՒԱՆ. ― ՃՈՒԱՇ։

Առաջնոյն անուն միշտ այսպէս գրի առ Թովմայի արծրունւոյ, և 'ի միում ձեռագրի աշխարհագրութե խորենացւոյն. իսկ յայլ երկուս ձեռագիրս յաւելմամբ ― տառի գրի Թոռնաւան, յորմէ յայտ է վրիպակ տպագրելոյն՝ ուր գրի Թոռնաւան։

Նկան։ Բերդ՝ զորմէ Թովմա արծրունի գ. 4. *Ասակաւ սակաւ սկսաւ զամուրսն յինքն գրաւել ... զԱմուրն Նկան 'ի Թոռնաւան գաւառի || (1)։ Այլուր 'ի

(1) Առ նորին Թովմայի արծրունւոյ. 'Խարեալ էր զաշոտ՝ ... Ե. 1. գրի վասն ապուշ ... տալով զբերդն Ագարակայ՝ հա-

նոյն գլուխ կոչէ զայս ամուր Անկասկածելի՝ զամրութի նորա ցուցանելով։

Նոյնպէս և Երկրորդ գաւառին անուն Ճուաշ գրի յերկս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն, միայն 'ի տպագրեալն գրի Ճուաշռոտ (1). սոյնպէս և առ Թովմայի արծրունւոյ գ. 11։

Գնէտոս աւան։ Զուարձալի տեղի առ Երասխաւ. ուր Գագիկ ա. արքայ արծրունեաց շինեաց իւր տեղի զբօսանաց, կամ ամարանոց։ Զորմէ Թովմա արծր. գ. 11. *Դարձեալ վերակնեալ յառաւօտին կոյս խաղացեալ 'ի Ճուաշռոտ 'ի Գնետոս աւան՝ շինէ անդ վայելչական տեղի խրախից՝ բոլոր մի պարսպեալ տաճարախիտ շինուածովք, որոյ հայեցածն առ դաշտակողմն 'ի վայր կոյս բերի, 'ի խաղս գետոյն Երասխայ, ուր հոյլքն երէոցն խայտան, և վայրենեացն խողից, և առեւծոյն մորիքն, և երամք ցռոց պատրաստական առ որսոյն հրճուանս առ ձեռն պատրաստ հոլովլին, ընդդէմ նայելով լերանց այրարատեան ազատն մասեաց‖։

Ստաւկան։ Աւան՝ ուր էր ձմերոց արքունի՝ որպէս է տեսանել առ Թովմայի արծրունւոյ գ. 2. *Եւ գնաց դերանիկն 'ի Ճուաշ գաւառ՝ ձմերել յաւանին Ստաւական‖։ Եւ սուղ ինչ զկնի կոչէ զնոյն՝ Ձմերոց վասպուրական իշխանաց։ Իսկ 'ի գ. 12. առաւել յայտնի. *Կամէր փութապէս անցանել 'ի ձմերոցս արքունի 'ի գաւառն Ճուաշ՝ յաւանն Ստաւական‖։

Շինեալ էր այս աւան առ Կարմիր վտակաւն Երասխայ, ուրանօր Գագիկ ա. արքայ արծրունեաց կառոյց զանազան շինուածս. *Իսկ վայր խաղացեալ (ասէ Թովմա

դերձ Ծախուրն կոչեցեալ գաւառաւ, փոխանակ իւր առնելով ըզԲերդն Նկան, և զԹոռնաւան և զՃուաշ գաւառք‖։ Ուր ոչ թէ զՆկան առանձին գաւառ կացուցանէ ուրոյն յիշելով. այլ զՆկան ցուցանէ լինել Բերդ երևելի, թէպէտ և 'ի Թոռնաւան գաւառի, որպէս այլուր յայտնի նշանակէ։ Ցօրինակին յայսմ վայրի վրիպակաւ գրի Թոռնաւան։ Նոյնպէս վրիպակ Թուի գրչաց յիշատակեալն ուրեք յայսմաւուրս՝ Բերդն Նկան 'ի վասպուրական, առեալ 'ի վարդանայ աշխարհագրէ, (յորոյ 'ի տպագրեալն ևեթ գտանի, և ոչ 'ի ձեռագիր օրինակին որ 'ի ձեռս մեր.) որ թերևս նոյն է ընդ Նկան բերդին։

(1) 'Ի միում 'ի ձեռագրաց աշխարհագրութեան խորենացւոյն մասնիկս տալ յարի 'ի յետագայ անունս Կրճոունիք. յայլում ձեռագրի Ճուաշ ուրոյն գրի, և ռոտք՝ ուրոյն, իբր այլ և այլ գաւառ։ Սոյն ռոտք յերկրորդ ձեռագրի գրի ռոտ. Եւ արդարև ռոտփոյ փոստ առ յովհաննու կաթուղիկոսի յիշատակի ուրոյն. որ թէ չիցէ յառըրպատական կամ 'ի պարսկահայս, թերևս նոյն է։

արծ. Դ. 11. վասն նորին գաղկայ) 'ի Մառականն աւան առ Կարմիրն կոչեցեալ գետով՝ որ իջանէ 'ի գետն Երասխ, շինէ և անդ ամրական տեղի դժուարամատչելի ապաստակող հինից, դնելով 'ի նմա նմանապէս ապարանս փողոցայարդարս տաճարակերտս սենեկազործս՝ բաւական 'ի պէտս պատրաստեալ: Փոքր ինչ 'ի վայր խաղացեալ 'ի տեղին՝ որում Զորք ասեն, և անդ գտեալ ամրագոյն անձաւ տեղի՝ անկասկածելի 'ի պատերազմական գործոց. և զնա պարսպեալ պատուարօք շուրջանակի. և յօրինեաց պատրաստեաց ապարանս պատուաւորս գեղազարդս իրախճանական կարգադրութեանց դրուագս||: Այս Մառական աւան Թերևս նոյն է՝ որ այլուր 'ի գիրս նորին Թովմայի գրի Մարաքայ, և կոչի Բաղաք:

Կիւղէն: Զորմէ Թովմա արծրունի ասէ ուրեք. *Նուիւքն վերաւորեալ սրով մեռանի 'ի գեօղն Կիւղէն 'ի Ճուաշ գաւառի||:

Ռահրամ: Բերդ՝ կամ Ամրոց՝ որ բազում ուրեք յիշատակի 'ի պատմութեան Թովմայի արծրունւոյ յերկրորդ վարս դերանկին և գաղկայ արքայի. * Իսկ գաղիկ խաղացուցանէ 'ի Ճուաշ գաւառ յամրոցն Ռահրամ||: Նու այլուր Է. 3. * Կարգեալ էր և զօրագլուխ մի մեծիմաստ յառաջատես իշխանին գաղկայ 'ի վերակացութի գաւառին Ճուաշայ և Ռահրամն կոչեցեալ բերդի 'ի տանէն ակեացեայ՝ այր միամիտ և քաջասիրտ, որում անուն էր Թադէոս||: Զսոյն զայս Թադէոս 'ի յիշելն Թովմա արծրունի յառաջին վարս գաղկայ՝ դնէ 'ի Ռահրամ բերդին, այլ առանց որոշելոյ զգաւառն, և առանց յիշելոյ զանունն Ճուաշ:

Նորոգեաց զսա ապումբուան վերակացու որդւոց դերանկին: Անու ասէ Թովմա արծր. Է. 1. * Զ Ճուաշ գաւառ, ուր և շինեալ զՌահրամն՝ պարսպէ յիւր անուն||: Բայց 'ի յայսմաւուրս 'ի 8. ապրիլի՝ Ամուր Ռահրամայ կոչի նոյն իսկ Բերդն Ճանայ:

Բակէար: Յիշատակի առ ասողկայ Գ. 13. *Նորթեալ իջևանի 'ի Ճուաշ գաւառի՝ 'ի տեղին որ կոչի Բակեար||: Ստորև կոչէ զսա Ամրոց:

## Կրճունիք. (1) Մնձնունիք. Պալունիք:

Թովմա արծրունի յառաջին գաւառին երեւի դնել զերկուս տեղիս, յասելն. *Դառնան 'ի Ճուաշ, և 'ի Թոռնաւան գաւառ, անցեալ ընդ Կրճունեաց գաւառն, և վարեն 'ի գերութիւն աւարառութեան զԴէէ, և զՄջջէ:

Երկրորդ գաւառն 'ի տպագրեալն և 'ի միում ձեռագրի աշխարհագրի". Խորենացւոյն գրի Մնձնունիք. յայլում ձեռագրի գրի Մնծունիք. իսկ 'ի միում այլ՝ պակասի այս անունս (2):

Երրորդ գաւառն 'ի միում և եթ ձեռագրի աշխարհագրութեան Խորենացւոյն գրի Պալունիք (3):

Եպիսկոպոսարանն սորա հիմնեալ 'ի վաղ ժամանակաց, բայց առաջնորդն յիշատակեալ զառաջինն 'ի ստորագրութեան Ժողովոյն Դվնայ՝ նախ քան զԵպիսկոպոսն Մեհնունեաց՝ է Յակոբոս եպիսկոպոս Պալունեաց:

### ԳՈՂԹՆ:

Ի պատմութեան Թովմայի արծրունւոյ յերկրորդ վարս գագկայ՝ կոչի Գողթնատափ:

Ըստ գրիցն անկանի առ եզերբ գետոյն Երասխայ, որպէս յայտ է 'ի Խորենացւոյն Ա. 29. ուր գետ անուամբ պարտ է իմանալ զԵրասխ (4). յայտ է և 'ի տեղեաց գողթան՝ որք կան մինչև ցայսօր: Այս գաւառ վասն զուարճալի գրիցն՝ Գեղջէջէէ կոչի առ ստեփաննոսի ուռ-

(1) 'Ի միումն 'ի ձեռագրաց աշխարհագրութեան խորենացւոյն գնի վրիպակաւ Կճրունիք:

(2) 'Ի ստորագրութեան եպիսկոպոսաց Ժողովոյն Դվնայ յիշատակի Սամուէլ Մեհնունեաց եպիսկոպոս. որ որպէս Թուի՝ պարտ է լինել Մեծնունեաց:

(3) Կրկին Պալունիս ակնարկէ լինել Եղիշէ Թղթ. 90. յասելն. *Իշխանն միւս ևս Պալունեաց վարադշապուհ ||: Թերևս մի 'ի պալունեաց այն իցէ՝ զոր պատմիչքն տարօնոյ ցուցանեն լինել սահմանակից տարօնոյ. և կամ մանաւանդ վիճակ ինչ գաւառին տարօնոյ: Տես 'ի տարօն՝ ուր յիշատակին Կուառս և Հոռեան աւանք 'ի գաւառին կամ յերկրին պալունեաց:

(4) Որպէս յայտ է 'ի բանից ասոր ուռպելենին 'ի գլ. ԺԵ. վասն նըյն մեսրոպայ. *Եւ զԳողթն որբեալ 'ի ձեռն իշխանին իւրեանց շաբիթայի. և այնքան հալածեաց զբազմութիւն գիւացն՝ որք մարմնաւոր տեսլեամբ... փախստեայ անցեալ ընդ Երասխ՝ անկանէին 'ի կողմն մարաց ||:

պելեան 'ի գլ. ԺԵ. յասելն վասն մեսրոպայ. * Նշկեալ 'ի սիսական կողմն՝ հաճեցաւ բնակիլ 'ի գեղեցիկ գաւառն Գողթան ‖:

Իսկ ըստ նահանգին անկանէր 'ի վասպուրական, կամ 'ի սկզբան անդ, և կամ առ ժամանակօք խորենացւոյն՝ որպէս յայտ է յաշխարհագրութենէ նորա. զի դնէ զայն 'ի կարգս գաւառաց վասպուրականի. այլ էր սահմանակից սիւնեաց՝ որպէս նշանակէ կորիւն:

Սակայն ստեփաննոս օրպելեան 'ի գլ. Զ. երկոքումբք ցուցանել ձգնի՝ թէ 'ի սկզբանէ անտի էր 'ի սիւնիս. մի՝ զի նոյն գրիգոր 'ի լուսաւորել զհայս՝ զառաջնորդս գողթան կարգ ընդ եպիսկոպոսօք սիւնեաց. երկրորդ՝ զի իշխանք գողթան էին 'ի սիսական կամ 'ի սիւնեաց ցեղէ, և իբր ժառանգութիւն իւրեանց առեալ էին զայս գաւառ: Օայս այսպէս հինն դնելով իւր, 'ի գլ. Գ. զԳողթն ընդ Երնջակայ դնէ մետասաներորդ գաւառ նահանգին սիւնեաց:

Բայց մարթ է այլազգ լինել գաւառաց յեկեղեցական վիճակի, և այլազգ 'ի քաղաքական կարգի՝ առ որ հայի աշխարհագրութիւն. սոյնպէս և իշխանքն գողթան թէպէտ էին 'ի սիսականէն, բայց խորենացին յայտնի դնէ՝ թէ էին հաստուածեալ: Վասն որոյ այսպէս թուի մեզ վիճակ այսր գաւառի, զի զառաջինն էր 'ի վասպուրական, ապա 'ի ՃՁԶ. թուականիս (յամի Տն 737.) 'ի բաց հատեալ 'ի վասպուրականէ ընդ թովմայի արծրունւոյ ('ի Գ. 11.) և թերևս յայնժամ անց 'ի սիւնիս: Իսկ ստեփաննոս գոլով 'ի ԺԳ. դարուն, յորում ժամանակի ըստ մեծի մասին բարձեալ էին կարգք իշխանութեանց և նախարարութեանց, առաւել հայելով 'ի վիճակ եկեղեցական թեմի՝ քան թէ քաղաքական գաւառաց, երևի դնել զայն 'ի սիւնիս:

Բնակիչք սորա էին երգիչք հին բանաստեղծական պատմութեան ազգին, զոր պէսպէս նուագարանօք կնմնտացահար աղբերախիւք երգելով յորդւոց յորդի աւանդելով հասուցին մինչ 'ի ժամանակս խորենացւոյն, զոր և ստէպ յիշէ նա ինքն 'ի պատմութեան:

Ի բերս սորա առատ գոլով գինի՝ ընկալաւ 'ի խորենացւոյն զմականունս Գողթն գինեւէտ, ոչ միայն յաշխարհագրութեան, այլ նաև 'ի պատմութեան Ա. 29. ուր և յիշէ զերգս նոցա՝ յասելն. * Յայտնեն զայս ճշմարտապէս և թուելեացն երգք, զոր պահեցին իմն ախորժելով որ-

պէս լսեմ՝ մարդիկ կողմանն գինեւէտ գաւառին Գողթան ||:

Ցեղ իշխանութեան Գողթան սերեալ էր 'ի սիսականէ. * Իսկ զշուշանիկ եւ զԳողթնեցիս (ասէ խորենացին) (1) գտի պատմեալ 'ի սիսականէն արդարեւ հատուած, ոչ գիտեմ թէ յանուն արանցն զգաւառսն անուանեալ, եւ թէ յանուն գաւառացն զնախարարութիւնն կոչեցեալ ||: Յոր բան գրէ ստեփաննոս օրպէլեան գլ. Ղ. * Նմանապէս եւ իշխանք (գողթան՝) ոչ եթէ յայլմէ տոհմէ էին, այլ 'ի նոյն սիսական ցեղէ, ըստ մասին ժառանգութեան առեալ էին զայս գաւառ, որպէս ցուցանէ քեզ մովսէս խորենացի ||:

Նաեւ իշխանք սորա յիշատակին 'ի գիրս, 'ի Ե. դարուն 'ի ժամանակս սրբոյն մեսրոպայ՝ Շաբիթ, եւ որդի նորա Գիտ, կամ Գիւտ, որք եւ բազմօք սատարեցին քարոզութեան սրբոյն 'ի բարձումն հեթանոսական աղանդոյն 'ի կողմանցն գողթնեաց. 'ի Է. եւ Ը. դարուն՝ Խոսրով հայր վահանայ գողթնացւոյն, եւ զկնի նորին վահան՝ պարծանք գաւառիս իւրով մարտիրոսութեամբ:

Յիններորդ եւ 'ի տասներորդ դարուն եղեւ իբր առանձին ինչ տէրութիւն 'ի ձեռս հագարացի բռնակալաց՝ որպէս ցուցանէ պատմութիւն յովհաննու կաթուղիկոսի, եւ ասողկայ. եւ ոչ իսկ այնչափ փոքր տէրութիւն, զի ապլ-հաճայ ամիրայն ատրպատականի 'ի յարձակելն 'ի վերայ ապուտլփոյ որ էր տէր գողթան՝ հարիւր հազար պարսիկ զօրու խաղաց 'ի վերայ:

Կան 'ի սմին գաւառի եւ տեղիք արքունականք՝ զոր Բ. արտաշէս արքայ պարգեւեաց սմբատայ. * Պարգեւէ նմա (ասէ խորենացին 'ի Բ. 50.) արտաշէս զմասն Արքունի որ 'ի շէնս գողթան, եւ զ[illegible] ||:

Զքրիստոնէութիւն ընկալան բնակիչք գաւառիս՝ քարոզութեամբ սրբ. առաքելոյն բարթուղիմեայ, որպէս ցուցանէ ստեփաննոս օրպէլ. գլ. Ղ. յորս մնաց նոյն կրօն մինչ 'ի սրբն գրիգոր՝ թէպէտ եւ թագուն. * Սոքա ասէ (նա ինքն ստեփաննոս, այսինքն է՝ քրիստոնեայք գողթան գաւառին) կային եւ մնային անտերունչք՝ բնակեալ այսր անդր, եւ ոմանք ցրուեալք 'ի լերինն [illegible] միայնաւորութեամբ զկեանս իւրեանց վարէին՝ [illegible] ուսուցանելով յոլով ժամանակօք մինչ 'ի գալ մեծի լուսաւորչին

(1) Խորենացին 'ի Բ. 7. (ըստ ձեռագրաց՝ 8):

'ի Հայս, և լուսաւորելոյ զամենայն աշխարհս Հայոց, ապա գնացեալ սոցա՝ խնդրեցին իւրեանց առաջնորդ‖, և այլն։

Այլ որպէս յետ քարոզութե՛ առաքելոյն ոչ անհետ եղև 'ի նոսա քրիստոնէութիւն, նոյնպէս և յետ քարոզութե՛ լուսաւորչին՝ ոչ բարձաւ 'ի նոցանէ իսպառ աղանդն հեթանոսութե՛, նա՝ մանաւանդ 'ի նուազիլ թագաւորութեան՝ առ բազումս տարածեցաւ. վասն որոյ կորիւն զայն կողմանս կոչէ Անկարգ և Անդարման տեղիք գողթան։ Իսկ զայն մնացորդս բնաջինջ արար երանելին Մեսրոպ, որ նախ զառաջինն աստ սկսաւ քարոզել զքրիստոնէութիւն բազում աշխատութե՛ հանդերձ օգնականութե՛ բարեպաշտ առն Շաբիթայ կամ Շաբաթայ իշխանի գաւառին. յայն սակս խորենացին Գ. 67. զՊօղթն կոչէ 'ի մէջ գաւառաց Ախաղաշկերտեան Մեսրոպայ։ Իսկ կորիւն կոչէ զՊօղթն՝ Առաջին Պատակերտ Մեսրոպայ, իմա՛ Պատակերտ հոգևոր՝ նմանութե՛ ասացեալ. *Երթեալ իջանէր առ ոտս տանն Պօղթան՝ յԱռաջին Պատակերտն իւր, և անդ ընդելական սովորութե՛ն 'ի կեր արկեալ ըզվարդապետութիւն հաւատարութե՛ն բարեպաշտին Շաբաթայ՝ լի առնէր զգաւառն ողջունիւ աւետարանին քի. և կարգէր յամենայն գիւղս գաւառին դասս քհց վանականաց։

Առաջին Եպիսկոպոս գաւառիս՝ ստեփաննոս օրպէլ 'ի գլ. Գ. դնէ լինել զոմն Կոսմի անուն աշակերտ բարթուղիմէ առաքելոյն, որում յաջորդեաց Նաբիլաս՝ ազգաւ խուժիկ. իսկ 'ի ժամանակս լուսաւորութե՛ Տրն գրիգորի՝ զառաջինն եկաց եպիսկոպոս Մովսէս ոմն, որում յաջորդեցին այլք, զորս ըստ կարգի դնեմք՝ առեալ 'ի գրոց ստեփաննոսի օրպէլեան։ Կոսմի Եպիսկոպոս. Նաբիլաս Խուժիկ. Մովսէս Տարօնացի. Սահակ Տարօնացի. Զբուանդատ. Ստեփաննոս. Յովհաննէս (1)։

Յիշատակի 'ի գիրս առ Սիոն կաթողիկոսիւ՝ և Եսայի Պօղթան եպիսկոպոս. որ զկնի եղև կաթուղիկոս։

Աթոռ եպիսկոպոսին Պօղթան՝ էր ընդ իշխանութեամբ եպիսկոպոսին սիւնեաց. զի ասէ նա ինքն օրպէլ գլ. Գ. *Բայց գիտեա՛ զի ոչ եթէ հաստուածեալ էին սոքա (և

(1) Բանք օրպէլենին 'ի գլ. Գ. են. *Գնացեալ սոցա (գողթնացւոց) առ Տրն գրիգոր՝ խնդրեցին իւրեանց առաջնորդ, և ետ նոցա այր մի տարօնացի Մովսէս անուն, և յետ նորա Սահակ տարօնացի, և ապա զԶբուանդատ, և զՍտեփանոս, և ապա զյովհաննէս. և այսպէս 'ի կարգ անկեալ մի զմի փոխադրելով մինչև ցայժմ‖։

պիսկոպոսունք գողթան) 'ի սիւնեաց, այլ յառաջին մինչ-
դեռ ոչ էին հաւատացեալ, և ոչ էին կարգած աշխարհս
հայոց եպիսկոպոսունք, սոքա (բնակիչք գողթան) առան-
ձին ունէին տեսուչս: Իսկ 'ի լուսաւորել նոյն գրիգորի
զհայս, և 'ի կարգաւորել զբարձ և զաստիճան եպիսկոպո-
սացն՝ և զտոսա յանձնեաց եպիսկոպոսացն սիւնեաց, զի
նոցա հրամանաւ և 'ի ներքոյ կացցեն հնազանդութեան.
որում վկայ՝ առաջին կաթուղիկոսացն շրջաբերական
թուղթքն, և հին գաւազանք գաւառացն՝ որ վասն հար-
կաց եկեղեցւոյն. զի լիով ունի գրեալ յինքեան զբովան-
դակ գաւառն Գողթան ‖:

Որդուար, կամ Որդվար: Գիւղ՝ զոր վարդան աշխարհա-
գիր դնէ յայս գաւառ, յասելն. *Գողթան գաւառն Ագու-
լիսն և Ջուղայովն, և Որթվաթն որ այժմ ասի Որդ-
վատ ‖: Ի նմին գաւառի ցուցանէ լինել և ստեփաննոս
օրպել. գլ. Ղ. յասելն վասն նոյն բարթուղիմէոսի. *Իսկ
նա առաքեալն շինէ եկեղեցի 'ի գողթն յարևմտից եզերն
'ի վերայ վիմի միոյ յիւրեանց հանգստեան տեղոյն՝ ուր
վանքն էին կալեալ. և անուն կոչեցին Տեառն ընդառաջ.
և արարին նշանս մեծամեծս. քանզի էր ջուր մնասակար
'ի յՈրդվար գիւղ՝ որ ոռոգանէր յամենայն ամի զամե-
նայն անդաստանս և զայգիս. և աղօթեցին յանկարծա-
կի, և կորուսին զջուրն, որ և տեղին յայտ է մինչև ցայս
օր ‖:

Ջուղայ, կամ Ճուղայ: Աւան առ երասխաւ մերձ 'ի
նախճաւան, զոր յիշատակէ խոր. Ա. 29. առանց որո-
շելոյ զգաւառն, բայց նախագրեալ բանք վարդանայ աշ-
խարհագրի յայտնի դնեն յայս գողթան գաւառի:

Վանանդ. և Գիւրան: Յայսմաւուրս 'ի 28. մարտի դնին
յայս գաւառ, ուր ասի վասն նոյն վահանայ գողթնացւոյն.
*Եկեալ 'ի գողթան գաւառն եւր 'ի Վանանդ, և յա-
զատն Գիւրան ‖: Վանանդ գիւղ յիշատակէ և ստե-
փաննոս օրպել գլ. Ղ. ուր թաղեցին (ասէ) զաշակերտ
նոյ առաքելոյն բարթուղիմեայ. և շինեցին 'ի վերայ՝ փո-
քրիկ մատուռն. էր անդ (ասէ) և բագին՝ զոր կործա-
նեալ նոյն առաքելոյն, շինեաց 'ի տեղւոջն խորթին եկե-
ղեցի, և կոչեաց յանուն նոյն թովմայի: (1)

(1) Այս վանանդ գեօղ կայ մե տես 'ի նոր հայաստան. 270.
մինչև ցայժմ մերձ յագուլիս զոր- զոր չէ պարտ շփոթել ընդ վա-

Աղբակ։ Ռաղաք՝ որ ՚ի քանից ինչ ասողկայ դ. 18. Թուի լինել ՚ի գողթան, զի ասէ թէ ՚ի թուին ՆՂ. *Հա-նէ ՚ի նմանէ զքաղաքն Սալարին, յաւարի առեալ զաշ-խարհն նորա զԱռողթն ։

## ՆԱԽՃԱՒԱՆ ։ (1)

Յաշխարհագրութեան Խորենացւոյն յիշատակի ՚ի կարգս գաւառաց, իսկ յայլ մատենագրաց գիրս Ռաղաքն ևեթ յիշատակաւոր՝ որ ՚ի նմին գաւառի՝ յայն անուն յիշատակի. Նոյն առ Օրբէլեան պատմագրի գլ. Ե. տպ. թղթ. 25. յատանի յիշատակեալ և յանուն գաւառին՝ ուր ասի. Սնդրէ պատճառանօք զտեղի ՚ի Նախջևանու Գաւառին ։ Յարտաքին մատենագրաց պտղոմէոս կոչէ զնոյն Ե. 13. Նաքսուանա ։

Խորենացի ա. 29. ՚ի պատմութիւն գործոց Մեծին Տիգ-րանայ՝ կոչէ գլխաւոր տեղի գաւառին՝ Խրոց և Խոսք. Մինչև ցնոյն իսկ (ասէ) Խմուրն Նախճաւանու ։ Իսկ ՚ի Գ. 32. ՚ի գրելն վասն Ը. արշակայ՝ կոչէ Ճ կն. ՚ի չինելն Նախճաւանի (2) բերելն ։ Բայց յաշխարհա-գրութեն իւրում կոչէ Ռաղաք ։ Նոյնպէս կոչէ և Հեղի-նակն վարուց վահանայ գողթնացւոյն ՚ի Ճառընտիրս ։ Նազար անուանէ Գէօղ. իսկ Թովմա արծրունի՝ Ն... և ուրեք Ռաղաք, և անուանէ զնոյն Սոփան, յասելն. *Ռամ-դի և զՍտամն Նախճաւան տուեալ էր ՚ի կալուած ։

նանդ գաւառին այրարատոյ, յորոյ որոշութեն գրէ ընդարձակօղ վար-դանայ աշխարհագրի. *Գողթան վանանդ որիշ է ։

(1) Յերկուս ձեռագիրս աշխար-հագրութեն խորենացւոյն գրի Նախ-ջաւան, որպէս և առ յովհաննու կաթուղիկոսի, և առ ստեփաննո-սի օրպէլեան ՚ի բազում տեղիս. միայն ՚ի գլ. Հ. առ նորին ստե-փաննոսի գրի Նախիջևան ։ Բայց ՚ի պատմութեն խորենացւոյն ՚ի Ա. Լ. և 48. ըստ տպ. և ըստ երից ձե-ռագրաց գրի Նախճաւան. միայն ՚ի ա. 29. այլայլին օրինակք, ուր ոմանք գրեն Նախճաւան, և ոմանք Նախջաւան ։ Նոյնպէս Նախճաւան գրի յերիս ձեռագիրս բուզանդայ ՚ի Դ. 55. առ ղազարայ, առ յով-հաննու կաթողիկոսի ուրեք, առ Թովմայի արծրունւոյ գրեթէ միշտ. առ ասողկայ ՚ի Բ. և Կ. ՚ի հին Ճա-ռընտիրս ՚ի վարս վահանայ գողթ-նացւոյն, և առ ստեփաննոսի օր-պէլեան՝ ՚ի միում վայրի. յորմէ յայտ է՝ թէ օտար գրութի է Նախչաւան որ գտանի ՚ի տպ. աշ-խարհագր. խոր. և առ վարդա-նայ աշխարհագրի. նոյնպէս և Նախ-ճաւան որ գտանի ՚ի միում ձեռ". աշխարհագր. խոր. և ՚ի միում վայրի միայն առ ասողկայ. կամ Նախջաւան՝ որ գրի ՚ի միում և եթ ձեռ". պատմ. խոր. ՚ի ա. 29 ։

(2) Յերկուս ձեռ". խոր. Նախ-ճաւանոյ ։

Եւ այլուր. * Երթայ գետեղի 'ի Նախճաւանն Ըւանի՝ յՈստանին Վասպուրական աշխարհին ‖ ։

Զդիրս սորա խորենացին ա. 29. ակնարկէ լինել հուպ 'ի մեծ լեառն մասիս, և 'ի գետեզր. որով պարտ է իմանալ զգետն երասխ, ըստ որում յայտնի դնէ ղազար յասելն. Թղթ. 211. *Գայր հասանէր յաշխարհն հայոց 'ի գետեզերն երասխայ, կամեցան անցանել 'ի Գեօղն որ կոչի Նախճաւան 'ի սահմանակցութեն սիւնեաց ‖ ։ Ըստ այսմ և ստեփաննոս օրպէլեան. * Նստեալ էր իւր զօրօքն 'ի Դաշտին Նախջաւանու յեզր երասխայ ‖ ։

Եւ անկանի 'ի հիւսիսակողմն, կամ 'ի ձախմէ երասխայ. զի ղազար զվերոյեդեալ բանդ գրէ վասն ատրվշնասպայ՝ որ գայր յատրպատականէ. իսկ ատրպատական անկանի յաջմէ կամ 'ի հարաւոյ երասխայ. ըստ այսմ դնէ և ասողիկ բ. 3. յասելն վասն կայսեր հերակլեայ. * Եւ դարձաւ հերակլէս ('ի փայտակարանէ) 'ի Թիկունս կոյս, հարկանէ զշահէնն երեսուն հազարօք, և ինքն ընդ ծղուկս (որ է գաւառ սիւնեաց՝) 'ի Նախճուան Թափի. և անցեալ ընդ գետն երասխ յաւանն Վըռնջունիս, գնաց 'ի բագրևանդ ‖ ։ Իսկ բագրևանդ՝ քանզի անկանի յաջմէ կամ 'ի հարաւոյ երասխայ, յայտ է թէ Նախճաւան՝ էր 'ի ձախմէ կամ 'ի հիւսիսոյ երասխայ ։ Զայս յայտ առնէ և այժմեան դիրք նորա. վասն որոյ 'ի դնելն խորենացւոյն 'ի նոյն գլ. զՆախճաւան 'ի մի կողմանէ գետոյն, պարտ է իմանալ վասն ձախակողման գետոյն երասխայ (1) ։

Իսկ ըստ նահանգին՝ գոլով յայնմ վայրի վասպուրականի՝ որ սահմանակից է սիւնեաց՝ (ըստ որում եդ 'ի վերոյ ղազար,) 'ի ժբ. դարուն անցեալ էր 'ի սիւնիս. քանզի ստեփաննոս օրպէլ գլ. ղ. գրէ վասն սիւնեաց. * Առնի 'ի Մայրաքաղաք զՆախջաւան ‖ ։ Նաև թէ երբ անց 'ի սիւնիս, 'ի բանից ինչ թովմայի արծրունւոյ՝ երևի լինել 'ի է. կամ 'ի ը. դարուն. զի գրէ դ. 11. թէ Նախճաւան մծա. ամօք յառաջ քան զգագիկ արքայ, կամ յառաջ քան զգրելն իւր զայն բան, 'ի բաց հանաւ 'ի վասպուրականէ, այսինքն՝ իբր յելս անդ է. դարուն, և 'ի սկիզբն ութերորդին. և զի սահմանակից էր սիւնեաց (որպէս ասացաք,) երևի թէ յայնմ ժամանակի անց

(1) Որով և յայտ է վրիպակ 'ի կարգս քաղաքաց մեծին հայոց՝ պտղոմեայ՝ որ զՆախճաւան դնէ որք ձգին առ եփրատաւ ։

'ի սմանիս։ Վասն որոյ և ա. Սմբատ արքայ յետ անդ ժ. դարուն ձեռագիր յետկարաւ եւ զայս քաղաք 'ի պարգև միւս Սմբատայ իշխանին Սիսականի, և յայնմանէ ծագեցաւ խռովութիւն մեծ 'ի մէջ գագկայ արծրունւոյ՝ որ զինի պսակեցաւ թագաւոր, և 'ի մէջ ա. Սմբատայ, և անտի համաշխարհական կործանումն առհասարակ հայոց, զորմէ ընդերկար և անաչառութեամբ (1) գրէ յովհաննէս կաթողիկոս։ Եւ այսպէս կամ 'ի վախճան է. դարուն՝ որպէս նշանակէ Թովմա արծրունի, և կամ 'ի Ժ. դարուն առ ա. Սմբատաւ երևի անցեալ 'ի սմանիս։

Այս քաղաք պանծալի է 'ի հնութեան քան զամենայն քաղաքս համօրէն աշխարհի. զի հասարակաց աւանդութիւն է ազգիս՝ զոր և յիշեն ամենայն ճանապարհորդք եւրոպեանց՝ դավէրնիէ, շարտէն, և այլք՝ որք յայն կողմանս ճանապարհորդեցին, թէ 'ի Նախիջաւան եղև առաջին բնակութիւն, ուստի և առաջին շինութիւն յարկաց և տանց մարդկայնոց ազգի յետ ելից Նոյի 'ի տապանէն։ Եւ 'ի հաստատութիւն այսմ՝ բերեն և զստուգաբանութիւն նորին իսկ քաղաքին, իբր թէ Նախ իջեւան, կամ Նախ աւան, այսինքն Նախկին իջեւանին և բնակարանին յետ ելանելոյ 'ի նաւէն, կամ Նախկին աւան (2)։

(1) Քանզի Թովմա արծրունի պատմիչ ժամանակակից յովհաննու կաթողիկոսի, թէպէտ և ականատես եղելոց՝ բայց 'ի բազում իրս յայս նիւթ ստորանալով 'ի յովհաննու կաթողիկոսէ, ստորանալ երևի և յանաչառ գրուէ, բազում ինչ գրելով իբրև 'ի շնորհուէս գագկայ. այլ և այլ կերպարան պատճառանս կցկցելով զըմբոստութեան գագկայ ընդ սմբատայ, յամենայնի գովելի ընծայեցուցեալ զգործս գագկայ, և զմեղս եղելոցն հանելով 'ի սմբատ, զոր քաջ կշռադատ պատմագրաց թողումք 'ի քննութիւն մատուցանել։

(2) Յիշէ զայս ուղիղ ստուգաբանութիւն շարտէն. այլ դավէրնիէ ճանապարհորդ սխալի 'ի ստուգաբանելն Նաքշ-ճիհան, զի բառս Նախ՝ ոչ նշանակէ 'ի մեր լեզու Նոյ, որպէս նոյն կարծէ։ Անհիմն է և ստուգաբանութիւն ոմանց՝ զոր բերեն անգղիացի պատմաբանք ընդհանուր պատմութեան, իբր զի սակս բազմութեան նկարագործ արուեստաւորաց անդր բնակելոց՝ կոչեցաւ այս քաղաք Նաքշ-ճիհան. այսպէս հաստատեն ասեն պարսիկք, և ինքեանք անգղիացիք իբր հաւանեալք այնմ՝ յաւելուն թէ նաև 'ի բարբառ հայոց Նախշաւար՝ նշանակէ Նկարիչ, և Նախշուն՝ նկարել։ Այլ քանզի Նախիջաւան քաղաք 'ի հայաստան է, և ոչ 'ի պարս, յայն սակս զստուգաբանութիւն այնր պարտ է խնդրել 'ի հայոց և ոչ 'ի պարսից. և անունդ այդ 'ի գործ ածէր առ հայս և 'ի հինգերորդ դարու՝ յորում ժամանակի էր խորենացին, բազմօք թերևս յառաջ քան զայն Նաքշճիհան՝ զորս երազեն պատճառ այսր անուանակոչութեան։ Իսկ Նախշաւար և Նախշուն 'ի գործ ածին 'ի ռամկական լեզու հայոց՝ յետոյ ուրեմն մուծեալ յայլոց ազգաց, որոց գործածութիւն ոչինչ հաւատութիւն բերեն առաջարկութեան խնդրոյս։ Ո՞ր թողցուք զի ձի-

Նոյնպէս 'ի մէջ բերեն և զյարմարութիւն դրից, զի է մերձ 'ի լեառն այրարատեան՝ ուր հանգեաւ տապանն. նմին իրի վասն Նախիջևանու պարտ է իմանալ զբան յովսեպոսի՝ որ ասէ (1). * Իսկ զայս տեղի (այսինքն՝ զտեղի ելից նոյի.) հայք կոչեն ԱՊՈԲԱՏԵՐԻՈՆ (այսինքն՝ տեղի ելից, չու, իջևան,) զի անդանօր զնշխարս պահեալ տապանին մինչև ցայժմ ցուցանեն բնակիչք ||: Քանզի 'ի կողմանս այրարատեան լերին՝ ուր ել նոյ, ոչ գտանեմք այլ քաղաք ինչ կամ տեղի որոյ անուն ստուգաբանեալ նշանակեսցէ ՏԵՂԻ ԵԼԻՑ, կամ ՏԵՂԻ ԻՋԵՒԱՆԻ՝ յարմար ասից յովսեպոսի, բայց 'ի Նախիջևանու:

Աստանօր դնէ թաղեալ վարդան աշխարհագիրն՝ և ըզնոյն ինքն զնահապետն Նոյ, ըստ որում աւանդեն և բնակիչքն (2):

Այս քաղաք հաստատեալ էր երբեմն աթոռ Եպիսկոպոսական՝ անուանեալ ՄԱՐԴՊԵՏԱԿԱՆ, որպէս ցուցանեն բանք Թովմայի արծրունւոյ Գ. 7. * Գունդ մի հարուստ անցեալ մնացին 'ի Ջամբոյրազան աւանի Մարդաստան գաւառի, ուր Եպիսկոպոսական աթոռ Մարդպետականին՝ (3) յայնժամ փոխեալ դնէր 'ի Նախիջևան քաղաքէ ||: Իսկ զի քաղաքն Նախիջևան էր Ոստան, (ըստ որում կոչէ զայն Թովմա արծրունի՝ զորոյ զբանսն եդաք 'ի վերոյ,) յայն սակս Եպիսկոպոսն Մարդպետական 'ի ժողովն դվնայ կոչի ՅՈՀԱՆՆԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՈՍՏԱՆ ԵՒ ՄԱՐԴՊԵՏԱԿԱՆ, և այն՝ անմիջապէս զկնի կաթուղիկոսին: Նոյնպէս յիշատակի Յոհաննէս Եպիսկոպոս նոյն աթոռոյ անմիջապէս զկնի կաթուղիկոսին նաև 'ի թուղթն մաթուսաղայի սիւնեցւոյն՝ առ ժամանակօք եզրի կաթուղիկոսի:

'Ի ժամանակս աբրահամու կաթուղիկոսի (Ծ̄ գրեալ ստեփաննոսի օրպելւ գլ. ԻԶ.) իբրև բաժանեցան վիրք 'ի հայոց. * Առնուն զՄետրապօլտութիւն Մարդպետական Եպիսկոպոսին Թէոդորոսի ||. յայտ է թէ 'ի ժամանա֊

հաննիսիմայն գրէ՝ թէ զՆԷԽՃԷՎԱՆՆ արաբայի հնչելով՝ կոչեն ոմանք ՆԱԳՇԻ ՃԻՀԱՆ, որ թարգմանի Նկար աշխարհի:

(1) Գիրք Ա. հնախօսութեան. գլ. 3. հատ. Ա. թղթ. 16. ըստ տպ. համստրդամայ 'ի 1726, ուր յաւելու մեկնիչն. * Այսինքն Հայք 'ի բարբառ իւրեանց կոչէին զտեղին այնուիկ անուամբ, որ 'ի յոյն յեղափոխեալ ԱՊՈԲԱՏԵՐԻՈՆ լինի ||:

(2) Տես և 'ի Դավէրնիէ ճանապարհորդ գիրք Ա. գլ. 8:

(3) Յօրինակին վրիպակաւ գրի ՎԱՐԴԱՊԵՏԱԿԱՆ, փոխանակ գրելոյ ՄԱՐԴՊԵՏԱԿԱՆ:

կէն յայնմիկ մեծ էր նա նախագահութեամբ քան զայլ եպիս-
կոպոսունս, վասն որոյ նմա յաւէտ քան այլոց ընծայե-
ցաւ այդ պատիւ: Այլ որպէս գրէ զկնի նորին ստեփան-
նոս օրպէլ 'ի նորին գլ. իբրև * Հպարտացեալ (Թէոդո-
րոսի) խնդրէր եպիսկոպոսունս ընդ ձեռամբ լինել (որ-
պէս օրէն է այլոց ազգաց՝ մետրապօլտաց ունել եպիս-
կոպոսունս ընդ ձեռամբ,) առին 'ի նմանէ և զայն, (այս
ինքն՝ զմետրապօլտական պատիւն, և ետուն առաջնոր-
դացն սիւնեաց՝ ըստ որում նոքա) և յառաջին հարցն
նոյն պատուով (էին) կոչեցեալ‖:

Այլ թէպէտ և այսպէս, բայց և զկնի 'ի ժողովն սիոնի
կաթողիկոսի՝ Գէորգ Սստան Եպիսկոպոս յիշատակի
զկնի կաթուղիկոսին. նոյնպէս և յառաջ քան զժաման-
նակն սիոնի 'ի ժողովն մանազկերտի՝ Թադէոս Սստան
Եպիսկոպոս (1): Յիշատակի և առ Թովմայի արծրուն-
ւոյ Գ. 2. Սահակ Եպիսկոպոս 'ի ժամանակս բուղայի.
* Իմբռնեալ լինէր յայնժամ մի ոմն 'ի հայոց ազատա-
նոյն տոհմից վահեւունեաց՝ ապուսահակ ոմն եղբայր Սա-
հակայ Եպիսկոպոսի Սստանին նախճաւանու և Մարդ-
պետականի‖: Որ և 'ի ժամանակս գագկայ արծրունւոյ
փոխադրեցաւ 'ի Մարդաստան գաւառ, ըստ որում
յայտ առնէ նոյն Թովմա արծրունի. տես զբանս նորա 'ի
վեր անդր. Թղթ. 220. ուր թէպէտ ոչ նշանակէ պատճառ
ինչ այնմ փոխադրութե, այլ որպ հաւանական թուի, էր
սակս բռնակալութե այլազգեաց՝ որք տիրէին այնմ քա-
ղաքի, կամ ապաստակաւ աւերէին զնոյն:

Յետ ժամանակաց յիշատակի և 'ի ժողովն հռովկլայու
Խաչիկ Եպիսկոպոս, այլ յանուն Նախճաւանի, և ոչ
Սստան Մարդպետականի:

Սանուանս իւրաքանչիւր եպիսկոպոսաց յիշատակե-
լոց 'ի գիրս՝ գտնեմք ըստ կարգի այսպէս. Յոհաննէս Եպիս-
կոպոս. Թէոդորոս Եպիսկոպոս Մետրապօլիտ. Յոհան-

(1) Թէպէտ ոչ յիշատակի անուամբ Մարդպետական 'ի ժողովն սիոնի կաթողիկոսի, և 'ի ժողովն մանազկերտի գէթ ըստ մեր օրինակաց, զի և 'ի ժողովն դւնայ յօրինակս ինչ պակասի բառդ Մարդպետական, և գնի միայն Սստան. բայց որպէս յայտ է 'ի ստուգագոյն օրինակէ ժողովոյն դւնայ՝ (որ 'ի ժամանակս ներսէսի շինողի՝) և 'ի բանից Թովմայի արծրունւոյ, և ստեփաննոսի օրպէլեան, զորոց զբանս յիշատակեցաք 'ի կարգի անդ. Եպիսկոպոսդ Սստան ոչ այլ ոք է՝ եթէ ոչ Մարդպետականն: Այլ թէ ընդդէր կոչեցաւ Մարդպետական՝ տես 'ի Ներածութե հին հայաստանեայց՝ 'ի բանն որ յաղագս Եպիսկոպոսարանաց մեծին հայոց:

նէս Նախիճաւանու. Թադէոս Նախիճաւանու. Գէորգ Նախիճաւանու. Սահակ Նախիճաւանու. Խաչիկ Նախիճաւանու:

Քանդեցին զայս քաղաք զօրք Շապհոյ արքային պարսից՝ յաւուրս Է. Արշակայ արքային մերոյ, յորում ժամանակի թէ քանի բազմամարդ էր, յայտ է 'ի թուոյ գերելոցն՝ զոր դնէ Բուզանդ Դ. 55. * Նոյա առին եւ զնա (զՆախճաւան,) քանդեցին անտի երդս հայս երկուս հազարս, եւ հրէայս երդս վեշտասան հազարս, անտի խաղացուցին գնացին ամենայն գերութբն հանդերձ‖: 'Ի Է. դարուն 'ի հիմանց քանդեաց կայսըն Հերակլ յարշաւէն 'ի պարսս հարիւր քսան հազար զօրօք: (1)

Եկեղեցւոյ սորա հրամմանաւ Կաշմ ոստիկանին այրեցան բազմութիւք նախարարաց աշխարհիս Հայոց (2) յամին 704. ոգիք իբր ութ հարիւր, որպէս դնէ Ստեփաննոս Օրպէլ: 'Ի ժամանակս Ղազան խանին թաթարաց յէլս անդ ԺԳ. դարուն՝ զօրք թաթարաց կողոպտեցին զեկեղեցիս Նախճաւանու, եւ զվանորայս գաւառի նորա, գերեցին զքահանայս. * Քարշեցին զգրուանս քաւարանացն, ընկեցին եւ զսեղանսն‖: Ըստ որում գրէ Օրպէլեանն գլ. Կ. կամէին քակել եւ զեկեղեցիս, այլ ոչ թողացուցին գլխաւորք նոցա՝ ակն ածեալք 'ի վրաց, եւ զբնակիչքն կաշառօք արգելին: Նաեւ 'ի վերջին ժամանակս՝ բազում աւերմունս կրեաց յաւուրս սուլդան Մուրատայ 'ի պատերազմին պարսից, եւ զկնի:

Հացիւնեաց դաշտ եւ Աւան: Մերձ 'ի Նախճաւան քաղաք դնէ զայն Վարդան աշխարհագիր, զնոյն հաստատեն եւ բանք պատմութե Հացիւնեաց խաչին, ուր յիշատակի ընդ դաշտին եւ աւանն համանուն. * Իբրեւ գնաց (ասէ պատմիչն վասն տիկնոջն Սիւնեաց՝) ընդ ճանապարհն անցեալ 'ի դաշտին որ Հացիւնեաց կոչի‖: Քանզի գնայր նա 'ի դաշտէն Գեղամայ որ առ Սանատրուկ քաղաքաւ Արտազ գաւառի՝ անցանել ընդ գաւառն Նախճաւանու 'ի Սիւնիս: Նա փոքր մի զկնի գրէ զնմանէ. * Գնեաց զԱւանն Հացիւնեաց, եւ զուռունդ աւանին, եւ եդ 'ի վանս նշանի խաչին, եւ ինքն գնաց յաշխարհն իւր‖:

(1) Աստղիկ Բ. 3. գրէ վասն Հերակլի. * զՆախճաւան եւ զԳողթան ձակ 'ի հիմանց բրէ‖:

(2) Նա ինքն Աստղիկ Բ. 4. * Հրամայեցին յերկուս բաժանել զնոսա (այսինքն՝ զնախարարսն հանդերձ նոցին հեծելովք,) զոմանս յեկեղեցին Նախճաւանայ, եւ զկէսն յեկեղեցին Խրամայ, եւ հրով վառեալ զեկեղեցիսն՝ այնպէս այրեցին զամենեսին 'ի ՃԾԳ. թուականին‖: Զնոյն գրէ Նախ

Ռալայ սրահ, և Ճաճուկ աւան։ Պատմիչն օրպելեան 'ի գլ. Է. տպ. Թղթ. 25. յիշէ զայս տեղի յասելն վասն Եղիկումի օրբելեան. * Խնդրէ պատճառանօք զտեղի 'ի Նախիջևանու գաւառին... ընդ որ հաճեալ աթաբակին՝ տայ նմա զերկրորդ երնջակայ (1).. և զՃաճուկ աւանն, և զՌալայ սրահն 'ի Նախջուան ‖։ Նոյն զնի. * Յուղարկէ զնա բազում փարթամութբ և երևելի փառօք 'ի քաղաքն Նախջևան։ Նկեալ այնուհետև Եղիկումին, և տիրեալ այնմ նահանգի՝ կոչէ առ ինքն զեպիսկոպոսն սիւնեաց զտէր ստեփաննոս ‖։ Նոյն տպ. * Կեցեալ զբազում աւուրս Եղիկումին՝ եղև յաւուր միում հիւանդանալ նմա հիւանդութի մեծ, զոր լուեալ Եղտիկուզ մեծ աթաբակին եկն 'ի տեսութի 'ի Ճաճուկ աւանն ‖։ Նոյն յետ սակաւուց. * Մեծ սիջիլով և անանցական գրով ետ զՃաճուկ աւանն, և զՌալայ սրահն, և 'ի Նախջևան յաւագ փողոցին՝ երեք կուղպակ՝ (կամ կուպղ) ազատ և թարխան յամենայն հարկաց ‖։

## ՄԱՐԱՆԴ։

Յայսմ գաւառի դնէ վարդան աշխարհագիր թաղեալ զնոյեմզարա, յոր անուն ասեն կոչեցեալ զկին Նոյի. * 'Ի Նախչուան է տապանն մեծ նահապետին Նոյի, և նոյեմզարայ 'ի Մարանդ ‖։ Ըստ այսմ աւանդեն և բնակիչքն, զոր և յիշէ Տավէռնիէ գիրք ա. գլ. 8. և 'ի հաստատութիւն այնմ բերեն և զստուգաբանութի անուանս Մարանդ, իբր Մայր անդ։

Յիշատակի այս գաւառ և առ յովհաննու կաթուղիկոսի. * Ըստ այնմ մարզէ հերայ և զարևանդայ, և Մարանդայ, և Նախջաւանայ ‖։

Անի և քաղաք համանուն, ուր թաղեցան բազում սուլդանք պարսից, որպէս գրեն վարդան, և մատթէոս՝ որ ասէ վասն ալբասլանայ, թէ որդի նորա * Խաղեաց զնա 'ի գերեզման հարց իւրոց 'ի Մարանդ քաղաքի ‖։ Յորմէ և յայտ է թէ բազմութի այլազգեաց բնակէին 'ի նմա յայնժամ 'ի ժա. դարու։ Իսկ 'ի ժբ. դարուն ա-

քան զսա և ղևոնդ պատմիչ 'ի Ճոուկ աւանն յանծանօթս մեծին պատմութեն խուրում 'ի գլ. Թ։ հայոց։

(1) Տես զՃաճուկ կամ Ճճա.

ռեալ 'ի ձեռաց այլազգեաց աւերեցին զաքարէ և խումէ հայկազուն զօրավարք Թամարայ Թագուհւոյն վրաց՝ զորոց գրէ կիրակոս. * Զօգան զօրօք բազմօք 'ի քաղաքն 'ի Մարանդ, և առին զնա և աւերեցին զբազում գաւառս որ շուրջ զնովօք, և ապա գնացին յարտաւիլ քաղաք ‖ :

'Ի ժողովսն ժդ. դարուն յիշատակին Եպիսկոպոսունք Մարանդունեաց, 'ի ժողովն սսոյ՝ Յովհաննէս եպիսկոպոս. և 'ի ժողովն ատանոյ՝ Կոստանդին եպիսկոպոս :

Տեղիք Վասպուրական նահանգին՝ որոց գաւառք անծանօթք :

ԱՂԲԱԿ. Բերդ անուանի առ ծովեզերբ, զորմէ գրէ Թովմա արծրունի գ. 17. * Բայց աշոտ գնացեալ տալ պատերազմ ընդ ծովեզրեցիսն որ ուԹմանիկքն կոչին, որք ամրանային 'ի յԱղբակ անկասկածելի քարանձաւին. վասն զի ըստ պտղոմեայ և աղեքսանդրի սահմանադրուԹեն, կամ Թէ մերն արտաշէսի որդւոյ սանատրկոյ, 'ի վասպուրական գաւառացն համար Թուեալ է գաւառն այն՝ զոր Ճ. ամօք յառաջ հանեալ էր բռնակալուԹեն տաճկաց 'ի վասպուրական պետուԹէ ‖ : Այլ սուղ ինչ զինի վասն ամրուԹե նորին գրէ. * Անպատերազմելի էր ամրոցն, միայն բաւականաւն բռնաձկացն մի վասնիցի ‖ :

Առ զայս գագիկ արքայ՝ որպէս պատմի յերկրորդ վարս նորին Ե. 3. ուր ասի. * Իսկ զգաւառն ծովեզրի՝ յորում է սքանչելի և անառիկ բերդն Աղբակ, զոր բազում ժամանակօք յափշտակեալ էին այլազգեաց, բազում և անհուն պատերազմօք յարձակեալ 'ի վերայ՝ ա̃ծասէր իշխանաց մերոց առաջնոց, դեռ ևս ցայն ժամանակս անդ յղփացեալ ամրացեալ կային մարդիկ գաւառն ուԹմանիկք կոչեցեալ, ընդ որոց մեծ ջանիւ աշխատեալ տանն արծրունեաց՝ ոչ ինչ ստնանել նոցա կարացեալ, մանաւանդ քաջն և յաղԹողն մեծանուն իշխանն գրիգոր՝ անուանեալն դերանիկ ... Այլ մնացեալ բերդն Աղբակ իւրական գաւառաւն վէր մեծ անբժշկելի 'ի սիրտս իշխանացն վասպուրականի, որում ոչինչ ստեղանիք առաջնոցն ազդեցին, որ տևեաց եկն եհաս իբրև հարիւր ամօք մինչև 'ի ժամանակս քաջին գագկայ ... (որ) 'ի գիշերի գողանայ զամրոցն, և սրախողխող արարեալ զբնակիչս բերդին՝ բնաջինջ բառնայ յերկրէ ‖ :

Յետ առնլոյն պատեաց զայն պարսպաւ, և կառոյց շինուածս. * Զբերդն Ամուկ (ասէ) զզարմանալին զամրոյն, զոր երկնապիչ և պարանոցատանջ խոն գիտէ անուանել բան, բազում ծախիւք և բազմագումար արուեստաւորօք յերևելիս հրաշակերտէ շինուածս. 'ի ծայրից անտի գագաթանն 'ի խոնարհ՝ մինչև ցեզր ծովուն լի և լի պարսպաւորէ անմերձենալի ամրութբ ||։ Տես վասն այսր 'ի Նոր Հայաստան զԱմուկ. Թղթ. 150 ։

Շարունակօղն Թովմայի արծրունւոյ ցուցանէ թէ պատեալ էր ջրով ըստ աղթամարայ, այլ յայտ է թէ ըստ մասին միայն՝ զի չէր կղզի. * Ոչ մնաց (ասէ) տեղի քրիստոնէից, բայց միայն յանմատոյց ամրոցն Ամուկ, և յաճարնակ կղզոջն աղթամար, որ վայելչացեալ ունին զգեղ վայելչութեն ամրացեալ ալեօք, և պարսպեալ խորխորատացեալ կոհակօք ||։

Եւ գոլով երևելի յիւրում սահմանի՝ առանձին գաւառ կացուցանէր 'ի ժամանակի անդ թագաւորութեն արծրունեաց. * Ընտրեաց տէր (ասէ նոյն շարունակօղն) տեսուչ և վերակացու այսմ ամծապահ և անմատոյց ամրոցացս՝ զայր ոմն տոհմակից արքային սենեքերիմայ 'ի Գաւառն Ամկոյ յազգէն արծրունեաց՝ անուամբ աբդլմսեհ կոչեցեալ ||։ Որ որպէս թուի՝ արտաքոյ էր յայնժամ այլոց գաւառաց վասպուրականի՝ զորս թուէ խորենացին ։

Այս ամրոց գլխի ժամանակաց եանց 'ի ձեռս այլազգեաց, զորոյ զառումն յեղջերուայ յիշատակէ և վարդան պատմիչ, յասելն. * Սա (այսինքն եղջերուք, կամ ըստ այլոց եղտկուզ զօրավարն պարսից) եառ զԱմուկ 'ի խեթէնկայ, և զաստանս 'ի վիրկնայ ||։ Յիշէ զայս բերդ և թովմա մեծոփեցի առ ժամանակօք իւրովք. * Եւ մինչ յայս նեղութիս կայաք՝ յանկարծակի զօրք բերդին Ամկոյ, (և) չար և անօրէն պիղծ իշխան նոցա . . . նստեալ 'ի նաւ եկն 'ի կղզին ||։ Այլուր կոչէ նաև Բ՟ր Ամկոյ ։

Անան աւան, կամ ամրոց ։ Յայտ է լինել սորա 'ի վասպուրական՝ 'ի բանից ինչ թովմայի արծրունւոյ Գ. 4. զի ասէ թէ ապումրուան կալեալ զերեսին որդիս դերանկին իշխանին արծրունեաց՝ եդ յԱնան աւանին. որով խնանայ զվասպուրական աշխարհ արծրունեաց, և ապա թուէ զբերդս նոյն աշխարհին յորս եդ. յորոց զերկուսին քանզի յայտնի գիտեմք լինել 'ի վասպուրական, զհետ գայ՝ թէ և երրորդն որ է Անան՝ էր 'ի վասպուրական. զա-

շատ եդ ած 'ի նկան, զգուրգէն 'ի կատոլն բերդ, իսկ զԳագիկ յԱմուրն Սեան :

'Ի նոյն կ. գլ. դնէ զՍեան 'ի փոքրն Լոռեայ, որ 'ի բանից նորա երևի նոյնպէս լինել 'ի վասպուրական. ապումրուան ած յինքն գրաւեաց զԱմուրն Սեան 'ի փոքրն Լոռեայ : Այլ յայտնագոյն ևս յովհաննէս կաթուղիկոս զՓորակն Լոռեայ՝ որ է նոյն, դնէ 'ի տէրութեն աշխարհին արծրունեաց, այն է վասպուրական. * Օ այսու ժամանակաւ մեծ իշխանն արծրունեաց աշոտ, որ 'ի բողբոջից բուսոյ սենեքերիմայ արքայի եղեալ, զգնայր շրջէր զկողմամբք Խորոյ տէրութեանն փոքր ինչ զնդով, և հասեալ 'ի ձորակ մի՝ զոր փորաք Լոռեայ (1) անուանեն, երեկօթս անդ առնէին յագարակի միոջ՝ յորում բնակէին գաբաւոնացիք ||:

Նաև այսպէս այս Սեան ամրոց՝ զոր յիշէն Թովմա արծրունի, և յովհաննէս կաթուղիկոս սուղ ինչ զնի վերագրեալ բանից, այլ է յամրոցէ կղզւոյն սևանայ՝ որ անկանի 'ի սիւնիս, զորոյ զամրութի յայտ առնել կամելով նոյն Թովմա արծրունի՝ կոչէ ուրեք Ամրոց Անհասանելի, և միշտ զնա Ամուր, կամ Ամրոց զհետ յարակցեալ՝ այնպէս 'ի գործ ածէ. * Կուրապաղատն տարունոյ (ասէ 'ի Դ. 2.) կայր յԱմրոցին Սեան՝ որ 'ի ձեռն հասանայ որդւոյ վասակայ ամբարշտի ||. և այլուր 'ի նոյն գլ. * Խոստանայ առնել զպարձ Ամրոցին Սեանի, և աշխարհին նորա ||: Տես վասն այսր և 'ի Սեանն սիւնեաց 'ի գեղարքունի գաւառ :

Պղուանս : Գիւղ 'ի սահմանի փորակին Լոռեայ՝ զոր յիշէ Թովմա արծրունի յերկրորդ վարս գագկայ. * Գնայ 'ի հետիոտս ձակատել ընդ զօրաց իշխանին՝ որ էին 'ի Գեօղն Պղուանս 'ի գաւառին Լոռեայ, կոչեցեալ Փարակ ||:

Արծուաձ : Յիշատակի առ Թովմայի արծրունւոյ. * Նովին օրինակաւ շրջեալ ընդ բոլոր աշխարհս վասպուրական, և հասեալ 'ի Գեօղն Արծուաձս (2) մնայր անդէն ||:

(1) Թովմա արծրունի յերկրորդ պատմութե գագկայ՝ զայս Զորակ անուանէ Գաւառ, յասելն. * Գնայ 'ի հետիոտս ձակատել ընդ զօրաց իշխանին՝ որ էին 'ի Գեօղն Պղուանս 'ի գաւառին Լոռեայ, կոչեցեալ Փարաք ||:

(2) Յիշատակի ուրեք առ Նորին Թովմայի արծրունւոյ 'ի պատմելն երկրորդ անգամ զվարս գագկայ արծրունւոյ Արծուաձոյ ամրոց՝ յասելն. * Որ բռնեալ որջացեալ էր յԱրծուաձն անուանեալ ամրոցի ||: Այլ թէ նոյն իցէ ընդ Արծուաձս անուանեալ գեղջ, կամ մերձակայ նմին, և կամ 'ի նորին սահմանի, առ ժամս չունիմք ինչ ասել հաւաստի :

Խոշաբերք : Զորմէ նոյն Թովմա արծրունի. * Ածեալ պատահէն զօրացն 'ի զօրագլխացն վասպուրականի, 'ի Գետեղն' որում Խոշաբերքն ասեն ‖ : Այս Թուի լինել մերձ 'ի բերկրի :

Գոտճկունք : Ո լինեաց զայս գագիկ արքայ նախ քան զԹագաւորելն. * Դարձեալ շինէ (ասէ Թովմա արծրունի Գ. 11.) զօրավարն գագիկ 'ի գլուխս Ոչ ջրոյ, որ վ՟ խստութեն սաստկաշունչ դառնալիք մահածին հողմոյն ճնչելոյ այսպէս անուանեն, փոխէ անդ զեօղս, և շինէ զբլուրն' որ տեղի բանակի ղաշլիկ առնելոյ էր տանն արծրունեաց, և անուանեաց յանուն իւր զձեռակերտն Գագկակերտ, և դարձոյց անդր փոխելոյ զեօղիցն ‖ :

Գատուան : Յիշէ Թովմա արծրունի. * Ի մտանելն նորա 'ի Գատուան աւանն' զոր իւրեանց սեպհական համարէին ժառանգութ ‖ : Տես վասն այսր և 'ի Նոր հայաստան. Թղթ. 165 :

Արտաշէսեան աւան : Զորմէ Թովմա արծրունի 'ի Գ. 17. * Աշոտ վերջանեալ եկն բանակեցաւ յԱրտաշէսեան աւանի, և յիսէ 'ի վան քաղաքի ‖ : Թերևս նոյն է սա ընդ Արտամատ կամ Արտամէտ աւանի, զոր շինեաց արտաշէս :

Աքաղայու կատար : Անուն բլրոյ' զոր յիշէ Թովմա արծրունի Գ. 17. * Յառաջ խաղայ ընդ Աքաղայու կատար ասացեալ բլուրն ‖ :

Այս ամենայն տեղիք 'ի բանից նորին Թովմայի արծրունւոյ երևին լինել 'ի վասպուրական, կամ 'ի սահմանի արծրունեաց, որպէս և գիւղ ինչ Փայտկղպան անուն, որ Թուի լինել 'ի տոսպ գաւառի :

Ընծաւեաց ծածուկն : Թուի լինել Վանք, և յիշատակի 'ի յիշատակարանի գրչագիր աւետարանի գրելոյ 'ի ձեռն ռոմանոս վարդապետի ուրումն, ուր և ասի. * Ի Թուիս հայոց չի . . . 'ի Թագաւորութեն հայոց լևոնի . . . և մեր ընդ հովանեաւ լեալ Ընծաւեաց ծածնին 'ի գաւառիս վասպուրականիս ‖, ևն : Այս ապա գրէ, Թէ' յիշեցէք զՏէր Գեղջս զպօղոս մելիքն. ևն :

Ընալիւր գիւղ : Վարդան գրէ վասն գէորգայ վարդապետի մեղրիկ կոչեցելոյ, Թէ * Նա 'ի վասպուրական գաւառէ 'ի յԸնալիւր կոչեցեալ գեղջէ ‖ :

Լիմ, և Կտուց : Ի վախճան վասպուրական նահանգին դնեմք և զերկուս զայսոսիկ կղզիս ծովուն աղԹամարայ, զորոց Թէպէտ չիք ինչ յիշատակութի առ նախնիս մատե-

նագիրս մեր մինչև 'ի դարն ԺԴ. այլ 'ի վախճան նոյն դարու գտանի անուն առաջնոյն 'ի յիշատակարանի միում գանձուց գրոց. և Եկեղեցին որ յանուն սբյն գէորգայ յիշատակի անդէն. * Գրեցաւ..'ի Լիմն կղզիս՝ ընդ հովանեաւ սբյն գէորգեայ հոյակապ և հռչակաւոր բարձրաշէն և գեղեցկաշէն տաճարիս, յամի ութ հարեւրերորդի քառասներորդի և երրորդի. յորում ամի մծասաստ բարկութեն շարժեցաւ 'ի վերայ երկրի՝ արիւնարբու զօրքն Թաթարին՝ որոյ անուն գլխաւորին լանկԹամուր կոչիւր... յորոյ սաստիցն զերծեալ մեր ապրեցաք առ ոտս երջանիկ վարժապետին սարգսի 'ի Լըման կղզիս ‖ ։

Նաև Թովմա Մեծոփեցի 'ի սկիզբն ԺԵ. դարուն, 'ի Թուին ՊՀԵ. գրէ զանձնէ՝ Թէ փախուցեալ յերկրէն քաջբերունեաց յերեսաց զօրաց պքանդարին՝ * Ողջապուրծ եղեալ կամէաք մտանել 'ի կղզին Լմայն, և իբրև մտաք... սիրով ընկալաւ զմեզ հոգևոր եղբայրն մեր վարդապետն և եպիսկոպոսն յոհաննէս ։ Նաև մինչ յայս նեղութիւնս կայաք՝ յանկարծակի զօրք բերդին ամկոյ և .. իշխան նոցա հաճի պէկ անուն նստեալ 'ի նաւ՝ եկն 'ի կղզին ‖ ։

Իսկ սկզբնաւորութի անապատական կենաց, կամ նորոգութեն ընծայի ներսէսի վարդապետի մոկացւոյ 'ի ԺԷ դարու, ըստ որում գրի 'ի յիշատակարանի ինչ գրոց ստանաւորաց գրելոյ 'ի ստեփաննոս գրչէ. * Գիտելի է՝ զի ինքն (ներսէս) 'ի մոկաց է, և գնաց յանապատն տաԹևոյ Դ. տարի եկաց, և եկաւ անտի աստ 'ի Լմայ կըղզիս՝ հաստատեաց անապատ...'ի Թվ. ՌՀա ‖ ։ Նաև այլուր 'ի նմին մատենի. * Մոկացի ներսէս վարդապետն.. եկաւ 'ի վանաց երկիրս 'ի Լմայ կղզիս, անապատ հաստատեց 'ի Թվին ՌՀա ‖։ Ընդարձակ ևս առաքել պատմիչ գլ. ԻԶ. Թղթ. 251. * Եւ եկեալ գնայ 'ի գաւառն վասպուրականի, և եմուտ 'ի կղզին Լմայ 'ի մէջ ծովուն, և անդ ժողովեցան առ նա բազմութիւնք եղբարց, և եղև անապատ ‖։ Որ յիշէ և զմահ նորին ներսիսի 'ի ՌՀԴ. Թուին ։

Յիշատակէ ապա և զկղզին Կտուց. * Եւ զկնի նորին յաջորդեաց զառաջնորդութիւն տեղւոյն ընկեր նորին ստեփաննոս վարդապետն, և յայսմ ժամանակիս և ես անձեցան միաբանք Լմայ անապատիս, վասն որոյ ոմանք ելեալ 'ի Լմայ՝ գնացին 'ի տեղին որ անուանի Կտուց, որ և սա կղզի է 'ի մէջ նոյն ծովուն, և անդ ևս շինեցին զանապատ և զեղբայրանոց ‖ ։ Տես և 'ի Նոր հայաստան Թղթ. 154. 155 ։

## ՆԱՀԱՆԳ ԻՆՆԵՐՈՐԴ

# ՍԻՒՆԻՔ կամ ՍԻՍԱԿԱՆ

Սուաջին անունն է սովորական յազգի մերում, իսկ
րկրորդն առ պարսիկս, Թէպէտ և է ուղղագոյն. քանզի
յս նահանգ զանուն իւր ընկալաւ 'ի սիսակայ որդւոյ գե-
ամայ՝ հինգերորդ նահապետի ազգիս, նմին իրի ուղիղ
նուամբ անկ էր կոչել զսա Սիսական, որպէս և գրէ խո-
ենացին Ա. 11. * Ըստ ծնաւ (այսինքն 'ի գեղարքունիս՝
եղամ նահապետ) զորդի իւր զՍիսակ, զայր սէգ և
նձնեայ... (և) սահմանս հատանէ նմա ժառանգութե
ծովէն՝ (որ է ծովն գեղամայ) ընդ արևելս մինչև
դաշտ մի, ուր գետն երասխ հատեալ զքարանձաւս լե-
անց անցանէ ընդ խոխոմն ձիգս և նեղս... Ըստ բնա-
եալ Սիսակ՝ լնու շինութբ զսահմանս իւրոյ բնակութե,
և զաշխարհն կոչէ իւրով անուամբ Սիւնիք, այլ պարսք
յատակագոյնս իսկ Սիսական կոչեն ։

Երդ Թէպէտ Սիւնիք անունն է առ մեզ սովորական,
ակայն և Սիսական անունս ոչ սակաւ ուրեք 'ի գործ
ածի, որպէս յասելն Ստեփաննոսի օրպէլեան գլ. ԼԷ.
* Ո՛չ միայն այս՝ այլ և բազում էին շինեալ եկեղեցիք 'ի
Սիսական աշխարհի, և յարարատեան գաւառի ։ Կամ
յլուր յասելն. * Խնդացին ամենայն տունն Սիսակա-
ու ։ Նա որ առաւելն է՝ 'ի միում և 'ի նոյն բանի նախ
կոչէ Սիւնիք, և ապա Սիսական՝ յասելն վասն մեռանայ
գլ. ԼԴ. * Նկեալ 'ի Սիւնիս ամրանայ 'ի բերդապիղն
աղատու, և կամէր և զայն ևս ազատականել՝ զգեղեցիկ
աշխարհն Սիսական ։ (1)

Ըստ այսմ և յովհաննէս կաթուղիկոս 'ի միում և 'ի

(1) Շաղատ՝ ոչ էր 'ի սիսական
մանաւոր գաւառի, որ վրիպա-
ու գնի 'ի տպագրեալն աշխար-
հագր. խորենացւոյն, այլ 'ի
ծղուկս. ուստի Սիսական ա-
նուամբ իմանայ ասէն ստեփան-
նոս օրպէլ զբոլոր Սիւնիս ։

նոյն պատմութեան մովսիսի՝ զոր աշոտ իշխան էր կացուցեալ ուտի գաւառին, նախ կոչէ Սիւնիք, յասելն. * Երթայր անկանէր (մովսէս) յաշխարհն Սիւնեաց առ իշխանն սմբատ ||. իսկ սուղ ինչ զկնի՝ կոչէ Սիսական. * Զուեալ մովսէս 'ի Սիսական կողմանցն || առ քորեպիսկոպոսն ծանարաց: Յայսմանէ զկասակն անուանեալ գաբուռն՝ նոյն յովհաննէս կաթուղիկոս նախ կոչէ՝ Իշխան Սիւնեաց և զկնի՝ Իշխան Սիսական: Եւ զայն իշխանն սմբատ՝ որում ա. սմբատ արքայ ետ զնախիջաւանն, յովհաննէս կաթուղիկոս կոչէ Իշխանն Սիսական, իսկ ստեփաննոս օրպելեան 'ի գլ. ԼԲ. կոչէ Իշխանն Սիւնի: Եւ ընդ հակառակն՝ ուր յովհաննէս կաթուղիկոս զսմբատ անուանէ՝ Մեծ Իշխանն Սիւնեաց, զնոյն սմբատ՝ ստեփաննոս օրպելեան կոչէ՝ Մեծ Իշխանն Սիսական անուամբ:

Այսչափ ինչ յառաջ բերաք առ 'ի յանդիման կացուցանել ընթերցողաց՝ զի մի զանուանս Սիսական կարծեսցեն առանձին գաւառ 'ի սիւնեաց նահանգի, որ վրիպակաւ դնի 'ի տպագրեալ աշխարհագր. խորենացւոյն. որպէս ունիմք գրել զկնի:

Այլով անուամբ գտանեմք կոչեցեալ զայս նահանգ առ կորիւն վարդապետի, այն է Սիւնական աշխարհ, որ է ածանցեալ յանուանէս Սիւնեաց:

Յիշատակի և առ պրոկոպիոսի (1) 'ի գրեւն, թէ 'ի ժամանակս յուստինիանոսի կայսեր՝ * Առաքեաց կաւատ (արքայ պարսից) 'ի հայս՝ որ էր ընդ իշխանութեամբ հոռոմոց՝ այլ զօրս հաւաքեալս 'ի բեռսարմենից, և 'ի Սունիտեայց (այսինքն 'ի Սիւնեայց՝) որք սահմանակից են աղուանից ||: (2)

Սամ անուանս Սիւնեաց՝ են և երկու ինչ, զոր պարտ է 'ի միտ առնուլ: Մի՝ զի թէպէտ ստէպ 'ի գործ ածի յարակցեալ ունելով զբառս աշխարհ, կամ գաւառ, բայց և ոչ սակաւ ուրեք ինքնին առանձին 'ի գործ ածի, որպէս յասել անդ ստեփաննոսի օրպելեան գլ. ԼԲ. * Եկին և փախստականքն սահակ սիւնեաց տէր, և բարդէն և վասակ եղբարք սմբատայ 'ի բնիկ աշխարհս իւրեանց 'ի Սիւնիս ||:

Երկրորդ՝ 'ի գործ ածի փոխանակ բնակչաց, ա. այսմ

(1) Գիրք պատերազմաց պարսից Ա. 15:

(2) Թուի թէ յայսմ վայրի պրոկոպիոս ընդ Աղուանից 'ի մի յօդէ և զԱղուանս, որում սահմանակից էր Սիւնիք:

խորենացին Գ. 46. * Ս՚եռանի և սպարապետն նորա Դարա Սիսակի 'ի պատերազմին ||, այսինքն՝ որ էր 'ի Սիւնեաց նահանգէն: Այսպէս և առ. Ստեփ. օրպէլ. բազում ուրեք. * Տէր նեղսէհ Սիսակի որդի փիլիպէի սպանանէ վասն ախտութեն ||: Նա 'ի գլ. լէ. * Նա անդէն հարեալ զգեղեցկադիտակ իշխանն Սիսակի սահակ՝ դիաթաւալ յերկիրն ընկենոյր ||: Նա թէ՝ * Նոյա և զերծեալ մեծին վասակայ Սիւնոյ մարքն իւրով և եղբարբն, և այլօք իշխանօքն 'ի գերութէն բուղայի, և դառն կապանացն՝ գայ մտանէ 'ի սեփական աշխարհ իւր Սիսական ||: Նա 'ի գլ. թ. * Նա հրաման տուեալ անդուկայ սիւնեաց տէրն ամենայն Սիւնեաց փախչել ||, այսինքն՝ բնակչաց սիւնեաց: Որով յայտ է թէ՝ Սիւնեցի կոչել զբնակիչս՝ օտար է յոճոյ աստի. բայց և առ. Ստեփ. օրպէլ. 'ի գործ ածի 'ի գլ. ին. * Ա՛ն լեցի քեզ շարժիլ 'ի տեղւոյս առանց հաթուսաղայի Սիւնեցւոյ ||:

Գիրք Սիւնեաց անկանի յարևելեան կողմն այրարատայ՝ ընդ մէջ երասխ գետոյ և արձախայ: Անի դժուարին տեղիս, որպէս յայտ լիցի 'ի ստորագրութեն գաւառաց իւրոց, և ըստ որում ծանուցանէ այս բան յովհաննու կաթուղիկոսի. * Նայլ և զախականացն տերանց և ազգաց՝ ոչ սակաւ ինչ աղմուկ չփոթից շուրջ պատէր յառիկանէ անտի, որք և ամրացեալք իսկ 'ի խոխոմն խորոցն ձորոց, և յամուրս քարանձաւաց, բազում արշաւանօք հէնս 'ի վերայ թշնամեացն հասուցանէին ||: Ս՛ի որոյ 'ի տպ. պատմութեն օրբէլեանց գլ. է. կոչի Ս՛ֆուր ն Ս՛- խաղ աշխարհն սիւնեաց: (1)

'Ի բերոց՝ (ըստ ասից խորենացւոյն) ածի Ս՛ուրտ, Գերբերի, և Նուռն:

Օ բարս բնակչաց կողմանց ինչ սիւնեաց՝ կորիւն կոչէ գազանաբարոյս, վայրենաբարոյս, ճիւաղաբարոյս. և այլ պատմութիւք ցուցանեն լինել զՍիւնիս զօրաւորս, կորովիս, ճարտարս և յաջողս 'ի մարտի և յուսման. այլ նոյնպէս յաջողս և 'ի գործս ժանտութե, որք գիտացին զանձեռնարկեալս և զզարհուրելիսն 'ի գործ դնել՝ առ 'ի վրէժ առ-

(1) Իսկ այն բան աշխարհագրութե խորենացւոյն յորում ասէ լինել Ս՛ֆուր փեշնէ 'ի սիւնիս, չէք յերկուս ձեռագիրս, այլ 'ի միումն և եթ, 'ի տպ. և առ թովմայի կեմեկեցւոյ, որ 'ի ստորագրելն ըզ հայաստան՝ գրեթէ բառ առ բառ օրինակէ զխորենացին. բայց անյարմարութն կարգի շարագրութեն՝ կարծիս տայ 'ի վերջնոյ յաւելեալ զայն 'ի բանս խորենացւոյն:

նուլ յիւրեանց ատելեաց, որպիսի եղեն վասակ մարզպան, վարազվաղան, գդիհոն. Նաև 'ի կանանց իսկ՝ փառանձէմ, և կլինն այն՝ որ ինքնին սրով սպան զստեփաննոս քսաներորդ երկրորդ եպիսկոպոս սիւնեաց ։

Իշխանութիւն և նահապետութիւն սիւնեաց 'ի սկզբանն անտի գտաւ երևելի, և բազում պատուով մեծարեցաւ. * Սկսեալ նահապետութիւնս այս (ասէ ստեփ. օրպել. գլ. Ջ.) 'ի նախնոյն սիսակայ՝ երևելի հարազատութեամբ պայազատեն զտէրութիւն որդիք 'ի հարց՝ երկայն և բազում ժամանակօք, բազում և մեծամեծ քաջութիւս ցուցեալ 'ի պատերազմունս թագաւորացն հայոց, և բազում և մեծամեծ պարգևօք և գահիւք պատուեցան 'ի թագաւորացն պարսից և հայոց, նաև յունաց իսկ. և այնքան անուանիք եղեն՝ մինչ հրամայեցաւ նոցա գահոյս ունել արծաթի, և վարսակալ ածել մարգարտեայ, և մատանի ունել վարազագիր, նաև կօշիկ կարմիր, և մական ոսկի ունելով 'ի վերայ գրեալ զանուն և զպատիւ ցեղին ։ (1)

Բայց բուն գահ իշխանութեան սիւնեաց կարգեցաւ 'ի վաղարշակայ. * 'Ի սորա ծննդոց (ասէ խորենացին Բ. 11. այսինքն սիսակայ) աստ ուրեմն վաղարշակ որ առաջին 'ի պարթևաց արքայ հայոց, գտեալ արս անուանիս՝ տեարս աշխարհին կարգէ, որ է Սիսականդ ազգ ։ Նա ոչ միայն իբր հասարակ իշխան կարգեաց, այլ և կողմնակալ արևելեան կողման. * Նա յարևելից կողմանէ (ասէ խոր. Բ. 7. կամ ըստ ձեռ". 8.) զեզերբ հայկական խօսից՝ կողմնակալս (կարգէ) երկուց ցեղից տանց նահապետութեանց Սիսակեան և Կադմեան ։

Այս կողմնակալութեան պաշտօն իշխանացն սիւնեաց հաստատեցաւ նաև յաւուրս մեծին տրդատայ, յորժամ նորոգապէս 'ի կարգի եդ զիւր թագաւորութիւն քսան և մի իշխանօք կարգեալ 'ի պահպանութիւն արևելեան կողմանն. Նաև անցոյց 'ի թիւս ութ իշխանաց՝ որք 'ի մէջ չորեքհարիւր իշխանաց տրդատայ գահագլուխք անուանէին՝ որպէս յայտ առնէ ստեփաննոս օրպել 'ի գլ. Է. առեալ 'ի զևոնդայ ։ (2)

(1) Թուի թէ զայս ամենայն պատիւ զոր թուէ ստեփաննոս օրպել, գէթ զոմանս ընկալան իշխանքն սիւնեաց զկնի վաղարշակայ. քանզի պատուեցան ասէ նաև 'ի յունաց թագաւորաց, զոր պարտ է իմանալ վասն յունաց կայսերաց՝ սկսեալ 'ի մեծէն կոստանդիանոսէ. որ բազում ամօք յետոյ է քան զվաղարշակ ։

(2) Այլ չէ պարտ զայս կարգ յուզել յագաթանգեղոս 'ի թղթ.

Բայց այս շուք սիսական իշխանութեան նուաստացաւ մե-ծապէս յետ անդ Դ. դարուն, 'ի ժամանակս արքայիցն Ը. Արշակայ, և Պապայ. և նահանգն սիւնեաց զամս քսան և հինգ առհասարակ ապականեալ աւերակ մնաց. զի շապուհ արքայ պարսից զանդուկ իշխանն սիւնեաց կա-ցոյց 'ի չորեքտասաներորդ կարգի իշխանացն հայոց. ընդ որ խոժոռեալ անդուկ՝ հնարիւք յաւարի առ զտիզբոն քաղաք, և բնակչացն սիւնեաց հրամայեաց փախչել, և զտունս և զհամբարանոցս համբարօք հանդերձ այրել. և ինքն հուսկ յետոյ զերծեալ անկաւ առ մեծն Թէոդոս, և 'ի նմանէ ընկալաւ զանուանս Պատրկաց պատւոյ: Շա-պուհ գազանաբար 'ի վերայ յարձակեալ սիւնեաց, առ 'ի պահանջել զվրէժ աւարառութեան տիզբոնայ՝ ոչ ինչ ե-գիտ բաց յեկեղեցեաց, զորս և առհասարակ քան-դեաց: (1)

Յայնմ հետէ այնչափ ատելութիւն կալան պարսիկք ընդդէմ սիւնեաց, զի սանդ եդեալ յարքունի պալատին իւրեանց լի մոխրով հնոցի՝ կոխելով 'ի վերայ մոխրոյն՝ ասէին. * Սիւնեաց տերանցն նախադահութիւն տէրութիւն ըստ այս մոխրոս 'ի վայր լիցի, և որպիսութիւն նոցին խոր-հրդոյ և կենաց ||: (2) Բայց զայս անարգանս ետ բառնալ բաբիկ իշխան որդի անդուկայ 'ի շնորհս քաջագործութեան՝ որով սպան զգլխաւորն հոնաց 'ի մենամարտութեան, և ըն-կալաւ 'ի շապհոյ արքայէն զսեպհական տէրութիւն սիւ-նեաց նահանգին, և զնախադահութիւն համապատիւ լինե-լոյ ընդ բագրատունիս և ընդ մամիկոնեանս՝ յերկրորդ ամի Ը. խոսրովու հայոց արքայի, հարիւր երեսուն և ութ ամօք յառաջ քան զթուականն հայոց:

Մեծապէս զարդարեցին զերկիրն սիւնեաց, և բարձ-րացուցին զիշխանութիւն իւրեանց երկոքին իշխանքն գրի-գոր՝ Սուփան մականուանեալք, 'ի Թ. դարուն. վասն առաջնոյն գրիգորի սուփանայ՝ որ էր որդի սահակայ սպանելոյ 'ի հօլ ոստիկանէն, գրէ ստեփաննոս օրպէլ 'ի ԳԼ. ԼԷ. * Բռնաւորեալ քան զնախնիս իւր կարգէր զգահ իշ-

յժԹ. և ոչ 'ի յճԴ. ուր զիշխանն սիւնեաց մետասաներորդ դասէ 'ի մէջ այլոց յիշատակեալ իշխանաց:

(1) Զայս Թշնամութիւն շապհոյ ընդ սիւնիս սակաւուք յայտ առ-նէ խորենացին 'ի Գ. 28. յասելն ըստ երից ձեռագրաց ևս, թէ շա-պուհ յետ առնլոյ զտիգրանակերտ

* Անդայազատ զսիւնեացն հրա-մայէ առնել զտոհմ||: Ուր 'ի տպ-վրիպակաւ դնի Աղատ առնել:

(2) Զայսոսիկ պատմէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. Թ. և Ժ. առեալ 'ի Ներբողինէն պետրոսի քերթողի (աշակերտին մովսէսի քերթողի՝) 'ի բաբիկն սիւնի:

խանութեան իւրոյ, և տնօրինէր զշինութիւն աշխարհիս ||: Իսկ վասն երկրորդ գրիգորի սուփանայ որդւոյ գաբուռն վասակայ գրէ յովհաննէս կաթուղիկոս. * Սա իմաստութբ և յաջողաձեռնութբ և շինութբ բազմաւ անդր ևս քան զպայման ընդր զչափ հարցն իւրոց. բայց առաւել յեկեղեցեաց քան 'ի շինութիւն և 'ի նորոգութիւն զմեքն վերաբերէր ||: Նա ստեփաննոս օրպէլ. գլ. լէ. գրէ. * Յարդարէր զեկեղեցիկ կարգ իշխանութեան իւրոյ, և և առաւել ծախէր զամենայն փարթամութիւն իւր և զկեան 'ի գործ ածպաշտութեան, և ('ի) շինութիւն պայծառակերպ քաւարանաց (այսինքն՝ եկեղեցեաց՝) որ դեռևս կան և վկայեն իրքն ||:

Նաև որ հարկաւոր է 'ի գիտել վասն իշխանութեան սիւնեաց, այն է՝ զի ցեղք իշխանութեան յայս նահանգ էին երկու. մին՝ Գլխաւոր, զոր վասն այնորիկ յովհաննէս կաթուղիկոս, և ստեփաննոս օրպէլ. սովորաբար յորջորջեն ուրեք կոչեն Մեծ, բաղում ուրեք Գռահերէց, որպէս յասելն ստեփաննոսի օրպէլ. 'ի գլ. լը. վասն աշոտոյ որ յաւուրս յուսփայ ոստիկանին 'ի վախճան թ. դարուն. * Յորում աւուրս Մեծ նախարարն սիւնի, և Գռահերէց իշխանն աշոտ՝ յետ բազում քաջութեանց մեծամեծ երևելի գործոցս, այնչափ բարեպաշտութեանց և շինութեանց աշխարհի՝ եկեղեցեաց և վանորէից՝ փոխի յաստեացս ||: Նոյնն այլուր 'ի գլ. լէ. կոչէ Գռահագլուխ, յասելն վասն նորին աշոտոյ և որդւոց իւրոց. * Բայց մեծ իշխանքն Գռահագլուխք սիւնեաց տէրութեան աշոտ և որդիք իւր ամբառ [illegible], յոլով և մեծամեծ երևեցուցին գործ 'ի շինուածս եկեղեցոյ զարմացուցիչ ամենայն տեսողաց ||: Նա 'ի լը. գլ. վասն ամբառայ ասէ. * Կացուցին զամբառ Գռահագլուխ իշխան սիւնեաց, և տէր 'ի վերայ սիսական աշխարհին ||: Իւր ստորև կոչէ զնոյն ամբառ՝ * Գռահերէց իշխանն սիւնեաց ||: Երկիր այսր ցեղի՝ էր Բաղք գաւառ, Կայոյ ձոր, և շրջակայք:

Իսկ զմիւս ցեղն՝ երկոքին ևս յոհաննէս կաթուղիկոս, և յետ նորա ստեփ. օրպէլ. գլ. լը. անուանեն Հայկազուն իշխան. որպէս յասելն յոհ. կաթ". * Նոյն և մեծ Հայկազունն վասակ եղբայր մանկագոյն իշխանին գրիգորոյ ||: Նա օրպէլեանն ուրեք 'ի գլ. լէ. Սեպուհ անուամբ յիշատակէ, յասելն. * Իսկ մեծ Սեպուհն իշխանն սիւնի վասակ գաբուռ ||:

Երկիր այսր ցեղի՝ էր շրջակայ սահման ծովուն գե-

ղամայ, որ է Գեղարքունի գաւառ, զորմէ տես և 'ի կարգի ստորագրութե գաւառացն : Այլ վասն զի ցեղն — տիրէր 'ի Գեղարքունիս՝ 'ի Սիսակայ անտի որդւոյ Գեղամայ ունէր զիւր տէրութի և զժառանգութի, վասն այսորիկ կարծեմ տիրաբար կոչեցեալ ՀԱՅԿԱԶՈՒՆ : Իսկ միւս ցեղն իշխանութե՝ թուի լինել այն, որ զկնի սկիզբն եառ 'ի Վաղարշակայ, թէպէտ և ԳԱՀՆԱՄԱԿԻՆ կարգեցաւ :

Զերկոսին իսկ ցեղսն 'ի կրկին տեղիս յիշէ Յոհաննէս կաթուղիկոս մի զկնի միոյ, նախ՝ յաւուրս Աշոտոյ՝ որ և կարգեցաւ առաջին թագաւոր Բագրատունի, յասելն . * Զմեծ իշխանն Սիւնեաց Վասակ, որ ըստ փաղաքշականին Իշխանիկ անուանիւր || : Այլ ապա . * Զմիւս ևս իշխանն սիսական զՎասակ, որ Գաբուռն փաղաքշաբար անուանիւր ||, և տիրէր Գեղարքունոյ : Երկրորդ՝ յիշէ յաւուրս Շահանշահ Աշոտոյ՝ դնելով և զերկիրն . * Բայց հեզահամբոյր իշխանն Սիւնեաց ընդ կրունկն յարքայորդւոյն դարձեալ յարապած լեռնէ անտի, չուէ հանդիպի եղբարց իւրոց երեցունց՝ Սահակայ Սիւնեաց տն, և Բաբկէնի և Վասակայ . վասն զի և նոքա դեռ ընդ դեռ եկեալ անցեալ էին յաշխարհ տէրութե իւրեանց . . . տիրէին 'ի վերայ սեպհական իշխանութե իւրեանց, գուն 'ի վերայ գործեալ շինել և նորոգել զհայրենի տէրութիւն || : Այս է առաջին ցեղն . իսկ սուղ ինչ ստորև գրէ վասն երկրորդին . * Բայց և հայկազուն ևս եղբարքն Սահակ և Վասակ ընդաբար կուսակալք գաւառացն՝ որ շուրջ զեզերբ ծովակին Գեղամայ, յայսմ 'ի սոյն աւուրս եկեալք 'ի հեռաստանէ հալածմանցն՝ տիրէին պայազատեալք զաշխարհս տէրութե իւրեանց || :

Նոյնպէս յիշէ զերկոսին և Ստեփաննոս Օրպէլ . գլ . լէ . * Յամենաքեան շինութե եկեղեցեաց պարապէին, ևս առաւել որդիքն Վասակայ Սիւնեաց տն (1) Գրիգոր Սուփան, Սահակ, և Վասակ, և մայրն իւրեանց Մարիամ 'ի գաւառին Գեղարքունոյ, զի այն իսկ գաւառք շուրջ զծովակողմն նոցա էր հասեալ բաժին ժառանգութե : Իսկ բուն գահք իշխանացն Սիւնեաց՝ Բաղք, Վայոց ձոր, և այլ շրջակայքն՝ Վասակայ և Աշոտայ, և որդւոց Աշոտայ՝ Սմբատայ, Սահակայ, և Բաբկէնայ, և Վասակայ, և որդւոյ Վասակայ Փիլիպէի || :

(1) Սիւնեաց տէր ասելն յայսմ իշխան երկրորդ սիսական ցեղին
վայրի՝ ոչ զԳահերէցն նշանակէ, որք կոչին Հայկազունք :
այլ զլինելն Վասակայ գլխաւոր

Բայց այլուր 'ի գլ. խա. յիշէ զերիս իշխանս. * Ազդէ և զայս մեծի և գահերէց իշխանին սիւնեաց ազատի (աշոտի) եղբօր վասակայ որդոյ փիլիպէի, և հօր սմբատայ և սահակայ և բաբգէնի ... և միւս իշխանին որ 'ի գեղամ գաւառի լինէր՝ գրիգոր սուփանայ որդւոյ գաբուռայ և սահակայ, և միւս իշխանին որ 'ի բաղս ձագին կոչեցելոյ հօր ջևանշէրի ∥: Ուր չէ պարտ զերեսին առնուլ իբրև զանազան ցեղս, քանզի եղբարք կամ որդիք մի և նոյն ցեղի երբեմն բաժանեալ զերկիր իւրեանց նստէին 'ի զանազան տեղիս իբրև զանազան իշխանք, ը[զ] որում գրէ նոյն ստեփաննոս 'ի գլ. ԼԸ. վասն սմբատայ և սահակայ և բաբկենի. * Սայեկլութբ կային իշխանքն սմբատ և սահակ, և բաժանեալ էին զհայրենի ժառանգութիւս աշխարհին, աւագն սմբատ զաւագագոյն մասն 'ի սիւնեաց ընդ արևմուտս կողմն՝ և զբոլոր վայոց ձոր առնէր 'ի բաժնի. իսկ սահակ ընդ արևելս մինչ 'ի Հակարի, բայց փոքրիկն բաբկէն սակաւ ինչ ունէր մասն 'ի բաժնի ∥:

Զկնի ժամանակաց՝ իշխանութիւն սիւնեաց յինքն ընկալաւ զպատիւ անուան Թագաւորի, զորմէ համառօտիւ այսպէս պատմէ ստեփաննոս օրպէլ. յոտանաւոր ողբս վաղարշապատու:

* Բայց միւս ևս այլ բղջահ լուցին,
'ի տան Բաղաց Սիսականին.
Սմպատ սեպուհն այն մեծ սիւնին,
'ի հայկազանց այն առաջին ...
Թագաւորեալ թագ կապեցին,
ուժգին և խրոխտ ընդդէմ չարին.
Աւուրբք բազմօք 'ի յետ անցին,
ընդ Թագաւորս բագրատունին.
Հարիւր և քսան ամք յաւելին,
վասն ամրութեան այնմ աշխարհին.
Որոց վերջին Սենեքարիմ,
նաև Գրիգոր որդի նորին.
Ապա և զայս 'ի բաց բարձին,
'ի ժամանակս ելորկուզին.
Ի վեց հարիւր մեր Թվականին,
և տասն և հինգ յաւելուածին ∥:

Ուր յանուանէ Բաղք գաւառին՝ յայտ է թէ

պատիւ ընկալաւ այն ցեղն սիւնեաց իշխանութեան՝ որ էր մեծ և գահերէց․ զի որպէս գրեցաք 'ի վերոյ՝ նա էր որ տիրէր բաղաց գաւառին․ և ոչ միայն ստեփաննոս, այլ նաև վարդան 'ի յիշելն զոսա՝ կոչէ Թագաւոր Բաղաց և Կապանին՝ որ է Զորք գաւառ, որպէս գրեսցուք ստորև. *'Ի շխդ․ Թուին (ասէ) առաքեաց փառլուն ամիրայն գանձակայ զվասակ պահլաւ՝ որդի գրիգորոյ մագիստրոսի ամենայն զօրօքն առնուլ յանառիկ ամուրսն Բաղաց և Կապանին, որ և խաբէութեամբ հնարեալ մտին անդր, և սպանին զՍենեքարիմ արքայն հայկազնի, զի Թագաւորքն որ անդ՝ հայկականք էին‖։ Զնոյն յայտ առնէ և ազգաբանութիւն սմբատայ՝ որ նախ առաջին զանուն Թագաւորի գրաւեաց ըստ ստեփաննոսի օրպելեան՝ զորմէ ստորև։ Այս սմբատ՝ յայտ է թէ՝ ոչ յառաջէ քան զտասներորդ դարն (1)։

Իսկ վախճան այսր Թագաւորութեան սիւնեաց եղև 'ի Թուականիս ոժե․ յամին 1166․ որպէս որոշակի եդ ստեփաննոս 'ի վերոյ․ և այսպէս առեալ 'ի սկզբանէ մինչև ցաւարտ իւր տևեաց առ առաւելն զամս իբր 190, կամ 196։ Իսկ յայսմ միջոցի պայազատեցին Թագաւորք վեցք՝ որպէս պատմէ ստեփաննոս օրպէլ․ գլ․ ծԹ, և կա․ ըստ այսմ կարգի։

1․ Սմբատ ա․ որդի սահակայ, որդւոյ աշոտի եղբօր վասակայ՝ որ իշխանիկ կոչիւր։

2․ Վասակ որդի սմբատայ՝ որ մեռաւ անորդի։

3․ Սմբատ բ․ որդի աշոտոյ, և քեռորդի վերոգրեալ վասակայ։

4․ Գրիգոր եղբայր բ․ սմբատայ։ Սոքա երկոքին եղբարք՝ կոչին Նուագ աշոտեանք։ Այս Գրիգոր մեռաւ անորդի, որոյ կին էր Շահանդուխտ 'ի տանէն աղուանից՝ դուստր Թագաւորազնին մեծին Սևադայի։

5․ Սենեքարիմ եղբայր վերոգրեալ շահանդխտոյ։

(1) Զի ոչ յիշէ զայն յոհաննէս կաթուղիկոս որ էր 'ի Թ․ դարու և ընդ հակառակն ամենայն նախնի Թագաւորք բաղաց, կամ կապանին, և կամ սիւնեաց՝ յիշատակեալք առ այլ պատմագիրս՝ են 'ի Ժ․ դարուն․ որպէս և այն Սահակ սիւնի՝ զոր վարդան կոչէ Թագաւոր, զի վասն կատրամիտեայ ասէ՝ թէ էր դուստր սորին սահակայ․ արդ՝ կատրամիտէ եղև կին ա․ գագկայ շահնշահի՝ որ էր յելս անդ Ժ․ դարուն․ և ստեփաննոս օրպէլ․ 'ի պատմութեան իւրում՝ զսկզբնաւորութիւն այսր Թագաւորութեան խօսի 'ի գլ․ ծե․ զկնի վախճանի կաթուղիկոսին, և յառաջ քան զա․ սարգիս կաթուղիկոս, որով ժամանակ նորա անկանի 'ի մէջն անդ Ժ․ դարուն։

Սպան զնա ամիրայն պարտաւայ՝ տալով երդմանն։
6. Գրիգոր Է. որդի սենեքարիմայ, որոյ էր մի միայն
դուստր՝ զոր ետ Հասանայ՝ կոչեցեալ 'ի խաչենոյ, այսինքն
յարցախայ, և կացուցեալ ժառանգ թագաւորութեանն
ինքն գրիգոր մեռանի 'ի ռժե. թուին։ Իսկ հասան գաղտ
փախուցեալ 'ի Բաղաբերդէն հանդերձ ընտանեօք գնաց
'ի գաւառ իւր և 'ի տուն 'ի խաչէն։
* Ըստ զայս օրինակ (ասէ օրպելեանն 'ի գլ. կա.)
բարձաւ տէրութիւն Սիւնեաց և Բաղաց, և եղև վախ-
ճան տոհմին Սիսակայ, և նախադրութե հինեաց. քան-
զի ամենեքեան որ կային յառաջագոյն յաւուրս սմբա-
տայ, իւրաքանչիւրքն՝ էր որ անզաւակ մնացին, և էր որ
կիսօրեայ փոխեցան, էր որ սպանան և գերեցան, և մնա-
ցեալ էին միայն այս գրիգոր և սմբատ (եղբայր նորին՝)
որ այսու օրինակաւ բարձան ‖։ Իսկ յաւուրս լանկթա-
մուրայ առ հասարակ քանդեցին թաթարք զերկիրն սիւ-
նեաց, որպէս պատմէ թովմա մեծոփեցի։
Զկրօնն քրիստոնէական ընկալաւ այս նահանգ զա-
ռաջինն քարոզութբ ՚նըն բարթուղիմեայ, որպէս պատ-
մէ ստեփաննոս օրպէլ. 'ի գլ. Է. բերելով 'ի հին գրու-
ցաց և յաւանդութեց. որոյ 'ի դառնալն 'ի պարսից՝ ան-
ցեալ ընդ ատրպատական, և * Ընդ գեան երասխ՝ մտա-
նէ (ասէ) 'ի սահմանս Սիսականու, և սկիզբն արարեալ
քարոզութե յորդվատ գիւղ և յարևելս գաւառ (այն
է՝ արևիք,) և 'ի տունն բաղաց և 'ի գողթն, որք ընկա-
լեալ զքարոզուե աւետարանին, լուսաւորեցան մկրտու-
թբ աւազանին 'ի ձեռն ՚նը առաքելոյն բարթողիմէի ‖.
վասն որոյ ևան ընդյապատմնեայս Նախահաւատ կոչէ զՍիւնիս։
Նորոգեցաւ անդրէն լուսաւորութբ ՚նըն գրիգորի,
յորում ժամանակի ընդ մկրտիլ տրդատայ՝ մկրտեցաւ և
իշխանն սիւնեաց, որ գնացեալ էր ընդ լուսաւորչին 'ի
կեսարիա, և 'ի դարձին բազում քաջութի ցուցեալ 'ի
տարօն 'ի պատերազմին ընդդէմ քրմացն գիսանեան
կռոց, և խնդրեալ յարքայէ և 'ի ՚նըն գրիգորէ ուսու-
ցիչ վասն իւրոյ նահանգին, առնու զոմն յասորոց անուն
զոր բերեալ էր ՚նըն գրիգոր. և եկեալ 'ի սիւնիս՝ մկրտէ
զամենայն ընտանիս իւր, կործանէ զբագինս, և զտեղի
նոցա պատրաստէ 'ի շինութի եկեղեցեաց, դարձուցեալ
զամենայն նահանգն 'ի քրիստոնէութի։ Յետ սակաւուց
եկն 'ի սիւնիս և նոյն ինքն ՚նըն գրիգոր զկնի դարձին իւ-
րոյ 'ի հռոմայ՝ (ընդ որում գնացեալ էր և սոյն իշխանս

Սիւնեաց.) որոյ շրջեալ (ասէ ստեփաննոս,) *ընդ գաւառն ամենայն (Սիւնեաց) հաստատէ 'ի հաւատս, և 'ի պատշաճաւոր տեղիս շինէ եկեղեցիս, և կանգնէ զնշանն տէրունի‖:

Այլ և 'նոյն մեսրոպ քարոզութբ իւրով ջնջեաց զաղանդն հեթանոսական՝ որ յառաջն դօղեալ և թագուցեալ կայր, *'Ի գաւառն սիսական և 'ի գողթն, (և) այժմ (այսինքն առ ժամանակօք մեսրոպայ, ասէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. ժԵ.) համարձակեալ երևեցուցին‖: Իսկ սուղ ինչ զկնի գրէ. *Դրանեաւ (մեսրոպ) զկրկին երևեալ աղանդ կռապաշտութե, և սկսեալ 'ի քարոզութե մեծամեծ և ահագին նշանօք՝ ոչինչ ընդհատ քան զորս գրիգորի 'ի հաւատ ածել զաշխարհն սիսական հրամանաւ և օգնութբ բարեպաշտ իշխանին Սիւնեաց վաղինակայ սրբել զկռապաշտութի, և խորտակել զկուռսն թագուցեալ‖: Այսմ վկայէ և կորիւն վարդապետ 'ի վարս 'նոյն մեսրոպայ, յորմէ առնու ստեփ. օրպէլ:

Ուսումն ածաբանական 'ի սկզբանէ անտի ծաղկեալ մնաց յայս նահանգ, որում նախ առաջին հիմն եդ Անանիա աշակերտ մեսրոպայ և եպիսկոպոս Սիւնեաց, զորմէ գրէ ստեփաննոս օրպէլ. 'ի գլ. ժԶ. *'Ի բառնալ դպրութեն հայոց վերին պարգևօքն 'ի ձեռն 'նոյն սահակայ և մեսրոպայ՝ եդ դպրատունս աշխարհին Սիւնեաց, և կարգեաց 'ի վերայ զաշակերտակիցն իւր զբենիամին, և փութապէս զամենեսեան ուսոյց հայերէն դպրութբ‖: Յայնմ հետէ այնչափ երևելի եղև վարդապետութի Սիւնեաց՝ մինչև առնուլ զգլխաւորութե պատիւ 'ի մէջ վարդապետաց հայաստանեայց. *Էր մեծարոյ և նախաթոռ (ասէ օրպէլեանն 'ի գլ. ԽԸ.) 'ի վարդապետսն հայոց աթոռն Սիւնեաց, զի էր 'ի վաղնջուց հետէ հրամայեալ զթարգմանութի և զմեկնողութի նոցա ունել 'ի 'նոյն սահակայ և մեսրոպայ, և գլուխ կալ և հրամանատար ամենայն վարդապետաց հայոց‖:

Ո՛չ սակաւ ծաղկեցոյց զնոյն ուսումն մաթուսաղայ քերթող 'ի սկիզբն Է. դարուն, որ և կարգեցաւ գլուխ ամենայն վարդապետաց վարժարանին Սիւնեաց, և զկնի եղև և եպիսկոպոս Սիւնեաց, մինչև կոմիտասայ կաթողիկոսի՝ զանց արարեալ զամենայն վարդապետօք կաթողիկոսարանին, և զարշարունեաց վարդապետարանին՝ որ էր երևելի, առ սա ինքն առաքեաց զեղբօրորդի իւր զթէոդորոս յուսուցանել:

Համբաւ այսր վարդապետարանին սիւնեաց համատարածեր մինչ 'ի սկիզբն Ը. դարուն, առ որ իբր յաղբիւր իմաստից դիմեաց ստեփաննոս քսաներորդ երկրորդ եպիսկոպոս սիւնեաց յուսանիլ՝ նախ քան զեպիսկոպոսութիւն. յորում ժամանակի թէ քանի՞ մեծ էր համարեալ այն 'ի մէջ ազգիս՝ այսպէս առաջի դնէ ստեփաննոս օրպել. 'ի գլ. լե. յասելն վասն նախայիշատակեալ ստեփաննոսի. * Ելեալ 'ի մենարանէ անտի (մաքենոցաց) փութայ Ձե-ալ յաղբիւրն իմաստից 'ի վարդապետարանն սիւնեաց՝ որ գլուխ էր ամենայն գիտնոց հայոց, և պայծառացեալ դպրոցքն որ 'ի նմա. քանզի որպէս աթենացիքն 'ի մէջ հոռոմոց և յունաց ձոխացեալ էին, և մայր իմաստից կոչեցեալ 'ի սպանիացոց աշխարհին լատին և հելլէն դպրութք, այսպէս և սոքա 'ի տանս թորգոմայ աշխարհիս հայոց ‖:

'Ի վարդապետարանէ աստի ելին երկոքին երևելի մատենագիրք՝ յորոց առաջինն է Պետրոս իններորդ եպիսկոպոս սիւնեաց յելս Ե. դարուն. և 'ի սկիզբն վեցերորդին Քերթող մականուանեալ, աշակերտ քերթողահօրն մովսէսի, որպէս դնէ օրպելեանն 'ի գլ. ծ. և իը. որ արար թարգմանութիս և ճառս, մեկնութիս հին և նոր կտակարանաց, և ներբողեան 'ի բաբիկ որդի անդուկայ իշխանին սիւնեաց, և այլ ներբողեան 'ի ծնունդն քի: Երկրորդն է նախայիշատակեալն ստեփաննոս՝ նոյնպէս եպիսկոպոս սիւնեաց, որ զինքն կոչէ 'ի յիշատակարանս իւր թարգմանեալ գրոց յիւրմէ՝ Աշակերտ տն մովսէսի սիւնեաց եպիսկոպոսի, (այն է նախընթացն իւր.) և զորս պէսպէս գործս յիշատակէն ստեփաննոս օրպել, և այլք:

Այսչափ հռչակաւոր գտաւ ածաբանութի և վարդապետութի սիւնեաց վարդապետարանին, և այսչափ փոյթ ծաղկեցուցանելոյ եմուտ 'ի նոսա, սակս երևելի գոլոյ աթոռոյ Եպիսկոպոսին սիւնեաց. զի այս աթոռ 'ի սկըզբանէ անտի մեծամեծ պատիւս և արտօնութիս ընկալաւ, և նախ՝ 'ի սբյն գրիգորէ. զի յորժամ դարձաւ նա ինքն սր. լուսաւորիչն 'ի նահանգէն սիւնեաց 'ի վաղարշապատ՝ (քանզի ինքնին առաքելաբար շրջէր և քարոզէր զաւետարանն, և հաստատէր 'ի հաւատս զնորահաւատ քրիստոնեայս,) 'ի խնդրոյ իշխանին սիւնեաց ձեռնադրեաց զոմն յիւրոց մերձաւոր աշակերտաց Գրիգորիս անուն, և ետ ցիշխանն տանել վիճակեցուցանել յեպիս-

կոպոսութեն ի յայս նահանգին, որ և եղև առաջին եպիսկոպոս, և 'ի կարգէն նորին երեսուն և վեց եպիսկոպոսունս բազմել ընդ ինքեան՝ յաջմէ և յահեկէ, սիւնեաց եպիսկոպոսին ահա բազմել յեօթներորդ գահուն յաջմէ կողմանէ, որպէս ցուցանէ օրպէլեանն 'ի գլ. Ե. և Է. առեալ 'ի սամուէլէ կամրջաձորեցւոյն ։

Իսկ յորժամ զմեծն ներսէս պատրիարգ կացուցին, յայնժամ եպիսկոպոսն սիւնեաց Գրիգորիս կամ Գրիգոր՝ կացուցաւ Մետրապօլիտ. *Կացուցանէն (տե՛ս տեսի. օրպէլ. գլ. Է.) պատրիարգ զորն ներսէս, և 'ի ներքոյ նորա արքեպիսկոպոս զաղուանից՝ որ է կաթողիկոս, և Մետրապօլիտ՝ զսիւնեաց եպիսկոպոսն (1)։ Բայց յայտնանէ ընկալաւ յայնժամ զայլ ևս կրկին պատիւ. *Իսկ Գրիգորի սիւնեաց մետրապօլտի (տե՛ս անդէն օրպէլեանն՝) աւելի պատիւ արար նորին ներսէս վասն երթալոյն ընդ նմա 'ի կեսարիա. տայ նմա բազմական ուկեթել, և կարգէ զՍիւնիս Նախաթոռ պատրիարգին, որ կոչի 'ի հոռոմ լեզուն Պռոտոփրոնտէս (2) հայոց մեծաց ։

Յայնմհետէ Եպիսկոպոսունք սիւնեաց կոչին Մետրապօլիտք, որպէս է տեսանել առ ստեփաննոսի օրպէլեան 'ի գլ. ժԳ, և յայլ բազում տեղիս, յորս զեպիսկոպոսութի սիւնեաց կոչէ *Մետրապօլտութի, (կամ) Աթոռմետրապօլտութե տանս Սիւնեաց, (կամ) տանս Սիսական ։ Նոյնպէս է տեսանել և յայլ գիրս նորա, և 'ի ժողովական թուղթն զոր գրեաց 'ի դիմաց արևելեան եպիսկոպոսաց առ գրիգորիս կաթողիկոս, ուրանօր Նանիա աշակերտ մեսրոպայ, Մուշէ, Պետրոս քերթող, և Քրիստափոր՝ որք էին եպիսկոպոսունք սիւնեաց և

(1) Յաւելու անդէն ստեփաննոս օրպէլ անմիջապէս. * Եւ զվերոյն, և զմարգպետականն, և յետոյ այլ ևս մետրապօլիտք կացուցանէին զմելիտինոյն և զսեբաստիոյն ։ Իսկ յովհաննէս կաթողիկոս 'ի պատմելն զպատրիարգութէ մեծին ներսէսի՝ այլազգ գրէ. զի և զվերոյն անուանէ Արքեպիսկոպոս, և չյիշէ զՍիւնեացն և զմարգպետական մետրապօլիտսն. բայց յիշէ զմելիտինոյն և զսեբաստիոյն, յաւելեալ ի [illegible] և ըզմետրապօլիտն մարտիրոսաց քաղաքին Նփրկերտ կոչեցելոյ ։ Բայց թերևս յովհաննէս կաթուղիկոս խօսի զաթոռոցս որպէս և զի արգ էին առ իւրովք ժամանակօք. և կամ օրպէլեանն զմիջին դարու ըզգահ առաջնորդաց 'ի վեր տանի և հանէ 'ի ժամանակս մեծին ներսէսի ։

(2) Յունական բառս ըստ հնչման իւրեանց Բռօդոփռօնտոս, նշանակէ՝ Նախաթեսուչ, Նախկին խնամօղ ։

գտան 'ի զանազան ժողովս Հայոց՝ կոչին Մետրապօլիտք Սիւնեաց։

Իսկ 'ի ժամանակս մեծին սահակայ և մեսրոպայ եպիսկոպոսն սիւնեաց ընկալաւ 'ի նոցանէ հրաման մեկնութեան և թարգմանութեան, և պաշտօն և գործք նորա յառաւելագոյն պատիւ բարձրացան. *Գործ է սոցա (այսինքն մետրապօլտաց սիւնեաց՝ ասէ ստեփ. օրպել. գլ. Է.) ձեռնադրել եպիսկոպոս գաւառաց, վասն որոյ երկոտասան եպիսկոպոսաց գլուխ կարգեցաւ (1). և առանց սոցա ոչ ձեռնադրի պատրիարգ հայոց, և ոչ լինի 'ի ժողով այլ գլուխ և հրամանատար ժողովոյ։ Սոքա լինին և նախաթոռ վարդապետութեան, և հրաման մեկնութեան և թարգմանութեան սոցա միայն շնորհեցաւ 'ի մէջ հայոց 'ի ձեռն սահակայ և յերանեալ վարդապետէն մեսրոպայ‖։

'Ի նմին ժամանակի անանիա եպիսկոպոս սիւնեաց աշակերտ մեսրոպայ 'ի շնորհս երախտեաց՝ զոր արար յաղուանս ընդ մեսրոպայ՝ ստեղծելով գիր լեզուի նոցա, և բանալով զդպրութիւն և զվարդապետութիւն Ճշմարիտ հա-

(1) Այս բանք օրպէլեանին՝ եթէ առցին որչափ ինչ 'նշանակեն բառքն, երևին կարծիս 'ի միտս արկանել, թէ գուցէ մետրապօլիտք սիւնեաց կատարէին և ձեռնադրութիւնս եպիսկոպոսաց. և սակայն ոչ թեթև դժուարութիւն կրէ կարծիք այդպիսի 'ի ստուգութիւն՝ առ որս քաջ զննութեամբ դեգերեալ իցեն 'ի գիրս հայոց։ Զի արդարև մետրապօլիտք առ յոյնս առնէին ձեռնադրութիւնս եպիսկոպոսաց (թէպէտ և ոչ առանց հրամանի և հաւանութեան արքեպիսկոպոսին իւրեանց, զնոյն կարծեմք և վասն մետրապօլտին վրաց՝ ցորչափ միաբան էին ընդ հայս.) այլ առ հայս՝ քանզի ձեռնադրութիւն եպիսկոպոսաց՝ որպէս և օրհնութիւն միւռոնի 'ի սկզբանէ հետէ կաթուղիկոսին և եթ պահեալ էր, ոչ ուրեք 'ի գիրս է տեսանել զայդ, մանաւանդ զհակառակն. զի 'ի խնդրել մարդպետական եպիսկոպոսին (ըստ նորին իսկ ստեփ. օրպէլ. 'ի գլ. իէ.) զոր մետրապօլիտ կացուցեալ էին, եպիսկոպոսս ընդ ձեռամբ ունել՝ (յայտ է թէ՝ իբր - զվրացն՝ որոյ փոխանակ մետրապօլիտ կացեալ էր մարդպետականն՝) առին 'ի նմանէ զպատիւն, և ետուն եպիսկոպոսին սիւնեաց, դաշամբ ոչ ժտելոյ աւելի ինչ, ՚այսինքն Եպիսկոպոսս ունել ժբ ինքեամբ, և ձեռնադրել‖։ Վասն որոյ հարկ է ուղղագ իմանալ զբանս օրպէլեանին, որպէս թէ ասէր. ՚Պաշտօն մետրապօլտաց է ձեռնադրել եպիսկոպոս՝ եթէ առ հայս չէր վերապահեալ այն կաթողիկոսին‖։ Իսկ գլուխ լինել ժբ. եպիսկոպոսաց, քանզի առ նախագահութիւն և եթ հայի, չէ ինչ անհաւանական. քանզի ոչ անդէպ է ասել՝ թէ էին և 'ի հայս, որպէս և յայլ ազգս գլխաւոր եպիսկոպոսունք՝ նախագահք բազմաց. իբրև ստորակարգեալ պաշտօնեայք և հրամանատարք ընդ կաթողիկոսիւ։ Այլ թէ ժբ. գաւառք սիւնեաց ունէին առանձին եպիսկոպոսունս, ուսանիմք 'ի բանից սատի օրպէլեանին, թէպէտ և առ նախնի մատենագիրս ցարդ ոչ ուրեք գտաք՝ գէթ զանուանս 'ի նոցանէ յանուանէ նշանակեալ։

ւատոյ, ընկալեալ այլ ևս արտաքին պատիւս 'ի Թագաւորէն աղուանից՝ որ կոչէր Եսվաղէն. * Պատիւ արարեալ նմա (ասէ օրպէլեանն 'ի գլ. ԺԳ.) երախտահատոյց լինի, և պարգևէ զիւր նշանակն Թագաւորական ոսկէտուսն վառիւ, և 'ի գլուխն գունտն ոսկի, և 'ի վերայ խաչ պատուական, և հրամայէ զայն հանապազ շրջեցուցանել ընդ իւրեանս եպիսկոպոսացն սիւնեաց 'ի յիշատակ Թագաւորացն աղուանից || (1):

Իսկ 'ի վախճան Ժ. դարուն՝ նուազեաց այս պատիւ եպիսկոպոսացն սիւնեաց, որոյ պատճառն (ըստ ստեփաննոսի օրպէլեան) եղև, զի յորժամ երկու կաթուղիկոսք նստան՝ մի 'ի բաժնին պարսից, և միւս 'ի բաժնին յունաց, պետրոս քերթող անուանեալ՝ որ յայնժամ եպիսկոպոսն էր սիւնեաց (2) հրամայեաց իւրում ժողովրդեան՝ յաղուանից առնուլ ձեռնադրութիւն և ձէթ, մինչև 'ի խաղաղել խռովութեան. յայսմանէ զկնի կաթողիկոսին հայոց՝ արքեպիսկոպոս կարգեցաւ յայնժամ աղուանիցն, և մետրապօլիտ՝ վրացն. * Զի սիւնիք հրամանաւ պետրոսի (ասէ օրպէլ. 'ի գլ. ԽԶ.) ժամանակս ինչ յետ էին կացեալ 'ի հակառակ աթոռոյն ||:

Նաև 'ի միաբանել սիւնեաց վերստին յաւուրս ա̅. աբրահամու կաթուղիկոսի, ծագեցաւ (ըստ գրելոյ օրպէլենին) այլ հակառակութիւն 'ի մէջ վրաց և աղուանից վասն դաւհերիցութեան աթոռոյ. և 'ի բաժանիլ վրաց 'ի հայոց՝ մետրապօլտութիւն տուաւ մարդպետական եպիսկոպոսին Թէոդորոսի, և ապա տուաւ նոյն պատիւ եպիսկոպոսին սիւնեաց. * Պատշաճ համարեցան (ասէ օրպէլ. 'ի գլ. ԽԶ.) միաբան ժողովով տալ նոցա զմետրապօլտու-

(1) 'Ի գլ. Է. գրէ նոյն ստեփ. օրպէլ. վասն այսր. 'Պարգևէ նմա զիւր Թագաւորական դրօշն՝ կարմիր և ոսկէտուտ վառիւ, ունելով 'ի գլուխն գունդս ոսկի, և 'ի վերայ խաչ պատուական ||:

(2) Նոյնպէս և այս ենթադրութեն օրպէլենին ընդդէմ երևնէ այլոց պատմագրաց հայոց, զի զոր յօհաննէս կաթողիկոս և այլք ըզյովհան կաթողիկոս բաժնին յունաց՝ դնեն կարգեալ 'ի մօրկայ 'ի ժամանակս ա̅. աբրահամու կաթողիկոսի, և այն՝ զկնի բաժանման վրաց 'ի հայոց, սա զնոյն դնէ 'ի ժամանակս մովսէսի կաթողիկոսի (առ որով կարգեցաւ Թուական հայոց.) վասն որոյ և հետևեցուցանէ՝ Թէ պետրոս քերթող որ էր 'ի ժամանակս մովսէսի՝ տեսեալ զայսպիսի բաժանումն աթոռոյ կաթողիկոսութեան՝ հատուածեաց զսիւնիս 'ի հայոց յաղուանս: Իսկ եթէ ստոյգ իցէ այդ գործ պետրոսի, սակայն պատճառ գործոյն զոր տայ ստեփաննոս օրպէլ. ոչ նոյնպէս ստոյգ գտանի ըստ հաւաստի պատմութեանց, զոր պատմագրաց Թողումք 'ի քննել:

թիւն, ածնել և բարձակից և սեղանակից կաթողիկոսի, աթոռով և բարձու 'ի միասին բազմել: Կացուցանէին ապա զգաւիթ մետրապօլիտ սիւնեաց, և տան նմա ըղ-խաչանիշ նշանն զառաջեաւ կրել հանապազ, և ոչ քարո-զել զկաթողիկոսն Հայոց յիւր եկեղեցիսն 'ի վերայ նոյ սեղանոյն, այլ միայն զիւր անունն. և 'ի [illegible]ագրութեն ոչ գրեն սիւնիք Եպիսկոպոսապետ, կամ այլ անուամբ զկաթողիկոսն, այլ տէրունիք 'ի սիւնիք [illegible]ծապատիւ և Հոգևոր Տէր' գրէին, և նոքա' 'Ի ծառայէ: Բայց յե-ղիայի կաթողիկոսի խակագործութեն յերիցու վանս' մինչ գնայր 'ի հնազանդել զաղւանս, ոչ գրեցին սոքա' 'Ի ծա-ռայէ, և նոքա' զՀոգևորն (1) ‖:

Եւ ապա յաւելու ասել. * Այսպէս զետեղեալ սահ-մանեցին զնոյն դասս եկեղեցւոյ, Հայոցն' Պատրիարգ, աղւանիցն' Արքեպիսկոպոս, սիւնեաց' Մետրապօլիտ-դոլ, և զայլ աշխարհս թողին յառաջին սովորութիւն' զի մի ամբոխ ինչ լիցի: Այլ և խնդրեցին 'ի սիւնեաց' մի ինչ աւելի իրս ժտել, այսինքն' Եպիսկոպոս ունել ընդ-իւրեամբ և ձեռնադրել, այլ միայն բազմականաւն և խաչիւն մեծարեցին, և նախաթոռ կոչեցին պատրիար-գին որ է' Պռոտոփրոնդէս, և անուանեցին Մետրա-պօլիտ: Եւ այս կրկին անգամ եղև շնորհեալ նոցա զայս պատիւ և զնշան, առաջինն' յեսվաղէն թագաւորէ աղ-ւանից. և երկրորդ' 'ի ժողովոյն Հայոց 'ի տէր աբրա-համայ ‖:

Իսկ 'ի սկիզբն Ը. դարուն միւսանգամ հաստատեցաւ այս պատիւ նոցա և արտօնութիւն 'ի Ա. դաւթայ կաթողիկոսէ վասն երախտեաց ստեփաննոսի' որ էր ԻԸ. եպիսկոպոս սիւնեաց. զի վասն հաստատութեն, և ոչ վասն նորոգ ինչ պատուոյ պայման է իմանալ զբանս ստեփ. օր-պէլ. որ գրէ 'ի գլ. ԻԹ. թէ դաւիթ կաթուղիկոս * Վասն մեծի երախտեացն (ստեփաննոսի) առաւել պատուէ զնա,

(1) Յայտնի իմաստ նախընթաց բանին թուի լինել այս: 'Ի գրել առաջնորդացն սիւնեաց (զորս Տէրունիք կոչէ, այսինքն Տեարք.) առ կաթողիկոսն' ոչ գրէին 'ի խո-րագրի Եպիսկոպոսապետ, կամ զայլ ինչ անուն գերագոյն նա-խագահութեան, այլ միայն գրէին [illegible] և Հոգևոր տէր. իսկ կաթողիկոսք 'ի գրելն առ սիւնիս' 'ի սկիզբն թղթոյն դնէին զբանս' 'Ի ծառայէ. բայց 'ի չդաւանել եղիայ կաթողիկոսի զայս սովորական կարգ 'ի գրութեն, զանց արարին և սիւնիք 'ի պատասխանին զիւ-րեանց սովորական պատուանունն այն է' Հոգևոր տէր. և այլն: Այլ յաղագս այսց պատուոյ անուանց ունիմք և 'ի ստորև 'ի կարգի անդ գրել ինչ, տես անդ:

և կացուցանել գլուխ եպիսկոպոսաց, և պատճառն սիւնեաց՝ գլուխ ամենայն աթոռոց։ Յաւելու անդէն օրպէլեանն. * Նախ ասմունք՝ եթէ Սիւնեացն յեօթներորդ դասուն էր եպիսկոպոսացն Հայոց, այժմ յերրորդ դասուն կարգեցին. այց մի հաւանիր, զի աղուանիցն միայն էր 'ի վեր քան զՍիւնեացն վասն արքեպիսկոպոսութեան. իսկ սիւնեացն վասն մետրապօլտութեան 'ի վերոյ էր քան զամենայն եպիսկոպոսքն Հայոց, զի այլ ոչ ոք ունէր զմետրապօլտութեան աթոռն. և որքան պատրիարգն քան զարքեպիսկոպոս է գեր 'ի վերոյ, և արքեպիսկոպոսն քան զմետրապօլիտն, այսպէս մետրապօլիտն քան զեպիսկոպոսն, զի նա ձեռնադրէ զեպիսկոպոսն ||։

Դարձեալ միւսանգամ 'ի մէջն անդ Ժ. դարուն հաստատեցաւ չորրորդ անգամ այս պատիւ նոցա՝ անուամբ Արքեպիսկոպոսութե. քանզի պատմէ Վարդան, և ընդարձակ ևս կիրակոս, թէ եպիսկոպոսն սիւնեաց յակոբ անուն, և այլ եպիսկոպոս մի խոսրով անուն՝ բաց յայլոց նորաձևութեց, ուսուցանէին թէ չէ պարտ հլու լինել կաթուղիկոսին. * Ոչ է աւելի ինչ ոչ ունի (ասէին քան զեպիսկոպոսն,) բայց միայն զանուանակոչութն ||։ Իբրև խրատեցան 'ի կաթուղիկոսէն և յայլոց վարդապետաց, առաւել ևս լրբեալ յայտնի ապստամբեցան և ապստամբեցուցին զայլս։ Իսկ յետ մահուանն յակոբայ՝ ինքն կաթուղիկոսն որ էր անանիա մոկացին, երիցս անգամ (1) գնաց 'ի սիւնիս 'ի հնազանդել զնոսա. որում ընդ առաջ ելեալ իշխանքն սիւնեաց՝ զղջացեալ սրտիւ ետուն ձեռագիր երդմամբ՝ առ 'ի ոչ ապստամբել միւսանգամ յաթոռոյ սրբոյն գրիգորի յազգէ մինչ յազգ։ Վասն որոյ և կաթուղիկոսն արձակեալ զնոսա 'ի նզովից, որովք կապեալ էր յառաջն, կացոյց նոցա Արքեպիսկոպոս զտէր Վահան 'ի բաղաց գաւառէն, որ զկնի եղև կաթուղիկոս. և զնախկին արտօնութեն՝ Խաչ կրելոյ առաջի, անդրէն շնորհեաց։

Եւ այսպէս սակս վերստին հաստատութե այսր արտօնութե, և պատուոյ Արքեպիսկոպոսութե պարտ է իմանալ զբանս կիրակոսի՝ որ ասէ վասն անանիայ կաթուղիկոսի. * Ձեռնադրեաց յաղագս նոցա (2) զմի ոմն Ար-

(1) Այսպէս գրի առ օրպէլ-նէն 'ի յանէն գլխոց գլ. ծը. ուր կիրակոս ոչ ինչ յիշէ զերիցս անգամ գնալըն. իսկ վարդան գրէ վասն անանիայի. * Սա բազում աշխատութեամբ հնազանդեցոյց զՍիւնիս ||։

(2) Վարդան կոչէ զվահան. * Ու-

եպիսկոպոս որ յառաջն էր Սիւնեաց եպիսկոպոս, զայն 'ի պատիւ արարեալ իշխանացն Սիւնեաց՝ հրամայեաց խաչ տանել առաջի Արքեպիսկոպոսին Սիւնեաց մեր և երթիցէ ||։ Պատմէ զայս և Ստեփաննոս Օրպէլ. 'ի գլ. ծը. (1)։

Որդ՝ Սիւնիք թէպէտ Թուղթ ետուն ոչ երբէք ապըստամբելոյ յաթոռոյ սբյն գրիգորի, սակայն յամին 1113. յորժամ Դաւիթ Նստաւ կաթուղիկոս յաղթամար հակառակ գրիգորի հարազատ կաթողիկոսի, աթոռն Սիւնեաց, և Թադէոսի առաքելոյն՝ միաբանեցան ընդ Դաւթի. այլ յետ միոյ ամի՝ դարձան անդրէն 'ի հնազանդութիւն գրիգորիսի, որպէս գրէ ընդարձակօղն Սամուէլի։

Պատմութիւն օրպէլեանց 'ի գլ. Թ. (տպ.) ցուցանէ՝ թէ հինգերորդ անգամ Նորոգեցաւ պատիւ այսր աթոռոյ 'ի 1287. յորժամ Ստեփաննոս որդի տարսաիճի՝ որ է նոյն ինքն պատմագիրն Սիւնեաց՝ ձեռնադրեցաւ Մետրապօլիտ, զի ասի անդ. *Ձեռնադրեն զՍտեփաննոս Մետրապօլիտ (2) մեծի աթոռոյն Սիւնեաց ... վասն նորոգման սր աթոռոյ հին պատուոյ և աստիճանին, որ բարձեալ էր 'ի վաղնջուց վասն աւերման և կործանման աշխարհիս || (3)։

Նոյն պատուոյ եպիսկոպոսացն Սիւնեաց, որպէս ուսանիմք 'ի գրոց օրպէլինին, և յայլ գրոց, էր նոյն իսկ պատուանունն կաթուղիկոսաց՝ զոր և Սիւնիք 'ի գրեն առ կաթուղիկոսն 'ի գործ ածէին, այն է Ճշմարիտ Հոգևոր տէր։ Նաև առ 'ի ստուգութիւն ասացելոցս՝ շատ լիցին առաջիկայ վկայութիւնքս 'ի գրոց. և նախ՝ 'ի վճռա-

տի Չոնչէր Իշխանին. Թերևս նոյն է որ առ օրպէլինին գրի՝ Ջնանչէր։

(1) 'Ի մեր օրինակն գրոց օրպէլինին նախ քան զսկսանիլն ըզպատմութեն գտանի ցուցակ հգ. գլխոց հանդերձ խորագրովք, այլ 'ի կարգի անդ պատմութեն պակասին ամբողջ գլուխք 30. սատի և անտի, որպէս և գլ. ծը. մեք ուր ուրեք և 'ի խորագիրսն անդ գտաք արժանի ինչ յիշատակի՝ ոչ զանց արարաք, մինչև ըստ ժամանակին ամբողջ օրինակ լցցէ զպակասութիւն գրելոցն 'ի մէնջ։

(2) Այլք 'ի մատենագրաց՝ զորօրինակ գրիգոր մագիստրոս, վարդան, կիրակոս, որպէս և 'ի Թուղթն ժողովական գրիգորի կաթուղիկոսի 'ի ժողովն հռոմկլայի, և այլք, զեպիսկոպոսունս Սիւնեաց՝ որ զկնի տն վահանայ՝ միշտ Արքեպիսկոպոս կոչեն, նաև ըզնոյն ինքն ստեփաննոս օրպէլ. ուր նա ինքն 'ի բանս իւր զհին պատուանունն Մետրապօլիտ (թէպէտ և ստորին քան զԱրքեպիսկոպոսն,) առաւել թուի ախորժել։

(3) 'Ի նմին պատմութեն օրպէլեանց տպ. 'ի գլ. Թ. կայ յիշատակ և եպիսկոպոսական Թագի՝ զոր ընկալաւ ստեփաննոս օրպէլ. 'ի Թագաւորէն հեթմոյ։

գիրն կամ 'ի յետկարն տն փիլիպէի սիւնեաց տն, զոր ետ դաւթի սիւնեաց եպիսկոպոսի, (առ ստեփաննոսի օրպէլեան 'ի գլ. լԹ.) ուր ասի. *Յերկերիւր և յիննսուն երեք Թվականութն հայոց՝ որպէս կամ եղև ինձ փիլիպէի որդւոյ վասակայ սիւնեաց տն՝ ետու զտաթև վասն իմ հոգեացս 'ի ձեզ 'ի տէր դաւիթ սիւնեաց եպիսկոպոս ... ամենայն սահմանօք ... և մի ոք իշխեսցէ յետ իմ անցման ... հեռացուցանել զայդ գիւղդ յայդ եկեղեցւոյդ .. և թէ ոչ՝ նզովեալ լիցի յայ, 'ի նը եկեղեցւոյդ և 'ի նը խաչէդ, և 'ի հոգևոր տնէդ անէծս կրեսցէ ||։ Նաև 'ի սկիզբն միւս յետկարին՝ զոր ետ նմին դաւթայ հրահատ իշխան՝ գրի այսպէս. *Ի յերկերիւր իննսուն և երեք Թվականիս հայոց՝ 'ի ժամանակս Սմբատի և հոգևոր տն դաւթի սիւնեաց եպիսկոպոսի, ես հրահատ ||։

Նոյնպէս և 'ի գլ. Խ. առ նորին ստեփ. օրպէլ. 'ի սկիզբն պայմանագրոյ ջևանշէր իշխանին վասն փոփոխութն գեղջ՝ զոր ետ տն սողոմոնի եպիսկոպոսի՝ (որ էր 'ի ժամանակս տն զաքարիայ կաթողիկոսի՝) գրի. *Ի յԹվ. Թվականութես հայոց 'ի ժամանակս Սմբատի և հոգևոր տն Սողոմի (1) սիւնեաց եպիսկոպոսի. կամ եղև ինձ ջևանշերի ... զիմ գեղն մի որ 'ի բաղու գաւառի Արուքս անուն, փոխանակել ընդ Ներդոյ շինին որ 'ի կովսական գաւառի էր, և շէնն ընական նը խաչին, և հոգևոր տերանցն սիւնեաց եպիսկոպոսացն ժառանգութիւն էր լեալ, միմեանց կամաւ և յօժարութեամբ փոխանակեցաք ... Դուռ հոգևոր տէր Սողոմոն, և ով ոք յաջորդի 'ի տեղիդ ձեր և յաթոռդ ... կնքեցաք մերով մատանեաւ և Սմբատի տն ||։

Նաև 'ի միւս պայմանագրի տիկնոջն քուպղէդխաթոյ՝ զոր ետ առ նոյն տէր սողոմոն՝ գրի. *Ես քուպղէդուխտ դուստր վասակայ սիւնեաց տն մերձեցայ 'ի ժամանակս ծերութե ... և վասն զի մարմնաւոր կենացս զրկեալ էի 'ի զաւակէ մանանց՝ զնը խաչդ, և զՍմբատի և զհոգևոր տէր սողոմոն սիւնեաց եպիսկոպոս ինձ հոգեաց զաւակ ստացայ ... և շէն մի Սաձ անուն 'ի բաղաց գաւառի ... ետու ես քուպղէդուխտ ... 'ի նը խաչդ, և 'ի տէր սողոմոն ... ապա եթէ յանդգնի ոք բանս առնել յիմ

(1) Այսպէս էր յօրինակին. ուանին 'ի բաղք գաւառի։ տես և զվերլուծութիւն Արուքս

արարածէդ , և կամեցի խափանել զիմ զտուրսդ , յոյ և 'ի քո խաչէդ դատապարտեալ եղիցի , և 'ի Հոգևոր ան-բանիցն նզովեալ ... Նաև գրեցի յԺԴ. Թվականութեանս Հայոց ... և վասն առաւել Հաստատութեան գրոյս՝ զԱծա-պատիւ և զՀոգևոր տն սաղմոսի սիւնեաց եպիսկոպոսի զվաւերական մատանին 'ի վերայ եդի ‖ :

'Ի վախճան պայմանագրիս յարէ ստեփ. օրպել. * Նաև ապա յետ բազում և մեծամեծ վաստակոց ընդ զկէտ կե-նաց իւրոց ... տէր սաղմոս փոխեալ յաստեացս , ( և ) յաջորդի 'ի տեղին Հոգևոր և Ածապատիւ արքայաշնորհ եպիսկոպոսն տէր յովհաննէս ‖ : Նոյնպէս նա ինքն օր-պել. 'ի գլ. ծը. գրէ. * Զածապատիւ և 'ի Հոգևոր տն յովակիմայ սիւնեաց եպիսկոպոսի յիշատակի ‖ :

Զայս պատուանուն 'ի գործ ածէ և գրիգոր մագիս-տրոս 'ի Թուղթն ժը. առ յովհաննէս արքեպիսկոպոս սիւ-նեաց. * Զածապատիւ Հոգևոր տնդ , և զիմոյ լուսա-ւորիդ յովաննու՝ զմաքուր և զածանէրկ մանկացու աջոյդ վերծանեալ զտառ ‖ :

Իսկ ինքեանք եպիսկոպոսունք սիւնեաց այսպէս կոչէին զանձինս. * ( Ես յս անուն ) շնորհօքն , կամ շնորհիւն այ սիւնեաց եպիսկոպոս ‖ , որպէս յայտ է 'ի պայմանագրէն դաւթի եպիսկոպոսի առ տէր փիլիպէ իշխան սիւնեաց՝ որոյ սկիզբն է. * Ես տէր դաւիթ շնորհօքն այ սիւնեաց եպիսկոպոս ‖ : Նաև 'ի յիշատակագրէ ինչ տն սաղմոսի՝ որ սկսանի. * Շնորհիւն այ այս իմ ձեռին գիր է՝ Տն սաղմոսի սիւնեաց եպիսկոպոսի ‖ :

Տեղի եպիսկոպոսարանին սիւնեաց՝ թէպէտ յառաջ ժամանակաւ ոչ էր որոշեալ ուրեք , այլ յետոյ եղև Հրո-չակաւոր մենաստանն եւստաթէի՝ զորմէ այսպէս գրէ ստեփ. օրպել. 'ի գլ. լԹ. * Նախ և առաջին էր ( ասէ ) սահման եպիսկոպոսաց բնակել 'ի քաղաքս և 'ի շինամէջս. զի Հովուին պարտ է 'ի մէջ Հօտիցն լինել , և ոչ յանկեան ուրեք կայանալ ... իսկ յետոյ ըստ նախերտ բարուց ոմանց՝ որպէս թէ ճգնազգեացք և անապատասէր գոլով ... պատշաճ Համարեցան բնակել 'ի վանս և 'ի պատշաճաւոր ժամու ելանել առ Հօտն և խրատել. որպէս և մերոյ աշ-խարհիս եպիսկոպոսք սիսականս գրոհի , որք յառաջ ժա-մանակօք շրջէին 'ի գաւառաց 'ի մէջ , և 'ի տունս իշխա-նաց ... և գահ արկեալ էր նոցա 'ի սիւնիս (1). իսկ յե-

(1) Նա Թերևս 'ի Ծղուկք գաւառ սիւնեաց. զի 'ի գլ. Փ. կոչէ

տոյ .. գտեալ զայս տեղի (եւստաթէի, կամ տաթեւոյ) յոյժ պատշաճաւոր և 'ի ճահ ... եկին և բնակեցան ատէն||: Նաև սուզ ինչ զկնի. *Նաև արդ՝ խնդրեալ յիշխանացն եպիսկոպոսացն սիւնեաց զտեղիս զայս՝ եկին և բնակեցան 'ի սմա||:

Այլ թէ ո՞ էր յեպիսկոպոսաց՝ որ զառաջինն սկսաւ անդէն բնականալ՝ *Ոչ ծանեայ (ասէ օրպէլ.) միայն տ͞ն գէորգայ (որ է 'ի Թ. դարուն եպիսկոպոս սիւնեաց՝) և այսր գտանի նշան և կայ 'ի ծանօթ ամենայն որպիսութեանց նոցա. այլ զառաջինն ոչ գիտեմ(1), զի ոչ գոյր յիշատակ ինչ. բայց գիտեմ՝ զի բազում ժամանակօք բնակեալ էին անդ||:

Առ ժամանակօք տ͞ն դաւթի, և սողոմոնի սիւնեաց եպիսկոպոսաց՝ ոյք յաջորդեցին զկնի տ͞ն գէորգայ, ամենք յիշխանացն սիւնեաց ետուն այսր վանաց 'ի յիշատակ հոգւոց իւրեանց բազում կալուածս, և ինչ ինչ յաւելու յայնս 'ի սեպհական արդեանց նոցին իսկ եպիսկոպոսաց տ͞ն դաւթի և սողոմոնի:

Իսկ ընտրութի եպիսկոպոսացն սիւնեաց՝ ոչ միշտ եղև միօրինակ. զի առաջին առաջնորդք սիւնեաց գրեթէ լինէին ընտրութ͞բ կաթուղիկոսին 'ի խնդրել իշխանացն սիւնեաց նոր առաջնորդս փոխանակ վախճանելոյն, (որպէս ուսանիմք 'ի պատմութեց անտի ստեփ. օրպէլ.) իսկ միջին և վերջին դարու եպիսկոպոսքն ընտրէին յիշխանացն և 'ի ժողովրդենէն, և ձեռնադրէին 'ի կաթուղիկոսէն. օրինակի վասն բերցուք զայս բան օրպէլեանին որ 'ի գլ. խ͞ա. յընտրութի Գ. յովհաննու եպիսկոպոսի սիւնեաց. *Հասեալ վախճան առաքինոյն սողոմոնի, և ժողովեալ տերանցն սիւնեաց, և ամենայն ազատաց նոցա, և վանաց երիցունք աշխարհիս, նաև աւագ տանուտէրք ըստ գաւառաց, և ամփոփեալ զօր մարմինն եպիսկոպոսին, առնեն ընտրութի նորոգ հայրապետի. և ամենայն ժողովոյն զաղաղակ հարեալ զյովհաննէս փակակալն խնդրէին ինքեանց առաջնորդ, ընդ որ հաճեալ բազմու-

զծովուկս, Բուն գահ Իշխանացն, և հայրապետացն:

(1) Թէպէտ նոյն ինքն ստեփաննոս օրպէլ. 'ի գլ. լէ. գրէ վասն գաւթի յաջորդին գէորգայ. "Սա էր ... որ հաստատեաց զաթոռ եպիսկոպոսութե 'ի տաթևոյ վանս, և ընդարձակեաց զսահմանս նորուն||: Այլ զայս պարտ է իմանալ, ոչ զի զառաջինն դաւիթ բնակեցաւ անդ, այլ ստացմամբ կալուածոց, և նորին իսկ տեղւոյ վանացն տաթևոյ՝ հաստատեաց անդէն զբնակութի եպիսկոպոսացն սիւնեաց:

թէ՝ յուղարկեն զնա մեծապատիւ փառօք առ կաթողիկոսն Հայոց տէր գէորգ, և ձեռնադրեալ դառնայ մեծաշուք պատուով||: Նոյն է տեսանել և յընտրութե առրին սահմաննոսի օրպելեան:

'Ի վախճան ներածութե նահանգիս սիւնեաց՝ պատշաճ համարիմք դնել համառօտիւ և զկարգ եպիսկոպոսացն սիւնեաց՝ առեալ 'ի գրոց օրպելեանին, և յայլ յիշատակարանաց, եդեալ առընթեր և զամն յորս կացին եպիսկոպոս:

| | |
|---|---|
| 1. Գրիգորիս, կմ Գրիգոր ա. ամն խզ: | Ձեռնադրեալ 'ի լուսաւորչէն: |
| 2. Մաշտոց. ամն խնչ: | Ձեռնադրեալ 'ի սբյ մեծէն Ներսիսէ: |

Մինչև պարապոյ ժամն և հինգ ամաց:

| | |
|---|---|
| 3. Անանիա ա. ամն խջ: (1) | Ձեռնադրեալ 'ի նորին սահակայ: |
| 4. Նուն. ամն ը: | |
| 5. Գաղատ. ամն ժե: | |
| 6. Մուշէ. ամն լզ: | |
| 7. Երիցակ. ամ մի: | |
| 8. Սակար. ամն իը: | |
| 9. Պետրոս քերթող. ամն Ճ: | Ձեռնադրեալ 'ի Է. ներսիսէ կաթողիկոսէ աշտարակեցւոյ: |
| 10. Գիգան. ամն Է: | |
| 11. Արթանէս. ամն իզ: | |
| 12. Գրիգոր Բ. ամն ժե: | Ձեռնադրեն յաղուանս: |
| 13. Քրիստափոր. ամն Ճ: (2) | Նոյնպէս յաղուանս ձեռնադրեալ: |
| 14. Գաւիթ ա. ամն իէ: | Ձեռնադրեն յաբրահամ կաթուղիկոսէ: |
| 15. Սաթուսաղայ քերթող. ամն ժը: | Ձեռնադրեալ յեզր կաթուղիկոսէ: |

(1) Զսա բաղումք 'ի մերոց մատենագրաց յիշատակեն, և առ ղաղարայ փարպեցւոյ 'ի ժողովն արտաշատու անմիջապէս կարգի զնի կաթուղիկոսին՝ նախ քան զայլ եպիսկոպոսունս:

(2) Սա առաջինկայ գտաւ ժողովյն ընտրութե ա. աբրահամ կաթողիկոսի:

Օձնի մանրատառային միջոց պարապոյ ունի ամաց :

16. Աբրահամ. ամս Ի:
17. Յովսէփ Ա. ամս ԺԹ:
18. Յոհան Ա. ամս ԻԲ:
19. Մովսէս ամս Է: (1)
20. Անանիա Բ. ամս Է:
21. Յոհան Բ. ամս Թ:
22. Ստեփաննոս Ա. ամ մի : (2) — Ձեռնադրեալ 'ի Դաւթայ կաթուղիկոսէ :
23. Յովսէփ Բ. ամս ԺԵ:
24. Յովակիմ. ամս ԺԵ:
25. Սադովկ. ամս ԼԲ: (3)
26. Յովհաննէս Ա. ամս Բ:
27. Սողոմոն Ա. ամս Է:
28. Եղիա. ամս Ը:
29. Թէոդորոս. ամս ԺԵ:
30. Գէորգ. ամս Ը:
31. Դաւիթ Բ. ամս ԺԵ:
32. Յովհաննէս Բ. ամս Գ:
33. Սողոմոն Բ. ամս ԺԵ: — Ձեռնադրեալ 'ի Զաքարիայ կաթուղիկոսէ :
34. Յովհաննէս Գ. ամս ԼԲ: — Ձեռնադրեալ 'ի Բ. Գէորգայ կաթուղիկոսէ :
35. Յակոբ (Հերձուածող) :
36. Վահան առաջին Արքեպիսկոպոս : — Ձեռնադրէ յԱնանիայ կաթուղիկոսէ Մոկացւոյ :

Մինչև ցայս վայր կարգաւ եդաք զեպիսկոպոսունս Սիւնեաց. այլ քանզի 'ի մեր օրինակն գրոց Օրպէլեանն պակասի ԾԴ. գլուխն՝ որոյ վերնագիրն է. *Եպիսկոպոսք Սիւնեաց՝ որ կարգեցան զկնի Տէր Վահանայ‖. վասն որոյ չունիմք առ ժամս յիշել զանուանս նոցա յայսմ կարգի ,

(1) Սա է վարդապետ մեծին Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի :

(2) Ըստ այլոց՝ ամս Բ. Սա է երեւելին Ստեփաննոս քերթող ծաղկեալ գրչութեամբ և թարգմանութեամբ. սպանաւ 'ի պոռնիկ կնոջէ՝ վասն յանդիմանելոյն զնա Ստեփաննոսի :

(3) Գտաւ 'ի ժողովն պարտաւայ առ Սիոն կաթողիկոսիւ , որ յիշատակի և 'ի կանոնագիրս :

այլ միայն զնոցա անուանս որք յիշատակին 'ի հետևեալ գլուխս նոյն գրոց, և կամ յայլ գիրս. որք և են,

Յովաննէս: (1)

Գրիգոր: — Վախճանեալ 'ի չհէ. թուին հայոց:

Ստեփաննոս: (2)

Յոհաննէս:

Հայրապետ:

Սողոմոն:

Յոհաննէս:

Ստեփաննոս օրպէլեան: (3) — Ձեռնադրեալ 'ի բ. կոստանդեայ կաթողիկոսէ:

Յովհաննէս օրպէլ: (4)

Յիշատակի 'ի գիրս և առ Թովմայի մեծոփեցւոյ՝ Մատաքէլ, կամ Մատաքեալ Արքեպիսկոպոս սիւնեաց տաղասաց (5): Իսկ առ ժամանակօք ժողովոյն էջմիածնայ՝ որ գումարեցաւ յընտրութիւն կիրակոսի առաջին կաթողիկոսի էջմիածնայ՝ յիշատակի առ Թովմայի մեծոփեցւոյ՝ տեղապահ աթոռոյն սիւնեաց՝ Տէր Ստեփաննոս: Նայց առաջնորդ ստաթէի վանաց էր 'ի ժամանակին Շմաւոն եպիսկոպոս, որ յիշատակի և 'ի մուրհակն տանուտեարց երկրին գեղարքունւոյ՝ որ գրեալ կայ 'ի վախճան յուցակի գլխոց պատմագրութեան ստեփաննոսի օրպէլեան, որև նաև զայս. * Ի վական ջկը. էր՝ մեք գեղարքունոյ մելիք տանուտէրքս եկաք 'ի տր աթոռ ստաթէի սիւնեաց ծժն գաւառի, ևս առաւել երկրին մեր գեղամայ... յուխտ և դաշինք դրինք դրան տր առաքելոցս, և առաջի եպիսկոպոսացս Շմաւոն եպիսկոպոսի, և տէր Ստեփաննոսի, և Մարտիրոս փակակալի, և տէր Ղուկաս հայրապետին, և այլ միաբանիցս մեծի և փոքու. ամէն ||:

(1) Առ սա գրեաց բազում թուղթս գրիգոր մագիստրոս:

(2) Գտաւ 'ի ժողովն հռոմկլայու, ստորագրեալ զանուն իւր 'ի կարգ Արքեպիսկոպոսաց:

(3) Զսա բազումք իբր առասաբար անուամբ Մետրապօլիտ կոչեն, Թերևս վասն գրով ծանուցանելոյ զմետրապօլտութիւն աթոռոյն սիւնեաց. այլ ժամանակակիցք նորա, յորոց մի է և երևելի վարդապետն եսայի՝ գրէ առ նա և կոչէ՝ Արքեպիսկոպոս:

(4) Սա միանգամայն էր և իշխան աշխարհական, որոյ կան և գրուածք ինչ, որպէս և թուղթ մի առ զաքարիա ծործորեցի արքեպիսկոպոս արտազու:

(5) Կան և սորա գրուածք պէսպէս արձակ և ոտանաւոր:

Գաւառք սիւնեաց են ժբ։

ա․ Երնջակ․
բ․ Ճահուկ․
գ․ Վայոց ձոր․
դ․ Գեղարքունի․
ե․ Սոդք․
զ․ Աղահեճք․
է․ Ծղուկք․
ը․ Հաբանդ․
թ․ Բաղք․
ժ․ Ձորք․
ժա․ Արեւիք․
ժբ․ Կովսական․

Ըստ այսմ կարգի թուէ խորենացին, այլ տարբերի եփաննոս օրպէլ․ զոր և նշանակեսցուք յիւրաքանչիւր հմանս գաւառաց ։

ԵՐՆՋԱԿ (1)։

Առաջին դասէ զսա խորենացին 'ի կարգս գաւառաց նեաց․ իսկ ստեփաննոս օրպէլ դնէ մետասաներորդ ։ նկալաւ զանուն իւր 'ի համանուն բերդէն․ իսկ բերդն շինողէն իւրմէ 'ի տիկնոջէն սիւնեաց․ * Մի ոմն (ասէ եփ․ օրպէլ․ գլ․ գ․ ) 'ի կանանց նոյն նահապետացն ւնեաց) Երնջիկ անուն՝ շինէ և զանհնարին ամուրն րնջակայ, և յիւր անուն բերդն և գաւառն կոչի Երն-ակայ ||։

Ամնչափ էր ամրութիւն բերդիս՝ մինչև 'ի նմա հաստա-էլ զգանձարանն ըստ ասից նորուն․ * Դնեն 'ի նմա ուն գանձու և հարկաց աշխարհին ||։ Այլուր 'ի գլ․ լը․ չէ Ընաւէլ․ * Գայ 'ի մարտ ընդ Ընաւէիկ ամրոցին րնջակու՝ յորում կային պատուական տիկնայքն սիւ-աց ||։ Վասն որոյ և յուսուփ ոստիկանն 'ի վախճան Ժ․ րուն ոչ կարաց առնուլ 'ի բազում աւուրս խստագոյն րտիւ պատերազմելով, բայց եթէ գաղտնի հնարիւք, ա գրելով յոհաննու կաթուղիկոսի․ * Նայց ոստիկանն ոքէն արձանացեալ, և մարտ զամրոցաւն Երնջակաւ եալ՝ ոչ հեռանայր անտի, մինչև գաղտաբար յինքն ռեալ յափշտակեր զամրոցն ||։ Իսկ թէ զինչ էր գաղտ- հնարքն՝ յայտ առնէ ստեփ․ օրպէլ․ 'ի գլ․ լէ․ Ի գիշերի գողութեամբ էառ զբերդն անձաւամուտ և քա-

(1) Այսպէս գրի 'ի տպ․ և առ ստեփ․ օրպէլ։ Ուստի վրի-մունմ ձեռ․ աշխարհագր․ խոր․ պակաւ գրի յերկուս ձեռագիրս պէս նաև առ յովհ․ կաթ․ և Երնջակ։

բագնաց արամբք, որք երկաթի Ճանկօք ընդ ժայռս դըժուար վախից արուեստակեալ ընթանան ‖ :

Յետ գրաւելոյ յուսփայ ետ հագարացւոյ ումեմն՝ որ տիրէր միանգամայն և գողթան, յոյր սակս մեծ պատերազմ մղեաց ընդդէմ նորա սմբատ սխսական. * Խնդրէին (տե՛ս յովհ. կաթ. վասն սմբատայ և երից եղբարց իւրոց) առ 'ի նմանէն յինքեանս դարձուցանել զսեպհական իւրեանց ամրոցն Երնջակ, և զառաստորոտով նորա զգաւառն, զոր յուսփայ ոստիկանին առեալ՝ տուեալ էր 'ի ձեռս գողթան բռնակալին ‖ :

'Ի բանից աստի յոհաննու կաթուղիկոսի՝ որ զգաւառն դնէ առ ստորոտով բերդին երնջակայ, յայտ է թէ՝ այս բերդ էր 'ի վերայ լերին՝ որպէս է և այժմ, որ կոչի Ալնճա ղալէսի. (1) յայտ է և՝ թէ էր սահմանակից գողթան գաւառին. վասն այնորիկ ստեփաննոս օրպէլ. զգողթն միանգամայն ընդ Երնջակայ կացուցանէ մի գաւառ. և կոչէ զգողթն դնէ սահմանակից սիւնեաց :

'Ի ժԲ. դարու էլիկում նախահայր հայազգի օրբելեանց տիրեաց Երնջակայ բերդին, որպէս գրի 'ի պատմութե օրբէլեանց գլ. Է. թղթ. 25 :

'Ի ժԳ. դարուն յարձակեցաւ 'ի վերայ Երնջակայ և թագաւորն ազախաց թաթարու, զորմէ թովմա մեծոփեցի ժամանակակից գրէ. * Զուեալ եկն 'ի յերկիրն սիւնեաց 'ի վերայ դղեկին Երնջակու :

Յիշատակի յայսմաւուրս 'ի 21. հոկտեմբերի և Վանք երնջակոյ ընդ հովանեաւ սրբյն գէորգեայ, ուր թաղեցաւ վարդապետն մաղաքիա ղրիմեցի :

Ապրակունի : Գիւղ՝ յերնջակ գաւառի՝ որ յիշատակի 'ի ժԳ. դարու 'ի պատմական յիշատակարանս ինչ (2) : Յիշատակէ մխիթար այպարանցի և զՎանքն Ապրակունեաց՝ յասելն. * 'Ի գաւառն յԵրնջակոյ 'ի վերի վանքն Ապրակունեաց՝ ունի քաջ վարդապետ.. որ կոչիւր սարգիս ‖ : Յիշէ զնոյն վանս յերկրին երնջակու և թովմա մեծոփեցի :

(1) Տե՛ս 'ի նոր հայաստան թղթ. 268 :

(2) Տե՛ս 'ի նոր հայ. թղթ. 267 :

## ՃԱՀՈՒԿ (1)։

Այս գաւառ երկոտասաներորդ դասի առ ստեփ. օրպէլ. 'ի գլ. Է. * Երկոտասաներորդ (գաւառ ունի սիւնիք) Ճահուկ գաւառ, որ և Ձորն՝ որ Շահապունս կոչեն||։

Շահապունեաց Բերդ։ Գրէ զայսմանէ ստեփաննոս օրպէլ գլ. Է. * Ի Շահապունս պարսկէ շինեալ, և զՁորն յիւր անուն (կոչէ) Շահապունեաց ձոր, որ հատուածի պատճառաւ եկեալ էր առ նահապետքն սիւնի||։

## ՎԱՅՈՑ ՁՈՐ, կամ ՎԱՅՈՑ ՁՈՐ (2)։

Զպատճառ անուանակոչութեան այսր գաւառի՝ այսպէս բերէ ստեփաննոս օրպէլ. 'ի գլ. ԼԷ. իբր զի յետ մահուան ստեփաննոսի ԻԸ. եպիսկոպոսի սիւնեաց, զաւուրս Խ. խաւար պատեաց զգաւառն ամենայն, և եղև երկրաշարժութիւն սաստիկ. * Ամենայն տեղիք (ասէ) երերէր տատանմամբ, և ձայնք մարդկեղէն բարբառոյ լսելի լինէին 'ի ներքուստ յանդնդոց, և 'ի վերուստ յօդոց՝ Վա՜յ ձոր, Վա՜յ ձոր. և կենդանոյն ընկղմեցան ոգիք իբրև ԺՌ. զորս գիտէին, և 'ի Թիւ արկին, և յանծանօթիցն ոչ ոք գիտէր զհամարն. յաղագս որոյ Վայոց ձոր կոչեցաւ անուն գաւառին||։ Զսոյն զայս դնէ պատճառ և կիրակոս պատմագիր. և արդարև նոյն իսկ անուանն յայտ առնէ՝ թէ սակս ողբալի անցից ինչ կոչեցաւ այսպէս. բայց վրիպակ է ժամանակագրութեան դնել զայն յետ մահուան ստեփաննոսի եպիսկոպոսի՝ որ էր 'ի Ը. դարուն. զի սովին անուամբ յիշեն զայս գաւառ խորենացին, եղիշէ, և ղազար՝ որ էին 'ի Ե. դարուն՝ բազմօք յառաջ քան զստեփաննոս։

(1) Այսպէս գրի յերիս ձեռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն. որպէս և առ Թովմ. կիլիկ. և առ ստեփ. օրպէլ. Իսկ 'ի տպ. աշխարհագր. խոր. վրիպակաւ գրի Ջահուկ։

(2) Այսպէս գրի 'ի տպ. աշխարհագր. խորեն. և յերկուս ձեռ". Իսկ 'ի միում ձեռ". և առ ստեփ. օրպէլ. ամենայն ուրեք գրի Վայոց ձոր. որպէս նաև յերկուս ձեռ" պատմ. խոր. Գ. 67. առ ղազարայ, առ Թովմայի կիլիկեցւոյ. և առ վարդանայ աշխարհագրի։

Այս գաւառ կոչի և Եղեգեաց ձոր, որպէս գնէ Վարդան աշխարհագիր, յասելն. * Վայոց ձոր՝ Եղեգիս ձորն է, ուր կայ կենսաբեր սբ նշանն ||: Յայտ է և 'ի բանից Ստեփաննոսի Օրբէլեան, որ զմահն Ստեփաննոսի սիւնեաց եպիսկոպոսի գնէ լինել յԵղեգեաց ձորն, կամ որպէս նա ինքն կոչէ՝ 'ի Ձորն Եղեգեաց, և ապա ասէ թէ նոյն գաւառ ուր մեռաւ՝ կոչեցաւ Վայոց ձոր:

Հողոցիմ: Առ Ղազարայ գրի՝ Խոռոցիմ, և յերկուս ձեռագիրս Խորենացւոյն Գ. 67. Խոռոցիմ. ուր 'ի տպ. վրիպակաւ գրի՝ Հողոց: Ամենեքին գնեն զայս գիւղ յայսմ գաւառի, ընդ որս և յոհաննէս կաթուղիկոս՝ յասելն վասն նոյն յովսեփայ կաթուղիկոսի, որ ընդ ղևոնդեանս նահատակեցաւ. * Իսկ զաթոռ եպիսկոպոսապետութեան տեղապահութեամբ յաջորդեաց յովսէփ քահանայ 'ի Վայոց ձորոյ 'ի Հողոցիմ գեղջէ ||: Նոյն ասողիկ վասն նորին յովսեփայ գրէ. * 'Ի գաւառէն Վայոց ձորոյ 'ի գեղջէն Հողոցիմաց (1) ||: Առ եղիշէի Ը. Թղթ. 181. այլուք տառիւք գրի յասելն: Սբն յովսէփ 'ի Վայոց ձորոյ, 'ի գեղջէ Հողոցմանց ||:

Եղեգիս: Գիւղաքաղաք՝ զորմէ Ստեփաննոս Օրբէլ. 'ի Գլ. ԼԸ. * Իսկ մեծ և ամենիմաստն Սմբատ 'ի սեփական գաւառին իւրում դարեալ դադարեալ նստէր 'ի Վայոց ձոր ... ամրացուցեալ զտունն իւր, և զամենայն գաւառն յամուրն Վայոց ձորոյ ... շուրջ զիւրեաւ կացուցանէր յիւրում արքունական յապարանսն որ 'ի գիւղաքաղաքն յԵղեգիս ||: Յանուն սորա թուի թէ և բոլոր գաւառն կոչէր՝ Եղեգեաց ձոր:

'Ի ժամանակս Լանկթամուրայ սահման եղեգեաց ունէր իշխան սեփհական յազգէս մերմէ, որպէս վկայէ Թովմա Մեծոփեցի յասելն. * Նաև զտէրն Եղեգեաց Տարսայիճ անուն զորդի գորգին ուրացուցին ||:

Մոզ, կամ Մոզան աւան: Յիշատակի առ Ստեփ. Օրպէլ. 'ի Գլ. ԼԱ. * 'Ի գաւառս բարեբեր 'ի Ձորն Եղեգեաց յաւանն Մոզան: Ընկանի յայս գաւառ, վասն զի ձորն եղեգեաց որպէս ասացաք՝ է նոյն իսկ Վայոց ձոր: Յայսմ աւանի բնակէր կին հերատուկ՝ որ ինքնին սրով սպան զՍտեփաննոս ԻԸ. եպիսկոպոս սիւնեաց, սակս պատուհա-

(1) Վարդան այլազգ հոլովէ յասելն վասն նոյն յովսեփայ կաթողիկոսի. * Յովսէփ աշակերտ Մեսրոպայ 'ի Վայոց ձորէ 'ի գեղջէ Հողոցմանց ||: Սոյնպէս գրի և 'ի Ճառընտրի քանիւ եղիշէի:

նելոյն զնա վասն չար գործոց իւրոց ։ Կիրակոս կոչէ զսա Մոչի Գառառ՝ յասելն վասն նորին ստեփաննոսի ․ * Սպա-նեալ եղև ՚ի պոռնիկ կանանց ՚ի Մոզն գաւառի ․․․ և առհա խաւար կալաւ զՄոզան սահմանն, և զաւուրս ՚ի շարժեցաւ տեղն ․․․ վասն այն Մ՝ոյռ ձոր անուանեցաւ մինչև ցայսօր ժամանակի ‖ ։

Մ՝երձ յայս աւանն կամ ՚ի գիւղ՝ էր Աղօթոցն անուա-նեալ ակն քաղցրահամ աղբեր, ուրանօր սպանաւ նոյն ստեփաննոս ՚ի կնոջէն ։

Արկազան ։ Գիւղ՝ զորմէ գրէ ստեփ․ օրպէլ․ գլ․ լա․ * Զոր լուեալ Արկազան գիւղն տերամբ իւրեանց ելին ընդառաջ, և հաւանեցուցին զսպասաւորսն հանգուցեալ ՚ի սենեակն՝ որ յանուն սրբոյն քրիստափորի անյաղթ զօրա-վարին շինեալ էր ․ զոր տարեալ (այսինքն զմարմին ստե-փաննոսի օրհնեցւոյ) անդ հանգուցին ՚ի սենեկին ‖ ։ ՚Ի պատմուէ նորին ստեփ․ օրպէլ․ քաջայայտ երևի լինել յայսմ վայոց ձոր գաւառի ։

Առ կիրակոսի այլազգ գրի սորայս անուն, և կոչի գա-ւառ, ուր ասի վասն նորին ստեփ․ * Զորոյ զմարմինն առեալ բերին ՚ի Կաշեան գաւառի ‖ ։

Փողահան ։ Յիշատակի ՚ի տպ․ պատմ․ օրպէլեանց ․ ՚ի գլ․ է․ * Նաև (սմբատ օրպէլեան) և զեղեգիս, և զա-մենայն գաւառն Վայոց ձորոյ, զՓողահանն, զՄործ (1) (թերևս զՄոյծ), և զՄեղէ իւր ձորովն՝ մինչև յԱմբերդն և ՚ի կոտայսն, և մինչև ՚ի Գեղարքունի ‖ ։

Հրաշքաբերդ ։ Այսպէս գրի ՚ի պատմուէ օրպէլեանց ․ իսկ առ ստեփ․ օրպէլ․ ՚ի գլ․ կզ․ ուրեք ուրեք գրի այս-պէս ․ ըստ այնմ․ * Բայց յետոյ Հրաշկաբերդն շինեցաւ և բնակեցան ՚ի նմա պարսիկք, զորս և վերստին առին յաւուրս աթաբակ իւանէին ‖ ։ Իսկ ուրեք գրի Հրաշկա-բերդ, այլուր՝ Բերդ հրասեկայ․ * Նեղեալ (ասէ) յանկ-ծեալ և ՚ի պինդ բերդապահէն Հրասեկայ ‖ ։ Ուրեք ևս գրի Հրաշկան բերդ, որ է վրիպակ ։ ՚Ի գլ․ կզ․ ցուցանէ ստեփ․ օրպէլ․ թէ սակս ՚ի հրասեկայ ումեմնէ շինեալ դղեա՝ կոչեցաւ Բերդ հրասեկայ, կամ համառօտելով Հրասկաբերդ, այլ անուն բերդին կոչէր Կապոյտ, զոր չէ պարտ շփոթել ընդ կապոյտ բերդին՝ որ յերասխաձոր ։ * Իսկ ՚ի վայոց ձոր (է) Կապոյտք բերդք ՚ի Հրասեկայ շինեալ՝ անհնարին ամրութե անմատեղծ պարսպօք ամ-

(1) Տես յանծանօթս մեծին հայոց զԿալուածս իշխանացն Օրբոյ ։

33

բացեալ ։ Ի վայրս ձոր գաւառի դնէ նաև 'ի գլ. կդ. զի ասէ լինել մերձ Նորավանից՝ որ էր 'ի վայրոց ձոր ։

Սուլէմանէբերդ ։ Ստեփ. օրպել. 'ի գլ. դ. զկնի վերագրեալ բերդի յիշէ և զայս, դասելով ընդ ամուր բերդս սիւնեաց, որ էր շինեալ 'ի Սուլէման թագաւորէն, որպէս դրէ անունն ։

Նորավանս. կոչի նաև՝ Խորաձոր անապատ. * Նա միւս իշխանն համտուն անուն (ասէ օրպէլեանն գլ. կա.) որ էր որդի մեծ իշխանին բաղաց հասանայ (զուցէ՝ հասանայ), և Թոռն աւագ համտունայ՝ գնաց 'ի վայրս ձոր առ փառաւորեալ եղբայրն իւր տէր յովհաննէս՝ որ բնակէր 'ի Խորաձոր անապատին՝ որ Նորավանս կոչի, մերձ հրաշակերտ բերդոյն, և անդ կրօնաւորեալ 'ի նմին վախճանի 'ի շձ. Թվականին ։ Մի է սա 'ի հռչակաւոր մենաստանաց սիւնեաց՝ որ 'ի խորագիրն կդ. գլխոյ պատմութե օրպէլեանն կոչի՝ Գեբրահաւշան և աշխարհադէպ խմբարան ։

Զգիրս սորա այսպէս ստորագրէ ստեփ. օրպէլ. անդէն. * Յառաջ քան զայս (ասէ) բազում ժամանակօք, վաղ աւուրբք, և հնագոյն ամօք 'ի նեղ և յանձուկ ձորակին այնմ 'ի պատշաճաւոր տեղւոջ՝ էր շինեալ եկեղեցի մի կրաշաղախ վիմօք յանուն Սրբոյ կարապետին, յոյժ զրանչելագործ և ահարկու և անուանի մերձակայ սահմանացն. և բղխէր մերձ նմին աղբիւր քաղցրահամ, և ձորն ամենայն գեղեցկացեալ էր այգովք և Թանձրախիտ ծառովք մրգաբերօք ։ Նաև 'ի Թանձրամած կաչկառուտին 'ի նոյն ձորին կայր եկեղեցի մի յանուն Սրբոյ հայրապետին փոքրասու շինեալ, և 'ի մէջ եկեղեցւոյ բղխէր ջուր սակաւ 'ի ներքոյ բեմին ։

Յետ ժամանակաց իբրև ամայացաւ՝ նորոգեաց զնոյն յովհաննէս ամն եպիսկոպոս. * Սա 'ի նուազիլ ժամանակաց (ասէ օրպէլեանն) մինչ եհաս աւեր ամենայն աշխարհի, և բարձաւ Թագաւորութի բաղաց, և սպանաւ Թագաւորն սենեքարիմ, և ընաջինջ եղև տէրութիւն բաղաց, և խափանեալ լռեցին ամենայն ուխտք պաշտօնէից, 'ի շծգ. Թվականին (յամին 1104.) էր եպիսկոպոս ամն 'ի վանսն յոհաննու յովհաննէս անուն՝ լցեալ ամենայն առաքինութե և բոլորովին զգեցեալ զքս, յազգէ ազնուականն՝ որդի մեծափառ իշխանին բաղաց հասանայ (Թուի՝ հասանայ), որ ունէր ընդ ձեռամբ զամենայն ազատս Թագաւորութեն այնմ, և էր որդի մեծին համտունայ. այս յովհաննէս յետ աւերման իւրոյ աշխարհին՝ բա-

ղում ալեկոծեալ այր և անդր, եկն 'ի վայոց ձոր գաւառ, և կամեցաւ բնակել 'ի խորաձոր անապատին Նորավանից՝ մերձ անառիկ դղեկին Հրասկաբերդոյն, առհիազօր և մեծագունից եկեղեցւոյն 'ոյ կարապետին ||:

Խողովեաց անդէն կրօնաւորս, և եհան զաշխարհականս հրովարտակաւն զոր էառ 'ի մահմետ սուլտանէն պարսից. շուրջ զսահմանաւն կանգնեաց խաչ, զի մի անցանիցեն ընդ այն կանոնք և լկտի մարդիկ. էառ 'ի սահմանացն զանձակեցեաց և 'ի տեարբերքեաց անդաստանս 'ի ժառանգութիւն եկեղեցւոյն. և այլով հրովարտակով էառ և զհրաշկաբերդն, և զերկոտասան ագարակս (1):

Ի մէջն անդ ժգ. դարուն սմբատ օրպէլեան զարդարեաց զայս մենարան, որպէս գրէ պատմիչն օրբէլեանց 'ի գլ. Է. * Շինեաց (սմբատ) զհրաշակերտ ժամատուն 'ի Նորավանս 'ի վերայ գերեզմանաց իւրոց, և արար բազում արդիւնս, և փարթամացոյց զնա, և զարդարեաց զեկեղեցին, և ետ զգեօղս և զայգեստանս || (2): Եւ որպէս ակնարկէ նոյն պատմիչ 'ի նոյն գլ. տարսայիճ եղբայր սմբատայ աստ 'ի Նորավանս շինեաց եկեղեցի յանուն 'ոյն գրիգորի, և տուն տապանի վասն սմբատայ, և անդր փոխեաց զմարմին նորա:

Յայսմ մենաստանի էր և գերեզմանատուն զարմին օրպէլեանց՝ որպէս յայտ առնէ պատմիչն օրպէլեանց՝ 'ի գլ. Ը. յասելն վասն մարմնոյ սմբատայ օրպէլեան. * Տարեալ 'ի հայրենի դամբարանն 'որ ուխտին Նորավանից, և աշխարհախումբ հանդիսիւ եդին 'ի տապանի ընդ հարս իւր ||: Որպէս և յառաջ 'ի գլ. Ե. գրէ՝ թէ անդ թաղե-

(1) 'Ի կԸ. գլ. օրպէլ. երկուս Նորավանս դնէ 'ի կողմանս Վայոց ձորոյ. և ասէ վասն միոյն՝ թէ յետոյ եղև Եպիսկոպոսարան, որ է սոյն այս Նորավանք՝ զոր ստորագրեցաք. որոյ և Եպիսկոպոս Սարգիս անուն յիշատակի 'ի պատմ. օրպէլեանց 'ի գլ. Է. յիշատակի և այլուր՝ Զաքարիա Եպիսկոպոս. և որպէս ակնարկէ պատմիչն օրպէլեանց՝ այս աթոռ էր Ը Արքեպիսկոպոսական աթոռոյն սիւնեաց: Այլ որպէս թուի՝ վրիպակաւ եդեալ են երկոքին աս Նորավանք մի զինի միոյ 'ի կարգս վանորէից Վայոց ձորոյ. կամ թէ առ 'ի ոչ շփոթել զերկոսին 'ի մի՝ յիշի անդէն միւս Նորավանք. զի այն Նորավանք որ չէր այնչափ ինչ երևելի՝ 'ի ցուցակն անդ խառագրաց իէ. գլխոյն ստեփաննոսի օրպէլ. (որոյ բուն գլուխն պակասի յօրինակի մերում,) դնի * 'ի գաւառին Բղենոյ ||. իսկ Բղեն՝ թուի լինել 'ի բաղաց գաւառի:

(2) Պատմէ վասն այսր և ստեփաննոս օրպէլ. 'ի պատմութեն իւրում գլ. կե. որոյ խորագիրն է. * Վասն շինութեն եկեղեցոյն Նորավանից և հոգեցատուր ժառանգութեանց նորա՝ որ յիշխանացն օրպէլեանց ||: Բայց և այս գլուխ պակասի 'ի մերում օրինակի:

ցուց օրպէլեանն լիպարիտ հայր սմբատայ. * Բներեալ գնի 'ի Նորավանս 'ի դրան 'որ կարապետոյն առ մօր իւրում ‖ ։ Ընդ Թաղեցաւ և տարսաիճ՝ որպէս գնի 'ի գլ. Թ ։

Ցախաց քար ։ Մենաստան՝ որ առ ստեփ. օրպէլ. 'ի գլ. կը. վրիպակաւ գրի Ցաղաց քար, և կոչի՝ Բարձրահայեաց Մեծ անապատանոցն ։ Շինեաց զայս ստեփաննոս վանահայր 'ի մէջն անդ Ժ. դարուն 'ի ժամանակս անանիայ կաթուղիկոսի՝ որպէս գրէ ասողիկ Գ. Դ. * Նաւ Ցախաց քար (վանքն շինեցաւ) 'ի վայոց ձորի, 'ի ձեռն հօր ստեփաննոսի ‖ ։ Իսկ 'ի 1041. վարդիկ վանահայր շինեաց անդէն կրկին եկեղեցիս. * 'Ի ՆԻ. Թվականին (ասէ օրպէլեանն 'ի նոյն կը. գլ.) 'ի Թագաւորութեն գագկայ՝ հայր ոմն վանիցն վարդիկ անուն շինէ ('ի Ցախաց քար) պայծառ եկեղեցի երկու 'ի հանգստարանի առաջին 'որ հարցն. զմին գմբեթայարկ յանուն 'որյ կարապետին, և զմիւսն սաղաւշէն հրաշալի յօրինուածովք ‖ ։ Տարսաիճ օրպէլեան որ 'ի ԺԴ. դարուն՝ շնորհէ այսմ մենարանի գիւղ և այգի. * Նաւ գրէ ինքեան զարձան (ասէ պատմիչն օրպէլեանց) 'ի վերայ 'որյ կարապետին ‖ ։

Թանահատ, կամ Թանահատի վանք (1) ։ Ի մի յերևելի

(1) Նոյն է սա՝ որ 'ի կբ. գլ. ստեփ. օրպէլ. գրի Թանատէի վանք, և գնի 'ի կողմանս վայոյ ձորոյ, զի և 'ի խորագրի լԲ. գլխոյն՝ նոյն Թանահատի վանք գրի Թանատեայ վանք. իսկ 'ի ցուցակին՝ Թանահատեայ վանք, որք են այլայլութիւնք գրչի ։ Այն զի՝ որպէս 'ի կբ. գլ. վասն Թանատէի վանից գրէ, թէ 'ի ՆԺ. * Կայ նշխարք սբյն ստեփաննոսի ‖. նոյնպէս 'ի լա. գլ. 'ի Թանահատի վանս դնէ զնշխարս ստեփաննոսի սիւնեաց եպիսկոպոսի, որպ̄ տեսանի 'ի կարգին ։

Դարձեալ 'ի կբ. գլ. ստեփ. օրպէլ. թէպէտ ստորև 'ի կողմանս վայոյ ձորոյ գնի Թանատէի վանք, որպէս ասացաք, բայց 'ի սկիզբն անդ գլխոյն դնի Թանատէ վանս, զոր ոչ կարծեմ լինել տարբեր 'ի ստորև եդելոյն, այլ յիշէ 'ի սկզբան անդ առ 'ի ցուցանել՝ թէ յետ տաթևոյ 'ի մէջ սիւնեաց՝ այս էր երևելի. և յիշէ դարձեալ ստորև ընդ այլ վանորայս կողման վայոյ ձորոյ՝ առ 'ի ցուցանել ըզգաւառն. զի այսպէս սկսանի զայն կբ. գլ. յորում թուել կամի ըզվանորայս սիւնեաց. * Առաջին գլուխն ամենեցուն վանորէից՝ և աղբիւր շնորհաբաշխութե տանն սիսական՝ Տաթև. և ապա մեծ առաքինարանն՝ Թանատէ վանս Ախանի վանք, որոյ եկեղեցին չքնաղ և նորակերտ ձևով կանգնեալ գմբեթայարդ խորան երկնանման 'ի մեծ բարեպաշտուհւոյն վարագփառոյ սիւնեաց տիկնոջէ յառաջ քան զհայ թվականն յանուն 'որյ լուսաւորչին, և յառաջև վանիցն 'ի մէջ քաղցրահայեաց մէյդանին գնեն իշխանքն տուն արքունի, և պարանք իշխանանիստ. և յամենայն աւուր ասեն գայլն 'ի պատարագին ‖ ։

Զայս մենարան զոր 'ի սկզբան գրոյս յիշէ՝ Մեծ անապատանոցն կոչելով, և զեկեղեցի նորա շինեալ ասելով նախ քան զթվական հայոց՝ յայտնի ցուցանէ լինել նոյն

րէից սիւնեաց, զոր այսպէս ստորագրէ Ստեփ․ Օր-
․ 'ի գլ․ լէ․ * Յայնմ ժամանակի ('ի վախճան Ը․
ուն) պայծառանայր ոչ երկնահրաշ կարգօք գերա-
- և հռչակելի ուխտն Թանահատի վանից` որ կայ 'ի
յ սիւնեաց, յոստորոտ լերինն 'ի բարձրաւանդանի
'ի մէջ անդառին, և էին սաղմոսաւորք մշտապաշ-
ք (1), հեռացեալք յամենայն փափուկ կերակրոց,
ն աստուած հացիւ և լոկ ջրով վճարէին զպէտս իւ-
նց․ և զայն յաւուրն միանգամ ընդ երեկս ։ Լուկք,
աշարժք, որք իբրև զկանթեղունս անշէջս կանխեալք
ին յաղօթս զցայգ և զցերեկ ․․․ և բայց 'ի սպասա-
ցն ընդ դրունս վանիցն ոչ ոք ելանէր արտաքս․
և բազում անգամ հարկեցան (2) յիշխանաց եպիս-
սաց սիւնեաց` ոչ առին յանձն 'ի կլրակէքն 'ի Թանե
'ի պանիր կամ յիւղ խթիլ․ այլ բանջարովք և հրն-
շատանային, վասն որոյ Թանահատք կոչեցան․ և 'ի
ւոր տօնան 'ի ձիթոյ ճաշակէին` և սակաւ բաժակօք․
այս ծանոյց մեզ պատմութի երանելոյն մաշտոցի որ
ւան ։ Բայց գտաք յիւրոց արձանագրութեցն` եթէ
ամաւ յառաջ շինեցաւ եկեղեցին քան զհայ Թվա-
ն (3) յիշխանացն սիւնեաց յանուն 'րյն Նախավկային
փաննոսի ։ Նա էր եղեալ հայր վանիցն որոյ անուն
Թար, որ անցեալ էր ճգնութբ ընդ բոլոր հոյլս առա-
ութեց ‖ ։ Որոյ և մարմինն Թաղեցաւ փայտակերտ
եղօք 'ի գետնափոր վիրապի մերձ յեկեղեցին 'ի փոքր

Թանահատի վանից․ իսկ 'ի
և յիշեալ մենարանին Թա-
տոյ գնելով զնշխարս սուր-
տսի եպիսկոպոսի, նոյնպէս
անէ` թէ է մի և նոյն ։ Նոյն-
այլ և այլ գրութիւնք ոչ հե-
ն յիւրեանց ստուգաբանու-
զի որպէս Թանահատի վանք
ակէ բառ ստեփ․ օրպէլ․ Հա-
ք 'ի Թանէ, նոյնպէս և Թա-
տոյ վանք նշանակէ` Առեցող
․ յոր առաւել մերձենայ
ն Թանապետոյ վանք, որպէս
ու կերակրոյ, յասելն վասն
նոյ ստեփաննոսի ։ * Անուի
ինքն 'ի կաղեան գաւառէ )
անապեաց վանս փոխեցին 'ի
իստ ‖ ։

(1) Իմանոյ զկարգ Անհանգըս-տից վանաց` որք յն''․ կոչին Ակի-միտի, այսինքն Անքունք ։

(2) Յօրինակին գրեալ էր․ * Թէ և բազում անգամ հարկե-ցաքան ‖ ։

(3) Այսպէս գտի և յերկուս ընտիր օրինակս վարդանայ աշ-խարհագրի (որ Թուի առեալ յօր-պէլեանէն), Թէ` Ն․ ամաւ յառաջ շինեալ էր քան զհայոց Թուա-կանն․ այլ Թէ զիարդ հնար իցէ յերկ-րորդ դարուն քրիստոսի նախքան զսբ լուսաւորիչն` իշխանաց սիւ-նեաց շինել զեկեղեցին, այլում տեղւոյ և ժամանակի Թողում քննութն ։

բլրակի միում՝ որ կայր մինչև յաւուրս ստեփաննոսի օրպէլեան։

Ըստ Թաղէացւ և ստեփաննոս Ժը. եպիսկոպոս սիւնեաց, որ ըստ գրելոյ օրպէլեանին 'ի գլ. լը. մեռաւ 'ի ՃՁԴ (735). * փոխեն (ասէ) զնշխարս նըյն (այսինքն եպիսկոպոսին ստեփաննոսի) 'ի միաբանակեաց վանսն Թանահատի վանից՝ որք էին մշտապաշտօնք, հեռացեալք յամենայն փափուկ կերակրոց, վասն որոյ և Թանայհատ կոչեցան. և շինեալ 'ի վերայ փոքրիկ մատուռ մի՝ զոր յետոյ չիթ. Թվականին շինեցին բնակիչք տեղւոյն եկեղեցի գմբեթայարկ գեղեցիկ յօրինուածովք, և եդին զտապան նըյն 'ի հիմն նորա ‖։ [1] Իսկ համդէպ վանաց յարևմուտս կոյս՝ յայնկոյս ձորակին Թաղէացւ և կինն այն որ սպան զստեփաննոս՝ բազմամեայ ճգնութբ ապաշխարեալ 'ի տեղւոջն։

Բաց 'ի վանորէից աստի ստեփ. օրպէլ. 'ի գլ. կը. 'ի վայոց ձորոյ կողմանս դնէ նաև զյետագայ մենաստանս։

Խոտակերից վանք, որ կոչի Արքնոց։ Կրօնաւորքն որ 'ի նմա՝ էին մշտապաշտօնք։ Կործանեցաւ սա 'ի շարժմանն, և անդրէն շինեցաւ 'ի ձեռն յովհաննու մետրապօլտին սիւնեաց՝ որ յելս անդ Ժ. դարուն։ Պատմէ զայսմանէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. խդ։

Հերմոնավանք։ Արատեսից վանք, և Գնդեվանք։ Զառաջինն յիշատակէ և ընդարձակօղն վարդանայ աշխարհագրի 'ի վայոց ձոր, և կոչէ Հերմոնի վանք. սոյնպէս կոչի և 'ի ձեռագիրն աշխարհագրական բառարանի, և դնի 'ի վայոց ձոր [2]։

Գլաձոր։ Մենաստան համբաւեալ 'ի յիշատակարանս այլևայլ գրոց մատենագրաց կամ գրչաց՝ որք ծաղկեցան 'ի ԺԴ. դարուն, որոց և բանք ակնարկեն ծաղկեալ գոլ 'ի նմա դպրութեց յայնմ դարուն։ Եւ անկանի յայս գաւառ՝ որպէս է տեսանել 'ի յիշատակարանի գրոց մխիթարայ. * Եւ ապա երթեալ (մխիթարայ վարդապետի կերմանեցւոյ) 'ի Վայոց ձորն 'ի վանսն որ կոչի Գլաձոր ‖։ Յիշատակին անդէն երկու վարդապետք սոյն վանաց՝ Ներսէս, և Եսայիաս, ուսուցիչք դպրութեց,

(1) Սոյնպէս դնի և առ վարդանայ աշխարհագրի յամենայն օրինակս։

(2) Թովմա մեծոփեցի զայս մենաստան ակնարկէ լինել յեղեգիս, զի ասէ. * Ժողովեալ (գրիգորի տաթևացւոյ) զբազում յաշակերտաց իւրոց՝ զմխիթար 'ի տաթևոյ, զյովհաննէս 'ի յեղեգեաց վանից Հերմոնի ‖։

մեծամեծաց զկնի յաջորդեալք 'ի վախճան ԺԲ. դարուն. որոց յետինն է երևելի վարդապետն Եսայի՝ որոյ կան պէսպէս գրուածք ։

Եղեգեցի վանայն է յանուն Սրբոյն Ստեփաննոսի՝ զոր յայտ առնէ յիշատակարան օրինակի ինչ պիտոյից գրոց՝ գրեալ 'ի Թուականիս ՉԽԷ. * Գրեցաւ սա 'ի Գաւառիս կոչեցեալ Վայոց ձոր, 'ի վանս Գլաձոր, ընդ հովանեաւ Սրբոյ Նախավկայիս, 'ի վարժապետութեան Եսայեայ առն հեզոյ և խաղաղարարի, ձեռամբ յոգնամեղ ծառայիս յոհաննիսի աշակերտի բանի ։

Նոյն Թուի լինել սա ընդ Գլաձոր (1) անուն մենաստանին, զոր վարդան աշխարհագիր դնէ նոյնպէս 'ի Վայոց ձոր, և յաւելու. * Սա աթոռն է և վարժարան Սրբոց վարդապետացն մերոց ։ Նոյնպէս և առ մխիթարայ ապարանեցւոյ 'ի գլ. Դ. կոչի Գայլեձոր. * Մեծ վարդապետն եսայի 'ի Գայլեձորն իւր աշակերտօք կրեալ է զջամբ բռնին ։

Այս Գլաձոր կամ Գայլեձոր՝ նոյն է Թերևս և ընդ Խորաձոր անապատին, և վ՝ն այնորիկ ոչ յիշատակէ ստեփաննոս օրպէլ, կամ թէ՝ կամովին զանց առնէ, զի 'ի կը. գլ. յետ Թուելոյ զանազան վանորայս, ասէ. * Բայց այլ ևս (վանորայք) բազումք կային՝ զորս ոչ Թուեցաք ։

## ԳԵՂԱՐՔՈՒՆԻ, կամ (2) ԳԵՂԱՔՈՒՆԻ ։

Կոչեցաւ այս գաւառ յանուանէ շինողին՝ զորս Գեղամ նահապետ որդի ամասիայ անուանեաց այսպէս, որպէս գրէ խորենացին ա. 11. * Նա (գեղամ) գնաց զմիւս լերամբն արևելեան հիւսիսոյ (այսինքն՝ որ ըստ գլխոյ արմաւիրայ անկանէր յարևելեան հիւսիս,) յեզր

(1) Այսպէս գրի յերկուս ընտիր ձեռ., իսկ յայլ յերկուս ձեռ. որք են ընդարձակութիւք վարդանայ, որպէս և 'ի տպ. գրի Գայլեձոր ։

(2) Այսպէս գրի 'ի տպ. և յերկուս ձեռ. աշխարհագր. խորենացւոյն. իսկ 'ի միումն գրի՝ Գեղարքունի, և ընդ հակառակն 'ի պատմ. ա. 11. և բ. 9. 'ի տպ. և յերկու ձեռ. գրի Գեղարքունի, և 'ի միումն միայն՝ Գեղարքունի ։ Նոյնպէս և առ ստեփ. օրպէլ. 'ի գլ. Դ. 'ի յիշել կարգաւ զգաւառս՝ գրի Գեղարքունի. Երրորդ (գաւառ՝ ունի ասէ՝ սիւնիք) Գեղաքունի, որ 'ի հայկեանն գեղամայ կոչեցաւ Գեղաքունի ։ Իսկ յայլ տեղիս գրի Գեղարքունի, որ և է ուղիղ հնչումն ; զի նաև առ այլ մատենագիրս ըստ այսմ գրի ։

ծովակի միոյ. շինէ զեղը ծովակին, և թողու անդ բնա-
կիչս, և յիւր անուն և սա զլեառն անուանէ՝ Գեղ, և ըզ-
շէնսն՝ Գեղարքունի, որով կոչի և ծովն ||: Յոհաննէս կա-
թուղիկոս՝ 'ի պատմելն զայս բան՝ ցուցանէ լէ՝ Գեղար-
քունի կոչեցան զանազան գիւղօրէք զորս շինեաց Գեղամ,
և թէ զլեառն կոչեաց յիւր անուն Գեղամ, որ է նոյն
ընդ Գեղ անուան. *Իսկ Գեղամ չուեալ (ասէ) . . . յեզր
ծովակի միոյ, և շինեալ անդ գեօղս և դերդաստանս,
ըստ իւր իսկ անուանն զլեառն կոչէ՝ Գեղամ(1), և զծով
եզերեայ շինամխսոն՝ Գեղարքունի ||: Վասն այսօրիկ
ուրեք ուրեք 'ի գիրս գաւառն Գեղարքունեաց կոչի նաև՝
Գեղ կամ Գեղամ՝ ընիկ անուամբ նահապետին, որպէս
առ ստեփ. օրպէլ. 'ի գլ. ԼԲ. * Իշխն և սահակ եղբայր
գրիգորոյ և վասակայ 'ի հայրենի ժառանգութի իւր 'ի
Գեղամ ||:

Կիրակոս 'ի բացատրութի զերկոսին անուանս ևս յա-
ւելու ուրեք՝ յասելն վասն երկուց եղբարց զաքարեայ և
իւանէի. * Զբազում աշխարհս հայոց՝ զոր ունէին պար-
սիկք և տաճկունք առին 'ի նոցանէ յինքեանս զգաւառն
որ շուրջ զԳեղովն Գեղարքունեաց ||: Ուր յայտ է թէ՝
նոյն են երկոքին, զի և 'ի գլ. ԼԷ. ստեփ. օրպէլ. զժա-
ռանգուն այնց իշխանաց՝ կոչէ Գեղարքունի անուամբ:
Զայս նշանագրէ և վարդան աշխարհագիր յասելն.
* Գեղամ Գեղարքունի է, ուր կայ սբ ուխտն Մաքե-
նիս ||:

Յայս գաւառ անկանի և Ծովակն գեղամայ, զորմէ
տես 'ի ներածութե հին հայաստանեայց:

Գիրք սորա ձգի շուրջ զնորին ծովակաւն գեղամայ,
ուր տիրէր առանձին ցեղ ինչ և իշխանութի հայկազուն՝
տէր և իշխան սիւնեաց անուանեալ. ուրոյն 'ի բուն գա-
հագլուխ իշխանէն սիւնեաց՝ որպէս աւանդեցաք յառա-
ջին ներածութե նահանգիս. և ունէր յիւրում սահմանի
այլ փոքրիկ գաւառս կամ վիճակս, վասն այնորիկ ուրեք
ուրեք 'ի բազմաւորականն Գաւառք անուամբ կոչի գեղ-
արքունի, ըստ այնմ յասելն յոհաննու կաթուղիկոսի.
* Բայց առաւել ևս յոլովք հայկազեանցն գրոհ իշխանն
գրիգոր և նորին եղբարքն սահակ և վասակ՝ որք հայրե-
նական սեպհականութք տիրէին գաւառացն, որ շրջա-

(1) Այլուր նոյն յոհաննէս կաթուղիկոս կոչէ. * Լեառն Գեղղ ||:

պատեալ կան շուրջ զեզերբ ծովակին գեղամայ ։ Որով Թէ իմանայ զգեղարքունի՝ յայտ առնէ այս բան ստեփ. օրպէլ. 'ի գլ. լէ. յասելն վասն նոյն իշխանաց երից եղբարց. * Ամենեքեան շինուԹե եկեղեցեաց պարապէին, եւ առաւել որդիքն վասակայ սիւնեաց տն (որ գաբուռն կոչէր,) գրիգոր սուփան, սաՀակ, եւ վասակ, եւ մայրն իւրեանց մարիամ 'ի գաւառին Գեղարքունեաց, զի այն իսկ Գաւառաք շուրջ զծովովն՝ նոցա էր Հասեալ բաժին ժառանգուԹե ։

Նաեւ նոյն իսկ յոՀաննէս կաԹուղիկոս որ 'ի վերոգրեալ բանի վասն սաՀակայ եւ վասակայ՝ որդւոց գաբուռն վասակայ ասաց, Թէ տիրէին գաւառացն որ շուրջ զծովեզերբն գեղամայ, այլ ուրեք միայն վասն նորին սաՀակայ ասէ. * Զայսու ժամանակաւ ապա իշխանն սիւնեաց սաՀակ՝ որ սեպՀականաբար պայազատէր զգաւառն առ ծովեզերբն գեղամայ, փոխեալ փոխի 'ի կենաց ։ Իսկ այլուր միայն վասն վասակայ եղբօր նորին սաՀակայ՝ գրէ. * Նայց վասակ որ սեպՀականաբար պայազատէր զտէրուԹին գեղարքունեաց ։ Յայտ արարեալ՝ Թէ նոյն է ասել Գեղարքունի, եւ նոյն՝ Գաւառաք առ ծովեզերբն գեղամայ, որում տիրէր վասակ, որպէս յառաջ, նոյնպէս եւ յետ մաՀուան սաՀակայ եղբօր իւրոյ ։ Զսոյն զայս Հաստատէ եւ բան ստեփ. օրպէլ. 'ի գլ. Լը. ուր գրէ վասն նորին վասակայ եղբօր սաՀակայ. * Մեռեալ 'ի տուն իւր 'ի Գեղարքունի գաւառ, զի այն իսկ էր մասն ժառանգուԹե սոցա 'ի սիսական աշխարՀիս ։ Այլ Թէ զիարդ զարդարեցին շինուԹբ զայս երկիր երկոքին գրիգոր՝ սուփան անուանեալք, գրեցաք 'ի վեր անդր 'ի ներածուԹե նաՀանգիս ։

Ունէր այս գաւառ դժուարին տեղիս՝ զորս յիշատակէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. ԼԸ. յասելն. * Գրիգոր սուփան եւ եղբարք իւր ձման յիւրեանց տեղիս (որ էր Գեղարքունի), ամրացեալք 'ի կատարս լերանց, եւ 'ի ծործորս ծերպից վիմաց ։

'Ի Թուականին չկը. (այսինքն յամի տն 1319.) եղեւ երկրաշարժուԹի աՀագին, որ ընկղմեաց զբազում գիւղօրէս սորա, որպէս գրէ ընդարձակօրէն սամուէլ ։

ԳԵՂԱՐՔՈՒՆԵԱՑ ԲԵՐԴ ։ Զայս բերդ յիշատակէ միայն ստեփաննոս օրպէլ. 'ի գլ. Կ. ընդ ամուր բերդս սիւնեաց, զորմէ յայլուստ չունիմք ինչ ծանօԹուԹի ։

ԳԱՌՆԻ ։ Զնա պատմագիրս յետագայ դարուց կոչէ՝

Գեղաքաղաք (1)։ Եւ մի 'ի հնագոյն գիւղաքաղաքաց Հայաստանի աշխարհին, որ յառաջագոյն կոչէր Գեղամ, քանզի զհիմն նորա եդ Գեղամ նահապետ. * Բայց ինքն Գեղամ (տես խոր. ա. 11.) դառնայ անդրէն 'ի դաշտ անդր (առ որով երասխ անցանէ ընդ նեղ խոխոմն՝ որպէս դնէ 'ի վերոյ), և առ ոտամբ նորին լերինն 'ի ձորակի մի ամրոջ (2) շինէ ձեռակերտ մի, և կոչէ զանուն նորա Գեղամի, որ յետոյ 'ի Գառնկայ թոռանէ նորա անուանեցաւ Գառնի։ Յովհաննէս կաթողիկոս կոչէ զայն Գեղջէջէ՝ յասելն. * Շինէ (Գեղամ) զԳառնակերտն մեծ և Գեղեցիկ զԳեղամի (3), որ յետոյ Գառնի 'ի Գառնկոյ անուանիւր։ Եւ յայտ է թէ՝ գառնիկ նորոգեաց զայս ձեռակերտ գեղամայ, կամ արար 'ի նմա ինչ ինչ շինութիւն՝ յորմէ կոչեցաւ յիւր անուն։

Զկնի տրդատ արքայ շինեաց 'ի նմա և յամրոցին՝ պալատ զարմանալի 'ի պէտս քեռ իւրոյ՝ ըստ գրելոյ խորենացւոյն 'ի բ. 87. * Զայսու ժամանակաւ (յորժամ լինէր ա. ժողովն նիկիոյ 'ի 325, կամ սուղ ինչ յետոյ,) կատարէ տրդատ զշինուած ամրոցին գառնոյ, զոր որձաքար և կոփածոյ վիմօք, երկաթագամ, և կապարով մածուցեալ. յորում շինեալ և տուն հովանոց մահարձանօք սքանչելի դրօշուածովք բարձրաւանդակօք 'ի համար քեռ իւրոյ խոսրովիդխտոյ. և գրեալ 'ի նմա զյիշատակ իւր հելլենացի գրով։

Յիշատակէ զԳառնի և եղիշէ թղթ. 67. ընդ ամուրս հայաստանեայց, զոր յառնուլն վարդանանց 'ի պարսից, քանդեցին զշինուածս ինչ նորա։ Թերևս զսոյն զայս Գառնին իմանայ թովմա արծրունի 'ի բ. 1. կոչելով տեղի տրդատայ, յասելն վասն նախարարաց միաբանելոց ընդ մեծին վարդանայ. * Իսկ զթագաւորաբնակ տեղին մեծին տրդատայ տան 'ի ձեռս վահանայ արծրունւոյ՝

(1) Որպէս առ յովհաննու կաթողիկոսի յասելն վասն սողոմոն կաթողիկոսի. * Սա էր 'ի Քաղաքագեղէն Գառնւոյ։ Իսկ առ կիրակոսի ուրեք կոչի Քաղաքագիւղ. և ուրեք՝ Գիւղ, դնելով զԳեորգ բ. կաթողիկոս լինել *'ի Գեղջէն Գառնոյ։

(2) Զգիրս սորա 'ի ձորակի և յապառաժուտս յայտ առնէ և պատմ. օրպ. 'ի գլ. Է. յասելն. * Պատերազմիւ երթեալք ընդ փրթուածս մեծ քարին՝ որ 'ի խրամին գառնւոյ՝ առ հասարակ հոսեալ կործանեցան։ Եւ կիրակոս յայս բան. * 'ի վախիցն 'ի վայր մնեալք 'ի ձոր անդր ընուին 'ի գլուխս քառագիւղն Գառնոյ . . . զոյլս դահավէժ արարին 'ի գլուխ ձորոյն։

(3) Ցերեց ձեռ" օրինակաց պատմ. խոր. նաև յօրինակաց յով. կաթող. յայտ է թէ վրիպակաւ գրի 'ի տպագրեալն Գեղամ։

շինել նմա տուն թագաւորացարար պատրաստութբ‖։

Նշանաւոր թաղեցաւ Մաշտոց կաթողիկոս՝ որպէս գրէ ասողիկ. Գ. 3. Եւ նշխարք ոսկերաց նորա հանգուցեալ եղև 'ի Գառնի, մերձ առ հովանոցին խորանկիզխոյ, զոր էր շինեալ տրդատայ հայոց արքայի‖։ Յիշատակէ զայս շինուած Գառնոյ նաև կիրակոս՝ Թախտ անուանելով. (յայտ է թէ՝ 'ի ժամանակս իւր այնպէս կոչէին այլազգական բառիւ,) որում և իբր ականատես գրէ. * Եղաւ 'ի գերեզմանի (մարմին մաշտոց կաթուղիկոսի) 'ի Գառնի, հուպ առ զարմանալի Թախտն տրդատայ. և շինեցին 'ի վերայ նորա վայելուչ եկեղեցի‖։ Այնպէս և ընդարձակօրն վարդանայ աշխարհագրի՝ ասելով. * Մայրաքաղաքն Գառնի, ուր կայ գերեզման գէորգ հայրապետին, և մաշտոց հայրապետին, և գեղեցկաշէն և զարմանալի Թախտն տրդատայ‖։

Բայց 'ի ՌՃԻԸ. (1679.) կործանեցաւ յերկրաշարժութենէ՝ որպէս գրէ ընդարձակօրն սամուէլի. * Սաստիկ շարժ եղև յերևան, Ռ. մարդ մեռաւ, և հաւուց թառու եկեղեցիքն, և գեղարդին, և գետարգելին՝ փլան. և տրդատայ Թախթն 'ի Գառնի 'ի հիմանէ կործանեցաւ, և այլ բազում եկեղեցիք և ապարանք կործանեցան‖։ Տես վասն այսր և 'ի նոր հայաստան. Թղ. 254. և 256։

'Ի դաշտին գառնոյ հուլաւուն խանն Թաթարաց 'ի ԺԳ. դարուն ետ շինել քաղաք բազմամարդ՝ որպէս պատմէ կիրակոս, յորոյ շինուածն աշխատեցոյց զհպատակս իւր անգութ վերակացուօք՝ 'ի հեռաւոր վայրաց բերել տալով բազմութիւն փայտից, և արուեստաւորս քարանց և փայտից և նկարուց։ Մաղաքիա 'ի պատմութեան Թաթարաց՝ միայն զշինուածն ապարանիցն յիշատակէ. * Յայնժամ հրամայեաց (ասէ հուլաւուն) դարպաս շինել իւր մեծաւ ծախիւք 'ի Դառն դաշտին (որ պարտ է լինել 'ի Գառնոյ դաշտին՝ որպէս յայտ է 'ի կիրակոսէ,) զոր կոչեցին իւրեանք զանուն տեղւոյն Լէփաղ, որ էր զառաջին տեղւոյն այն՝ նստոց ամարան մեծ Թագաւորացն հայոց, (այսինքն՝ արշակունեաց)‖։ (1)

'Ի ձորակին գառնոյ յայլի միոջ առանձնացեալ ճգնէր

(1) Զայս շինութն հուլաւուն մարթ է ասել եա կառուցեալ 'ի նորին՝ արգեօք փոխանակ այժմեան դաշտին գառնոյ), ոչ կարեմք որոշաբնի գեղջ պարտ է առնուլ. չէք ինչ։ Տես և 'ի նոր հայաստանի փոխանակ երևանայ՝ (զորմէ տան. Թղթ. 254. 256։

'ի սկիզբն Ը․ դարուն՝ քոյր ստեփաննոսի էր․ եպիսկոպոսի սիւնեաց՝ Սահականդուխտ անուն, որոյ հմուտ գոլով յոյժ երաժշտական արուեստի՝ 'ի ներքոյ վարագուրի նստեալ ուսուցանէր բազմաց․ արար և կցորդս և մեղեդիս, յորոց մին սկսանի․ * Սրբուհին մարիամ ||, որ իւրով անուամբն է յօրինեալ, որպէս պ[...]․ ստեփաննոս օրպէլ 'ի գլ․ լա։

'Ի շրջակայս գաւառոյ են զանազան մենաստանք, զորս կարգեսցուք յառաջիկայդ։

Այրիվանք։ Կիրակոս դնէ զայս մենաստան 'ի գաւառի յամեն․ * Կուսակրօն յոհաննէս անուն 'ի գիւղաքաղաքէն գառնոյ, ուր զարմանալի Ամարայինն է տրդատայ, 'ի սր̃ ուխտէն Այրիվանաց ||։ Այլ յոհաննէս կաթողիկոս դնէ զայն ընդ արևելս հիւսիսոյ գառնոյ․ * Առաքէ զօր բազում հեծելովք, և լեգէոն վառելովք 'ի վանս կուսակրօնիցն՝ որ յԱյրի անդ յարևելից հիւսիսոյ գեղաքաղաքին Գառնոյ ||։ Այլուր կոչէ Կացորդ սր̃յն սահակայ, և յիշէ նաև Սջերին վանք․ * Որպէս ասա եկեալ 'ի վանաց անտի Այրեաց, 'ի Կացորդից սր̃յն սահակայ՝ որ 'ի ծործորս լերինն գեղայ 'ի ձորակի միոջ դէպ ուղիղ գնացաք, և եկաք 'ի Սջերին վանս ուր Կայեանք անուանոցն էին ||։ Յայտ է 'ի բանից յոհաննու կաթողիկոսի թէ սակս յԱյրի շինեալ գոլոյ ընկալաւ զիւր անուն, որ և էր իբր ամրոց․ զի ասի անդէն․ * Առաքէ զօր բազում, զի նախ զՍանս ամրոցին Այրին առցէ քեզ ||․ կամ թէ՝ զԳառնոյ ամրոցն սովոր կամի ցուցանել

Ընդարձակողն սամուէլի 'ի բանսն զոր 'ի վերոյ յառաջ բերաք, զայս մենաստան յանուն Գեղարդին կոչէ, զի 'ի նմա պահեալ ասի գեղարդն, որպէս դնէ վարդան աշխարհագիր․ 'Ի կողմն գառնոյ (է ասէ) * Այլ այրի վանք ուր կայ գեղարդն մծամուխ ||․ Այլ ընդարձակողն յաւելու 'ի վերայ․ * Այլ տախտակն սր̃ տապանին նոյեայ նահապետին․ և նա է տուն հաւատոյ հայաստանեայցս հաստատեալ 'ի սր̃ լուսաւորչէն ||։

'Ի մենաստանէ աստի էր երևելի գանձասացն Մխիթար վարդապետ, յորոյ 'ի խորագիրս՝ և երբեմն 'ի սկզբնատառս գանձուցն գրի՝ Այրիվանեցի։

Աղջոց վանք։ Շինեալ 'ի սր̃յ լուսաւորչէն ըստ յայսմաւուրաց 'ի 5․ հոկտ․ * Մ'ի մ̃ն 'ի քահանայիցն ստեփաննոս անուն՝ անկաւ 'ի լեառն գառնոյ, և անդ կեցեալ՝ կատարեցաւ 'ի ք̃ս, և յետոյ սր̃ն գրիգոր պաշտամամբ հրեշ-

տակաց արար զտեղին վանք միաբանակեցաց, որ է մինչեւ ցայսօր, եւ կոչի Աղջոց վանք, այսինքն է՝ Աղջկանց վանք (1). եւ զանուանն եւս ուսաւ 'ի հրեշտակէն 'որն գրիգոր՝ Ստեփաննոս գոլ, վասն որոյ ասի՝ Աղջոց վանք ՍԲ Ստեփաննոս ||: Կամ որպէս գրի 'ի 6. հոկտ. Աղջոց ՍԲ Ստեփաննոս. ուրա , եւ նշանակեալ է տեղի այսր վանաց՝ 'Ի սահմանս Գեղարքունեաց գաւառի: 'Ի կողմն գառնոյ դնէ նաեւ վարդան աշխարհագիր, ուր եւ յաւելու ընդարձակողն. * Ուր կայ աջն 'որ սուրբ Ստեփաննոս քահանային, եւ 'որ աջն Արիստակիսի որդւոյն գրիգորի 'որ լուսաւորչին ||:

Հաւուց Թառ: Վանք մեծափառ, յիշատակեալ սակաւ 'ի պատմագրաց: Ի հանդէպ գառնոյ՝ որպէս դնի յայսմաւուրս 'ի 19. յունիսի 'ի վարս յովսեփայ նահատակին դվինեցւոյ. * Իսկ այր մի սարգիս անուն բարձեալ զմարմին 'որյն տարաւ 'ի մեծափառ վանսն Հաւուց Թառ, որ է հանդէպ գառնոյ ||: Վարդան աշխարհագիր ցուցանէ կոչեցեալ եւ Պարունից, կամ Արունեց եկեղեցի. * Արունեց եկեղեցի՝ Հաւուց Թառն է, ուր կայ փրկչական պատկերն ||: (2)

Իր 'ի սմա եւ աթոռ եպիսկոպոսական, որոյ եպիսկոպոսն յիշատակի 'ի Թուղթն ժողովական գրեալ 'ի ժամանակ որդւոց տարսաիճի առ գրիգորիոս կաթուղիկոս անաւարզեցի՝ Մխիթար Հաւուցթառոյ եպիսկոպոս: Որպէս եւ ի ժէ. դարու յիշատակի ուրեք եւ Զաքարիա եպիսկոպոս Հաւուցթառոյ:

(1) Այսպէս դնի 'ի ձեռ" յայսմաւուրս. իսկ 'ի տպ". պակասի անուանս * Աղջկանց վանք ||:

(2) Սոյնպէս դնի եւ յերկուս ընտիր ձեռագիրս վարդանայ աշխարհագրի. Թէպէտ 'ի միումն փոխանակ անուանս Հաւուց Թառ, գրի վրիպակաւ Հայոց Թառ: Իսկ յերիս ձեռ". որպէս եւ 'ի տպ" յընդարձակողէն վարդանայ դնի այսպէս. * Իսկ 'ի կողմն գառնոյ՝ Պարունից մեծ եկեղեցին է, որ է Հայոց Թառ, ուր կայ կենդանագիր պատկերն փրկչական, եւ ՍԲ աջն Թադէոսի առաքելոյն, եւ ձկոյթն ՍԲ կարապետին ||: Զպարունից եկեղեցին յանուն փրկչական պատկերի յիշատակէն աստղիկ եւ վարդան, զորոյ զբանս եդաք 'ի Պարանս կամ 'ի Պարոնս որ 'ի կոգովիտ, հոլովումն մի է նոյն անուան համարելով զՊարունիցն ընդ անուանս Պարօնք. զի եւ բուզանդ զերկրորդն որ 'ի կոգովիտ՝ այսպէս հոլովմամբ Պարաւնից (կամ Պարօնից) բերդ անուանէ. ուստի եւ ոչ տարբեր տեղի լինել գատեցաք զերկոսին 'ի միմեանց:

Այլ զայս Պարունից եկեղեցին միացուցանել ընդ Հաւուց Թառոյ՝ որ հանդէպ գառնոյ. ընդդէմ երեւի. բայց եթէ ասասցուք, թէ Հաւուց Թառն նոյն իսկ եկեղեցին է Պարունից որ 'ի Պարօնս 'ի կոգովիտ գաւառի՝ զկնի շինեալ առ նմին եւ վանք, որ յայնարար իմն 'ի վարդանայ դնի լինել 'ի Նիգն գաւառի. եւ յայսմաւուրս. * Հանդէպ գառնոյ ||:

՚Ի վախճան ժբ. դարուն, և ՚ի սկիզբն ժգ. ին, եղև վարդապետ ոմն ՚ի կարգի եւ զերաժշտութի երգոց այսր մենաստանի. * Եղիա (վարդապետ. ասէ կիրակոս՝) ՚ի Հաւուց թառէ, այն՝ որ գեղեցիկ կարգաւորեաց զկարգ վանաց իւրոց, որպէս թէ ամենեցունց ընդ մի բերան հնչել, եթէ ցած, և կամ բարձր. և ոչ հարստահարել ընկեր զընկերն ||: Գտաւ սա ՚ի ժողովն գումարեալ ՚ի լոռի՝ ՚ի 1205:

Ողագայ: Ըստ յոհաննու կաթուղիկոսի ՚ի գրի Ողագայ, առ ստեփաննոսի օրպէլ. ուրեք գրի Ողուագայ, այլուր՝ Ողուագայ, կամ Ողուագահ, և այլն. բայց ասողիկ ՚ի գ. 32. յայտ առնէ՝ թէ ուղիղ հնչումն է Ողագայ. * Իսկ գագիկ յաւուրս մանկութեն իւրոյ յորժամ շրջէր նա ՚ի գաւառին գեղամայ՝ տայ նմա (տ. սարգսի կաթուղիկոսի՝ որ ՚ի վերջն անդ Ժ. դարուն՝) տեղի և վանս բնակութեան զվանսն՝ որ յաղագս ծագման իւրեք լուսոյ մծայնոյ՝ Ողագայ անուանի ||: Ըստ այսմ Ողագա գրի և առ ստեփ. օրպէլ. ՚ի գլ. կբ:

Այս մենաստան թուի լինել նոյն՝ զոր շինեաց մարիամ տիկինն սիւնեաց ՚ի վախճան Ժ. դարուն, և յանուանէ մենաստանին՝ նաև գեօղն կոչեցաւ Ողագայ. * Այն մարիամ (ասէ ստեփ. օրպէլ. ՚ի գլ. լէ.) շինէ զմեծապայծառ եկեղեցին ՚ի Ողուագայ յանուն սրբոյ առաքելոյն պետրոսի, և կարգէ ՚ի նմա կրօնաւորանոցս, դասս բազմահոյլ քահանայից վասն հոգեաց տն իւրոյ վախճանեալ իշխանի սիւնեաց. և գնեալ ՚ի հագարացի մարդկանէ զգեօղն Ողուագայ ընդ կռ. դրամի, ազատ յամենայն աշխարհական հարկաց ընծայէ սեփական ժառանգութիւն սբ. եկեղեցւոյն. նմանապէս և գիւղ մի ՚ի Սաղաղ գաւառի ընդ ռա. դահեկանի գնէ, և տայ ՚ի սբ. եկեղեցին՝ որոյ անուամբն գեղջն դնէր. և հաստատէ արձան անջնջելի յիշատակի առաջի գէորգայ կաթուղիկոսի (որ է գէորգ. Բ.) և յովհաննու սիւնեաց եպիսկոպոսի, և գագկայ սիւնեաց տն ||:

Աստ թաղեցաւ և նոյն մարիամ տիկինն սիւնեաց՝ մայր գրիգորի սուփանայ, սահակայ, և վասակայ, որպէս գրէ յոհաննէս կաթուղիկոս. * Տարեալ հանգուցանեն զմարմին նորա ՚ի քնարանի իւրում, մերձ ՚ի ձեռակերտ եկեղեցին իւր ՚ի Ողագայի ||:

Մաքենիս, կամ Մաքենոց: Յետ ժամանակաց՝ յանուն եկեղեցւոյ իւրոյ կոչեցաւ Սբ. Աստուածածին գեղամայ, ոմն գրեալ

կայ 'ի յիշատակարանս ինչ գրոց ։ Ի մենարան, կամ ուխտ հռչակաւոր՝ որ անկանի յայս գաւառ, որպէս դնէ յոհաննէս կաթուղիկոս. * Աստանօր ապա մեծ հայրապետն յովհաննէս՝ (այսինքն է՝ հինգերորդն,) վասն զի շրջէր ընդ վիճակեալ կողմանս գաւառին գեղարքունոյ, լցեալ զկէտ կենաց իւրոյ՝ վախճանի 'ի մեծ ուխտի կրօնաւորական կայանին Մաքենոցաց, և 'ի նմին ուխտի 'ընդ 'ի հանգիստ [illegible]ա փոխէին‖։ Դնէ դնէ և ստեփ. օրպէլ. որպէս և յայսմաւուրս 'ի 28. մարտի. * Թաղեցաւ (եղիա կաթուղիկոս զվահան գողթնացին) 'ի մեծափառ վանք 'ի Մաքենիս՝ որ յերկրին Գեղամայ‖, այն է՝ գեղարքունի։ Նոյնպէս անդ դնէ և վարդան աշխարհագիր՝ զորոյ զբանս եդաք 'ի վերոյ ։

Թէ քանի ծաղկեալ էր այս մենաստան 'ի սկիզբն Ժ. դարուն, յայտ առնէ այս բան ստեփաննոսի օրպէլ. 'ի գլ. լա. յառէն վասն ստեփաննոսի իԲ. եպիսկոպոսի սիւնեաց. * Գնայր 'ի համբաւաւորեալն և մեծաքանչ հանդիսարանն ... կրօնաստանն տ՟ր և ա՟ծաբնակ առաքինաբանն Մաքենոցայց, առ ա՟ծազգեաց և սրբէատիպ հարանց հայրն սողոմ, որ էր էգումենոս մեծի ուխտին որ պայծառանայր յայնմ ժամանակի մեծամեծ ձգամբ և անտանելի խստամբեր վարուք, որ և յօրինեաց զպայծառացուցիչն տօնից տէրունականաց, և զյիշատակս մարտիրոսաց զտօնական 'ի ՃԾ. Թւին հայոց‖։

Այլ մերձ 'ի վախճան Ժ. դարուն քանդեցաւ այս մենարան 'ի պարսից, և կրօնաւորքն յերկուս տեղիս ցրուեցան, զոր համառօտիւ՝ այլ ըստ կարգի այսպէս պատմէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. լԳ. * Գնայ (ասէ) բաբան (պարսիկ) 'ի գաւառն գեղարքունոյ, և էարկ 'ի սուր սուսերի զբնակիչսն ոգիք իբրև ԺԵռ. և զյոքնապայծառ մենարանն. և զհռչակելի ուխտն Մաքենացոց (1), յաւարի

(1) Վրիպակաւ գրչի եդեալ է աստանօր. Մաքենոցոց‖, զի այլ ուր առ նորին ստեփ. գնի սեռական հոլովաւորս Մաքենոցաց, որպէս յառէն 'ի գլ. իԵ. Ցուցանէ մեզ զատոյգն սողոմոն հարանց հայր տր ուխտին Մաքենոցաց. որ և հարցեալ 'ի տէր սողոմոնէ նոյն Մաքենոցաց առաջնորդէ‖։ Եւ 'ի լէ. գլ. Որ և եա զմուշոյ (որ զինի եղև կաթողիկոս) յաշակերտութե սբ հօրն Մաքենոցաց ստեփաննոսի‖։

Նոյնպէս և յոհաննէս կաթուղիկոս 'ի պատմութե սողոմոնի կաթողիկոսի. յորում քանզի են ինչ ինչ տարբերութիւնք 'ի պատմութե ստեփ. օրպէլ. ողջոյն յառաջ բերցուք զբանս նորա ։ 'Ի մանկութե առեալ (էր) զլուծ կրօնաւորական կարգի, և բազում առաքինաջան երկոց փանձն առեալ

ւեալ զամենայն ստացուածն, այրեաց և քանդեաց զա-
նայն շինուածն ։ Բայց կրօնաւորքն նախիմաց եղեալ՝
երկուս բաժանեալ, կէսքն գնացին ընդ հօր սողոմի,
ջ առաջնոյն՝ որ հարանց հայր կոչեցաւ, այլ ընդ նորին
աշակերտօքն, գնացին 'ի գաւառն շիրակայ 'ի նոր ուխտին
զրեսկ, յորում պայծառանայր սոյն այս սողոմոն Ճգնու-
Թէ սուտամուտ լեալ ։ Իսկ կէսքն գնաց 'ի յաղուանն՝ ա-
ռաջնորդ կալեալ զմի ոմն յեղբարցն, և բնակեցան 'ի
մեհրներսեհեայ վանքն՝ որ է Ջրվշտիկ (1). և տեղին (մա-
քենիս՝) անբնակ մնայր ։

Եւ զկնի դարձեալ եառ շինուԹի 'ի վախճան Թ.
դարուն. * Ապա յաւուրս գրիգորի սիւնեաց ՏՐՆ (ասէ)
որ սուփան կոչեցաւ, վերստին նորոգեցաւ, և շինեցաւ
մեծ եկեղեցին, և պայծառացոյց առաւել քան զառա-
ջին ։ Իսկ Թէ զինչ էր այս շինուԹի՝ զոր արար Է. դրի-
գոր սուփան որդի վասակայ՝ պատմէ 'ի գլ. ԼԷ. ուր և
յառաջ բերէ զնորին զարձանագրուԹին քանդակեալ.
* Շինէ և զերկնաձեւ խմբարանն 'ի հիւսիսային մենարա-
նին ։.. ուխտն Մաքենոցաց, զգմբեԹայարդ եկեղեցին
յանուն ՏՐԴ ծածկին, և պարսպէ վիմօք. և այլ բա-
զում շինուածս յօրինեալ զարդարէ յանխիմայ գան-
ձիւք, և փարԹամացուցանէ բազում ընծիւք. նաև գեա-
զիւք և ագարակօք 'ի գառնի և յերևան, և յայլ տեղիս.
և կարգէ նմա արձան յիշատակի հարստայոյս արդեանցն
իւրոց՝ որ ունի օրինակ զայս ։

»Կամաւն այ ես Սուփան սիւնեաց իշխան շինեցի զՄաքենոցաց եկեղեցիս, և յանխինայաբար զարդարեցի պատուական սպասիւք, և ծծայլին կոտակարանօք. և եառ զեփական տեղին մեր 'ի սա՝ որ ըստ անուան եկեղեցւոյ՝ [illegible] սահմանօք լերամբ և [illegible]լու, իւր ամենայն սահմանօք սեղանոյն, և Հ. դրամ 'ի [illegible] Ընծայէ ասի, իւր ամենայն զուաղաշէն [illegible] դրամ 'ի կաԹկայ. յԾ. 'ի [illegible] և եառ որս ձիւնց զապալէն. ԲՃ. դրամ ։ Իստու և Ե. կուղակ [illegible] դեղձագետոյ [illegible] որ լինի ուԲԾ. դրամ, և Հ. առուայգի 'ի գիւղ յամիեաւքն, [illegible]
'ի յամի, և Ե. այգի յերևան,

* Մաքենոցաց. . . և
'ի մեծ ուխտին Մաքենոցաց
հայրն հարանց հասարակ բաժնիւ
կրօնաւորական դասուն երԹեալ
բնակէր 'ի զրեսկ՝ որ 'ի շիրակ
գաւառի. զհետ նորա և այս ես
սողոմոն (կաԹուղիկոս) չուեալ
գնայր, և անդ 'ի միայնակեցի
կարգ եղեալ լինէր 'ի խորշիԹ ։

Նոյնպէս և տա. կիրակոսի ասի
· Տէր սողոմոն ամ մի. սա էր-
Մաքենոցաց վանից ։ Յայտ-
նէ իմաստասիրեմք և ուղղակա-
սորա առաւել սովորական լի-
Մաքենոցք 'ի բազմաւորական մե-

(1) Տես յանծանօԹս
հայոց 'ի բառն Ջրվշտիկ ։

քաղաքն գառնի, և ճ. այգի յեղեգիս, և զամենայն պէտս 'ի եղբայրութեան լցի տաստապէս ... Հա այս խիկ էր արժանն Մաքենոցաց. բայց վասն հնութեան և խախտելոյ քարանցն՝ ոչ կարացաք զբովանդակն յիմանալ. այլ բազում բանք և տուրք իշխանացն պակասեն. զայս փոքր 'ի շատէ եդաք, զի մի բնաւին ջնջեալ կորիցէ յիշատակ նոցա ։ Եւ այս ամենայն գործեալ եղև Ի. թվականէն մինչև ցյծննն ։ Յայս շինութեան և արձանագրութեան եղև յաւուրս Դ. յովհաննու կաթուղիկոսի. քանզի գրի անդէն. *Եւ տէր յովանէս հայոց կաթողիկոս 'ի տանէս մի իշխեսցէ դատ կամ փայքար հանել ։

Եղեգուն, կամ Եղեգոն։ Գիւղ՝ որ 'ի պատմութեան օրպէլեանց 'ի գլ. Դ. դնի հանդէպ գառնւոյ. *Եւառ (ասէ՝ տալեանն ազգաւ թաթար 'ի ժԴ. դարուն) նաև զվայոց ձոր, և զեղեգիս մինչև 'ի յԵղեգոն գիւղն՝ որ է հանդէպ գառնւոյ ։ Գրի անդէն՝ թէ զայս ամենայն ետ օրպէլեան էլիկումին որդւոյ լիպարտի 'ի հայրենիս. *Եւ ապա հաստատեցաւ (ասէ) այս լինել հայրենիք տանն և ազգին օրբէլեանց ։ 'Ի գլ. Է. կոչէ զայս՝ Եղեգուն։

Գառնաձոր։ Գիւղ՝ զոլմէ 'ի պատմ. օրպէլեանց 'ի գլ. Ը. *Եւտ (տարաժամ որդի լիպարտի) 'ի վանսն Յողոյ տարոյ՝ գիւղ 'ի գեղարքունի զԳառնաձորն, և զայգի մի 'ի Մաձառաձորի ։

Եղեա։ Գիւղ՝ զոր յիշէ պատմիչն օրպէլեանց 'ի գլ. Է. տպ. թղթ. 28. *Տայ փոխան հայրենեաց լիպարտին ... զԵղեառն, և զայլս գիւղս յոլովս 'ի գեղարքունի ։

Մաքենիս։ Գիւղ 'ի գաւառին գեղարքունւոյ. որոյ հնութիւն յայտնի է յանուանէն, թէպէտ որ յիշատակէն չունի՝ է նոր հեղինակ (1)։

Կոթ։ Յա գրիգորի մագիստրոսի (2) կոչի սա գաւառ, զի ասէ. Կոթ գաւառ գեղամայ, որում պարտ է իմանալ զփոքրիկ գաւառ՝ զոր մեք կոչեմք Միձակ։ Կիրակոս յիշէ զհամանուն գիւղն կամ զաւանն յասելն. *Յեզր ծովուն

(1) Այն է Առաքել պատմիչ յետ ժԷ. դարուն, 'ի պատմութեն յովաննու վարդապետին ծառեցւոյ 'ի թղթ. 581 ։ * Որոյ (ասէ՝ այսինքն յովաննու վարդապետին) պատուական մարմինն եդեալ կայ 'ի յերկիրն գեղամայ 'ի գիւղն Վասակաշէն, հուպ գամբարանի վարդապետին սարգսի ։

(2) 'Ի Թուղթն որ առ կարծեցեալ իմաստունն ։

գեղամայ Ռուան մի է Կոթ անուն, 'ի սահմանս այնր գեղջն հուպ 'ի լեառն՝ զոյն մարդ մի ‖ ։ Իսկ ստեփ. օրպէլ. 'ի գլ. լէ. ('ի պատմելն վասն գրիգորի սոփանայ որդւոյ զաբուան վասակայ՝ յելս Թ. դարուն,) կոչէ ընդ-նոյն Կխուղաքաղաք. * Մինէ (ասէ) և սոփան զզարմանակերտ փարախն բանուոր հօտից 'ի Կխուղաքաղաքին Կոթայ՝ յանուն սբ ածածնին, և զարդարեալ մեծամեծ սպասուք՝ կարգէ 'ի նմա դասս պաշտօնէից, և պարսպէ մեծամեծ վիմօք ... և կարգէ յիշատակագիր արձանի 'ի վերայ սբ եկեղեցւոյն, որ ունի օրինակ զայս ։

» Ինձ սոփանայ յիշատակարան հաստատեալ հոգւոր 'ի Քս 'ի Խաղաքագիւղս Կոթայ 'ի կացուածի իմոյ նախնեացն. զոր նախ քան զայս, պարսպափակ շրջապատեալ էին 'ի բազմածախ գանձուց յոլով աշխատութբ. յետ այսր ապա յիմոց նախնեացն խորհրդակցեալ կամօքն իմ՝ շինեցի տուն ան և յարկն այն յակոբայ, անուանակոչութբ սրբուհւոյ տիրամօր ածածնին՝ վիմատաշ կոփածու քարամբք. և 'ի սմա սենեակս Է. 'ի վերոյ և 'ի ներքոյ. և ապա 'ի սմին սբ քաւարանիս կարգեցի քահանայս, և զարդարեցի զատենաքահանայ 'ի նախնեաց իմոց, և այլ սպասաւորս բազում. և ազատ արարի յարքունական ծառայութէ և 'ի բեկարէ. և սահմանեցի հողս և ջուրս. և ետու միոյ միոյ քահանայի Ծ. դրամ 'ի տարւոջն՝ որ լինի հնկեցիկս, և սահմանեցի չորիցս քառասունս, և սաղմոս՝ զնեղուէ կանոն, և զառաւօտուն սաղմոսն ‖ ։ Զսոյն ետ գրել և 'ի յիշատակագրին որ 'ի Մաքենիս ։

Ռայս Կխուղաքաղաք՝ որպէս ակնարկի յարձանագրութեն, գոլով կացուած, այսինքն՝ տեղի սովորական բնակութե նախնեացն իշխանին գրիգորի, երեւի թէ 'ի նմա էր ոլքոնիքն այսր իշխանութե ։

Մռա ։ Կզգի՝ 'ի ծովուն գեղամայ՝ որ անկանի յայս գաւառ, որպէս դնէ վարդան աշխարհագիր. * Գեղամ Գեղարքունի է, ուր կայ սբ ուխտն մաքենիս, և Սևան կղզին 'ի մէջ ծովուն ‖ ։

'Ի սմա էր և ամրոց՝ զոր քանդեաց մրուան ոստիկա որ 'ի մէջն անդ Ը. դարուն. * Իսկ Սևան կղզի (ասէ յոհաննէս կաթուղիկոս) որ 'ի ծովակին գեղամայ, թէպէտ և 'յիսկզբան նաւագի անդ ոչ ըմբռնեցաւ 'ի ձեռս նորա, սակայն զկնի երկեամի ամաց մատնեցաւ 'ի ձեռս նորա, և որ միանգամ բնակեալ կային յամրոցի անդ՝ գերի առեալ տանէր, զկապուտ կողոպուտն յաւարի

առեալ՝ սպառսպուռ քանդէր աւերէր զամրոցն ||։ (1)

Զկնի դարձեալ շինութի՛ էառ, յորժամ ամրացան հայկազուն իշխանքն սիւնեաց՝ որք տիրէին գեղարքունւոյ սահակ և վասակ, և մայր նոցա մարիամ՝ յերեսաց զօրացն յուսփայ ՚ի վերջին անդ Թ. դարուն. զորոց գրէ յոհաննէս կաթուղիկոս. *Երթեալ զօղեալ ամրանային ՚ի Սևան կղզոջ||։ Զոր և ՚ի վերոյ կոչէ *Սեպհական ամրոց տէրութե՛ իւրեանց||. յայտ առնելով՝ թէ անկանէր ՚ի գեղարքունի։

Ընդ ամրացաւ և աշոտ շահանշահ, յորոյ աւուրս կոչէ զայն յոհանն". կաթ". Անմատչելի. *Յանմատչելի ամրոցին ՚ի Սևան կղզոջ առկայանայր||։ Ուր և տասն նաւուք ետ ծովամարտիկ պատերազմ ընդդէմ թշնամւոյն, որ եկեալ էր *Յեզր ծովակին հանդէպ ամրոցին Սևան կղզոյ|| (2)

՚Ի սևան կղզոջ է և մենաստանն հռչակաւոր մինչև ցայժմ, յոր անուն կոչէ լաստիվերտցին գլ. Ը. զկղզին առ հասարակ, յասելն վասն տ. սարգսի կաթողիկոսի. *Վարժեալ կրօնաւորական ճգնութե՛ ՚ի կրօնաստանն որ կոչի Սևանայ կղզի||։ Նաև ասողկայ ՚ի գ. 3. ցուցանէ թէ զառաջինն կառոյց զայս մենաստան և զմիաբանութի՛ մաշտոց կաթուղիկոս. զի գրէ վասն նորա. *՚Ի ծովուն գեղամայ զկղզին սևանայ բնակութի՛ իւր արարեալ, շինէ զեկեղեցին ՚ի նմա՝ որ Առաքելոց անուանեաց. յոր

(1) ՚Ի սմին Սևան կղզւոջ ասեն նախ երգեալ զերգն Շնորհեա՛ Տէր. պատճառաւ յայտնի լինելոյ որոգայթից թշնամեաց, որք նաւու առաքեցին հանին ՚ի ծովեզերս նորա բազմութի՛ բեռանց լցեալ ՚ի պարկս իբր վաճառականութեան աղագաւ։ Բայց ՚ի մանկանց ծանեան ՚ի պարկսն լինել զօրս զինեալս, որք գիշերոյ սպասէին յելանել և ՚ի կոտորել զբնակիչս. իսկ բնակչաց յիրազեկ լինելն այնմ ՚ի խաղուց մանկանց, ՚ի ծովեզերն ժողովեալ, զվերոյիշեալ երգն երգեալ, մի ըստ միոջէ զպարկսն արկանէին ՚ի ծով, կորուսանելով զամենայն զօղեալսն որ ՚ի նոսա։

Յիշատակի այս և ՚ի մեկնութե՛ ժամակարգութե՛ խոսրովայ, թղթ. 372. ուր ասի. *Որպէս և ՚ի Սևանայ կղզւոյն է յայտ. վասն որոյ և զերգս ասի երգել ՚ի յայտնիլ դաւաճանող թշնամեացն||։

(2) Յայս ամենայն բանից յոհաննու կաթուղիկոսի յայտ է թէ՝ այլ է այն Սևան որ յիշատակի ՚ի գիրս ՚ի պատմութե՛ իշխանացն արծրունեաց կամ վասպուրականաց. զի ՚ի վերոգրեալ բանսն անդ ուր խօսի զսևանայ որ ՚ի սիւնիս՝ Սևան անուամբ կոչէ միշտ զկղզին, և ոչ ուրեք զամրոցն որ ՚ի նմա. իսկ ՚ի խօսելն զարծրունեաց, և ՚ի յիշելն անդանօր զՍևան, յայս անուն կոչէ զնոյն իսկ զամրոցն. *Իսկ հաստատն արծրունիս... բնակութի՛ կայանի իւրոյ ունէր զամրոցն անուանեալ Սևան||։ Տես զայսմանէ և յանծանօթս վասպուրականի։

միացեալ ժողովեցան եղբարց բազմութ՟ն՝ կանոնադրու-
թ՟ե սահմանաւ ն՟րին բարսղի, միակրօնք 'ի տան ն՟յ եղեալ, ստանալով զբազմութ՟ի գրոց ն՟րց‖: Իսկ այլուր 'ի դ՟. 32. զշինութ՟ի վանաց համօրէն տայ նմին մաշտոցի՝ իբրև հեղինակի, յասելն վասն տ՟. սարգսի կաթուղիկոսի՝ որ 'ի վախճան Ժ. դարուն. * Սպասաւոր եղեալ 'ի ծովակին գեղամայ 'ի վանսն սևանայ, զոր շինեալ էր երանելւոյ առնն ն՟յ տէր մաշտոցի‖:

Իսկ թէ զկարգ շինեաց. պատմէ զայն ստեփաննոս օրպէլ. 'ի գլ. լ՟է. քանզի մաշտոց ետես ասէ յանուրջս գալ առ նա ինքն երկոտասան առաքելոց 'ի վերայ ծովուն, և նշանակել զտեղի եկեղեցոյն, հրամայն տուեալ կանգնել անդէն եկեղեցի յանուն ժ՟բ. առաքելոց, և սահմանել միաբանակեացս: Յերևմանէ աստի վերին ազդեցութ՟ք շարժեալ թագուհին մարիամ կին դաբուռն վասակայ, և մայր վերոյիշեալ եղբարց գրիգորոյ սահակայ և վասակայ, հաւանեցոյց զմաշտոց ձեռն 'ի գործ արկանել: Վասն որոյ նա ինքն տիկինն՝ ասէ. * Շինէ զգեղապաճոյճ եկեղեցիսն յանուն ն՟ր առաքելոցն, և միւս յանուն տիրուհոյ ա՟ծածնին, և զարդարեալ մեծամեծ սպասիւք՝ կանգնեաց զնա տուն ն՟յ, և բնակարան ա՟ծազգեաց արանց յի՟գ. թվականին հայոց (յամի ն՟ն 874): Բայց մաշտոց եդ սահման վանիցն, և պայծառացոյց երկնաքաղաք կարգօք, յորմէ համբաւոյ միաբանեալ աշոտի իշխանաց իշխանի՝ ն՟ր ուխտին գայ 'ի տեսութ՟ի ն՟ր հօրն, և ընծայէ զփրկական նշանն ա՟ծընկալ խաչին. և տան ժառանգութ՟ի ն՟ր եկեղեցոյն գեօղս՝ զՍարուէրն, զՅամբաբերդ, զԳոմաջորն, զԼճերգին, զԹանահատ, և զՍրմնէաձին, և այգիս՝ 'ի գառնի, և յերևան, և յայլ տեղիս‖:

Գնեւանքն: Տեղի՝ մերձ 'ի սևան կղզի, զոր յիշատակեն արևելեան եպիսկոպոսունք 'ի ժողովական նամակին գրեալ 'ի ձեռն ստեփաննոսի օրպէլ. առ գրիգոր Է. կաթողիկոս: * 'Ի ժամանակս զաքարիայի սպասալարի և իւանէի աթաբէկին վրաց՝ դարձեալ (եղև) ժողով ն՟ր հայոց, եպիսկոպոսաց, վարդապետաց, քահանայից 'ի Գնեւանքն մերձ Սևան կղզոյն‖:

Աճերք: Յիշէ զայս ասողիկ բ. 6. ընդ այլոց տեղեաց, յասելն վասն կայսեր թէոփիլոսի որ նստաւ յամին 829. * Սա 'ի խաղալն իւր յարևելս կոյս 'ի սահմանս հայոց՝ առնու զՈւխա բերդն հայոց, զԼաղկն, և զՍնծնէրք, և զԱճերք 'ի գաւառին գեղամայ‖:

Սևանայ վան։ Սևանարամն՝ զոր ստեփ. օրպէլ. 'ի գլ. կը. այսպէս կոչէ, և դնէ 'ի գեղամ. իսկ 'ի գլ. լէ. կոչէ Սանէվան կամ Սևանավան։ Յիշեաց զայս շապուհ բագրատունի յերս անդ Թ. դարուն, կամ 'ի սկիզբն տասներորդին, զորմէ պատմէ նոյն օրպէլ. 'ի գլ. լէ. * Նախանձեալ ընդ այս բարիոք մոլութ. շապուհ բագրատունի եղբայր մարիամայ, և 'ի ձեռն քեռն իւրոյ շինէ զփառաւոր տունն այ յանուն որբ գրիգորի լուսաւորչին 'ի ծործկին Սանէվանայ՝ որ այժմ Կթառոց կոչի. և բաղում տուրս ընծ-ձեռէ 'ի պէտս եղբարցն, և հաստատէ տուն կրօնաւորաց. որոյ յիշատակագրութիւն արձանին ունի օրինակ զայս ։

„ Յանուն այ ես Շապուհ բագրատունի հայոց սպարապետ՝ տեառնց տէր՝ որդի աշոտոյ հայոց թագաւորի, 'ի ժամանակս հայոց թագաւորի մեծին սմբատայ հարազատ եղբօր իմոյ, և .. հայոց հայրապետի տն յովհաննի ... տեսուչ առնելով զքոյր իմ մարիամ սկսեալ տեկին, յիմում իշխանութե 'ի վանս՝ վանատուն այ կանգնել վիմաշար կոփածովք, շատածախ գանձիւք և մեծաջան վաստակօք կատարել ... և տուաք 'ի քեզ վանս վանու վանական հայր աբրահամ ... հինգ գեղջ սահմանն, Կոթայից փորն, Մաքենոցանն, Շաղաանաձորն, Գեղարքունին, Կոթայոյ, Գեղարքունեաց ծովէ. մի դրամ 'ի Կոթայերէն, շէ. 'ի Բոգենեացն, ոչ յՄաքենոցանոյն ծովէ, ջր 'ի Կարբին գետերէն և վտակերէն ։ Ըստ թաղեցան տէր սողոմոն՝ որ թուի լինել սկսեալ եպիսկոպոս, տէր աթանաս, և սմբատ բագրատունի, ըստ որում գրէ անդէն ստեփ. օրպէլ։

Սանէվան։ Գնէ և զայս նա ինքն օրպէլեանն 'ի գլ. կը. 'ի կարգս մենաստանաց երկրին գեղամայ, և կոչէ Սևան վանէվան, յորոշումն վերնոյն, և 'ի գլ. լէ. իսկ և իսկ զկնի վերոգրեալ բանից պատմէ զշինութիւն որ եղև 'ի Սանէվան, զի գրէ. * Գարձեալ և յետ ամաց ինչ նորոգէ և գաղիկ որդի աշոտոյ շահանշահի՝ զհրաշակերտ եկեղեցին Սանէվանայ զոր կաթուղիկէն, և տայ զԳեղարքունեաց 'ի նա, և պարսպէ շուրջ զեկեղեցեաւն, և գրէ արձան անխծից՝ ոչ յափշտակել զայն 'ի նը եկեղեցոյն ։ (1)։

(1) Այս նորոգութե արդեօք թէ 'ի վերոգրեալն. այլոց թո-յայամ Վանէվան մենաստանի եղև, զուրք որոշել։

## ՍՈՏՔ, կամ ՍՈԹՔ։

Յաշխարհագրութեան խորենացւոյն գրի Սոտք․ իսկ առ ստեփ․ օրպէլ․ 'ի գլ․ Է․ և ԼԵ․ գրի՝ Սոթք։ Իսկ զպատճառ անուանակոչութեանս դնէ նա ինքն 'ի գլ․ Է․ ուր ասէ․ *Զորրորդ (ասնի սիւնիք) Սոթից գաւառ, որ սակս համապագործեան բզոց և դառնաշունչ օդոյն՝ կոչեցաւ Սոթք‖։ Պլինիոս 'ի Է․ 10․ յիշէ զՍոդս իբրև մասնաւոր ժողովուրդս մերձ յաղուանս և 'ի վիրս։

Իւր յետագայս կոչեցաւ Ձորոյ երկիր, որպէս վկայէ վարդան աշխարհագիր յասելն․ *Սոթից գաւառն ծարայ երկիրն է‖ (1)։

Ձոր։ Յիշատակէ զայս աւան գրիգոր մագիստրոս 'ի թուղթն ԺԶ․ առ իշխանն մամիկոնեան, թէպէտև դնէ զնոյն յաղուանս հայոց․ զի գուցէ առ ժամանակօք մագիստրոսի աղուանք ունէին զգաւառն սոթից, յորոց և 'ի սահմանակցութե՛ է ըստ պլինիոսի․ *Գրեմ քեզ (ասէ մագիստրոս) 'ի մերում սեփականին իսկ յաղուանն աշխարհի յաւանն կոչեցեալ Ձոր, և ահա ո՛չ ծէքարարնեմ քեզ․ մնկարաւսեալն վաղնջուց գեղեցկուղէշն գի․ յորմէ սիւնս ո՛չ սակաւ՝ հզօրս և ստուարս 'ի կոչարանում մնդ տեսեալ մեր․ և գերանք գերակատարք և երկայնաձիգք՝ որ է վկայարան 'նոյն յակոլաց։ Ամենայն կահք տաճարին գերակայ, տախտակք և խոյակք և խարիսխք, և զլթակաղակք և զդրունս, և զսեամն համդերձ բարաւորօք, և ներքոյ զատակս կազմեալ 'ի միջէ ծառէ յայնմանէ զկոյն գոլ ասեն զնա․ և զայլս ոմանս ի նոյն աշխարհէն ընդարձակագոյն սրահք և միջոցք այնմ տաճարի տեսեալ մեր․ որ գրեթէ այսպիսի ո՛չ այլ ուրեք՝ բայց միայն 'ի թագաւորեալ քաղաքին‖։

(1) Այս բան գտանի յերկուս օրինակս վարդանայ աշխարհագրի, որք ընտիր են քան զայլս․ իսկ յայլ օրինակս, և 'ի տպ․ պակասի։ Այլ Ձորոյ երկիր որպէս թուի ինձ կոչեցեալ առ յետինս 'ի համանուն աւանէն, զորմէ գրեցաք։

## ԱՂԱՀԵՃՔ ։

Որպէս գրի 'ի տպագրեալն և 'ի միում ձեռագրի աշխարհագր. Խորենացւոյն. իսկ յայլում գրի Աղահէճ ։ Առ սմին. օրպէլ. 'ի գլ. Գ. գրի. Աղահէջ. * Հինգերորդ (ունի սիւնիք ասէ) Աղահէջ գաւառ, որ այժմ կոչի Քաշաթաղ, և Խոժոռաբերդ ։ Երկոքեան ևս էին անուանք բերդից, յորոյ անուան կոչեցաւ զկնի այս գաւառ. զի սուղ ինչ զկնի 'ի կարգս բերդից յիշէ Քաշէ թաղայ բերդ, և Խոժոռաբերդ ։

## ԾՂՈՒԿՔ ։

Որպէս գրի 'ի միում ձեռագրի աշխարհագր. Խորեն. 'ի տպ. գրի Ծղուխ՝ որ է վրիպակ ։ Առ սմին. օրպէլ. 'ի գլ. Գ. գրի Ծղուկ. * Իսկ գաւառք ունի (սիւնիք) երկոտասան, առաջինն՝ որ ունի զբուն գահ իշխանացն և հայրապետացն՝ Ծղուք Գաւառ՝ անուանեալ 'ի Ծղկա գաւառապետէ ։ Բայց ուղիղն է Ծղուկ. զի այլուր առ նորին սմին. մինչ 'ի բազմաւորականն հոլովի. ըստ այնմ յասելն 'ի գլ. ԼԳ. * Կուտեալ զզօրսն 'ի գաւառին Ծղկաց 'ի նմին տեղւոջ ։ Եւ 'ի գլ. ԼԹ. յիշատակի * Մանկէէ Ծղկայ թորնաւորդու ։ Նաև առ ասողկայ 'ի Գ. 3. յասելն վասն հերակլի կայսեր. * Ինքն ընդ Ծղուկս 'ի Նախճուան Թափի ։ Յորում բանի յայտ առնէ՝ թէ այս գաւառ սահմանակից էր Նախճաւանայ ։ Տես և ստորև ։

Ռողամ ։ Գիւղաքաղաք երևելի՝ զորմէ սմին. օրպէլ. 'ի գլ. Թ. * Եւ հասեալ զօրն անհամար պարսկական 'ի Ծղուքս գաւառ 'ի Ռաղամ գիւղաքաղաք ։ Անէր և բերդ. վասն որոյ 'ի գլ. ԿԳ. կոչէ. * Բերդաքաղաքն Ռողամ ։ Եւ էր կառուցեալ յեզր Լճի, զի 'ի գլ. ԾԶ. զԹաղ ինչ սորա դնէ * Յեզր ծովակի Լճոյ ։

Եւ քանզի յայսմ գաւառի էր գահ իշխանացն սիւնեաց՝ ըստ որում եդ սմին. 'ի վերոյ, թուի թէ 'ի գիւղաքաղաքի աստ նստէին նոյն իշխանք, դէթ առ ժամանակ մի, զի այլուր կոչէ զայն իշխանանիստ. * Ընդեալ 'ի գաւառն Ծղկաց՝ հասանէ յաւանն իշխանանիստ Ռողամ ։

նախարարաց դասեցաւ 'ի մէջ համօրէն աւանաց սիւնեաց. և այս պատիւ զկնի վերստին հաստատեցաւ. քանզի 'ի ժամանակս յովակիմայ սիւնեաց եպիսկոպոսի՝ հակառակութի յարեաւ վասն նախագահութե գիւղաքաղաք աւանաց՝ թէ որն իցէ։ Յայնժամ խոսրով շաղատեայ՝ որ էր 'ի զարմէ վերոյիշեալ Գագանին, զթուղթն իւր ետ առաջի առաջնորդէնի տն սիւնեաց, յորմէ * Հրամայեցաւ (տես օրպէլեանն 'ի գլ. ժը.) Շաղատնեցեաց իբրև մայրաքաղաքացեաց յաւաջանիստ լինել վեհագոյն պատուով, նոյնպէս և զվարդապետութե սիւնեաց զնախագահութե զնիստ՝ հրամայեցին Շաղատոյ վարդապետի. ընդ որ յոյժ զչարեալ փանոսի ոյծնեցոյ սիւնի վանականի՝ ակամայ գնաց, և ոչինչ ուժեք ժողովոցն փոյթ զայնմանէ լինէր ‖ (1)։ Յիշատակի առ ստեփ. օրպէլ. 'ի գլ. լթ. և * Սիմէոն Շաղատոյ վանական սիւնեաց վարդապետ ‖։ Յորմէ երևի թէ՝ 'ի Շաղատ էր և մենարան միանձանց ։

## ՀԱԲԱՆԴ։

'Ի տպագրեալ աշխարհագրութեան խորենացւոյն գրի՝ Աբանդ. իսկ 'ի միում ձեռ" գրի Խաբանդ, և յայլում՝ Նաբանդ։ Առ ստեփ. օրպէլ. 'ի գլ. զ. գրի Հանդանդ, և դասի 'ի վեցերորդ կարգս գաւառացն սիւնեաց ։ Առ Թովմայի կիլիկեցւոյ գրի՝ Հաբանդ։ 'Ի մէջ այսչափ գրուածոց ուղղագոյնն թուի լինել Աբանդ, և մանաւանդ Հաբանդ, զի մի 'ի գաւառաց նահանգին արցախայ կոչի յաշխարհագրութեան խորենացւոյն՝ Մեծ աբանդ՝ յորոշումն սորա, յորմէ յայտ է՝ թէ այս ևս կոչի Հաբանդ ։

Հանբառայ բերդ, կամ Զագեձորոյ բերդ ։ Որմէ գրէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. զ. * Հանքառայ բերդ" որ 'ի նոյն տոհմէ սիսակայ 'ի ձագակայ նահապետէ շինեալ 'ի վերայ գետոյ միոյ՝ կոչէ յիւր անուն զձորն Զագեձոր, և զբերդն՝

(1) Այս Շաղատ թուի լինել նոյն՝ որ այժմ այլայլութբ կոչի Շոռոթ, զի բաց 'ի մերձաւորութէ անուանց՝ նաև գիրքն ընդհանրապէս համաձայնեին ։ Այժմեան Շոռոթ չէ ինչ հեռի 'ի նախճաւանայ. այնպէս և ծղուկք գաւառ յորում էր Շաղատ՝ սահմանակից էր նախճաւանայ. 'ի Շաղատ էր եկեղեցի յանուն սբյն ստեփաննոսի. նոյնպէս և 'ի Շոռոթ գտանի Սբ ստեփաննոս, այժմ փոխարկեալ 'ի մատուռն ։ Տես 'ի Նոր հայ". Թղթ. 269 ։

Զագեձորոյ բերդ ‖ ։ Յայտնի ես 'ի պատմ․ օրբել․ եանց 'ի գլ․ Է․ դնի յայսմ գաւառի․ *Քանզի ընդ այս ժամանակս էր զօրագլուխ նետողացն որպէս Թագաւոր 'ի վերայ ամենեցուն բաշու նոյնն, և նստէր 'ի գաւառին Հաբանդայ 'ի գլուխն Զագէձորոյ, և էր ամեալ զօրաւք զփոքր Թագաւորն սիւնեաց զշաւիթ ‖ ։

## ԲԱՂՔ ։

Որպէս գրեալ կայ յերկս ձեռ" աշխարհագր"․ խորեն"․ և միայն 'ի տպագրեալն վրիպակաւ գրի Բաղք Ձորք, զերկոսին գաւառս միացուցանելով․ որով գաւառք սիւնեաց ոչ լինին ԺԲ․ որպէս դնեն տպագրեալն և ձեռագիր օրինակք աշխարհագրութե խորեն․ այլ ԺԱ ։ Բստ այսմ և ստեփ․ օրպէլ․ յորժամ կարգաւ թուէ զԺԲ․ գաւառս սիւնեաց 'ի գլ․ Գ․ ուրոյն ուրոյն գաւառ դնէ զԲաղքն և զՁորքն ։ Նա և յայլ ամենայն գիրս՝ միշտ Բաղք կոչի այս գաւառ, և ոչ ուրեք Բաղքձորք (1) ։

Ο պատճառ անուանակոչութե սորա դնէ ստեփ․ օրպէլ․ 'ի գլ․ Գ․ *Եօթներորդ (գաւառ սիւնեաց) է Բաղք գաւառ, որ այժմ կոչի Կապան, որ 'ի Բաղկայ անուանեցաւ ‖ ։ Նոյն որպէս տեսցի ստորև՝ 'ի բաղակայ անուանեցաւ տիրապէս բերդն, և 'ի բերդէն ողջոյն գաւառն․ խոկ զԿապան, այլք գրեն Կափան ։ Սնէր զզանազան ամրոցս, որք 'ի ԼԷ․ գլ․ ստեփ․ օրպէլ․ 'ի բազմաւորական յիշատակին․ * Որոց պակուցեալ՝ ոմանք ամրացան յանառիկ ամուրսն Բաղաց ‖ ։ 'Ի Ժ․ դարու՝ յանուն այսր գաւառի կանգնեցաւ Թագաւորութի՝ զորմէ գրեցաք 'ի վեր անդր ։

Բաղաբերդ ։ Վասն այսր տեղւոյ այսպէս գրէ օրպէլեանն 'ի գլ․ Գ․ *Իսկ ամուրք անառիկք 'ի սմա (այս-

(1) Առ ստեփ․ օրպէլ․ 'ի գլ․ ԼԳ․ յիշատակի՝ Գաւառ Բաղախան ։ * Յետ այսր (այսինքն՝ յետ ձգց․ թուականի) անհնազանդ եղեն գաւառն Բաղկանայ (Բաղակա-նայ) հրամանի և օրինաց բաբանայ (պարսկի), որոյ եկեալ ձեռն-տուութբ ապլադասայ աղուանեցոյ՝ կոտորեաց սաստիկ և անողորմ զզաւառն Բաղականու, և մա-շեաց մինչ 'ի կանայս և մատաղ մանկտիս ‖ ։ Սոյն այս գաւառ 'ի խորագրի նոյն գլխոյն կոչի Բա-ղախան, որ մեզ թուի լինել ոչ Բաղաց գաւառ սիւնեաց, այլ գաւառ աղուանից, որ 'ի տպ․ աշխարհագր․ խոր․ և 'ի միում ձեռ․ գրի Խըշաղախան, յայլում՝ Բաղախան, և 'ի միւսում՝ Խըշաղա-խան ։

ինքն 'ի սիւնիս), որ 'ի մարդկան հնարից հեռացեալ են, բայց միայն թէ տեղ մնացեալ է. Բաղաբերդ՝ որ և մի ամն 'ի զարմիցն սիսական Բաղակ անուն առեալ զայս գաւառ մասն ժառանգութե, շինէ զքարն Բաղակու ամրոցս, որ և կոչի Բաղաչի քար, և ամրացուցանէ զաբերդն, և կոչէ Բաղաբերդ. և գաւառն յիւր անուն կոչեցաւ Բաղաց գաւառ ||:

Այն այս Բաղաբերդ է՝ որ առ յոհ. կաթուղիկոսի կոչի Ամրոցն Բաղաց. և էր ամուր քան զամենայն բերդս սիւնեաց նահանգին, վասն որոյ տեսանեմք 'ի պատմութիւն՝ զի յամենայն նուագի յորս փախչել խնդրէին բնակիչք երկրին, 'ի սմա ամրանային: Այս ամրացան բնակիչքն, և Անդոկ իշխան նոյ յետ կողոպտելոյ զտիսբոն, ուստի շապուհ արքայ պարսից երիցս անգամ ամենայն զօրօք յարձակեցաւ 'ի վերայ բերդիս, և երիցս կոտորեցաւ. որոյ 'ի կամելն չորրորդ անգամ 'ի վերայ յարձակիլ, մեծամեծ նախարարք պարսից անկեալ (տես տեփ. օրպել. 'ի գլ. Թ.) առաջի շապհոյ, * Աղաչեցին մի ևս պատերազմել ընդ անպարտելի ամրոցին Բաղաբերդու, և տալ կոտորել զարեացն գունդս ||: Այս ամրացան և սիսական տեարք յերեսաց բուղայի, որ հրոսակս առաքեալ էր ըմբռնել զնոսա. * Բայց յոլովք 'ի տերանցն կուսակալաց (տես յոհաննէս կաթուղիկոս) յանառիկ ամրոցն Բաղաց դիմեալք հաւաքեալ փրծանէին 'ի ձեռաց նեղչացն ||:

'Ի չհե. Թուականին (յամի տն 1126.) տես օրպելեանն 'ի գլ. կա. ամիր հարոնն եկեալ էառ զԲարն Բաղակու որ էր վանք. յորում 'ի գաղթել գաւառականացն՝ գանձեալ էին զոսկի և զարծաթի սպասս եկեղեցւոյն, և այն ամենայն մնացան 'ի ձեռս Թշնամեաց. * Այլ 'ի ոճԹ Թվին (յամի 1170. տես 'ի նոյն գլ.) կրկին բարկացաւ ած Բաղաց աշխարհիս, և սիւնեաց նահանգիս, և զապաւէնն ամենեցուն և զտեղի ապաստանի զանառիկ ամուրն զԲաղաբերդ մատնեաց 'ի ձեռս իսմայելի ... որ բազում զօրօք եկն և ոչ կարաց հնարել ինչ. ապա պատրող բանիւք խաբեաց զպարզամիտ արս քրիստոնեայս աչաղուաց, և նոքօք նախ առ զԲարնկոյ, և ապա 'ի ձեռերի այնու արամբք գողացաւ զԲաղաբերդ, և առեալ կոտորեաց սաստիկ. և զի վասն անառիկ ամրութե յամենայն վանորէիցն անդ էին կուտեալ զսրբութիւնս և ըզգրեանս և զսպաս եկեղեցոյ, ևս առաւել զանհամար և զաննման սրբութիւնս և սպասս եկեղեցոյն տաթևոյ՝ փար-

թամ և հարուստ աթոռոյն. խաչ և վկայարանք յոլովս և արծաթոյ, և անգին ականք և անհուն մարգարտով զարդարեալ, և կտակարանք յոլովք՝ որք թուով աւելի քան զԺա. զորս ամբարեալ էին անդ, ամենայն առհասարակ գերի վարեցան, և ցան և ցիր եղեն ընդ երեսս աշխարհի ‖ ։

Յիշէ զՍռաղաբերդ և վարդան աշխարհադիր ըստ երկուց օրինակաց ։ Նստի էր և վահան կաթուղիկոս՝ որ հալածեցաւ յաթոռոյն 'ի վասպուրական ։ Նուն սորա կայ մինչև ցայժմ՝ Պողաբերդ կոչեցեալ 'ի գաւառականաց ։

Յոհաննու վանք ։ Յիշատակէ զայս վարդան, որ գրէ՝ թէ Ջլանշէր իշխանն հայր տր վահանայ * Հիմնեաց զամենապայծառ ուխտն Յոհաննու վանս՝ առ ստորոտով անմատոյց դղեկին բաղայ ‖ (1) ։

'Ի Յովհաննու վանս առ դրան տաճարին թաղեցաւ և Է. ամբաստ թագաւոր սիւնեաց, որ երրորդ յաջորդ էր նախկին թագաւորին բաղաց ամբաստայ, (որպէս դնէ օրպէլեանն 'ի գլ. ծԹ ։

Օ անաղան շինուածս կառուցին աստ սենեքարիմ՝ հինգերորդ թագաւոր բաղաց, և քոյր նորա շահանդուխտ, զորոց գրէ ստեփ. օրպէլ. 'ի նոյն գլ. * Նաւգում արարին արդիւնս և շինուածս երևելիս 'ի վանսն Յոհաննու ‖ ։

Յիշատակին ուրեք ուրեք 'ի գիրս Եպիսկոպոսունք Յոհաննու վանից, որպէս 'ի չԾԴ. թվին հայոց՝ Յոհաննէս եպիսկոպոս. և այլուր յիշատակին Կարապետ և Գաբրիէլ եպիսկոպոսունք ։ Իսկ 'ի ռՃԺԹ. թվին 'ի յիշատակարանս ինչ գրոց, Յոհաննէս րաբունապետ Յոհաննու վանից ։

Հնհէրս ։ Նշանի յայսմ գաւառի՝ որպէս յայտ է 'ի բանից օրպէլենին ։ * Նաև զտեղիքս զայս աւանդեցի (ասէ շահանդուխտ դուստր վարազտրդատայ գահերէց իշխանին աղուանից՝ յիւրում կտակի,) տր եկեղեցւոյն (տաթևոյ) ամենայն ձորովս, որ 'ի Հնհերս սահմանէն 'ի վեր, մինչ 'ի Պտղնական գետն ‖ ։ Նայս տեղի էր ձորավայրն բնակութե նորին շահանդխտոյ. իսկ ձորավայրն բնակութե նորին՝ եղև 'ի բաղաց սահմանի, ըստ որում

(1) Զշինութե Յովհաննու վա, խէ. որ պակասի 'ի մերում օրինից պատմէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. Նակի ։

դնէ 'ի վերոյ օրպէլեանն, և որպէս գրէ նոյն ինքն շահանդուխտ ասելով. * Նկեալ 'ի սահմանս Բաղաց 'ի գլուխ քարին՝ ընդ որ անցանէ Ճանապարհն, և ահա յանկարծակի պատահեցան ինձ իսմայելացիք, որք վասն համբաւոյ գեղոյ իմոյ կամէին յափշտակել զիս . . . և դարձուցեալ զերասանակ երիվարին թռեայ Ը քարս. և ապա յահագին ընչմանէ հողմոյ և աներևոյթ զօրութբ իջայ իբր կաւօք ընդ խորութիւն ձորոյս՝ ես և երիվարն իմ անվնաս || : Յայն ձոր շինեաց նոյն շահանդուխտ մատուռն և խցիկ, ուր Ճգնութբ եկաց զամենայն ժամանակս կենաց իւրոց զամս երեսուն. ժողովեաց առ ինքն և այլ կուսանս, և անդ թաղեցաւ (1) : Մինչև ցայժմ գոյ Շընհեր գիւղ մերձ 'ի տաթև :

Որոտն : Գիւղ՝ զոր Ջվանշէր իշխան ոմն սիսական ետ 'ի սբ խաչն տաթևոյ, փոխանակելով ընդ այլում գեղջ՝ զորոյ զվճիռ պայմանին բերէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. Խ. * Ի յիզ. թվականութեն հայոց՝ 'ի ժամանակս մծապատիւ և հոգևոր տն սողոմի (2) սիւնեաց եպիսկոպոսի, կամ եղև ինձ ջևանշէրի՝ մծապատ տն սահակայ սիւնեաց տն որդոյ՝ զիմ գիւղն մի որ 'ի բաղու գաւառի Որուքս անուն . . փոխանակել ընդ Շեղրոյ շինոյն . . . Որդ իշխան էք դուք տր սողոմն ուտել և ժառանգել զայդ շէնդ զՈրուքս իւր սահմանօքն բոլորովիմբ, ծառովք և այգովք, գետով, և ցամաքով, արտաւորօք և մարգօք, ջրաղացովք և պարտիզօք, եկեղեցեաւ և այլ շինուածովք . . . : Նաև սահմանքն այս է Որոտայ (Որուքսայ) յարևելից կողմանէ . . . դրախտ է նոյն տր խաչին սահմանն, և 'ի հարաւոյ կողմանէ հին ջրաղացովդ է մինչև 'ի Շեղրոյ սահմանն. և ընդ հիւսիսոյ կողմանէ Աղուարդայ սահմանովն, և արքունի նեպակովն, որ էր ժդ. դրամ || :

Մած : Շէն՝ զոր քուպղիդուխտ դուստր վասակայ սիւնեաց տն՝ քոյր փիլիպէի, և կին հրահատայ՝ պարգեւեաց 'ի սբ խաչն տաթևոյ, զորոյ զպայման վճռոյն բերէ

(1) Զայս անցք պատմէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. ԼԶ. իսկ 'ի գլ. ԼԷ. պատմէ զանցս որք եղեն 'ի ՅՀ. թուականին (յամի 921.) յորմէ յայտ է թէ շահանդուխտ էր յետ Թ. դարուն, և 'ի սկիզբն տասներորդին : Իսկ բնակիչք Շնհեր գեղջն յիշատակին առ ստեփ. օրպէլ. 'ի գլ. Խ. 'ի պատմանագիրն քուպղիդխտոյ. * Եւ գրեցի յԺԳ. թվականութեն հայոց. վկայութբ իմ եղբօրորդեացս . . . և ամենայն Շնհերեցեաց || :

(2) Սեռական հոլովն յատուկ անուանս Սողոմոն ուրեք 'ի գիրս օրպէլեանին գնի կրճատմամբ Սողոմի, փոխանակ գրելոյ Սողոմոնի:

ստեփ. օրպէլ. 'ի գլ. Խ. որ գրեցաւ 'ի Թվին յժզ. (յամի տն 867.) * Շէն մի Մաճանուն 'ի Բաղաց գաւառի, որ նախ տն ատրներսեհի սիւնեաց տն և իմ եղբօր՝ ինձ էր տուեալ... եւու ես քուպղիդուխտ ղայդ-շէնք լերամբք և դաշտով, մարդով և այտով, գետով ջրով և ցամաքով, ծառովք և տնկովք 'ի 'նը խաչդ, և 'ի 'նը սողոմոն սիւնեաց եպիսկոպոս||։ Մինչև ցայժմ է այս շէնն՝ Մաշ ձայնեալ, առ ջրով մերձ 'ի տաթև։

Որոտն, և Բղէն։ Թուին լինել 'ի բաղաց գաւառի, զի գրէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. կա. * 'Ի շձգ. Թվականին առաւ Որոտն և 'ի շձդ. ին՝ առաւ Բղեն, և գերեցաւ խորովլիկ իշխանն, և 'ի սուր սուսերի մաշեցան բազմութիւք քրիստոնէից, և բնակին յաւեր անցաւ տունն բաղաց||։ Որոտն Թուի կոչեցեալ յանուանէ ընթերակա վտակին Որոտան. իսկ վտակն այսպէս կոչեցեալ՝ առ որոտաձայն ընթացից իւրոց. զի որպէս դնէ 'ի գլ. լթ. ահագին կարկաջմամբ հոսի այս վտակ երասխայ։ Յիշատակի Որոտն առ եղիշէի ('ի Թղթ. 67.) ընդ ամուրս հայաստանեայց։ Մինչև ցայժմ կայ այս գիւղ. զորմէ տես 'ի Նոր հայաստան. Թղթ. 273։

Բղէն ունի և բերդ, զոր և 'ի գլ. կ. ստեփ. դասէ ընդ ամուր բերդս սիւնեաց՝ կոչելով Բղենոյ բերդ։ Նաև զայսոսիկ յայլազգեաց սմբատ օրպէլեան որ 'ի ժդ. դարուն, զորմէ գրի 'ի պատմութե օրպէլեանց 'ի գլ. է. * Նաև և Թափեաց զերկիրն Որոտնայ բովանդակ՝ մինչ 'ի սահմանն Բորոտնոյ, և Բղէնոյ (փոխանակ գրելոյ Բղենոյ), յորում և կայր ընդ աւեր՝ աթոռն սիւնեաց տաթև||։ 'Ի սահմանին Բղենոյ էր մենաստանն Նորավանք ձայնեալ, զորմէ տես 'ի միւս Նորավանս 'ի վայոց ձոր։

Մաղանդնոյ գեօղ։ Բնիկ էր յովհան որոտնեցի, ըստ որում վկայէ Թովմա մեծոփեցի յասելն. * Յովհաննէս մականուն կախիկ .. գոլով 'ի գաւառէն Որոտնու 'ի գեղջէն Մաղանդնու||։

Յիշատակի առ նորին Թովմայի և Մանդ Հաղանդոս, կամ Մաղընդոս։ * Ժողովեալ (ասէ վասն գրիգորի տաթևացւոյ,) զբազումս յաշակերտաց իւրոց ... զգալուստն 'ի Մաղընդընու (1) 'նը կարապետէն .. զյովհաննէս 'ի Մաղանդու վանիցն||։ Այլ նախ քան զմեծոփեցին, նաև

(1) Այլ օրինակ ունի *'ի Վա. *'Ի Վաղընդոս||. այլևայլ օրինակաւ Վաղընդինոս||. որպէս և զոր 'ի սորա. գրելով զնոյն անուն։

ստեփաննոս օրպէլ. 'ի գլ. կը. յիշէ զայս մենաստան, կոչելով Աղանդնին վանք:

Տաթև: Կոչեցաւ այսպէս յանուն Եւստաթէոսի առաքելոյն՝ որ ըստ յայսմաւուրաց ('ի 6. մարտի.) էր յաշակերտաց նորին Թադէոսի առաքելոյն: Զայս անուն քանզի բազում ուրեք գրեն Ստաթէ առաքեալ, որպէս յայսմաւուրս ('ի 27. ապրիլի. 'ի չորս տեղիս,) և առ Թովմայի Մեծոփեցւոյ ('ի պատմ. ձեռնադրութեն կիրակոս կաթողիկոսի.) յանմանէ կրճատմամբ՝ անուն տեղւոյն կոչեցաւ Տաթև, որ ուղղագոյն ևս առ նորին Թովմայի գրի նաև Ստաթև:

Ի գիւղ, և 'ի նմա մենաստան մերձ յորոտն առ գետակաւ նորին, որ 'ի բանից ստորին ստեփ. օրպէլ. 'ի գլ. ձ. երևի լինել 'ի Բաղք Գաւառի: * Ս'տեալ (շահանդուխտ) 'ի բաղաց սահմանն՝ երթայր 'ի Ճանապարհն յանքոյթ տեղիս . . . յորում էր փրթուած քարի մի ահագին խորութե, որ իբր յանդունդս հայէր՝ հանդէպ մեծի հայրապետանոցին Տաթևոյ‖: Եւ ստորև. * Եկեղ 'ի սահմանս Բաղաց 'ի գլուխ Քարիս ընդ որ անցանէ Ճանապարհն‖: Այս Քար է վերոյիշատակեալ քարն զոր էդ հանդէպ տաթևոյ. և 'ի բանիցն (որ 'ի գլ. լթ.) երևի լինել 'ի վերջին սահմանս բաղաց: * Եւ էր տեղին (ասէ վասն տաթևոյ) հեռի յամենայն հինից Թշնամեաց, զի միջոց էր աշխարհին . . . և ամրացեալ 'ի մէջ երկուց գահոյիցն Սիւնեաց և Բաղաց‖ (1):

Զգեղեցկութի դրից տորա այսպէս ստորագրէ օրպէլեանն 'ի գլ. լթ. ուր ասէ. * Եկին և բնակեցան առ տէրն ('ի տաթև) 'ի գեղեցկավայր տեղւոջ, որ իբր ընդ բարձր դիտանոց հայի ընդ արևելս 'ի բազում գաւառս՝ հանդէպ լերանցն դիզափայտու՝ ուր բազմութիւնք 'մը. վկայիցն հանգուցեալ կան, յոյժ առողջասուն: Եւ

(1) 'Ի բանից վարդանայ աշխարհագրի երևի լինել սահմանակից արցախայ, զի դնէ զայն 'ի փոքր սիւնիս, որ մեզ թուի լինել արցախ, որպէս նշանակեսցուք յիւրում տեղւոջ: * Մեծ սիւնիս (ասէ) և փոքր սիւնիս, ուր կայ աթոռ Ստաթէի առաքելոյն՝ որ կոչի Տաթև‖: Ո՛չ կարէ լինել ըստ ամենայնի 'ի փոքր սիւնիս՝ այսինքն յարցախ, զի զտաթև այլուստ գիտեմք լինել 'ի բուն այսինքն 'ի մեծ սիւնիս, այլ հարկ է լինել 'ի սահմանակցութե անդ սիւնեաց և արցախայ, կամեցեալ զվարդան միաբանել ընդ այլս: Սահմանակից արցախայ լինել յայտ առնէ և ստեփ. օրպէլ. որ զտաթև դնէ * Հանդէպ մեծին դիզափայտու‖. իսկ զդիզափայտ վարդան աշխարհագիր ակնարկէ լինել յարցախ:

վայրն հարթահաւասակ, շրջապատեալ բարձր և սուր լե-
րամբք իբր կարակնակերպ կիսաբոլոր. առաջի վանիցն՝
ձորք և խոխոմք խորագոյն յոյժ, ընդարձակագոյն և գե-
ղեցիկ, ընդ որ անցանէ ահագին դղրդմամբ գետն
Որոտան. և ձորն այն լի այգեստանօք, և դրախտացեալ
զանազան բուրաստանօք։ Նաև էր 'ի տեղին 'ի վերայ բարձ-
րագոյն քարին՝ եկեղեցի խրթին անտաշ վիմօք կրաշա-
ղախ ձուլեալ յոյժ 'ի հին ժամանակաց՝ յաւուրց անտի
սրբյն Ներսիսի և Սահակայ, և սակաւ կրօնաւորք մշտաջան
Ճգնութբ բնակէին 'ի նմա ||։

Յետ ժամանակաց այս մենաստան՝ որ էր անշուք, եղև
աթոռ մետրապօլտին սիւնեաց. այլ թէ յորում ժամա-
նակի եղև առաջին բնակմանն նոցա յայսմ տեղւոջ,
* Ոչ ծանեայ (ասէ ստեփ. 'ի գլ. լթ.) միայն ('ի ժա-
մանակաց) տն գէորգայ (սիւնեաց եպիսկոպոսի, որ էր
'ի սկիզբն թ. դարուն.) և այսր՝ գտանի նշան, և կացի
ծանօթ ամենայն որպիսութեանց նոցա։ Այլ զառաջինն
(ասէ՛) ոչ գիտեմ, զի ոչ գոյր յիշատակ ինչ. բայց գի-
տեմ, զի բազում ժամանակօք բնակեալ էին անդ ||։
Զայսմանէ գրեցաք երկարագոյնս 'ի ներածութեն նա-
հանգիս. տես անդ։

'Ի դասն 'ի տաթև եպիսկոպոսաց զառաջինն՝ բերեն զԷ
իւրեանց բազմութի նշխարաց սրբց, զորս թուէ օրպէլեանն
'ի գլ. լթ. ուր ասէ. * Նաև արդ խնդրեաց յիշխանացն՝
եպիսկոպոսն սիւնեաց զտեղիս զայս, եկին և բնակեցան
'ի սմա. բերին և զնծամուխ սրբ նշանն՝ որ էր 'ի կենա-
բար փայտէն, բերեալ 'ի յունական աշխարհէն. և ըն-
ձեռեալ եպիսկոպոսացն սիւնեաց 'ի պահպանութի վիճա-
կելոցս սոցա առաջին իշխանացն, և հանգուցին 'ի սրբ
եկեղեցւոջս։ Նդին և ասա զնծընկալ խաչն բարկենեան՝
որ 'ի վասակայ որդւոյ բաբկայ որդւոյն անդոկայ կազ-
մեալ էր յարծաթոյ 'ի չափ հասակի առն միոյ. և ունէր
յինքեան մասն 'ի փրկական փայտէն. բերին զնշխարս
առաքելականս և հայրապետականս 'ի գլխաւոր և յե-
րևելի սրբցն՝ զորս հաւաքեալ էին անթիւ բազմութեամբ
յիշխանացն՝ որք ընդ սրբյն գրիգորի և ընդ սրբյն ներսիսի
գնացին 'ի կեսարիայ և 'ի մեծն հռոմ, և յայլև այլ ժա-
մանակս՝ որք բազում փափագանօք ժողովեալ էին։ Ընդ-
որս և էր նշխար մեծին յովհաննու, և ստեփաննոսի նա-
խավկային, և ժա. առաքելոցն, և սրբյն գրիգորի, և աջ
սրբյն հռիփսիմեայ նոյն մարմնովն, և այլ բազում որոց

թեւ՝ որ էր իւր սեպհական, կնքեալ գիր պայմանի
ս օրինակ. *Յերկերիւր և իննսուն երեք թվականու
Հայոց՝ որպէս կամ եղև ինձ փիլիպէի որդոյ վասակայ
նեաց տն՝ ետու զՏաթև վանն իմ հոգեացս 'ի ձեռ 'ի
ր դաւիթ ... ամենայն սահմանօք լերամբ և դաշտիւ,
ւօք և ընկոյզօք, մարգագետնօք և ջաղացմանու, և
ինչ համօրէն սահմանք են. և մի ոք իշխեսցէ յետ իմ
յման՝ իմ որդիք կամ եղբարք, կամ այլ խոստակդարք
ւացուցանել զայդ գիւղդ յայդ եկեղեցւոյդ և 'ի ձռ
չէդ ||:
Ի վերայ այսոցիկ պարգևաց՝ յաւել շինել 'ի տաթև
եկեղեցի. *Շինէ (տե՛ս օրպէլ. 'ի նոյն լթ. գլ.)
ղեցի մի գեղեցկաշէն մերձ հին եկեղեցւոյն 'ի հարաւոյ
մանէ՝ յանուն սրբ լուսաւորչին գրիգորի, և ինքն վախ
նեալ դնի անդէն 'ի դրանն ... և այս լինէր ամէ. թվա
ին հայոց ||:
Յետ փիլիպէի զարդարեաց զՏաթև սողոմոն եպիս
յոս սիւնեաց՝ (որ 'ի ժամանակս զաքարիայ կաթու
ոսի.) զանազան կարգօք, ստացուածովք, և պար
ելով զսրբ խաչափայտն կազմեալ յոսկոյ, և յեռեալ
ամբք և մարգարտով, զորոյ զյիշատակագիրն բերէ
րփ. օրպէլ. 'ի գլ. խ. *Շնորհիւն այ այս իմ ձեռին
է՝ տն սողոմոնի սիւնեաց եպիսկոպոսի, որ յառաջ
մանակաց զ[illegible]՝ տն գէորգայ և սրբ նշա
հոգեցատուրին արարեալ, զինչ պատճառօք և էր՝
յափշտակեալ էին. յորժամ յաջորդեցայ 'ի սրբ յա
ու՝ ստացայ ինձ զածընկալ սրբ նշանս յաղագս տա
պեալ հոգոյս իմոյ փրկութե. և առի զ[illegible] 'ի հրա
ռայ սիւնեաց տն 'ի գրիգորոյ որդոյն ... գնեցի ընդ
լար և երկերիւր դրամի, և սրբ նշանիս հայրենիք ա
ի ... Սահման [illegible] այս են. որ իւր ձեռնա
իդ գրած են, և [illegible] շինին առաջ, և էր Է. դուր
իր: Եւ արդ՝ Խոլոտոյ տէրքս գրիգոր վասակայ որդի
յ եմ ես ... ես գրիգոր երէց 'ի Տաշռայ ... աքսողոմ
ներդկանեբեչոյ ... մրջիմնիկ 'ի [illegible]՝ վկայենք ...
դ՝ որ այս հաստատուն վճռոյս [illegible] և [illegible]
(այսինքն է [illegible]) հակառակ ելանէ, 'ի յայ և
ք նշանեդ դատապարտեալ եղիցի ... ղէ. թվին է ||:
ակ յաջորդն սողոմոնի յովհաննէս եպիսկոպոս սիւ
ց զհին եկեղեցին Տաթևոյ՝ որ էր փոքր և խախտեալ
'ի բազում ժամանակաց նաև 'ի շարժմանէ՝ խորհեր

նորոգ կառուցանել, անպատշաճ համարելով այնպիսի հայրապետանոցի՝ Առանց մեծ խոնարհելոյ եկեղեցւոյ մինչեւ ըստ ասելոյ ստեփ. օրպէլ. 'ի գլ. խա։ Եւ մինչդեռ տարակուսեալ կայր վասն ծախուց, հրեշտակ տն ասէ՝ երեքկին տեսլեամբ քաջալերեաց՝ ձեռն արկանել և շինել յանուն տրց առաքելոցն պետրոսի և պօղոսի, գծեալ նաև զտեղին։ Զայն լուեալ և տեսեալ բազմութեն իշխանացն սիւնեաց, բացին զգանձս իւրեանց 'ի ծախս այետոյից, և այնպէս լրացուցին ձեռամբ նորին յովհաննու եպիսկոպոսի, որ 'ի վերայ եկեղեցւոյն գրեաց զյիշատակարանս զայս. *Յամի յորում Թվականն հայոց յիդ էր, և զատիկն 'ի նաւասարդի իդ. ես տէր յովհաննէս որ երկրորդ կարգեցայ եպիսկոպոս սիւնեաց՝ զկնի տն սողոմոնի՝ արարի սկիզբն շինուածոյ եկեղեցւոյս. և այնպէս կատարեալ զեկեղեցին կամար երկնանման կմբէթայարկ Ճեմարան իմն հրեշտակաց և քաւարան մարդկան. 'ի տաշածոյ վիմաց և 'ի քերածոյ քարանց գաղատոսաշէն իմն յարմարեալ ակնախտիղ տեսողաց, 'ի Ճ. կանգնոյ բարձրութի նորա, և 'ի խը. կանգնոյ երկայնութի նորա, և 'ի իդ. կանգնոյ լայնութի նորա, ունելով յինքն դ. խորանս՝ բայց յաւագ խորանէն։

Եւ ըստ սողոմոնեան յարկին, և կամ զօրաբաբելեան՝ կառուցեալ 'ի մէջ տանն է սիւնս հրաշակերտս ... որք հաստահեղոյս խարսխօք, և բարձրաբերձ գեղեցկադիր Թակաղաղօք պարաբարձեալ ունին զահագին Թանձրութի երկնաձեղուն քարակարկառ յարկին. և այս 'ի խորհուրդ է գլխաւոր առաքելոցն պետրոսի և պօղոսի, յորոց նշխարացս եդան 'ի ներքոյ սեանցս, և բազմութիւք տրց նշխարաց անդ գումարելոցն առաքելոց, հայրապետաց, մարտիրոսաց՝ եդան 'ի հիմունս և յանկիւնս եկեղեցոյն ‖։

Ապա յաւելու ստեփաննոս օրպէլ. *Նա զայս իսկ աւարտեալ զամս մետասան՝ կանգնէ և մերձ եկեղեցոյն հանդէպ դրանն հարաւու՝ սիւն մի զարմանալի յանուն տրյ երրորդութեն 'ի մանր քարանց պատուածեալ 'ի չափ Ղ. կանգնոյ. պարսպէ և զեկեղեցին սրբաքարով. և ապա զվանսն կոփածոյ քարամբք։ Եւ զի էր նիստ տեղւոյն անյարմար, հարթէ զխմանձրութի դետոյն (գետնոյն,) և խորութի վայրսն բարձրացուցանէ կրաշաղաղ որմովք։ Շինէ և զգաղտանոցս գետնախորս 'ի ներքոյ վանիցն ծածուկ ընդ երկրաւ՝ բազում տունս և դարանս 'ի պէտս

եկեղեցոյն ։ և հարթեալ հաւասարեալ զվայրն, և սրբաշէն տրապիզս և գործամներս, համբարանոցս և սրբատունս և գրանոցս. և 'ի դրան եկեղեցոյն տուն աղօթից և տեղի դամբանի իշխանաց և եպիսկոպոսաց սիւնեաց ։ Ահա զայս ամենայն կազմած յօրինուածի մեծի տան հայրապետութե՛ հոգացեալ և աւարտեալ՝ արար ցանկալի հեռաւորաց և մերձաւորաց բոլոր յաստանս աշխարհի ‖ ։

'Ի նաւակատիս նորա ժողովեցան սմբատ թագաւոր այլովք իշխանօք, յովհաննէս կաթուղիկոս յաջորդ մաշտոցի, գագիկ ա՛. թագաւոր վասպուրականի իւրովք իշխանօք և եպիսկոպոսօք, սիմէոն աղուանից կաթուղիկոս իւրովք եպիսկոպոսօք և իշխանօք, և բազմութե՛ն իշխանացն սիւնեաց ։ Յայնմ ժամանակի պայծառացաւ ոչ միայն շինուածովք, այլև լի էր՝ որպէս ասէ անդէն օրպէլեանն, * Ոսկեմանոյց փիլիսոփայիւք երաժշտական երգոց, ձօն էր և վարժարան դպրոցացն վարդապետական կրթութե՛ն. նաև արուեստաւորք նկարչացն և գրաղաց անհամեմատք ‖ (1) ։

Բայց յետ անդ Ժ. դարուն իսմայէլացիք զեկեղեցին կործանեցին, և զվանսն տաթեւոյ այրեցին, զորս վերստին շինեաց միւս յովհաննէս եպիսկոպոս սիւնեաց, զորմէ պատմէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. Ժը ։ Իսկ 'ի մէջն անդ Ժբ. դարուն՝ սենեքարիմ Ե. թագաւոր բաղաց, և քոյր իւր շահանդուխտ՝ * Բաղում պարգևս և ժառանգութիւնս ընծայեցին 'ի ս՛ր մայրաքաղաք աթոռն 'ի Տաթև ‖. ըստ որում գրէ օրպէլեանն 'ի գլ. ԾԹ ։

Նա 'ի Ժդ. դարուն սմբատ օրպէլեան նորոգեաց զաւերեալն զՏաթև. իսկ տարսաիճն օրպէլեան նորոգեաց զեկեղեցի նորին, առ որոյ դրամբ թաղեցաւ և արուզխաթուն կին տարսաիճի՝ ըստ որում պատմի 'ի պատմ. օրպէլեանց 'ի գլ. Է. և Ը. * Սա՝ (այսինքն տարսաիճն) զարդարեաց զմեծ եկեղեցին Տաթեւայ 'ի սպաս և 'ի ըղգեստս գեղեցիկս. և ետ 'ի ս՛ր եկեղեցին զվաղնջուց յափշտակեալ ժառանգութիւնն, զ[illegible] իւր սահմանաւն, զ[illegible] իւր սահմանաւն, զ[illegible] իւր սահմանաւն, զիւր

(1) 'Ի յիշատակարանի լուծման գրոց տաթեւացւոյն՝ որ է հարազատ ձեռագիր Թովմայի մեծոփեցւոյ գրեալ 'ի պճէ, յիշատակի 'ի տաթև եկեղեցի ս՛ր ածածնի. զի ասի. "'Ի ս՛ր ուխտս Թադէի ս՛ր առաքելոյս, և Ս՛բ ածածնիս, և Ս՛բ գրիգորիս ‖ ։

ձեռատունկ այգին 'ի Խոտակեր, և զԲՋէԲըկենս իւր սահ-մանաւն, և գրէ ինքեան զարձան յիշատակի 'ի վերայ սեանն հարաւայնոյ՝ որ ունէր օրինակ զայս :

» Այս գիր յիշատակի և արձան անջնջելի՝ է իմ Տար-սայիճիս իշխանաց իշխանի որդւոյ մեծի Լիպարտի՝ եղբօր սմբատայ մեծի իշխանի և կողմնակալի այսր նահանգի ... 'ի դրանէն քարդուշատայ՝ մինչև ցսահմանն ըջնւոյ. միա-բանեցայ Տաթևայ ՝նք առաքելոցս. և ետու զիմ հոգ-ւոյս մասն 'ի յիմ սեպհական ուխտս 'ի ՝նք եկեղեցիս՝ գիւղս Դ. զոր լուեալ էաք 'ի հին ժամանակաց՝ ժառան-գութի լեալ սորին. 'ի Շնհեր զԽոտն աւան սահմանօք իւրովք՝ լերամբ և դաշտիւ. 'ի Խոտագետ զմեր ձեռա-տունկ այգին. և զՋուր իւր սահմանաւն՝ լերամբ և դաշտիւ. զՇաժիս իւր սահմանաւն, զորոյ զկէսն գանձա-գին էի արարեալ, և 'ի Բորոտի զԲ.ՀէԹիկանս իւր սահ-մանաւն ... Իսկ այսմ վճռոյս է վկայ տէր սարգիս նորա-վանից եպիսկոպոսն ... Ես տարսայիճս իմ ձեռագրովս հաստատեցի զընծայս ... || : (1)

## ՁՈՐՔ, կամ ԿԱՊԱՆ :

Օսմանէ այսպէս գրէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. Գ. * Տասներորդ (գաւառ սիւնեաց՝ է) Ձորք գաւառ. ու-նի զանմատոյց ամուրն Բաղաբերդ, և այժմ կոչի Կա-պան || : Ո՛չ ամուրն Բաղաբերդ՝ կոչեցաւ Կապան, զի զայս 'ի կա. գլ. յայտնի որոշէ 'ի Կապանէն. այլ Ձորք գաւառ, որ յայտ է թէ սակս ունելոյն նեղ և անձուկ կիրճս՝ կոչեցաւ 'ի վերջնոց Կապան, որ է անուն սովորա-կան առ յետագայ պատմագիրս :

Արդ՝ թէպէտ յայս բան զԲաղաբերդն դնէ 'ի Կա-պան, կամ 'ի Ձորք գաւառի, սակայն ստորև յայտնի դնէ լինել յայնմ վայրի՝ յորոյ անուն շրջակայ սահմանն և գաւառն կոչեցաւ Բաղաց գաւառ, որով և Բաղա-բերդ լինի 'ի Բաղս՝ գէթ 'ի նախնի ժամանակս. որպէս

(1) Այլ 'ի մէջն անդ ժէ. գա-բուն՝ որպէս գրէ ընդարձակօղն սամուէլի 'ի ՌՃԴ. ՝Տաթևու ա-նապատն մեծ շարժեցաւ 'ի տե-ղւոջէն Ռ. վտաւանաւ. յետոյ յա-կոբ կաթուղիկոս բերեալ զմիա-բանսն 'ի ներքոյ Տաթևոյ, և անդ հիմնարկեաց զանապատն և զեկեղեցին. բայց յետոյ աւար-տեաց զայն արիստակէս վարդա-պետն ||:

և անուանից մերձաւորութեան քաղաքին և գաւառ էին՝ զնոյն յայտ առնէ (1)։ Նաև որպէս ինձ թուի 'ի բանից օրպէլինին 'ի գլ. կա. Կապան կոչէր առօրաբար յայնմ վերջին ժամանակի (2) ոչ միայն Չորք գաւառ, այլ նաև Բաղք գէթ ըստ մասին. իսկ իշխանութիւն կամ թագաւորութիւն որ ձգէր 'ի Բաղս և 'ի Կապան՝ յաճախակի կոչէր յանուն Բաղաց. վասն որոյ գրէ յայն գլուխ. * Յամի յարուսմ էր թվականին հայոց շծբ. Եղև սկիզբն աւերածոյ Կապան գաւառի, և ամուր աշխարհին Բաղաց, և սպառելոյ տէրութեան նոցա թագաւորաց և իշխանաց ||։ Ուր Գաւառ կոչէ զԿապան, և Աշխարհ զԲաղս վասն տէրութեան, և զերկոսինն իբր մի համարի. քանզի և երբեմն մի և նոյն իշխան տիրէր երկոցունց՝ որպէս դնէ նոյն ստեփ. օրպէլ. 'ի գլ. լը. * Պայծառանայր և յայնմ աւուրս (յաւուրս նոր ոստիկանին, և շահնշահ աշոտոյ արքային,) համազգի տոհմին իշխանացս 'ի սիսական տոհմէ՝ ձագիկ մեծ իշխանն ամենայն բարեպաշտութեք, որ ունէր 'ի բաժնի զԲաղաց գաւառն և զԿապան քաղաք ||։ Տես և ստորև զբան ստեփ. օրպէլ։

Կապան։ Մայրաքաղաք բերդաւոր յիշխանութեան Բաղաց, զոր էառ չորթման պարսիկ, առ 'ի հանել զքէն վրէժուն՝ զոր ունէր ընդ սենեքարիմ թագաւորին Բաղաց. * Ի ծա. թվին (առէ օրպէլ. 'ի գլ. կա) որ մի յանկարծակի մինչ կային յանհոգութեան քաղաքացիքն, մատնեաց տէր զանաւիկն 'ի մարդկանէ զԿապան քաղաք, և անիծեալն չորթման վասն քինուն իւր յեղակարծում ժամու հեղաւ 'ի վերայ քաղաքին. նախ բաղում.. մարդիկ սորամուտք և քարադնացք ելին 'ի գլուխ ապառաժուտ լերին և իջին ընդ.. հեղեղատին 'ի քաղաքն, զի այն վայր ոչ էր պարսպափակ, վասն անհնարին գոլ մտից մարդկան, և սկսան կոտորել... և ապա բացին զդուռն քաղաքին՝ որ 'ի Խնծորոյ Գլուխ հայէր, և մտին զօրքն ամենայն, և սատակեցին զամենեսեան առ հասարակ, բայց 'ի բերդն ոչինչ կարացին ձեռնարկել. այլ գնացին անդրէն 'ի տեղի իւրեանց։ Ապա այս իսկ եղև սկիզբն աւերման աշ-

(1) Տես զբանս ստեփ. 'ի վերոյ 'ի ստորագրութեան Բաղաբերդոյն։

(2) 'Ի գիրս ստեփ. օրպէլեան սահմանք գաւառաց ուրեք ուրեք եդեալ կան 'ի յետագայից ըստ վիճակի վերջին ժամանակի. ըստ այսմ է՝ ուր զՆախճաւան դնէ մայրաքաղաք սիւնեաց. վասն որոյ և ոչինչ առաք յայնմանէ վկայութն յորոշումն տեղեաց։

խարհին, և օրըստօրէ սկսաւ նուաղիլ և պակասիլ իշխանութիւն այն՝ որ ունէր ընդ ձեռամբ բերդս խդ, և անուանիքն 'ի նոցանէ բժ. և վանորայս իը. և գեօղս ռն, և մայրաքաղաք զԿապանն. այս Բաղաց իշխանութիւն է‖:

Կապանաբերդ: Սարդան դնէ 'ի Կապանին՝ յաւելն. *'Ի սոյն ժամանակի առաւ և մնացեալ դղեակք Կապանին յայլազգեաց՝ Գորհամ, և Գունջ, և Կապանաբերդ‖: Առ ստեփ. օրպէլ. 'ի գլ. կա. գրի Կապանաբերդ, զոր ստորև կոչէ Բերդ կապանոյ: Առաւ զայն ամիր Հարոնն 'ի չհե:

Գունջ: Սարդան դնէ և զսոյն 'ի Կապանին, զորոյ զքանս եդաք 'ի վերոյ 'ի Կաքաւաբերդն: Յիշէ զԳունջն և ստեփ. օրպէլ 'ի գլ. կէ:

ԱՐԵՒԻՔ:

Այսպէս գրի յերկուս ձեռագիրս աշխարհագր". խաչընացւոյն, նաև առ ստեփ. օրպէլ. 'ի գլ. ղ. * Իններորդ (գաւառ սիւնեաց՝ է) Արևիք գաւառ, որ այժմ կոչի Տաշտուն և Մեղրի‖: Յորմէ յայտ է թէ վրիպակաւ գրի 'ի տպագրեալն աշխարհագր". խորեն. Արեւնք, և առ Թովմայի կիլիկեցւոյ՝ Արեւելք:

Վերջին առումն սորա եղև 'ի Թուականիս չհե (յամի տն 1126.) որպէս դնէ օրպէլեանն 'ի գլ. կա. *'Ի չհե Թվականին՝ եկն ամիր Հարոնն, և ընաջինջ արար զտուն Կապանին, և զԱրևիք գաւառ‖:

Մեղրի: Յիշատակէ ստեփ. օրպէլ. նաև 'ի կա. գլ. զոր առին ազգ Թուրքաց 'ի ոզ. Թուականիս (յամի 1157): Երևելի գոլով Մեղրի՝ յանուն սորա կոչեցաւ առ յետագայս Արևիք գաւառն, որպէս և եդ 'ի վերոյ օրպէլեանն. որ և կայ մինչև ցայսօր, որպէս և գիւղն Գաշտուն: Տես և 'ի նոր հայաստան Թղթ. 272:

ԿՈՒՍԱԿԱՆ, կամ ԿՈՎՍԱԿԱՆ:

Յերկուս ձեռագիրս աշխարհագր". խորեն". գրի Կուսական. առ ստեփ. օրպէլ. յամենայն ուրեք Կովսական. առ Թովմայի կիլիկեցւոյ՝ Կոսական. վասն որոյ վրիպակ գրչաց է Մսական, որ գրի 'ի տպագրեալ աշխարհագր".

խորէն", և 'ի միում ձեռագրի, զի անունս Սիսական 'ի գործ ածի փոխանակ նահանգին սիւնեաց, որպէս ցուցաք 'ի ներածութեան նահանգիս վկայութ̃ մատենագրաց ։ Յորս յաւել և զայս քաջայայտ բան ստեփ. օրպէլ. 'ի գլ. Գ̃. ուր յետ տալոյ զընդհանուր տեղեկութ̃ի համօրէն սիւնեաց, և թուելոյ զամենայն գաւառս նորա, ասէ. * Եւ արդ՝ այս այսքան տեղեկութ̃ի քեզ՝ բերկրանաց, պարարտութեց, և սահմանաց, և բերդից, և գաւառաց Սիսական աշխարհիս ։ Ուր յայտ է թէ՝ Սիսական աշխարհ ասելով իմանայ առհասարակ զՍիւնիս. և թէ 'ի գլ. ԺԵ. Գաւառ կոչէ՝ յասելն, թէ յաւուրս մեսրոպայ՝ * Աղանդն հեթանոսական դեռևս զօղեալ կայր ուրեք ուրեք 'ի գաւառն Սիսական և 'ի Գողթն ։ Անդամիօր ես իմանայ զնահանգն կամ զաշխարհն սիւնեաց, զի ստորև ասէ վասն մեսրոպայ. * Սկսեալ 'ի քարոզութ̃ի.. 'ի հաւատ ածել զաշխարհն Սիսական ։

Այժմ կոչի այս գաւառ Գորհամ, որպէս վկայէ օրպէլեանն 'ի գլ. Գ̃. յասելն. * Ութերորդ (գաւառ սիւնեաց՝ է) Կովսական գաւառ՝ այժմ Գորհամ կոչի ։ Եւ տեւէ մինչև ցայսօր ։ Տես 'ի Նոր հայաստան թղթ. 271 ։

Գորհամ ։ Ա. նաև անուն բերդի՝ զոր 'ի գլ. Գ̃. օրպէլեանն դասէ ընդ ամուր բերդս սիւնեաց, և յիշատակէ նաև 'ի կա̃. գլ. որպէս և այլք. յայնմանէ և գաւառն Կովսական՝ զկնի կոչեցաւ յայս անուն, զոր 'ի գործ ածեն մինչև ցայսօր, և հնչեն ոմանք Գորհամ, յորոյ ընդ սահմանն անցանեն վտակքն երասխայ՝ անուանեալք Սեղրոյ գետ, և Ձաւնդրու գետ ։

Վարդան զԳորհամ դասէ ընդ դղեակս կապանին, ուր զԿապանն դուցէ առնու ընդարձակ առմամբ նաև փոխանակ Կովսական գաւառին ։ Տես զբանս նորա 'ի վերոյ 'ի Կաքաւաբերդ ։

Նորաշինիկ ։ Գիւղ՝ զոր հրահատ իշխան սիւնեաց ետ 'ի պարգև ս̃բյ խաչին տաթևոյ, որպէս պատմէ օրպէլեանն 'ի գլ. Լ̃Թ. և բերէ զայս պայմանագիր նորին՝ յասելն. * Ապա տեսեալ և զայս մեծ իշխանին հրահատայ՝ սահակայ որդոյ, և զրիգորի, և արուամնայ եղբօր հայկազնի՝ 'ի նոյն սիսական տոհմէ, որ ունէր 'ի բաժնի ժառանգութեան զԿովսական գաւառ, և զ[illegible] (1). մոլեալ զբարիոք մոլութ̃ի, և եկեալ առ տէր դաւիթ՝ և յիւրոց

(1) Իմանայ սովաւ զ[illegible], յոր անուն կոչի Աղահեճ գաւառ ։

սեփական հայրենեացն ընծայէ զգեղն ՝Նորաշինիկ 'ի Կով-
սական գաւառի, և գրէ նամակ մՃուի անխախտ պայմա-
նաւ՝ որ է այսպէս. 'Ի յերկերիւր յիննսուն և երեք Թվա-
կանիս Հայոց, 'ի ժամանակս ՟Ծապատրի և հոգևոր ՟տն
դաւթի սիւնեաց եպիսկոպոսի, ես հրահատ .. զ՟ծընկալ
՟ոբ խաչդ ապաւէն ինձ արարի, և փոխանակ որդեաց. և
գիւղ մի 'ի Կովսական գաւառի ՝Նորաշինիկ անուն ...
ապսպրուաշիեցի իւր բոլոր սահմանօք, լերամբ և դաշտաւ
ջերմուկ և ցրտով, ծառով և տնկով. որոյ սահմանք են
այսոքիկ. յարևելից կողմանէ՝ Տորոսանոյ սահման, և 'ի
հիւսիսոյ՝ Ոսեէ, և յարևմտից՝ Տէէ, և Արտաւազոյ, 'ի
հարաւոյ՝ Կեբեն, և Անբրնէ:

՝Նորաշէնիկ անուն գիւղ բերդաւոր, զատանի մինչև ցայժմ
աւ երասխաւ, ոչ այնչափ հեռի 'ի Շոռոթայ և
յՍւրդուվարայ: Ըստ ստեփ. օրպէլ. 'ի գլ. ՟խա. յիշի
՝Նորեաց գիւղ՝ որ Թերևս է նոյն ընդ սմա. *Որդի գոլ
(ասէ) առն միոյ այրոյ և մուրացիկ աղքատի 'ի ՝Նորեաց
շինոյն||:

Անէխ: Գիւղ՝ որ յառաջագոյն սեփական էր ՟ոբ խաչին
տաճարոյ. իսկ Ջևանշէր իշխան զայն առեալ՝ փոխանակ
նորին ետ զԱրտաւազ գիւղ. *Յայսմ ժամանակի (այսինքն
'ի 877. ասէ ստեփ. օրպէլ. 'ի գլ. ՟խ.) իշխան մի սիսա-
կան Ջևանշէր անուն, որդի սահակայ սիւնեաց ՟տն՝ գայ
առ տէր սողոմոն (սիւնեաց եպիսկոպոս), և խնդրէ 'ի
նմանէ զգիւղն Անէխ որ 'ի Կովսական գաւառի, որ էր
սեփական ժառանգութիւն ՟ոբ խաչին, և եպիսկոպոսացն 'ի
հին ժամանակաց||: Սուղ ինչ ստորև գրի Անեղ, և կոչի
չէն. *Կամ եղև Ջևանշէրի .. փոխանակել ընդ Անեղոյ
շինոյն՝ որ 'ի Կովսական գաւառի էր. և չէնն բնական
՟ոբ խաչին, և հոգևոր տերանցն սիւնեաց եպիսկոպոսացն
ժառանգութիւն էր լեալ||: Մինչև ցայժմ կայ Անէխ գիւղ
'ի Խյաքան:

Տեղիք սիւնեաց՝ որոց գաւառք անծանօթ:

Ոյծ. Արձուա, և Ուան: Են 'ի սիւնիս, զի ստեփ.
օրպէլ. 'ի գլ. ժ՟բ. պատմէ Թէ հակառակութիւն եղև 'ի
մէջ սոցա, Թէ ում անկ իցէ նախագահ լինել 'ի մէջ սիւ-
նեաց, զորոց և զկարգ ընդ այլ տեղեաց որոշեցին, այլ
զամենեսին զինի Շաղատոյ. *Ընդ Ոյծ, և ընդ Արձ-

տու՝ սաստիկ հակառակութի եղև (ասէ), իսկ հնազանդակք Եղիտուացեաց՝ զԱյծնեցեացն հաստատեցին 'ի վրացն աշխարհէն լինել պանդուխտ, և նժդեհ դոլ ամենայն սիւնեաց։ Եւ դարձեալ Շահոյ և Եղիտուայ հրամայեցաւ՝ զկնի Շաղատոյ զնախնադասութե ունել զմեհադոյնն զերկրորդականն զպատիւ, և զչորրորդ (այսինքն՝ զքառորդ) նախադասութե Աւան գիւղաքաղաքին Ա՝որենւոյ ընկալեալ... և ապա զհինգերորդ զգահն հրամայեցաւ Այծնեցեաց ունել‖։ Այծ, գուցէ նոյն է ընդ Արծ տեղւոյ՝ որ 'ի վայոց ձորն։

Նորապատուն։ Այսպէս կոչէ յոհաննէս կաթուղիկոս՝ յասելն վասն սահակայ սիւնոյ եղբօր գրիգորի սուփանայ. * Գնեն զնա 'ի քնարանին առ դուրս ձեռակերտ եկեղեցւոյն իւրոյ 'ի գեօղն Նորատուսս‖։ Իսկ առ ստեփ. օրպէլ. 'ի գլ. լէ. գրի՝ Նորապատուն, ուր պատմէ զշինութի արարեալ 'ի նորին սահակայ. * Իսկ եղբայր գրիգորի (սուփանայ՝ ասէ) սահակ՝ շինէ զպանծալի յարկն մեծածախ յօրինուածովք 'ի Նորատուս գիւղ, և կարգէ 'ի նմա բազմութի քահանայից՝ յորոյ գրամն և ինքն համգուցեալ կայ 'ի տապանի‖։ Նաև 'ի ԼԸ. գլ. գրի՝ Նորապատուն, յասելն վասն մարիամոյ վերադրեալ սահակայ. * Գնի 'ի քնարանի յիւրում ձեռակերտին՝ առ դրանն մեծ եկեղեցւոյն՝ որ 'ի Նորատու‖։

Թուի լինել 'ի գեղարքունի՝ յորում տիրէին սահակ և եղբարք նորին. յայլ սակս և 'ի նմա որ էր իւրեանց սահմանն՝ սովորաբար առնէին շինութի, և թաղէին, և ոչ 'ի սահմանս օտարաց։

ՍԲ ՍԻՄՈՆ։ Շինեաց զայս գրիգոր սուփան, ուր և թաղեցաւ. զորմէ ասէ յոհաննէս կաթուղիկոս. * Հ[...]եալ թաղեալ զնա 'ի ձեռակերտ իւր 'ի սրբարանի Սիմոնեայ‖։ Զնոյն գրէ և ստեփ. օրպէլ. 'ի գլ. ԼԸ. * Եդի 'ի տապանին յիւրումն ձեռակերտ սրբարանին Սբ Շիմոնեայ‖։ Թուի լինել 'ի գեղարքունի՝ սակս վերոգրեալ պատճառի։

Մածառակայք։ Յիշատակի 'ի պատմ. օրպէլեանց 'ի գլ. Ը. զորոյ զբանս եդաք 'ի վերոյ 'ի գեղարքունի 'ի Կոռնակեր գիւղ։ Մերձ յայս անուն գտանեմք զՄած շէնն 'ի Բաղաց գաւառի. զորմէ տես անդ։

Նախիրդան։ Գիւղաքաղաք զոր շինեաց բարիկ իշխան սիւնեաց, յաւուրս Է. խոսրովայ արքայի։ * Եւ անցեալ ընդ երասխ գետ՝ շինէ գիւղաքաղաք մի՝ կոչելով զանուն

տեղոյն Նակորզան, որ Թարգմանի՝ նախ զնա գործեալ (կորզեալ) առ ինքն յիւր հայրենեացն ‖ ։ Ստեփ . օրպէլ . 'ի գլ . Ճ ։

Շըրթօտ ։ Աւերդ զոր առին Թուրքք 'ի Թուլին ռճա ։ Յիշէ ստեփ . օրպէլ . 'ի գլ . կա ։

Անդոկաբերդ ։ Յիշէ և զայն օրպէլեանն 'ի գլ . կ . 'ի կարգս ամուր բերդից սիւնեաց , որ յայտ է թէ յանդակայ իշխանէ սիւնեաց շինեալ գոլով՝ զնորին բերէ և զանուն ։

Հայրաբերդ ։ Մայրէ (Թերևս՝ Մայրի) ։ Մանանայ բերդ ։ Որոտնայ բերդ ։ Յիշէ զսոսա օրպէլեանն 'ի գլ . կ . ընդ վերոգրեալ ամուր բերդս սիւնեաց՝ յասելն , թէ են 'ի սիւնիս * Նոյն այլ ևս ամուրք գովելիք , անվախ և անառառան 'ի հնարից մարդկան ‖ ։ Նոյն ապա սկսանի թուել զվերոգրեալսն ։

Մերձին եղեալն Թերևս է նոյն՝ որ 'ի պատմ . օրպէլ . 'ի գլ . է . յիշի Որոտնայ սահման և Որոտնայ բերդ . որպէս և 'ի գլ . ճ . գրի վասն զաքարէ և իւանէ իշխանացն՝ թէ Առին և զՄեղանիս, զՄրատն, զՈրոտնայն, զՇաղէն ։ Բացայայտ ես 'ի ստորև . * Առնու զհարուածս (ըմպարիտ) 'ի Ճանապարհի յանկարծադէպ նետից 'ի գլուխ լերինն՝ որ է հանդէպ բերդին Որոտնոյ, և եկեալ անկանի 'ի բերդն Գողըղոյ վանից ‖ ։

Յուրդաբերդ ։ Յիշատակի սա 'ի խորագրի խը . գլ . ստեփ . օրպէլ . ուր աւերեցաւ ասի, և նզովք եդաւ այլ մի ևս շինելոյ . յիշատակի և 'ի խ . գլ . այլ աղաւաղեալ 'ի գրչէն ։

Սիմ ։ Մենարան անուանի՝ զոր յիշէ օրպէլեանն 'ի գլ . *Առին զնշխարս (ստեփաննոսի սիւնեաց եպիսկոպոսի,) և տանէին 'ի նը մենարանն՝ 'ի լեառն Սիմ կոչեցեալ, որ պայծառանայր Ճգնաւորամբք յայնմ ժամանակի՝ քան զնոյն և զսկիւթայն յեգիպտոս ‖ ։

Նոյն և այլ վանորայք բազումք՝ զորս ստեփ . օրպէլ . 'ի գլ . կը . թուէ կարգաւ , որք են .

Արդակաւէ վանս . յորոյ եկեղեցւոջ էր փոս ինչ փոքր 'ի նշան կնիքին՝ որ կայր անդէն նախ քան զշինութիւն . և իշխանքն սիւնեաց անդանօր շինեցին զայս եկեղեցի և զմենարան ։

Մաղարդնին վանք (1) ։ Նորիցավանք ։ Որք էին միաբանաշ-

(1) Տես վասն այսր վանաց 'ի գաւառն Բաղաց՝ զկնի Որոտնայ ։

տօնք ։ Շապանեայ վանք ։ Նոյնպէս մշտապաշտօնք ։

Գողըրեայ վանք ։ Մահանոս վանք ։ Սա էր շիրիմ Թագաւորացն սիւնեաց. որպէս յայտ առնէ այս բան ստեփ. օրպէլ. 'ի գլ. ծԹ. ասելով զմարմինս սենեքարիմայ Թագաւորին սիւնեաց. * Դարձեալ տարան 'ի մէջ ուխտն Մահանու, և անդ եդին 'ի շիրմի ընդ այլ Թագաւորսն ‖ ։

Ձանճ ձորակ. Բնակիչքն էին խորագնացգեստք, և սահմանաւորք ։ Թուի լինել անապատն Գանձափարախու որ կայ մինչև ցայսօր 'ի վերին կողմանս Գուրհամայ՝ մերձ 'ի չափնդրու վտակն երասխայ ։

Լուսնէ վանք ։ Լըրչէ վանք ։ Արծուիս վանք ։ Գոդէի վանք (1) ։ Կրուտափաջորոյ վանք ։ Ծղեծանոյ վանք (2) ։ Խաչափրոյ վանք ։ Ջիւնատարու վանք ։

Յետ Թուելոյ զսոսա և զայլսն՝ (զորս եդաք 'ի վեր անդր յիւրեանց գաւառին), ասէ ստեփաննոս օրպէլ. * Ահա զայս ամենայն վանորայքս յականէ և յանուանէ 'ի գլխաւորագունիցն, յորոց բազումքն ամայի և Թափուր են 'ի շինութենց, և սակաւքն 'ի լուսաւորութեան այժմ՝ որք Թուով Հ. բայց այլ ևս բազումք կային, զորս ոչ Թուեցաք ‖ ։

(1) Տես յանծանօԹս մեծին հայոց զ'Իրագի վանս ։

(2) Յիշէ զայս վարդան աշխարհագիրն զենի տաԹևոյ, կոչելով ըստ երկուց օրինակաց Ծղեծանավանք. յայլում օրինակի գրի Ծղեծակավանք. 'ի միում՝ Ծղեծենավանք. իսկ յայլ միւսում՝ Ծղեծատնավանք. և առ ստեփ. օրպէլ. 'ի գլ. ԼԹ. յիշատակի՝ Ստեփաննոս Ծղեծանոյ վանքն ։

## ՆԱՀԱՆԳ ՏԱՍՆԵՐՈՐԴ

# ԱՐՑԱԽ

Ուրեք ուրեք գրի և Ուրճախ: (1) Կոչի սա և Աղուանից աշխարհ, քանզի որպէս գրէ Խորենացին մ՟ռ ժ՟ը. գաւառաց սորա՝ աղուանք գրաւեալ ունէին: * Գաւառք են (տասն) 'ի նմա ժ՟ը. զոր Աղուանք ունին || : Այսմ որոյ և 'ի սորագրութեան աղուանից զժ՟ը. գաւառն արցախայ դնէ նաև անդ, ըստ որում յայտ է 'ի զանազան օրինակաց: Կոչի նաև Աշխարհ առանայ, ըստ որում Առան եղև առաջին կողմնակալ աշխարհին աղուանից, ընդ որոյ անուամբ բովանդակէր նաև Արցախ:

Կոչի և Փոքր Սիւնիք, քանզի զԱմարաս գիւղ՝ ուր Թաղեցաւ երանելին գրիգորիս՝ նախնիք, Խորենացին, և Յովհաննէս կաթողիկոս դնեն 'ի Փոքր Սիւնիս, որպէս ունիս տեսանել առօրև: Իսկ Ճառընտիրն 'ի պատմութե գիւտի նշխարաց նորին գրիգորիսի՝ զԱմարաս ծանուցանէ լինել յԱրցախ. քանզի գրէ՝ թէ յոբ ամս ճգնաւոր քարոզէր 'ի գաւառ Խնչ Արցախոյ, ուստի և բնակէր յԱրցախ. և բնակութի նորա էր մերձ 'ի տեղին՝ ուր կայր թաղեալ մարմին նորին գրիգորիսի՝ որ էր յԱմարաս (2):

(1) Որպէս առ բուզ. գ. 50. և Ե. 12. 'ի տպ. և յերկս ձեռագիրս: 'ի Ճառընտ''. 'ի պատմ. գիւտի նշխարաց գրիգորիսի. ուր յերկուս օրինակս գրի այսպէս, և 'ի միումն Ուրծախ, որ է վրիպակ 3 տառիս: Ուրճախ գրի և առ Եղիշէի 'ի թղթ. 125. նաև 'ի 93. բայց վերջինն 'ի ձեռագիրս որ առ մեզ՝ գրի Ուրցախ:

(2) Զի գրէ նախ վասն նորին յոբայ. 'Սա բազում անգամ եկեալ կատարէր զյիշատակ նոյն գրիգորիսի, և ասէր երկիցս և երիցս առաջի բազմաց՝ թէ Թագաւոր հաւատացեալ յառնելոց է յաղուանից աշխարհիս, նա առնէ խնդիր տեղւոյս, և նոյ նշխարացն գրիգորիսի ||: Յայտ է թէ զյիշատակ նոյն գրիգորիսի կատարէր այս յոբ 'ի տեղւոջն՝ ուրանոր էր թաղեալ, որ այն ինքն է Ամարաս, զի զայն ցուցանէ ասելն նորին. 'Նա առնէ խնդիր տեղւոյս ||: Որպէս և վաչագան Թագաւոր աղուանից՝ զորմէ գուշակէ այս յոբ, յԱմարաս արար խնդիր վասն նշխարաց գրիգորիսի. իսկ զայն գնէ յԱղուանից աշխարհի, որ յարմարի Արցախոյ.

Նաեւ ես բուզանդ յայտնի գնէ՝ թէ Ամարաս ուր թաղեցաւ երանելին գրիգորիս՝ էր 'ի Հաբանդ գաւառի. իսկ այս է Հաբանդ Արցախայ, և ոչ Սիւնեաց. նմին իրի և փոքր սիւնիք կոչեցեալն է Արցախ:

Նաեւ թէ յիշատակեալն 'ի բուզանդայ է Հաբանդ Արցախայ, և ոչ Սիւնեաց, յայտ առնէ այս բան ստեփ. օրպէլ. 'ի գլ. Ե. ուր զԱմարաս և զփոքր Սիւնիս յայտնի օտար կացուցանէ 'ի Սիսական աշխարհէն՝ որ է Սիւնիք, յասելն վասն 'որյն գրիգորի լուսաւորչին; թէ երթեալ 'ի վիրս, անտի յաղուանս, 'ի մասքութս, և 'ի պահակն հոնաց, ապա * Գնայ 'ի փոքր Սիւնիք, և մտեալ յԱմարաս՝ շինէ եկեղեցի, և թողու անդ սպասաւորս, և եկեալ անտի՝ գայր 'ի սահմանս Սիսական աշխարհիս, որում ընդ առաջ ելեալ մեծ նախարարն սիւնի՝ բերեալ յաշխարհ և 'ի տուն իւր . . . և շրջեցուցեալ ընդ գաւառն ամենայն՝ հաստատէ 'ի հաւատս||: Արդ՝ եթէ ըստ բուզանդայ Ամարաս է 'ի հաբանդ, և ըստ ստեփաննոսի՝ արտաքոյ սիւնեաց նահանգին, զհետ գայ՝ հաբանդայ լինել այն՝ որ է 'ի մէջ արցախայ, և ոչ որ 'ի մէջ սիւնեաց (1):

Յայս անուն փոքր սիւնեաց թուի ինձ կոչեցեալ Արցախ նահանգ վասն իւրոյ Սիսական գաւառին, զոր յորոշումն միւս Սիսականին՝ որ է առհասարակ նահանգն Սիւ-

և ոչ Սիւնեաց:

* Դարձեալ ստորև պատմէ նոյն յոբ՝ թէ Անապատական ոմն հիւր եկն առ Գէղ, և մեք ընկալաք զնա ըստ օրինի եղբարց. իսկ նա եւեալ ** 'ի տեղիդ յայդ ննջեաց՝ ուր էր թաղեալ մարմին 'որյն գրիգորիսի. կանգնեաց խաչ 'ի տեղւոջդ, և պատուէր ետ անխափան աղօթս առնել անդէն||: Յորմէ յայտ է՝ թէ ինքն յոբ քարոզիչ և բնակիչ արցախայ՝ էր մերձ յԱմարաս, ուր էր մարմին գրիգորիսի: Քաջայայտ ես պատմէ զկնի. թէ * Ակյլ ոմն ձեռով արեղայի եկեալ՝ ընկալեալ եղև 'ի մենջ||: իսկ նորա գողացեալ ըզբաժակ գինւոյն վաճառեաց, և սկսաւ տանջիլ այնչափ՝ մինչև գնալ յերուսաղէմ 'ի բժշկիլ. իսկ անդ ձայն լինէր առ նա՝ թէ առ 'ի բժշկիլ հարկ է քեզ գնալ անդ * Ուստի զբաժակն գողացար. անտի յարուցեալ այրն այն՝ առնոյր զգինս բաժակին յերուսաղէմտանէր յԱմարաս, և եկեալ յեկեղեցին կոչեաց առ ինքն զվանաց երէցն, և սկսաւ ողբալով խոստովանել զիրսն, և սաստիկ աղաչէր՝ առնուլ զգինս բաժակին||: Այս ամենայն բանք նորին պատմութեան՝ յայտ առնեն, թէ յոբ քարոզիչ արցախայ՝ բնակէր առ ընթեր ամարասայ. ուստի և Ամարաս էր յԱրցախ:

(1) Զլինելն Ամարասայ յԱրցախ՝ ակնարկեն և բանք առաջելի 'ի պատմ. յոհաննու ծարեցւոյ, որպէս և վարդանայ աշխարհագրի. զի առաջինն 'ի թղթ. 579. զԱմարաս դնէ յերկիրն վարանդայ և գիզակայ. իսկ զայսոսիկ վարդան աշխարհագիր ցուցանէ լինել յԱրցախ:

նեաց՝ որպէս ցուցաք յիւրում տեղագրութեան, կոչեցաւ սա Փոքր Սիւնիք: Որպէս և զմիւս հարաւոյն արցախայ խորենացին յաշխարհագրութեան ՚ի տեղագրութեան աշխարհին ագուանից կոչէ Փոքր Հաբանդ: Յայսմանէ կրկին որոշէ վարդան աշխարհագիր * Մեծ Սիւնիս, և Փոքր Սիւնիս ‖, որ ոչ յիշատակի առ այլս (1):

Նա այսպէս վրիպակ երևի՝ Փոքր Սիւնիք կոչեցեալ համարիլ զերկիրն Շօարայ՝ ըստ որում դնի ՚ի գիրս առաքելի ՚ի թղթ. 580. ՚ի բանն որ վասն յովաննու վարդապետին ծարեցւոյ: * Զի էր նա (ասէ) յերկրէն Շօարայ Փոքր Սիւնիս կոչեցելոյ, ՚ի վանիցն Թադէու ՚մեց առաքելոյն ‖: Զի Շօարայ երկիրն ըստ վարդանայ աշխարհագրի՝ է Մոթք գաւառ Սիւնեաց նահանգին, որպէս ասացաք ՚ի վեր անդր (2):

Նմանք յարդեալ՝ զԳաբեանդն յիշատակեալ ՚ի բուզանդայ՝ նոյն կարծելով ընդ այժմեան անուանս Խաչէն, զՍիսականն համարին կոչեցեալ ՚ի հնումն Փոքր Սիւնիք. բայց որպէս գրեցաք՝ այժմեան Խաչէն է նոյն իսկ հին անուանս Կողթն, որ առաւել ՚ի հնումն կոչէր Ջորք, և էր մի ՚ի գաւառացն Սիւնեաց. բայց թէ և ընդարձակ առնմամբ Խաչէն կոչեսցեն զՍիւնիս, նաև զԱրցախ գէթ ըստ մասին, յայնժամ ևս ոչ յարմարի Ծղգրտիւ կոչել Փոքր Սիւնիք, յոր անուն ըստ մեզ կոչէր միայն Արցախ:

Նա յետագայս Արցախ կոչեցաւ Խաչէնք, որպէս վկայէ վարդան աշխարհագիր յասելն. *Արցախ Խաչէնք է‖: Նոյնպէս և յայսմաւուրս մարտի 29: Զայս անուն ՚ի գործ ածէ և ներսէս լամբրոնացի ՚ի թուղթն առ լևոն արքայ: Նոյնպէս և սոփ. օրպել. ՚ի գլ. կա. ուր ասէ. * Նա ածել ՚ի Խաչենոյ իշխանացն մանուկ մի հասան անուն ‖: Յայտ առնէ զայս և դիրք խաչէնոյ՝ զոր նշանակեն կի-

(1) Մարթ է համարել՝ թէ վարդան աշխարհագիր՝ յայս անուն կոչէ զսահման երկուց ցեղից իշխանութեանց, որք էին ՚ի Սիւնիս. այլ այսմ ոչինչ ունիմք ապացոյց ՚ի մատենագիրս՝ զորս ՚ի ձեռին ունիմք. բայց եթէ՝ զի երկու իշխանութիւնք ևս ունէին ուրոյն ուրոյն սահման:

(2) Բաց յայլոց բանից կիրակոսի՝ այսմ ապացոյց է և այն բան՝ զոր գրէ ՚ի գլ. Հ. վասն Ջալալ իշխանին. *Զոգաւ առ նա (այսինքն առ բաթու զօրավար թաթարաց,) և մեծ իշխանն Խաչենոյ, և կողմանցն Արձախու հասան՝ զոր Ջալալն կոչէին գգուանօք ‖: Ուր յայտնի է թէ զԽաչէն ամրոցն (որում տիրէր հասան՝) ակնարկէ լինել ՚ի կողմանս Արցախայ:

րակոս և վարդան, դնելով մերձ յաղուանս և 'ի վերս, որպիսի է և գիրք արցախայ։

Օ այս անուն ընկալաւ յամրոցէն որ կայր անդ 'ի վաղուց անտի, զոր յիշէ յոհաննէս կաթուղիկոս յասելն. * Իսկ բուղայի երթեալ ըմբռնէ զմեծ իշխանն ատրներսեհ՝ որ բնակեալ էր յամրոցին խաչէնոյ ||։ Օ նոյն անւարկէ և կիրակոս՝ յասելն վասն ստեփ. կաթուղիկոսի աղուանից. * Օ երծեալ 'ի վտանգէն՝ չոգաւ 'ի կողմանս Խաչէնոյ, և այլ ոչ իշխէր մտանել 'ի սահմանս գանձակայ ||։ Ուր ոչ իբրև գաւառ, այլ իբրև առանձին տեղի յիշատակէ. Թէպէտ և ուրեք գաւառի անուն տայ՝ յասելն. * Սորա գաւառօք Խաչէնեցի էին յերևելի ազգէ ||։ Նա և այլուր կոչէ Արցախ, յասելն վասն մխիթարայ գօշի. * Նկեալ նա յԱրցախն Խաչէնոյ առ վախթանգ իշխանն խաթերքոյ ||։ Նա և թէ՝ * Ո րնեաց վարդապետն (մխիթար) իւր միաբանութն ձեռնտուութբ վախթանկայ Խաչէնեցւոյ տն հաթերքոյ ||։

Առ վարդանայ յիշատակի և Ներքին Խաչէն, յասելն նորա. * Միւս վախթանկ սակաւեանց փեսայն իւանէի տր Ներքին Խաչէնոյ ||։ Ուր միւս ասելով զատանէ յառաջնոյն վախթանկայ, զոր և սուղ ինչ յառաջ յիշատակէ, կոչելով * Տէր Հաթերքոյ ||։

Արցախ սահմանակից ունելով զփինիս՝ ունի անտառս, որ յիշատակի առ եղիշէի թղթ. 125. * Կէսքն (ասէ՝ ամրացան) 'ի թանձրախիտ մայրիսն Արցախայ ||։ Նոյնպ և առ յովհաննու կաթուղիկոսի, յորս ամրացան հայկազուն իշխանքն սիւնեաց յերեսաց յուսփայ։ Ունի և անառիկ ամրոցս, և բազում քարաժայռ և դժուարին կողմանս, զորս առ դժուարամատոյց գոլոյն՝ կոչէին Հաւանաղայս, որպէս գրեն վարդան և կիրակոս՝ անուամբ խաչէնոյ. Նմին իրի առ բուզանդայ 'ի դ. 50. կոչի Ամուր գաւառն Արցախայ ||։

'Ի բերդ՝ խորենացւոյն յաշխարհագրութ. դնէ միայն Պարախունկ։

Այս նահանգ ապստամբեցաւ 'ի Է. արշակայ արքայէ, այլ մուշեղ սպարապետ պապայ դարձեալ էառ, և 'ի հարկի կացոյց ընդ տէրութբ հայոց՝ ըստ պատմելոյ բուզանդայ 'ի դ. 50. և 'ի Ե. 12։ Իսկ առ ժամանակօք խորենացւոյն էր ընդ տէրութբ աղուանից՝ որպէս ասացաք։ 'Ի մէջն անդ Ժդ. դարուն տիրէր 'ի Խաչէնք բարեպաշտ մեծ իշխանն Ջալալ անուն յազգէս հայոց՝ որպէս գրէ կի-

ակոս, ր ազգականք իւր տանձկահաւատք դեղ մահու րբաւցեալ սպանին ։ Յայնմ դառնութեան ժամանակի 'ի յաշէնք կային ամրացեալք երևելի իշխանազունք յազ. էս հայոց՝ փախուցեալք յիւրեանց սահմանաց . այլ 'ի մին ժդ . դարու բազում ապականութիւ և քանդմունս ործեցին 'ի սմա հոնք և մուղալ թաթարք ։

Սամս թուոյ գաւառաց սորա 'ի տպագրեալ և յերիս եռագիրս աշխարհագրութեան խորենացւոյն միաբան գրի նել ժբ . ապա 'ի համարելն յանուանէ 'ի տպագրեալն յերկուս ձեռ" դնի ժդ ։ 'Ի միում և եթ ձեռ" համա ն՝ ժբ . քանզի պակասի 'ի նմա մետասաներորդ գաւառն . ակ ժբ, և ժդ . գաւառք 'ի մի յօգլին իբրև մի գաւառ . Եւ յայս օրինակ աշխարհագրութեան խորենացւոյն 'ի բա ւմ աշխարհս բազում գաւառք պակաս գրին ։ Ի Թովմայի կիլիկեցւոյ՝ որ է օրինակ աղձատեալ, գաւառք րցախայ 'ի վերոյ դնին լինել ժբ . իսկ ստորև 'ի թուելն անուանէ՝ ժ . և եթ յիշատակին ։

Մեք յառաջիկայս զժդ . գաւառս ես կարգեսցուք մի առ միոջէ, դնելով առ ընթեր զտարբերութիւս օրինա. աց՝ որչափ ինչ մարթ է, թողեալ զստուգութիւն յետա. այից . զի հարկ է վրիպակ լինել՝ կամ առաջին ժբ . թուոյ, կամ ստորև եդեալ ժդ . անուանց ։

| | |
|---|---|
| ա . Մեռոս Հաբեշոց . | զ . Հարճլանք (4). |
| բ . Սոյենանէք (1). | է . Մոխանք (5). |
| գ . Բերէիոր (2). | ը . Պլեանք . |
| դ . Մեծ Երանք . | թ . Պարծկանք . |
| ե . Մեծ Կոստանք (3). | ժ . Սիսական (6). |

(1) Այսպէս դնի յերկուս ձեռ" խարհագր . խորեն . 'ի յարցախ յաղուանս . իսկ 'ի տպագրեալն երկուս տեղիս ես դնի Վոյենանէք ։

(2) Այսպէս գրի յերկուս ռ" աշխարհագրութեան խորեն" սա և յաղուանս . որպէս և 'ի պ . յաղուանս դնի Բերէիորս . յոր. վրիպակ թուի լինել Բերէդա. անուն՝ որ դտանի գրեալ 'ի ում ձեռ" և 'ի տպ . միայն 'ի ստո. ագրութե արցախայ, և ոչ աղուա. ց, և առ Թովմայի կիլիկեցւոյ ։

(3) 'Ի տպ . 'ի ստորագրութեան ռուանից վրիպակաւ գրի Մեծ Կոստանք ։

(4) Այսպէս դնի յերկուս ձեռ" նաև 'ի տպ . յաղուանս . իսկ յար. ցախ՝ 'ի տպ . և 'ի միում ձեռ" դնի Հարճլանք . 'ի յաղուանս յեր. կուս ձեռ" վրիպակաւ դնի Հոնչանք ։

(5) Այսպէս դնի յարցախ 'ի միում ձեռ" և եթ . իսկ յայլս և 'ի տպ . դնի Մախանք . բայց յա. ղուանս Մոխանք գրի 'ի տպ . և յերկուս ձեռ" ։

(6) 'Ի միում ձեռ" գրի Սիսա. կան ոստանն . առ Թովմայի կիլիկ . Սիսականք ։

ԺԱ. Ուռուտ (1). ԺԳ. Փառնէս.
ԺԲ. Ուասուտ (2). ԺԴ. Կողբ (3).

## ՄԻՒՍ ՀԱԲԱՆԴ։

Խորենացին 'ի ստորագրելն զաղուանից աշխարհ, կոչէ զսա՝ Փոքր Հաբանդ՝ յորոշումն Հաբանդայ սիւնեաց ։

Ամարաս։ Գիւղ կամ աւան՝ յորում թաղեցաւ ոսկերն Գրիգորիս աղուանից եպիսկոպոս ։ * Զոր բարձեալ աշակերտաց նորուն ( ասէ Խորենացին 'ի Գ. 5. ) բերելով 'ի փոքր սիւնիս թաղեցին յԱմարաս աւանի ‖։ Իսկ այժմ և Յովհաննէս կաթուղիկոս. * Հանգուցանէին զոսկր մարմին նորա ( այսինքն Գրիգորիսի ) 'ի գեօղն Ամարաս (4) որ 'ի փոքր սիւնիս ‖։

Անկանի յայսմ Միւս Հաբանդ կոչեցեալ գաւառի՝ ը որում յայտ առնէ Բուզանդ 'ի Գ. 6. ուր յերիս ձեռագիրս գրի Ամարաղ։ * Բարձին զնա ( այսինքն զմարմին Սրբոյն Գրիգորիսի ) որք ընդ նմա երթեալ էին՝ 'ի գաւառէն Հաբանդայ, և բերին 'ի գաւառն Խուրեանց 'ի կողմանս աղուանից 'ի սահմանս հայոց 'ի Հաբանդ, 'ի գիւղն՝ որ անուանեալ կոչի Ամարաղ (5), և եդին զնա առ եկեղեցեաւն՝ զոր շինեալ էր առաջնոյն մեծին Գրիգորի ‖։ Ուրեմն իմանալ զՄիւս Հաբանդն՝ որ է յայսմ յարցախ նահանգի, և ոչ որ էր 'ի սիւնիս. քանզի այլք զԱմարաս

(1) Այսպէս գնի յերկուս ձեռ"։ իսկ առ Թովմ. Կեղեկ. վրիպակաւ գրի Կոփայք, որ է գաւառ այրարատոյ։ 'Ի տպ. գրի Քոփայ. իսկ 'ի միում ձեռ" պակասի այս անունն ։

(2) Այսպէս գրի յերիս ձեռ" նաև 'ի տպ. յաղուանս. ուստի վրիպակաւ գրի Քոսոփէմ 'ի տպ. յարցախ ։

(3) Այսպէս գրի յերիս ձեռ" ստ և յաղուանս, որպէս և առ Թովմ. Կեղեկ. առ Բուզանդայ Ե. 13. իսկ 'ի տպ. աշխարհագր. խոր. յաղուանս գրի Կողբ, և միայն յարցախ գրի Կոխթ ։

(4) Ամարաս գրի և յերկուս հին ձեռ" Վարդանայ՝ առանց յիշելու զգաւառն. նոյնպէս և առ Կիրակոսի։ Առ Ասողկայ 'ի Բ. 1. գրի Ամարան աւան, նոյնպէս գնի 'ի փոքր սիւնիս։ 'Ի յայսմաւուրս տէր Իսրայէլի գրի 'ի դեկտ. 2. Ամարեան աւան. զի ասի. ' Բարձեալ աշակերտաց նորա զմարմինն (Սրբոյն Գրիգորիսի) բերին 'ի փոքր սիւնիս, (և) թաղեցին յԱմարեանն աւանի ‖։

(5) Այսպէս գնի յերիս ձեռ" Բուզանդայ. այլ յերիս ճառընտիրս՝ (յորոց երկուքն են հին.) 'ի վարս Սրբոյն Գրիգորիսի որ առեալ է 'ի Բուզանդայ՝ գնի 'Ի կողմանց աղուանից։ իսկ գիւղն գրի Ամարաս. յորմէ յայտ է թէ՝ ուղիղ գրութիւն է Ամարաս, և ոչ Ամարաղ, կամ Ամարան, որ գրի ուրեք առ Ստեփ. Օրպէլ. և 'ի միում ճառընտրի ։

դնէն 'ի փոքր սիւնիս, իսկ փոքր սիւնիք կոչէր արցախ՝ որպէս ցուցաք 'ի վերոյ [1]։ Ընդ մէջ սորա անցանէր և գետակ, զի ասի 'ի Ճառընտրի 'ի պատմութեան գիւտի նշխարաց գրիգորիսի․ *Իբրև մերձ եղեն 'ի գետոյն մտանել՝ գետ փոքրիկ անցանէր ընդ մէջ շինոյն (ամարասայ,) և կամուրջ կազմ 'ի վերայ նորա ||։

Յիշեցի ասանիս զոր յիշէ բուզանդ՝ ոչ էր բոլորովին շինեալ 'ի սրբոյն գրիգորէ լուսաւորչէ, այլ միայն սկզբնաւորեալ․ զոր կատարեաց թոռն գրիգորիս՝ որպէս դնի յայսմաւուրս մարտի 6 ։ *Տարեալ եդին (զմարմին գրիգորիսի) 'ի գիւղաքաղաքն Ամարաս, յեկեղեցին զոր հիմնարկեալ էր թոռն գրիգոր լուսաւորչին, և մանուկն գրիգորիս կատարեալ էր զայն շինութբ, և օրհնեալ||։ Յարևելեան կողմն եկեղեցւոյս վաչագան արքայ աղուանից յելս է․ դարուն գտանէ զմարմին թոռին գրիգորիսի, որ և *Ի վերայ գերեզմանին հրամայէր արկանել հիմն մատրան, և փութապէս աւարտել, անուն կոչել մատրանն՝ Սբ գրիգորիս||․ որպէս գրի 'ի Ճառընտրի 'ի պատմ․ գիւտի նշխարաց սրբոյն ։ Ունէր և Մենարան՝ զոր յայտ առնէ այս բան Ճառընտրին․ *Ընդ ուրեմն գողացեալ աբեղայ մի 'ի նշխարացն՝ որ էր յԱմարասայ Մանայն||։

Օառաջինն այս գիւղ էր Եպիսկոպոսանիստ․ զի ասի անդէն 'ի Ճառընտրի․ *Ընդ այն ժամանակս (այսինքն 'ի ժամանակս վաչագանայ) ոչ գոյր եպիսկոպոս յԱմարաս․ հարցեալ արքայի զգեղջ էրէցն||, Թե ։ Իսկ օրպէլեանն ստեփաննոս 'ի գլ․ Կ․ դնէ լինել 'ի հնումն աթոռ կաթուղիկոսացն աղուանից, ուր և պատմէ զկողոպտելն եկեղեցւոյն 'ի ժամանակս բատուն խանին թաթարաց՝ որ թագաւորեաց 'ի 1295․ *Սա (ասէ՝ այսինքն բատուն) յաղլկեալ զՋալալն որդի տարսախճին՝ այլ և մուղալ արամբք 'ի մեծ աթոռն աղուանից յԱմարաս, որ 'ի հինն լեալ էր աթոռ կաթողիկոսաց նոցին․ և ետ սանել առ ինքն զգաւազան սրբոյն գրիգորիսի որդւոյն վրթանայ, որդւոյն սրբոյն գրիգորի լուսաւորչին՝ քանզի և կայր գերեզմանն նորին անդ, վասն որոյ և գաւազանն 'ի նմին եկեղեցւոջ պահեցաւ․ և ընդ նմին տարան և զքանչելի խաչն ածահրաշ՝ որ 'ի հին ժամանակաց կայր անդ կազ-

(1) Նոյ այսպէս վկայէ վարդան աշխարհագիր՝ որ զԱմարաս դնէ յՈւտի գաւառին, յասելն․ * Ուտի 'ի մօտից կայ երասխայ ․․ ուր մեծ եկեղեցին է Ամարաս, ուր կան նշխարքն գրիգորիսի աղուանից կաթողիկոսին ||։

մեալ 'ի համակ ոսկւոյ, և զարդարեալ ըՎ̃. ակամբք պատուականօք, և այս 'ի մատնելոյ լերբ և անզգամ Լիւիցումի 'ի նոյն վիճակէ: Եւ զի անդ (էր) դուստր կայսերն յունաց դեսպինա անուն' որ ածեալ էր 'ի կնութի Ապաղա ղանին, և մուծեալ էր յորդեգիրս զլայտոյն (խանն), սա բազում Թախանձանօք խնդրեաց զխաչն և զգաւազանն, յուղարկեաց 'ի Թագաւորական քաղաքն կոստանդինուպօլիս: Եւ այսու օրինակաւ կողոպտեցաւ աշխարհն աղուանից (1) 'ի պատուական և յածայլն գանձուցն ‖:

## ԳԱՐԾԿԱՆՔ, կամ ԳԱՐՁԿԱՆՔ:

Զանազան օրինակաւ գրի տորայս անուն, զի յերկուս ձեռագիր օրինակս աշխարհագրութե խորենացւոյն 'ի ստորագրութե արցախայ և աղուանից, որպէս և առ Թովմայի կիլիկեցւոյ գրի Գածկանք. յերկուս ճառընտիրս 'ի պատմութե գիւտի նշխարաց գրիգորիսի' Գարգկանք, ըստ այնմ յասելն. * Երանելոյն յորայ ճգնաւորի հաւատացուցանելն զմեծագոյն Արցախոյ գաւառն Գարդկանց (2) ‖. Այլ ուղիղ գրութի երևի Գարծկանք. որպէս գնի 'ի տպագրեալ օրինակն աշխարհագրութե խորենացւոյն 'ի ստորագրութե աղուանից. որում և յարմարի գրեալն 'ի ճառընտրի, զի տառս դ և ծ դիւրաւ փոփոխին:

Յայս գաւառ (զոր պատմութի ճառընտրին ակնարկէ լինել մեծագոյն գաւառ արցախայ,) մինչև 'ի Ե. դար մնացեալ կայր աղանդն հեթանոսութե, զոր եբարձ յոր միայնակեաց յելս այնր դարու: * Յոր անն այր ճգնաւոր (ասի 'ի նմին պատմութե,) և յոյժ առաքինի վարուք կեցեալ յաշխարհի, ունէր և առաքելական շնորհս, որ

(1) Յաշխարհէն աղուանից դնէ զԱմարաս ոչ միայն օրպէլ. յայս բան, այլ նաև ճառընտ.'ի պատմութե գիւտի նշխարաց գրիգորիսի. որով ոչ թէ կամին արտաքոյ հայոց աշխարհէն, և արտաքոյ հաբանդայ կացուցանել, այլ վասն զի Արցախ նահանգ էր ընդ տէրութբ աղուանից՝ որպէս ասացաք 'ի վերոյ, աշխարհ աղուանից կոչեն և զհաբանդ և զԱմարաս վասն տէրութե նոցին:

(2) Յօրինակի միում գրի Գարդկաց. իսկ 'ի միում ճառընտրի Գարդկանք, յորմէ օտար գրութիւն երևի լինել Գանձկանք, որպէս գրի 'ի միում ձեռագրի աշխարհագրութեան խորենացւոյն. որ 'ի տպագրեալն գրի Գարծկանք:

բազմաջան աշխատութեամբն իւրով հաւատով և սիրովն քո՛յ՝ զմեծազօրն Արցախայ աշխարհ մի Պարզկանք կոչեցեալ՝ դարձուցանէր 'ի մոլար Ճանապարհէն, և 'ի դիւանուէր մոտի պաշտամանցն փոխարկեալ, առնէր ծանօթս քո՛յ ա՛ծութեն, և անճառ խորհրդոյ ս՛բյ երրորդութեն պաշտօնատարս ||:

'Ի կողմանս արցախայ գտանի մինչև ցայժմ գիւղ ինչ Պոյէյֆան, կամ Պէյլէֆան ձայնեալ, ոչ այնչափ հեռի յԵրասխայ և յորոտն վտակէ, որ թերևս է սոյն այս անուն աղձատեալ:

ՓԱՌՆԻՍ:

Սեպհական է այսմ գաւառի 'ի մի յօդիլ ընդ անուանց երկուց այլոց գաւառաց. երբեմն ընդ անուանս Բաղաց, կոչելով Բաղափառնէս, որպէս է տեսանել 'ի միում ձեռագիր աշխարհագրութե խորենացւոյն, և առ Թովմայի կիլիկեցւոյ. թէպէտ և երկոքին ևս վրիպեն 'ի տառս ինչ:

Ըստ այսմ և Եպիսկոպոսն Միսայէլ անուն՝ կոչի Եպիսկոպոս Բաղափառնէսայ, 'ի խորագրի Ճառին իւրոյ՝ այսպէս. * Նորանուէրյն Միսայէլի հայոց Եպիսկոպոսի մեծի կողմանցն և Բաղափառնեայ նահանգին 'ի ՚նք խաչն ա՛ծընկալ||:

Եւ երբեմն յօդի ընդ անուանս Սիսական, համառօտելով և այլայլելով իւր Փառիսոս կոչելով. յայտ է այս անտի՝ զի նոյն իշխանքն կամ Թագաւորքն որք կոչէին Փառիսոսոյ Թագաւորք, այլուր կոչէին Թագաւորք Սիսականին. զորօրինակ ասողիկ Գ. 17. զմայր աբասայ Թագաւորին կարուց՝ ասէ լինել, * Բոյր Թագաւորացն Փառիսոսոյ սենեքերիմայ և գրիգորոյ||. իսկ զսենեքերիմ ստեփաննոս օրպէլ յատանաւոր ողբս իւր դնէ Թագաւորեալ՝

* 'Ի տան Բաղաց սիսականին ||(1):

Ասողիկ 'ի Գ. 48. գրէ. * Իշխանքն Փառիսոսոյ որ

(1) Բանք ստեփ. օրպէլեան.

* Բայց մեւս ևս այլ ըղձաց լուցին,
'ի տան Բաղաց սիսականին.
Սմբատ սեպհւհն այն մեծ սիւնին
'ի հայկազանց այն առաջին:...

Թագաւորեալ Թագ կապեցին, ...
հարիւր և քսան ամք յաւելին ...
Որոց վերջին Սենեքարիմ,
նաև Գրիգոր որդի նորին.
Ապա և զայս 'ի բաց բարձին, ...
ազգն այլասեռ և պարսկային||:

'ի հայկազնեայ ազանց բաւեալ մինչև ցսենեքերիմ և 'ի գրիգոր՝ սպառեցան մահուամբ ||։

Նոյն լինելն փառխոսոյ ընդ փառնէս գաւառին՝ յայտ է և անտի, զի գաւառ անուամբ յիշատակէն, որպիսի էր Փառնէս, և սահմանակից ցուցանեն լինել սիւնեաց և արցախու՝ որ յարմարի սմա ։ * 'Ի սոյն աւուրս (ասէ վարդան) կին մի մամ անուն գայ 'ի պարսից երեք որդւովք 'ի գաւառն փառխոսոյ առ գրիգոր փառաւոր իշխանն ||։ Նա ասողիկ 'ի գ. 30. * Տիրեաց նա (այսինքն գագիկ յաջորդ սմբատայ) յոլով բերդից և գաւառաց՝ 'ի սահմանացն վայոց ձորոյ, խաչենոյ և փառխոսոյ ||։ Իսկ Խաչէնք որպէս գրեցաք 'ի վերոյ՝ է Արցախ ։

Օվանս փառխոսոյ յիշէ կիրակոս 'ի գրելն մ՟ պետրոսի աղուանից կաթուղիկոսի. * Տ՟ պետրոս ամս ժգ. յառաջնորդութեան Փառխոսոյ վանաց ||։ Վանմնակն է զկնի (կամ յաւուրս) անանիայի կաթուղիկոսի հայոց, զկնի ՟ն. թուականին հայոց ։ 'Ի փառխոսոյ էր և հռչակաւոր վարդապետն յովհաննէս մականուն Սարկաւագ կոչեցեալ՝ զորմէ գրէ վարդան. * Նին և վարդապետք յայնմ ժամանակի Յովհաննէս որ և Սարկաւագ 'ի գաւառէն Փառխոսոյ 'ի քահանայական յազգէ, որոյ յիշատակք ճառագայթիցն փայլեն մինչև ցարդ 'ի բանս իւր, և 'ի նմանէ աշակերտեալքն ... իսկ նա վարդապետն կեցեալ 'ի ժիր մշակութեան զաւուրս իւր, հանգեաւ 'ի շ՟կը թվին ||։

Տեղիք արցախոյ՝ որոց գաւառք անծանօթք ։

Գանձակ ։ Քաղաք երևելի, որ բազում ուրեք յիշատակի 'ի վերջին պատմագիրս մեր, և այժմ կոչի Կանձայ, կամ Կէնճէ, որք են այլայլութի անուանս Գանձակ, ուստի ուղղագոյն ես այժմեան անունն յայսմաւուրս 'ի 5. յուլիսի, 'ի ձեռագիրս գրի Գանձայ, զի նախ գնի. Սճայ բանաստեղծն ոճին խորհրդոյ Գանձակեցւոյն ։ Իսկ ստորև. Մ՟ Հեթոյն քո՟ խորհրդ էր 'ի Գանձայ քաղաքէն աղուանից ։ Նա 'ի տաղ. գնի. 'Ի քաղաքէն Գանձայ աղուանից ։

Վարդան աշխարհագիր ակնարկէ լինել յԱրցախ, քանզի յիշէ զայն՝ ուրանօր խօսի զարցախոյ. զնոյն ակնարկէ և կիրակոս յասելն. * Բազում վիշտս կրեալ էին նոքա (այսինքն՝ պարսիկք որ 'ի գանձակ,) 'ի բնակչացն

խաչէնոյ. աւազակաբար կելով զբազում սպանանէին 'ի պարսիցն, և կողոպտէին զքրիստոնեայս 'ի ձեռաց նց ‖։ Յայտ է թէ Գանձակ էր մերձ յամրոցն Խաչէն, ուստի և 'ի գաւառի նորա. իսկ Խաչէնք էր նոյն իսկ Արցախ, որպէս նաև դիրք այժմեան տեղւոյն զնոյն ցուցանէ։

Վարդան և մատթէոս ուրեք ուրեք կոչեն Գանձակ հայոց, կամ որ է Յաշխարհէն հայոց. յայսմաւուրս՝ ըստ որում եդաք 'ի վերոյ՝ կոչի յանուն Աղուանից. սոյնգունակ և 'ի յիշատակարանի դատաստանագրոց մխիթարայ գօշի՝ դնի Մայրաքաղաք տանն Աղուանից, յաշխարհին Առանայ. և առ կիրակոսի յասէն վասն թաթարաց. * Հանեին զնա (այսինքն զսալահատտին, կամ զջալալադին սուլտանն) փախստական յաշխարհէն աղուանից. եկն նա 'ի քաղաքն Գանձակ, և առ զնա ‖։ Նա զի Արցախ որպէս գրեցաք՝ կոչի և աշխարհ աղուանից, ուր և նստան երբեմն Կաթողիկոսունք աղուանից (1)։ Նոյն ամ յարակցեալ անուանք Հայոց, Աղուանից, դնին յորոշումն միւս Գանձակայ՝ որ է յատրպատական։

Ի թուականիս շլէ. (յամի 1088,) պուղան ամիրայն զօրապետ հռչակաւոր մելիք շահի սուլտանին պարսից՝ էառ զԳանձակ 'ի ձեռաց փատլեանց շատատիկք կոչեցելոց, որ էր ցեղ ինչ և տէրութի այլազգեաց (2), սաստկապէս մարտուցեալ, և 'ի վայր ընկեցեալ զբուրգն նր. յորոց 'ի զօրս կային և յազգէս հայոց։

Մնաց քաղաքն 'ի ձեռս պարսից մինչև 'ի ժբ. դար. և եղև առ նոսա իշխանանիստ քաղաք երևելի, մինչև 'ի բաժանել տափար սուլտանին զամենայն երկիրն առ որդիս իւր, կրտսեր որդւոյն ետ 'ի բաժին զսահմանս գանձակայ։ Պարսիկք բնակիչք քաղաքին արհամարհութբ բերեալ ընդ քրիստոնեայս՝ 'ի նախատինս նոցունց եդին 'ի ներքին սեամն դրան քաղաքին խաչս 'ի կոխումն անցաւորաց. այսպիսի թշնամութի պարսից գանձակեցւոց առ քրիստոնեայս՝ յայտնի է և 'ի բանիցն կիրակոսի՝ որ ասէ. * Նյս քաղաքս բազմամբոխ լցեալ պարսկօք, այլ սակաւ և քրիստոնէիւք, յոյժ թշնամի էր սա քնի։

Ի 1140, ըստ որում դնեն վարդան և կիրակոս՝ կոր-

(1) Զկարգ Եպիսկոպոսաց կմ Արքեպիսկոպոսացն աղուանից՝ որք սովորաբար Կաթողիկոսք անուանին, ունիմք դնել 'ի հին աղուանս, որ 'ի կարգի աշխարհաց կամ նահանգաց երբեմն եղելոց ընդ իշխանութբ հայոց։

(2) Որպէս պատմեն Մատթէոս և վարդան։

ծանեցաւ այս քաղաք 'ի վերայ բնակչացն յահագին երկրաշարժութենէ, և լեառն ընթերակայ 'ի վայր հոսեալ 'ի ձորակն՝ արգել զընթացս ջրոյն, և արար ծովակ լի պէսպէս ազնիւ ձկամբք. մինչև յաւուրս նորին կիրակոսի, որ յաւելու գրել՝ թէ լուեալ զայն դեմէտրէ թագաւորին վրաց, եկն և տարաւ յաշխարհն իւր զգրուածս քաղաքին (1):

Բայց և 'ի ԺԳ. դարուն էր նոյնպէս քաղաք բազմամարդ՝ որպէս յայտ է 'ի վերոգրեալ բանից կիրակոսի, յորում դարու հասին 'ի վերայ մուղալ թաթարք, կործանեցին զպարիսպ քաղաքին մեքենայիւք յամենայն կողմանց, և մինչև էր մտեալ նոցա 'ի ներքս՝ բնակիչքն ինքնին այրեցին զամենայն տունս՝ զի մի անկցին ինչք իւրեանց 'ի ձեռս թշնամեաց. իսկ իբրև մտին մուղալք՝ զբնակիչս առ հասարակ կոտորեցին, որով թափուր մնաց այս քաղաք:

Աստի էր մխիթար վարդապետ գօշ մականուանեալ յԺԲ. դարուն, որ բաց յայլ գրոց՝ արար 'ի ՈԼԴ, և դատաստանագիրս. զվարս նորա և զգործս ընդարձակ ստորագրէ կիրակոս:

Վարդան աշխարհագիր 'ի սահմանս գանձակայ դնէ զյետագայ տեղիս՝ յասելն. * Գանձակ Կանձայ է իւր վիճակօքն և Օ[illegible] մինչև 'ի դաշտն Գ[illegible], և կայ 'ի նմա երկու ուխտք Խորանաշատն, և Խաչենէ [illegible] ||: Նա և ստորև յետ ստորագրելոյ զսիւնիս, զշա[illegible] դնէ 'ի հիւսիսակողմն սիւնեաց գեղարքունոյ և սևանայ: * Նա այլ բազում գաւառք 'ի կողմն հիւսիսոյ՝ որ կոչի Օ[illegible], ուր կայ ՍԷ հաղարծինն, և Գ[illegible]՝ որ աթոռն է գօշ մխիթար վարդապետին ||:

Հաղարծին: Յօրինակս ինչ վարդանայ աշխարհագրի, և 'ի գիրս ինչ գրի Խաղարծին: [illegible] երևելի յայն կողմանս՝ զոր զարդարեաց խաչատուր վարդապետ որ առաջնորդ էր այսր վանաց, զորմէ գրէ կիրակոս: * Նր 'ի տօնախմբութի նը եկեղեցւոյն (գետկայ վանից), և նր

(1) Այսպէս պատմէ կիրակոս. * իսկ 'ի չձԶ. թուին եղև շարժ սաստիկ, և կործանեցաւ քաղաքն Գանձակ, և տապալեցան շինուածքն որ 'ի նմա 'ի վերայ բնակչաց իւրոց. և եկն թագաւորն վրաց դեմէտրէ հայրն գաւթի և գէորգայ, և տարաւ զգրուածն յաշխարհն իւր. փլաւ և լեառն Ալհարակ 'ի շարժմանէն, և արգել զձորակն որ անցանէր ընդ մէջ նորա, և եղև ծովակ, որ է մինչև ցայսօր. և լինին 'ի նմա ձկունք ազնիւք ||: Այլուր 'ի կրկնելն զնոյն պատմութիւն՝ դնէ մեռեալ բազմութիւն 'ի բնակչաց:

վարդապետն խաչատուր տարօնացի՝ առաջնորդ ՚ի ուխտին որ կոչի Հաղարծին (1)... Սա պայծառացոյց զսբ ուխտն յորում առաջնորդ էր ինքն, որ յառաջ քան զգալ նորա ամայի էր և խամրացեալ. զսա պատուէր մեծապէս թագաւորն վրաց գորգի հայր թամարին, և ետ եկեղեցւոյն ձեռնագրաւ իւրով զերկու գիւղսն. զՃառաջոր, և զՏանձուտն և զայգի մի Սենեաղչենէն... և ինքն (խաչատուր) անդ հանգեաւ ՚ի քս, և կայ թաղեալ յարևմտից կուսէ եկեղեցւոյն ||:

Արար ՚ի սմա շինութի և յօհաննէս առաջնորդ վանացս, որ զկնի եղև նաև առաջնորդ գետկայ վանաց: * Ապա (աստ կիրակոս) տէր յօհաննէս արմանեցին՝ որ և Հաղարծին էր առաջնորդ, և ձեռնադրեցաւ եպիսկոպոս ՚ի չէ. թվին. սա շինեաց ՚ի Հաղարծինն սեղանատուն երևելի սրբատաշ վիմօք, և ապա գնաց ՚ի մեծ աթոռն ՚ի հաղբատ ||: (2)

Խորանաշատ: Երևելի ՚ի մէջ ուխտից նահանգիս. այսպէս կոչեցեալ սակս յոլովութե եկեղեցեաց և խորանացն ՚ի նմա, զոր շինեաց վանական վարդապետն այր երևելի արդեամբք և գիտութբ ՚ի սկիզբն ժԳ. դարուն. * Նաև եղև վախճան սորա (այսինքն՝ վանական վարդապետին աստ կիրակոս) այսպիսի օրինակաւ. ՚ի վանսն զոր իւր իսկ էր շինեալ՝ որ կոչի Խորանաշատ, վասն յոլով եկեղեցեաց որ ՚ի նմա է՝ ընկալաւ զմնունն, որ կայ հանդէպ երդէվանից բերդին, և ՚ի թիկանց գարդմանոյ (թերևս՝ գարդմանոյ, զի և յայլում օրինակի գրի՝ Գարդմանոյ.) առնէր նա շինուածս երևելիս՝ գաւիթ շինելով ՚ի կոփածոյ վիմաց ՚ի դուռն մեծ եկեղեցւոյն, զոր իւր իսկ շինեալ էր ||: (3)

(1) Գրի ուրեք առ նորին կիրակոսի և Հաւարծին, (եթէ չիցէ վրիպակ գրչի:) * Գլխաւոր վանորայքն (աստ) սանահին և գետիկ և Հաւարծին և կեչառուս ||:

(2) Սորև պատմէ զայլ շինութի: *՚Ի չԳ. թվին (աստ) խաչատուր վարդապետն և եղբայրն իւր բարսեղ շինեցին եկեղեցի մի երեքխորանի հանդէպ վանիցն գմբեթաւոր յանուն սբյն գէորգայ ||: Ո՛չ որոշէ կիրակոս զվանսն, բայց առաւել թուի լինել Հաղարծինն՝ վասն թէ գետիկ վանք, զոր սուղ ինչ յառաջ յիշէ:

(3) Եթէ կիրակոս յայս բան զգաւառն Գարդման իմանայ, Խորանաշատն անկանի ՚ի գարդման գաւառի և յուտի նահանգի, և յայնժամ զվերագրեալ բան կիրակոսի պարտ է մեկնել ասելով, թէ Խորանաշատն էր ՚ի թիկանց գարդմանոյ բերդին կամ քաղաքին (զոր թերևս ունէր), և ոչ ՚ի թիկանց գարդմանոյ գաւառին, (որով արտաքոյ անկանէր գաւառին.) այլ քանզի անյայտ է բանն, և անունն իսկ չէ որոշ գրեալ. ոչ համարձա-

Յայսմաւուրս 'ի 31. յունվարի նմին վանական վար-դապետի տայ զանուանակոչութիւնն ։ * Գնաց (ասէ) յաղուանս, և շինեաց փառաւոր վանք մի սրբատաշ վէ-մօք, բազմախորան գմբէթաւոր, և հրաշազարդ եկեղե-ցիս, և անուանեաց զվանքն զայն Խորանաշատ ‖ ։ Յաշ-խարհին աղուանից դնէ, քանզի որպէս ասացաք 'ի վերոյ՝ Արցախ՝ կոչէր նաև Աշխարհ աղուանից ։

Աստանօր թաղեցաւ նոյն վանական վարդապետ ըստ իւրում հրամանի. * 'Ի գլուխ վանիցն (ասէ կիրակոս) յարևելից կուսէ, մօտ 'ի փոքրագոյն եկեղեցին՝ ուր են գերեզմանք աղքատաց ‖ ։

**Գանձոյ անապատ** ։ Զորմէ 'ի յիշատակարանի դատաս-տանագրոց մխիթարայ գօշի. * 'Ի գիտապետութե տ̃ն ստեփաննոսի տանս աղուանից, յաշխարհիս առանայ, 'ի նահանգիս որ կոչի մայրաքաղաքիս Գանձակ, յանապատ և յեղբայրանոցս անուանեալ Գանձոյ, սկզբնաւորեալ 'ի լեռնակողմ մենաստանին կոչեցելոյ Հոռոմաշէն, ընդ-հովանեաւ սրբոց եկեղեցեաց կուսաստանացն յիշեցելոց ‖ ։

**Գանջասար** ։ Նոսա ածանցեալ յանուանէս Գանջակ, և Սար. որպէս թէ Գանջակասար. զի ըստ ոմանց ցուցանէ այժմեան գիրք նորին՝ է մենաստան 'ի վերայ լերին, ոչ այնչափ տարակաց 'ի Գանձակայ. իսկ զլեառն՝ աշխարհիկ բարբառ մեր կոչէ Սար ։ Նշանի յայս նահանգ՝ որպէս գրէ վարդան աշխարհագիր յասելն. * 'Ի յԱրձախ (է) մէկ ուխտն Գանձասար, ուր կայ գլուխ մէկ կարապետին ‖ ։ Զարձախ դնի նաև 'ի ձեռագիր յաշխարհագրական բա-ռարանին ։

Յիշէ զսա և կիրակոս՝ Սարո անուանելով. ուր 'ի սկիզբն ԺԳ. դարուն բարեպաշտ և աղքատասէր այրն հա-սան անուն քեռորդի հայկազուն իշխանացն զաքարեայ և իւանէի, շինեաց եկեղեցի գեղեցկազարդ յօրինուածով բազմամեայ աշխատութբ ։ Իսկ կին նորուն մամխան ա-նուն շինեաց զգաւիթն ։ Գրէ և վարդան վասն սորքայա-զուն Ջալալ իշխանին՝ որ էր 'ի ժամանակս իւր, թէ զկնի վկայական մահուանն * Նշկին իւրքն, և տարեալ թա-ղեցին յիւր սեփհական վանքն Գանձասար կոչեցեալ, հայրենեօք տուն գերեզմանի իւրեանց ‖ ։ Այլ անունս Գանջասար ոչ յիշատակի 'ի հին պատմագիրս ։

կեցաք դնել 'ի դարդման, այլ բա- դաք 'ի սահմանին գանձակայ ։
Ծիւ վարդանայ աշխարհագրի է.

Խօխանաբերդ․ զոր և ուրեք կիրակոս կոչէ՝ Խօջախանայ բերդ, որպէս և անուանէին տաճիկք։ Ամրոց անառիկ հանդէպ գանձասարոյ, որոյ տէր էր նոյն իսկ հասանն վերոգրեալ․ այլ որպէս գրէ անդէն նոյն կիրակոս՝ զսա և զմերձակայ ամրոցս Դէգ․ Ներամափար, և զայլ ևս դղեակս, մուղալ թաթարք հարկապահանջք հիմնայատակ կործանեցին, մինչ և հետոյ անգամ ոչ երևել բնաւ՝ թէ չէին լեալ իցէ երբէք անդէն։

Հայթերք (1)։ Դղեակ իշխանանիստ նախայիշատակեալ իշխանին հասանայ, որպէս դնի 'ի յիշատակարանի դատաստանագրոց մխիթարայ գօշի․ * 'Ի ժամանակի մնացելոց սակաւ իշխանաց 'ի կողմանս Խաչէնոյ, ընդ ժամանակս անուանելոյ հասանայ կրօնաւորեցելոյ, և որդւոյ նորա վախթանգայ, 'ի դղեկին որ անուանի Հայթերք, գլխաւորի այլոց իշխանաց ‖։

Աստղաբլուր։ Յիշատակի յայսմաւուրս 'ի 29 մարտի։ Մ'ի ամն յիշխանայն զօրագլխաց (հոնաց՝) եկ 'ի կողմանս Արցախու... 'ի տեղին Աստղաբլուր օթևանս կալեալ, ուր էին աշակերտքն մեսրոպայ ‖։ 'Ի վերոյ դնէ մերձ յարցախ՝ յաւելն․ * Դարձեալ եկին յաղուանս, և բնակեցան 'ի տեղի մի որ կոչի Աստղաբլուր, հուպ յԱրցախ գաւառին (2) որ է Խաչէնք ‖։ Կոչեցաւ այսպէս, վասն զի 'ի վերայ մարմնոյ թագուհի անուն մեծազգի կնոջ՝ որ սպանաւ 'ի զօրագլխէն հոնաց, էջ լոյս աստղաձև, որպէս դնի անդէն յայսմաւուրս։ * Աստղապէս ցոլացեալ խաղայր լոյսն 'ի վերայ կաթուածի արեան թագուհւոյն․ և ժողովեցին զնշխարս նր. թագուհւոյն՝ ամփոփեցին և եդին 'ի բլրակին, և անուանեցին զայն Աստղաբլուր ‖։

Դիզափայտ։ Ի. անուն մենարանի 'ի համանուն լերին։ Կոչեցաւ այսպէս՝ սակս դիզելոյ անդէն հոնաց զմարմինս քրիստոնէից և այրելոյ, յաւուրս աշակերտացն մեսրոպայ, ըստ պատմելոյ յայսմաւուրաց 'ի 29 մարտի։ * Իսկ որդիք զօրավարին մովսէս և երանողիս և այլ զօրքն հաւատացեալ փախեան 'ի լեառն որ կոչի Դիզափայտ, որոց

(1) 'Ի միում ևեթ օրինակի վարդանայ գրի Հայթերք, որ 'ի սովորական օրինակն գրի Հաթերք․ նոյնպէս և առ կիրակոսի բազում ուրեք գրի Հաթերք, Հաթերքոյ․ և ուրեք առ նմին կիրակոսի գրի նաև Խաթերք։

(2) Նոյնպէս գրի և ի հին յայսմաւուրս տեր իսրայէլի 'ի մարտի 30․ համառօտ այսպէս․* Յայսմ աւուր նր. վկայքն կատարեցան յԱստղաբլրին հուպ յԱրցախ ‖։

զհետ երթեալ անօրինացն՝ կոտորեցին զնոսա անդ, և ժողովեալ կուտեցին զնոսա 'ի մի վայր, և այրեցին հրով, և անուանեցին զտեառն Պիղափայտ, վասն զի քան ըզփայտ դիզեցին զնոսա և այրեցին : Եւ յետ ժամանակաց միայնակեացք ոմանք արք Ճգնաւորք եկեալ բնակեցան անդ, և արարին խրճիթս վանս զտեղին || : Բանք պատմութեան ցուցանեն լինել 'ի կողմանս արցախայ : Եւ վարդան աշխարհագիր յետ գնելոյ զարցախ, դնէ և զայս անելով. * Պիղափայտն (1) Պիղայ և Մարանդայ է || :

ՍՈՐԳԵՀԱՆ : Կիրակոս յիշէ զսա ընդ՝ ամուր բերդս : * Առին և նոքա ( զաքարէ և իւանէ, ) բազում գաւառս 'ի պարսից, և բերդս ամուրս զգարդման, զքարհերձ, և զՍՈՐԳԵՀԱՆ || : Ապա յարձակեցան մուղալ թաթարք՝ զորոց գրէ կիրակոս. * Յարձակեցան 'ի վերայ այլ բերդերն որ ընդ իշխանութե՛ն վահրամայ 'ի ՏԵՐՈՒՆԱՔԱՆՆ, և յՍՈՐԳԵՀԱՆՆ, և 'ի ՄԱՃՆԱԲԵՐԴՆ՝ զոր ունէր կիւրիկէ բագրատունի որդի աղսարթանայ || :

ՀԱՆԴԷՊ ԲԵՐԴԻՆ ՍՈՐԳԵՀԱՆԻՑ ըստ ասելոյ կիրակոսի՝ էր առաջին վանք վանական վարդապետին, զոր աւերեաց Ջալալհատին սուլտանն հինից :

(1) Այսպէս գնի յերկուս ձեռագիրս՝ որք երեւին լինել հարազատ աշխարհագրութեան վարդանայ, իսկ յայլ յերիս ձեռ". և 'ի տպ. որք են ընդարձակութիւնք վարդանայ՝ պակասի այս բան :

## ՆԱՀԱՆԳ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ՓԱՅՏԱԿԱՐԱՆ

Անունն սորա ձգի աստ և ընդ արտաքոյ եւրոց սահմանաց, 'ի Պարտաւ՝ որ է յՈւտի, 'ի Տփխիս՝ որ է 'ի վերա, մինչև տարածանիլ մեզ և 'ի վերայ Ատրպատականի, կամ Ատրպատական անուանս՝ ցուցէ 'ի փայտակարան անուանէ աստի եւս անանցեալ առ աշխարհագիրս յունաց և հռոմայեցւոց. զի են տեղիք՝ որք զանունն իւրեանց յայլմէ տեղւոյ ընկալան, յորոյ տարակայքն սահմանաւ. նա զի և զԱտրպատականի 'ի զանազան տեղիս ձգեն։ Պտղոմէոս մասն պարսից կացուցանէ. պլինիոս 'ի մէջ պարթևաց և արեաց. երոդոտոս ընդ ազգս մարաց դասէ, որպէս և ստեփաննոս բիւզանդացի զԱտրպատական մարաց քաղաք դնէ. ստրաւոն գիրք ԺԱ. սահմանակիցս դնէ պարսից. իսկ 'ի ԺԵ. գիրս. Թղթ. 732. սահմանակիցս Ակիլլենիագի, որ ըստ նորա էր Սեդգագէնի գաւառ աստրեստանեայց՝ ձգեալ մինչ 'ի տիգրիս։

Այս սոյն հակառակ՝ ինքն փայտակարան նահանգ յանունն այլոց աշխարհաց կոչի նախ՝ յանունն Աղուանից, զի զանատորուկ աստղիկ 'ի Ե. 3. դնէ իշխան աղուանից, զոր խորենացին 'ի Գ. 3. ցուցանէ իշխան փայտակարանի կարգեալ 'ի տրդատայ։ Այս զգրիգորիս կոչեն 'ի գիրս՝ Եպիսկոպոս աղուանից, որպէս կոչէ նաև բուզանդ 'ի Գ. 6. * Առ վեան գրիգորի եպիսկոպոսի ... որ կաթողիկոսն էր կողմանցն վրաց և աղուանից ‖։ Այս սակայն կարգեալ էր եպիսկոպոս փայտակարան քաղաքի. զի որպէս պատմէ խորենացին 'ի Գ. 3. * Գործակալք կողմանցն արևելեայ հիւսիսոյ՝ վերակացուք հեռաւոր քաղաքին՝ որ կոչի փայտակարան ‖, խնդրեցին 'ի տրդատայ տալ նոցա եպիսկոպոս 'ի զաւակէ սրբոյն գրիգորի։ Այս տրդատ * Տայ նոցա եպիսկոպոս զմանուկն գրիգորիս ‖։ Այինքն վերակացուաց փայտակարանի, և ոչ ընկէ

աղուանից ։ Այլ ինքն Խորենացին մահուանն Գրիգորիսի զաղուանս դնէ պատճառ՝ որք էին Փայտակարանցիք, յասելն. * Իսկ ՚ի հասանել համբաւոյն վախճանին սրբ-դանոյ՝ ՚ի դաւելոյ նորին սանատրկոյ, և այլոց ոմանց հմնապազատուտ արանց աղուանից, սպանին զերանելին ընթադրեալ ձիով բարբարոսքն ՚ի Վատնեան դաշտին, մերձ ՚ի կասպիականն կոչեցեալ ծով‖ ։ Եւ յորժամ սա-նատրուկ հակառակ թագ կապեալ ՚ի Փայտակարան քա-ղաքի՝ գնաց նախարարօք իւրովք առ Շապուհ, որոց յայտ է թէ գլխաւորքն էին ՚ի Փայտակարանէ՝ Խորենացին ՚ի Գ. 6. կոչէ զնա առհասարակ Աղուանից նախարարք (1) ։

Երկրորդ՝ կոչի յանուն Ատրոյ և Ատրպատականի՝ որք նոյնպէս են մարք, ոչ միայն առ օտար ազգաց մատենա-գիրս, այլ նաև ՚ի հայկական գիրս, զորօրինակ առ Բու-զանդայ ՚ի Գ. 6. յասելն վասն Գրիգորիսի. * Շինեաց նորոգեաց զամենայն եկեղեցիս կողմանցն այնոցիկ, և ձգեցաւ ՚ի գաւառակողմանցն Ատրպատականի, քարոզ ճշմարտութեան հաւատոցն քնի լինէր նա‖ ։ Ուրանօր փո-խանակ Փայտակարանի՝ (ուր տիրապէս առաքեցաւ, և քարոզեաց Գրիգորիս ըստ Խորենացւոյն,) դնի՝ Կուստ կողմանք Ատրպատականի ։ Այլ այս՝ սակս գոլոյ սահմանակից Ատրպատականի, նաև ընդ ժամանակս ինչ ընդ տէրու-թեամբ Ատրպատականաց. և վասն այնորիկ թերևս ան-ուանք գաւառաց Փայտակարանի բերեն զհնչումն մա-րաց՝ օտարս ՚ի հայկական հնչմանէն ։

Երրորդ՝ կոչի նաև Կասբք, զոր ցուցցուք ստորև ։

Վասն դրից սորա գրէ Խորենացին. * Զելից կայ ու-տիոյ առ Երասխաւ‖ ։ Որով Փայտակարան անկանի ոչ միայն յարևելեան կողմն ուտի նահանգին, այլ նաև ե-րասխայ. վասն զի զուտի նահանգ Խորենացին դնէ յա-րևմտից Երասխայ. արդ՝ Փայտակարան ոչ կարէ լինել առ Երասխաւ՝ միանգամայն և յարևելից ուտիոյ, բայց եթէ լինելով նաև յարևելից Երասխայ ։ Այլ այսպէս ե-րասխ անցանէ ընդ մէջ երկոցունցս՝ յարևմտից ունելով

(1) Վասն երկուց պատճառաց մարթ է ասել թէ Փայտակարան ՌՃ մասին երբեմն կոչեցաւ յանուն աղուանից. մի՝ թերևս առ բազ-մութեան բնակչաց աղուանից սփռե-լոց ընդ համօրէն նահանգն կամ ՚ի գլխաւոր քաղաքն. և երկրորդ՝ մանաւանդ վասն գործակալաց իւր զի գործակալք կարգեալք ՚ի կողմն արևելից հիւսիսոյ՝ իշխէին յայնժամ առհասարակ կողմանցն աղուանից. որպէս նաև Փայտա-կարանի ։ Այլ որով և իցէ պատ-ճառաւ՝ ճշմարիտ է թէ Փայտա-կարան կոչեցաւ ուրեք ուրեք և յանուն աղուանից ։

զուտի, իսկ յարևելից զփայտակարան. որով և ուտի անկանի յարևմտից փայտակարանի, իսկ փայտակարան յարևելից կամ յհիւսից ուտիոյ:

Զգի այս նահանգ մինչև 'ի ծովն կասպից, և 'ի սմա անկանի բերան կամ խառնուրդն երասխայ յայն ծով. զի թէ մեծ հայք սահմանակից է կասպից ծովուն 'ի մուտս անգ երասխայ ' ով, (որպէս յայտնի ունիս տեսանել 'ի ներածութեան մեծին հայոց,) 'ի մէջ ժէ. նահանգաց մեծին հայոց՝ ոչ կարեմք գտանել զայլ նահանգ յարմար այսր դրից ըստ աշխարհագրութեան խորենացւոյն, բայց եթէ զփայտակարան: Այլ դժուարին է որոշել՝ թէ արդեօք ձգէ՞ր ընդ երկուս կողմանս բերանոյն երասխայ, թէ միայն 'ի մի կողմն, այսինքն 'ի հարաւակողմն կամ 'ի աջմէ գետոյն. զի թէպէտ զսահման աղուանից, կամ որ նոյն է՝ ալպանից՝ պտղոմէոս ձգէ 'ի հարաւոյ մինչև 'ի խառնուրդն կուր կամ երասխ գետոյն 'ի ծով, բայց պտղոմէոս ոչ գիտէր ճշգրտիւ զսահման փայտակարանի, և ոչ իսկ զսահմանակցաց աղուանից՝ որպէս գիտէ խորենացին՝ որ զաղուանս ձգէ մինչև 'ի խառնուրդն երասխայ 'ի կուր, այլ ոչ մինչև 'ի խառնուրդն երասխայ 'ի ծով. ոչ գիտէր և ս պտղոմէոս թէ փայտակարան սահման հայոց՝ կոչէր նաև Աղուանք:

Այս նահանգ անկանի յայնմ սահմանի՝ որ կոչի Կասբք, յն. Գասբք, որպէս յայտնի զնեն մեր մատենագիրք, զորօրինակ ասողիկ գ. 3. գրէ վասն կայսեր հերակլեայ. * Գնացեալ 'ի մարս, գայ հասանէ 'ի փայտակարան յաշխարհն կասբից ||: Նաև ագաթանգեղոս թղթ. յհգ. ըզփայտակարան քաղաք դնէ 'ի կասբս, յասելն. * Մինչև 'ի սահմանս Կասբից 'ի փայտակարան քաղաք արքայութեան հայոց ||: Նոյնպէս և բուզանդ որ 'ի Ե. 14. դնէ խորագիր Յաղագս Կասբից, և ստորև պատմէ զփայտակարան քաղաքէ, յայտ արարեալ թէ անկանէր 'ի կասբս: * Այս խնդրէր (ասէ) զվրէժն մեծապէս սպարապետն մուշեղ յերկրէն պարսից (1) և 'ի փայտակարան քաղաքէ, փոխանակ զի և նոքա նշկահեցին ատեցին արքային հայոց ||: Օսոյն ակնարկէ և խորենացին՝ որ 'ի ստորագրել զսահման մեծին հայոց, ձգէ * Առ ատրպատակա-

(1) Անուանս Պարսից վրիպակաւ երևի սպրդեալ փոխանակ անուանս Կասբից. որով յարմարի և խորագրին, և վերագրեալ մատենագրաց, թէպէտ և 'ի տպ. և յերիս ձեռ''. դնի Պարսից: Նոյնպէս վրիպակաւ սպրդեալ է և 'ի խորենացին է. 50:

նաւ ՟Է մարս՝ մինչև 'ի մուտս երասխայ 'ի կասբից ծով։ Ուրանոր հարկ է անկանել փայտակարան նահանգին մեծին հայոց՝ որպէս ցուցաք 'ի վերոյ։ Իսկ 'ի ստորագրելն զկասբից ծով, և 'ի Թուելն զշրջակայ ազգս որք բնակեալ կան զնովաւ, զկասբս դնէ 'ի մուտս անդ երասխայ 'ի կասբից ծով՝ որ է սահման փայտակարանի։

Աստանօր դնէ զԿասբս և պլինիոս որ 'ի Զ. 12. ստորագրելով զարևմտեայ կողմն կասբից ծովուն՝ Թուէ զազգս բնակեալս յայն կողմն, և զգետս որք հոսին ընդ ալպանիա, այսինքն ընդ աղուանս, և 'ի յիշելն զՑիրոս, այն է Կուր գետ՝ ասէ. * 'Ի Ցիրոսէ (1) Կասբից ծովն սկսաւ կոչիլ. անդ բնակեն Կասբք||։ Այսինքն որպէս մեկնէ մատղինիէ 'ի բառն Կասբէի, 'ի շրջակայս կուր գետոյն ուրանոր բնակեն Կասբք՝ ծովն սկսանի կոչիլ յանուն Կասբից. քանզի զանազան կողմանք ծովուն զանազան անուամբք կոչէին։ Նա և այսպէս ասէ Կասբք ՟Ը պլինիոսի սկսանին անդ՝ ուրանոր կուր գետ խառնելով յերասխ՝ զեղու 'ի ծովն Կասբից, ուր և անկանի փայտակարան. ոչ ուրեք պլինիոս ձգէ ասէ զանուանս կասբից 'ի հիւսիսակողմն կուր գետոյ՝ որպէս այլք դնեն, այլ յարևելս հարաւոյ կուր կամ երասխ գետոյն։

Էրատոսթենէս առ ստրաբոնի գիրք ԺԱ. Թղթ. 514. 'ի յիշելն զազգս բնակեալս ընդ ծովեզերս Կասբից՝ յետ աղուանից՝ կամ որ նոյն է ալվանից՝ յիշէ զԿասբս իբր սահմանակիցս, որպէս էր փայտակարան նահանգ. և նոյն ինքն ստրաբոն գիրք ԺԱ. Թղթ. 528. պատմէ թէ Կասբք, կամ որպէս կոչէ անդէն նա ինքն Կասպիանէ (2), 'ի մարաց առաւ, և գրաւեցաւ 'ի սահմանս հայաստանեայց. որով և ըստ ստրաբոնի Կասբք էր 'ի հայաստան գէթ ընդ ժա-

(1) Այսինքն 'ի Կուր գետոյ։ Պարտ է գիտել (զոր օրինակ ունիս տեսանել 'ի Ներածութեան հին հայաստանեայց 'ի գլ. գետոց.) թէ զոր խորենացին Երասխ կոչէ յետ խառնելոյ կուր գետոյն և երասխայ 'ի միասին մինչև 'ի ծով, պլինիոս և օտարազգի մատենագիրք կոչեն Կուր նաև զայն մասն մինչև 'ի ծով. միայն ստրաբոն Թղթ. 528. համաձայն խորենացւոյն դնէ զերասխ առ ծայրիւ ալվանից կամ աղուանից, որով լինի բաժանիչ ընդ հայս և ընդ աղուանս։

(2) Իսահակ վոսսի 'ի լուծմունս մելայի գիրք Ա. գլ. 2. նշանակէ՝ թէ Կասբք և Կասբիանք զանազանին. զորօրինակ Արիա (ըստ մեզ՝ Արեք.) և Արիանք զանազանին, զի Արիա կոչեցաւ ասէ առանձինն երկիրն ձգեալ առ Արեաց գետով. իսկ Արիանք՝ համօրէն տէրութիւն Արեաց, յորում անկանին զանազան աշխարհք. այլ այս զանազանութի ոչ այնչափ հաւաստի երևի մատղինիեի։

մանակս ինչ։ Իսկ Թղթ. 502. դնէ զայն յաղուանս, ածելով. * Աղուանիացւոց (այսինքն աղուանից) է՝ նաև Գասբիանի, 'ի Գասբից ազգէն զանուանն ընկալեալ, ուստի կոչի և ծովն. այս ազգ այժմ աղօտ իմն է գլխովին [1]։

Աղուանք կոչի ոչ միայն Արցախ և Ուտի, այլ նաև փայտակարան նահանգ մեր, որպէս ցուցաք 'ի վերոյ. նորին աղագաւ աշխարհագրողն ուրեք դնէ զԿասպս յաղուանս, ուրեք դնէ 'ի մարս, և այլ 'ի հայս. վասն զի փայտակարան ընդ նահանգ հայոց՝ երբեմն լինէր ընդ տէրութեամբ մարաց, որպէս և առ ժամանակօք խորենացւոյն. երբեմն կոչէր յանուն աղուանից։ Բաց յայսմանէ հաւանական երևի մեզ՝ թէ Կասպք ձգէր ոչ միայն 'ի փայտակարան նահանգ հայոց, այլ նաև արտաքոյ նորին ընդ երկայնութիւն ծովուն ըստ մասին 'ի մարս, և ըստ մասին յաղուանս, վասն այնորիկ երբեմն սմին, և երբեմն նմին ընծայեն նախնիքն [2]։

'Ի բանից աստի մինչև ցարդ յառաջ բերելոցս յայտ է՝ թէ այն ազգք կասբից զորս նախնիքն դնեն բնակեալ ընդ ծովեզերս համանուն ծովուն, էին 'ի փայտակարան և 'ի շրջակայս նորա. մինչև թէ գտցի ոք 'ի նախնեաց՝ որ յայլ կողմն ծովուն ձգեսցէ զԿասբս հեռի 'ի փայտակարանէ, միաբան համաձայնութիւն վերոգրեալ զանազան մատենագրաց հայոց յունաց և հռոմայեցւոց ուղղագրեն զնորուն դիրս [3]։

(1) Զէլլարիոս հատ. Բ. Թղթ. 315. ըստ տպ. լիբսիոյ 'ի 1773. 'ի խօսիլն զալպանիոյ, գրէ թէ աշխարհագրողն սովին բանիւ զԳասբիանա դնէ յայնկոյս կուր, կամ երասխ գետոյն, 'ի կողմն մարաց, որ է յաջմէ կամ 'ի հարաւոյ գետոյն՝ (ուր է փայտակարան). իսկ զայս սահման պտղոմէոս դնէ առնէ 'ի հայաստան, որպէս և է իրօք, ըստ դնելոյ խորենացւոյն։

(2) Երկու ինչ ծանուցանէ մառգինիէ կարևոր 'ի տեղեկութիւն Կասբից. մի՝ զի նախնիք չունէին որոշ ծանօթութիւն զմեծութէ և զձևոյ Կասպից ծովուն, չէ պարտ յուզել 'ի նոսա ստոյգ և որոշ սահմանս ազգաց բնակելոց զծովեզերբք նորին, յորոց մի են և Կասբք։ Երկրորդ՝ զի երևի թէ անուանս Կասբք էր մականուն. և բաց յանուանէս Կասբք՝ ունէին և առանձին անուանս, որպէս և իրօք այս նահանգ հայոց առանձին անուամբ կոչէր Փայտակարան, և իբրև մականուամբ Կասբք. այլ թէ մառգինիէ ունէր զայսոսիկ տեղեկութիւնս հանեալս 'ի մերոց մատենագրաց, և նովին տեղեկութբ մտադրէր գրոց յունաց և հռոմայեցւոց, որոշագոյն գրէր զգրից Կասբից.

(3) Քանզի պտղոմէոս գիրք Ը. գլ. 2. 'ի խօսիլն զմարաց՝ ասէ. Իսկ զարևմտեայս միդիոյ (մարաց) առ հայաստանեօք ունին Գասբք։ Եւ 'ի Ե. 13. 'ի ճառելն զհայոց մեծաց՝ ընդ մէջ մարաց և հայոց դնէ գօտի ինչ լերանց Գասբք անուանեալ. և 'ի ստորագրելն ան֊

Այլ բաց 'ի սմանէ յիշատակեն նախնիք և այլ կասբիական անուանս գրանց, լերին, Ճանապարհի, նաև ազգի, զորս հարկ է աստանօր որոշել առ 'ի չշփոթել 'ի միասին: Արդ՝ որպէս գրէ համառօտիչն ստրաբոնի (1), * Երկու են ազգք Կասբից, մին առաւել յարևմուտս քան զԿատուս առ համանուն ծովու, և զամլիսի գետով. իսկ միւսն մերձ 'ի բարթիա (պարթևս), ուր են դրունք Կասբից‖: Այս Կամլիսի չէ այն զոր պտղոմէոս դնէ 'ի մարս, այլ զոր պլինիոս դնէ յաղուանս, նմին իբր առաջին յիշատակեալ ազգ սորա է նոյն՝ զորմէ խօսեցաք մինչև ցարդ. իսկ երկրորդ ազգն տարբեր է գլխովին, որ անկանի 'ի մէջ պարթևաց և մարաց:

Ընդամնօր դնեն այլք 'ի նախնեաց զԿղոտնս Կլաւդիոս. պտղոմէոս Գ. 2. և ստրաբոն գիրք ԺԱ. յասելն. * Մեծագոյն լայնութի միտիոյ (այսինքն՝ մարաց) երևի յանցից զագրիու, (որով) կոչեն զդրունս միտիոյ, մինչև 'ի Կասբիական դրունս ընդ սիդրիանի‖: Արրիանոս գիրք Գ. յասելն՝ թէ աղեքսանդր 'ի հալածելն զդարեհ 'ի ժա. աւուրս յեկբատանայ եկն 'ի ռաղա (հռագուէ) որ միօրեայ հեռի է 'ի դրանց կասբից: Եւ դիոնեսիոս բերբիղիսին զպարթևս դնէ բնակեալ, * Առ ոտամբ դրանց Կասբից‖: Իսկ իսիդորոս զարագէնոս դնէ անդէն ոչ միայն դրունս, այլև լեառն Կասպիական. զի զքարաքս քաղաք դնէ առ լերամբ՝ * Որ ասի Կասբիոս, յորմէ անուանին դրունք Կասբիականք‖: Զայս քաղաք պտղոմէոս համարի լինել հանդէպ պարթևաց, նա մանաւանդ 'ի սահմանակցութեան մարաց և պարթևաց: Եւ այսպէս այս անուանի դրունք կասբից՝ որք են 'ի մէջ մարաց և պարթևաց, այժմ անկանին յայն լերինս՝ որք են

գէն զընթացս երասխայ՝ դնէ անցանել առ կասբից լերամբ: Որոյ վասն պարտ է գիտել նախ, զի ը այսմ պտղոմէոս զկասբս հեռի դնէ 'ի համանուն ծովէն, հեռի և 'ի փայտակարանէ: Երկրորդ՝ դնելով զկասբից լեառն առ երասխաւ՝ ըստ մասին դնէ զայն 'ի հայաստան. քանզի երասխ ընդ մէջ հայաստանեայց անցանէ: Եւ երրորդ՝ նաև զգօտի լերինն կասբից պարտ է դնել 'ի հայաստան, զի ընդ մէջ մարաց և հայոց չէք այլ ինչ ազգ օտար:

Եւ ինքն պտղոմէոս կամեցաւ ցուցանել թէ ը մէջ երկոցունցս անկանի գօտի լերանց՝ զոր ինքն կոչեաց Կասբք, այլ ոչ որոշեաց՝ թէ այս լերինք և բնակիչք նորին են տարբեր, կամ թէ անկանին 'ի մարս. ուստի առ 'ի համաձայնեցուցանել զպտղոմէոս ընդ այլս՝ պարտ է դնել 'ի հայս, այլ ըստ նորա՝ 'ի պարսկահայս. 'ի կորճէս, ևն. բայց ոչ 'ի փայտակարան:

(1) Գիրք ժա. թղթ. 1276. ը տպագրութն ամստր. 'ի 1707:

'ի մէջ դեպերխաթանի և իրաք աճեմի ։

Այլ դրունս կասբից եդին այլք 'ի հիւսիսոյ կուր գետոյն' 'ի մէջ լերանց կովկասու, որ է անցք 'ի վիրս. այլ պլինիոս Զ. 13. վրիպեալ համարի զնոսա, և ուղղէ կոչել զայնոսիկ դրունս յանուն կովկասու (1), և ոչ կասբից ։ 'Ի նոյն կողմանս' այսինքն ընդ մէջ կողքիսոյ և ծովուն կասբից դնէ ստրաբոն գիրք Ժ. թղթ. 91. և զչխան ինչ Դառբէից, որով շփոթէ ասէ մառդինիէ զլեառն կովկասու ընդ լերին կասբից ։ Նաև տակիտոս գիրք Զ. գլ. 33. ընդ մէջ սեաւ և կասբից ծովու 'ի լերինս կովկասու դնէ Դառբէիական ճանապարհ, ընդ որ վիրք տեարք ճանապարհին անցուցանէին զսարմատացիս 'ի հայաստան, և արգելուին զեկեալս յօգնութի պարթևաց ։ Նաև գիրք Ա. պատմութե. գլ. 6. յիշէ փոխանակ կից Սղաղան նառբէից, զոր մառդինիէ նոյն համարի ընդ վերոգրելոյն, և նոյն ը̃ անցից կամ կապանին' զոր պլինիոս կոչէ Դրունս կովկասու ։

Այս դրունք կովկասու' զոր այլք կոչեցին յանուն կասբից, անկանին ը̃ նորուն մառդինիէի յայն սահման' զոր այժմ կոչեմք Վրաստան, զկողմամբք Թիփլիսու, այսինքն տփխեաց, յո՛ր կողմն և յիրաւի ձգեցաւ առ մեր մատենագիրս անունս փայտակարան, որ կոչէր և Կասբք' որպէս ունիս տեսանել ստորև. այլ զանունս Կասբից ոչ ձգեցին յայն կողմանս ։ (2) Յիշատակի ինչ ուրեք առ խորենացւոյն Բ. 83. բան այսպիսի. * Վարդգեաց 'ի կղարջից սկսեալ առ դրամբք ալանաց և Կասբից, մինչև 'ի սահմանս մասքթաց' որպէս ուսուցանէ քեզ ագաթանգեղոս‖ ։ Բայց աստ զանունս Դուռն չէ պարտ բերել նաև 'ի վերայ Կասբից, այլ իմանալ' որպէս իմանայ ագաթանգեղոս 'ի յիշ. ասելով. *'Ի սահմանս մասքթաց մինչև 'ի դրունս

(1) Յովսեպոս գիրք ԺԸ. գլ. 6. զայս դուռն կասբից' զոր ըստ պլինիոսի պարտ է կոչել դրունս Կովկասու, սահմանակից դնէ ալանաց, յասելն թէ' Վիրք ետուն անցս ալանաց ընդ դրունս կասբից, առ 'ի տալ պատերազմ ընդդէմ արտաւանայ. յորմէ մարթ է 'ի կարծիս անկանիլ թէ այն դուռն ալանաց առէպ յիշատակեալ 'ի գիրս մեր, իցէ նոյն ընդ դրանց կովկասու, կամ ըստ այլոց Կասբից ։ Այն զի յոհաննէս կաթողիկոս զդուռն ալանաց (որ ըստ ձեռագրի խորենացւոյն էր 'ի ծանարս 'ի սարմատիա,) ցուցանէ լինել մերձ 'ի դուդարս, զոր օրինակ էր և այս դուռն կովկասու, կամ Կասբից. այլ զայս այլոց թողցուք 'ի քննել, իբր արտաքոյ մերոց սահմանաց հայաստանեայց ։

(2) Յիշատակի և 'ի աշ. աշխարհագր. խորեն. 'ի սարմատիա ազգ ինչ Կդարէից. այլ պակասի այն անուն յերկուս ձեռագիրս,

ալանաց, մինչև 'ի սահմանս Կասբից‖. և ոչ 'ի դրունս Կասբից։

Եւ այսպէս յերիս տեղիս ձգեն նախնիք զանուանս Կասբից. մի՝ 'ի բերանի կուր կամ երասխ գետոյն, այսինքն 'ի փայտակարան. երկրորդ՝ ընդ մէջ մարաց և պարթևաց։ Առաջնոյն ազգն անուանի քան զերկրորդին. այլ ոչ յիշեն անդ դրունս կասբից. զերկրորդին յիշեն և զդրունս, և զլեառն, և զազգ, այլ դրունք նորին անուանի. իսկ երրորդն ձգի 'ի լերինս կովկասու, ուր յիշեն ըզճանապարհ, զկիրճ, և զլեառն. այլ այս երրորդն սակաւ ուրեք յիշատակի (1)։

Թէ ո՛ զառաջինն գրաւեաց զԿասբս 'ի սահմանս հայաստանեայց՝ անյայտ է 'ի պատմութեանց. այլ քանզի Կասբք է նոյն ընդ փայտակարանի՝ միումն 'ի ԺԷ. նահանգաց մեծին հայոց, յայտ է թէ արամ կամ նորդ էառ, կամ մանաւանդ զառեալն յիւրոց նախնեաց առաւել ևս սեպհականեցոյց ազգիս. զի որպէս այլուր նշանակեալ է մեր՝ ԺԷ. նահանգք մեծին հայոց էին սեպհական ազգիս նաև յառաջ քան զարամ։

Յետ արամայ քաջայայտ երևի՝ թէ տիրէին Կասբից և հզօր թագաւորք 'ի յետագայս, դէթ մեծն տիգրան, վաղարշակ, ա. արտաշէս, բ. տիգրան (միջինն), որք և եղեն ընդարձակողք սահմանաց. զի թէ տիրէր Կասբից տրդատ՝ որպէս ուսուցանէ ագաթանգեղոս, ևս առաւել տիրէին զօրաւորագոյնքն յարշակունիս, որոց

և գտանի միայն 'ի միումն՝ որ բազում ուրեք համաձայնի ը. տպագրելոյն, նաև 'ի սխալանս, յորում և գրի Կ**բ*։

(1) Զգիրս պտղոմեայ զոր յիշեցաք 'ի վերոյ, ոչ համարիմ տարբեր յառաջնոյն. այլ է նոյն իսկ ժողովուրդ և լեառն կասբից առ համանուն ծովու, զոր սա ինքն պտղոմէոս քանի մի աստիճանօք փոխադրէ յարևմուտս հարաւոյ հեռի 'ի ծովէն, որպէս և նշանակէ չէլլարիոս. և է իբր տարաձայնուէ կարծեաց 'ի վերայ տեղւոյ մի և նոյն ժողովրդեան, ոմանց աստ դնելով, և ոմանց անդ։ Յորում չէ պարտ հետևել պտղոմեայ յայսումիկ կողմանս, քանզի և զընթացս երասխայ ըստ մասին խառնէ 'ի կուր, և ըստ մասին 'ի ծով ուրոյն ուրոյն բերանով, զոր ոչ ոք դնէ 'ի նախնեաց։

Այլուր մերձ 'ի կողմանս տիգրիսի թուի դնել զդրունս կասբից պլինիոս՝ որ Զ. 15. գրէ՝ թէ Բրագիդք անուն ժողովուրդք մարաց՝ որք սահմանակիցք են կորդուաց բնակելոց առ տիգրիսիւ, ունին զդրունս Կասբից. այլ յայսմանէ չէ մարթ ստոյգ ինչ որոշել. զի նոյն պլինիոս գլ. 25. զԲրագիդեան ժողովուրդ մարաց դնէ ուղղութեամբ յարևմուտս պարթևաց. ուր և դնէն նախայիշատակեալ մատենագիրք զդրունս Կասբից, որով Բրագիդք տարակային յոյժ 'ի կողմանց տիգրիսի, ուր եդ զառաջինն։

սահման չէր յափշտակեալ 'ի Թշնամեաց, որպէս յափըշտակեցաւ 'ի պարսից յաւուրս մանկութեան տրդատայ։ Յայն սակս առումն արտաքսիայ և դարխասայ զօրավարաց մեծին անտիոքոսի, զորմէ պատմէ ստրաւոն գիրք ժա․ Թղթ 528․ ոչ է նոր առումն Կասբից 'ի հայս՝ (եդեալ ևս ստոյգ զնորին պատմութի զոր բերէ յայլոց զրուցաց), այլ անդրէն գրաւումն․ զի հայկազունքն արամ և մեծն տիգրան բազմօք յառաջ են քան զմեծն անտիոքոս․

'Ի ժամանակս Բ․ արտաշէսի արքային մերոյ՝ ընդ տէրութե հայոց և պարսից դնէ լեալ խորենացին Բ․ 50․ զԿասբս, և յաւուրս նորա ապստամբեալ, և դարձեալ 'ի ձեռն քաջին սմբատայ հնազանդեցուցեալ․ որոյ՝ որպէս գրէ անդէն․ * Զերկիրն Կասբից (1) աւերեալ՝ առաւել քան զարտաշէսեան գերին բազմութե ածէ 'ի հայս, ընդ որս և զզարդմանոս անուն Թագաւոր նոցին ‖։

Դարձեալ ապստամբեցան Կասբք 'ի հայոց յաւուրս Բ․ արշակայ ըստ պատմելոյ բուզանդայ Դ․ 50.։ * Յետ այսորիկ (ասէ) ապստամբեաց 'ի Թագաւորէն հայոց և ձեռին իշխանութեանն տանն հայոց Թագաւորին՝ որ էր զատրպատական աշխարհաւն, յետս եկաց 'ի Թագաւորէն հայոց ամուր աշխարհն մարաց, յետս եկաց յարքայէն հայոց և աշխարհն Կազբից ‖։ Այլ մուշեղ սպարապետ պապայ արքայի անդրէն նուաճեաց, և 'ի հարկի կացոյց։

'Ի բերոց՝ ունի փայտակարան ըստ խորենացւոյն Նամբակ անբաւ, և Պարի ինքնաբոյս։

Վասն գաւառաց սորա գրէ խորենացին՝ որպէս ասացաք, Թէ * Այժմ ատրպատականք ունին ‖․ ուր 'ի միում ձեռագրի գրի՝ * Այժմ ատրպատական անուանեն ‖։ Իսկ Թիւ նոցին յամենայն օրինակս աշխարհագրութե խորենացւոյն նշանակին ԺԲ․ բայց ապա 'ի Թուելն յանուանէ 'ի տպ․ և 'ի միում ձեռ․ գտանին ԺԳ․ գաւառք․ իսկ յերկուս ձեռագիրս՝ ԺԴ․ որպէս ունիս տեսանել յառաջիկայդ։ Առ Թովմայի կիլիկեցւոյ՝ յորում վրիպակաւ և Թերատ գրեալ կան անուանք գաւառացս, զինի ամենեցուն յաւելու իբր 'ի գաւառաց փայտակարանի և զԿազբս։

(1) 'Ի տպ․ վրիպակաւ գնի Կոսէնս, և յերրորդում՝ Կոնէնս։ Պոլոնս, բայց յերկուս ձեռ․ գնի

| | | | |
|---|---|---|---|
| ա. | Հրակոտ. (1) | ը. | Ռոտասաս. (5) |
| բ. | Պերոժ. | թ. | Ռիճանհանք. (6) |
| գ. | Վարդանակերտ. | ժ. | Աթշի. (7) |
| դ. | Յօթնփորակեան Բագինք. | ժա. | Բագաւան. (8) |
| ե. | Ռոեչեան. (2) | ժբ. | Սպանդարանէ Պերոժ. (9) |
| զ. | Ոձուէթաղայ. (3) | ժգ. | Որմզդէպերոժ. (10) |
| է. | Ռաղանրոտ. (4) | ժդ. | Ալեան. (11) |

Յայսչափ գաւառացս միջի՝ անուն Վարդանակերտի ևեթ յիշատակի 'ի գիրս, զոր և քննեսցուք յառաջի կայդ, այլ նախ եղեալ զփայտակարան քաղաք՝ որոյ գաւառ անծանօթ:

Փայտակարան: Քաղաք՝ որ անկանի յայսմ նահանգի, որպէս և անուամբ իսկ յայտ առնէ՝ գոլով համանուն ընդ նահանգի. զնոյն ցուցանեն և վերոգրեալ բանք ագաթանգեղոսի և բուզանդայ, նոյնպէս և խորենացւոյն գ. 3. որ նախ զփայտակարան կոչէ Քաղաք հեռաւոր 'ի բացակողմանն իշխանութե տրդատայ. ապա զայս բացակողմն ցուցանէ լինել 'ի կողմն աղուանից և 'ի կողմն կասբից ծովուն. և 'ի գլ. 6. առ ատրպատականաւ, և առ պարսից սահմանաւ, որպիսի էր փայտակարան նահանգ (12):

(1) Այսպէս գնի և 'ի տպա. գրեալն և 'ի միում ձեռագրի. իսկ յերկուս ձեռագիրս՝ Հրէրոտ:

(2) Պակասի այս անուն 'ի տպ. և 'ի միում ձեռ". և գտանի յերկուս ձեռագիրս:

(3) Այսպէս գնի յերկուս ձեռ". իսկ 'ի միում և 'ի տպ. գրի այսպէս. Ոտնի տոփէթաղայ:

(4) Այսպէս յերկու ձեռագիրս, իսկ 'ի միում և 'ի տպ. Բաղանրոտ:

(5) Սոյնպէս գնի յերկուս ձեռ". իսկ 'ի տպ. և 'ի միում ձեռ". Ասաս:

(6) Այսպէս գնի յերկուս ձեռ". իսկ 'ի միում Պիճան յօգի ընդ վերոգրելոյն, գրելով Ատրպիճան. 'ի տպ. Պիճանհանհանք:

(7) Այսպէս յերկուս ձեռ". իսկ 'ի տպ". և 'ի միում ձեռ". Աթշի:

(8) Մինչև ցայժմ յեզր կասբից ծովուն է քաղաք ինչ կոչեցեալ Բագու, որ թերևս անկանի յայսմ գաւառի, զանուն խուր պահեալ 'ի վերայ:

(9) 'Ի տպ". և 'ի միում ձեռ". Սպանդարանպերոժ. իսկ 'ի միում ձեռ". վրիպակաւ գրեալ կայ և յերկուս բաժանեալ. առ Թովմայի կիլիկեցւոյ գրի Սպանդարան:

(10) Այսպէս գրի յերկուս ձեռ. իսկ 'ի տպ. և 'ի միում ձեռ. Որմզդ պերոժ. առ Թովմ. կիլիկ". Որմզդան:

(11) Այսպէս յերկուս ձեռ". իսկ 'ի տպ". և 'ի միում ձեռ". Ալեան:

(12) Խորեն. յայն գլ. դնէ ըզփայտակարան քաղաք ընդ գործակալօք կողմանցն արևելեան հիւսիսոյ, յոր կողմն անկանի և փայտակարան նահանգ ըստ գրոց համօրէն հայոց: Յաւել և զայս, թէ խորեն. ասաէն ոչ զփայտակարան,

Օ այս 'ի միտ առեալ, պարտ է այժմ քննել զդժուարութիւնն որ ծագի 'ի բանից յետագայ մատենագրաց, քանզի ոմանք սկսեալ 'ի Թովմայէ արծրունւոյ՝ նոյն կացուցանեն զՓայտակարան ընդ Տփխիս քաղաքի: * Նոյն խաղաց (տես Թովմ. արծր. դ. Ց. վասն բուղայի) համանել 'ի վերայ արեւելից աշխարհին, և հրաման ետ համանել 'ի վերայ քաղաքին Տփղիք կոչեցեալ, որում յառաջագոյն Փայտակարան անուանէին, (զի) և 'ի փայտից մայրեաց շինեալ էր քաղաքն նոցա, պարիսպք, և պատուարք, և ապարանք նոցա, և ամենայն տուն բնակաց քաղաքին, և ամենայն կազմած պատրաստութեան նոցա ‖: Նոյնպէս և երզնկացին 'ի Նախադրութեան Ճառին երկնային շարժմանն՝ ուր ասէ. * Պատահեաց գալ ինձ 'ի կողմանս ա̄ծապահ Թագաւորութեաս աշխարհիս վրաց, 'ի հռչակաւոր և 'ի մեծ մայրաքաղաքս 'ի Տփխիս, Փայտակարան կոչեցեալ 'ի գիրս պատմողաց ‖:

Կիւրին էր մեկնել զբանս սոցա՝ ասելով, թէ Տփխիս քաղաք 'ի ժամանակս սոցա կոչէր Փայտակարան, եթէ ոչ յաւելուլին Յառաջագոյն, կամ թէ 'ի գիրս պատմողաց Փայտակարան կոչէր Տփխիս: Որով կամին ասել, թէ այն՝ որ այժմ Տփխիս կոչի՝ 'ի ժամանակս մատենագրաց նախ քան զմեզ եղելոց՝ կոչէր Փայտակարան. Կիւրին լինէր նաև՝ եթէ յայտ առնէին, թէ ո՛ր պատմագիրք են՝ որք զՏփխիս կոչէին Փայտակարան. զի յոհաննէս կաթողիկոս ուրոյն անուանէ զՏփխիս՝ կոչելով Մայրաքաղաք վրաց, և ուրոյն զՓայտակարան, ո՛չ ուրեք նոյնացուցեալ զերկոսին: Խորենացին զՏփխիս ընդ Շամշուդէ քաղաքին դնէ 'ի վերս. արդ՝ վերք 'ի հայոց գնահանգն գուգարաց առին, այլ ո՛չ զՓայտակարան՝ որ կարի հեռի բացակայի 'ի նոցունց: Նոյնպէս և եղիշէ, և բուզանդ, և ագաթանգեղոս զՓայտակարան դնեն յայն կողմն, ուստի հեռի է յոյժ Տփխիս՝ որ կայ մինչև ցայժմ, և կոչի Թիֆլիս, զորմէ տես 'ի "Նոր հայ". 276:

Ոչ մարթ ես ասել, թէ զքաղաքն զոր նախնիք կոչեցին Փայտակարան, յետագայք կոչեցին Տփխիս, վասն ընդդէմ ելանելոյ գրեցն. զի որպէս խորենացին զՏփխիս դնէ 'ի վերս՝ որով տարակայի յոյժ 'ի Փայտակարան քա-

այլ զգործակալս կոչէ Արեւելեան հիւսիսոյ. այսինքն գործակալ կացուցեալ էին համօրէն կողմանցն հայոց՝ որ անկանէր յարեւելս հիւսիսոյ. և սահման նոցա ձգէր նաև 'ի վերայ Փայտակարանի.

ղաքէն, սոյնպէս և յոհաննէս երզնկացին դնէ 'ի վերս. և որպէս յոհաննէս կաթուղիկոս զՏփխիս դնէ առ Կուր գետով յասեն վասն սմբատայ. * Զգեալ աձեցուցանէր զշաւիղ տէրութե իւրոյ ... զԿուր գետով մինչև 'ի քաղաքն Տփխիս‖, Նոյնպէս և Թովմա արծրունի 'ի գ. 8. յասէն վասն բուղայի. * Բայց հասեալ բուհայ անց ը գետն մեծ՝ որ Կուրն կոչեն, և յորձանուտ շարժման գարնանային հոսանացն տեղի տուեալ ելանել զօրուն, և բնակել շուրջ զքաղաքաւն‖, այն է Տփխեաց: Եւ վասն նորին Տփխիս քաղաքի ասէ, թէ առ փայտակերտ գոլոյն՝ դիւրաւ այրեաց զայն բուղայ: * Նոյնժամայն շուրջ փակեալ (ասէ) զքաղաքաւն (Տփխեաց՝ զոր և 'ի վերոյ կոչեաց փայտակարան,) հրձգութբ, և դիզեալ բորբոքէր հուրն 'ի դիւրածախ փայտէն մայրից և գիոց‖:

Եւ որպէս յոհաննէս կաթուղիկոս մերձ ցուցանէ ընդ Տփխիս 'ի բերդն Շամշուղէ՝ յասեն վասն Նորուն բերդապահից, թէ յօգնութիւն կոչեցին իբր մօտակայս իւրեանց * Օսպայազօրն Տփխեաց, և զծործորոցն կողկասու‖ ընդդէմ մօտակայ թշնամւոյն [1], սոյնպէս և Թովմա արծրունի՝ զմի դուռն Տփխեաց դնէ 'ի Ճանապարհին Շամշուղէի, ուստի և մերձ նմին: * Իսկ քաղաքապետն սահակ (ասէ) ելեալ ընդ դուռնն (Տփխեաց՝) որ ելանէ 'ի բերդն Շամշոյ‖: [2]

Եւ այսպէս ոչ կարեմք ստուգել զբանս սոցա, թէ ոյք էին 'ի նախնեաց՝ որք զՏփխիս կոչեցին փայտակարան, որպէս կոչեն ինքեանք. և կասկածիմք վրիպանօք տպրդեալ այս կարծիք առ յետագայ մատենագիրս՝ 'ի վերայ նախնեաց. և յայնմանէ ուրեք ուրեք շփոթեցին զայս նոր փայտակարան (որ է Տփխիք) ընդ հին փայտակարանին որ է 'ի համանուն նահանգի: Որպէս և յայտնի իսկ սխալանօք դնի յայսմաւուրս յուլ. 31.

(1) Յայտ է թէ վասակ և աշոտ բերդապահք Շամշուղէի զմերձաւորս իւրեանց կոչեցին յօգնութի ընդդէմ աշոտոյ Թագաւորին՝ յորմէ ապստամբեալ էին, և ոչ 'ի Փայտակարան քաղաքէ և 'ի նահանգէ՝ որ էր հեռի, և գրեթէ առհասարակ գրաւեալ յայնժամ 'ի տաճկաց:

(2) Մի ոք ընդդէմ ածիցէ առ այս՝ թէ Թովմա արծրունի 'ի վերոգրեալ բանի զՏփխիս դնէ յարևելս՝ որ ոչ անկանի յայն կողմն, այլ 'ի հիւսիս. նախ՝ զի ոչ վասն Տփխեաց, այլ վասն բուղայի գրէ, թէ եկ հասանել 'ի վերայ արևելից աշխարհին. և բուղա ընդ զանազան քաղաքս Ճանապարհորդեաց. երկրորդ՝ զի և կողմանքն հաղբատոյ, սանահնի, են՝ որք անկանին 'ի հիւսիսակողմն, 'ի գիրս յետագայ մատենագրաց կոչին՝ արևելից աշխարհ:

'ի տպագր. 'ի վերս ղեւոնդեանց, ուր Տփխիս կոչի այն փայտակարան քաղաք, զոր եղիշէ դնէ 'ի փայտակարան նահանգի Թղթ. 88. 'ի գրելն վասն միհրներսեհի. * Հասեալ մերձ 'ի սահմանս հայոց՝ մտանէր 'ի քաղաքն փայտակարան, և զզօրսն ամենայն սփռէր տարածանէր շուրջ զքաղաքաւն ||. Միհրներսեհ քանզի 'ի պարսից սահմանէն մտանէր 'ի սահմանս հայոց, փայտակարանաւն իմանայ եղիշէ զայն քաղաք՝ որ անկանի յայսմ փայտակարան նահանգի, և ոչ որ 'ի վերս. որպէս յայտ առնէ զայս նաև անտուստ յետս դառնալն նորին միհրներսեհի յերկիրն արևելից 'ի պարսս՝ առ 'ի յանդիմանն լինել թագաւորին պարսից, որպէս գրէ եղիշէ 'ի Թղթ. 96. և յառաջանալն մուշկաննիւսալաւուրտայ 'ի փայտակարանէ 'ի հեր և 'ի զարևանդ գաւառ հայոց. (առ նմին եղիշէի Թղթ. 104.) զի այս ամենայն յարմարին դրից փայտակարան նահանգին (1). և սակայն յայսմաւուրս վասն նորուն միհրներսեհի գրի այսպէս. * Եկն 'ի փայտակարան քաղաք՝ որ է Տփխիս ||.

Ի սոյն վրիպանս և առ վարդանայ աշխարհագրի գտանեմք՝ որ գրէ. * փայտակարան Տփխիս է. Սարդանակերտ Տփխեաց վիճակն է ||. Արդ՝ որպէս յայտնի գիտեմք 'ի խորենացւոյն՝ թէ Սարդանակերտ է 'ի փայտակարան նահանգի, նոյնպէս յայտնի է և վրիպակն սորա 'ի դնել զնոյն 'ի վիճակին Տփխեաց. յորմէ զհետ գայ և երրորդն՝ թէ նոյնպէս վրիպակ է՝ Տփխիս կոչելն յետնոց զփայտակարանն խորենացւոյն ։

Ի սոյն վրիպանս և զասողկայ կասկածիմք. զի ուր յոհաննէս կաթողիկոս գրէ զյուսփայ ոստիկանէն՝ թէ գայ 'ի փայտակարան, և անտի ընդ Ուտի գաւառ մինչև ցՏաշրատափ, անդէն վասն նորին յուսփայ գրէ, գնալ նախ 'ի Պարտաւ՝ որ է քաղաք յուտի գաւառին, և անտի զաղտագնաց եղեալ ընդ Տփխիս՝ հասանել 'ի Տաշիր (2).

(1) Պատմութիւնն իսկ եղիշէի ցուցանէ զայս, զի մուշկանն որ զօրագլուխ կարգեցաւ 'ի միհրներսեհէ 'ի փայտակարանի անդ, հարկ էր մտանել 'ի հեր և 'ի զարևանդ գաւառ, այսինքն 'ի պարսկահայս՝ առ 'ի խաղալ անտի ընդդէմ բանակին հայոց, որ էր 'ի կողմանս այրարատոյ. իսկ թէ այս փայտակարան Տփխիս լինէր՝ կրկնութիւն էր ճանապարհաց՝ 'ի Տփխեաց մտանել 'ի հեր և 'ի զարևանդ, և անտի 'ի կողմանս այրարատոյ, զի 'ի Տփխեաց կարէր գնալ յայրարատ՝ առանց գնալոյ 'ի հեր և 'ի զարևանդ ։

(2) Յայսմիկ բանս ասողկայ ամենայն անուանք համաձայնին՝

Այլ ստուգել զոյգս վրիպմանս՝ թողումք յետագայից, և մեք հաւանական համարիմք՝ թէ բնիկ փայտակարան քաղաք յիշատակեալ 'ի նախնեաց՝ է 'ի փայտակարան նահանգի. իսկ զկնի՝ նաև Տփխիս քաղաք վրաց կոչեցաւ 'ի հայոց փայտակարան, ըստ վկայելոյ յետագայ մատենագրացս, յորս յաւել և զԹովմա Մեծոփեցի՝ որ իբր մի և նոյն անուն զերկոսին 'ի գործ ածէ՝ յասելն վասն Թագաւորին Թաթարացն ազախու. * Ընթացեալ բազում զօրօք 'ի փայտակարան Տփխիս քաղաք ‖: Նաև այս սակս փայտակերտ գոլոյ շինուածոցն՝ որպէս ասէ Թովմա Արծրունի, և այնպէս լինելն կրկին քաղաքք փայտակարան անուանեալ: Իսկ վրիպանք վերոգրեալ մատենագրաց՝ առաջին՝ լինի կարծել զնախնեաց թէ և նոքա զՏփխիս կոչէին փայտակարան, և թէ՝ մի և նոյն փայտակարան էր նախնեաց՝ որ կոչէր նաև Տփխիս: Երկրորդ՝ որ զհետ գայ յառաջին վրիպմանց՝ ինքեանք մի և նոյն համարելով զանուանս Տփխիս՝ ձգեցին 'ի վերայ փայտակարանին առաջնոյ, կոչելով Տփխիս նաև զայն փայտակարան նախնեաց, և փոխանակ միմեանց 'ի գործ ածելով (1):

Ագաթանգեղոս՝ որպէս գրեցաք 'ի վերոյ, կոչէ զայս հին փայտակարան «Քաղաք արքայութեան հայոց», յորմէ երևի լինել 'ի նմա ապարանք արքունականք, ուր երբեմն երբեմն գնային Թագաւորք հայոց զբօսանաց աղագաւ, կամ 'ի ժամանակս պատերազմի. այլ բնակել անդ Թագաւորի ումեք որպէս յայլ Թագաւորանիստ քաղաքս՝ ոչ գտանեմք ուրեք. բայց եթէ սանատրուկ արշակունի յետ մահուան տրդատայ՝ հակառակ որդւոյ նորին Թագ կապեաց 'ի փայտակարան. այլ այս եղև ապստամբութբ, և զկնի աւարտելոյ պատմութե ագաթանգեղոսի: Կամ թէ կոչէ՝ «Քաղաք արքայութեան հայոց» զտէրութիւն հայոց նշանակելով, որպէս թէ ասէր՝ «Քաղաք ընդ Թագաւորութեամբ հայոց:

Տիգրանակերտ: Աւան՝ այլ 'ի քաղաքէն զոր եդաք յաղձ.

յիշատակելոցն 'ի յոհաննէ կաթուղիկոսէ, զի Տաշիր և Տաշրատափ է նոյն. միայն Տփխիս և կարգ տեղեացն են որք տարաձայնին, ուր Թերևս ասողիկ ճշգի- 'ի մտի եդեալ՝ թէ Տփխիսն է փայտակարան, ընդէմ Թուեցաւ կարգ տեղեացն որ 'ի յոհ. կաթ. զի արդարև կրկնութի է ձանապարհի՝ նախ գնալ ումեք 'ի Տփխիսանաի յՈւտի, անտի 'ի Տաշիր. և յայս սակս Թերևս փոխեաց, նախ գնելով զՊարտաւ կամ զՈւտի, ապա զՏփխիս:

(1) Ջբանս մատթէոսի վասն փայտակարանի տես 'ի Պարտաւ քաղաք՝ որ է յՈւտի:

նիս, զոր յայս նահանգ դնէ աստղիկ ՃԵ. 3. ասելով. *Պոայ հասանէ 'ի փայտակարան յաշխարհն կաղբից, բանակին 'ի Տիգրանակերտ աւանի ||: Պտղոմէոս Ե. 13. կոչէ զայս Պուէնքրանասա, կամ որպէս դնի 'ի բաղադրնեան ձեռագրի՝ Պուէնքրանօսա, և դնէ 'ի մեծ Հայս 'ի սահմանակցութե մարաց. Թէպէտ և տեղի նորա ճշգիւ ոչ համաձայնի ընդ ամս. քանզի որպէս բազում անգամ գրեալ եմք՝ սակաւաւոս և քաղաքս է գտանել առ օտար ազգաց մատենագիրս՝ որոց տեղիք համաձայնեսցին ընդ ճշգրիտ տեղեացն, զոր նշանակեն մեր մատենագիրք:

## ՎԱՐԴԱՆԱԿԵՐՏ.

Հայկական անուն այսր գաւառի՝ ըստ հնչմանն ոչ անծանօթ 'ի մէջ այլոց գաւառաց փայտակարանի, զհամանուն աւան ունել 'ի սահմանի իւրում տայ մեզ ակնարկել՝ Թէպէտ և չունիմք ուստեք յիշատակութիւն հաւաստի զվարդանայ՝ յորոյ անուն կոչեցաւ: Իսկ զոր ղևոնդ պատմիչ 'ի գլ. Է. (1), և աստղիկ 'ի Ճ. 4. կոչեն

(1) Զընդարձակ բանս ղևոնդեայ՝ որ ստորագրէ զգիրս տեղւոյ պատերազմի նախարարացն հայոց ընդ զօրացն հագարացւոց, 'ի դէպ համարիմք կարգել 'ի վերլուծութեան աստ: * Եւ իբրև գնաց (ասէ) մահմէտ զօրավարն յասորիս՝ եթող իշխան աշխարհիս հայոց փոխանակ իւր յիմայելացւոց. որոյ խորհուրդ վատ 'ի մէջ առեալ բառնալ զազատախումբ տոհմն յաշխարհէս հայոց համդերձ նոցին հեծելովք. և ընդ վաղվաղակի յայտնեցաւ նենգութի նորա սմպատայ՝ որ էր 'ի տոհմէն բագրատունեաց, և այլոց նախարարաց, և նոցին հեծելոց. իսկ իբրև զգայր զդաւաճանութի կոչէր առ ինքն զհամազունս իւր զազատախումբ բանակին՝ զսմբատ որդի աշոտի իշխանի, և զվարդ զորդի Թէոդորոսի իշխանի, և զեղբայր իւր զաշոտ, և զայլ նախարարսն, և խորհէր հնարս գտանել՝ որով մարթասցեն զանձինս ապրեցուցանել:

" Եւ եղև խորհրդին տեղի տալ՝ և գնալ յաշխարհէս առ Թագաւորն յունաց: Եւ անդէն անջատեալ մեկնեցան ոմանք 'ի նախարարաց վասպուրական աշխարհին. իսկ նոցա դէմ եդեալ գնացին 'ի կողմանցն վասպուրականի 'ի դաշտավայր մարզէն՝ որում Աւեստափակողն կոչեն. քանզի անդ բնակեալ էր միայնակեաց ոմն՝ առ որ չոգան հարցանել զորպիսութի գործոյն, քանզի էր այր սուրբ և ընտրեալ . . . իսկ նորա աշխարհեալ և աւաղեալ զկորուստ աշխարհիս . . . յանձնեաց զնոսա շնորհացն տն՝ և առաքեաց յիւրմէ: Եւ նոքա գնացեալք ընդ եզր գետոյն երասխայ՝ անցանէին ընդ սահմանն Ողղայեայ, և սահմանան էին 'ի մեծ աւանն Ակոռի:

" Իսկ զօրքն իսմայելի որք էին 'ի Նախջաւան քաղաքի՝ յարձակեցան զկնի նոցա, և ոչ մեկնեցան 'ի հետոց նոցա, քանզի էին աւելի քան զԵռ. որ կամէին կենդանւոյն կլանել զնոսա: Եւ իբրև աղդ-

## ՆԱՀԱՆԳ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ՈՒՏԻ

Յերկուս ձեռագիրս վարդանայ աշխարհագրի գրի Ուտա։ Ստէպ ՚ի գործ ածի յարակցեալ ունելով զբառս Գաւառ։ * Իսկ և իսկ ժամանեալ գուժկան (ասէ յոհաննէս կաթուղիկոս) յՈւտի գաւառէ առ Թագաւորն աշոտ հասանէր, ասելով նմա զելս իշխանին սահակայ աներոյ նորա յՈւտի գաւառ ||։ Յոր անուն կոչի աստէն նահանգն, և ոչ լոկ գաւառն. զի ստորև յիշի զարդմանն՝ որ ոչ էր յՈւտի գաւառին, այլ յՈւտի նահանգին։

՚Ի գործ ածի երբեմն նաև ստոկ առանձին, ևս և ՚ի հոլովմունս, որպէս յասելն խորենացւոյն վասն դուգարաց՝ թէ ՚Ի ծովեց կայ Ուտէոյ։ Կոչի նաև Ուտացւոց գաւառ, որպէս է տեսանել ՚ի Ճառընտիրս ՚ի պատմութեան գիւտի նշխարաց գրիգորի. * Յայժ հաւաքեալ լուր սքչն գրիգորիսի ընդ ամենայն աշխարհն Ուտացւոց գաւառին ||։ (1)

Առ խորենացւոյն Բ. 7¹. գրի Ուտէացւոց գաւառ. իսկ առ յովհաննու կաթողիկոսի ուրեք՝ Աշխարհ Ուտիացւոց։ Կոչի նաև առ ագաթանգեղոսի թղթ. է. Ոտէ գաւառ. ՚ի տպ՚՚. Օտէ գաւառ, որ է նոյն ընդ անուանս Ուտէ. զի որպէս ագաթանգեղոս զանակայ յանդիման լինելն առ խոսրով, դնէ յայսմ յՈտէ գաւառին, սոյնպէս և խորէն. Բ. 7¹. զխոսրով դնէ լեալ յայնմ ժամանակի յՈւտէացւոց գաւառին։

Առ օտար ազգաց մատենագիրս՝ այս անուն գրի Օտէնէ, զոր ստեփաննոս կոչէ Ոտան հայաստանեայց, և ՚ի վկայութի կոչէ զգուստրագոս՝ որ այսպէս գրէ յերրորդ գիրս պարթևաց. * Իսկ բագորոս արքայ հայաստանեայց զայնու ժամանակաւ մերձ ՚ի յարդաքսադա (այն է՝ արտա

(1) Այսպէս գրի յերկուս հին որի գրեալ կայ Ուտիացւոց գա-
[illegible]

շատ), և 'ի Ոդենի Հայոց կացեալ‖. առ արտաշատաւ դնելով սահմանակից կացուցանէ երասխ գետոյ։ Այլ յերկրորդ գիրս դնէ առ կուր գետով. * Ո գիրս (այս ինքն զկուր) գետով բնակին Ովարք և Ոդինք որք են մեծ մասն Հայաստանեայց‖ ։ Յիշատակէ զՈդինի և բարդեծան ասորի առ Եւսեբեայ 'ի Նախապատր. աւետար. գիրք Զ. Թիւ 10 ։

Առ պլին. Է. 13. լատին հնչմամբ գրի Otene։ * Ադրօբադենէ (ասէ) 'ի Ոդենէ գաւառէն Հայոց երասխաւ բաժանեալ‖։ Այսինքն որպէս մեկնէ Հարտուին, Ատրպատական կցի ընդ մեծ Հայս, յորոյ յարևելեան կողմանէ՝ որ Ոդենէ կոչի, միայն երասխ գետով բաժանի։ Սոյն այս անուն է՝ որ առ պտղոմէոսի Ե. 13. գրի վրիպակաւ Σωτηνή, և դնի 'ի մեծ Հայս մերձ 'ի կուր գետ. և յաշխարհացոյցս պտղոմեայ գրի Γωτηνή, որպէս նշանակէ ընդ այլոց նաև պօշար։

Բաց յանուանէ աստի՝ որ է մի և նոյն անուն զանազան հնչմամբ, և զանազան օրինակաւ գրեալ, կոչի նաև յանուն Աղուանից՝ սակս գոլոյ ընդ տէրութեամբ նոցին։ Իսկ բնակիչքն յորջորջեն նաև յայլ նոր անուն՝ իբրև առանձին ժողովուրդ, այն է Սև-որդիք, որպէս վկայէ յոհաննէս կաթողիկոս, յասելն. * Ո՛չ գիտելով զնենգութեան զօրաց իւրեանց բնակչաց Ուտի գաւառի՝ որ են Սևորդիք‖. զորոյ զպատճառն դնէ յայս բան. * Զուէ զօրուծանոր հրոսակ գեորգեայ նահապետին Սևորդեաց, որ սակս Սև կոչեցելոյ հաւուն իւրեանց՝ ազգն յայն անուն Սևորդիք անուանեցին‖։ Առ ասողկայ այս անուն գրի Σεβορδῖοι. որ առ ընդարձակողին վարդանայ աշխարհագրի՝ գրի Σαβορδῖοι։ Տես ստորև և զՏօուս գիւղ։

Սովին անուամբ, որպէս և ուրեք ուրեք Ուտէացւոց անուամբ իբր մասնաւոր ազգ յիշատակին սոքա (1)։

Նաև Եպիսկոպոսունք իսկ յայս անուն յիշատակին 'ի գիրս, որպիսի են՝ Մարտիրոս և Գրիգոր եպիսկոպոսունք Սևորդեաց։

(1) Այլոց թողցուք 'ի քննել զՍօ ազգին Σαυρομάται, զորս պլինիոս Է. 7. յիշատակէ ընդ սարմատացիս. մերգեօք Σεβορδῖοι էին 'ի կարգս սարմատացւոց ազանց դասեալ 'ի նմանէ, թէ հատուած ինչ Սեաւորդեաց բնակեալ առ Դանաիս գետով. քանզի բաց 'ի մերձաւորութենէ անուանց՝ սոլինոս գլ. ԺԵ. զՍաւրոմատս 'ի մարաց անտի սերեալս դնէ. իսկ անուամբ Մարք՝ ուրեք ուրեք փոխանակ հայոց առեալ լինի առ նախնիս։

Գետքն սորա ըստ պլինիոսի անկանի առ Երասխաւ, իսկ ըստ գուատրադոսի՝ առ Երասխաւ և առ Կուր գետով, համաձայն Խորենացւոյն՝ որ գրէ. * 'Ի մտից կայ Երասխայ՝ ընդ մէջ Արցախայ և Կուր գետոյ ‖: Այսինքն անկանի յարևմտից Երասխայ 'ի հարաւոյ Կուր գետոյ, և յարևելից Արցախայ. յորմէ յայտ է թէ՝ մի ծայր նորա անկանի 'ի խառնուրդս անդ Կուր գետոյն յԵրասխ. և որպէս ցուցանեն տեղիք որք կան մինչև ցայժմ, ինքն Ուտի նահանգ երկայնաձգեալ՝ կայ առ աջակողմամբ Կուր գետոյն, յերկուց՝ նա մանաւանդ յերից կողմանց պատեալ ջրով, 'ի հիւսիսոյ և յարևելից՝ Կուր գետով, (ուրանօր եդ զՈւտի և գուատրադոս). իսկ 'ի հարաւոյ՝ սակաւուք Երասխաւ:

Առ Կուր գետով սահմանակից լինի Աղուանից, քանզի Խորենացին զաղուանս ձգէ մինչև * 'Ի հայոց սահման առ Կուր գետով ‖. և * Մինչև 'ի խառնմունս Երասխայ 'ի Կուր գետ ‖: Առ Երասխաւ սահմանակից լինի Փայտակարանի ըստ Խորենացւոյն, զորմէ տես 'ի ստորագրութեան Փայտակարանի:

Իսկ ըստ պլինիոսի՝ սահմանակից լինի Ատրպատականի, քանզի պլինիոս զՓայտակարան դասէ ընդ Ատրպատականս:

Ունի ամուր և անել տեղիս, զորոյ զանձաւախիտ ամրոցս մայրեաց՝ որք էին 'ի գարդմանն գաւառի սորա, այլ և զանտառախիտ մայրիս՝ որ էին առ ափն Կուր գետոյ, յիշէ յոհաննէս կաթուղիկոս:

'Ի բերոց ունի ըստ Խորենացւոյն՝ Ձիթենի սակաւագիւտ 'ի Հայաստան, Սարընկենի (1): Պլինիոս ժբ. 12. դնէ և կինամոն, Ամոմում ձայնեալ լա: * Բուսանի (ասէ Ամոմում) և 'ի մասին Հայաստանեայց՝ որ կոչի Ոտենէ ‖: Զորմէ տեսցես 'ի ներածութեան Հայաստանեայց: Իսկ 'ի թռչնոց ունի՝ Կատակ:

Ուտեացւոց սերունդ իշխանէ 'ի զաւակացն առանայ, որ էր 'ի ցեղէն սիսակայ, և կարգեցաւ 'ի վաղարշակայ կողմնակալ արևելից հիւսիսոյ կողման, որպէս է տեսանել առ Խոր. Բ. 7. կամ ըստ ձեռ". 8. * 'Ի սորա (այսինքն առանայ) զաւակէ ասեն սերեալ զազգ Ուտեաց

(1) 'Ի ձեռ". աշխարհագր. խո. կիլիկեցւոյ յիշատակի 'ի բերս և րեն. գրի Վարընկենի: Յերկուս Յասմիկ, որ ոչ գտանի 'ի տպ. և ձեռ". խորեն". և առ Թովմայի 'ի միում ձեռագրի:

ւոց (1) և Ծովդէացւոց, և Գարդմանացւոց իշխանութիւն‖։ Նախարարք բիրտս, ապստամբս, և Ձիւաղաբարոյս կոչէ զՈւտէացիս յոհ. կաթ. և միշտ աւազակութեց պարապեալ։

Յորժամ ապստամբեցան 'ի Բ. արշակայ հեռաւոր նահանգք մեծին Հայոց, նաև այն սահմանք որք էին արտաքոյ հայաստանեայց, բայց ընդ տէրութեբ Հայոց, յայնժամ զայս նահանգ Ը. մեծի մասին գրաւեցին աղուանք. այլ մուշեղ սպարապետ պապայ արքայի անդրէն էարկ Ը տէրութեբ Հայոց։ * Թափէր 'ի նոցանէ (տես բուզ. Ե. 13. այսինքն յաղուանից) բազում գաւառս, զոր հատեալ էր նոցա 'ի նոցանէն (այսինքն 'ի հայոց), զՈւտի, և զշակաշէն, և զձորն գարդմանայ, զկողթ. և այլ որ շուրջն էին զնովաւ սահմանք գաւառք, և զկուր գետ՝ որպէս և յառաջն լեալ էր, ընդ երկիրն աղուանից՝ և ընդ երկիրն իւրեանց՝ սահման արարեալ կացուցանէին. և 'ի գլխաւորացն բազումս սպանանէին, և զմնացորդսն 'ի հարկի կացուցանէին‖։ Այլ 'ի ժամանակս խորենացւոյն դարձեալ տիրէին աղուանք. զկնի ժամանակաց՝ Ա. սմբատ վերստին էառ ընդ իւր. իսկ աշոտ շահանշահ յաջորդ նորա, որում սիրելի էր յոյժ Ուտի, երբեմն պատերազմաւ, և երբեմն սիրով հազիւ Ը իւրեաւ նուաճեալ պահէր, յորմէ ստէպ ստէպ ապստամբէին։

Գաւառք սորա՝ զորս աղուանք ունէին առ ժամանակօք խոր. յաշխարհագրութե նորին գնին լինել եօթն, այլ զկնի 'ի թուելն յանուանէ, ութ գաւառք նշանակին ըստ այսմ կարգի.

| | |
|---|---|
| Ա. Արանռոտ. (2) | Ե. Տուչկատակ. (6) |
| Բ. Տռի. (3) | Զ. Գարդման. |
| Գ. Ռոտխապայք. (4) | Է. Շակաշէն. |
| Դ. Աղուէ. (5) | Ը. Ուտի առանձնակ. |

(1) 'Ի տպ. և 'ի միում ձեռ. գրի Ուտէացւոց, կամ որպէս է 'ի տպ. Օգէացւոց, գնի անուն Գարդմանացւոց, այլ յերկուս ձեռ". պակասի այն անուն։

(2) Այսպէս գնի յերիս ձեռ. իսկ 'ի տպ". Աբանռոտ։

(3) Այսպէս յերկուս ձեռ". իսկ 'ի տպ. և 'ի միում ձեռ. Տրի։

(4) Յերկուս ձեռ". այսպէս գնի. իսկ 'ի միում Ռոփպացեան. յորմէ յայտ է թէ վրիպակ է 'ի տպ. անունս Տողաչեան։

(5) 'Ի տպ. և 'ի միում ձեռ". այսպէս գնի, իսկ յերկուս ձեռ". Աղուէր։

(6) Այսպէս յերկուս ձեռ". իսկ 'ի տպ". և 'ի միում ձեռ". Տուչքատակ։

## ԳԱՐԴՄԱՆ:

Երևելի գաւառս ուտէացւոց՝ որ Թուի լինել նոյն ը֊ անուամբ Գարգմանայ ձոր որ յիշատակի առ խոր. և առ Բուզ. Ե. 13. ընդ այլ գաւառս ուտի նահանգին. այս֊ պէս կոչեցեալ 'ի ձորավայր դրից իւրոց: Նոյն գաւառն է՝ որ առ Բուզ. Դ. 50. վրիպակաւ գրի Գարգմանայ ձոր, կամ ըստ այլ ձեռ". Գարգմանաձոր, փոխանակ գրելոյ Գարգմա֊ նաձոր. որպէս և 'ի միում ձեռ". առաւել ուղղութբ գտա֊ նեմք գրեալ Գարգմանաձոր. զի յայն գլ. Թուէ զսա ընդ ապստամբեալ տեղիս. իսկ 'ի պատմելն զանդրէն հնա֊ զանդիլն զամենեցուն նոցա 'ի ձեռն մուշեղայ, դպր. Ե. 'ի 9. գլխոյն մինչև ց20, ոչ ուրեք գտանեմք զօտարաձայն անունդ վերոգրեալ. այլ փոխանակ այնր 'ի 13. գլ. Գարգ֊ մանաձոր, որպէս ասացաք: Նոյն է Թերևս և ընդ այսր ան֊ ուամն Գարդամ, որ յիշատակի յերկուս օրինակս կիրա֊ կոսի՝ յասելն վասն Ներսէսի արքեպիսկոպոսի աղուանից. * Մինչ եպիսկոպոս էր Գարդմանայ՝ հաւանեցոյց զկին ոմն ‖ եւ: Վարդան աշխարհագիր գրէ վԾ այսր. * Գարդ֊ ման գաւառ՝ Գորբմանիք է (1), ուր կայ գերեզման յոհան֊ նէս վարդապետին մայրագոմեցւոյն ‖: (2)

Օ իշխան սորա Խուրս անուն յիշէ խոր. Գ. 60. և յովհ. կաթ. զՍտրիձ անուն: Նոյնպէս և եպիսկոպոս այսր գաւառիս՝ բաց 'ի վերոյիշեալ Ներսիսէ՝ յիշատակի 'ի վար֊ դանայ և 'ի կիրակոսէ՝ Յովհաննէս տվեցի արքեպիսկոպոս Գարդմանայ և այլոց Բերդից և գաւառաց, որպէս գրէ վարդան. որոյ Թեև յայնժամ ընդարձակ տարածէր յոյժ (ըստ կիրակոսի) յայլ և այլ գաւառս, այսինքն 'ի վերայ քա֊ ղաքին Շամքորոյ, կամ որպէս գրի յայլ օրին". Շամքո֊ րոյ՝ (որոյ գաւառն անծանօթ). Արդէվանից՝ (զոր ստո֊ րագրեսցաք յարցախ), Տերունականին, և Տաւշոյ, և այլ կողմանց: Նոյնպէս Եպիսկոպոս Թուի գարդմանայ

(1) Այսպէս գրի յերկս ձեռ". իսկ 'ի տպ. և 'ի միում ձեռ". գրի Գարբմանիք, և յայլում ձեռ. Գար֊ Բանիք. վերջին երկու ձեռ". են հարազատ վարդանայ օրինակք ա֊ ռանց ընդարձակութեց:

(2) Այլոց Թողցուք 'ի քննել Թէ այժմեան անուն Գորբն, որ է նահանգ վրաց. ձգեալ մինչև ցայ֊ սոսիկ կողմանս, որդեօք 'ի Գարդ֊ ման անուանէ ածանցիցի, զի պատ֊ մութիւն. օրպ. Թղթ. 8. ոչ 'ի Գարդմանայ այլ 'ի Գորբնաց ան֊ ուանէ եղբօր հայկայ ածանցեալ դնէ:

և վերոյիշեալ տեղեացն Սարգիս եպիսկոպոս, զոր յիշեցաք յարցախ (1)։

Նշանդն հեթանոսութեան գտանէր յայս գաւառ մինչև 'ի ժամանակս մերոյս, զոր երարձ նոյն Լիքն Երանելին։ * Լիքն (մերոյ՝ ասէ խոր. Դ. 60.) գտանայ զՊարդմանայ ձորոյն, զի և 'ի նմա լուսաւ լինել 'ի նոցին ընկերաց ազանդոյն, զորս գտեալ անձէ և զնոսա 'ի գիտութիւն Ճշմարտութեան, հանդերձ վերստին ուղղութբ իշխանին Պարդմանաց, որում անուն էր Խուրս‖։

Ուռնայր իւր և բերդ՝ զոր էառ բուռնութեամբ ըստ գրելոյ յով. կաթ. Ջեեալ զնայ 'ի գաւառն Պարդմանայ, և պատնէշ և պաշարումն շուրջ զՊարդման բերդիւ եդեալ, ըմբռնէ անտի և զիշխանն Պարդմանայ զկտրիճն‖։ 'Ի ձեռաց աշոտոյ շահանշահի էառ անէր նորին սահակ իշխան, իսկ 'ի սահակայ անդրէն գրաւեաց նոյն աշոտ արքայ։ * Նա ապա (ասէ յով. կաթ.) զամրոցն առ հասարակ զՊարդմանայ՝ թագաւորն յինքն գրաւեալ, և զբովանդակ աշխարհն յիւր անուն նուաճեալ հնազանդէր‖։ 'Ի ԺԳ. դարուն զաքարիա և իւանէ առին 'ի պարսից։ * Տէրն և նոքա (ասէ կիրակոս) բազում գաւառս 'ի պարսից, և բերդս ամուրս զՊարդման‖ ԽԶ ։

ԳԵՏԱԲԱԿ։ Զորմէ կիրակոս՝ յասելն վասն յով. մայրագոմեցոյն. * Երթեալ յոհաննու ընտրեաց իւր տեղի լռութեան 'ի կողմանս Գետաբակս բերդոյ (2)‖։ Նկանի յայս գաւառ, վասն զի յով. կաթ. և վարդան վասն նոյն յոհաննու պատմեն երթեալ 'ի գաւառն Պարդման. և որպէս թուի՝ էր 'ի ծայր գաւառին. քանզի գրէ վարդան. * Զօգաւ յաղւանս 'ի գլուխ Պարդման գաւառի‖։ Վասն որոյ և կիրակ". թուի իբր որոշել արտաքոյ գարդմանայ, յասելն վասն մուղալաց՝ թէ յարձակեցան * 'Ի Պարդման, և յայլ կողմանս՝ 'ի չարեքն, և 'ի Գետաբակս այլ ումն գլխաւոր չոգաւ‖։ 'Ի ԺԳ. դարուն զաքարէ և իւանէ իշխանք առին զսա յայլազգեաց,

(1) 'Ի պատմութեան ժողովոյն մանազկերտի յօրինակի միում յիշատակի ընդ եպիսկոպոսունս յանկորեկ սարոյ՝ Թէոդոս եպիսկոպոս Գարգմանայ, բայց ուղղագրէ զվրիպանս սորա այլ օրինակ՝ ուր գրի Գուգարաց, զոր և յիշատակէ յովսէփ սաճեան յարեւելեան մատենադարանի. գնելով զԳարդմանակ եպիսկոպոսանիստ քաղաք առաւօրիս։

(2) 'Ի միում օրինակի կիր. գրի Բէդոյ, և 'ի միւսում օրին". յորմէ հանաք, է տառս յօտար գրչէ զկնի եդեալ կայ։

որպէս գրէ վարդան. * Առին զկարս . . . և առա զԿոե-տարակս և զշարեքն‖։

## ՇԱԿԱՇԷՆ։

Այսպէս գրի յերկուս ձեռ". աշխարհագր". խոր". իսկ 'ի տպ". և 'ի միում ձեռ". Շէկաշէն, այլ զուգղութիւն առաջին գրութեան հաստատեն և օտար ազգաց աշխարհագիրք, առ որս առաջին վանկն նոյնպէս գրի ա տառիւ և ոչ է. Սագասէնէ կամ Սագասսէնէ։ Սդր. գիրք. ժա. թղթ. 528. 'ի թուելն զայն գաւառս հայաստանեայց, որք էին ձորավայր և բարեբեր, մի 'ի նոցանէ դնէ և զայս. և կացուցանէ յայնմ սահմանի, յորում և անկանի ուտի և շակաշէն։ Յետ դաշտավայրացն աւէ երասխաձորոյ՝ է * Սագասսինի. սա ևս առ երի կայ ալվանից (աղուանից) և գիրոս (կուր) գետոյ‖։ Եւ գիրք. Ը. թղթ. 73. 'ի խօսելն զքանչելի բերրիմնաւորութէ վրկանայ՝ գրէ. * Զսոյն և 'ի մարաց գաւառի (պատմեն) լինել, որ ասի մանդղիանի, և 'ի Սագասինի նաև յարաքսինի (այսինքն յերասխեան գաւառս) հայաստանեայց‖։

Եւ այսպէս ուղիղ եղեալ կայ գիրք Սագասէն, կամ լաւ. հնչմամբ Սագասէն գաւառին յաշխարհացոյցն՝ որ դնի հտ. Է. գործոց արքունի Ճեմարանին փարիզու արձանագրութեանց և բանասիրութեանց զկնի Ճառին փրէրեդայ, զի դնի 'ի խառնմունս անդ կուր գետոյ յերասխ, ուր և անկանի ըստ խոր. նաև ըստ այժմեան դրից՝ որ կայ մինչև ցայժմ։

Զնոյն կողմամբք դնէ և պլին. Զ. 9. զընակիչս սորա, զորս կոչէ Սագասանիս, կացուցանելով ստորև՝ այսինքն 'ի հարաւոյ մծղբեանց և կուր գետոյ. տես 'ի հարտուէին և 'ի մառդլենիէ։ Սոյն այս գաւառ է որ առ պտղ. Ե. 13. գրի վրիպակաւ Սագաբէնէ, և դնի 'ի մեծ հայս զկողմամբք երասխայ, մերձ 'ի գօտի Բարիատին լերանց, թէպէտ և չէլլարիոս տարակուսելով նոյնացուցանէ ընդ վերնոյն։

Անուն սորա յայտ առնէ՝ թէ 'ի Շակայ շինեցաւ, և յանուանէ կոչեցաւ առ մեզ Շակաշէն. այլ զպատմութէ նորին յօտարաց կարօտիմք առնուլ, որք զՍագ. կամ զՇակ. ըստ մեր հնչման՝ դնեն լինել ազգ ինչ սկիւթացւոց, սահմանակիցս մասսագեթաց, այսինքն մազքթաց, որպէս դնէ ստր. և որպէս ակնարկէ դիոդորոս սիկիլիա-

ցի, նաև պլին. զկնի Սագաց զմազքութս խակ և խակ յեշելով. յիշէն զնոսա և գուրդիոս և պտղոմէոս։ Ըրդ՝ Սագք ասէ ստր. գիր ժա. թղթ. 511. և 512. ըստ աւանդելոյ ոմանց՝ արշաւելով ՚ի մերձակայս և ՚ի հեռաւորս առին զբակտրիանա. * Նաև զամենաբարւ երկիրն Հայաստանեայց, զոր յիւրեանց անուն կոչեցին Սագասենի ‖ ։

Պատմէ ապա՝ թէ յառաջ խաղացին մինչև առ կապադովկացիս և առ պոնտացիս բնակեալս առ սեաւ ծովու. այլ մինչդեռ կատարէին տօն ուրախութե վասն աւարացն յափշտակելոց, նախարարք պարսից գիշերայն ՚ի վերայ յարձակեալ՝ առհասարակ կոտորեցին։ Իսկ այլք պատմեն ասէ, թէ կիւրոս պատերազմեալ ընդ սագս՝ փախեաւ պարտեալ ՚ի նոցանէ, և ընդ կրունկն ՚ի տեղի բանակին դարձեալ՝ և զսիրտս զօրաց կերակրով կազդուրեալ, եւ անտի ընդ երեկս զփախուստ կեղծաւորեալ. սակայն հետամուտ լինելով՝ այն ինչ հասեալ գտին զտեղի բանակին առանց ինչ զօրաց՝ լի կերակրովք և գինւով, ՚ի խնճոյս զեղխեցան. անդ ՚ի վերայ խաղացեալ կիւրոսի, զոմանս ՚ի քուն, զայլս ՚ի կաքաւ անզէնս գտեալ՝ առհասարակ գրեթէ ՚ի սուր մաշեաց, և տօն վասն այսր յաղթութե կարգեաց՝ կոչեալ Սակէա։

Իսիդորոս քարագենոս՝ որ զՍագաստան դնէ գաւառ սագաց սկիւթացոց, ՚ի մէջ այլոց աւանաց նոցա յիշէ և զՍորբա աւան, կամ լտ. հնչմամբ Պորբա, մերձ առ հնչումն անուանս Պորբաա, որ է քաղաք յուտի, յորմէ մարթ է կասկածել թէ գուցէ խիդորոս զերկոսին սագս ՚ի մի շփոթեաց գէթ իւիք իրօք, զի որպէս և ծանուցանէ Փառլիչիոս, նաև գաւառն Սագաստէնի ՚ի ձեռ". գրի Սագասանի. և զտեղի նորա դնէ անդ, ուր ոչ ոք դնէ ՚ի նախնեաց։ Տես ՚ի չէլլարիոս և ՚ի մառդինիէ. յաւել և զայն, զի պտղ. վասն սագաց սկիւթացւոց գրէ լինել անտառաբնակս և սորամուտս, և չունել ինչ աւանս։

ՈՒՏԻ ԱՌԱՆՁՆԱԿ։

Որպէս գրի յերիս ձեռ". աշխարհագր. խոր. և ՚ի տպ. միայն գրի Ուտի առանձնակն։

Պորբաա։ Քաղաք երևելի յայսմ գաւառի, որպէս դնէ խոր. յաշխարհագրութե. որ առ Թովմ". կիլիկ". գրի

Պարտաւ, ըստ որում գրի և առ արաբացիս, որ այլով հնչմամբ կոչի այժմ Պէրդէ. տես 'ի Նոր հայաստան Թղթ. 272: Սամուէլ. արծ. դնէ զայս յաշխարհէն գարգարացւոց՝ յամին. * Դարձեալ գնաց եհաս 'ի Պարտաւ յաշխարհն Գարգարացւոց‖: Եւ այլուր, Է. Ց. * Իսկ բուղայի առեալ զբազմութիւն զօրացն Խուրոց իջանէ 'ի դաշտն Գարգարացւոց (1), և երթեալ մտանէ 'ի քաղաքն մեծ Պարտաւ‖: Յայտ է աստի՝ թէ Գարգարացւոց երկիր անկանի յուտի, վասն այնորիկ զնորին տայ զանուն:

'Ի Թուղթն արևելեան եպիսկոպոսաց գրեալ 'ի ձեռն օրպէլեան ստեփաննոսի 'ի Թուին ՉԽԳ. առ գրիգոր կաթ. Պարտաւ դնի 'Ի աղուանս, զի որպէս ասացաք, Ուտի կոչէր և աղուանք, սակս ընդ տէրութեամբ նոցին լինելոյ: Սմբատ. նոյն դնէ զսա ընդ փայտակարանի՝ յանսելն վասն կաթողիկոսացն աղուանից որ յելս ժա. դարուն. * Նստէին առաքելական աթոռոյն 'ի քաղաքն հայոց 'ի Պարտաւ, որ ասի փայտակարան, սահմանակից համաստարած ծովուն‖: Որ է օտար կարծիք յայլոց նախնեաց. զի եդեալ եւս թէ Պարտաւ քաղաք անուանէր նաև փայտակարան, այս փայտակարան ոչ լինի սահմանակից համաստարած ծովուն՝ որով խմնայ զծովն կասպից, այլ միւս փայտակարան է սահմանակից կասպից ծովուն. յորմէ յայտ է թէ շփոթելով նոյնացուցանէ ըզփայտակարան ընդ Պարտաւոյ:

Սեծին աղէքսանդրի շինեալ ասէ զայս քաղաք՝ տաճկական մատեանն կոչեցեալ Նէպդարիդ, որ է ընդհանուր պատմութիւն իւրեանց դենին: Նորոգեցաւ ապա 'ի հիճ. 39. (յամի տն. 659.) որպէս դնէ Ճիհաննիւմայն, նոր շինութիւն կոչելով զայն. բայց քանզի Խորենացին որ բազմօք յառաջէ նաև քան զսկիզբն հիճրէթին այսինքն թըւականին տաճկաց, յիշէ զայս քաղաք, յայն սակս զշինութիւն 'ի 39 հիճրէթի, ճշմարիտ եւս եդեալ, պարտ է համարիլ նորոգութիւն, կամ առ առաւելն՝ յաւելուած ինչ քաղաքին:

Արտաշիր արքայ պարսից ետ զՊարտաւ 'ի ժառանգութիւն ազգին անակայ, 'ի շնորհս սպանանելոյ նորա զխոսրով արքայ հայոց. որպէս դնէ զենոբ. Թղթ. Լթ. * Բայց Թագաւորն պարսից զօր մահուան խոսրովայ սոն կարգեաց, և զՊարտաւն ինացեալ ազգին անակայ

(1) Յօրինակին ձեռագրական գրի Գուգարացւոց:

տայր‖ . յայտ է թէ՝ զկնի տիրելոյ սահմանացն Հայոց յետ մահուան Խոսրովու ։ Նոյն յետոյ կաթողիկոսարան Աղուանից , քանզի ոչ միայն 'ի ԺԱ . դարուն՝ որպէս է տեսանել 'ի վերոգրեալ բան Մատթէի , այլ նաև 'ի Է . դարուն աստ յիշատակին լեալ կաթողիկոսք Աղուանից՝ 'ի կանոնագիրս գլ . ԼԷ . ուր Շուփհաղիշէ կաթ . Աղուանից կոչի արքեպիսկոպոս Պարտաւայ [1] ։ Նա և 'ի սկիզբն Ը . դարուն ևս՝ աստ 'ի քաղաքն Պարտաւ եկն Եղիա կաթողիկոս ըմբռնել զՆերսէս կաթողիկոս Աղուանից , որպէս դնէ Կիր՝ . որ և զկնի յայնի դնէ յասելն վասն Յովհաննու կաթողիկոսի Աղուանից՝ որ 'ի Ժ . դարու . * Սա փոխեաց զկաթողիկոսարանն 'ի Բերդակոր՝ իւրեանց հոլըցաց տեղի , յորժամ հանաւ 'ի Պարտաւայ‖ ։

Նոյն Եղիա կաթողիկոս արար աստ ժողով ընդդէմ վերոյիշատակեալն Ներսիսի առ 'ի միացուցանել զԱղուանս ընդ Հայս , որպէս գրի 'ի նախայիշեալ թուղթն արևելեան եպիսկոպոսաց , և առ Ստեփ . Օրպ . գլ . ԻԳ ։

Ո՛չ սակաւ մատենագիրք Տաճկաց ելին 'ի քաղաքէ աստի , յոյր սակս Պարտաւացի մականուանին ։

### Տեղիք Ուտի նահանգին , որոց գաւառք անծանօթք ։

Խաղխաղ ։ Քաղաք՝ զոր Ագաթ . 'ի թղթ . Է . դնէ 'ի յՈւտի գաւառին , ուր գուցէ թէ իմանայ ոչ ևեթ զնահանգն Ուտի , այլ նաև զբնիկ գաւառն Ուտի , այն է Ուտի առանձնակ ։ Ղազար կոչէ Գիեօղ , և դնէ յԱղուանս , զի որպէս գրեցաք 'ի վերոյ՝ Ուտի կոչէր նաև Աղուանք , որ յայտ է նաև 'ի բանից նորին Ղազարայ , զի դնէ ըզԽաղխաղ յայնմ կուր գետոյ . քանզի Պարսիկք [2] 'ի կամելն գնալ 'ի Խաղխաղ , անցին զԿուր գետով , և այնպէս եկին ։ * Նա հասեալ յԱղուանս երանելւոյ զօրավարին Հայոց Վարդանայ տն Մամիկոնէից , ազդ եղև զօրագլխացն Պարսից՝ եկք Հայոց . որոց լուեալ փութացան անցանել ընդ գետն մեծ՝ զոր Կուր գետն կոչեն , և ընդ առաջ ե-

(1) Առ Կիր . գրի ՚ Շուփհաղիշոյ Աղուանից արքեպիսկոպոսն Պարտաւայ‖ ։

(2) Յօրում բանի Ղազարայ՝ յայտ է թէ Պարսիկք էին 'ի բնիկ Աղուանս , որոց առ 'ի մտանել յՈւտի , և գնալ 'ի Խաղխաղ , հարկ եղև անցանել զԿուր գետով . ապա թէ ոչ՝ Կուր գետով պարտ է իմանալ աստէն զԵրասխ , որ անսովոր է 'ի գիրս մեր ։

կին նոցա մինչև 'ի գեօղն՝ որ կոչի Խաղխաղ յերկրին աղուանից ∥ ։ Արդ ընդ երկիր աղուանից ոչ ձգէր յարակայս կուր գետոյն յաջակողմն նորա, այլ աւարտէր 'ի ձախակողմն նորա. զի ըստ խոր՛՛. կուր գետ բաժանէր զմեծ Հայս յաղուանից ։

Էր սա մի յարքունի ձմերոցաց, վասն որոյ ազատ. և եղիշէ կոչէն * Ձմերոց արքայութեն Հայոց ∥ ։ Թովմա մեծոփեցի վասն Խարաբաղայ գրէ, թէ էր ձմերոց առաջին թագաւորացն մերոց. յորմէ երևի՝ թէ զԽաղխաղ նոյն համարի ընդ սմա, 'ի յետին ժամանակս ընկալեալ զանուանս Խօրօխաղ, կամ աղաւաղութե առաջին անուանս Խաղխաղ, և կամ այլ ինչ պատճառաւ ։ Այլ այժմ Խարաբաղ, կամ տաճ. Դարապաղ բերէ զանուն գաւառի, ընդարձակս ձգելով զկողմամբք արցախայ, և ուտի նահանգին ։

Հաղբատ և Սանահին ։ Մենաստանք երկու համդէպ միմեանց 'ի կարգս երևելի մենաստանաց մեծին Հայոց՝ յաշխարհին սեաւորդեաց, որ այն ինքն է ուտի, որպէս դնէ ասողիկ. գ. 8 ։ * Յաւուրս սորա (աշոտոյ ողորմածին) շինեցան կրօնաւորանոցք ճգնաւորականաց տեղիք. Սեաւորդեաց աշխարհին, հաւասարակեացք միաբանականք ՟Բ յառաջասացեալ կանոնին սահմանադրութե ՚ոքյն բարսղի, որոց երկոցունց տեղեացն անուանք Հաղբատ և Սանահին. համդէպ միմեանց, միակրօնք 'ի տան այ արանց Ջ. լից, և առաջնորդ Սանահնին՝ յովհաննէս գիտնական այրն այ, իսկ Հաղբատայ Սիմէոնն ճգնազգեաց ծառայն քնի ∥ ։

Ընդ դնէ և ընդարձակօղ վարդանայ աշխարհագրի յասելն. * 'Ի վերայ Սաւորդաց (այսինքն Սեաւորդեաց) ձորոյ գետին է շինեալ խոյակապ և հռչակաւոր ՚ոք ուխտն Հաղբատ. Սանահին ∥ ։ Իսկ այլ պատմագիրք դնեն զսոսա 'ի սահմանս լօռի քաղաքին, յորմէ երևի՝ թէ սահման այսր քաղաքի ձգի մինչև յուտի, որով միաբանին ընդ բանից ասողկայ. ըստ այսմ պարտ է իմանալ և զբանս վարդանայ աշխարհագրի՝ որ գրէ. * Տաշիր լօռի է, ուր կան ՚ոք ուխտքն Հաղբատ և Սանահին ∥ ։ Այսինքն կան այս ուխտք ոչ 'ի լօռի քաղաքին՝ որ էր 'ի տաշիր գաւառ գուգարաց, այլ 'ի սահմանս լօռոյ, որ ձգէր նաև արտաքոյ տաշրաց մինչև 'ի նոյն իսկ յուտի ։ Կամ թէ պարտ է ասել, թէ այս վանորայք էին 'ի մէջ երկուց սահմանակցաց լօռոյ և ուտի գաւառին, նմին իրի ոմանք յուտի

դնեն, և ոմանք 'ի լօռի [1]։

Սամ շինութիւն վանորէից կամեցեալ միաբանել զտարաձայնութիւն մատենագրաց, պարտ է դնել, թէ վանքն Սանահնի 'ի վաղուց անտի շինեալ կայր, կամ որպէս աւանդեն բնակիչքն՝ 'ի մեծ լուսաւորչէն հիմնեալ. յորում 'ի սկիզբն Ժ. դարուն յաւուրս աբասայ արքային՝ իբր 'ի 934. կրօնաւորքն փախուցեալք 'ի Հոռոմոց՝ շինեցին եկեղեցի, որպէս գրեն վարդ. և կիր։ * Շինեցին և եկեղեցի մի յանուն սբ. ածածնին 'ի վանքն որ կոչի Սանահին, 'ի սահմանս Լօռէ քաղաքին ‖։

Այլ զերկոսին վանորայս նորոգ հիմնարկեալ ընդարձակ և հաստատակառոյց շինուածով կանգնեաց խոսրովանոյշ թագուհին կին աշոտոյ ողորմածի, որպէս պատմեն նոյն իսկ վերագրեալ վարդան, մատթէոս, և միւս համթեցի, զորոյ և զթուական շինութեան դնէ, ասելով թղթ. 38. * Թագուհին սորա (այսինքն աշոտոյ) շինեաց զՀաղբատ և զՍանահին զհռչակաւոր վանորայսն 'ի թվին ՆԺ ‖, յամին 961։ Յայլում թուականի և յայլևայլ ամս դնէ ընդարձակօղն սամ. զշինութիւն երկոցունց սոցա յասելն. * 'Ի ՆԺԶ. թվին (յամին 967) շինեցաւ Հաղբատ և Սանահին Ժ. ամաւ յառաջ քան զՀաղբատ շինեցաւ 'ի խոսրովանուշ թագուհւոյն [2] ‖։

Յետ այնորիկ 'ի ԺԱ. դարուն կիւրակէ կամ կորիկէ բագրատունի արքայ աղուանից նորոգեաց, կամ նոր շինուած ինչ կառոյց, զոր վասն այսորիկ կիրակոս հիմնարկութիւն կոչէ։ * Իբրև ետես կիւրակէ արքայ բագրատունեաց որդի դաւթի որդւոյ դերենկան, որ հիմնարկեաց զհռչակաւոր ուխտն զՀաղբատ և զՍանահին. (Եթէ)

(1) Կամ զի Սեաւորդիք կոչէին ոչ լոկ բնակիչք Ուտի նահանգին, այլ և մասն ինչ գուգարաց, զոր չունիմք ստուգել. ընդարձակօղ վարդանայ աշխարհագրի 'ի Տաշիր և 'ի լօռի դնէ ոչ զՀաղբատ և զՍանահին, այլ զՔոբայր, և զՀոռոմայրի։

(2) Զշինութիւն խոսրովանոյշ թագուհւոյն՝ համարիլ ընդհանուր նորոգութիւն կամ վերստին հիմնարկութիւն ցուցանէ և այն՝ զի վարդան զերկոսին շինութիւնս ևս պատմէ, նախ զշինութիւն կրօնաւորաց 'ի Հոռոմոց, և ապա զշինութիւն 'ի խոսրովանուշայ, զոր ոչ կարէր պատմել, եթէ ստուգիւ չէին կրօնաւորքն շինեալ ինչ 'ի նմ. և եթէ չգոյր Սանահին նախ քան զխոսրովանոյշ, զի որ զմի և եթ շինութիւն պատմէ՝ զորօրինակ կիր. զշինութիւն 'ի կրօնաւորաց, զանց արարեալ զշինութեն թագուհւոյն, դիւրին է շփոթելով զմին առնուլ փոխանակ միւսոյն. այլ որ զերկոսին ևս պատմէ՝ որպէս վարդան, դժուարին է յայսպիսի շփոթութիւնս վտանգիլ, եթէ ոչ լինէր ստոյգ։

եթող տէր գրիգորիս զաթոռ իւր ||, և այլն. քանզի զա-նազան մատուռնք են 'ի Հաղբատ, յորոց զմին թերան չի-նեաց այս կիւրակէ, կամ դերենիկ. զի ըստ կիւրակոսի չփոխ գոլով, մարթ է իմանալ զկիւրակէ, մարթ է իմա-նալ նաև զդերենիկանէ ։

'Ի նմին ժա. դարու Հաղբատ եղև եպիսկոպոսանիստ 'ի ձեռն վերոգրեալ կիւրակէ արքային. որոյ կոչեալ զյովսէփ կաթողիկոս աղուանից՝ ետ ձեռնադրել զմին սարգիս դրան երեց եպիսկոպոս Հաղբատայ (1). * Եւ յայնմ հետէ (ասէ կիր.) եղև աթոռ եպիսկոպոսի ||։ Յորոց և զոմանս յիշատակէ անդէն (2). մի 'ի նոցունց էր յովհաննէս եպիսկոպոս՝ որ արար բազում գործս ար-ժանի յիշատակի. զի ի պատմելոյ նորուն կիր. * Դա-ւիթն փոքրագոյն քակեաց որ 'ի դուռն կաթողիկէին Հաղբատայ, և շինեաց մեծ և գեղեցիկ շինուածս, որ զարմացուցանէ զտեսողս հիացմամբ ||։

Զկնի սորա արար շինուած ինչ նաև միւս յովհաննէս եղբօրորդի առաջնոյն, զորմէ այսպէս գրէ կիր ։ * Շի-նեաց բերդ մի ամրագոյն պարսպօք 'ի մէջ Հաղբատայ և Սանահնի, վասն որոյ գժտութի ընդ երկուս մեծամեծ վանորայս եղև, որպէս թէ 'ի հողոյ Սանահնին իցէ. և վրէժխնդիր եղև իշխանն շահնշահ որդին զաքարէ Սանահնին . . . զի Հաղբատ 'ի վրաց թագաւորին հա-շուին էր յայնմ ժամանակի. իբրև մեռաւ եպիսկոպոսն յոհաննէս, քակեցին և զպարիսպն բերդին հրամանաւ թաթարին ||։

Երկին եկեղեցի կայր 'ի Հաղբատ մեծ և փոքր, զորս

(1) Վարդան այլազգ ևս և որոշ պարագայիւք պատմէ զայն յաւելն, * Տէր վահրամ և տէր բարսեղ որ յարևելս՝ ... 'ի հաղբատ ձեռնադրեցին զտէր Ստեփաննոս կաթուղիկոս աղուանից . . . և զՍարգիս աւագերեցն արքունի դրանն (կիւրիկէի թագաւորին) Արքեպիսկոպոս ձեռնադրեցին երկոքին կաթուղիկոսքն ՚ի ուխ-տին հաղբատայ, տալով վիճակս յերկուց կողմանց ||։

(2) Ջանուանս արքեպիսկոպո-սացն հաղբատայ՝ զորս գտաք նշա-նակեալ 'ի գիրս, կարգեմք ստո-րոր. առաջինն ըստ պատմ. վարդ". և կիր, Սարգիս ։ բ. Գէորգ, ընդ որում թղթակցի ատէպ նրն ներ-սէս կլայեցի ։ գ. Բարսեղ ։ դ. Գրիգոր (տուտէորդին) ։ ե. Յոհաննէս ա ։ զ. Յոհաննէս բ ։ է. Յոհաննէս գ ։ ը. Համազասպ ։ 'Ի ժամանակս ուռպէլեանն ստե-փաննոսի էր եպիսկոպոս հաղբա-տայ Յոհաննէս՝ որ զանուն իւր ստորագրէ 'ի թղթին արևելեան եպիսկոպոսաց առ գրիգոր կա-թողիկոս, այսպէս. * Նա տէր Յոհաննէս շնորհօք այ եպիսկոպոս հաղբատայ ||։ Իսկ 'ի ժամանակս թովմայի մեծոփ. եպիսկոպոս էր հաղբատայ Գրիգոր ։

զերեզմանն ևս միանգամայն յիշատակէ նոյն կիրակոս 'ի գրելն զմահ երևելի այն յոհաննու սարկաւագ վարդա-պետի՝ որ էր 'ի Հաղբատայ, և թաղեցաւ անդէն : * Յարևելից կուսէ եկեղեցւոյն Մեծի, առ դրան փո-քրագոյն եկեղեցւոյն ։ : Ի փոքր եկեղեցին համազասպ եպիսկոպոս, * Որ շինեաց եկեղեցի 'ի տեղին հրաշալի, և զանկակատունն և՝ ժամատունն մեծ և սքանչելի ։ (1) :

Առ մենաստանաւ էր գերեզմանատուն վարդապետաց, զոր յիշէ կիր. յասելն վասն Թորոսի վարդապետին աշա-կերտի մխիթարայ գօշի. * Այս թաղեալ 'ի հուշակմանն վանքն Հաղբատ՝ 'ի գլուխ վանացն, 'ի գերեզմանս եպիս-կոպոսացն և վարդապետացն ։ :

'Ի Սանահին ևս թուի լինել կրկին եկեղեցի, զորոյ զմեծն յիշէ ուրեք նոյն կիրակոս յասելն վասն զաքարիայ մեծ զօրավարին վրաց. * Տարեալ թաղեցին զնա 'ի Սա-նահինն 'ի մեծ եկեղեցւոջն առաջի դրաց խորանին ներքոյ ահեակ կողմանէ ։ : Եւ հուպ 'ի մին յեկեղեցեաց նորին թաղեցաւ դէոսկորոս առաջնորդ, զոր յոհաննէս թագա-ւոր կացոյց առ ժամանակ մի կաթողիկոս փոխանակ պետ-րոսի : Տես և 'ի Նոր հայաստան թղթ. 279 :

'Ի շծդ. յամին 1105, խըզըլ անուն բռնաւոր եկա-զլօռի և զաւերումն Հաղբատ և զՍանահին, որպէս գրեն կիր. և սամ. յորոյ 'ի միում օրինակի յաւելու՝ թէ և այրեաց : Այլ յետ այնորիկ ևս անուանի էին այս մե-նաստանք, մանաւանդ Հաղբատ, զոր Մայրաքաղաք կոչեն արևելեան վարդապետք 'ի թուղթս իւրեանց առ գրիգո-րիս կաթողիկոս (այն է մանկանունեալն Տղայ), որ-պէս և յոհ. կաթողիկոս կոչէ զՀայրապետանոցն : Եւ որպէս գրի 'ի յիշատակարանի մեկնութեան սաղմոսի լամբրո-նացւոյն, Գ. լևոն արքայն գոլէր և յանձանձէր, * Մա-նաւանդ քան զբազում տեղիս զմեծ և զհռչակաւոր երկնահաւասար 'որ ուխտն զՄայրավանքն զՀաղբատ, յորում կամէր անմոռաց արձանացուցանել զինքեան յի-շատակ բարի 'ի քն, նուիրօք և պատարագօք ։ :

Հաղբատ և Հաղբատացիք բազում ուրեք յիշատա-

(1) Վասն այսր այլուր ևս գրէ կիր. յետ պատմելոյ զթաղումն նորին յոհաննու սարկաւագի. * Զոր (այսինքն զփոքրագոյն ե-կեղեցին) յետոյ քակեաց եպիս-կոպոսն համազասպ, և շինեաց հրաշալի շինուած. ուր զանկական կախեցին յարմարեալ 'ի նմին ե-կեղեցւոյ ։ :

կին 'ի Թուղթն վերոյիշատակեալ գրիգորի կաթողիկոսի տղայի, որպէս և 'ի Թուղթն Ներսէսի Լամբր. առ Լևոն արքայ, յորում կշտամբէ զնա վարդապետն ինչ ինչ յանկարգութեանց՝ որք մուծեալ էին յայնժամ 'ի նոսա. յորում ժամանակի սոէպ կոչին և Արևելեանք՝ ըստ գրեցն կիլիկիոյ հայելով, որպէս և առաջնորդն կոչի Արևելեան եպիսկոպոս, ըստ որում ուսանիմք զսոյն և 'ի խորագրէ Թղթոյ շնորհալւոյն ուր գրի. * Թուղթ առ 'ի Ներսիսէ եպիսկոպոսէ . . . պատասխանի Թղթոյն գէորգեայ Արևելեան եպիսկոպոսի առաջնորդի սբյ ուխտին Հաղբատայ||:

'Ի մէջն անդ ԺԳ. դարու՝ այնչափ փայլէր սէր Ճգնութեան յուխտն Սանահնի, զի գրիգոր մագիստրոս 'ի պատասխանեն առ Նամակ նոցա, այսու օրինակաւ սկսանի գովել, և նկարագրել զքաղաքավարութիւն նոցա. * Օտարազանից՝ և զ'ի մարմնի անմարմնոցն հանդիսակցելոցն միեղէնաբար կցորդութե, և յարատևական արտահմանութեամբ, մշտաշարժ 'ի գերակատարսն խաչակցութե վկայից, և զՄայրաքաղաքական բարեկարգութե 'ի միասին բնակելոց, իմաստնից բոլոր արհեստից և մակացուեց պարառելոց, և յանծպետական բանն միացելոց անընդմիջաբար, . . . և եթէ պարտ է ասել՝ հարց մերոց և եղբարց ընկալեալ զգիր . . . Որ գրեթէ պետութեցն և բոլորն երկնային դասու և զօրութեանց գերակատար գտեալք, և ոմանց զանազան և պէսպէս առաքինութե և Ճգնութե՝ սքանչելի և զարմանալի երևեալ, որ և ոչ 'ի սկիւթ կամ 'ի Թէբայիդ այսպիսի երբեմն երևեալ:

» Քանզի ոմանք 'ի ձէնջ 'ի մորթոց փայտից զգեստաւորեալ, և 'ի կերակուրս մարդկայինս ոչ հպեցելոց, այլ խոտովք վայրենի շատացեալք, և ոմանց մաշկեօք միայն, և առանց պարեգօտի և զգեստու: Օ տապ ամարայնոյ և զսառնամանեաց օդոյ դժնդակութե ձմերայնոյ հիւսիսային յինքն կրեալ, և գետնախշտի տարտամեալ, և սովու և ծարաւու համբերեալ:

» Եւ ոմանք ծածկաբար 'ի ներքոյ պատառատուն պարեգօտին՝ առասանս 'ի խստագոյն ձարաձև այծից՝ կշկատունս կարկատեալս 'ի ներքոյ ստորակայեալ, և նոյնօրէն յառասանիցն այն՝ պարպատեալ զմէջս և զկողս, և 'ի պարանոցն հարստեալ կաշկանդեալ, անշորթելի մնուածով բազմաժամանակեայ չարչարանաց այսպիսի. և վտանգի համբերելով, և անսուաղութե և ծարաւու, և զայն՝ զուարթագին և աչալուրջ լըջմտութեամբ:

Այլ նորա ոչ այլ ինչ, եթէ ոչ՝ երգել մշտայար զգա-
թեանն նուագ, և պատարագիլ զանարիւն զենումն, որ
յառաւօտիցն պարառելոց իւրաքանչիւրոք խզտեալ զօ-
րէն սղոցի, մինչև հեղուլ արտաքս փորոտեացն, և դեղե-
ցիկ պարանոցին, որ զճծայինն էր ընկալեալ մանեակ,
տորաքարշեալ հատանէր զմարմինն. այսպիսի քաղցր լծոյ
հաւանեալ, զի մտանել կարասցէ ընդ նեղ դուռն....:

» Իսկ ոմն անտանելի կիրս յանձին կալեալ, և հրա-
շից և զարմանալեաց, և մատենագրութեան արժանաւոր:
Վասնզի ուսեալ 'ի մերոյն պարթևէ 'որյն սահակայ, եթէ
ստացեալ էր նորա աշակերտս երկաթապատս և բոկանիս
և խարազնազգեստս, պարտ վարկանէր լինել այսպիսի,
զանտանելի կիրս կրօնից յանձին կալեալ, իբրու զա-
ռասանս, կամ զսպարանս ստուարս և քաջոլորս 'ի ձա-
ռից ձիոց և յարջառոց, և որ այլք այսպիսի քուրձ
կազմեալ: Ո՛ որ դժուարին է տեսողացն զնա կամ դա-
տողացն տեսանել, որ եթէ պատժապարտի ումեմն՝ միոյ
աւուր հրամայեր զգենուլ, թուի թէ լաւագոյն իմն զմահն
համարէր. և 'ի վերայ այսր ամենայնի ոտնակապանս եր-
կաթիս, և շղթայս, և ձեռնակապանս, .. և մանեակս 'ի
պարանոցի, և այլ կազմեալ աղխամանս 'ի ձև խաչին:
Այլ զինչ առ այսօքիւ իմն երկարագոյնս գրել՝ զոր յայտնի
ամենեցուն, և այժմու տեսողացս Ճշգրտապատում մա-
տենագրութիս երևեսցի. քանզի ծանրութի երկաթոյն և
թոռայլին էր լտերս Ճ՟. և Ի, զոր այժմ եթէ 'ի մատեանս
առաջնոցն ընթերցեալ էր մեր, կարծեմ եթէ ամենե-
ցուն էր անհաւատալի....:

» Այլ ոմանք մերկք և բոկանիք, և ամենազիշեր սաղ-
մոսերգութք, հեղք, և հանդարտք, և լռեալք. սոցա
ոչ այլ ինչ, եթէ ոչ ... ընթերցումն հարանցն վարուց, և
հակառակել զգեղեցիկ հակառակութիս, և զմիմեամբք
ելանել յամենայնի նեղեալք, և կարօտեալք, և յերե-
կօրեայ և յառաւօտէ առ հօլիւն և առաջնորդն իւ-
րեանց ընթացեալք Ճշմարիտ դաւանութք երրորդութեն
խոստովանութք: Այլ եթէ այլ ինչ չնչական մտածութիս
'ի նոսա կլեալ, առաջի արկանել (առաջնորդին) ոչ
դանդաղին: Աստն որոյ զօրութն այ ոչ հիւանդացեալք,
այլ քաջողջութ իբրու զակն 'ի մարմնի բոլոր արամեանս
գտեալք, հանդերձ ամպետականիւ նմանեալք ծայրացե-
լոյ առաջնորդի ձերոյ ‖:

Մ՟յրոյ և Զ՟ր Տ՟ող: Անկանի յայսմ նահանգի, որպէս

յայտ առնէ պատմութիւն յոհ. կաթողիկոսի՝ զի գրէ՝ թէ 'ի գնալն շահանշահ աշոտոյ 'ի սիրեցեալն իւր ուտի գաւառ, զճանապարհայն գոյժ հասանէ առ նա * Յովհ. կաթ-ղէ ||, այսինքն 'ի մարզէ ուտի գաւառին, թէ ամրամն ցլիկ յորջորջեալ ապստամբեալ էր 'ի նմանէ: * Նոապա առ ձեռն պատրաստ զամրոցն Տաւշոյ արարեալ, 'ի նմա ամրապահեստ առնէր զընտանիս տան իւրոյ ||: Աշոտ առ 'ի նուաճել զցլիկ, գնաց ո՛չ յայլ կողմն ինչ այլ յուտի, յայտ արարեալ թէ անդ էր ցլիկ, անդ էր և ամրոցն Տաւշոյ՝ ուր ամրացոյց ցլիկ զընտանիս իւր:

Սոյնպէս և զՉորն Տաւշոյ դնէ յուտի, յասելն փոքր ինչ 'ի վերոյ, թէ աշոտ շահանշահ միանգամայն ընդ տէրնէրսէհի թագաւորին վրաց՝ իբրև մերձ էր զսահմանս խաղաղութեան հաստատել ընդ գուրգենայ քեռորդւոյ տէրնէրսէհի, * Իսկ և իսկ ժամանեալ գուժկան յուտի գաւառէ առ թագաւորն աշոտ հասանէր, ասելով նմա զելս իշխանին սահակայ աներոյ նորա յուտի գաւառ... և զիւր արձանանալն և կալ նստել զլեռնակողմամբ գաւառին ||: Զայս լեռնակողմն՝ զոր եդ յուտի գաւառին, ստորև յայտ առնէ թէ էր յարևմտից Չորոյն Տաւշոյ: * Գնայ (աշոտ) 'ի հանդիպումն նոցա ( այսինքն զօրացն սահակայ ), վասն զի բանակեալ զետեղեալ կային 'ի ծործորս լեռնակի միոյ՝ ըստ արևմտեայ կուսէ Չորոյն Տաւշոյ (1):

Նոյն է սա ընդ Տաւուշ գաւառին՝ զոր վարդան դնէ յաշխարհին սեւորդեաց՝ յասելն. * զՏաւուշ գաւառն Սևորդեաց ||, որ այն ինքն է ուտի, յորում գիւղ և բերդ՝ որ առ կիր. բազում ուրեք յիշատակի, որպէս յասելն վասն վանական վարդապետի. * Բազում ժամանակս կացաք առ նմա 'ի վարժս կրթութեան 'ի սահմանս Տաւուշ բերդոյ, յանապատի անդ՝ զոր ստացաւ իւր բնակութիւն ||:

Յայսմաւ". յունվ. 31. այս գաւառ գրի Տաւուշ, և դնի յաշխարհին աղուանից, վասն զի Ուտի կոչի և աշխարհ աղուանից, որպէս բազում անգամ ասացաք:

'Ի ժբ. դարուն՝ (այսինքն, յաւուրս բարսղի կաթողիկոսի, և ալփասլանայ) դաւիթ և աբաս որդիք կիւրիկէի բագրատունւոյ որ տիրէր 'ի լոռէ, ժառանգեցին

(1) Օրինակ մի ունի գրեալ Տաւուշոյ, որ թուի վրիպակ գրչաց:

զՏաւուշ ։ * Գնացին 'ի պարսիկս ( առէ կիրակոս ) դաւիթ և աբաս, և առնուն 'ի նոցանէ 'ի ժառանգութիւն զՏաւուշ և զՄածնաբերդ, և զայլ տեղիս, և ապա յետ աւուրց առնուն դարձեալ պարսիկք 'ի նոցանէ զՏաւուշ. և նոքա բնակեն 'ի Մածնաբերդ ‖ ։

Յաւուրս կիրակոսի աղասարթան ոմն յազգէ վերագրելոց էր Վախտանգական Մածնաբերդին, որ Թուի լինել մերձ 'ի տաւուշ. ապա դաւիթ իշխան՝ Նոր բերդին պատրեալ զնա, Ինքն տիրեաց Մածնաբերդին ։ Դարձեալ տիրեաց նոյն աղասարթան, զորմէ տես 'ի կիրակոս ։

'Ի ժը. դարուն զաքարիա և իւանէ առին զՏաւուշ 'ի պարսից, ըստ կիրակոսի՝ որ զՏաւուշ դասէ 'ի կարգս ամուր բերդից ։

Պաշարեցին զսա և Մուղալք ։ * Բայց այնոքիկ (առէ կիրակ.) որ առին զշամքոր, եկին ամենայն ախիւն իւրեանց 'ի Տաւուշ, և 'ի Կածարէթ, և 'ի Նոր բերդն, և 'ի Գագ, և որ շուրջ զնոքօք, և 'ի նեղ արկեալ պաշարեցին զնոսա ‖ ։

Լորուտ ։ Գիւղ՝ զորոյ զդիրս ստորագրէ կիրակոս յայս բան. * Ընդ ժամանակս ընդ այնոսիկ ( այսինքն 'ի ժգ. դարուն՝ յորժամ յարձակեցան մուղալք, ) մեծ վարդապետն որ կոչէր վանական, իւրովք աշխատութ̃ք փորեալ էր իւր քարայրս 'ի կատարս բարձրագոյն քարի միոյ՝ որ կայ հանդէպ գեղջն որ Լորուտն կոչի, 'ի հարաւոյ կողմանէ տաւուշ բերդի. և՛ շինեալ էր յայրի անդ եկեղեցի մի փոքրիկ, և անդ դադարէր գաղտութեամբ ‖ ։ Իբրև բազմացան աշակերտք նորա, * Հարկ եղև նմա ( առէ կիր. ) իջանել յայրէ անտի, և առ ստորոտս քարին շինեաց եկեղեցի և սենեակս, և անդ դադարեալ էր ‖ ։ Նոյն քարայր գուցէ այն է, զորմէ պատմեցաք 'ի նոր հայաստան. Թղթ. 279 ։

Տուս ։ Յիշատակի առ յոհ. կաթ. յասելն վասն բուղայի. * Չուեալ յուտի գաւառ ձերբակալ 'ի Տուս գեղ առնէ զստեփաննոս, որում և կոն անուանէին զնա, որ 'ի նախնոյ իւրմէ սևկայ Սևորդիք ազգին անուանէին ‖ ։ Նաև այլուր 'ի ստորագրել զընդարձակութ̃ի սահմանաց տէրութեան ա̃. սմբատայ արքայի, յիշատակէ յասելն. * Նաև զուտի գաւառ մինչ 'ի քաղաքն հունարակերտ և մինչ 'ի Տուս և 'ի շամքոր ‖ ։ Կիրակոս և վարդան յիշեն ստէպ զՅովհաննէս ոմն Տուեցի եպիսկոպոս գարդմանայ. որ որպէս Թուի էր 'ի գեղջէ աստի ։

## ՆԱՀԱՆԳ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ԳՈՒԳԱՐՔ

Ստրաբոնի ժա. 528, և առ ստեփ. բիւզ. կոչի Կօգարենէ. առ պլին. Զ. 7. Կօգարէ (1):

Անկանի յարեւմտից ուտիոյ՝ որպէս գրէ խոր. որում և համաձայնի ստր. դնելով սահմանակից Ալբանիոյ, այն է Շակաշէն գաւառին ուտիոյ, և դնէ յայնկոյս կուր գետոյ՝ խօսելով զվրաց, որով անկանի յաջակողմն կամ 'ի հարաւոյ գետոյն, համաձայն խորենացւոյն:

Զգի մերձ 'ի դղրունս ալանաց՝ որպէս ցուցանէ յոհ. կաԹ. յայս բան. * Ընդ ապա մեծ քորեպիսկոպոսն՝ որ դպայազատէրն իսկ զմամն Գուգարաց մերձ 'ի դղրունս ալանաց, գայր հասանէր 'ի Թիկունս օգնականուԹեն Թագաւորին ‖: Նաև այլուր մերձ յայն դրունս ցուցանէ լինել, և մերձ 'ի կովկաս լեառն, յասելն վասն կոստանդին Թագաւորին եգերացւոց. * Գնայ զհիւսիսական կողմամբք որ 'ի ծործորս լերինն կովկասու, միանգամայն իսկ և յաշխարհն Գուգարացւոց, և որ մերձ 'ի դրունս ալանաց բնակեալ են, զի ընդ իւրով ձեռամբ զնոսա նուաճեսցէ. և վասն զի ազգքն այնոքիկ հաւանեալք և հնազանդեալք և նուաճեալք էին ընդ ձեռամբ արքային ամենայն ‖, և այլն:

Պլին. Զ. 7. յետ յիշելոյ զսարմատացիս, և զազգս բնակեալս զմէօտիս ծովակաւ՝ մինչև 'ի չէրաւնեան լերինս, և զբնակեալս 'ի կովկաս, և այլն. ընդ նոյն ազգս յիշէ և զԿօկարս, և ոչ 'ի հայս, որպէս և ստր. առ չունելոյ ճանօԹուԹի կատարեալ, վասն որոյ և յաւանդուԹենէ այլոց գրէ ասելով, են ոմանք՝ որք զայսոսիկ ազգս

(1) 'Ի միում օրինակի եդիտ հարատուին գրեալ Կօգարէ. իսկ յայլս Կօ-էկարէ, Սէկարէ. բայց առաջին գրուԹին քանզի համաձայն է ստեփաննոսի, վասն այսորիկ իրաւամբք համարելով զայն ուղղագոյն, այնպէս եդ 'ի բնագրին պլինիոսի, զորոյ զուղղուԹիւն հաստատեն մեր մատենագիրք:

դնեն յայն կողմանս ։ Զի որպէս ասացաք այլուր, բազում ուրեք շփոթեն նախնիք 'ի նշանակել զտեղիս սահմանակից ազգաց, ոմանց յայս սահման, և ոմանց յայն դնելով, որպէս և զարևելեան և զհարաւային գաւառս ինչ հայաստանեայց՝ տան մարաց և ասորեստանեայց ։

Ստեփ. բիւզ. զԿօկարինի՝ զոր կոչէ Ռուան փոքր, դնէ ընդ մէջ կողքիսոյ և արևելեան վրաց, առանց յիշելոյ զազգն՝ որում սեպհական էր այն ։ Իսկ սդր. զայս Կօկարինի ՟Ը զրուցաց այլոց դասէ 'ի կարգս այնոցիկ գաւառաց հայոց, զորս 'ի շրջակայից առեալ զօրավարացն մեծին անտիոքոսի, յաւելլին 'ի հայս և ընդարձակեցին. այլ լաւ ևս էր ասել՝ թէ վիրք 'ի հայոց առեալ, յաւելլին 'ի մասն վրաստանի, որպէս և գրէ պերբէլիոս 'ի լուծմունս ստեփ". բիւզ". Թէպէտև տարադէպ բերէ 'ի վկայութի իւրոց բանից զայս բան սդրավոնի՝ որ զհակառակն դնէ ։ Այժմ ձգի ըստ մասին 'ի սահմանս նահանգին ախըլցխայու ։

'Ի բերոց սորա յիշէ խոր. զՆալութ, զՀաճարածառ զՄերկևիլ, և զՏօսախ. այլ սդր". դասելով զսա 'ի կարգս բարեբեր նահանգաց հայոց, յաւելու և զձէթ՝ ասելով. * Զհետ գայ ( սոգդոսինի այսինքն շակաշէն գաւառին ) Կօկարինի. քանզի համօրէն այս նահանգ առատացեալ է պտղովք, և ընտանի մշտադալար ծառովք, բերէ և Ձէթ առատ ‖, զոր խոր". դնէ 'ի սահմանակից նահանգն ուտի ։

Վաղարշակ արքայ կարգեաց 'ի սմա բդեշխ 'ի պահպանութի հիւսիսային կողման հայոց ընդդէմ աւազակող ազգաց բնակելոց 'ի լերինս կովկասու ։ * Իսկ ընդդէմ լերինն Կաւկասայ (կարգեաց՝ ասէ խոր. ՟Բ. ղ. ՟Ը ձեռ. 8.) կողմնակալ հիւսիսոյ զմեծ և զհզօր ազգն, և նահապետութեն անուն կարդայ՝ բդեշխ Գուգարացւոց ‖ ։ Այս բդեշխ իշխէր միանգամայն և մասին ինչ կամ ժողովըրդեան վրաց, վասն որոյ 'ի գիրս ուրեք ուրեք գտանեմք անուանեալ բդեշխ վրաց, զի զաշուշայ խոր. ՟Գ. 60. կոչէ * Բդեշխ գուգարացւոց ‖. իսկ վարդան՝ Բդեշխ վրաց, թէպէտ և յայնմ ժամանակի գոյր 'ի վերս թագաւոր արշէզ կամ արշիզ անուն, որպէս և յետ նորա վազգէն ։ Իսկ միհրան՝ առ խոր". ՟Ե. 60. կոչի միանգամայն Առաջնորդ Վրաց, և Բդեշխ Գուգարացւոց ‖. բայց սա էր նաև թագաւոր վրաց, զի այնպէս կոչի առ խորենացւոյն

Քանզի և առաջին բդեշխ գուգարաց՝ որ 'ի ժամա

նակս վաղարշակայ, էր 'ի զաւակէն միհրդատայ, զոր մե-
ծին աղեքսանդրի կացուցեալ էր իշխան 'ի վերայ գե-
րութե՟ վրաց ազգին. տես 'ի խոր. Բ. 7. և 10։ Եւ վասն
զի այսչափ մերձաւորութի՟ էր բդեշխին գուգարաց ընդ
վիրս, և իշխանութի՟ նորա ձգէր 'ի պահպանութի՟ ընդ-
դէմ կովկասային ազգաց, դիւրին էր օտարազգի մատե-
նագրաց՝ որպիսի էր ստեփ". բիւզ". պլին". և այլն. շփո-
թել ընդ նոցին սահմանս, և յիշել 'ի մէջ կովկասային
ազանց սարմատացւոց, որպէս առնէ պլինիոս։

Առաջին արտաշէս արքայ հայոց յաւել յիշխանութի՟
այսր բդեշխի և զկողմնակալութի՟ 'ի վերայ պոնտոս ծո-
վու, որպէս է տեսանել առ խոր. Բ. 10. * Բայց (ար-
տաշէս) զդուստր իւր զարտաշամայ՝ տայ կին միհրդա-
տայ ումեմն վրաց բդեշխի մեծի . . . և հաւատայ սմա
զկողմնակալութիւն հիւսիսային լերանցն, և պոնտոս ծո-
վու ||։ Ագաթ. Թղթ. յՃԹ, զբդեշխ գուգարաց Թուի
կոչել Ոդեշէն նոր շիրական կողմանց։

Վաղարշակ բաց 'ի սահմանելոյ յայս նահանգ զիշխա-
նութի՟ բդեշխի, զանազան տերանց ժառանգեցոյց զգա-
ւառս ինչ սորա, որպէս նշանագրէ խոր. Բ. 7. ը՟ ձեռ"Ց։
* Իսկ գուշարայ որ յորդւոցն շարայի՝ ժառանգեաց ըղ-
լեառն մթին որ է Կանգարք, և զկէս մասինն Ջաւա-
խաց, զԿողբ, զԾոբ, զՁոր, մինչև ցամուրն Հնարա-
կերտ ||։

'Ի ժամանակս Բ. արշակայ ընդ այլոց ապստամբեալ և
այս նահանգ՝ եանց 'ի վիրս. այլ մուշեղ սպարապետ պա-
պայ արքայի անդրէն եարկ ընդ տէրութե՟ հայոց, ըստ
գրելոյ բուզ. Ե. 15։ * Ապա խաղայր սպարապետն մու-
շեղ 'ի վերայ վրաց արքային, և նեղէր զնա մեծապէս, և
հարկանէր զերկիրն, և վանէր զամենայն աշխարհն վրաց,
և հանէր ընդ սուր զամենայն ազատս և զազգս նախա-
րարացն . . . և զբդեաշխն գուգարաց՝ որ յառաջն ծա-
ռայ էր թագաւորին հայոց և ապստամբեաց, կալեալ
գլխատէր . . . և թափէր զամենայն գաւառն. և առ-
նոյր պանդանդս, և զմնացեալսն 'ի հարկի կացուցանէր.
և զհին սահմանսն՝ որ յառաջ ունէր լեալ ընդ երկրին
հայոց և ընդ երկրին վրաց, որ է ինքն մեծ գետն կուր,
այնուհետև յինքն վարեալ դառնայր անտի ||։

Բայց առ ժամանակօք խոր". ամենայն գաւառք գու-
գարաց դարձեալ անկեալ էին ընդ տէրութե՟ վրաց, որ-
պէս վկայէ նա ինքն. վասն որոյ և զամենեսին բաց

'ի կողոփոր գաւառէն՝ դասէ և 'ի կարգս գաւառաց վրաց աշխարհին ։ Առաջին Սմբատ արքայ վերստին գրաւեաց ընդ իւրև զգուգարացիս, որպէս դնէ յոհ. կաթ. 'ի ստորագրելն զսահմանս տէրութե նորա. միայն զի զժողովուրդս նորա իբրև զատուցեալս 'ի մէնջ նշմարել կենել ։ Անդրէն եառ աշոտ շահանշահ որդի նորա ։ * Այլ անտի (ասէ յոհ. կաթ.) դարձեալ իբրև զօդապարիկ իմն երթեալ չուէ զկողմամբք Գուգարաց, և զայնս ևս ամրոցս իւրոյ տէրութեն՝ առ հասարակ յինքն գրաւէր նուաճէր ‖ ։

Գաւառք սորա են ինն.

Ա. Զորոփոր.
Բ. Կողբոփոր. (1)
Գ. Ծոբոփոր. (2)
Դ. Տաշիր.
Ե. Թռաեղք. (3)
Զ. Կանգարք.
Է. Արտահան.
Ը. Ջաւախք.
Թ. Կղարջք.

ԶՈՐՈՓՈՐ.

Այսպէս գրի յերկուս ձեռ" աշխարհգր. խոր. իսկ 'ի միումն Զորոցփոր. որպէս և ուրեք առ յոհ. կաթ. և առ վարդ" ։ 'Ի տպ". գրի Զորոյ փոր, որ է անստոյգ ։ Առ յոհ. կաթ. յերկուս տեղիս կոչի Զորափոր, որպէս և առ Թովմ". կիլ". իսկ 'ի պատմ. խոր. Բ. Գ. կոչի սոսկ Զոր ։

Կայեան ։ Բերդ՝ յիշատակեալ 'ի յոհ. կաթ. յասելն. * Գնան հասանեն 'ի Զորափոր, և տեսանեն նախ զԿայեանն կոչեցեալ բերդ՝ յափշտակեալ իշխանէն սահակայ ‖ ։ Գրի սա և Կայան առ նմին յոհ. կաթ. որ ասէ վասն շահանշահ աշոտոյ, թէ զվտանգ սևանի կալեալ, * Գնէ յամրոցի անդ՝ որ Կայանն կոչի ‖ ։ Նոյնօրինակ գրի և առ ստեփ. օրպ. գլ. ԼԳ. որ 'ի նմին պատմ. ասէ, թէ զվտանգ * Գնէ յամուր բերդին Կայենոյ ‖ ։ Առ վարդանայ գրի Կաեան, բայց 'ի հին ձեռագրի Կայեան, և դնէ 'ի կողմանս լոռոյ ։

(1) 'Ի պատմ. խոր. Բ. Գ. կոչի լոկ Կողբ. առ Թովմ. կիլ". գրի Կողբափոր ։

(2) 'Ի տպ". և 'ի միում ձեռ" աշխարհագր. խոր. երկրորդ գաւառ այս գաւառ. սակայն յերկուս ձեռ" և առ Թովմ. կիլ". դնի երրորդ, առ որում և գրի Ծոփափոր. 'ի պատմ. խոր. Բ. Գ. կոչի Ծոփ ։

(3) Առ Թովմ. կիլ". Թռաեղ ։

Ըստ կիրակոսի գրի Կայէն, և կոչի Րներդ և գաւառ անուամբ ։ * Ընդ այն ժամանակս (առէ վասն իշխանին քուրդ անուանելոյ,) իշխէր Րներդին Կայենայ, և Գաւառին ։ Նա այլուր. * փախստական գնաց յաշխարհն Կայանոյ 'ի վանքն գետիկ առ մեծ վարդապետն մխիթար ։

Վարդան յիշէ և զշինողին զանուն 'ի գրելն վասն մխիթարայ գօշի. * Շինեաց (մխիթար գօշ զվանքն գետիկ) հրամանաւ իւանէի քեռորդոյն մեծի իշխանին քրդին, որոյ հրամանաւ եկեալ խոկ էր յերկիրն կայենոյ 'ի Հինն կոչեցեալ գետիկ. զի յայնմ ժամանակի նա (այսինքն քուրդն, կամ իւանէ) ունէր զԿայեան հայրենեօք 'ի հաստանայ կայենեցոյ շինողէ բերդին ։ Նմէ ուր նա ինքն վարդան կոչէ * զԿլարճան ամրացոյն ԲԷՐԳ ։(1)

Այն է Թերևս ընդ բերդիս՝ և Կայէնգեծոյ բերդն՝ որ 'ի ձեռ" վարդ" աշխարհագրի յիշատակի, և դնի մօտ 'ի Գուգայ դաշտն ։

Արտանաշէն ։ Գիւղ՝ որ այսպէս Թուփ կոչեցեալ, սակս գոլոյ 'ի նմա ալքունեաց, զի ուր յոհ. կաթ. վասն Գ. սահակայ կաթողիկոսի գրէ, թէ * Հայրենեօք էր 'ի Ձորոփորոյ յԱրտանաշէն գեղջէ ։, անդ վասն նորին սահակայ գրէ վարդան, թէ * էր 'ի Ձորոյ փոր (2) յԱրտանեայն ։

Համշարի ։ Գիւղ յիշատակեալ 'ի պատմ. օրբէլ. գլ. Է. տպ. Թղթ. 28 ։ * Տայ (իւանէ եղբայրն զաքարէի՝ լիպարտի օրբէլեանց)․․ զՀամշարի, և զայլ գիւղօրէս բազում 'ի կայեան ։

Գետիկ ։ Վանք՝ մերձ 'ի հաղբատ, զորոյ զգիրս ստորագրէ կիր". յասելն վասն մխիթարայ գօշի. * Բնակեցաւ նա 'ի վանքն որ կոչի Գետիկ, 'ի գաւառին Կայոնոյ (3) որ 'ի վերայ գետոյն մեծագնի՝ զոր անուանեն

(1) 'Ի գիրս կորեան յիշատակի ուրեք բառս Կայէնաքալաքի, ուր ասի. * Յետ այնորիկ առնոյր հաւանութիւն երանելին մաշտոց, որպէս զի տէր եպիսկոպոսն 'ի Կայենականն, և նա 'ի Ափխազս հեթանոսաց զբանն կենաց սերմանիցէն ։ Ուր հետևեալ բառքն Ափխազ հեթանոսաց. յայտնի առնեն զնշանակութիւն բառին Կայենականք. որպէս թէ ասէր. Տէր եպիսկոպոսն (որ յայնմ վայրի առ զծոյն սահակայ,) 'ի կայենականն (այսինքն 'ի մերձակայ գաւառս հայաստանեայս), և նա ինքն մեկնող 'ի սփիւռս հեռաւոր հեթանոսաց՝ զբանն կենաց սերմանիցէն ։

(2) Այսպէս գրի յերկուս ձեռ". իսկ յայլ ձեռագիրս գրի Ձորոփոր ։

(3) Յերկուս օրինակս կիր". գրի այսպէս, բայց յայլ բանից նորուն կիր. յայտնի է՝ թէ պարտ է գրել Կայենոյ, և ոչ Կայոնոյ ։

Ըզգստեայ գետ, յաջմէ կողմանէ գետոյ‖: Յետ կործանելոյ սորին՝ նոյն մխիթար շինեաց այլ մենաստան նովին գետիկ անուամբն (1) 'ի տեղին կոչեցեալ բատ կիր". Զոր փանջապայ, զոր այսպէս ստորագրէ նոյն կիր": * Պատին տեղի մի վայելուչ և գոգաձև առ ստորոտս երկուց լեռանց որ կայ 'ի գլխոյ նորա, զոր անուանեն զտեղին Տանձախաչոր (2). և էր 'ի նմա գիւղ, և ձորակ մի փոքրագոյն. անցանէր ընդ մէջ նորա և միւս ևս յորդագոյն յաջմէ կողմանէ. տեղի փայտաւէտ և ջրաւէտ. անդր համարեցան թէ պատշաճ իցէ զետեղել ... Սկսաւ այնուհետև վարդապետն սքանչելի հանդերձ միաբանօք իւրովք ձեռն 'ի գործ արկանել շինութեան վանից և եկեղեցոյ 'ի վեր ատացեալ Զորն Տանձուտայ՝ հրամանաւ մեծ իշխանին Իւանէի. և շինեցին եկեղեցի մի գեղեցկաշէն փայտակերտ, և օծեալ կնքեցաւ յանուն Սբ. Լուսաւորչին Գրիգորի ... Շինեցին 'ի ձորն Պստիկ փոքրագոյն եկեղեցի մի յանուն Սբ. կարապետին ... 'ի գլուխ վանիցն. և ապա սկսան հիմն արկանել մեծափառ եկեղեցոյն կոփածոյ վիմօք, և գեղեցկաշէն արուեստիւ գմբեթայարդ երկնանման սփռալի տեսողաց. սկսեալ 'ի ՈԽ. թվին հայոց, զկնի Է. ամաց առնելոյ (առնլոյ) զերուսաղէմ՝ սալահադինին, և կատարի յամի Է ... Յայսմ ամի եղև աւարտ հռչակաւոր և խնդաւէս եկեղեցոյն գետկայ (3)...

(1) Զկործանումն և զշինութիւն գետկայ պատմէ կիրակոս յասելն. * Եղև շարժ սաստիկ որ զբազում տեղիս կործանեաց և տապալեաց զբարձրաբերձ շինուածս, ընդ որս և խախտեցաւ եկեղեցին գետկայ սաստիկ յոյժ. մինչ զի ոչ լինել հնար վերստին նորոգելոյ‖: Յետ գետնաշարժութեան սարգիս իշխան մեծ 'ի վանս շինեաց գեղ: Իւ յետոյ պատմէ նոյն կիր. զշինութիւն վանացն 'ի ձորն տանձուտայ. զի ասէ. * Շինեցան և նոր վանորայք և եկեղեցիք՝ որ 'ի հնոց էին լեալք, ընդ որս և հռչակաւոր վանքն՝ որ գետիկն կոչի 'ի գաւառին կայենի, զոր շինեաց Սբ. վարդապետն մխիթար զոր գոշն կոչէին, շինեալ հրաշալի եկեղեցի գմբեթայարկ երկնանման, և կնքեալ զեկեղեցին և օծեալ յանուն Սբ. Ածածնին տաճար փառաց նմ, և բնակարան բանաւոր հօտին քրի‖: Իւ սուղ ինչ զկնի. * Հարցանէր զմեծ վարդապետն մխիթար զշինող վկայիցն գետկայ (թերևս պարտ է լինել վանիցն գետկայ)‖: Տէս 'ի վեր անդր 'ի կարգի անդ զընդարձակ բանս կիրակոսի՝ վասն շինութեան եկեղեցեաց վանիցս:

(2) 'Ի միում ձեռ." գրի այսպէս. իսկ յայլում Տանձախաչոր, բայց ստորև գրի Զոր փանջապայ:

(3) 'Ի շինութիւն եկեղեցւոյս բազմօք նպաստամատոյց եղև (թ̃ե գրելոյ կիրակոսի) վախթանգ իշխան խաչենոյ և կին նորա * Արզու խաթուն ... (որ և) արար և վարագոյր գեղեցիկ գունեղովք իւրովք՝ ծածկոյթ Սբ. խորանին զարմանալի տեսողաց, 'ի մազոյ այծիցն կակղագունից, ներկեալ պէսպէս և զանազան գործ գան-

օծեալ կնքեցաւ եկեղեցին յանուն սբյ ածածնին. շինե-
ցաւ և գաւիթն եկեղեցւոյն գեղեցկազարդ և կոփածոյ
վիմօք, և յոլովք ձեռնտու եղեն, մեծ զօրավարն զաքա-
րէ և եղբայր նորա իւանէ, քանզի նոքա ունէին զիշխա-
նութիւն գաւառին. և ընծայեցին եկեղեցւոյն սահման ջրա-
գարձիւք լեռնէ ՚ի լեառն, և բովն մի յՄքասաձոր, և
զ[illegible] որաձորն ՚ի Նահանգին բջնոյ, և զ[illegible]չավա ՚ի գլուխ
Վանացն ||: Յայս բան ցուցանէ կիր՝. Երից եկեղե-
ցեաց շինեալ ՚ի սմա. ա. փայտակերտ յանուն սբյ լու-
սաւորչին. բ. փոքրիկ սբյ կարապետին (1). գ. քարաշէն
յանուն սբյ ածածնին:

Նոյն մխիթար ՚ի շրջակայս շինեաց և այլ մատրունս,
զորոց գրէ կիր: * Արար իւր տուն բնակութեան բացագոյն
՚ի վանացն, շինեաց և անդ փոքրագոյն եկեղեցի մի փայ-
տակերտ յանուն սբ. հոգւոյն. և ՚ի ժամանակի ծերութեան
՚ի գլուխ վանիցն յաջմէ կողմանէ շինեաց եկեղեցի մի շի-
րիմ ՚ի գերեզմանի իւրոյ. կրով և վիմօք մածուցեալ
որբագործ յանուն համբարձմանն քի ||: Յետ մխիթա-
րայ մարտիրոս առաջնորդ վանաց * Շինեաց (ասէ կիր).
այլ ժամատուն անտաշ վիմօք՝ մածուցեալ կրովք, հաս-
տահեղոյս որմօք, և փայտակերտ վերնայարկօք, որ յետ
ժամանակաց փլաւ վերնայարկն. շինեաց և վերնատուն
մի գեղեցկաշէն յարկօք, արուեստաւոր ունելով զհիւսն
մխիթար... բազումեղբարք ժողովեցան վասն հռչակա-
նուն տեղոյն, և բազմաց եղև տեղի մնդեան և ուսման,
որ և մեք իսկ սնեալ և ուսեալ եղաք ՚ի նոյն վանս:

„ Սկսան շինել և եկեղեցի մի Ե. (այլ օրինակ, Է) խո-
րանօք, կոփածոյ և տաշած վիմօք, գմբեթաւոր և գե-
ղեցիկ շինուածովք, և ներքև ընդմիջեցաւ եկեղեցին՝
խափանումն եղև յոլով ժամանակս. քանզի եկն սուլտանն
խորասանու սալահատինն կոչեցեալ... յետոյ այլ ոմն
գրիգոր անուն կապալեցի, որ յառաջն արդիւնաւոր էր
՚ի շինումն եկեղեցւոյն՝ վերստին ձեռնարկեալ աւարտեաց

գակերպ և նկարեալ պատկերօք.
Ճշգրտագոյն հանուածովք տնօ-
րինականօք փրկչին և այլ սրբց,
որ հիացուցանէր զտեսողսն ... Եւ
ոչ միայն այս եկեղեցւոյս արար
ծածկոյթ, այլև այլոց եկեղեցեաց
հայրապետաց և մակարայ վանիցն և
գագի վանից, քանզի յոյժ սիրող էր
եկեղեցեաց բարեպաշտ տիկինն||:

(1) Առաջի եկեղեցւոյ կարա-
պետին թաղեցին զՄխիթար գօշն,
զոր կիրակոս ծանուցանէ՝ փոքրա-
գոյն եկեղեցի միայն կոչելով.
* Տարեալ հանգուցին զնա առա-
ջի դրան եկեղեցւոյն փոքրագու-
նի, որ կայ ՚ի գլուխ վանացն յա-
րևմտից կողմանէ||:

զնա 'ի ոռ․ Թվլիս ‖ ։ Ստորև վասն գրիգոր անուն իշխանի պատմէ այլ շինութիւն արարեալ 'ի նմա ։ * Սա խնդրեաց յորդւոյն աւագ իւանէի զվանքն Պետնիկ՝ 'ի տեղի իւր գերեզմանի ․ և վասն յոյժ սիրելոյն զնա , ետ նմա ․ ․ ․ շինեաց հրաշազան եկեղեցի մի երեքխորանի մերձ 'ի գաւ-ւիթս եկեղեցոյն զարմանակերտ , և անուանեցին յանուն նոյն գրիգորի , նաև այլ յոլով շինուածք եղեն 'ի նմա , և բազմացան քահանայք և պաշտօնեայք և մանկունք ուսումնականք ‖ ։ Յայս ամենայն շինութեց յայտնի է վանացն Պետկայ լինել յայնմ ժամանակի մի յերևելի վանորէից , յորոց 'ի կարգի յիշատակէ զնոյն և կիրակոս ։ Սբ Նշանէ ։ Միայնարան , զորմէ կիրակոս 'ի գրելն վասն մեծի վարդապետին վարդանայ ․ * Նա ինքն եկեալ 'ի ձորն կայանոյ 'ի միայնարանն իւր , զոր Սբ Նշանէն կա-չէին , հանդէպ անառիկ բերդին կայանայ ‖ ։

Մաշխէ ։ Գիւղ՝ զոր կիրակոս գնելով մերձ յաղստև , Թուի անկանիլ յայս գաւառ , յասելն վասն գրիգոր անուն իշխանի ․ * Գնեաց և գիւղ մի 'ի նմանէ Մաշխէ անուն մերձ յաղստև , ետ զայն 'ի վանքն ‖ ։ Այսինքն 'ի վանքն գետնիկ ։

## ՏԱՇԻՐ ։

Նոյն է սա ընդ Տաշրատափ անուամն՝ զոր 'ի կիր առնու յոհ․ կաթ․ յասելն վասն ոստիկանին յուսփայ․ * Յուղի անկեալ գայր հասանէր 'ի փայտակարան քաղաք , և անտի ելեալ վաղվաղակի ընդ ուտի գաւառ , գայ մինչև ցՏաշրատափ ‖ ։ Քանզի ասողիկ 'ի նմին պատմութեան յուսփայ կոչէ զայն Տաշիր ։

Սահմանակից է աշոցք գաւառին այրարատոյ՝ զոր յայտ առնէ յոհաննէս կաթողիկոս յասելն թէ սմբատ արքայ ընդդէմ յուսփայ * Երթեալ ունէր զկիրճան և նեղուցս պողոտայիցն՝ կողմանցն Աշոց ց և Տաշրայ՝ ու-տալ նմա թոյլ հետի աղագաւ անցի․ [illegible] Սան որոյ և վաղարշակ արքայ յերկոսին 'ի սոսա [illegible] միջէ ցեղ[illegible]դեաց զնչխանս ։ * Բայց զտէրութիւն Աշոցաց ( [illegible] խոր․ բ․ 7․ ) և զսեպհականութիւն Տաշրայ՝ կարգէ վաղարշակ 'ի զաւակացն գուշարայ հայկազնոյ ‖ ։ [illegible]ութիւնքն եղեն յերկոսին 'ի սոսա ոչ մի՝ այլ ուրոյն յաշտս , և ու-րոյն 'ի տաշիր , վասն որոյ և խոր․ բ․ 7Տ․ [illegible] 79․ զտա-

Ճատ որ էր 'ի գաւառացն գուշարայ յաւուրս տրդատայ, կոչէ միայն Գոգարէն աշխարհ, և Իշխան 'ի վերայ Գուգարին աշխարհ : Այլ զազգար ուրոյն ուրոյն յիշատակէ Օ իշխանն աշխարհ և Օ իշխանն թաղէրայ :

Ընակիչք գաւառիս առաւել քան զամենեսին հաստատեցան 'ի վարդապետութիւն սրբոյն Մեսրոպայ, զորոց գրէ Խոր. Գ. 60 : * Հրաւիրէ անտի 'ի բդեշխէն Գուգարաց աշուշայէ՝ յաղագս նորին գործոյ գալ յիւր իշխանութիւն 'ի գաւառն Տաշրայ, ուր երթեալ (Մեսրոպայ) լաւագոյն վարդապետեաց և հաստատագոյն քան զամենայն աշակերտեալսն ‖ :

Լոռէ, կամ Լօռի. գրի և Լոռէ, առ մատթ". վարդ". և կիր". առ որում գրեալ կայ և Լօռէ : Ընկանի 'ի տաշիր՝ ըստ վկայելոյ վարդանայ աշխարհագրի, Տաշիր Լօռէ է. զնոյն ակնարկէ և կիրակոս՝ դնելով զՕձուն գիւղ տաշրայ մերձ 'ի Լօռի : Մատթէոս դնէ յԱղուան գաւառի, յասելն. * Տէր բարսեղ յարուցեալ գնաց յաշխարհն հայոց 'ի յաղուան գաւառի 'ի Լօռէ քաղաքի, առ Թագաւորն հայոց կորիկէ որդի անհողէնին դաւթի ‖ : Իսկ թէ իմանայ զաշխարհն աղուանից, յայտ է թէ այնպէս դնէ. վասն զի դաւիթ և կորիկէ թագաւորէին նաև 'ի վերայ աղուանից. իսկ թէ իմանայ զայն գաւառն ուտէացւոց որ 'ի տայ". և 'ի միում ձեռ" աշխարհագր. խոր. գրի Լոռէ, տարաձայնի 'ի վերոգրեալ մատենագրաց՝ որք զԼօռի ցուցանեն լինել 'ի տաշիր, որպէս գրեցաք :

Շինեաց զսա ըստ գրելոյ վարդանայ նախայիշատակեալ դաւիթ անհողինն որ 'ի ժա. դարուն, կամ թէ առ հասարակ նորոգեաց : * Այս կիւրիկէ (ասէ վարդ".) որդի էր դաւթի որդւոյ գուրգենայ՝ որդւոյ աշոտոյ ողորմածի, սմա հայրն դաւիթ՝ շինեաց զԼօռէ, և ետ և ժը. բերդ ‖ : Վասն որոյ անուն սորին ոչ յիշատակի առ նախնի պատմագիրս. յայնմ հետէ եղև մի յերևելի բազմամարդ և յամուր քաղաքաց, և աթոռ փոքրիկ թագաւորութեան [illegible]րիկէի. վասն որոյ մատթ". զԼօռի [illegible] յասելն վասն ալփասլանայ արքային պարսից . * Սպանեաց զԹագաւորն աղուանից զկորիկէ զորդի դաւթի անհողինի 'ի քաղաքն իւր Լօռի ‖ : Այլ այս [illegible]անխատ լինելոյ քաղաքիս՝ սուղ ինչ տևեաց, [illegible] գրելոյ կիրակոսի : * Այլ մերն դադարեաց գաւառն [illegible]ագաւորական 'ի գագիկ վերջին, որպէս

կիւրիկէին որ 'ի Լօռէ քաղաք, և որ շուրջ զնովաւ. զի և սա յազգէ բագրատունեաց էր ||: Նոյն այլուր գրէ. * Իսկ Կիւրիկէ բագրատունի որ 'ի Լօռէ քաղաքէ՝ զամենայն ժամանակս իւր կացեալ ընդդէմ վրաց՝ 'ի հաստատութե պահէր զհայրենիսն իւր. և յետ մահուան նորա դաւեալք 'ի վրաց որդիք նորա, ելեալ 'ի տանէ հայրենեաց գնացին 'ի պարսիկս ||:

Կառուցեալ էր այս քաղաք առ ձորով, պատեալ պարսպաւ, զորոյ զներքին հիմունս բրելով կործանեցին մուղալ Թաթարք 'ի ԺԳ. դարուն, յորժամ յանհոգս կային բնակիչքն. զլաղմութի քաղաքացւոց ... ուրեցին. և յաւարի առնուլն զգանձս նորա, գտին գա...անի տեղի գանձուց իշխանին շահնշահի, որում տիրէ...ժամ, շինեալ բաղում արուեստիւ անձուկ բերան... ...րքին խորս երկրի. բայց դղեակ սորա կայր տակաւ... մինչև 'ի ժամանակս Թիմուրի մեծափեցւոյն: Նոյն վարդանայ կոչի ուրեք Լոռի, յասելն վասն խզիլ անուան սկիւթացի ամիրային, թէ * Լաւ զԼոռին Լօռէ ||:

Հոռոմայր և Որոտոր: Ընդարձակօղ վարդանայ աշխարհագրի 'ի Լօռի դնէ զայսոսիկ՝ յասելն. * Տաշիր Լօռի է, ուր կայ Որոտարն, և Հոռոմայրի որ նշանն (1): Կոչեցաւ Հոռոմայր, քանզի յաւուրս յոհաննու իմաստասիրի իշխան ոմն հոռոմոց վասիլ անուն եկն դեսպան 'ի կայսերէն, և ճգնեցաւ 'ի սմին այրի: * Ճգնեցաւ (ասէ վարդան) ամս ԵԺ. յայրին՝ որ Հոռոմայրն կոչեցաւ անուամբ նորա. և զխաչն իշխանն առ ինքն ունէր 'ի դաշն 'ի հոռոմոց: Նոյնպէս լուաք (ասէ), և դու ընկալ թէ կամիս սիրով ||: Զայս խաչ վարդան աշխարհագիր կոչէ՝ Հոռոմայրի որ նշան: Իսկ Որոտարն գրի ուրեք 'ի գիրս Որոբայր, կամ Որոբար, որպէս և առ կիրակոսի, և դասի 'ի կարգս վանորէից, ուստի էր Դաւիթ վարդապետ Որոտարեցին, կամ Որոտարացին, մատենագիր 'ի ԺԴ. դարու, որ կոչի ուրեք և Որոտայրեցի:

Ձորոփոր: Նոյնպէս գրի առ յովհաննու կաթողիկոսի և առ ասողկայ 'ի միում վայրի. իսկ յայլում վայրի ասողկայ գրի Ձորոփորէ. առ Թովմ. արծ. Գ. 8. Ձորոփորայ, 'ի հոլովն սեռականի. որպէս և յաշխարհագրութե խոր. 'ի միում օրինակի. իսկ յայլում Ձորափոր, և յերրորդ ձեռ.ն Ձորոփորէ. զորոց զերկոսին եւս համարիմ

(1) 'Ի տպ. դնի Հոռոմայրի:

օտար հնչումն, և լաւագոյն զհնչումն տպագրելոյն՝ ուր գրի Շամշուղէ, որ է տառադարձութիւն հնչմանս Շամշուլտէ։ Ի սմանէ վրաց՝ զորոյ զծագրին հնչումն վրացին թողցուք հմտացելոց յայն բարբառ (1)։ Թարգմանի առ մեզ Երեքնեան՝ ըստ գրելոյ յոհաննու կաթողիկոսի. * Իսկ ապա (ասէ) Թագաւորն աշոտ արքայորդին՝ չուէր գնայր երթայր հասանէր 'ի կողմանս գուգարաց՝ մերձ յամրոցն մեծ, որ 'ի լեզու վրաց Շամշուդէ, այս ինքն՝ Երեքնեան Ամուսանի ||. Թերևս սակս ունելոյն երիս բերդ[illegible] զՍերբնաբերդ և զՄերնաբերդ սորա յիշատակէ նոյն յոհ. կաթ. կամ թէ սակս եռասայր գլից բերդի[illegible] այն։

Զ[illegible]ն անուն բերդիս պատմիչն օրբէլեանց գլ. ա. տպ. Թ. [illegible]. 8. ասէ լինել Օրբէթ, և զառաջին շինութիւն բերդին ընծայէ Բարթղամէի որ էր եղբայր հայկայ, յասելն. * Իսկ Բարթղամէս գնաց 'ի լեառն որ կոչի Սրմող. և անդ շինեաց իւր տուն, և ամրոց մի անառիկ 'ի պատշաճաւոր տեղւոջ. կոչեաց զբերդն Օրբէթ, զոր այժմ Շամշոյլտէ կոչեն ||։ Յայսմ բերդի դնէ լեալ և զծագումն Տանն Օրբէլեան։

Սամ գաւառին՝ յոհաննէս կաթողիկոս եդ 'ի վերոյ 'ի կողմանս գուգարաց. այլ ասողիկ առաւել որոշելով գ. 30. դնէ 'ի կողմանս Տաշրայ, ուր և կոչէ զսա Բազաքանիստ դղեակ։ * Իսկ եղբօրորդի նոցա (սմբատայ և գագկայ արքայից) դաւիթ որդի գուրգենայ՝ հանդերձ եղբարբն իւրով սմբատաւ ունի զկողմանս Տաշրայ և վրաց դաշտի, զՇամշուլտեայ մեծ քաղաքանիստ դղեակն, նիստ արքունական պատրաստեալ ինքեան, արագապէս տիրէ քաղաքին դմանեաց. հնազանդեցուցանէ և զամերայն տփխեաց քաղաքաւն իւրով||։ Յայտնագոյն ես 'ի նոյն իսկ 'ի տաշիր դնէ գ. 45. յասելն վասն գագկայ արքային. * Գնաց զօրօք 'ի Տաշիր; շրջան առեալ ընդ Շամշուղէ՝ և ընդ վրաց դաշտ, քանդեալ աւերեաց զամենայն||։ Խորենացին դնէ զայս 'ի վիրս, և ոչ յիշէ 'ի գուգարս. քանզի որպէս գրեալ եմք այլուր, յիւրում ժամանակի վիրք տիրէին գուգարաց։

Զկնի ա. սմբատ արքայ եառ ընդ իւրև. յետ նորուն

(1) Թերևս մերձաւոր առ վրացի հնչումն գրի ուրեք առ վարդանայ Սամշուլդէ, ուր ասէ. «Եւ առ զնոր քաղաք զոր վիրք Ախալքաղաք ասեն, և Սամշուլդէ ||։

որդի նորա Աշոտ Շահանշահ պատերազմաւ գրաւեաց․ վասն որոյ գրէ Յոհաննէս կաթողիկոս․ * Վասն զի հօր նորա (այսինքն Սմբատայ հօր Աշոտոյ), շուրջ զամրոցաւն (Շամշուլդեայ) սեպհականացուցեալ էր իւր, և զեղբարս երկուս Վասակ և Աշոտ 'ի տոհմէ Գնթունեաց՝ բերդապահս և վերակացուս նահանգին այնմիկ կացուցեալ․ իսկ սա (այսինքն Աշոտ՝) զնոյն հնազանդութեան կարգ առ 'ի նոցանէ պահանջէր, գալ 'ի մտերմութիւն ծառայութեան ‖:

Յետ Ժ․ դարուն և 'ի Ժա̄․ եղև արքայանիստ քաղաք Դաւթի Անհողինի․ և 'ի Նծ̄․ թուին, 'ի ա̄․ Գագկայ արքայէ եղծաւ սահման սորա սակս անհնազանդութեան նորին Դաւթի առ Գագիկ՝ որ էր հօրեղբայր իւր:

Օձուն, կամ ըստ հին ձեռագրաց յորս յիշատակի՝ Ուջուն: Գիւղ՝ զոր Ասողիկ դնէ յայս գաւառ, յասելն վասն առաջին Սմբատայ արքայի, դնաց 'ի գաւառն Տաշրայ, 'ի գիւղն Օձուն: Իսկ Կիրակոսի գրի Ուջուն, և դնի մերձ 'ի Լօռէ․ նոյնպէս գրի և առ Վարդանայ (1): Աստի էր Է̄․ Յոհաննէս կաթուղիկոս մականուանեալն իմաստասէր․ որպէս գրեալ է 'ի գաւազանագիրս կաթողիկոսաց, և առ Ասողկայ, որ ասէ վասն նորա լինել * 'Ի գաւառէ Տաշրաց, 'ի գեղջէն Օձնայ ‖: Շինեաց 'ի նմա նոյն Յոհաննէս կաթողիկոս ըստ Կիրակոսի, * Եկեղեցի մի մեծ յիւր գիւղն Ուձուն՝ որ հուպ է առ քաղաքն Լօռէ․ և իւր ընտրեալ տեղի բնակութեան, սակաւ մի 'ի բացեայ 'ի գեղջէն, և անդ դադարէր ‖:

Որդւաձորոյ սբ̄ Նշան: Մենաստան՝ որ առ ընդարձակողին Վարդանայ դնի 'ի Տաշիր, ասելով․ * Տաշրացոց գաւառն Բամբէկի ձորն է (2), ուր կայ սբ̄ ուխտն Որդւաձորոյ սբ̄ Նշանին ‖:

Բաղանիք, կամ Բաղչէբաղ: Վարդան դնէ զայս 'ի կողմանս Տաշրայ․ որ եհաս ասէ 'ի ժառանգութիւն Գուրգէնայ կրտսեր եղբօր Սմբատայ թագաւորին 'ի մէջին անդ Ժ․ դարուն:

(1) 'Ի գրեն վասն ուրումն կուրի բժշկելոյ 'ի հռչակաւոր սբ̄ Նշանէն որ 'ի Հոռոմայրն, ասէ թէ էր այրն 'ի յՕձնոյ:

(2) 'Ի տպ․ գրի Բուղէի ձորն է:

## ԿԱՆԳԱՐՔ:

Եւ 'ի սմա լեառն Արեւ կոչեցեալ, որպէս դնէ Խոր. Բ. 7. կամ ըստ ձեռ" Ց : * Իսկ Գուշարայ որ յորդւոյն Շարայի՝ ժառանգեաց զլեառն Ամթին, որ է Կանգարք ||: Այլ լերինք սորա էին 'ի վերջին ծայր Հայոց մերձ 'ի սահմանակցութի վրաց, որպէս իմանամք 'ի բանից Ղազարայ, առ որում Վախթանկ արքայն վրաց բերանով դեսպանին իւրոյ ասէ առ զօրս Հայոց. * Դու իմ տեսեալ թէ ոչ եմ կարօղ կալ առաջի, խոյս տուեալ 'ի լերինս Հայոց մօտ 'ի սահմանակցութեն վրաց մնամ ձեզ ||: Իսկ ստորեւ սոյն այս լերինք՝ կոչին Կանգարք՝ սակս գոլոյ 'ի նմին գաւառի. * Անյապաղ ամենայն զօրքն Հայոց առ արքայն վրաց հասանէին, եւ բանակեալք առ վայր մի՝ 'ի գաւառին Կանգարաց դադարէին ||. ուր էր Թագաւորն վրաց. որպէս ցուցանէ զինի :

## ՋԱՒԱԽՔ:

Որպէս գրի 'ի միում ձեռ". աշխարհագր. Խոր. իսկ 'ի տպ. գրի Ջաւախք, եւ յերկուս ձեռ" Ճաւախք, որ է վրիպակ գրչաց, քանզի եւ 'ի ստորագրութե անդ վրաց՝ յերկուս ձեռ". գրի Ջաւախք, որպէս եւ 'ի տպ". Ջաւախ, եւ 'ի միում ձեռ". Ջաւախք: Զստուգութի առաջին անուան ցուցանէ նաեւ պատմութիւն Խորենացւոյն Բ. 7. եւ ստոյգ կայ, զորմէ ստորեւ. այլ եւ այժմեան հնչումն՝ որ կոչի Ջէւախէթ, կամ Ջաւախէթ, որպէս գրի եւ առ Թովմ". Կիլիկ": Առ Մատթէոսի ուրեք գրի Ջաւալխ: Զսորա կէս մասն ետ Վաղարշակ 'ի ժառանգութիւն Գուշարայ:

Ակուարի գիւղ: Յիշատակի առ Վարդանայ, յասելն վասն Մովսէսի կաթողիկոսի. * Մովսէս . . . զԿիւրիոն որ էր ազգաւ 'ի վրաց, 'ի գաւառէ Ջաւախաց՝ 'ի գեղջէ Ակուարի . . . ձեռնադրեաց կաթողիկոս վրաց ||:

Գուլբենի: Գիւղ՝ որ յիշատակի առ Ասողկայ. Գ. 28. յասելն վասն Է. արքային Սմբատայ. * Գնաց առ նոսա 'ի գաւառն Ջաւախաց, բնակին 'ի գեօղն որ կոչի Գուլբենին ||:

Խորդանէիր: Յիշատակի առ նորին Ասողկայ. Բ. 2. յաւ

սելն ։ * Խալթիկ նիզկեան հայոց ամիրայ՝ եկն և եանց բազմութբ 'ի վերս, և մեռաւ 'ի Ջաւախս, 'ի գիւղն որ կոչի Խոզաբիր ։

Ախալ քաղաք ։ Անուն վրացի, թարգմանեալ 'ի մեզ՝ Նոր քաղաք, որպէս նշանակէ և վարդան յասելն վասն ալփասլանայ արքային պարսից. * Եւ առ զՆոր քաղաք, զոր վիրք Ախալ քաղաք ասեն, և զամենայն ։ Յայսմ գաւառի դնէ զսա մատթէոս, և զսոյն գաւառ դնէ յաշխարհէն վրաց՝ վասն պատճառին զոր 'ի վերոյ նշանակեցաք. * Եւ անտի յարուցեալ սուլտանն ( ալփասլան 'ի թուին շժգ. ) ահագին բազմութբ իւրով մտաւ յաշխարհն վրաց, և մեծաւ սրտմտութբ մաշեաց զնոսա 'ի սուր և 'ի գերութի. և իջեալ բանակեցաւ 'ի գաւառն՝ որ կոչի Ջաւախս, և պատերազմաւ մեծաւ պատեաց զքաղաքն, որ կոչի Ախալ, և ուժգին զօրութբն առաւ Ախալ քաղաքն ։ Որպէս ցուցանէ ստորև՝ էր յայնժամ քաղաք բազմամարդ և հարուստ ։ Տես և 'ի նոր հայաստան. թղթ. 127.

### ԿՂԱՐՋՔ.

Առ ագաթ. գրի Կղարջք. որպէս և 'ի յունականն Գռալարգ, 'ի միում ձեռ". աշխարհագրութեն խորենացւոյն 'ի ստորագրութեն վրաց՝ Կղարջք ։ Անունս Գօրջաւ՝ որ յիշատակի առ օտար ազգաց մատենագիրս, թուի ինձ յանուանէ աստի ածանցեալ. և Գօրաքսեան լերամբք զորս յիշէ պլինիոս Ե. 27. և Զ. 9. զլերինս Կղարջից անուանեալ. * Չիրուս (կուր գետ՝ ասէ,) բղխէ 'ի հենիոքեան լերինս, զորս այլք Գօրաքսեան անուանեն ։ Արդ քանզի կուր ըստ ստուգութեան բղխէ 'ի հայս, յայտ է թէ Գօրաքսեան լերինք անկանին 'ի հայս, վասն որոյ 'ի հայս եդ զնոյն լերինս և ջէլլարիոս (1). Իսկ 'ի հայս 'ի կողմանս կուր գետոյ ոչ գտանեմք մերձաւոր այս անուան քան զանունս Կղարջք ։

Ըստ դրիցն անկանի 'ի վերջին սահմանս մեծին հայոց յարեւմտից կողմանէ, որպէս ցուցանէ ագաթ. և յոհ.

(1) Այլ 'ի լերանց աստի պարտ է դնել, կամ թերևս ալխաղխութիւն նոյն գօտւոյ զգօրաքսեան լերինս, զորս յաղումէս դնէ 'ի սարմատիա ասիոյ ։

կաթ. յիշելով ընդ տեղիս որք են սահմանագլուխ մեծին Հայոց. դնելով 'ի կողմանս խաղտեաց մերձ 'ի սեաւ ծով, և մերձ առ եգերացիս. * Զգեալ աճեցուցանէր ( ասէ յոհաննէս կաթողիկոս վասն ա. սմբատայ ) զշաւիղ տէրութե՛ իւրոյ՝ յարեւմտից հիւսոյ մինչև ցկարնոյ քաղաք, և անդ ( անդր ) ևս քան զԿղարջս քերեալ. մինչև առ ափն ծովուն մեծի (այսինքն սեաւ ծովուն,) և մինչև ցսահմանս եգերացւոց, և մինչև ցստորոտ մեծի լերինն կովկասու (1) ||:

Նոյնպէս 'ի վերջին սահմանի գոլով անուն սորա՝ ձգեցաւ արտաքոյ Հայոց. և թերևս նոյն իսկ բնակիչքն ևս սփռեցան արտաքոյ Հայոց 'ի սահմանակից աշխարհն եգերացւոց, ը̃ ինքեանց տանելով և զանունն. զի ստեփաննոս բիւզանդացի զԳօրաքս համարի ազգ կողքիսականք, կամ որ նոյն է եգերականք: * Գօրաքսք ( ասէ ) ազգ Գօլքեանք ( այս է Կողքիսականք ) մերձ Գօլաց (2) ||: Նոյն պլինիոս ընդ ծովեզերեայ ժողովուրդս դասէ զսոսա յասելն. * Օտնացեալ ծովեզերեայս ( սեաւ ծովու ) աւնեն ազգք վայրենիք, Մելանքեանք, Գօրաքսք (բնակեալք) 'ի քաղաքին գօլքեանց ( կողքիսացւոց ) 'ի տիօսգուրիատէ ||: Նոյնպէս և զԳօրաքսեան լերինս եդ նոյն պլինիոս յակունս կուր գետոյ՝ որ անկանի 'ի հայս:

(1) Առ ադաթ. թղթ. յէէ. գրի. * Մինչև առ աշխարհաւն խաղտեաց մինչև առ կաղարջօք ||: Եւ առ խոր. բ. 83. * Քարոզեաց 'ի Կղարջից սկսեալ առ գրամբք ալանաց ||: Եւ առ վարդ. գրի. * Կիւրապաղատն աշոտ տիրեաց 'ի կաղրջաց մինչև 'ի տփխիս լեռնակողմամբն հանդերձ ||:

(2) Թերևս զԿող գաւառ տայոց կոչէ Գօլք անուամբ, զի և խոր. բ. 8. զԿող գրակից յուցանէ գաւառոյն մեծի լերինն կովկասու: Տես 'ի ստորագրութեան կողայ 'ի Տայս:

կաթ. յիշելով ընդ տեղիս որք են սահմանագլուխ մեծին Հայոց. դնելով 'ի կողմանս խաղտեաց մերձ 'ի սեաւ ծով, և մերձ առ եգերացիս. * Զգեալ անձեցուցանէր ( ասէ յոհաննէս կաթողիկոս վասն Տ. սմբատայ ) զշաւիղ տէրութե՛ իւրոյ՝ յարեւմտից հիւսոյ մինչև ցկարնոյ քաղաք, և անդ ( անդր ) ևս քան զԿղարջս քերեալ. մինչև առ ափն ծովուն մեծի (այսինքն սեաւ ծովուն,) և մինչև ցսահմանս եգերացւոց, և մինչև ցատրոտ մեծի լերինն կովկասու (1) ||:

Որպէս 'ի վերջին սահմանի գոլով անուն սորա՝ ձգեցաւ արտաքոյ Հայոց. և թերևս նոյն իսկ բնակիչքն ևս ոփուեցան արտաքոյ Հայոց 'ի սահմանակից աշխարհն եգերացւոց, ընդ իւրեանց տանելով և զանունն. զի ստեփաննոս բիւզանդացի զԳորաքսս համարի ազգ կողքիսականք, համ որ նոյն է եգերականք: * Գորաքսք ( ասէ ) ազգ Կոլքեանք ( այս է Կողքիսականք ) մերձ Գոլայ (2) ||: Իսկ պլինիոս ընդ ծովեզերեայ ժողովուրդս դասէ զսոսա յասեն. * Ոհացեալ ծովեզերեայս ( սեաւ ծովու ) առին ազգք վայրենիք, Մելանքեանք, Գորաքսք (բնակեալք) քաղաքին գոլքեանց ( կողքիսացւոց ) 'ի տիօսգուրիադէ ||: Սակայն և զԳորաքսեան լերինս եդ նոյն պլինիոս յակունս կուր գետոյ՝ որ անկանի 'ի հայս:

(1) Ոս. ագաթ. թղթ. ջհ. ...ի. * Մինչև առ աշխարհաւն ...ղտեաց մինչև առ կաղարջք ||: ...առ խոր. Բ. 83. * Քարո...ց 'ի Կղարջից սկսեալ առ ...մբք ալանաց ||: Իսկ առ վարդ. ... * Կիւրապաղատն աշոտ տի...ց 'ի կաղրջաց մինչև 'ի տփխիս լեռնակողմամբն հանդերձ ||:

(2) Թերևս զԿող գաւառ տայոց կոչէ Գոլք անուամբ, զի և խոր. Բ. 8. զԿող գրակից ցուցանէ գաւառին մեծի լերինն կովկասու: Տես 'ի ստորագրութեան կողայ 'ի Տայս:

# ՏԱՅՔ

Քսենոփոն կոչէ զսա Տաօքս, որպէս յայտ առնէ կարգ տեղեացն հայաստանեայց՝ ընդ որս անցանէին զօրք յունաց դարձեալք 'ի պարսից. վասն որոյ և Վէսսէլինկ զԽյուն անունն որ գտանի 'ի ԺԴ. գիրս Դիոդորոսի սիկիլիացւոյ Թղթ. 664. 'ի նմին պատմուէ դարձի զօրացն յունաց՝ ուղղագրէ և դնէ 'ի լատինն Տաօք: Յոմանց ուղղագրոյն ևս կոչի Տաք, որպէս գրէ Ստեփանոս բիւզանդացի. * Տաօքք, ժողովուրդ 'ի ներքս կոյս 'ի պոնտոս, (որոց) և գաւառն նոյնօրինակ (անուանի). զսոսա ոմանք կոչեն Տաքք, որպէս առնէ Սոփենետոս յաւշուանս ||:

'Ի սոցունց աստի հատուածեալ երևին Տաօք ժողովուրդ սկիւթացւոց, որք և կոչէին Խաղդէանք, զորոց գրէ Ստրաւոն գիրք ԺԱ. Թղթ. 515. * Ասեն թէ Տաք Խաղդեանք հատուածեալ են 'ի Տաոց բնակելոց 'ի վերկոյս Մէօտիսի (ծովուն), կոչեցեալք Խալդիք և Խալտք. այլ չէ ըստ ամենայնի յայտ, թէ գտանիցին ինչ Տաք ոմանք սկիւթականք 'ի վերոյ Մէօտիսի ||: Արդարև ոչ 'ի վերկոյս Մէօտիսի, այլ ստորև քան զայն և քան զպոնտոս ծով են Տայք հայոց, զորս դիւրին եղև նախնեաց ոմանց շփոթել ընդ շրջակայ ազգս, և տանել դնել ոչ 'ի բնիկ տեղւոջ, այլ 'ի վերոյ քան զՄէօտիս. որպէս տեսանեմք և զանուանս այլոց հարաւային գաւառաց հայաստանեայց այսպէս տեղափոխեալ:

Իսկ այնպէս՝ ըստ մասին միայն ճշմարտին բանք նախնեաց, թէ Տաօք Խաղդէանք՝ ոյք բնակէին 'ի սկիւթիա յայնկոյս կասպից ծովուն, հատուածեալ են 'ի Տաոց բնակելոց յայսկոյս կասպից ծովուն. իսկ այն Տայք են 'ի մօտակայս պոնտոս ծովու (1), որ է նոյն ինքն Տայք հայոց. Տաօքք

(1) Այլ վասն այսր որպէս և հաճոյ իցէ ընդունել հնախօսաց ։

կոչեցեալ 'ի քսենոփոնդայ և 'ի ստեփաննոսէ բիւզան-դացւոյ. քանզի ըստ նորին ստեփ''. անկանի 'ի կողմանս պոնտոս ծովու. և ըստ մերոց մատենագրաց առ խաղ-տեաց գաւառաւ եգերացւոց՝ որք բնակին առ ծովե-զերբ պոնտոսի. որպէս յայտ է 'ի պարխար լեռնէ տայոց զորմէ տեսցես 'ի լերինս հայոց 'ի ներածութեան անդ. նա մանաւանդ զաղար՝ զոքաղ գաւառ տայոց՝ ցուցանէ լինել 'ի նմին իսկ 'ի խաղտիս. և պրոկոպիոս զլերինս տայոց՝ ուս-տի բղխէ գետն ակամփիս (1), կոչէ լերինք ձանեաց, որք են խաղտիք:

Վարդան աշխարհագիր հայելով 'ի վիճակ իւրոյ ժա-մանակի, զայս նահանգ դնէ 'ի վիրս՝ ասելով. * Տայոց գաւառն 'ի վիրս է ... խպեր գաւառն սահմանակից է Տայոց ‖: 'Ի միւս կողմանէ սահմանակից է Տայք գու-գարաց՝ ըստ գրելոյ խոր. նաև բասէն գաւառին այրա-րատու՝ ըստ ցուցանելոյ պատմութեան ղազարայ, որ զմկնա-ւոյնճ գեօղ տայոց սուղ ինչ հեռի դնէ 'ի գեղջէն Ոխու՝ որ էր 'ի բասէն:

Բազում են 'ի տայս տեղիք՝ ամուրք և անքոյթ 'ի պատսպարութիւն 'ի թշնամեաց, վասն որոյ խորենացին՝ Ամրօք և բերդօք կառուցեալ, ասէ վասն տայոց, յորս զբազ-մութիւն իշխանացն հայոց՝ տեսանեմք առ եղիշէի և առ ղազարայ, ապաւինեալ և ողջանդամ զերծեալ 'ի թշնա-մեաց: Որպէս Յանձուկս Տայոց ձորոց ապաւինեցան վա-նանդացիք 'ի ժամանակի ապստամբութեան իւրեանց, որ-պէս գրէ խորենացին գ. 44: 'Ի նոսա ապաւինեցաւ և ա̄. սմբատ արքայ՝ զորմէ գրէ յոհաննէս կաթողիկոս. * Յամուրս քարաժայռ ձորոյն խորոփեաց Տայոց անկա-նէր ‖:

Ունէր և մայրիս՝ յորս բազում շինութիւնս արար վա-ղարշակ արքայ կարգելով յամարանոց իւր: * Վռանայ՝

քանզի սաղմոսիոս առ լէ գլ. սո-լինոսի, յայս բան նախնեաց՝ մեօ-գիս ծովակաւն իմանայ զկասպից ծովն, ասելով, թէ * Ոմանք զնո-սա (այսինքն զՏաօս) 'ի մէօգիս և 'ի պոնտոս փոխադրեցին, վասն զի մակեդոնացիք զնոյն ինքն զկաս-պից ծովն՝ համարէին լինել պոն-տոս կամ մէօդիս ծովակ ‖: Զիարդ և իցէ, անունս Տաք էր իբր հա-սարակ անուն սկիւթացոց ըստ գրելոյ սգր''. որք և ոչ իսկ 'ի միում վայրի կալեալ ունէին բնա-կութիւն, այլ աստ և անդ խառնեալ ընդ այլ ազգս սկիւթացւոց:

(1) Յիշատակի առ ասողկայ է. 4. անունն և ծագումն գետոյս յա-սելն. * Եւ ինքեանք անցեալ ընդ գետն Ակամսիս՝ որ 'ի Տայոց բղխեալ երթայ զհիւսիսով արև-մտից անցանելով, ընդ որ մտանէ 'ի պոնտոս ‖:

(տես խոր. Բ. 6.) զՀիւսիսեաւ (1) առ ստորոտովն պարխարայ ընդ մէջ Տայոց. 'ի գլխն և 'ի մառախլուտ տեղիս մայրեացն և 'ի լուսակէտս, գեղեցիկ է՛ն կարգելով զերկիրն, հաւասարելով զլեռնայինն և զջերմահոտն 'ի բարեխառն և 'ի զուգադեղեցիկ վայելչութի իւրոյ Թագաւորութեն. ամառնային ժամանակին հովանոյս պատրաստելով՝ յորժամ զՀիւսիսով երթիցէ. գոմս զերկուս տափարակին անտառախիտս համդերձ լերամբքն կազմելով, և որսոց տեղիս ||:

Պտուղք սորա բազում, որք են Թուզ, Նուռն, աղտոր, սերկևիլ, պտղախառնկ (2), և Նուշ. և մինչև ցայժմ առատ է 'ի պտուղս երկիր սորա, որ ըստ մասին ձգի 'ի սահմանս Նահանգին ախլցխայի։

Բազում ուրեք յիշատակի 'ի գիրս եպիսկոպոսս սորա, զորօրինակ Տաճատ առ եղիշէի և առ ղազարայ, մի 'ի ժողովականաց որք գրեցին պատասխանի Նամակին պարսից. Ներսէս Գ (շինող,) որ զկնի եղև կաթողիկոս. Խաբայէլ 'ի ժողովն դվնայ, և Սարգիս 'ի ժողովն մանազկերտի, յերկոսին ևս զկնի եպիսկոպոսին բասենոյ. Սահակ մրուտ կամ մռուտ կոչեցեալ, որ գրեաց պատասխանի Թղթոյն փոտիոսի։

Իսկ զիշխան սորա 'ի պատմութիւս Ժ. դարուն գտանեմք յիշատակեալ Դաւիթ անուամբ, որ զԿուրապաղատութեն ընկալեալ էր պատիւ 'ի կայսերէն. այլ իշխանութի նորա ձգէր նաև արտաքոյ տայոց՝ բազում գաւառաց և քաղաքաց տիրապետող եղեալ, մինչև զօրութի նորա Թագաւորութի կոչել տարօնեցւոյն։ 'Ի մահուան իւրում՝ քանզի էր անժառանգ՝ *Տայ անդարձագրով զհայրենիս իւր 'ի վասիլն (կայսր) զԱփխեթիս, և զՄ՛ամբուանն, և զքաղաքն ապահովնեաց զՄ՛անձկերտ, և զամենայն ինչ իւր ||. որպէս գրէ վարդան։

Յետ մահուն դաւթի՝ վասիլ կայսր գնաց անձամբ 'ի տայս, որում ընդ առաջ ելին ազատագունդ զօրք տայոց. բայց խռովութի անկեալ 'ի մէջ երկոցունց զօրաց՝ երեսուն այր 'ի յոյժ պատուաւորացն և յազատացն տայոց մեռան 'ի յունաց. կայսրն զպատիւ կուրապաղատութե եռ Թագաւորին ափխազաց բագարատայ. յետ մահու

(1) Յերկուս ձեռ". չիք բառս աշխարհագր. խոր, և միայն 'ի տպ. [illegible]: Պտղախակ:

(2) Այսպէս կոչի յերկիս ձեռ".

նորա առաքեաց զօրս ընդդէմ գէորգայ որդւոյ նորա, զի ոչ կամէր տալ նմա զերկիրն՝ զորս ունէր հայր նորա. բայց 'ի դիմի հարեալ նոցա քաջ զօրացն տայոց մօտ 'ի մեծ աւանն ուխթեաց, հալածեցին զնոսա առ հասարակ և այս եղև * Սէնդբէն նործանման պատն Տայոց ‖. որպէս գրէ լաստիվ. գլ. ա: Բուզանդ. գ. 18. և դ. 2. սեպհական անհնարինէ լինել մամիկոնէից, յասելն. * Նշրթեալ գտանէր զնոսա յամուրս աշխարհին Տայոց յերբեալց (այսինքն մամիկոնէից) աշխարհին ‖: Եւ ղազարայ տեսանեմք զվահան մամիկոնեան սպեալ փախուցեալ 'ի տայս սակս ամրութե դրից նորա. բայց սեպհական լինել այնմ ազգին մամիկոնէից, ոչ գտանեմք առ ղազարայ, և ոչ առ այլս:

Ութի գաւառս ութ.

ա. Կող.
բ. Բերդացփոր. (1)
գ. Պարտիզացփոր. (2)
դ. Ճակատք. (3)
ե. Բուխա. (4)
զ. Ոքաղէ.
է. Ազորդ. (5)
ը. Ազորդացփոր. (6)

Դ տպագրեալ աշխարհագրութեան խորենացւոյն թիւ գաւառաց Տայոց 'ի սկզբան անդ ասին լինել ինն, և ապա 'ի թուելն յանուանէ՝ ութ և եթ նշանակին, եդեալ վերջին գաւառ զԿողափոր, և 'ի բաց թողեալ զԱզորդացփոր: Նոյնպէս ինն ասին լինել և 'ի միում ձեռ", այլ ութ դնին, յիշելով զԿողափոր և զԱզորդցփոր, և 'ի բաց թողեալ զՊարտիզացփոր: Իսկ յերկուս ձեռագիրս ութ ասին լինել, և ութ նշանակին յանուանէ. բայց զանուանս Կողափոր միացուցանեն ընդ Ազորդայ, և գրեն Ազորդափոր:

(1) Առ Թովմ. կիլ. գրի Բերդափոր:

(2) Առ նորին Թովմ. կիլ". Պարտիզափոր:

(3) Այսպէս գտի յերկուս ձեռ" աշխարհագրութե խոր". և առ Թովմ. կիլ". իսկ 'ի միում ձեռ" գտի Ճակփ. 'ի տպ". Ճակափ:

(4) Այսպէս 'ի միում ձեռ" և 'ի տպ". իսկ յայլ երկուս ձեռ" Բոխա:

(5) Այսպէս 'ի տպ. և 'ի միում ձեռ". իսկ յերկուս ձեռ" Ազորգափոր. այժմ կոչի սա Ազզուր: Տես 'ի Նոր հայաստան. Թղթ. 127:

(6) Այսպէս գրի յերկուս ձեռ" իսկ 'ի միում ձեռ" Ազեցփոր:

## ԿՈՂ Ի ՈՔԱՂԷ :

Առաջինն այսպէս գրի յերկս ձեռագիրս աշխարհագրոյն Խորենացւոյն, յորմէ յայտ է վրիպակ տպագրելոյն՝ ուր դնի Կողբ. քանզի և ՚ի պատմութեան անդ Խորենացւոյն Բ. 6. և 8. դնի սեռական սորա ոչ Կողբայ, այլ Կողայ: Գաւառ ջերմ՝ որպէս յայտ առնէ Խորենացին. Բ. 6. ասելով վասն վաղարշակայ արքայի. * Եւ զջերմութիւն Կողայ (կազմելով) ՚ի մարմանդս այգեաց և բուրաստանեաց ||:

Յաւուրս Ա. Արշակայ արքայի նոր բնակիչք լցան շրջակայ սահման սորա. զորմէ պատմէ Խորենացին. Բ. 8: * ՚Ի սորա աւուրս (ասէ) աղմուկ մեծ լեալ ՚ի գօտի մեծի լերինն Կաւկասու յաշխարհին Բուլղարաց, և բազումք ՚ի նոցանէ հատուածեալք եկին յաշխարհս մեր, և բնակեցան ներքոյ Կողայ յարգաւանդ և ՚ի հացաւէտ տեղիս, մինչև ՚ի ժամանակս բազում ||[1]:

Յայսմ գաւառի վանեցին զտաճիկս ԺԲ. հազար հայք՝ առաջնորդութբ Շապհոյ Ամատունւոյ, որպէս գրէ Ղևոնդ:

Երկրորդ գաւառն Ոքաղ գրի առ Ղազարայ՝ որ յիշէ զերկոսին գիւղօրէս նորա, յասելն. Թղթ. 253. * Եւ երթեալ յՈքաղն՝ բանակէր մօտ ՚ի գեօղն, որում անուն էր միում Պետաշէն, և միւսումն Սարդաշէն: և Թղթ. 254. ցուցանէ զնոյն սահմանակից Բասենոյ. * Եւ ինքն չուեալ յՈքաղայ՝ իջանէր ՚ի գաւառն Բասեան ||:

(1) Յայսմանէ ասիցէ ոք արդեօք, թէ Ստեփաննոս Բիւզանդացի զանուանս Գօղ (որ ըստ մեզ դառնայ Կող,) տարեալ եդ առ տորոսով Կովկասու՝ յասելն. * Գօղք (էն) ազգ առ Կաւկասու ըստ վկայելոյ Էգագէոսի ՚ի յասիս. տորոսք Կաւկասու կոչին լերինք Գօղիդեանք. գաւառն (կոչի) Գօղիփի ||: Իսկ զի սոյն այս Բուլղարք եկեալք ՚ի Կող, յանուանէ նոր գաւառին հարկաւ կոչեցան՝ գէթ առ ոմանս նոր անուամբ Կողք. կամ յունական հնչմամբ Գօղք: Եւ զի եկեալ էին ՚ի Սարմատիոյ ՚ի լերանց Կաւկասու՝ Կողք կոչեցին նախնիք նաև զառաջին գաւառ նոցա, որ էր Բուլղար: Այլ զայս թողցուք ՚ի քննութիւն հնասիրաց:

Զսոյն կարծիցէ ոք նաև վասն Գօղփի, կամ Գօղփէ ազգին և գաւառին յիշատակելոյ ՚ի Ագիլլաքսայ, ՚ի Մելայէ, և ՚ի Պլինիոսէ Զ. 5. զոր և կացուցանէ գաւառ Է Պոնտոսի ՚ի դարձուածս գօտւոյն Կաւկասու:

Տեղիք Տայոց՝ որոց գաւառք անծանօթ ։

Արահեզ ։ Գիւղ՝ որ յիշատակի առ Ղազարայ Թղթ. 191. յասելն վասն գիւտոյ կաթողիկոսի. * Ի գաւառէն Տայոց, 'ի գեղջէն Արահեզայ ||։

Օշնակս ։ Գիւղ՝ յիշատակեալ առ նմին Ղազարայ Թղթ. 162. յասելն. * Եղբանելըն աբրահամ երէց՝ որ էր 'ի գաւառէն Տայոց, 'ի գեղջէն՝ որում անուն էր Օշնակս ||։

Ոսխանի ։ Բերդ՝ յիշատակեալ 'ի բուզանդայ Դ. 18. յասելն վասն վասակայ մամիկոնէի. * Նոքա երթեալ գտանէին զնա յիւրում գաւառի 'ի Տայս, յիւր ամուր բերդին, որում անուն Ոսխանի կոչի ||։

Թուխարս ։ Յիշատակի Ղեւոնդ. գլ. Է. 'ի գրելն վասն սմբատայ հրամանատարի որ 'ի Է. դարուն. * Նա երթայր յաշխարհն Տայոց, մտանէր յամրոցն՝ յորում Թուխարսն կոչէն, և զգուշանայր որդւոյն իսմայելի ||։ Եւ Ասողիկ Բ. 4. * Եւ 'ի նմանէ (այսինքն 'ի կայսերէն) զպատիւ կիւրապաղատութեան ընկալեալ (սմբատայ՝) գնաց 'ի Տայս, յամուրն յորում Թուխարսն կոչէն || (1)։

Իշխանաց գեղ (2)։ Յիշատակի 'ի գաւազանագիրս ինչ կաթողիկոսաց, ուր զԴ. ներսէսէ դնի լինել * 'ի Տայոց, 'ի գեղջէ Իշխանաց ||։ Այս գիւղ կայ մինչև ցայժմ՝ զորմէ տես 'ի նոր հայաստան Թղթ. 130։ Այլ թէ արդեօք զսահմանս այսր գեղջ կամի իմանալ վարդան աշխարհագիր, յետագայից թողցուք 'ի քննել, որ ասէ. * Սամցխէ Ախըլցխա է, Իշխանաց երկիրն է, (անդ է) (3) ծնեալ խաչն՝ որ հայրապետին ներսէսի, և գաւազան նորա || (4)։

(1) Առ վարդանայ 'ի միում ձեռագրի գրի վասն նորին սմբատայ. *Գնացեալ 'ի Տայս, սմբատայ 'ի Թուխարս ||։ Իսկ 'ի չորս ձեռագիրս. *Եւ գնացեալ 'ի Տայն սմբատայ 'ի Թուղարս ||։

(2) Յանծանօթ ինչ պատմութեան խաչին ներսէսի հայրապետի յիշատակի Երկիր Իշխանաց. *Յերկրին Իշխանաց խաչ մի կայր ներսէսի հայրապետի, օրհնեալ իւր ձեռօքն ||։ Յիշատակի 'ի նմին պատմութեան և որ ուխտն, յորում հանգուցեալ էր խաչն։

(3) 'Ի տպագրեալն միայն դնի անդ է. իսկ յայլ ամենայն ձեռագիրս պակասի։

(4) Ընդարձակողն վարդանայ յաւելու. *Որ այժմ Մաձարայ կոչէ։ Այլ զայժմուս այլով հնչմամբ կոչի Աձարա, զորմէ տես 'ի նոր հայաստան Թղթ. 131։ Վասն որոյ 'ի տպագրեալ օրինակին վարդանայ վրիպակաւ գրի Տաճար։

Ակնաւունձ: Գետօղ՝ որ 'ի բանից ղազարայ յայտ է լինել 'ի Տայս, զի նախ գրէ վասն մամիկոնեան վահանայ. * Երթայր առ վայր մի յամրագոյն տեղիսն Տայոց ||: Իսկ սաորև որոշելով նաև զգիւղն՝ ասէ. * Եւ զօրավարն հայոց մամիկոնեանն վահան մերձ 'ի նա իբրև երկուք հրասախօք 'ի գետօղ մի որ կոչի Ակնաւունձ ||: Հեռի է սա 'ի Գոռ կոչեցեալ գեղջէն բասենոյ երկուք հրասախօք՝ ըստ նորին ղազարայ:

Որջնհող: Յիշատակի առ նմին ղազարայ՝ յասելն. * Օթևնուք անկանէին 'ի վերայ այնց.... 'ի գիւղն որ անուանի Որջնհող 'ի գաւառին Տայոց ||: Ընկանի առ ստորոտով լերին պարխարայ, որպէս ցուցանէ անդէն. ուրանօր ընկալաւ զպսակն մարտիրոսական 'որն Հմայեակ եղբայր մեծին վարդանայ:

Ուխթեաց ձորակ: Ունի բերդ՝ զորմէ ասողիկ Գ. 44: * Իսկ զուրգէն Թագաւոր վրաց... զայ ամենայն զօրօք իւրովք, և տիրէ Տայոց աշխարհին, և մարտուցեալ ընդ փոքր բերդին Ուխթեաց, չկարաց առնանել ||: Եւ 'ի 43. կոչէ զայն՝ Խաղաք, ուր գնաց կայսրն վասիլ. * Թագաւորն վասիլ չու արարեալ գնաց 'ի քաղաքն Ուխթեաց, և զամենայն բերդս և զամրոցս Տայոց նուաճեաց ||: Որպէս և լաստիվերտցին գլ. ա. 'ի պատմելն զնոյն չու կայսեր վասլի, ուրանօր և այլ տառիւ գրի. * Գնաց 'ի վերայ բագրևանդայ, և գնայ 'ի քաղաքն Ուխտեաց, և տիրէ բազում գաւառաց ||: Իսկ սաորև նոյն լաստիվերտցին կոչէ Մեծ աւան, 'ի պատմելն զզօրաց գէորգայ Թագաւորին աբխազաց. * Ընդդէմ եկեալ քաջացն Տայոց մօտ 'ի մեծ աւանն Ուխթաց՝ 'ի փախուստ դարձուցին զզօրս հոռոմոց (1) ||: Եւ վարդան գրէ վասն դաւթի կիւրապաղատի. * Տայ անդարձագրով զհայրենիսն իւր 'ի վասիլն, զՈւխթիսն (յայլ օրին". զՍխտիս) || և այլն: Գրէ և վասն դաւթի արքայի վրաց. * Ընդարձակեալ դաւիթ զսահմանս վրաց՝ առեալ զՈւխթիսն և զսահմանս իւր ||:

Հաւաձիկ: Խաղաք բերդաւոր, զորմէ լաստիվերտցին գլ. ա. * Թագաւորն վասիլ անցեալ յաշխարհն, մերձ յա-

(1) 'Ի մէջ այլևայլ գրուածոց անուան սորա, ընտրելի է գրութիւն Ուխթեաց, որպէս 'ի գործ ածի առ ասողկայ. քանզի և յօրինակի լաստիվերտցւոյն ուրեք 'ի գլ. Է. գրի այսպէս. * Գէորգի դիպօղ ժամ գտեալ, հասանէ 'ի վերայ քաղաքին Ուխթեաց, և հրամայեաց զօրացն հրով կիզուլ ընգեղեցիկ դաստակերտս նորա ||:

մուրն՝ որ Ջաւաձինչ կոչի՝ երեկօթս ունէ ‖ ։ առ աստղ-կայ Գ. 43. գրի վրիպակաւ Ջաւէճ, յայլում օրինակի Ջաւաձէչ. և զլեառն կոչէ յայն անուն. յայտ առնելով թէ էր բերդ ՚ի վերայ համանուն լերին, յասելն վասն նորին վաղի. * Այքն չուեալ հասանէ ՚ի լեառնն Ջաւա-ձէչ ՚ի քաղաքն յայն. անդ ընդ առաջ եղեն նմա բա-գարատ թագաւորն ափխազաց ‖. և այլն ։ Իսկ Արշէր ուղ-խարհ 'զոր յիշէ լաստիվերտցին՝ կասկածիմք վրիպակաւ գրեալ փոխանակ անուանս Արդոյ, որ է գաւառ տայոց. զի և պատմութիւն նոյն գործոց վաղի, ցուցանէ լինել ՚ի տայս, կամ ՚ի սահմանակից տեղիս ։

Արտնէ ։ Յիշատակի առ վարդանայ. * Գրեաց պա-տասխանի ( թղթոյն փոստայ ) սահակ մռուտն կոչեցեալ, որ եպիսկոպոս էր Տայոց ՚ի յԱշունքն ‖։

Ամրուանի ջուր ։ Յիշատակէ աստղիկ Գ. 44. յասելն վասն գուրգենայ վրաց արքայի. * Գայ ամենայն զօ-րօքն իւրովք և տիրէ տայոց աշխարհին, և մարտուցեալ ընդ փոքր բերդին ուխթեաց՝ չկարաց առնանել, և ոչ այլ բերդի ուրեք. այլ ժողովեալ զբազմութիւն զօրացն բնա-կէ ՚ի Ջորն Ամրուանի ‖ ։ Իսկ վարդան ՚ի գրեն վասն դաւթի կուրապաղատի՝ անորոշ ևին յիշատակէ. * Տայ ( ասէ ) անդարձագրով զհայրենիսն ՚ի վախճն՝ զուխթիս, զԱմրուան, (1) և զքաղաքն ապահովնեաց զմանած-կերտ ‖։ Ի բանից աստղկայ երևի լինել ՚ի տայս մերձ յուխ-թեաց բերդ. մանաւանդ զի և այժմեան Նաւխման տե-ղին՝ նոյն համարեալ ՚ի բնակչաց Ը մամրուանայ, յար-մարի գրեց տայոց ։ Տես ՚ի Նոր հայաստան թղթ. 125. 126 ։

(1) Օրինակ մի վարդանայ վրիպակաւ գրէ Նամրուան ։

## ՆԱՀԱՆԳ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ԱՅՐԱՐԱՏ

Հասաք 'ի ստորագրել զվերջին նահանգ մեծին Հայոց, Չոյախաղ Չուխախաւր և Աշխատառ անուանեալ 'ի Ղազարայ. ուրանօր զմերոյ քերթողահօրն 'ի դէպ առեալ բան ա. 20. ճառագրեսցուք. * Իսկ այժմ ահա զուարճացայց ոչ փոքր ինչ կրելով խնդութիւն, հասանելով 'ի տեղիս մերումս իսկ բնիկ նախնոյն, յորում սերունդք (տեղիք) թագաւորութեանն հաստանեն յաստիճան ||:

Զնուն սորա յերկս օրինակս աշխարհագրութեան Խորենացւոյն գրի Այրարատ, և միայն 'ի տպագրեալն Արարատ, որ չէ սովորական 'ի մեր գիրս որպէս զառաջինն, զի և 'ի պատմութեան Խորենացւոյն գ. 22. այսպէս գրի յերկս տեղիս ևս, ըստ այնմ յասելն. * Ընտրելի է քեզ, կամ ընդունել զմահ, կամ գնալ յԱյրարատայ ||(1): Թէպէտ և 'ի ստուգաբանութիւն անուանս հայեցեալ՝ զմիւսն անկ էր յաճախել 'ի գործածութեան. քանզի այս անուն ածանցի յանուանէ նահապետին մերոյ՝ որ կոչէր Արայ, (և ոչ Այրայ). ըստ Խորենացւոյն ա. 14. * Գայ հասանէ տագնապաւ 'ի դաշտն Արայի, որ և յանուն նորա անուանեալ Այրարատ ||: Զնոյն կրկնէ և 'ի ա. 15. * Դադարեալ Շամիրամայ աւուրս ինչ սակաւս 'ի դաշտին որ անուանեալ կոչի յանուն Արայի՝ Այրարատ ||(2):

Նախ դաշտն, 'ի դաշտէն ապա և համօրէն նահանգն ընկալաւ զայս անուն. յոր սակս գուցէ ստէպ 'ի գործ ածի յարակցեալ ունելով զբառս դաշտ, որպէս թէ

(1) 'Ի տպ. գրի Արարատայ, և 'ի միում ձեռ. Արարատէ:

(2) Սկրոտէրիոս կամ Շրոտէր (որպէս բերէ հնչունն գերմանացւոց) 'ի գանձարանի արամեան լեզուի. զանուանս Արարատ ոչ անդէպ ստուգաբանէ Արայի արտ, որպէս թէ անդ արտաւորեցաւ գեղ Արայի գեղեցկին՝ իւր մեռանելովն. զի և Խոր. անդէն 'ի դաշտին դիպեալ ակնարկէ զմահ Արայի:

գաւառ կամ նահանգ դաշտին Այրարատու. որպէս առ Ղազարայ Թղթ. 18. * Ողոջյր զբարի և զնիկ ժառանգութի նախնեաց իւրոց զգաւառն Այրարատու ‖: Եւ առ ստեփաննոսի օրպելեան. գլ. ժզ. * Եկեալ հասեալ յաշխարհն իւրեանց 'ի գաւառն Արարատու ‖: Յոհաննէս կաթողիկոս նմին իսկ արայի տայ զանուանակոչութիւն, որպէս թէ նորին իսկ արայի այսպէս անուանեալ: * Իսկ արայի զշինութիւն աշխարհի տնօրինեալ, յիւր անուն զմնակութէ իւրոյ վայրս կոչէր՝ Արարատ ‖. զոր մէ որոշէ խորենացին:

Որչափ անուանի գտաւ այս նահանգ յազգի մերում, նոյնչափ անյիշատակ առ մատենագիրս յունաց և հռոմայեցւոց, գոլով տարակայեալ յաշխարհէն նոցա. և միայն 'ի հրէից համօրէն հայաստան կոչեցաւ յայս անուն, զոր մէ տեղեկացեալ 'ի ներածութէ աշխարհիս հայոց:

Ըստ գրեցն՝ 'Ի ՔԷ կոյ յառաջասացեալ աշխարհագոյց, որպէս՝ զնէ խորենացին. վասն որոյ Մեծոց աշխարհի կոչի այրարատ առ եղիշէի, և 'ի պատմութեան խորենացւոյն Գ. 9. ուր քանզի բնակիչք կաւկասու զհիւսիսային զօրս հայոց հարեալ, արշաւեցին մինչ 'ի դրունս վաղարշապատու՝ որ է յայրարատ, զնոցին արշաւանս դնէ լինել 'Ի Մեծոց աշխարհին մերոյ. և առ բուզանդայ Գ. 24. կոչի Միջնաշխարհ: * Նա ինքն գայր հասանէր 'ի Միջնաշխարհն հայոց 'ի գաւառն Այրարատու ‖: Այժմ ըստ մասին անկանի ընդ իշխանութ՟ օսմանեանց. 'ի սահմանս փաշայից երզրումայ և պայէզիտոյ, և ըստ մասին ընդ իշխանութ՟ պարսից, 'ի սահմանս խանից երևանայ և նախջաւանու:

Ունի դաշտս, և լերինս զՄասիս, զԱրագած, զորոց տեսցես 'ի ներածութէ հայաստանեայց. և այլ բազում լերինս, զորոց գրէ ղազար. Թղթ. 19. * Օ դաշտս մեծատարածս և որսալիցս, զլերինս շուրջանակի գեղեցկանիստս և պարարտարօտս, զհոծեալս երէովքն կճղակաբաժնիւք և որոճայնովքն, և այլովք ևս բազմօք ընդ նոսին, յորոց 'ի վերուստ 'ի կատարածն՝ ջրոց հոսմունք անկարօտ ոռոգման արբուցանելով զդաշտս, մատակարարէ անբաւ բազմութ՟ յոստանն կանամբք արամբք և ընտանեօք զանպակասութի հացի և գինւոյ, զանուշահոտ զմեղրահամ քաղցրութի բանջարացն, և զզանազանութիւն իւղաբուղխ սերմանցն ‖:

Գլխաւոր գետ նորա է Երասխ՝ որ անցանէ ընդ այն,

և այլ վտակք բազումք որք իջանեն յԵրասխ, զորոց գրէ Ղազար Թղթ. 20. * Նոյն և գետոյն գնացք բազմակերպ ձկամբք մեծամեծօք և փոքումբք զանազանեալ համովք և այլ և այլ տեսովք ուրախացեալ լցուցանէ զհնոյշս ընչից ||:

Արգաւանդութի՛ւ նահանգիս գովեալ է առ Նախնիս, մանաւանդ առ Ղազարայ, որ գրէ Թղթ. 22. * Բերէ յինքեան զօրինակ լիութեան ըստ բանի գրոյն զերկրին Եգիպտացւոց, և զդրախտին այ ||: Նա Թղթ. 17. ասէ վասն Գ. արշակայ արքայի. Տեսանէր * զմեծ մասն զլաւն և զպիտանին և զարգաւանդն աշխարհիս հայոց՝ ունել 'ի բաժին արքային պարսից. քանզի Թէպէտ և հասեալ բազում գաւառք, այլ՝ 'ի ժառանգութիւն մասին Թագաւորին յունաց, սակայն համեմատ էին այն միայն Այրարատեան գաւառին ||: Վասն որոյ կոչէ զսա Փոքր Փառատ, Ա.Հնաբոյս, Ա.Հնաբուսիկ, Ա.Հնալի, Ա.Հնադիր 'ի շահս և 'ի տարփանս մարդկային պիտոյից լինելոյ և վայելչութեան և ոճաձևութեան: Նաև Խորենացին համառօտիւ ըստ իւրում ոճոյ. * Անի այրարատ . . . զամենայն պարարտութիւն ||:

'Ի բերս սորա երևելի քան զամենայն, է Որդն 'ի պէտս կարմիր գունոյ, զորմէ գրէ Խորենացին ըստ ձեռագրին. *Որդն յարմատոյ սիզոյ առ 'ի զարդ կարմրութեան գունոյ ||: Այս որդն ծնանէր յարմատոյ բուսոյ 'ի մէջ եղեգանց՝ որք էին 'ի դաշտին այրարատոյ, զոր յայտ առնէ Ղազար. Թղթ. 20. *Նաև զարմատս եղէգնասեր բուսոցն ոչ ընդունայն մնուցանէ յինքեան ամենաբաղձ դաշտն այրարատոյ. այլ և 'ի սմանէ ծնեալ որդունս 'ի զարդ կարմրատեսիլ գունոց ընծայէ օգտասիրացն շահս և շքեղութիւ ||:

Բաց 'ի յազգի ազգի ծաղկանց և յարմատոց 'ի պէտս դեղոց՝ ունի նաև հանքս Ոսկւոյ, Պղնձոյ, Երկաթոյ, և Դարինս պատուականս, զորոց տես 'ի Ղազար. և ևս և ինչ ինչ 'ի ներածութեն հին հայաստանեայց:

Ունի և բազմութի պէսպէս կենդանեաց՝ որք յիշատակին նաև առ Խորենացւոյն, յասելն ըստ ձեռագրաց՝ * Ունի այրարատ . . . երէս և հաւս ||: Նաև առ Ղազարայ յանուանէ նշանակին Ջիռ, Այծեամն, Եղջերու, Վարազ, Կաքաւ; Սալամբ, պարարտամարմին ազգ Աքարացն վայրենեաց, Փոր, Սագ, և այլն: Այլ վասն կենդանեացս և որսոյ նոցա, և զուարճութեն այրարա-

տոյ՝ տեսցես առ նորին ղազարայ. 'ի 18 թղթոյն մինչ 'ի 22 ։

'Ի սկզբանէ անտի բնակարան գտաւ Այրարատ մերոց նախնի նահապետաց արամենակայ, արմայիսի, շարայի, և ամասիայ, և զարգարեցաւ շինութեամբք նոցա. ապա 'ի ժամանակս թագաւորութեան եղև թագաւորանիստ գահ. և մեծապէս շքեղացաւ յաւուրս արշակունեաց, մինչև զի հինգ արքայաշէն քաղաքք կառուցան յայս նահանգ, հինգ այլևս քաղաքք եղեն արքայանիստք. նահանգն իսկ ողջոյն սահմանեցաւ սեպհական բնակարան արքայի ։ * Քանզի սովորութիւն էր (ասէ խոր. գ. 22.) արքայի միայն բնակել յԱյրարատ, և միոյ որդւոյ նորա՝ զոր փոխանորդ թագաւորի պահէին. և այլոց արշակունեաց բնակել 'ի գաւառս հաշտենից և աղիովտի և առբերանոյ, հանդերձ ռոճկօք և մուտիւք յարքունուստ ։ ‖ Մինչև նշան ապստամբութեան էր յայնժամ համարեալ ումեք յիշխանաց՝ բնակել յայրարատ, որպէս յայտ է 'ի նոյն գլ ։ Յայսմանէ՝ Այրարատ Թագաւորաց կոչի ամենայն այրարատ. և առ ղազարայ՝ Գլուխ աշխարհիս հայոց ։ Եղիշէ ասէ 'ի թղթ. 22. արշակ թագաւոր * Օ այսպիսի զօղձակերտ գաւառ, զմնաշխարհիկ և զամենայլի ա̃ տուչութեան ամենախնամ արարչին այ̃ զԱյրարատեան գաւառ, որ է Գլուխ աշխարհիս հայոց, զպատուան համբաւատենչ, զգաւառն ամենալի ։ ‖ և այլն ։

Այրարատ էր և ձմերոց արքայի, վասն որոյ և Ձմերոց կոչի այրարատ առ խորենացւոյն բ. 62. և առ ագաթանգեղոսի թղթ. խթ ։

Յիշատակի 'ի գիրս Քորեպիսկոպոս սորա, որպիսի էր կիւրիոն, զոր մովսէսի կաթողիկոսի կացուցեալ էր ըստ վարդանայ, * Սանաց երէց 'ոչ կաթուղիկէին, այլ և Քորեպիսկոպոս այրարատեան գաւառին ‖ ։ Իսկ գործ քորեպիսկոպոսի հայեր 'ի տեսչութիւն գիւղօրէից և հեռաւոր վայրաց, յորժամ առաքեալ լինէր յիւր եպիսկոպոսէն ։ Իշխանութիւն սոցա որպէս թուի՝ ձգէր 'ի վերայ այնց տեղեաց կամ գաւառաց այրարատոյ, որոց չէր առանձին եպիսկոպոս, այլ էր ընդ մամնաւոր հովանաւութեամբ կաթողիկոսին ։ Առ եղիշէի թղթ. 26. յիշատակի * Յովսէփ եպիսկոպոս Այրարատոյ ‖. բայց էր նա նոյն ինքն կաթողիկոսն ։

Գաւառք այրարատոյ ըստ Թուելոյ խորենացւոյն յաշխարհագրութե՛ են քսան, որոց անուանքն են.

| | |
|---|---|
| Ա. Բասէն կամ Բասեան ։ | ԺԱ. Մասեացոտն ։ |
| Բ. Գաբեղեանք ։ | ԺԲ. Ճակատք ։ |
| Գ. Աբեղեանք ։ | ԺԳ. Կոգովիտ. կամ Կոգ ։ |
| Դ. Հաւնունիք (1) ։ | ԺԴ. Աշոցք ։ |
| Ե. Արշարունիք, կամ Երասխաձոր ։ | ԺԵ. Նիգ ։ |
| Զ. Բագրեւանդ ։ | ԺԶ. Կոտայք ։ |
| Է. Ծաղկոտն ։ | ԺԷ. Մազազ ։ |
| Ը. Շիրակ ։ | ԺԸ. Վարաժնունիք ։ |
| Թ. Վանանդ ։ | ԺԹ. Ոստան ։ |
| Ժ. Արագածոտն ։ | Ի. Գըլանայ քաղաքն մերձեցեալքն Շարուր ։ |

ԲԱՍԵԱՆ կամ ԲԱՍԵՆ ։

Յերկուս ձեռագիրս աշխարհագրութե՛ խորենացւոյն, որպէս և յերիս օրինակս պատմութե՛ նորա Բ. 6. (2) գրի Բասէն. իսկ 'ի միում օրինակի աշխարհագրութեան նորա, և 'ի տպագրեալ պատմութեանն Բ. 6. գրի Բասեան. ըստ այսմ գրի առ ղազարայ, և առ ասողկայ, և առ յոհաննու կաթողիկոսի, յասելն. * Իսկ փոկաս եկեալ զօրօք 'ի Բասեան՝ առ 'ի զհայաստանեայս ընդ իւրեաւ նուաճել || ։ Այնպէս և առ լաստիվերտցւոյն գլ. Բ. * Անցանէ ընդ Բասեանն, և հասանէ 'ի վանանդ կամ 'ի փոքրակ || ։ Առ բուզանդայ գրի Բասան. բայց զառաջին գրութիւնն արդարացուցանէ այժմեան հնչումն, որով հնչէն սովորաբար բնակիչք ։ Յայտ է սատի և վրիպակ տպագրեալ աշխարհագրութեան խորենացւոյն, ուր 'ի բազմաւորականն գրի Բասէնք, քանզի բաց 'ի վերյիշեալ օրինակաց՝ նաև սեռական սորա 'ի միաւորականն, և ոչ 'ի բազմաւորականն 'ի գործ ածի առ նախնիս, ըստ այնմ յասելն լաստիվերտցւոյն գլ. Գ. * Անցեալ ընդ բազում օթևանօք գայ բանակի 'ի գաւառն Բասենոյ || ։

Առ մատենագիրս յունաց գրի ըստ երկրորդ հնչման, յորս ուղղագոյն քան զամենեսին դիոդորոս սիկիլիացին (3)

(1) 'Ի միում ձեռ՛՛ աշխարհագր. խոր. որ է հնագոյնն, և 'ի տպ. գրի Վահաւունիք ։ 'Ի պատմ. խոր. Բ. Է. տոհմն բնակեալ 'ի գաւառին գրի ըստ տպ՛՛. Հաւունիք ։ իսկ ըստ ձեռ՛՛ Հաւէնունիք ։

(2) 'Ի պատմ. խոր. Բ. 6. յերկուս ձեռ՛՛ գրի տառիւս է. Բասէն ։

(3) Գիրք ԺԳ. Թղթ. 664.

կոչէ Փասեանս․ և պերփերուժէն (1) կոչէ Փասիանոս գաւառ : Ըստ պրոկոպիոսի (շին․ դ․ 5․) կոչի Վիզանի, կամ լատին հնչմամբ Պիզանէ : Ի նորահրամանին յուստինիանոսի լա․ գլ․ 1․ և առ եւստաթէոսի 'ի լուծմունս դիոնեսիոսի պերիեգէսի՝ Վիզանէս : Այն այս Բասեն գաւառ է՝ որ առ աշխարհագրին (2) գրի Փասիանի՝ ասելով․ * 'Ի սոցա սակի է Փասիանի գաւառ հայաստանեայց ‖ : Տառս ․ վրիպակաւ փոխեալ 'ի Ն․ իսկ միւս տառից տարբերութիւնք՝ են այլայլութիւնք յունական հնչման (3) :

Այս գաւառ յառաջ ժամանակաւ ձգէր առաւել ընդարձակ, և մասն ինչ սորա կոչէր Ընփայք․ և Վերին Բասեն․ իսկ յետ գալստեան հատուածի Վղնդուր բուլղարայ վղնդայ յաշխարհս մեր, և բնակելոյ յայն կողմանս յաւուրս ա̅․ արշակայ արքայի, այն մասն՝ որ անուանէր Ընփայտ և Վերին Բասեն՝ կոչեցաւ Վանանդ, և կացոյց ուրոյն գաւառ, զորմէ ստորև․ վասն որոյ մատենագիրք մեր զկնի խորենացւոյն՝ ոչ յիշատակեն բնաւ զՎերին Բասեն, այլ ընդհանրապէս Բասեն կոչեն զայս գաւառ :

Բնակիչքն մինչև ցայժմ 'ի կիր առնուն զբաժանումն Վերին և Ստորին Բասենոյ, բայց սահմանն այժմեան Վերին Բասենոյ՝ ոչ 'ի դէպ գայ հին Վերին Բասենոյ՝ որ կոչեցաւ Վանանդ, զի զտեղիս որք անկանին յայժմեան Վերին Բասեն, զորօրինակ Ընիկ, Ակոռի, նախնիք դնեն 'ի Բասեն, և ոչ 'ի Վանանդ, ուր անկանէր հին Վերին Բասենն :

Գիրք սորա ընդարձակ դաշտ հովտաձև, զոր յիշէ Խոր․ Բ․ 7․ Հովիտ Բծ Բասենոյ կոչելով․ և 'ի Բ․ 51․ Զառաջ ընդարձակ հովտին Բասենոյ, անուանելով․ ուր Սմբատ ասպարապետ Բ․ արտաշէսի՝ հալածական արար զզօրս դոմետիանոսի․ և լաստիվերտցին 'ի զանազան տեղիս յիշէ զընդարձակ դաշտն Բասենոյ : Իսկ պրոկոպիոս (շին․ դ․ 5․) առաւել ևս ստորագրելով կոչէ Գիւր դաշտավայր լայնարձակ, և 'ի նմին ձահիճք խաղաղ և մեռեալ ջուրց, վնասակար առողջութեան բնակչաց, և դիւրամուտ յարձակման թշնամեաց․ վասն այնորիկ յուստինիանոս կայսր ոչ արար շինութիւն ինչ 'ի նմա, այլ՝ յայլում վայրի կոչեցեալ Կիթառիզոն՝ որ հեռի էր 'ի Վիզանոյ (այսինքն 'ի Բա-

ըստ տպագրութեան վեսսելինկայ :
(1) Գիրք կառավարութ․ գլ․ 45 :
(2) Գիրք ժա․ թղթ․ 528 :
(3) Քաղուածոյն զՓասեանի կարծէ լինել Սոփքնի կամ Ծոփաց գաւառ հայոց․ բայց զՍոփենի գաւառ սուղ ինչ յառաջ նշանագրեցաք վերն :

սենոյ) երիւք մղոնաւ, կառոյց քաղաք յիւր անուն, Յուստինիանուպօլիս ձայնեալ, որոյ դիրք զառ 'ի Թափ, և օդն առողջարար:

Յայս բան ցուցանէ պրոկոպիոս թէ Վիզանի կամ Բասեան' էր գաւառ, և միանգամայն քաղաք, որպէս նշանագրէ մառդինիէ 'ի բառն Պազանէս. և նոյն ինքն յուստինիանոս կայսր 'ի նորահրամանին իւրում լա. գլ. 1. յայտ առնէ' թէ Վիզանիս (այն է' Բասեն,) էր և քաղաք' որ կոչէր յառաջ նաև Լեոնդոպօլիս կամ Ղեոնդոպօլիս. ապա յանուն յուստինիանոսի կոչեցաւ Յուստինիանէա կամ Յուստինիանուպօլիս. զնոյն կրկնէ և եւստաթէոս ('ի լուծ. 694. տող. դիոնիս. պերիէգ. (1)) զերկոցունց բանս յառաջ բերցուք 'ի ստորագրութեան ա. Հայոց:

Առ մեզ չէք յիշատակ Բասէն անուն քաղաքի, այլ միայն գաւառի. իսկ մերձաւոր առ անունս Օսոքինա' յիշատակեալ 'ի պրոկոպիոսէ, գտանեմք առ նախնիս մեր զանունս Առկոծ կամ Օկոծ' (զորմէ ստորև.) առ որ մօտ է այժմեան Հասանղալա, դիրք զառ 'ի Թափ, և օդով առողջ, որպէս նշանակէ պրոկոպիոս վասն Յուստինիանուպօլսոյ:

Զառաջին եպիսկոպոս Բասենոյ յերկրորդ կարգի յիշատակէ ագաթանգեղոս թղթ. ջհէ. զոր կարգեաց սրբն գրիգոր յորդւոց քրմաց: * Երկրորդն (ասէ) Եւտաղիոս, որ 'ի կողմանս վայրաց Բասենոյ կացեալ լինէր հովիւ ||: Այսմ վկայէ և սամուէլ կամրջաձորեցի առ ստեփաննոսի օրպելեան. 'ի գլ. է. ուր ասի. * Եւ հրամայէ (սրբն գրիգոր) բազմել ընդ ինքեան աթոռով և ոսկիակար բարձու լդ. եպիսկոպոսաց. ժը. յաջմէ, և ժը. յահեկէ. առաջինն Բասենոյն. իսկ զսինին յաջկողմանն յեւթներորդ գահուն նստուցանէ ||: Իւր առաջին ասելն' ոչ

(1) Բան յուստինիանու կայսեր ցուցանէ' թէ Յուստինիանուպօլիս, Ղեոնդուպօլիս և Վաղանիս' են մի և նոյն քաղաք. իսկ եւստաթ. որ առնու 'ի բանից յուստինիանոսի' զՂեոնդուպօլիս և զՎաղանիս ցուցանէ լինել նոյն քաղաք. յայսմանէ թերևս ոգուդքիոս համարեցաւ զՂեոնդուպօլիս եւստաթէոսի լինել նոյն ընդ Յուստինիանուպօլսոյ պրոկոպիոսի. և թէպէտ պրոկոպիոս զՅուստինիանուպօլիս կացուցանէ ստար քաղաք 'ի Վիզանոյ (որ է նոյն ընդ Վաղանոյ կամ Բասենոյ), երկիւք մղոնաւ տարակայեալ 'ի նմանէ, բայց թերևս այլայլումն ինչ մուծեալ է 'ի բան պրոկոպիոսի, ուստի վայրապար գրէ մառդինիէ 'ի մերժելն զոգուդքիոս թէ ոչ կարէ Ղեոնդուպօլիս քաղաքն լինել Յուստինիանուպօլիս:

աջակողման կարգին, այլ ահեկակողմանն, ըստ որում և ագաթանգեղոս զԱւստաղիոս դնէ երկրորդ զկնի առաջնոյն. Թէպէտև այս կարգ եպիսկոպոսաց փոփոխեցաւ զկնի ժամանակաց :

Յիշատակի յաւուրս տ̃ըն վրթանայ Տուրք եպիսկոպոս 'ի Թուղթն մակարայ երուսաղեմի հայրապետի առ տ̃ըն վրթանէս, 'ի կանոնգիրս : Այլ սա կոչի անդէն Եպիսկոպոս բագրեւանդայ և բասենոյ. տես զնմանէ 'ի բագրեւանդ գաւառ : Որպէս և առ բուզ. Դ. Գ. յիշատակի, * Արտիթ եպիսկոպոս բասենոյ (1) . . . սա աշակերտեալ մեծին դանիէլի, որ էրն յամն տիրանայ արքայի, և կենդանի կայր յամն խոսրովու արքայի և արշակայ ‖: Եւ ապա 'ի գլ. 12. յիշէ զայլս կացեալ 'ի նոյն աթոռ, յասելն. * Եւ էին երկու եպիսկոպոսք Բասենոյ գաւառին, Մովսէս և Տիրիկ, արք լաւք . . . հրաւիրմանն արժանիք. առաջնորդէին իւրաքանչիւր ժողովրդոց 'ի ճանապարհն ճշ զամենայն աւուրս կենաց իւրեանց ‖ (2):

Յիշատակի առ եղիշէի Թղթ. 26. որպէս և առ ղազարայ Ղաւթիկ եպիսկոպոս բասենոյ, մի յեպիսկոպոսաց՝ որք գրեցին պատասխանի նամակին պարսից, որ և զկնի մարտիրոսացաւ 'ի պարս : 'Ի Է. դարուն յիշատակի ստեփաննոսի օրպէլեան և Մանասէ եպիսկոպոս բասենոյ, որպէս և Բնատուր 'ի ժողովն դվնայ, և Յեսու 'ի ժողովն մանազկերտոյ. յերկոսին ևս նախ քան զեպիսկոպոսն տայոց, և զկնի եպիսկոպոսացն ոստանայ, հարքայ, և մամիկոնէից: Նոյնպէս և 'ի ԺԳ. դարուն 'ի ժողովն Սսոյ Տիրատուր եպիսկոպոս :

(1) Արտիթէս կամ Արտիթ եպիսկոպոս յիշատակի և առ խոր. Բ̃. 77. յորոյ և 'ի Թղթոյն առնու զպատմութի̃ մանկութե̃ նորն գրիգորի լուս". այլ քանզի ոչ յիշատակի անդ վիճակ նորա, ոչ իշխեմք նոյնացուցանել ընդ յիշատակելոյն 'ի բուզանդայ : Յիշատակէ և ագաթ. Թղթ. յհէ. զոմն Արտիթէս անուն. այլ որպէս Թուի՝ այլում աթոռոյ եպիսկոպոս է նա, և ոչ բասենոյ. քանզի յիշատակի 'ի նմին վայրի Եւստաթիոս եպիսկոպոսն բասենոյ :

(2) 'Ի վերջին բանից աստի բուզանդայ՝ այնպէս իմն Թուի, որպէս Թէ 'ի մի և 'ի նոյն գաւառին բասենոյ լինել երկուց այլեայլ վիճակաց եպիսկոպոսաց իւրաքանչիւր ժողովրդովք. և Թերևս վասն յերկուս բաժանելոյ գաւառին բասենոյ 'ի պարսս և 'ի յոյնս (որ եղև յաւուրս Դ. արշակայ և Դ. խոսրովու,) բաժանեցաւ և վիճակ եպիսկոպոսութե̃ն յերկուս վիճակս. այլ զայս չունիմք առ ժամս հաստատել յայլուստ. միայն Թէ և զՄանասէ եպիսկոպոս բասենոյ՝ ստեփ. օրպ. կոչէ Առաջին յեպիսկոպոսս բաժնին յունաց.

Վաղարշակ արքայ կարգեաց աստէն նահապետութիւն, ըստ պատմելոյ Խորենացւոյն Բ. Դ. * Իսկ 'ի հովտին մեծի բասենոյ կարգէ նահապետութիւն զՈրդունին անուանեալ որ 'ի զաւակացն Հայկայ ‖: 'Ի ժամանակս կայսերացն յունաց սառակինոսք դրաւեալ զբասեն (գրէ պերփ. կառավար. գլ. 45.) զեկեղեցիս նորա փոխարկեցին յամրոց. այլ լեոն կայսր ասէ՝ (1) երկիցս առաքեաց զօրս ընդդէմ նոցա, որք զեկեղեցիս զերծուցին, այլ զբասեն առ հասարակ ապականեցին: Իսկ յաւուրս ռամանոսի կայսեր՝ յոհաննէս գուրգուաս 'ի խաղալն ընդդէմ դուինն քաղաքի՝ զգաւառն բասենոյ որում սառակինոսք տիրէին, յաւեր դարձոյց համօրէն. որպէս և յառաջ քան զնա աւարեալ էր եղբայր նորին յոհաննու. և գրեթէ (ասէ) յամենայն նուագս յորժամ թէոդուպօլիս 'ի պատերազմի լինէր, ոչինչ տեղի մնայր անփլաս 'ի բասեն:

Որդորու, և Պնու: Օ առաջնոյն բուզանդ. Գ. Դ. * Եւ ետուն զբուն գիւղն Որդունոյ, որոյ անուն էր Որդորու, ուստի եպիսկոպոս բասենու ամենայն սահմանօքն համդերձ, որ ինքն իսկ է յերկրին Բասենու ‖: Կոչելով զնա բուն գիւղ Որդունոց զարմին, յայտ առնէ՝ թէ էր բնիկ բնակարան նահապետի այնր տոհմի, ուստի և նոյն անուն՝ զոր խոր. Բ. Դ. կոչէ * Նահապետութիւն զՈրդունեին անուանեալ ‖. կամ մին 'ի միւսմէն ածանցեալ: Եւ այսպէս Որդորու գոլով աթոռ նահապետութեան որդունոց, լինի և աթոռ նահապետութեանն՝ զոր Վաղարշակ կարգեաց 'ի բասեն, որով և անկ է նախ առաջին զսա յիշել, իբր առաջին գիւղ համօրէն բասենոյ: Վերագրեալ բան բուզանդայ ծանուցանել երևի նաև՝ թէ յայս գիւղ էր աթոռ եպիսկոպոսին բասենոյ:

Առ ասողկայ Բ. 3. գրի սա ոչ Որդորու, այլ Որդրու, ուր յիշատակի միանգամայն և միւս գիւղն Պնու. * Եկեալ պատերազմեցաւ ընդ զօրսն յունաց որ 'ի Պնու, և յՈրդրու, փախստեայ տանի մինչև 'ի սադաղամ, և առնու զքաղաքն կարնոյ ‖:

Երկրորդ գիւղն կառուցեալ կայ 'ի Պնուչին Ռշէերաթանոյ ըստ ղազարայ Թղթ. 254. * Եւ ինքն չուեալ յորաղայ՝ իջանէր 'ի գաւառն բասենոյ, և բանակէր մօտ

(1) Առ պերփերուժենի ոչ նշանակէ թուական, և ոչ թէ որ լեոն էր:

'ի գեօղն՝ որ անուանի Գնու 'ի դաշտին Աղբերականաց, զոր Արծաթաղբեր կոչեն‖։ 'Ի ժամանակս վահանայ մամիկոնեի՝ էր 'ի վերջին սահմանս պարսից, քանզի և բասեան է վերջին արևմտեան գաւառ այրարատայ՝ որ էր յայնժամ ընդ տէրութեամբ պարսից ։ * Եւ էր ( տես ) բանակ սաստկութեան զօրուն արեաց 'ի գեօղն որ անուանի Գնու, 'ի սահմանակցութեան պարսից և հոռոմոց ‖ ։ Հեռի դնէ զսա 'ի մնաւրինձ՝ գեղջէն իբր երկու հրասախօք. և լաստիվ. գլ. ժգ. դնէ 'ի Գուլուլին բասենոյ ։ Սոքա երկոքեան մերձ գոլով միմեանց, միանգամայն ստորագրեցաք, որպէս յայտ է յայժմեան դրից նոցա, որք կոչին Փոքր Տու և Մեծ Տու, և անկանին 'ի սկիզբն վերին բասենոյ. տես 'ի Նոր հայաստան թղթ. 90. վասն այսորիկ և աստ զերկ միանգամայն յիշեաց 'ի վերոգրեալ բանս իւր ։

Վաղարշաւան ։ Աւան մեծ՝ շինեալ 'ի վաղարշ արքայէ, սակս գոլոյ տեղի ծննդեան իւրոյ ։ * Շինէ ( տես խոր. բ. 62. ) աւան մեծ զտեղի ծննդեան իւրոյ 'ի վերայ Ճանապարհին, ուր 'ի գնալն մօր իւրոյ 'ի ձմերոց յայրարատ, յանկարծակի պատեալ երկանց 'ի գնացսն, ծնաւ 'ի վերայ Ճանապարհին 'ի գաւառին Բասեան (1), 'ի տեղւոջ ուր խառնին մուրց և երասխ, զոր շինեաց յիւր անուն, և կոչեաց Վաղարշաւան‖։ Լաստիվերտցին գլ. ժա. կոչէ զսա Գասպաւնէրր Մեծ՝ յասէն վասն թուրքաց. * Եկեալ մինչև 'ի գաւառն Բասեան, և մինչև 'ի Գաւատակերտն մեծ որ կոչի Վաղարշաւան, և քանդեալ ապականեցին գաւառս իբ. սրով և հրով և գերութեամբ ‖ ։ Մնացորդք ինչ սորա կան մինչև ցայժմ՝ որ կոչի Քէօփրի քէօյ. զորմէ տես 'ի Նոր հայաստան թղթ. 90 ։

Արծն, կամ Օրծն ։ Աւան երևելի բազմամարդ, զոր յիշատակէ լաստիվ. գլ. ժը. յասէն. * Աւան մի էր 'ի գաւառին բասենոյ մերձ առ ստորոտով լերինն՝ որ կոչի Օրբանիս, և անուն նորա Աւկամի, մարդաշատ և ընչաւէտ ‖ ։ Ստորև կոչէ զսա Շէն, յորում դնէ բնակեալ իբրև 30 հազար ոգիս, զորս առ հասարակ կոտորեցին 'ի ժա. դարուն ։ Անուն սորա 'ի բ. գլ. լաստիվ. 'ի մեր օրինակի գրի Օրծն, ա փոխեալ 'ի օ, որ այժմ փոխեալ 'ի ու, կոչի 'ի հայաստանեայց իբր 'ի բազում

(1) Յերկուս ձեռ.՝ գնի Բասեան 'ի միում Բասեն. իսկ 'ի տպ. 'ի գաւառին Բասենոյ ։

բաղ անուն սեպուհ 'ի Գաբեղեան տոհմէ յիշատակի և առ Ղազարայ ։

Վիշապաձոր ։ Կոչեցաւ այսպէս 'ի յաճախութենէ վիշապաց · քանզի գրի յայսմ · մարտի 6 · * Եկեալ սրբն Թաթուլ և աւագ եղբայրն իւր Վարոս 'ի սահմանս Գաբեղենից մերձ գեղաքաղաքին Կաղզուանայ, և բնակեցան 'ի Վիշապաձորն կոչեցեալ տեղի, 'ի մէջ անհուն քարանձաւացն՝ յորում ազգի ազգի վիշապք և գազանք որջացեալք էին, որք հալածեցան անտի աղօթիւք 'նոցին մինչև ցայսօր ‖ ։ Այնպէս գրի և 'ի սեպտ · 30 ։ Ի ժամանակօք աստղկայ կոչէր Գազանաձոր · և սակս բնակութեան Թաթլոյ՝ Թաթլոյ վանք · որպէս գրէ 'նա յինքն է · 2 · * Նշթեալ ( Թաթուլ ) 'ի վայրս գժնդակս՝ ընդ գազանաց և ընդ վիշապաց բնականայր, 'ի տեղի՝ որ այժմ ասի Գազանաձորք, կամ Թաթլոյ վանք ‖ ։

'Ի Գաբեղենից գաւառին դնի բնակութիւն Թաթլոյ՝ ոչ միայն յայսմաւուրս, այլ և առ Վարդանայ · ուստի և Վարդան աշխարհագիրն 'ի դնելն զԿաղզուան յԵրասխաձոր, և յասելն, * Ուր կան սրբ ուխտք Վարդիկ հայրն, և սրբ Թաթլու Ընապատն ‖ · չէ պարտ իմանալ՝ թէ զԸնապատն կամ զբնակութիւն սրբոյն Թաթլոյ դնէ յԵրասխաձոր գաւառի, այլ թէ Կաղզուան այժմեան քաղաք է 'ի հին Երասխաձոր գաւառի, և 'ի Կաղզուանայ նոր սահմանի է ուխտն Վարդիկ հայր, և Ընապատն սրբոյն Թաթլոյ, անյայտ լեալ հին անուան և սահմանին Գաբեղենից ։

Գիւց Մայրի ։ Թուի լինել մերձ 'ի Վիշապաձորն · ուստի և 'ի Գաբեղենից գաւառի, զորմէ գրի յայսմաւուրս սեպտ · 30 · և մարտի 6 · թէ սրբն Վարոս * Բնակեցաւ յանձաւս լերանցն՝ որ կոչի Գիւց մայրի ‖ ։ Յետ գտանելոյ զմարմին սրբոյն Վարոսի, որպէս զնոյն կոչեցին Գիւտ, նոյնպէս և յայն անուն զմենաստանն ։ * Այլև զտեղի նորա ( ասէ ) շինեցին վանք, որ մինչև ցայսօր կոչի Գիւտի վանք ‖ ։ 'Ի նոյն կողմանս երևի լինել և Մայրաձոր անուանեալ տեղին ։

Մխանձեղնոյ Գիւղ ։ Զորմէ աստղիկ է · 2 · յասելն վասն է · Յոհաննու կաթողիկոսի, թէ էր * 'ի գաւառէն Գաբեղենից 'ի գեղջէ Մխանձեղնոյ, 'ի վանականութենէ Թաթլոյ վանից ‖ ։ Այլայլութբ տառից ինչ գրի այս գիւղ առ Յոհաննու կաթողիկոսի և այլով խոնարհմամբ · * Իսկ զկնի սորա զոմն Յոհաննէս 'ի Գաբեղենից 'ի գեղջէ Մնձեղուան, կացուցանէին հայրապետ հայաստանեայց ‖ ։

Իսկ որք գրեն սոսկ Ձեղուան, յայտ է թէ համառօտելով գրեն՝ 'ի բաց թողեալ զանունս Մեան :

## ԱՐՇԱՐՈՒՆԻՔ, կամ ԵՐԱՍԽԱՁՈՐ :

Մի է յերևելի գաւառաց այրարատու՝ ճոխացեալ պէսպէս թագաւորաշէն քաղաքօք : 'Ի միում ձեռագրի աշխարհագրութեան խորենացւոյն գրի Արշարունիք, որպէս և ուրեք առ յոհաննու կաթողիկոսի, և առ թովմայի կիլիկեցւոյ. 'ի գիրս ինչ գրի և Արշունիք. և առ կիրակոսի՝ Արշակունիք. ուր եթէ չէ եղեալ վրիպակ, ցուցէ այսպէս կոչէ վասն գոլոյ սեպհական կամսարականացն՝ որք էին յազգէ արշակունեաց :

'Ի սկզբան անդ այս գաւառ կոչէր Երասխաձոր, կամ որպէս գրի ուրեք առ յոհաննու կաթողիկոսի և առ վարդանայ աշխարհագրի, Ձոր Երասխոյ : Իսկ ապա ընկալաւ զանունս Արշարունիք, այսպիսի իմն պատճառաւ. իբր զի յաւուրս տրդատայ յորժամ մեռաւ կամսար պալհաւիկ որ նորոգ մկրտեալ էր 'ի սրբոյն գրիգորէ հանդերձ որդւովք, սուրբն տրդատ՝ որպէս զի արշաւիր որդի կամսարայ մի գնասցէ անդրէն 'ի բնիկ աշխարհն իւր 'ի պարս, ուր վտանգ գոյր հաւատոց նորա, բաց 'ի նախարարութեան պատուոյ զոր ետ նմա, յաւելու * Եւ այլ պատիւս, (տես խոր. Բ. 87.) զքաղաքն երուանդայ և զնորուն գաւառն՝ մինչև ցկատար ձորոյն մեծի ... իսկ արշաւիր առաւել սիրեալ զգաւառն, յիւր անուն կոչէ Արշարունիս, քանզի յառաջ Երասխաձոր կոչէր || :

Զդիրս սորա յայտ առնէ իւր առաջին անունն՝ թէ ձգէր առ ձորով երասխ գետոյն. զնոյն յայտ առնէ և ասողիկ Բ. 2. զորոյ զբանս տես ստորև 'ի Քառասունք անուանեալ տեղին :

Եպիսկոպոսական աթոռ Արշարունեաց մի էր զառաջինն ընդ աթոռոյ բագրևանդ գաւառին, և ապա բաժանեցաւ յերկուս, որպէս է տեսանել 'ի գաւազանագիրս եպիսկոպոսաց այսր գաւառի ուր ասի. * 'Ի սրբոյն գրիգորէ Բագրևանդ և Արշունիք (որ է Արշարունիք) մի եպիսկոպոսի վիճակի կարգեալ էին մինչև ցվախճան քերթողահօրն երանելոյն մովսէսի եպիսկոպոսի. ապա զատուցեալ Արշունեաց և տան կամսարականաց՝ նախ եկաց եպիսկոպոս Խնդիա ամս իզ || : Զկնի դասի ան-

զէն կարգ եպիսկոպոսացն մինչև ցԹուականն Ռծե. անուանք նոցա են, Յոհան՝ որ յաջորդեացն զկնի Խնդայ, (որ յայլ օրինակի կոչի Կենդակ). Թաթուլ. Թովմաս կամ Թումա ա. Հաւուկ. Թովմաս բ. Մովսէս ա. Յոս. Թէոփիլոս. Մովսէս բ. Պաղար. Գրիգորիս, որոյ անուն յիշատակի 'ի ստորագրութիւնս անդ ժողովոցն դվնայ և մանազկերտի՝ քորեպիսկոպոս (1) անուամբ, յերկոսին ժողովս ես դասեալ զկնի եպիսկոպոսին Բզնունեաց: Նոյնպէս յիշատակին առ ասողկայ գ. 9. և 32. Խաչիկ եպիսկոպոս Արշարունեաց, որ յետոյ նստաւ կաթողիկոս. և Սահակ ոմն 'ի ժամանակս ա. Սարգսի կաթողիկոսի: Յիշատակի և առ սամուէլի կամրջաձորեցոյ՝ Աննիաս եպիսկոպոս Արշարունեաց: Այլ զառաջին եպիսկոպոսունս որք նախ քան զԽնդա մինչև 'ի քերթողահայրն մովսէս, տեսցես 'ի գաւառն բագրեւանդայ:

Ի Է. դարուն նաև զկնի՝ ծաղկեալ էր յոյժ վարդապետարան Արշարունեաց, զորմէ ստորև:

Արշակ բ. 'ի կոտորելն զկամսարականս, յարքունիս գրաւեաց զայս գաւառ: * Բայց զտոհմն կամսարականացն (տես բուզ. գ. 19.) որ էին գաւառաց տեարք Շիրակայ և Արշարունեաց՝ ազատ առնէր (2) և զգաւառն ունէր յոստան ‖: Դարձեալ մնաց 'ի ձեռս կամսարականաց, որք բազմացան 'ի միջի սպանդարատայ. իսկ յետ անդ Ը. դարուն եանց 'ի ձեռս բագրատունեաց, զի ըստ պատմելոյ ասողկայ բ. 2. Աշոտ բագրատունի մնակեր անուանեալ՝ * Գնանձաղին արար զգաւառն Արշարու

(1) Քորեպիսկոպոս անուանդ դնի և 'ի խորագրի գրոցն Գրիգորիսի՝ որ կոչի մեկնութիւն ընթերցուածոց:

(2) Թէպէտ 'ի տպ". և յերկս ձեռ" բուզանդայ գրի Ազատ առնէր. սակայն պարտ է ուղղել զայս վրիպակ գրչաց, և ընթեռնուլ Ազգատ առնէր, որպէս և 'ի վերոյ 'ի նոյն գլ. 'ի պատմելն զկոտորած այլոց նախարարաց 'ի կեր առնու: Մի՝ զի կարգ բանից նորին բուզանդայ զայս մեզ ծանուցանէ. զի առ ազգատութիւն այսինքն առ կոտորած ազգին կամսարականաց հայի. և ոչ առ ազատութիւն նոցին այս բան բուզանդայ. զոր իսկ և իսկ յաւելու զկնի վերոգրեալ բանիցն. * բայց յազգէն յայնմանէ մանկիկ մի փոքրիկ՝ անուն սպանդարատ, թագուցեալ ապրեցուցանէր սպարապետն զօրավարն հայոց վասակ. որ յետոյ լինէր ժառանգ աշխարհին ‖: Երկրորդ՝ զի յայս գլ. բուզանդայ պատմի այն գործ արշակայ ընդ նախարարս, որ ինչ պատմի առ խոր. գ. 31. որդ՝ յայն գլ. խորենացւոյն պատմի կոտորած կամսարականաց յարշակայ, և ոչ ազատութիւն:

նեաց յազգէն կամսարականաց. և զարքունին 'ի կո-գովտէ յԱրշարունիս փոխեաց ‖։

Երուանդաշատ։ Ըստ բուզ. Դ. 55. գրի Երուանդաշատ. այլ 'ի միում հին ձեռագրի գնի ըստ առաջին օրինակի։ Քաղաք շինեալ 'ի Բ. Երուանդայ արքայէ, վասն որոյ և Խոր. Բ. 43. և 87. կոչէ զսա Քաղաք Երուանդայ։ Ըստ Ասողկայ Բ. 6. կոչի Երուանդաշատ, սակս քարաժայռ դրիցն։ * Պարտեալ ( ասէ ) Երուանդայ՝ փախստական անկանի 'ի քաղաքն իւր յԵրուանդաշատ ‖։ Այնպէս կոչի ուրեք և առ Վարդանայ, դարձեալ ստորև նոյն անուն գրի Երուանդէշատ։ * Նուաճեալ (ասէ) ճակատ 'ի մարաց մարդ-յախուրեան գետ՝ փախչի յԵրուանդէշատ և սատակի ‖։ Ըստ Խորենացւոյն Դ. 31. կոչի Քաղաք ոստանի կամ-սարականաց. յորմէ յայտ է թէ՝ էր դրան քաղաք, այս-ինքն նախագահ քաղաք արշարունեաց գաւառի։

Ընկանի յարևմտից արմաւիրայ, կառուցեալ 'ի սեպա-ցեալ քարակտուր ժայռ ինչ, * Յորով (ըստ ասից Խոր. Բ. 36.) պատառեալ երասխայ ընդդէմ ախուրեանն հա-սի գետ ‖։ Ուստի և ժայռն էր իբրև կղզեակ շրջապա-տեալ 'ի ջուրց։ 'Ի վերայ բնական ամրութեան՝ յաւել Երուանդ և զարուեստականն, պարսպելով առ հասարակ զայն ժայռ, և 'ի գագաթան նորուն կանգնելով միջնա-բերդ բարձրապարիսպ, իսկ 'ի միջոցի պարսպին՝ շինե-լով դրունս պղնձիս։ 'Ի ներքուստ 'ի վեր մինչ 'ի դուռն ինչ միջնաբերդին՝ գործեալ ելանելիս երկաթիս կրկին ճանապարհաւ. զմին՝ հասարակ ճանապարհաւ տուընջե-նային՝ վասն ելից և մտից ամենեցուն, իսկ զմիւսն լա-րեալ ծածուկ որոգայթիւք ընդ մէջ աստիճանացն՝ զոր 'ի գիշերի բառնային, առ 'ի յորոգայթս ըմբռնել զնա՝ որ գաղտ գիշերայն կամիցի ելանել 'ի դաւել զարքայ։ Նո-րպէս զի մի ինչ պակասիցի ամենևին ամրութեան դրից սորա, 'ի ներքս ընդ պարսպին ընդ բազում տեղիս եր-կայնմտութբ կտրեալ հատեալ զթանձրութի բլրաձև այն ապառաժին 'ի վերուստ մինչև 'ի յատակ հաւասար գե-տոյն, ջուր հոսեցոյց 'ի գետոյն 'ի ներքս 'ի քաղաքն, որով ոչ կրէին բնակիչքն կարօտութի ջրոյ նաև 'ի ժամա-նակի պաշարման։

Յայս քաղաք շինեալ Բ. Երուանդայ՝ յարմաւիրայ աստ փոխեաց զարքունիս, նաև զգերութիւնն հրէից որ 'ի նմա, վասն երկուց պատճառաց. մի՝ զի ապականեալ էր օդ և դիրք արմաւիրայ. երկրորդ՝ զի դոլով ապստամ

թուլթեամբ Թագաւորեալ, խնդրէր ամրագոյն տեղի առ 'ի պատսպարել անդ 'ի Թշնամեաց իւրոց 'ի վտանգաւոր ժամանակի՝ որպէս և եղև իսկ. այլ միայն յաւուրս նորա կացին անդէն արքունիքն, զի արտաշէս Բ. որ յետ նորա Թագաւորեաց, զարքունիս, զգերութիւն հրէից, և զամենայն վայելչութիւն Երուանդաշատու փոխեաց յարտաշատ: Տես 'ի Խոր. Բ. 36. և 46.

Յաւուրս Բ. Արշակայ՝ զօրք Շապհոյ պարսից արքայի առ հասարակ կործանեցին: * Նոյնպէս և զմեծ քաղաքն զԵրուանդաշատ (տես Բուզ. Դ. 55.) և խաղացուցանէին անտի երդս Ի՟. հայ. և երդս Լ՟. հրէայ, և զքաղաքն 'ի հիմանց տապալեալ բրեալ յատակէին ‖: Այսչափ բազմութիւն բնակչաց՝ եթէ չէ եղեալ վրիպակաւ՝ զորմէ կասկածիմք, (Թէպէտ և յերկս ձեռագիր օրինակս և 'ի տպ. այսպէս գրի,) յայտ առնէն՝ թէ այս ժայռ և քաղաքն ողջոյն՝ էր մեծ, զի առ իւրաքանչիւր երդ եղեալ միայն երկու և եթ բնակիչ, թիւ բոլորեցուն լինի 100 հազար: Այլ զբնականալն անդէն հրէից՝ ոչ կարեմք միաբանել ընդ Խորենացւոյն, զորոց գրէ նախ քան զԲ. Արշակ յԵրուանդաշատէ փոխեալ յԱրտաշատ. բայց եթէ ասելով, թէ գուցէ յԱրտաշատէ կամ յայլ ինչ քաղաքէ անդրէն փոխեցան յԵրուանդաշատ:

Երուանդակերտ, կամ Մարգ: Ի դաստակերտ շինեալ 'ի վերոգրեալ Բ. Երուանդայ 'ի վայելուչ և 'ի զուարճալի հովտի, զմիջոց այսինքն զմիջին տեղի հովտին՝ լցեալ բնակչօք և պայծառ շինուածովք, շուրջ զբնակութեամբք կազմեալ բուրաստանս և ծաղկոցս, շուրջ զբուրաստանօք այգեստանեայս. 'ի հիւսիսոյ բարձրանայր կարակնաձև դրիւք դարևանդ եզր գետոյն, իսկ 'ի հարաւոյ ձգէր դաշտ գեղեցիկ: Զայս ամենայն պատմեալ Խորենացւոյն Բ. 39, արժանի համարի կոչել. Ագարակ բերրի և բազմատոհմական դաստակերտ. զորոյ և զմասունս համառօտ՝ այլ գեղեցիկ ստորագրութբ նմանեցուցանէ գեղեցկութեան դիմաց, զշինուածսն որ 'ի միջին՝ բբաց, զշրջապատեալ բուրաստանսն՝ բոլորակութե ական շուրջ զբբօք, զայգեստանսն՝ արտևանանց, զկարակնաձև դարևանդսն՝ յօնից. զդաշտսն՝ ծնօտից հարթութե, զանցս գետոյն՝ բերանոյ, իսկ զկրկին գետեզերսն՝ շրթանց:

Նկանի յարշարունեաց գաւառի, զի Խորենացին 'ի նոյն գլ. վասն սորա՝ որպէս և վասն այլ ամենայն շինուածոց Երուանդայ գրէ, թէ էանց առ Կամսարականս

* Զայս ամենայն գործեցելոց Երուանդայ՝ պարգեւէ մեծն Տրդատ մարդկան ազգին Կամսարականաց ||։ Իսկ Կամսարականք որպէս գրեցաք 'ի վերոյ՝ զառեալ երկիր իւրեանց անուանեցին Արշարունիք։ Ցուցանէ նաև յայն գլ. թէ էր մերձ յԵրուանդաշատ, յասելն. * Եւ այսպիսի գեղեցկութեան դիր անքթթելի իմն գոգցես 'ի բարձրաւանդակ թագաւորանիստն զՀայեցուածսն ունի ||։ Թագաւորանիստ իմանամք աստանօր զԵրուանդաշատ՝ ուր էին արքունիք. որպէս թէ այս Երուանդակերտ գոլով 'ի խոնարհ դիրս՝ զՀայեցուածս ունէր միշտ 'ի բարձունս յԵրուանդաշատ, իսկ Երուանդաշատ գոլով 'ի բարձրաւանդակի՝ միշտ հայէր 'ի վերայ Երուանդակերտի։

'Ի գնելն այսպէս՝ Գետ անուամբ պարտ է իմանալ յայն գլ. խորենացւոյն զԵրասխ, և զԵրուանդակերտ գնել առ Երասխաւ, ուր էր և Երուանդաշատ. զի խորենացին ոչինչ որոշէ անդէն, մերձեօք առ ախուրեան գետով էր Երուանդակերտ (առ որով էր և Բագարան), թէ առ Երասխաւ։

Այս Երուանդակերտ զկնի 'ի Է. արտաշիսէ կոչեցաւ Մարգէր, զորոյ զպատճառն գնէ խորենացին Է. 43. յայս բան. * Նոյն (արտաշէս) չուեաց 'ի քաղաքն Երուանդայ, յառաջ քան զմիջօրեայ հասեալ 'ի Դաստակերտն Երուանդայ, և միաբան գուժամբ հրամայեաց աղաղակել զօրացն Մար ամար, որ թարգմանի Մարն էին, յիշեցուցանելով զթշնամանսն զոր յղէր Երուանդ առ թագաւորն պարսից և առ ամենայն՝ Մար զնա կոչելով. յայսմ 'ի սոյն ձայն անուանեցաւ դաստակերտն Մարգէր, իբր 'ի կամաց արտաշիսի բառնալ զանուն Երուանդայ 'ի տեղւոջէն։ Այս պատճառ է անուանակոչութեան դաստակերտին ||։

Յայտ առնէ աստէն թէ դաստակերտն Երուանդայ անուանեցաւ Մարգէր. իսկ Դաստակերտ Երուանդայ՝ է նոյն ինքն Երուանդակերտ. քանզի 'ի պատմելն Է. 39. զշինութիւն նորին, ոչ կոչէ զայն Քաղաք, կամ Աւան, այլ 'ի խորագրին կոչէ Ձեռակերտ, և 'ի բանսն՝ Դաստակերտ։ * Քաղցր է ինձ ասել և յաղագս գեղեցիկ Դաստակերտին Երուանդակերտի ||։ Ուր 'ի տպ. միայն գնի Ձեռակերտ, որ է նոյն։

Զայս 'ի միտ առեալ, պարտ է ասել վասն չուոյ արտաշիսի, թէ նախ եկն 'ի քաղաքն Երուանդայ, որ է

Երուանդաշատ, ապա նախ քան զմիջօրեայ եհաս յԵրուանդակերտ ։

Երուանդաւան, և Մարաց Տունք ։ Առաջինն 'ի միումն ձեռագրի պատմութեան Խորենացւոյն Բ. 43. գրի այսպէս. խել 'ի տպ". և յայլումն ձեռ". գրի ուղղոյն Երուանդայ վան, և յերրորդումն ձեռ". Երուանդ աւան ։ Ի տեղի բանակին Երուանդայ հեռի յԵրուանդաշատէ իբր 38. մղոնաւ 'ի հիւսիսակողմն, որպէս յայտ առնէ Խորենացին. Բ. 43։ * Եւ ճամբարն Երուանդայ էր բացագոյն 'ի քաղաքէ նորին (որ է Երուանդաշատ) աւելի քան Ք Ճ. ասպարիսաւ, 'ի հիւսիսոյ 'ի վերայ գետոյն Ախուրեան ‖ ։ 300 ասպարէզք առնեն 37 և կէս մղոն ։ Զայս անուն անուանեաց Բ. Արտաշէս, ըստ որում անդանօր պարտեալ զզօրսն Երուանդայ՝ վանեաց անտի զԵրուանդ ։ * Եւ անուանեաց (ասէ) զհովիտն՝ ուր 'ի վերայ դիւականցն բանակեցաւ՝ Մարաց Տունք, (զի մարաց զօրօք բանակեցաւ անդէն Արտաշէս) ։ Եւ զտեղի ճամբարուն՝ Երուանդայ վան, որ կոչի մինչև ցայսօր ժամանակի, այսինքն եթէ յայսմ տեղւոջ Վանեաց զԵրուանդ ‖ ։ Այս ստուգաբանութիւն Խորենացւոյն՝ հաստատուն ցուցանէ զուղղութիւն առաջին և երկրորդ անուանս Երուանդայ վան ։

Բագարան ։ Քաղաք՝ իբր 40 ասպարիսաւ, այսինքն 5 մղոնաւ հեռի յԵրուանդաշատայ, 'ի հիւսիսակողմն 'ի վերայ գետոյն Ախուրենայ, նման Երուանդաշատու՝ այլ փոքր քան զնա, որպէս գրէ Խորենացին Բ. 37. * Նման իւրոյ քաղաքին (այսինքն Երուանդաշատու) շինեաց քաղաք փոքր 'ի վերայ գետոյն Ախուրենայ ‖ ։ Ի նոյն է վերոգրեալ Բ. Երուանդ. որոյ մեհեանս կառուցեալ անդէն, զամենայն զկուռսն որ յԱրմաւիր՝ փոխեաց անդր. քանզի երկեաւ դնել զնոսա յԵրուանդաշատ, զի մի 'ի յաճախել բազմութեան առ 'ի զոհ, վտանգեսցի պահպանութիւն քաղաքին. և առ բազմութեան բագնեացն՝ կոչեաց զանունն Բագարան. * Այսինքն թէ 'ի նմա յօրինեալ էր զկազմութիւն բագնացն ‖, որպէս մեկնէ Խորենացին Բ. 37. Յոր սակս և 'ի խորագիրն նոյն գլխոյն կոչի Բագարան՝ Քաղաք կոչի ։ Ունէր սա և բերդ. քանզի Խոր. Բ. 45. կոչէ Ամուր անուամբ. * Հրամանս տայ (Արտաշէս) ամբառնալ երթալ յԱմուրն Բագարան՝ որ հուպ 'ի քաղաքն Երուանդայ 'ի վերայ Ախուրեան գետոյ ‖ ։

Ընկանի յարշարունիս, որպէս և վերոգրեալն Երուան-

դաւլան, և յետագայ անտառն՝ վասն պատճառին, զոր բերաք յԵրուանդակերտ ։

Յաւուրս նախկին Թագաւորացն բագրատունեաց՝ աստ էին շիրիմք նոցա. և արքունի ապարանք, զի որ առ յոհաննու կաթողիկոսի յիշի աւան Նոյ Բագրան անուն, է նոյն ընդ այսմ, և միայն համառօտութբ կամ վրիպակաւ այսպէս գրեալ. քանզի որպէս 'ի Բագրան դնէ ապարանս արքունիս՝ կոչելով զնա Թագաւորանիստ, յասելն վասն մարինոյ Ա. աշոտոյ. * Տարան զնա 'ի Թագաւորանիստ աւանն Բագրան ‖. զնոյն դնէ և 'ի Բագարան՝ յասելն. * Գնացաք յարքունական ապարանսն Բագարանու ‖։ Այլ որպէս 'ի Բագրան դնէ զշիրիմ բագրատունեաց՝ յասելն վասն շապհոյ եղբօր արքային Ա. սմբատայ. * Եդին զնա ընդ հարս իւրում 'ի շիրիմն քնարանացն որ 'ի քաղաքագեօղն բագրանու ‖. զնոյն դնէ և 'ի Բագարան՝ ասելով վասն մարինոյ մուշեղայ. * Բաւաքեր համբուցանել 'ի քնարանի նախնական հանգստարանացն 'ի Բագարան ‖։

Զայս Բագարան համարիմք տեղի արքունեացն բագրատունեաց, և ոչ զԲագարանն որ 'ի կողովիտ, քանզի աշոտ մսակեր մի 'ի նախահարց բագրատունեաց՝ զալշարունեաց գաւառ գնոյ էառ, և անդր փոխեաց զարքունիս իւր 'ի կողովիտ, որպէս դրէ ասողիկ (զորոյ զբանս եդաք 'ի վերոյ.) յորմէ և յայտ է՝ թէ նաև բագրատունիք յետագայք նորա յարշարունիս կալան զբնակութիւ, և անդ սահմանեցին զառաջինն զարքունիս իւրեանց, և ոչ 'ի կողովիտ ։ Յաւել և զայն, զի ուրեք յայտնի պատմութեան գետով դնէ յոհաննէս կաթողիկոս զԲագրան, ուր և էր Բագարանն արշարունեաց, յասելն. * Շինէ ապա (աշոտ որդի շապհոյ ասպարապետ հայոց յաւուրս Ա. սմբատայ) զպճնապայծառ եկեղեցին Բագրանու, որ 'ի վերայ Ախուրեան գետոյ ‖։

Շիրիմք Թագաւորաց՝ որք կան մինչև ցայսօր 'ի խոշավանք մերձ յախուրեան գետ որ է առափայ չայի, և 'ի Ճանապարհորդաց կոչի Թագաւորաց, թուին լինել շիրիմք այսր բագարանի ։ Տես 'ի Նոր հայաստան Թղթ. 121 ։

Ծննդոց ։ Մայրի մեծ, տնկեալ 'ի Բ. երուանդայ՝ ուր զնայր յորս, ամրացուցեալ որմով, և լցեալ բազմութբ կենդանեաց՝ զորս յանուանէ թուէ խորենացին Բ. 38. Այծեամն, Եղն, Այգ եղջերուաց, Ցիռ, Վարազ ։ Զդիրս սորա դնէ խորենացին 'ի հիւսիսոյ կողմանէ գե-

տոյն, բայց ոչ որոշէ՝ մերդեօք երասխայ, թէ ախուրեանայ, այլ գետ անուամբ սոէպ կոչէ յայն գլուխս շինութեանց երուանդայ՝ զԱրասխ:

ԱՐՏԱԳԵՐՍ, կամ Ա[illegible] և ԲԵՐԴ ԱՐՏԱԳԵՐԻՑ: Այն 'ի ծանուցեալ բերդից մեծին Հայոց, որ առ Մատենագիրս յունաց՝ որպէս առ Ստրաբոնի ժա. 529. գրի ԱՐՏԱՅԵՐԱ. առ Պտղոմեայ Ե. 13. ԱՐՏԱՅԵՂԱՐՏԱ (1). առ զոնարասայ (2) ԱՐՏԱՅԵՐԱ գրի չեզոք անուամբ, և փոխանակ ս տառին յունաց յերրորդ վանկին, զոր 'ի կիր առնուզր. դնէ երկբարբառ ει. սոյն այս անուն է՝ որ առ խսկբիոսի՝ գրի ԱՐՏԱԳԻ: Իսկ առ Մատենագիրս հռոմայեցւոց՝ զորօրինակ առ Վելլէյոսի գիրք Բ. Թիւ 102. լատին հնչմամբ գրի ԱՐՏԱՃԵՐԱ. առ ամմիանոսի գիրք Իէ. գլ. 12. այլայլութբ գրի ԱՐՏՕՃԵՐԱՍՍԱ. Իսկ առ Փլօրոսի գիրք Դ. գլ. 12. որում և զհետ երթայ ռուֆոս, մերկակաւ գրի ԱՐՏԱՔՍԱՏԱ (3) որ է արտաշատ. յորմէ և մոլորեալ վենետոսի 'ի լուծմունս Փլօրոսի՝ մի և նոյն քաղաք կարծէ զերկոսին:

Ընդարձակօղ վարդանայ աշխարհագրի՝ նոյն համարի զսա ընդ Կապոյտ բերդին, զորմէ տես ստորև:

Յնկանի յարշարունեաց գաւառի, որպէս յայտ է 'ի խորենացւոյն Գ. 31. որ դնէ սեպհական կամսարականաց, որոց երկիր էր արշարունիք. քաջայայտ ես բուզանդ Դ. 55. յասելն վասն փառանձեմայ. * Ամբացեալ ընդ իւր մարդիկ իբրև ժա. հազար, ազատս ընտիրս սպառազէնս պատերազմօղս, և համդերձ նոքօք դիմեաց եմուտ 'ի բերդն Արտագերից՝ որ 'ի յերկրին արշարունեաց ‖: Նաև այսպէս անկանի 'ի շրջակայ սահմանս երասխայ, և ոչ 'ի սահմանին որ ընդ մէջ արշամուշատայ և տիգրանակերտի մերձ 'ի տաւրոս, ուրանօր դնէ պտղոմէոս: Այլ պարտ է յիշել զայն՝ զոր ասացաք բազում

(1) 'Ի լատին թարգմանութեան պտղոմեայ՝ բաց 'ի յԱՐՏԱՅԵՂԱՐՏԱ անուանէս, դնի 'ի նմին գլ. 'ի կարգս քաղաքաց հայոց և ԱՐՏԱՒԻՂԱՐՏԱ, որ է կրկնութեն վրիպակաւ սպրդեալ, որպէս ծանուցանէ օրդէլիոս, և յետ նորա մաոդինիէ. և յայտ առնէ նաև նոյնութեն աստիճանաց երկայնութեն և լայնութեն, զի երկոքին ես եդեալ կան ընդ 75, 20. և 38, 45: Թէպէտ և չէլլարիոս ոչ համարելով կրկնութեն, յիշէ և զայս 'ի կարգս անծանօթ քաղաքաց մեծին հայոց՝ որք գտանին առ պտղոմեայ:

(2) Գիրք. Ժ. համար. 36. թղթ. 539:

(3) Ցօրինակս Ինչ Փլօրոսի գրի ԱՐՏԱԳԵՐԱՍ:

անգամ, թէ օտարազգի նախնիք բազում ուրեք առաւել սխալեցան 'ի նշանակել զգիրս տեղեաց՝ քան զմնուամս ։

Շինօղ սորա ըստ բուզանդայ եղև Արշակ Բ ։ * Խուազաւորն Արշակ ( տես Դ. 19. ) հրամանն տայր յարշարունեաց գաւառին շինել իւր բերդ մի ամուր Արտագերս անուն, և զգաւառն յուտեստի պատրաստութի համբարաց թողոյր բերդին, վասն զի կարի ամուր էր բերդն այն ‖։ Բայց Արտագերս շինեալ կայր և նախ քան զԱրշակ, զի օտար ազգաց պատմագիրք՝ բազմօք յառաջ քան զԱրշակ յիշատակեն զայս բերդ, որոյ հրամանատար Արտուատուս կամ Արտոն անուանեալ, և 'ի Ֆլօրոսէ յապաւմանն առաջին վանկի Յօմնէս կամ Յօննէս ձայնեալ, նենգութբ առ պարսպաւ կոչեալ զԳայոս կեսար՝ 'ի մահ վիրաւորեաց, զոր կայսեր օգոստոսի առաքեալ էր 'ի հնազանդեցուցանել զհայս, որպէս գրեն վելլէյուս, զոնարաս, և ստրաւոն. որ և զկործանումն բերդին պատմէ, ասելով. * Օ Արդամիրաս ապստամբեցոյց ատօք բերդակալ, այլ զօրավարք (գայոսի) կեսարու ընդ երկար պատերազմաւ առին զայն, և զպարիսպս կործանեցին ‖։ Նաև այս եղև յերրորդ ամի տն՝ ըստ ուսսերիոսի ։

Դարձեալ շինեցաւ Արտագերս, զի խորենացին Դ. 31. դնէ լինել զայն բերդ 'ի ձեռս կամսարականաց, յորմէ և եղև գլխաւոր գրգիռ արշակայ կոտորելոյ զկամսարականս առ յափշտակելոյ 'ի ձեռաց նոցա ։ * Մանաւանդ զազգն կամսարականաց ( ասէ ) բառնայր 'ի միջոյ՝ չարակնելով ագահեալ յամուրն Արտագերս ‖։ Նաև այսպէս ըստ բանի պատմագրացս՝ երրորդ պարտ է համարել զշինութի արշակայ, և ոչ նախկին, որ և եղև բերդ զօրաւոր. զորմէ բաց 'ի բուզանդայ վկայէ և խորենացին և ամմիանոս, կոչելով Արտան ամուր պարսպօք եւ զօրութեամբ ։

Այլ յաւուրս նորին արշակայ առին դարձեալ զայն զօրք շապհոյ պարսից արքային, ոչ յարձակմամբ՝ այլ անձնատուր լինելով բնակչաց. * Նկեալ նստան ( ասէ խոր. Դ. 35. ) շուրջ զբերդաւն Արտագերից. և թէպէտ ոչ ինչ կարէին առնել նմա վասն անմատչելի ամրութեան, բայց զի բարկութիւն տն էր 'ի վերայ արշակայ, մարդիկ ամրոցին ոչ անսացին մնալ համբաւոյն պապայ, այլ անձնատուրք եղեն 'ի կամաց, և ոչ 'ի բռնութէ ‖։ Յորում ժամանակի փառանձեմ տիկին արշակայ ձոխութբ զանձուց արքունի պահեալ կայր 'ի նմա, զորս զինն տիւ և զինն գիշեր կրեցին ասէ բուզանդ Դ. 55. յաւելու

ամմիանոս՝ թէ և հրձիգ արարին զբերդն 'ի հրամանէ շապհոյ ։

Այս աւուրս բերդիս՝ պատճառ եղև աւանս և կործանման և այլոց երևելի քաղաքաց և բերդից մեծին Հայոց ։

Կապոյտ, կամ Կապուտակ ։ Բերդ զօրաւոր, զորմէ յոհաննէս կաթողիկոս յասէն վասն ա. սմբատայ. * Սմնուհեաւ երթեալ յամրոցս քարանձաւին 'ի Կապուտայ՝ որ 'ի ձորն երասխայ, անդ դարեալ դադարէր, վասն զի անառիկ իսկ էր նա 'ի մարդկանէ ։ Զոր երասխայ յայսմ վայրի՝ կոչի նոյն իսկ Երասխաձոր գաւառն, որպէս յայտ է 'ի նորին բանից յոհաննու կաթողիկոսի, որ սուղ ինչ յառաջ գրէ վասն նոյն սմբատայ. * Երթեալ ղօղէր յամրոց վայրս յԵրասխաձորոյ ։ Կապուտակ անուանի նաև 'ի պատմութեան Թովմայի արծ. յերկրորդմարս դադկայ՝ յասէն վասն սմբատայ. * փախստեայ եղեալ ամրանայր 'ի բերդին Կապուտայ ։ Այլ աւստեփաննոսի օրպ. գլ. ԿԳ. 'ի նմին պատմութեն սմբատայ կոչի Ամուրն Կապոյտ. * Եւ նա ամրացեալ էր 'ի ձորն աշոցնեաց ( այս է Արշարունեաց, որ է նոյն իսկ Երասխաձոր գաւառ ), յամուրն Կապոյտ կոչեցեալ ։ Նոյնպէս և յայսմաւ. մարտի 30. * Գտեալ մանուկ մի որդի հմայեկայ եղբօր որդւոյն վարդանայ գրիգոր անուն, որ ունէր զամուրն Կապուտ, և զՁորն Երասխայ, զԿաղզըւան, զկարս, և զբասէն ։ Եւ ստորև. * Եկաց մնաց սբ խաչն ( նունեայ ) 'ի Կապուտ բերդն զբազում ժամանակս ։ Եւ վարդան 'ի պատմելն վասն նոյն խաչին գրէ. * Ազդ արարեալ մամիկոնեանն գրիգորոյ՝ որդոյ հմայեկի, տարաւ 'ի Կապոյտն կոչեցեալ բերդ, և անտի փոխեցաւ 'ի վանանդ, և կոչեցաւ Վանանդայ խաչ ։

Ոչինչ ընդդէմ երևի նոյն համարիլ զայս Կապոյտ բերդ կամ Ամուր, ընդ ամուրն՝ զոր եղիշէ յանուն Կապոյտ լերին յիշէ Է. Թղթ. 125 ։ * Յառաջ խաղային 'ի Միջոց աշխարհին, մարտ եդեալ կռուէին ընդ մեծ ամուրս Կապոյտ լերինն ։ Քանզի Միջոց աշխարհի զայրարատ կոչէն նախնիք, որպէս ծանուցաք 'ի վեր անդր, յարմարի արշարունեաց կամ երասխաձոր գաւառին այրարատոյ, ուրանօր էր այս բերդ ։ Իսկ կապոյտ զլեառն անուանել, ոչ ընդդիմանայ և անուան բերդին, քանզի զլեառն յանուն բերդին և քաղաքին անուանել, կամ զբերդն յանուն լերին անուանել, հասարակ է և յա-

նուանակոչութիւն այլոց տեղեաց ։ Պարսիկք յարձակեցան յայնժամ 'ի վերայ բերդիս յարտազ գաւառէ եկեալ՝ ուր եղև պատերազմն վարդանանց, բայց ոչ կարացին տիրել ։

Ընդարձակող վարդանայ աշխարհագրի նոյն դնէ զսա ընդ բերդին արտագերից՝ յասէն ։ Յայրարատ է * և բերդն Կապուտ՝ որ կոչի Արտագերեից ‖ ։ Նոյնպէս դնի և յաշխարհագրական բառարանի՝ որ հաւաքեալ է ըստ մեծի մասին 'ի վարդանայ և յընդարձակողէ նորին ։ արդարև նոյնութիւն գաւառին և ամրութիւն բերդին՝ յարմարին երկոցունց, այլ միայն վկայութիւն ընդարձակողին վարդանայ ոչ կարեմք զայս ստուգել ։

Կապուտկող ։ առ կիրակոսի գրի Կապուտկող, որպէս և առ մինասայ համթեցւոյ Թղթ. 38 ։ Մենաստան շինեալ 'ի Ժ. դարուն՝ զորմէ ասողիկ Գ. Է. Շինեցաւ * և վայելչագարդ տեղին՝ որ Կապուտաքարն անուանի յարշարունեաց գաւառին ‖ ։ Յայս բան ոչ անուանի Մենաստան ։ բայց նախընթաց և յետագայ բանք յայտնի ցուցանեն լինել մենաստան ։ Նա մանաւանդ և շինող նորին ակնարկէ լինել զհայրն սարգիս, զի յետ գրելոյ՝ թէ 'ի սարգսէ շինեցաւ Սանքն Հնձուց, յաւելու զկնի զշինութիւն Կապուտաքարին և զՊարեվանաց առանց ինչ նշանակելոյ զշինող նոցին, իբր 'ի մի և 'ի նոյն սարգսէ շինեալ ։

'Ի նմին գաւառի դնէ և կիրակոս՝ յասէն վանս հալածեալ կրօնաւորացն 'ի ռոմանոս կայսերէ ։ * Եկեալ յաշխարհս հայոց յաւուրս աբասայ որդւոյ սմբատայ՝ հաստատեցին վանորայս զԿամրջաձոր, և զԿապուտ քար 'ի գաւառին արշարունեաց հռչականուն ‖ ։ Յանուանէ որ երևի լինել կամ 'ի նմին 'ի Կապոյտ բերդին, կամ արտաքոյ 'ի մօտակայս ։

Կամրջաձոր ։ Ուխտ շինեալ 'ի Ժ. դարուն, զորմէ ասողիկ Գ. Է. Շինեցաւ * Նախ առաջին մեծահռչակ ուխտն Կամրջաձոր 'ի գաւառին արշարունեաց, որոյ առաջնորդ հայր յովհաննէս ‖ ։ Ստորև կոչէ և Կամրջոյ ձոր ։ * Արդ եկեալ բնակեցաւ յառաջասացեալ տեղին Կամրջաց ձոր ‖ ։ Նոյնպէս և լաստիվերտցին գլ. Բ. * Սամուէլ որ Կամրջացն ձորոյ վանաց առաջնորդութիւն հովուէր ‖ ։ Յորմէ երևի լեալ բնիկ անուն տեղւոյն, և յանուանէ տեղւոյն և ուխտն յորջորջեալ ։ Այս յովհաննէս նախկին առաջնորդ՝ հալածեալ էր յեգերացւոց գաւառէն

ամենայնիւ՝ թէ և հրձիգ արարին զբերդն 'ի հրամանէ շահպհոյ ։

Այս առումն բերդիս՝ պատճառ եղև առման և կործանման և այլոց երևելի քաղաքաց և բերդից մեծին Հայոց ։

Կապոյտ, կամ Կապուտայ ։ Բերդ զօրաւոր, զորմէ յոհաննէս կաթողիկոս յասէն վասն ա. սմբատայ. * Այնուհետև երթեալ յամրոցս քարանձաւին 'ի Կապուտայ՝ որ 'ի ձորն երասխայ, անդ դարեալ դադարէր, վասն զի անառիկ իսկ էր նա 'ի մարդկանէ ‖ ։ Զոր երասխայ յայսմ վայրի՝ կոչի նոյն իսկ Երասխաձոր գաւառն, որպէս յայտ է 'ի նորին բանից յոհաննու կաթողիկոսի, որ սուղ ինչ յառաջ գրէ վասն նոյն սմբատայ. * Երթեալ ղօղէր յամրոց վայրս յԵրասխաձորոյ ‖ ։ Կապուտայ անուանի նաև 'ի պատմութեան Թովմայի արծ. յերկրորդ վարս դադկայ՝ յասէլն վասն սմբատայ. * փախստեայ եղեալ ամրանայր 'ի բերդին Կապուտայ ‖ ։ Այլ առ ստեփաննոսի օրպ. գլ. լԳ. 'ի նմին պատմութեն սմբատայ. կոչի Ամուրն Կապոյտ. * Եւ նա ամրացեալ էր 'ի ձորն աշոցնեաց ( այս է Արշարունեաց, որ է նոյն իսկ Երասխաձոր գաւառ ), յամուրն Կապոյտ կոչեցեալ ‖ ։ Սոյնպէս և յայսմաւ. մարտի 30. * Գտեալ մանուկ մի որդի հմայեկայ եղբօր 'որյն վարդանայ գրիգոր անուն, որ ունէր զամուրն Կապուտ, և զԶորն Երասխայ, զԿաղզըւան, զկարս, և զբասէն ‖ ։ Եւ ստորև. * Եկաց մնաց 'որ խաչն ( նունեայ ) 'ի Կապուտ բերդն զբազում ժամանակս ‖ ։ Եւ վարդան 'ի պատմելն վասն նոյն խաչին գրէ. * Ազդ արարեալ մամիկոնեանն գրիգորոյ՝ որդոյ հմայեկի, տարաւ 'ի Կապոյտն կոչեցեալ բերդ, և անտի փոխեցաւ 'ի վանսանդ, և կոչեցաւ Ս անանդայ խաչ ‖ ։

Մինչ ընդդէմ երևի նոյն համարիլ զայս Կապոյտ բերդ կամ Ամուր, ընդ ամուրան՝ զոր եղիշէ յանուն Կապոյտ լերին յիշէ Է. Թղթ. 125 ։ ‖ * Յառաջ խաղային 'ի Միջոց աշխարհին, մարտ եդեալ կռուէին ընդ մեծ ամուրս Կապոյտ լերինն ‖ ։ Քանզի Միջոց աշխարհի զայրարատ կոչէն նախնիք, որպէս ծանուցաք 'ի վեր անդր, յարմարի արշարունեաց կամ երասխաձոր գաւառին այրարատոյ, ուրանօր էր այս բերդ ։ Իսկ կապոյտ զլեառն անուանել, ոչ ընդդիմանայ և անուան բերդին, քանզի զլեառն յանուն բերդին և քաղաքին անուանել, կամ զբերդն յանուն լերին անուանել, հասարակ է և յա-

նուանակութիւն այլոց տեղեաց ։ Պարսիկք յարձակեցան յայնժամ 'ի վերայ բերդիս յարտաղ գաւառէ եկեալ՝ ուր եղև պատերազմն վարդանանց , բայց ոչ կարացին տիրել ։

Ընդարձակող վարդանայ աշխարհագրի նոյն դնէ զսա ընդ բերդին արտագերից՝ յասելն . Յայրարատ է * և բերդն Կապուտ՝ որ կոչի Արտագերեից ‖ ։ Նոյնպէս դնի և յաշխարհագրական բառարանի՝ որ հաւաքեալ է ըստ մեծի մասին 'ի վարդանայ և յընդարձակողէ նորին . արդարև նոյնութիւն գաւառին և ամրութիւն բերդին՝ յարմարին երկոցունց , այլ միայն վկայութիւն ընդարձակողին վարդանայ ոչ կարեմք զայս ստուգել ։

Կապուտաքար . առ կիլիկոսի գրի Կապուտաքար , որպէս և առ մինասայ համթեցւոյ Թղթ. 38 ։ Մ'ենաստան շինեալ 'ի Ժ . դարուն՝ զորմէ ասողիկ Գ . 7 . Շինեցաւ * և վայելչազարդ տեղին՝ որ Կապուտաքարն անուանի յարշարունեաց գաւառին ‖ ։ Յայս բան ոչ անուանի Մ'ենաստան . բայց նախընթաց և յետագայ բանք յայտնի ցուցանեն լինել մենաստան . նա մանաւանդ և շինող նորին ակնարկէ լինել զհայրն սարգիս , զի յետ գրելոյ՝ թէ 'ի սարգսէ շինեցաւ Սանքն Հնձուց , յաւելու զկնի զշինութիւն Կապուտաքարին և զՊարեվանաց առանց ինչ նշանակելոյ զշինող նոցին , իբր 'ի մի և 'ի նոյն սարգսէ շինեալ ։

'Ի նմին գաւառի դնէ և կիրակոս՝ յասելն վասն հալածեալ կրօնաւորացն 'ի ռոմանոս կայսերէ . * Եկեալ յաշխարհս հայոց յաւուրս աբասայ որդւոյ սմբատայ՝ հաստատեցին վանորայս զԿամրջաձոր , և զԿապուտքար 'ի գաւառին արշարունեաց հուշականուն ‖ ։ Յանուանէ որ երևի լինել կամ 'ի նմին 'ի Կապոյտ բերդին , կամ արտաքոյ 'ի մօտակայս ։

Կամրջաձոր ։ Ուխտ շինեալ 'ի Ժ . դարուն , զորմէ ասողիկ Գ . 7 . Շինեցաւ * Նախ առաջինն մեծահռչակ ուխտն Կամրջաձոր 'ի գաւառին արշարունեաց , որոյ առաջնորդ հայր յովհաննէս ‖ ։ Սորև կոչէ և Կամրջոյ ձոր . * Արդ եկեալ բնակեցաւ յառաջասացեալ տեղին Կամրջաց ձոր ‖ ։ Նոյնպէս և լաստիվերտցին գլ. Ը . * Սամուէլ որ Կամրջացն ձորոյ վանաց առաջնորդութիւն հովուէր ‖ ։ Յորմէ երևի լեալ բնիկ անուն տեղւոյն , և յանուանէ տեղւոյն և ուխտն յորջորջեալ ։ Այս յովհաննէս նախկին առաջնորդ՝ հալածեալ էր յեգերացւոց գաւառէն

'ի պատճառս հակառակութեան հաւատոյ, ընդ իւր բե-
րեալ զնա խաչն հրաշագործ, որոյ նշանաց և ինքն իսկ
ասողիկ վկայէ ականատես լեալ 'ի բազում ախտաժէտս.
Յայնմ ժամանակի բնակեալ կային 'ի նմա միանձունք
300, ընդ առաջնորդութբ ոմն բարսղի, հասարակաց
ունելով զամենայն ։ Երրորդ վանահայր ուխտին իմաս-
տակն սամուէլ երևելի գտաւ գիտութեամբ և երաժշ-
տութեամբ ։ (1)

Կողբուան ։ Զայսմանէ յոհաննէս կաթողիկոս . * Գնաց
անտի յամուրն Երասխաձորոյ, 'ի գեօղն Կողզուան ‖ ։
Յայտ առնէ յայս բան Թէ էր գեօղ, այլ ունէր և բերդ ։
Մողնիկ կոչէ Մ.եան ։ Զայս և զվերագրեալ ամրոցս իմա-
նայ յոհաննէս կաթողիկոս յասելն վասն շահանշահ աշ-
տոյ . * Երթեալ գնայր զկողմամբք ամրոցայն Մշարու-
նեաց ‖ ։ Զ գաւառ սորա՝ նաև վարդան աշխարհագիր
համարի Երասխաձոր, կամ որ նոյն է Արշարունիք, յա-
սելն . * Զորն Երասխաձոր Կողզվան է ‖ (2). Մ.յոխնքն հին
գաւառն անուանեալ Զոր երասխոյ. այժմ է գաւառն կի
սահմանն կոչեցեալ Կողբուան, Թէպէտ ոչ ըստ բոլորին.
տես զոր գրեցաք 'ի ստորագրութ. վիշապաձորոյ ։ Սահ-
մանակից է այս գիւղ գաբեղենից ը յայսմաւ. մարտ. 6.
ուր ասի . * Եկեալ ոմն Թաթուլ և աւագ եղբայրն
իւր վարոս 'ի սահմանս գաբեղենից՝ մերձ գեղաքաղաքին
Կողզըւանոյ ‖ (3) ։ Ըստ մեռան ըստ գրելոյ վարդանայ՝
գրիգոր որդի վասակայ Թոռնին ապիրատոյ . * Զկնի
աւուրց նահատակեցաւ 'ի Կողըզւանն՝ զերծուցեալ 'ի
մահուանէ զամիրայն անոյ զմանուչէ ‖ ։

Վարդէն հայր ։ Վարդապետարան անուանի 'ի Է. դա-
րուն, նաև 'ի ժԴ. դարուն յաւուրս ստեփաննոսի օրպ.
զորմէ գրէ նոյն ինքն ստեփ . գլ . ԽԸ . վասն կոմիտասայ
կաթուղիկոսին . * Զանց արարեալ զամենայն վարդապե-
տօք կաթողիկոսարանին, նաև զվարդապետարանին հայ-

(1) Առ կիրակոսի յերկուս օրի-
նակս գրի անուն տեղւոյս Կորճ-
ղոյոր, իսկ առ վարդ". աշխարհա-
գրի յերկուս ձեռ". գրի Կորճղո-
յոր, և գնի 'ի կարգս վանորէից՝
որ 'ի շիրակ գաւառի ։ Բայց 'ի
տպ. և յայն ձեռագիրս՝ որք ընդ-
արձակեալ են այլովք ստորագրու-
Թբ, ոչ գտանի անգէն այս անուն։
Որոյ վասն Թուի վրիպակաւ գրչի
ուրուք մուծեալ, իսկ առ մինա-
սայ համԹեցւոյ Թղթ. 38. և
առաւել սխալմամբ տպագրեալ է
անուն սորա Մորճողոյոր ։

(2) Յայլում օրինակի գրի
Կողզուան ։

(3) Զայն կրկնէ և. 'ի սեպտ.
30. և գնէ Կողզըւանոյ, որպէս գնի
և 'ի միում ձեռ". իսկ յայլում
ձեռ". գրի Կողզըւնոյ ։

ոյ՝ որ յԱրշարունիսն էր, զմանկունսն յորում ժողովեալ էին ճարտարք և գիտունք Հայոց, այն՝ որ յԱշրախաձորին է՝ զոր այժմ Մարդիկ Հայր կոչեն, յղէ (զեղբօրորդի իւր զԹէոդորոս) առ քերթողն սիւնեաց Մաթուսաղայ ||։

Նոր ուխտ և մենաստան, որպէս կոչէ Թովմա մեծոփեցին՝ Ա-կոր անուանեալ՝ որ հօրն Վարդէէ. յորմէ յայտ է թէ յանուանէ ուխտին հօր՝ որ չէր այնչափ ինչ հին յաւուրս ստեփաննոսի օրպ. կոչեցաւ և այս ուխտ Վարդէէ։ Նոյնպէս կոչէ և վարդան աշխարհագիր, յասելն. * Ձորն երասխայ Կաղզուան է, ուր կան ՚նք ուխտքն Մարդիկ հայրն, և ՚նք Թաթլու անապատն ||(1)։ Օ մակբայս առք՝ պարտ է յարակցել ՚ի Կաղզուան և ոչ ՚ի Ձորն երասխայ, զի Ձոր երասխայ է հին գաւառ՝ յորում անկանի Կաղզուան գեօղ, և ուխտն Մարդիկ հայր, այլ ոչ անապատն մերն Թաթլոյ. իսկ Կաղզուան է հին գեօղ, յաւուրց վարդանայ աշխարհագրի մինչև ցայժմ. է նաև նոր գաւառ, յորում անկանի և Մարդիկ հայրն, և անապատն մերն Թաթլոյ։ Տես զվարդիճեր ՚ի նոր հայաստան, թղթ. 121։ Սասն որոյ և Թովմա մեծոփեցի՝ կաղզուանայ տայ զայս ուխտ, ասելով. * Նորկու կրօնաւորք ՚ի ՚նք ուխտէն Կաղզւանայ ՚նք հօրն Մարդիկ ||։

Կարոց գեղ։ Յիշատակի առ ասողկայ Գ. 2. * Յայսմ ժամանակի երանելին տն Թադ., որ էր ՚ի գաւառէն արշարունեաց ՚ի Կարոց գեղջէ, վկայեալ վասն քնի քաջութեամբ կատարեցաւ ||։

Մքրձկոյս։ Յորմէ ասողիկ Գ. 2. յասելն վասն ապլաբասն ամբաստոյ որդւոյ մոակեր աշոտոյ. * Նա ապա արձակեալ ՚ի մէջ. թվլիս, եկն ՚ի հայս և շինեաց ձեռակերտ մի յԱրշարունեաց գաւառին, և անուանեաց Մքրձկոյս||։

Վրաստան։ Տեղի ՚ի հարաւային եզերս երասխ գետոյ, զորմէ ասողիկ Գ. 2. յասելն վասն շահապայ որդւոյ ...աղայի. * Նկեալ յԱրշարունիս գաւառ, իջանէ յեզերս երասխայ Գ հարաւոյ կուսէ ՚ի տեղի՝ որ այժմ ասի Վրա-

(1) Ցընդարձակութն վարդանայ աշխարհագրի այսպէս գրի այս բան. * Արշարունիք և Ձորն երասխայ Կաղզվան է. ուր կայ ՚նք ուխտն Թաթլոյ, և վարոսի վանքն. ուր զԹումաս առաքինորդ կացոյց. և Վարդիկ հայր է անդ, և գաւառն գաբեղենից ||։ Ցերկուս ձեռագիրս՝ որպէս և ՚ի տպագրեալն՝ վրիպակաւ մակբայս ոչք գնի վս գաբեղենից այսպէս. * Եւ Վարդիկ հայր է։ Անդ և գաւառն գաբեղենից ||։

ռաստունք ‖ ։ Անուանեցաւ այսպէս 'ի Թիւս Խ․ հազար զօ-րացն՝ որովք աբաս սպարապետ հասեալ 'ի վերայ շահա-պայ, խորտակեաց զզօրս նորա ։

Նախճրաձոր ։ Յիշատակի առ յովհաննու կաթողիկոսի․ * Իսկ արքայ դարձեալ չուէ գնայ 'ի գլուխ գագաթան Նրասխայձորոյ 'ի գեօղն Նախճրաձոր՝ անդ ձմերել ‖ ։

Ճերմ ։ Անկանի 'ի գլուխ անդ գաւառիս՝ ուրանօր աբաս Թագաւորն կարուց յելս Ժ․ դարուն շինեաց վանս ըստ ասողկայ Գ․ 17․ * Իսկ ապա խորհուրդ բարեաց կա-լեալ յանձին՝ շինել վանս ․․․ և ընտրեաց տեղի ընտրա-նաւ 'ի գլուխ Արշարունեաց գաւառին, որում Ճիրմն կոչիւր, և ընդարձակագոյն պարսպեալ որձաքար վիմօք, չորեքկուսի ձեւով, յիւրոց գանձուց մեծամծախ աշխատու-թբ յարդարեալ զամենայն շինուածն պայծառագոյնս՝ բնակու-թիւն կրօնաւորաց ‖ ։

Գիւղ Ճերմոյ յիշատակի և առ ղազարայ Թղթ․ 259․ բայց դնի լինել յարշամունեաց գաւառի ; որ Թուի լի-նել վրիպակ գրչաց, փոխանակ դնելոյ 'ի գաւառին ար-շարունեաց․ զի ասի վասն Խուրսայ գայեկորդւոյ ծննդեա-սեհի կամսարականի ։ * Իսր 'ի գաւառէն Արշամունեաց 'ի գեղջէն Ճիրմնց ‖ ։ Վասնզի և մերձաւորութիւն ան-ուանցն՝ զդոյն տայ մեզ կասկածել ։

Զարեհաւան ։ Գիւղ յիշատակեալ 'ի պատմութն գիւտի նշխարաց ՚ռբ լուսաւորչին որ կայ 'ի Ճառընտրի գրելոյ 'ի Թուին ո՟զ ։ * Հանգիպեալ լինի 'ի գաւառին աշարու-նեաց 'ի Զարեհանի գեղջ ‖ ։

ԲԱԳՐԵՒԱՆԴ ։

Առ բուզանդայ ուրեք Է․ 43․ գրի Բագրաւանդ, նաև ՟ի ձեռագրաց, և առ յովհաննու կաթողիկոսի ուրեք յասելն վասն շահնշահ աշոտոյ․ * Հասեալ 'ի վերայ խռովելեան զօրուն որ նստէին իսկ 'ի Բագրաւանդ գաւառի, որոյ Ճարակ զամենեսին զնոսին տայր ‖ ։ Այնպէս գրի ուրեք և առ Թովմայի արծրունւոյ ։ Այլուր առ յովհաննու կա-թողիկոսի գրի և առանց վերջին Դ տառի, յասելն վասն մեծին սահակայ․ * Առ քո վերափոխի 'ի Բագրաւան գա-ւառի, 'ի բլուրն կոչեցեալ գեօղ ‖ ։ Իսկ յայլ տեղիս ևս գրի Բագրեւան, որպէս տեսցես ստորև ։

Յիշատակի այս գաւառ և առ պտղոմեայ Է․ 13․

'ի Թուէն զգաւառս մեծին Հայոց, առ որում գրէ Սէնմարտինէ, իսկ յօրինակն բաղադրենեան եւս առաւել այլայլութիւն գրէ Սէնմարտինէ, զորոյ զտեղին դնէ ՟Ը արեւելս ականց տիգրիս գետոյ. այլ ըստ ճշգրիտ դրից՝ սահմանակից է արշարունեաց՝ որ էր առ երասխաւ. զոր յայտ առնէ լինելն երկոցունց սոցա 'ի վիճակի միոյ եպիսկոպոսի՝ որպէս գրեցաք յարշարունիս. որում անդէպ էր արդեօք լինել, թէ էին ընդմիջեալք այլովք գաւառօք, եւ տարակացք յիրերաց: Իսկ 'ի կողմն արամանայ գեղջն՝ սահմանակից է բասենոյ, եւ տուարածատափ գաւառին տուրուբերանոյ, զորմէ ստորեւ. նոյնպէս սահմանակից է ծաղկոտան:

Այժմ այս գաւառ գէթ ըստ մասին՝ կոչի Ալաշկերտ. առեալ 'ի հին եւ յուղիղ անուանէ Աղարշակերտ քաղաքին բագրեւանդայ. այլ վարդան աշխարհագիր զհին ուղիղ անունն 'ի կիր առնու փոխանակ նոր գաւառին՝ ասելով. * Բագրեւանդ գաւառն մանծկերտով (1) Աղարշակերտ կոչի ||: Թերեւս զի յաւուրս իւր չէր տակաւին աղճատեալ հին անունն, այլ զկնի եղեւ, պարտ է յաւելուլ 'ի բան վարդանայ՝ այժմ կոչի: Զի Աղարշակերտ գաւառ չիք գտանել առ նախնիս. այլ՝ քաղաք. իսկ գաւառ եղեւ 'ի յետագայ ժամանակս, զորոյ զանուն թէ եւ ուղղութիւն Աղարշակերտ հնչեսցուք, եւ ոչ թիւրութեամբ Ալաշկերտ, սակայն միշտ պարտ է համարել նոր գաւառ, եւ ոչ հին:

'Ի լերինս սորա հռչակաւոր է լեառն Նպատ, զոր յիշէ բուզանդ Ե. Դ: * Առ դու զեպիսկոպոսապետդ հայոց զներսէս. եւ ել նիստ 'ի վերայ Նպատ լերին յամուր եւ յանկասկած տեղւոջ ||: Եւ զկնի. * Իսկ թագաւորն պապ՝ եւ եպիսկոպոսապետն ներսէս՝ կային 'ի վերայ Նպատ լերինն ||: Կոչի սա եւ Նպատական. զորօրինակ առ բուզանդայ 'ի նոյն գլ: * Առ ընդ իւր զմեծ քահանայապետն ներսէս, եւ ելանէր նստէր 'ի վերայ Նպատական լերինն՝ եւ ամենայն զօրքն յունաց եւ հայոց իջանէին 'ի տեղի պատերազմին ||: Նպատական կոչի եւ առ ագաթ. թղթ. յնգ. ուր 'ի ձեռագրի գրի Նպատակ: Այս լեառն յիշատակի եւ առ աշխարհագիրս յունաց Նիֆատէս անուամբ:

(1) Մանծկերտ դնի յերկս ձե- կուս ձեռագիրս, եւ 'ի տպագրեալն: ռագիրս. իսկ Մանածկերտ յեր-

Զգաւառ սորա որոշակի յայտ առնէ Ղազար՝ լինել բագրեւանդ, յասելն Թղթ. 245. *'Ի գեօղն բագաւան, 'ի նաւհանգին (գաւառին) բագրեւանդայ, 'ի լանջակողման լերինն՝ որ անուանի ՙՆպատ‖: Ագրավն գիրք ժա. գծիրս սորա որոշէ՝ 'ի հարաւային կողմն Նպատայ դնելով զակունս տիգրիսի: Պտղոմէոս համարի զնպատ՝ մասն տօրոսի, դնելով զնոյն առ հիւսիսիւ բացագոյն յոյժ յապրս լեռնէ, որ ըստ ագրավոնի՝ անկանի յարեւելս կոյս հայաստանեայց մերձ 'ի սահմանս մարաց: Այլ որպէս Թուի, եթէ ագրավոն և եթէ պտղոմէոս համարին զնպատ գօտի լերանց, քան թէ առանձին ինչ լեառն որպէս ստորագրեն մերքն՝ դնելով առ ձիրաւ դաշտիւ. զի մեծն Ներսէս առ'ի տեսանել զմեծ պատերազմն պապայ արքայի ընդ պարսից՝ որ 'ի ձիրաւ դաշտի, ել 'ի գլուխ լերինն: * Ելերեւ եւեթ մեծն Ներսէս զայն ամենայն (տես խոր. գ. 37.) ել նա 'ի կատար լերին ՙՆպատայ. և ամբարձ զձեռն իւր յերկինս‖:

Հուշակաւոր գտաւ այս լեառն և առ հռոմայեցիս, զոր յիշէ վիրգիլիոս յերրորդ գիրս երկրագործութե. տող. 30: Ադդամ (առելով) զՆպատ: Այս է զընակիչս հայաստանեայց: Իսկ ովրատիոս գիրք բ. տող. թ. նաև զցրտութիւն սորա յիշատակէ. Սառնապատոյ կոչելով զՆպատ:

Եպիսկոպոս գաւառիս Տուրք անուն յաւուրս սըրբոյն վրթանեսի յիշատակի 'ի Թուղթն մակարայ երուսաղեմի հայրապետին, ուր կոչի նաև եպիսկոպոս բասենոյ. և որպէս ակնարկէ անդէն՝ կամէր սա անձին գրաւել նաև զարքեպիսկոպոսութեան պատիւ: * Պատմեալ եղև մեզ (ասէ զՏուրքայ Բագրեւանդեայ և բասենոյ եպիսկոպոսէ,) որ ... յանդգնագոյնս խորհի, եպիսկոպոս միայն աթոռաւ, և ընդ արքեպիսկոպոսին ինքեամբ անձին տայ պատիւ, զոր չէ արժան ընդունել‖:

Այլուր 'ի գիրս մեր ոչ ուրեք գտաք մի և նոյն լինել երբէք եպիսկոպոսական վիճակի Բագրեւանդայ և Բասենոյ. և թերևս զմասն ինչ բասենոյ ունէր 'ի վիճակին իւրում եպիսկոպոսն բագրեւանդայ յայնմ ժամանակի, որոյ վասն կոչի Տուրք՝ եպիսկոպոս երկոցունց գաւառացս: Բայց յաղագս արշարունեաց գաւառին լինելոյ զառաջինն ընդ եպիսկոպոսիւ բագրեւանդայ՝ ունիմք յիշատակութի 'ի գիրս, զոր և յառաջ բերաք 'ի գրեն զեպիսկոպոսացն արշարունեաց:

Աթոռն եպիսկոպոսական էր 'ի բագրեւանդ գաւառի, վասն որոյ և յանուն բագրեւանդայ յիշատակին նախնի եպիսկոպոսք երկուց գաւառացս բագրեւանդայ և արշարունեաց, և կամ 'ի յիշել զերկոսին՝ նախ Բագրեւանդ յիշատակի, և ապա արշարունիք՝ ըստ այսմ գլխաւոր խոր. գ. 31. կոչէ Եպիսկոպոս Բագրեւանդայ և Արշարունեաց: Նոյնպէս և բուզ. գ. 12. գրէ վասն 'որյն ներսէսի, թէ * Ձեռնադրեաց զայս խադ յեպիսկոպոսութի Բագրաւանդայ և Արշարունեաց ||: Եւ 'ի Թղթ. 170. գրէ վ. Մուրկայ ուրումն փեսայացելոյ խադայ, թէ * Օ կնի աներոյն իւր, նա կալաւ զաթոռն խադայ ||: Իսկ զԵզնիկ՝ եղիշէ և ղազար կոչեն սոսկ եպիսկոպոս Բագրեւանդայ: Եւ զնոյն ինքն զմովսէս խորենացի՝ աստղիկ բ. 2. կոչէ եպիսկոպոս Բագրեւանդ գաւառի: Այլ յետ մահուան նորին խորենացւոյ՝ յերկուս բաժանեցաւ աթոռն՝ կարգեալ այլ եպիսկոպոս և յարշարունիս, զորմէ գրեցաք անդէն:

Յետ անդ Ժ. դարուն այլազգիք ապականեցին զայս գաւառ ըստ մասին՝ յորժամ ժողովեալ էին ընդդէմ զօրաց կուրապաղատին դաւթի. * Վամբարօք և Ջահիւք (ասէ աստղ. գ. 38.) այրեցին զգիւղերն ամենայն զկողմն բագրեւանդայ յոլով չէնս որ ըստ արեւելից ||:

Վաղարշակերտ: Զայս գաւառ դնէ աստղիկ գ. 4. * Գնան 'ի գաւառն բագրեւանդայ, և առնուն զբերդն Վաղարշակերտ ||: Առ լաստիվ. գ. այլազգ գրի այս անուն: * Առաքէ զզաքարիա զոր յառաջ սակաւ մի յիշեցաք զեպիսկոպոսն Վաղարշաւկերտոյ ||: Յիշէ զսա և յոհաննէս կաթողիկոս Աշոտոյ և Աբասայ անուամբ. յասելն վասն յուսփայ ոստիկանի, թէ զթագաւորն գագիկ * Առաքէ յԱմուրն Վաղարշակերտի՝ պատնէշիւ պատել պաշարել և առնուլ զնա. որք և երթեալ գնացեալ իսկ, և 'ի բազում աւուրս մարտ ընդ Ամրոցին եդեալ, ոչինչ կարէին սասանել նմա ||: Այլ Ուռհ. անուամբ յիշէ զայս նոյն աստղիկ գ. 38. * Գնան ընդդէմ նոցա 'ի գաւառն Բագրեւանդ՝ բանակ մեծ ժողովեալ 'ի վաղարշակերտ քաղաքի ||: Նոյնպէս և լաստիվ. բ. * Եպիսկոպոս ոմն վրացի ազգաւ որ նստէր 'ի քաղաքն Վաղարշակերտ (1) ||:

(1) Զանուն վրացի եպիսկոպոսին 'ի գլ. գ. կոչէ Զաքարիա. զոր և եպիսկոպոս կոչէ Վաղարշակերտոյ: Յիշատակի 'ի յիշատակարանս ինչ գրոց Անանիա եպիսկոպոս Ալաշկերտոյ, որ Թուի

Այլ 'ի հին վարս մեզ ոսկեանց 'ի Ճառընտրի գրի Ադդէ, ուր ընդարձակ ես ստորագրի դիրք նորա, և առաջին շինող աւանին յիշատակի յանուանէ։ * Նշրթեալ (ասէ սուքիասանց աշակերտելոց ոսկեանց) կրօնաւորեցան 'ի Լեռինն որ կոչի Ծըրաշխ մերձ յաճն աղբեր ուրումն յորդագունի‖։ Նա՛ փոքր մի զկնի. * Սարեցան յարեւմուտս կոյս 'ի հարաւոյ կուսէ առ ստորոտով (նոյն) լերին, և գտեալ տեղի բարեխառն մօտ 'ի դաշտաբերանն՝ յորում բխէին աղբիւրք ոչ սակաւք ընդդէմ հարաւոյ, յորս երբեմն հասեալք նստան հանդուցեալք 'ի տեղւոյն բարեխառնութիւն, որ և արգելանոցս իւրեանց արարին գետնափորս դարիւք ... Բայց յետ փոքր ինչ ժամանակի և 'ի տեղին շինեալ աւան մեծ 'ի Թագաւորէն Վաղարշայ՝ անդ զորդի իւր բնակեցուցանէր սակս տեղւոյն բարեխառնութեան, Վաղարշակերտ յանուն իւր կոչեցեալ։ Իսկ լեառն Ջրաբաշխ յանուն գլխաւորին նոցա Սուքիասու Սուկաւ կոչեցաւ‖։

Ունէր եկեղեցի յանուն Ածածնի՝ շինեալ 'ի Է. դարուն, զորմէ գրէ յոհաննէս մամիկոնեան 'ի պատմութե ծիծառնէի խաչին։ * Ընդ այն ժամանակս ներսէս հայոց կաթողիկոսն՝ որ 'ի տայոց էր ծննդեամբ (այն է Գ. ներսէս.) այն՝ որ զՎաղաշկերտոյ (այսինքն Վաղարշակերտոյ) Սբ Ածածինն շինեաց, եկն 'ի տեսութիւն մեծ խաչին‖։

Բագաւան, Յառաջնոց Բագաւառիճ և Աշան անուամբ յիշատակի, իսկ 'ի յետագայից՝ Դուեօղ։ Անկանի յայս գաւառ, որպէս յայտնի դնէ աստղիկ Բ. 2. յաւելն. * Նա էր անդ այր մի 'ի Բագրեւանդ գաւառէ 'ի Բագաւան գեղջէ‖։ 'Ի պարթեւաց բարբառ կոչի Դիցաւան. * Գայր հասանէր (ասէ ագաթ. 'ի Թղթ. յկե. վասն տրդատայ.) 'ի քաղաքագիւղն Բագաւան, որ անուանեալ կոչի 'ի պարթեւարէն լեզուէն Դիցաւան (1)‖։ Մասն որոյ և սուղ ինչ ստորև կոչէ սոսկ Դիցաւան։

Իսկ Խորենացւոյն կոչի սա Բագնաց աւան, որ է նոյն, զոր յայտ առնէ Նախ՝ նոյնութիւն անուան, զի Բագնաց աւան, և Դից աւան 'ի նոյն հայլին բան պաշտաման։ Երկրորդ՝ գաւառն, զի Խորենացին 'ի նմին Բագրեւանդ գաւառի դնէ և զԲագնաց աւանն, ուր էր Բագաւան.

լինել Աստուածոց. այլ ոչ է հնագիր մատեանն, յորում և չիք Թըւական։

(1) Որպէս Թէ ասիցէ. պարԹեւք կոչէին յայն անուն՝ զոր Թարգմանեալ 'ի նոյն պարԹեական լեզուէ 'ի հայ, նշանակէ Դից աւան։

Երրորդ՝ զի զոր ինչ տօն գնէ ագաթանգեղոս կատարել հեթանոսաց 'ի Բագուան կամ 'ի Դիւց աւանի, զնոյն խորենացին պատմէ լինել 'ի Բագնաց աւանի։ Ըստ բուզանդայ ըստ ձեռագրաց եւս Լուշի Բագաւան, զորմէ ստորեւ. սոյնպէս գրի 'ի յունականն ագաթանգեղոսի, կամ ըստ յոյն հնչման Աշտաւան (1)։

Նոյն կասկածիմք լինել և որ առ խորենացւոյն Բ. 74. յիշատակի Բագաւան. մի՛ զի անդէն 'ի միում ձեռագրի գրի Բագուան, և երկրորդ՝ զի գնէ 'ի նմին աւանի լինել պաշտօն որմզդական, որ յարմարի այսմ (2)։ * Ո՛ հուրն որմզդական (ասէ) որ 'ի վերայ բագնին՝ որ 'ի Բագա-

(1) Վարդան աշխարհագիր գրէ վս սորա. * Բագուան աւանն Բագրաւանդայ բերդն է 'ի վերայ ախուրեան գետոյ. աւանն գիւղաքաղաք ասի ||։ Եթէ Բագրաւանու խմանայ զգաւառն, որպէս թէ ասել՝ Բագուան բերդն է 'ի Բագրաւան, այսինքն՝ 'ի Բագրեւանդ գաւառին. ընդդէմ է դնել 'ի վերայ ախուրեան գետոյ. զի բագուան՝ որպէս եդաք 'ի վերոյ՝ է 'ի վերայ եփրատայ, և ոչ ախուրենայ՝ որ է վտակ ինչ որ զեղու յերասխ գետ։

Յայլում ձեռ". գնի ուրոյն ուրոյն։ * Բագուան աւանն, Բագրաւանդայ բերդ 'ի վերայ ախուրեան գետոյ ||։ Որպէս թէ յայրարատ էն զանազան տեղիք՝ Բագուան աւանն, և բերդն Բագրաւան գաւառի։ Բայց և այնպէս՝ այլևայլ եդեալ զերկոսին զասս 'ի միմեանց, ոչ ուղիղ թուի դնելն 'ի վերայ ախուրենոյ, զոր ոչ կարէ ձգել բագրաւան գաւառն, և ոչ բերդ ինչ նորա։

Այլազգ գնէ ընդարձակողն վարդանայ. * Բագուան աւանն (ասէ) բագարանայ բերդն է 'ի վերայ ախուրեան գետոյն, զոր երուանդ շինեաց, և անդ փոխեաց զաթոռ հայոց թագաւորացն. աւանն գիւղաքաղաք ասի ||։ Որպս թէ կամելով ասել. Այս բագուան է բերդն բագարանու. որ է չարաչար շփոթութն, զի բագարան շինեալ յերուանդայ առ ախուրենաւ՝ էր յարշարունեաց գաւառի, իսկ բագուան էր 'ի բագրեւանդ գաւառի առ եփրատաւ, և այն՝ ոչ եթէ բերդ, այլ աւան։

(2) Քանզի խորենացին յայն բան ակնարկէ արտաշրի զայրարատ նահանգ 'ի կարգի եդեալ և շինեալ՝ որ էր ընիկ արքունական երկիր, կեդրոն հայաստանեայց, յորում և էր այս բագաւան. և ոչ զփայտակարան զհեռաւորն յայրարատոյ, յորում էր այլ բագաւան, բայց գաւառ, և ոչ քաղաք. թէպէտ և ժգ. գաւառն փայտակարանու կոչեցեալ յանուն որմզդայ, ցուցանէ թէ և յայն կողմանս առաւելութն իմն կատարէր պաշտօն որմզդայ։

Եւ ևս զի և յայսմաւ. 'ի նաւասարդի ա. գնէ կատարել հայոց զտօն արամազդայ, կամ որ նոյն է՝ որմզդայ 'ի ժամանակս հեթանոսութե, յորում աւուր կատարէր և տօն 'ի բագուան։ Միայն զի յայսմաւ. նաւասարդի 1. կմ օգոստ. 11. սխալի՝ յորում զայս տօն արամազդայ ցուցանէ լինել 'ի տեղիս մեհենիցն յաշտիշատու, զոր և շփոթէ ընդ գլակայ վանաց, ուր ագաթ. թղթ. յկե. գրէ՝ թէ սբն գրիգոր 'ի 7 սահմի ամսոյ հրամայեաց կատարել զտօն սբց, յորմէ մարթ է կարծել թէ և տօն հեթանոսաց յայնմ վայրի յաշտիշատու 'ի նմին սահմի ամսեան կատարիւր։

ւան՝ անշէջ հրամայէ (արտաշիր արքայ պարսից) լուցանել‖։

Այս աւան կառուցեալ է 'ի նպատ լերին՝ առ որոյ ստորոտով անցանէ եփրատ. յայս առնէ զայս ագաթանգեղոս 'ի ճկզ. ուր նախ գրէ վասն գրիգորի. * Այս գայ հասանէ յանուանեալ դիցաւանն‖։ Նոյն գլխի. * Այլ հասանէր առ ստորոտովն նպատական (կամ ըստ ձեռ". Նպատակ) լերինն, ընդառաջ լինէր թագաւորն ամենայն զօրօքն համդերձ առ ափն եփրատ գետոյն‖։ Այլ ինքն սբն գրիգոր կամելով ճանապարհորդել 'ի Դից աւան՝ ուր սպասէր նմա տրդատ, եկն եհաս առ ստորոտով նպատ լերին, ուրանօր ընդառաջ ել թագաւորն առ եփրատաւ։ Զի աւանն անկանէր ոչ առ ստորոտով, այլ ընդ դաւ 'ի վայր նոյն լերին. վասն որոյ յետ մկրտելոյ տրդատայ և ժողովրդեան 'ի գետն անդ եփրատ, իբրև 'ի գետոյն դառնալ կամէին յեկեղեցին որ 'ի Դից աւանն, հարկ եղև ելանել 'ի վեր, որպէս գրէ նոյն ագաթանգեղոս 'ի թղթ. ճհը. * Նոյն նոքա 'ի վեր յաւանն դաւանոյին. . . Ելեալ 'ի վեր 'ի տէրունական տունն դաւանոյին‖։

Այլ բնիկ տեղի աւանին էր 'ի լանջս կամ 'ի կուրծս անդ լերին՝ զոր բացայայտ ստորագրէ ղազար. թղթ. 245. * Նոյն լուեալ զայսպիսի բանս անօրէն դատաւորացն 'ի մէջն յաղդայ, սրով կտրել զգլուխ երանելոյն հրամայեցին մերձ 'ի տեղի սբ մատրանն առաքելանման նահատակին սբյն գրիգորի, 'ի գեօղն Բագաւան 'ի նահանգին բագրևանդայ, 'ի լանջակողման լերինն՝ որ անուանի Նպատ, մօտ 'ի սբ տեղի մատրանն՝ որպէս երկու քարընկեցօք‖։

Ի ժամանակս հեթանոսութեան երևելի էր 'ի նմա գերեզման մաժանայ քրմապետի, եղբօր վերջին տիգրանայ, ուր էր բագին և իջևան 'ի հիւրընկալութիւն. յորում և կատարիւր տօն մեծ 'ի ա. աւուր նաւասարդի։ Այլ թէ ո՛ շինեաց զբագինն, և ո՛ կարգեաց զտօնն, գրէ խորենացին. Բ. 63. * Պատմէ (ասէ՝ բարդածան) 'ի մեհենիցն պաշտամանց, վերջին տիգրանայ արքայի հայոց պատուեալ զգերեզման եղբօրն իւրոյ մաժանայ քրմապետի 'ի Բագնացն աւանի որ 'ի Բագրևանդ գաւառի՝ բագին 'ի վերայ գերեզմանին շինեալ, զի 'ի զոհիցն ամենայն անցաւորք վայելեսցեն, և ընդունիցին հիւրք երեկօթիւք. յորում և զկնի վաղարշ տօն աշխարհախումբ կարգեաց 'ի սկզբան ամի նորոյ 'ի մուտն նաւասարդի‖։

Նաւզինն էր յանուն վանատրի չաստուածոյն Հիւրընկալութեան. և տօնն կատարիւր վասն նորոյ ամին և նոր պտղոց. իսկ ՚ի մեր գրիգոր շինեալ անդէն եկեղեցի՚ եդ զմասն ինչ ՚ի նշխարաց սրբոյն յոհաննու և աթանագինեայ, և հրամայեաց զտօն նոցա կատարել անդէն. պատմէ զայս ագաթանգեղոս ըստ մասին ՚ի թղթ. յճ. յասէն. * Եւ եդ անդ (սուրբն գրիգոր) հիմունս, և շինեաց եկեղեցի, և զնշխարս զոր ունէր յոսկերաց սրբոյն՝ ՚ի տեղւոջ նախկին տանն բնակեցուցանէր ||: Եւ ըստ մասին ՚ի թղթ. յճը. * Եւ զյիշատակ վկայիցն բերելոյ ժամադրեաց ՚ի տօն մեծ հուչակեալ յառաջագոյն կարծեցեալ սնոտեացն պաշտաման (՚ի ժամանակի դիցն ամանորաբեր նոր պտղոց տօնին, հիւրընկալ դիցն վանատրի, զոր յառաջագոյն իսկ ՚ի նմին տարւոջ պաշտէին, յօր ուրախութեան նաւասարդ աւուր), զի ժողովեալ ՚ի յիշատակ մեծի երանելի մկրտչին յովհաննու, և զօր վկային քի զաթանագինէին յայնմ աւուր խմբել ՚ի նմին յաւանի ||(1):

Յիշատակի այս տօն և ՚ի բուզանդայ. դ. 15. յասէն. * Եւ յայնմ աւուր տօն դիպեցաւ յիշատակի մեծին յովհաննու, որ ՚ի գրիգորէ և ՚ի տրդատայ յաւանին բագաւանին կարգեալ էր ||: Պաշար զայս եկեղեցի թղթ. 242. կոչէ ՄԷ տեղի տան նահատակին Գրիգորի. իսկ փոքր ինչ ստորև կոչէ Մ՚ատուռն սբ̄յն Գրիգորի. զորոյ զբանս յառաջ բերաք ՚ի վերոյ: Յորմէ երևի՝ թէ մենաստանն որ էր աստ, զկնի շինեցաւ. զի ՚ի յետագայից միայն յիշատակի, զորօրինակ ՚ի յովհաննէ կաթողիկոսէ, յասէն. * Եւ վասն զի ընդ նորօք նուաճեալ էր գաւառն բագրևանդ, ընդ այն ապա զմի ՚ի պատուաւորաց իւրոց ոստիկանն առաքէ. որոյ երթեալ հասեալ ՚ի վանս միայնարանի սրբոյն գրիգորի՝ որ ՚ի գեօղն բագուանու, երեկօթս անդ առնէր ||: Եւ ՚ի սամուէլէ՝ յասէն. * Կոտորումն ուխտի սրբոյն գրիգորի ՚ի բագրևանդ ՚ի բագուան ||:

(1) Հիւրընկալ և վանատուր՝ են մականուանք որմզդայ, այն է արամազդ կամ դիոս. զի հեթանոսք համարէին զարամազդ իբր ջան պաշտպան հիւրընկալութեան, և վրէժխնդիր անիրաւութեանց եղելոց առ հիւրս: Աթենացիք քանզի պատուէին զհիւրս, առանձին ինն պաշտէին զդիոս սովին հիւրընկալ մականուամբ, ըստ որում և նախնի հայք ՚ի բագուան: Եւ որպէս կարծէ տօսսուէ՝ սամարացւոց ևս առ հիւրընկալն դիոս նուիրեալ էր զիւրեանց տաճար որ ՚ի գարիզին: Նաև հիւրընկալութեան տօն համօրեցւոց՝ անուանեալ Լէքդիսդէռնիում, կատարեցաւ երբեմն յանուն դիոսի, հերմէսի, և իրասայ, որպէս վկայէ վալէրիոս մաքսիմոս:

Կոչեցաւ այս մենաստանս յանուն 'Սբյն Գրիգորի, ըստ որում եկեղեցին որ հիմնեալ էր 'ի սբյն Գրիգորէ: 'Ի սմա գտաւ ներքս չինօղ 'ի տօնի վարդավառին ու չխարհաժաղով բազմութբ, որպէս գրէ Կիրակոս. առ որով եղև կարգաւորութիւն շարականաց: Յետ սորա Ը. դարուն յաւուրս յովարայ կաթողիկոսի փարթամացեալ էր ոսկի և արծաթի սպասուք, զորս առ 'ի յափշտակել ոստիկան ոմն զրպարտութբ եւ կոտորել զմիաբանս. զորոց զթիւ աւելի դնէ յովհ. կաթ. քան զ40 այր, բաց 'ի փախուցելոցն որք էին սակաւք (1): 'Ի Նազուանէ էր և սիոն կաթուղիկոս՝ ըստ գրելոյ Կիրակոսի: Այժմ կոչի սա Խուչքէլիսա՝ մերձ 'ի տխատին իբրև 3 ժամու, զորոյ զշինութենէ եկեղեցւոյն տես 'ի Նոր Հայաստան. թղթ. 116: Երկոքումբք պանծալի ցուցաւ այս գեօղ և եկեղեցի քան զայլս. մի՝ զի աստանօր առաջի գեղջս 'ի Ջուրմն անդ եփրատայ՝ եղև մկրտիլ տրդատայ հանդերձ արքայազնովդ բանակաւն, և երևումն սաստիկ լուսոյ 'ի նմանութիւն սեան՝ խաչ ունելով 'ի գլուխ, (զորմէ տես յագաթ. 'ի թղթ. ՃՀա:) Երկրորդ՝ յայսմ վայրի մեկուսացաւ 'Սբն Իսահակ, յորժամ 'ի բաց հանին զնա 'ի Հայրապետութէ, որպէս պատմէ Խորենացին. Գ. 66. * Անքն կոչում 'ի բագրևանդ (2) գաւառի, 'ի տեղւոջն՝ ուր ծագեաց յերկնուստ լոյսն 'ի մկրտել սբյն Գրիգորի զտրդատ արքայ և զբոլոր Հայսն‖:

Զարեհաւան: Քաղաք մօտ 'ի բագուան, յիշատակեալ առ բուզանդայ, առ որում ուրեք գրի Զարեհաւանդ. և այլուր 'ի Դ. 58. Զարեհվան (3): * Ուր զկանայս ազատացն և նախարարացն զփախուցելոց՝ հրամանն տայր (Շապուհ) անցել յասպարէզն՝ որ էր 'ի Զարեհվան քաղաքի‖: Ծաղկեալ էր սա բազմութբ բնակչաց, այլ զորք Շապհոյ պարսից արքայի առեալ կործանեցին յաւուրս Բ. արշակայ: * Ըստ առնուլն (տես բուզ. Դ. 55.) և զքաղաքն բագրևանդայ Զարեհաւան, և խաղացուցանէին անտի հինգ հազար երդ հայ, և ութ հազար երդ

(1) Զայս գիպուած ծանուցանէ և երևի Կիրակոս 'ի պատմութն անդ զոքարեայ սպասալարին թամարայ թագուհւոյն վրաց, որ զայլազգիս սպանանէր. ասէ. "փոխանակ քահանայիցն բազմաց զոր մորթեցին, և զարիւն արկին զպարսպօքն եկեղեցւոյն, որ մինչև ցայսօր սևացեալ երևի տեղին": Յայլում օրինակի գրի Բոգուանայ:

(2) 'Ի միում ձեռ". գրի Բագրատանդ:

(3) Որ է միևնոյն քաղաք. զի 'ի նոյն գլ. սուղ ինչ 'ի վերոյ գրի ըստ առաջնոյ օրինակի Զարեհաւան:

Հրէայ, և զքաղաքն ՚ի հիմանց տապալէին յատակէին ‖։ Յոյր սակս սորա Է. 43. զաւերակսն նորին յիշատակէ՝ նշանակելով և զգիրս։ * Էր բանակ նոցա ՚ի բագրաւանդ գաւառի ՚ի բագուան աւանի, որ է մօտ յաւերակսն Զարեհաւանդ քաղաքի ‖։

Այն այս Զարեհաւան յիշատակի և ՚ի ժամանակս վարդանանց առ Եղիշէի Է. 133. և առ Ղազարայ 107. յերկոցունց իսկ առանց ինչ յիշատակութեան գաւառի, քանզի առաջինն գրէ այսչափ ինչ վասն ուրացեալն վասակայ. * Խրատն էր նա և ՚ի մահ մոգուցն ՚ի Զարեհաւանի (1) ‖։ Իսկ երկրորդն Թէպէտ և Գիւղ անուանէ հայելով յառաջիկայ վիճակ Զարեհաւանի զկնի աւերմանն ՚ի շապհոյ, քանզի գրէ. * և ՚ի վաղիւն ՚ի ծագել արեւուն՝ արս ՚ի նոցանէ Թուով սպանեն սրով ՚ի գիւղն որ կոչի Զարեհաւան ‖։ Այլ ՚ի նմին տեղւոջ ոչ ընդ աղօտ ակնարկէ լինել և Զարեհաւանի մերձ ՚ի վանս սպարապետին՝ որ էր ՚ի բագրեւանդ։

Նոյն համարիմք ընդ այսմ զԶարուանա քաղաք յիշատակեալ ՚ի պտղ. ՚ի մեծ հայս. զոր օրդելլոս վրիպակաւ դնէ ՚ի փոքր հայս. Թէպէտ և դիրք տեղւոյն (որպէս և և այլոց բազում քաղաքաց պտղոմեայ.) ոչ համաձայնի Ճշգրտիւ տեղւոյն բագրեւանդայ։ Բայց զգիւղն համանուն զյիշատակեալն յասողկայ և ՚ի մագիստրոսէ, զոր և դնեն ՚ի ծաղկոտն գաւառի՝ ոչ կարացաք որոշել, միթէ ոք նոյն՝ Թէ այլ և այլ իցեն. քանզի ասողիկ կոչէ զնոյն Գ. 3. Զարեհաւան. յասելն. * Յաւուրս սորա երևեցաւ սմպատ Թոնդրակաց առաջինն ՚ի Զարեհաւան գեղջէ ՚ի ծաղկոտն գաւառէ ‖։ Իսկ մագիստրոս ՚ի Թղթ. որ առ կաթողիկոսն ասորւոց՝ կոչէ Զարեհաւան։ * Սմբատն այն... եկեալ ՚ի գաւառէն ծաղկոտնէ ՚ի գեղջէ Զարեհուանէ (2), եկեալ բնակեցաւ ՚ի Թոնդրակս ‖։

Զի ծաղկոտն գաւառ սահմանակից գոլով բագրեւանդայ՝ մարթ էր յետ ժամանակաց փոփոխիլ սահմանաց նոցա, և այնպէս մի և նոյն զարեհաւանի՝ որ էր նախ քաղաք բազմամարդ ՚ի սահմանին բագրեւանդայ, յետ կործանելոյն դարձեալ շինութի առնուլ ըստ մասին վիճակի գեղջ, և անցանել ՚ի սահմանակից գաւառն ծաղ-

(1) ՚ի տպ. բացատ գրի ՚ի Զարեհաւանի. իսկ յայլ օրինակ մի ՚ի Զարեհաւանի։

(2) Այսպէս գրի յերկուս օրինակս, իսկ ՚ի միում գրի Զարեհաւան։

կատան. այլ զտառագուԹն այսորիկ՝ յետադայից Թողցուք 'ի յայտ բերել:

Աշտարակոյ գիւղ: Գնի յայսմ գաւառի առ յովհաննու կաթողիկոսի, յամէն վանն ԺԲ. Ներսէսի կաթողիկոսի. * Սա զկնի սորա Ներսէս, 'ի գաւառէ բագրեւանդայ 'ի գեղջէ Աշտարակոց‖: Այնպէս գնի առ սոորկայ 'ի պատմէն զնոյն Ներսէսէ, ուր և գաւառն գրի Բագրեւանդ: Իսկ 'ի պատմէն զա̄. գէորգ կաթուղիկոսէ, յայլում գաւառի կացուցանէ զայս գիւղ՝ ասելով. * Տէր գէորգ յարագածոտնէ 'ի գեղջէ Աշտարակոց‖:

Արամոնոյ գիւղ: Զգիրս սորա ստորագրէ ղազար յայս բան. * Սա եկեալ հասանէին 'ի գիւղ մի՝ որոյ անուն էր Արամոնայ 'ի նահանգին բագրեւանդայ, մերձակայ սահմանակից բասենոյ և տուարածատափոյ‖:

Արծաք. և Ներգինուտ: Զերկոսին եւս յայս գաւառնէ ղազար՝ յասէն. * Կալեալ զնա 'ի գեօղն՝ որ կոչի Արծակ, տարեալ կապեցին 'ի միւսում եւս 'ի գեօղ յանուանեալ Ներգինոնս 'ի նմին բագրեւանդ գաւառի‖: Զարծակ յիշէ լաստիվ. Թ. գնելով փոքր ինչ հեռի 'ի բերկրոյ, յորմէ Թուի լինել այլ Արծակ 'ի վասպուրական նահանգի, կամ Թերեւս նոյն է ընդ արծկէի: Իսկ զՆերգկաց գիւղ յիշէ յովհաննէս կաթողիկոս, բայց դնէ 'ի մաղազ գաւառի, զորմէ տեսցես 'ի ստորեւ:

Ոսկէք: Գիւղ՝ յորում մեռաւ մեծն խաչակ, որպէս գրէ ղազար. * Վախճանեցաւ խաղաղական հանգստիւ 'ի գաւառին բագրեւանդայ, 'ի գիւղն՝ որ անուանեալ կոչի Ոսկէք‖: Աշակերտք նորա ածին զնա աստ 'ի հիւանդանալն իւրում: * Որպէս Թէ (տես խոր. Գ. 67.) 'ի վայր և ընդանեդոյն և զերծ տեղի մատուցեալ 'ի զօրացն պարսից կոտորաց զնոսա‖, որք բանակեալ էին յայնժամ առ բագնաց աւանի: Ոսկէք կոչի սա առ խորենացւոյն, և առ յովհաննու կաթողիկոսի. այլ կորիւն կոչէ Գիւղ Եկեղեցւոյ, դնելով զմահ սրբոյն խաչակայ, * 'Ի բագրաւանդ գաւառի 'ի գիւղն Ոսկոյց‖:

Սղեգեակ: Յիշատակի առ եղիշէի 181: * Արշէն երէց 'ի բագրեւանդայ 'ի գեղջէ Սղեգեկայ (կամ ԺԲ այլ օրին.) Սղեգեկոյ‖: Սա առ ղազարայ, յասէն. * Սաւոր զարշէն երէցն, որ էր 'ի գաւառէն բագրեւանդայ՝ 'ի գեղջէն որ կոչի Սղեգեակ‖:

Զրաւ: Գիւղ յիշատակեալ առ Թովմայի արծրունւոյ Ա̄. 14. * Հասեալ 'ի բագրաւանդ գաւառ 'ի Զրաւ

գեօղ, կամէր անցանել 'ի Թագաւորաբնակ տեղւոյն Հայոց ||։ Զկրաւ անուամբ այլք զդաշտն յիշատակեն առ Նպատ լերամբ, յորմէ երեւի թէ էր անուն գեղջ, եւ 'ի գեղջէն անուանեցաւ եւ դաշտն։

Ախուրեայ ճաղատ. կամ Ախորոյ աւան։ Յիշատակի առ Լաստիվերտցւոյն։

Տիրառինջ։ Գիւղ՝ զորմէ Յոհաննէս կաթողիկոս. * Ապա զՔրիստափոր 'ի գաւառէ Բագրեւանայ 'ի Տիրառինջ գեղջէ նստուցանեն յաթոռ Հայրապետութեան ||։ Ըստ աստղկայ ԺԵ. 2. դնի 'ի Հողմեան. * Տէր Քրիստափոր փիլիսոփայ, 'ի գաւառէն Բագրեւանդայ 'ի գեղջէ Տիրառնջոյ ||։

Խոռ։ Տեղի՝ 'ի դաշտի անդ Բագրաւանդ գաւառի՝ զոր յիշատակէ Բուզանդ Ե. 32. յասելն. * Նա էր թագաւորն Հայոց պատ բանակեալ 'ի դաշտին Բագրաւանդ գաւառի 'ի Խոռ անուն տեղւոջն ||։

## ԾԱՂԿՈՏՆ։

Յերկուս ձեռագիրս աշխարհագրութեան Խորենացւոյն գրի Ծաղկոտն. առ աստղկայ Ծաղկոտոտն. առ ղազարայ ուրեք՝ Ծաղկէոտն, եւ այլուր՝ Ծաղկոտն։ Որպէս թէ առ յաճախութեան ծաղկանց իւրոց անուանեալ Ծաղկոտ. այլ ուղղագոյն եւս թուի մեզ կոչեցեալ Ծաղկոտն, կամ Ծաղկէոտն, սակս ձգելոյ գաւառիս ընդ լերամբ ծաղկաց, (1) զոր օրինակ Արագածոտն, Մասեացոտն՝ որք ձգին ընդ Արագած եւ ընդ Մասիս լերամբ։

Սահմանակից է Բագրեւանդ գաւառին, եւ հանդէպ նորա. զի զօրք Հայոց եւ այլոց քրիստոնէից իբրեւ կամեցան բանակիլ ընդդէմ տաճկաց եղելոց 'ի Ծաղկոտն, բանակեցան 'ի Բագրեւանդ գաւառին, 'ի Վաղարշակերտ քաղաքի նորա. որպէս է տեսանել առ աստղկայ Գ. 38. զնոյն յայտ առնէ եւ այժմեան դիրք Աղաշկերտոյ՝ որ է Բագրեւանդ, եւ դիրք Ծաղկաց լերին։

Օդ սորա գոլով զովացուցիչ, էին 'ի նմա տեղիք ամառանոցաց. զոր յայտ առնէ ղազար. թղթ. 102. յասելն.

(1) 'Ի հին վարս ս̄ց Ոսկեանց 'ի Ճառընտրի. * Յետ մահուան առաքելոյն (Թադէոսի) երթեալ կրօնաւորեցան 'ի լերինս ուրեմն ծմակուտինս յակունս եփրատայ 'ի խառնուրդս ձորոց ուրեմն, որ սկիզբն առեալ իջանէն, որ կոչի Ծաղկէ. յորոյ յանուն եւ չէնքն կոչին մինչեւ ցայսօր Ոսկ Ծաղկոյ։

* Հասեալ ամիսք սօթոյն ջերմութեն՝ չու արարեալ ամենայն բազմութիւնն Հայոց 'ի տեղիս հովոց՝ գային հասանէին 'ի գաւառն որ կոչի Ծաղկոտն ||:

ՇԱՀԱՊԻՎԱՆ : Ի լեառն, որպէս է տեսանել առ Խորենացւոյն Գ. 23. * Պնելոյ բազում երկս քան զայն ունել ընդ նոյն աւուրս յիւրում լերինն՝ որ Շահապիվանն անուանի ||: Ստորև սոյն այս լեառն դասի նոյն ընդ Ծաղկաց լերին : * Տեսցես տեղիս քաջերես 'ի լերինն Ծաղկաց (1) զպարկացիր ջրով ||: Որով անկանի սա 'ի Ծաղկոտն գաւառի, որպէս և լեառն Ծաղկաց :

Յայս լեառն ժողովէր ամի ամի բանակ Թագաւորին 'ի Նաւասարդի՝ առ 'ի կատարել զտօնն ամանորաբեր, և զտօն յովհաննու՝ որոյ եկեղեցին էր 'ի մօտակայ աւանին Բագաւան . որպէս է տեսանել առ Բուզանդայ Գ. 15. * Նաև էր բանակ Թագաւորին (Է. Արշակայ) 'ի Շահապիվանի 'ի բուն բանակի տեղւոյն Արշակունեացն 'ի ներքոյ սիւսեացն, և 'ի վերայ ասպարիսացն ||: Յիշէ 'ի նոյն գլ. և ԶՏՕՆՍ ՆԱՒԱՍԱՐԴԱՑ, և զյիշատակ յովհաննու : Նոյնպէս և 'ի գործս ժողովոյն՝ զոր արար աստանօր Ա. յովսէփ կաթողիկոս՝ այս Շահապիվան կոչի Բանակետղ Թագաւորաց 'ի ժամանակի ամանորաբեր տօնին : * Պայլն ժողովեցին 'ի հրամանէ միաբանութե յեղեալ կէտն 'ի Շահապիվանի 'ի բանակետղ Թագաւորացն Հայոց 'ի ժամանակ ամանորաբեր տօնին ||.

Նոյն սորա թուի լինել անուն վանաց կամ իջևանի և բնակարանի իշխանին Շահապի յայսմիկ լերին, և յայնմանէ ընկալեալ լերին զիւր զանունն . զի և ուրեք 'ի պատմութեան ժողովոց ազգիս՝ ուրոյն գրի ՇԱՀԱՊ ԻՎԱՆ : Նաև առ Ագաթանգեղոսի 'ի Թղթ. յՃԹ. յիշատակի իշխանն ՇԱՀԱՊ ՇԱՀԱՊԻՎԱՆԻ :

Այս լեառն սեպհական էր նախ տոհմի ուրուք Գնունեաց, ապա էանց առ նախայիշատակեալ Գնէլ Արշակունի, վասն զի ժառանգութե եհաս նմա 'ի մայրենի հաւոյ իւրոյ՝ որ էր Գնունի, և նոյնպէս կոչէր Գնէլ, որպէս

(1) 'ի տպ. 'ի լերինս Ծաղկաց : Յայսմաւուրս Տր Իսրայէլի գրի յօգոստ. ԻԷ. վասն սրբց Ոսկեանց. * Որք բնակեալ 'ի լեառն Ծաղկոց յակունս Եփրատայ գետոյն 'ի ժամանակս Արտաշէսի արքայի ||: Եւ 'ի սեպտ. ԻԸ. * Գնացեալ կրօնաւորեցան 'ի յակունս Եփրատայ 'ի ծմակ լեառն Ծաղկոց ||: Եւ փոքր մի զկնի գրի վասն Սուքիասանց. * Եւ եկեալ գագաթեն առ նոսա 'ի լեառն Ծաղկոց ||: Եւ 'ի վերջն գրի. * Իսկ լերինքն կոչին յանուն սրբցն (Ոսկեանց՝) Ոսկի, և (Սուքիասանց՝) Սուկաւ ||:

պատմէ Խորենացին, և յայսմ վայրի ետ սպանանել և թաղել Բ. Արշակ զնոյն Գնել Արշակունի, որ էր իւր եղբօրորդի ։ ՚Ի լերինս յայսմիկ թաղեալ զնէ Վարդան և զմարմինս սպանողացն նորին Գնելոյ, և ՚ի 1157. յայտնեալ իբր նորանշան իմն տեսլեամբ ։ * Յայտնեցան (ասէ) ՚ի Շահապիվանս մարմինք սպանողացն Գնելոյ անփուտ համդերձիւք, և արիւնաշաղախ մարմնով՝ որպէս և սպանմանն, ըստ անիծից սրբոյն Ներսէսի ‖ ։

Լուծ ։ Տեղի ՚ի լերինն Շահապիվանի, զորոյ զդիրսն որոշէ Բուզանդ Դ. 15. յասելն. * Իսկ զպատանեակն Գնել՝ առնուին գնային մօտ ՚ի սահմանն արքունի, և անդ զնա կառափէին ՚ի սարակ լերին (իմա զՇահապիվանն), որում տեղւոյն Լուծն անուանեալ է, մօտ յորմածս արգելոցացն որսոյն երէոյն, ընդդէմ մուրտասատանին աղբերացն բաղմոցացն արքունի, յանդիման բանակետեղին ‖ ։ Այսինքն յանդիման տեղւոյ բանակին, ուր բանակեալ էր թագաւորն ՚ի Շահապիվանի ։

Ողակ ։ Բերդ՝ որ ՚ի բանից անտի Ղազարայ թղթ. 102. երևի լինել յայսմ գաւառի. * Հասանէին ՚ի գաւառն որ կոչի Ծաղկոտն, մերձ ՚ի բերդն ամուր՝ զոր Ողական անուանեն. զայն տեղօք արարեալ բանակետեղս արանց՝ դադարէին անդ զաւուրս տօթոյն ‖ ։ Յիշատակէ զնոյն և Եղիշէ թղթ. 55. բայց առանց որոշելոյ զգաւառն, և կոչէ Գիւղաքաղաք յասելն. * Եկին հասին յաշխարհն հայոց ՚ի Գիւղաքաղաք մի մեծ՝ որում անուն էր Ողակ ‖ ։

Նոյն է սա ընդ աւանին՝ զոր յիշատակէ ընդարձակօրէն Թովմայի Արծրունւոյ ։ * Առեալ իւր ամուսին (Աբդլմսեհ Արծրունի) զդուստր Գրիգորի Արևելեան դուկի, և զթոռն մեծաշուք և տիեզերակալ իշխանաց իշխանին Աշոտի՝ որ էր տէր և իշխեցող գաւառացն Ծաղկոտան, և Կոգովտի և մեծ աւանին Ողականի ‖ ։

Նոյն կարծեսցուք և ընդ Ողկօն գեղջ, զոր ստորագրէ Պրոկոպիոս (պատերազմ պարսից. Բ. 25 ։) * Հարիւր և քսան ասպարիզաւ հեռի ՚ի Տուվինոսէ (՚ի Դւնայ,) յաջմէ եկելոյն ՚ի սահմանաց հռոմայեցւոց՝ երևի լեառն դժուարամատոյց և ահագին զառ ՚ի թափ, յորոյ դժուարաժեռ խոխոմ է գիւղն Ողկօն, ուր նավէտիս յիմանալն անդ զգալուստ թշնամեաց՝ անդրէն ընդ կրունկն դարձեալ ամենայն զօրօք պատսպարեցաւ, ապաւինեալ յամուր դիրս տեղւոյն ։ Ու ստորոտով լերին է գիւղն. իսկ ՚ի գահավէժ գագաթանն՝ բերդ ամուր համանուն

գեղջ. արդ նաւլէտիս զամենայն մուտս գեղջ վիմօք և ա-
ռապարօք խցեալ՝ գժուարամատոյց կացոյց, նաև փոսս
հատեալ, չորս հազար զօրս ամրամնոր եդ ||:

Մոքշէի: Ջերմուկ յիշատակեալ առ Ղազարայ. Թղթ.
230. * Կուպին հասանէին այնուհետև 'ի ծաղկոտն. և
կամեցեալք առ վայր մի հանգչել 'ի ջերմկին որ կոչի
Մարշակի ||:

Նոստեանք: Գիւղ՝ զորմէ ասողիկ Գ. 38. * Գտան 'ի
գաւառն ծաղկոյոտն, 'ի գիւղն որ կոստեանքն կոչի ||:

Մուշեղեայ խաչ: Տեղի՝ որ թուի չինել յայսմ գաւառի,
զորմէ յիշատակի յայսմաւուրս. յօգոստ. 27. ուր պատ-
մի երևումն քսնի սուքիասանց մերձ 'ի միայնարանամ ոս-
կեանց, ուր և մկրտեցան 'ի նոցանէ 'ի յակունս եփրա-
տայ 'ի ծաղկաւէտ տեղին:

## ՇԻՐԱԿ·

Սոյնպէս կոչեցեալ ասի յանուանէ շարայի, որոյ հայրն
արմայիս բնակեցոյց զնա յայսմ վայրի, և եղև կալուած
սեփհական նմա: Գիրք նորա դաշտավայր մերձ յերասխ
և յարմաւիր. երկիրն յուռթի և բերրի, զոր համառօ-
տիւ ստորագրէ խորենացին յիւրում պատմութեան Ա.
11. * Նա զորդին իւր զշարայ, զյոլովածին և զշատա-
կեր, առաքէ (արմայիս) ամենայն աղխիւ իւրով 'ի դաշտ
մի մօտաւոր (այսինքն մերձ առ երասխ, և առ արմա-
ւիր,) արգաւանդ և բարի (1), յորում գնան ջուրք ձը-
սակաւք, 'ի թիկունս հիւսիսոյ լերինն՝ որ անուանեցաւ
արագած, յորոյ անուն և զգաւառն ասեն անուանել
Շիրակ. վասն որոյ արդարանայ թուի առասպելին՝ որ
ասի 'ի մէջ գեղջկաց. թէ քո շարայի որկորն է ասեն,
մեր Շիրակայ ամբարքն չեն ||: Ասա այսորիկ զշիրակ
գաւառ Աշխարհ Շիրակայ անուանէ նոյն խորենացին Է. 6.
և շնորհալին յողբման եդեսիոյ. Աշխարհ Շիրակայ:

Կոչեցաւ զկնի այս գաւառ նաև Զօրագետ, գէթ ըստ
այնմ մասին որ անկանի յոլորաս անի քաղաքին. * Զօ-
րոյգետ յանի է (ասէ վարդան աշխարհագիր) և Շի-
րակ գաւառն ||: Նմին իրի և վարդան պատմագիր զգա-

(1) Այսպէս յերկուս գրչա. որպէս և 'ի տպագրեալն դրի-
գիր օրինակս, ուր 'ի միւս այլ. Բէրրի:

գիւղ վերջին Թագաւոր անուոյ՝ կոչէ Ուռգառոր ձորոյ գետոյ. ՚ի Թուղթս գրիգորի կաթողիկոսի և լամբրոնացւոյ կոչին բնակիչք Զորոյգետացիք (1) ։ Այժմ այս գաւառ կոչի Շօ-րէհէլ, ելեալ աղաւաղութբ ՚ի բառէս Շիրակաւան, զոր-մէ ասորիկ ։

Յաւուրց անտի մեծին տրդատայ սեփհական եղև այս շիրակ ազգին կամսարականաց, որպէս է տեսանել առ խոր. Բ. 87. * Տոյ (ասէ տրդատ Թագաւոր) ժառանգու-թիւն (կամսարայ նահապետին կամսարականաց) զմեծ դաս-տակերտն արտաշէսի, որ այժմ ասի դրասխանակերտ, և զգաւառն Շիրակ ‖ ։ Նա որոյ բուզանդ Դ. 19. և Դ. 11. և զնոյն դնեն ընդ տէրութբ կամսարականաց, զոր յափշտակեաց արշակ Բ. այլ յետ այնր դարձեալ եանց ՚ի ձեռս կամսարականաց, զի յիշատակին ՚ի գիրս իշխանք սորա ՚ի նոյն զարմէ, որպէս և առ ղազարայ՝ յա-սէրն. * Ընդ մէջ երկոցունց մասանցն (բանակին) բղ-քաջն և զընտիրն՝ զիշխանն շիրակայ զներսէհն կամսա-րական, և զնորուն եղբայրն զհրահատն պատրաստական զօրինէին ‖ ։ Բայց որպէս Թուի՝ ՚ի Է. դարուն յանցանել արշարունեաց գաւառի ՚ի ձեռս բագրատունեաց՝ եանց և այս գաւառ ՚ի նոցա ձեռս ։

Անի ։ «Քաղաք հռչակաւոր ՚ի ժամանակս բագրատու-նեաց, և արքայանիստ ոմանց Թագաւորաց ՚ի նմին տոհ-մէ, վասն որոյ Թագաւորաբնակ կոչէ մատթէոս. Իջեալ ՚ի վերոյ Թագաւորաբնակ քաղաքին Անւոյ ։ Ուրեք ուրեք գրի Յա-նի, բայց զառաջնոյն գրչութի ուղիղ համարել տայ այս ստուգաբանութի շնորհալւոյն յողբմն եդեսիոյ. ուր գե-ղեցիկ իմն խորհրդաբանէ զանուանէ սորա ՚ի դիմաց եդեսիոյ.

* Բայց և զքեզ յայս հրաւիրեմ,
արևելեան քաղաքդ Անի . . .
Շինեալ եղեր տուն արքունի,
Ընտրեալ նահանգդ Շարայի.

(1) Մարթ է Թէ և այլ տե-ղիք, որոց նիստք են առ ձորովք գետոց, կոչեցան ՚ի գիրս Զորոյ-գետք. իբր անուն տեղւոյ. զոր-օրինակ ստեփ. օրպ. գլ. ԼԶ. զի-սահակ իշխանն՝ որ էր աներ Բ. աշոտոյ արքայի բագրատունւոյ, կոչէ իշխան Զորոյգետոյ և Գարդ-մանայ ։ Ուր Թուի ակնարկել և յայլ տեղի ինչ՝ որ էր ՚ի կողմանս գարդման գաւառին գուգարաց՝ կոչեցեալ սոյնպէս Զորոյգետ ։ կամ Թէ ասասցուք՝ Թուիցէ այս սահակ իշխէր ՚ի գարդմանայ սկը-սեալ մինչ ՚ի յայս ձորոյգետ շի-րակայ ։

Թագաւորաց բագրատունի,
որ 'ի ցեղէն իսրայէլի . . .
Գեղեցկանուն զարմանալի,
որ երրակի տառիւ բերի,
Երրորդութեանըն խորհրդի,
որ միշտ 'ի քէն երկրպագի ||:

Յաւելու և զայն, զի և առ յունաց պատմագիրս, առ կեդրենոսի և առ սկիլիծիսի գրի համաձայն առաջին գըրչութեան:

Վարդան ուրեք տայ սմա և այլ անուն անսովոր, յասելն. * Մինչդեռ չև էր ընդարձակ շինեալ քաղաքն Անի, որ կոչի Խնամք ||: Այսպէս գնի նաև յերկուս հին օրինակս, որ մեզ թուի ածանցեալ կամ յանուանէս Կամախ, և կամ Կամախ անուան ածանցեալ և աղճատեալ յանուանէս Խնամք:

Տես վասն այսր զմիւս Անի, ուր նշանակեցաք թէ որպէս յետինք շփոթեն զերկոսին, յորոց մին անկանի 'ի դարանաղեաց գաւառի բարձր հայոց. իսկ այս երկրորդս յայսմ շիրակ գաւառի. զոր բաց 'ի վերոգրեալ բանից շնորհալւոյն և վարդանայ աշխարհագրի, յայտ առնէ նաև կիրակոս՝ յասելն վասն զաքարիայ զօրավարին թագուհւոյն վրաց. * Հրամայէր ժողով առնել 'ի մայրաքաղաքն յանի, որ 'ի շիրակ գաւառի ||: Այլև մատթէոս. որ և ուրեք կոչէ զԱնի Անեծ տուն Շիրակայ. որպէս և ստեփաննոս օրպէլ. յոտանաւոր ողբումն ասէ վասն բագրատունեաց.

* Զանգի աթոռ նոքա արկին,
'Ի Շիրակայ տանն 'ի յԱնին ||:

Նոյնպէս անուանեն զնա և վարդան և այլք. վասն որոյ և զանանիա համարօղն՝ զոր ոմանք յանուն քաղաքին կոչեն Անեցի, այլք յանուն գաւառին կոչեն Շիրակացի. և զբարսեղ արքեպիսկոպոս քաղաքիս, ոմանք կոչեն արքեպիսկոպոս Անւոյ, և ոմանք Շիրակայ:

Զառաջինն էր սա բերդ, յայն սակս բերդ անուամբ յիշատակի առ ղազարայ, որ նախ զգաւառ նորուն յիշէ ասելով. * Եկեալք 'ի գաւառն Շիրակայ՝ 'ի դաշտն ուր բնակէր մարզպանն հայոց ատրվշնասպ ||: Իսկ սուղ ինչ զկնի զբերդն, ասելով վասն նորին ատրվշնասպայ և ամբոխին որ ընդ նմա. * Չուէին 'ի տեղւոյն (այսինքն 'ի

դաշտէն շիրակայ), և երթեալ բանակէին մօտ 'ի պարիսպ բերդին՝ որ անուանեալ կոչի Անի ||:

Արար 'ի սմա շինութիւն ինչ աշոտ բագրատունի մակեր կարգացեալ յելս Ը. դարուն (1), այլ այս շինութիւն էր իբր նորոգութիւն ինչ, և ոչ ընդարձակութիւն. զի և յովհաննէս կաթողիկոս 100 ամաւ զկնի քան զաշոտ, Ամուր կոչէ, և դնէ մերձ յեզր ախուրեան գետակին, (2) և ոչ յեզր անդ նորա՝ ուր զկնի տարածեցաւ:

Այլ առաջինն որ ընդարձակեաց զանի, եղև Գ. աշոտ արքայ ողորմած յորջորջեալ, որ նոր պարիսպ յաւել կանգնել ըստ վարդանայ, զոր կոչէ փոքր պարիսպ քաղաքին անոյ, և զամենայն բրգունս և զեկեղեցիս: * Օ փոքր պարիսպ քաղաքին Անոյ շինեաց (ասէ աշոտ,) և զամենայն բրգունսն, եկեղեցիս յօրինեաց 'ի ՆԺԳ թվին ||, յամին 964:

Որդի նորա Գ. սմբատ արքայ տիեզերակալ ձայնեալ՝ ետ կատարեալ ընդարձակութիւն քաղաքին. որոյ 'ի բացուստ նոր պարիսպ յաւելեալ՝ 'ի մէջ էառ զպարիսպն շինեալ 'ի հօրէն իւրմէ, և վասն այնորիկ առաջին պարիսպն փոքր կոչեցաւ՝ համեմատութեամբ շինելոյն 'ի սմբատայ. որպէս և այս պարիսպ կոչի 'ի վարդանայ Մեծանիստ: * Սմբատ որ տիեզերակալ կոչեցաւ՝ զմեծանիստ պարիսպն Անոյ շինեաց, և զկաթողիկէն հիմնարկէ ||:

Յայնմ ժամանակի քաղաքն ձգեցաւ մինչև յախուրեան գետակ, որպէս ծանուցանէ ստողիկ Գ. 11. * Իր արկեալ պարսպափակ առնէ զպարիսպն Անւոյ, յախուրեան գետոյ մինչև ցձորն ծաղկոցաց՝ կրով և վիմով մա-

(1) Պատմէ զայսմանէ վարդան 'ի բանն զոր յառաջ բերաք 'ի միւս անի. ուր շփոթելով կոչէ Կամախ. բայց դաւառ յարմար այսմ կամախոյ. գտանեմք 'ի բանս անդ նորա զշիրակ. ուստի նորոգեալն յաշոտոյ ոչ էր կամախ որ էր 'ի դարանաղեաց գաւառի, այլ ընիկ կոչեցեալն Անի որ 'ի շիրակ. զոր և հաստատէ բան ստողկայ որ ասէ վասն սորին աշոտոյ՝ թէ դնոյ էառ 'ի կամսարականաց զբերդն նոցա:

(2) * Իսկ արքայ սմբատ (ասէ յովհ. կաթ.) 'ի դառնալն իւրում 'ի տայոց, երթայ հանգիստ ներքինապետին մծին, մերձ յամուրն յԱնի յեզր ախուրեան գետոյ ||: Ամուր անուամբ կոչէ և սամ. 'ի թուին ՆԺԳ. յաւուրս վահանայ կաթողիկոսի, նոյնպէս և լաստիվ. Ը. և կիրակոս: Այս ամուր և բերդ յետ ընդարձակելոյ քաղաքին՝ ճշգրիտ անուամբ կոչեցաւ ՆԵՐՔԻՆ ԲԵՐԴ, որպէս է տեսանել առ լաստիվ. Ը. յասելն. * Սարգիս իբրև եաես զեղեալսն, զգանձս թագաւորութեան առեալ 'ի Ներքին ամուրն մտանէ յանառն Անի ||: Զօր մատթ". և վարդ". շփոթեն ընդ միւս անի ամրոցին որ 'ի դարանաղեաց գաւառի:

ծուցեալ, մանհարձմունք և աշտարակօք բրգացն բարձրաբերձ պարսպեալ, բացագոյն քան զհին պարիսպն յընդարձակութեան քաղաքին, և մայրապետրան դրամբք երկաթագամ հաստահեղոյս բևեռապինդ ամրացուցեալ ‖ ։ Սամուէլ զնէ զայս շինութիւն 'ի թվին ՆԻԹ․ որ է ամ տն 980, յառաջին ամս անդ թագաւորութեան սմբատայ, զի գրէ․ * Իսկ և իսկ ընդ թագաւորելն սմբատայ, զոր արկեալ պարիսպ քաղաքին Անւոյ (1) բարձրաբերձ բրգամբք և լայնատարած տեղօք՝ յախուրան գետոյն մինչև ցծաղկոյածորն կոչեցեալ վայր, հիմնարկեաց և զկաթողիկէն պայծառափառ 'ի նմին քաղաքի ‖ ։ Յորմէ օրինակէ գրեթէ բառ առ բառ և կիրակոս ։

Յայնմ օրէ սկսաւ պայծառանալ այս քաղաք մարդաշատութեամբ, հարստութեամբ, և բազմութեամբ եկեղեցեաց և ապարանից՝ մինչև յամենայն սահմանս հայաստանեայց զկնի քրիստոնէութեան՝ ոչ յիշատակի ուրեք 'ի գիրս մեր այլ քաղաք համեմատ սմա ։ * Իսր անի (ասէ մատթ․) բազմամբոխ լցեալ քաղաքն, բիւրք բիւրուց արանց և կանանց՝ ծերոց և տղայոց, որ և հիացումն արկանէր տեսողացն, զոր կարծեալ զօրացն բազմաց՝ եթէ մեծ մասն աշխարհիս հայոց իցէ․ և յայնմ աւուր հազար և մէկ եկեղեցի 'ի պատարագի կայր 'ի յԱնի․ և էր քաղաքն շուրջանակի քարակտուր․ և էր գետն ախուրեան շրջապատ․ բայց միայն 'ի մի կողմն կայր տեղի ինչ դոյր, որպէս թէ նեղընկեց մի ‖ ։ Նման սմին և կիրակոս որ գրէ․ * Քաղաքս այս Անի՝ լցեալ էր բազմութեամբ մարդկան և անասնոց, և պարսպեալ ամրագոյն պարսպօք․ և եկեղեցի բազում կայր 'ի նմա․ մինչ 'ի կարգ խօսից երդման՝ այսպէս երդնուլին, Յայս հազար եւ մի եկեղեցին, և յոյժ փարթամ էր քաղաքն ամենայն իրօք ‖ ։ Ցուցակ բազմամարդութեան սորա է և այն, զի յոհաննէս թագաւորն 'ի ժա․ դարուն՝ ընդդէմ աշոտոյ որ յանկարծ եկն 'ի վերայ նորա, վաղվաղակի 40 հազար հետևակ զօրս, և 20 հազար հեծելազօրս եհան 'ի նոյն իսկ 'ի քաղաքէն ։

(1) Այսպէս գրի և առ Լաստիվ․ Ի․ ՚ Մինչև 'ի դուռն Անւոյ ‖ ։ Եւ 'ի գլ․ Ժ․ ՚ Յոյժ պակաս էր ըստ արժէից Անւոյ․․․ Առաքէ թագաւորն տեղակալ քաղաքին Անւոյ ‖ ։ և ոչ Անոյ, որպէս գտանի առ սոսա․ զոր եդաք 'ի վերոյ ։ Առ կիրակոսի գրի Յանոյ, կամ Անոյ․ ՚ Զոր արկեալ պարսպին Յանոյ ‖ ։ Եւ թէ ՚ Իբրև տեսին ռամիկք բազմութիւն քաղաքին Յանոյ․․․ Առաքեցին բնակիչք քաղաքին Անոյ ‖ ևն ։

Ի Հազար և մի եկեղեցեաց քաղաքիս՝ զերից միայն եկեղեցեաց շինուԹի գտանեմք յիշատակեալ. յորոց երկուքն են արքայաշէնք ։ Զմին կառոյց վերոգրեալ սըմբատ. ՟Բ. * Երկանէ (տե՛ս առաջ. ՟Գ. 11.) Հիմն և մեծաշէն եկեղեցւոյ 'ի նոյն քաղաքին Անւոյ 'ի ձեռն Տարտարապետին որդւոյ, որ զկաթուղիկոսարանին եկեղեցին շինեաց յարգ[իր]նայի ։ Իսկ կարաց սմբատ 'ի գլուխ հանել զայս եկեղեցի՝ առ կանխելոյ օրհասին մահու, այլ կատարեաց կատրամիտէ Թագուհին կին ՟Ա. գագկայ արքայի, 'ի հրեշտակէ ոչ յորդորեալ՝ ըստ ասից վարդանայ. Զվարդս այսր շինուէ պատմէ առաջին ՟Գ. 30. * Այլ կին նորա (գագկայ) կատրամիդէ Թագուհի բարեպաշտուհի եղեալ, որ էր դուստր վասակայ սիւնեաց իշխանին. շինեաց զհիմնարկեալ եկեղեցին սմբատայ, ամենապայծառ վայելչուԹբ, բարձրաբերձ կամարօք զմեծԹաւորեալ խորան երկնանման. և զարդարեաց 'ի զարդ ծիրանեծաղիկ ոսկեԹել նկարագործ անդուածոց, արծաԹեղէն և ոսկեղէն անօԹոց, և բազմապայծառ լուսատու անօԹոց վայելչուԹբ, որովք ջահանայր ըստ երկնային կամարին կաԹուղիկէն (1) որ՝ որ 'ի քաղաքին Անւոյ ։

Ի զարդուց սորա զերկուսին յանուանէ յիշէ մատԹէոս. մի՝ ծանրագին խաչ արծաԹի՝ մարդաչափ մեծուԹբ՝ կանգնեալ 'ի գմբէԹն անդ եկեղեցւոյն, երկրորդն՝ կանԹեղ ապակի կազմեալ 'ի բիւրեղէ (2), յայնմ ժամանակի չնաշխարհիկ համարեալ, զոր 'ի հնդկաց տուեալ էր բերել սմբատայ տիեզերակալի ընդ բիւր մի գանձուց. որոյ կշիռն էր 12 լիտր. և նոյն չափոյն տանէր 12 լիտր. զերկուսին ևս 'ի վայր ընկէց, և զջահն խորտակեաց ոմն 'ի զինուորաց յառման անդ քաղաքին յալփասլանայ ։

Զերկրորդ եկեղեցին շինեաց ՟Ա. գագիկ արքայ յանուն ս՟րբոյն գրիգորի. զորմէ առաջին ՟Գ. 47. * Զմեծաշէն եկեղեցին որ 'ի Արարատաւն՝ անուամբ ս՟րբոյն գրիգորի շինեալ. որ էր փլեալ և կործանեալ, կամեցաւ (գագիկ)

(1) Անուն կաթողիկէ զոր տայ եկեղեցւոյս՝ առանց յիշելոյ զայլ ինչ անուն, յայտ առնէ լինել եկեղեցի կաԹուղիկոսարանին, զոր և հաստատէ ասմունքն 'ի նոյն անուն կոչելով. * ԿաԹուղիկէն սխրատեսիլ զոր հիմնադրեաց սըմբատ յիւրում քաղաքին յԱնի, ատամնօր (այսինքն ըստ հաշուի նորա 'ի Թվին ՆԾԷ. որ է ամ ՟Տ՟Ն 1008.) գլխաւորեցաւ հրամանաւ և արդեամբք կատրամիտեայ Թագուհոյ գագկայ շահնշահի ։

(2) Թերևս իմանայ զայն բիւրեղ, որ է հանք, և 'ի բնաբանից կոչի Բիւրեղ Լեռնային ։

նոյնաձև չափով և յօրինուածով յարդարել 'ի քաղաքն Անւոյ, հիմնարկեալ 'ի կուսէ ծաղկոցաձորոյն 'ի բարձրաւանդակ տեղւոջն տարփատենչ տեսողացն. (զոր) Մեծատաչ վիմարդեան կոփածու վիմօք մանուածոյ քանդակեալ յօրինէ, լուսանցոյց պատուհանովք, երկակի դրամբք, պանչատես տեսմամբ գմբեթաւորեալ, գունակ դերամբարձ և երկնանման զնդին || : Պատճառ շինելոյ եկեղեցւոյս՝ ակնարկէ լինել աւերուամն միւս եկեղեցւոյ Սբ գրիգորի. խոկ այն աւերեալ եկեղեցի է նոյն խկ զոր շինեաց Գ. Ներսէս կաթողիկոս 'ի վաղարշապատ քաղաքի, որպէս յայտ է 'ի բանից ստորի սամուէլի. * Սբ գրիգորին գերահռչակ՝ զոր նախ սկիզբն առնու 'ի շինել թագաւորն գագիկ 'ի յԱնի, 'ի վերայ ծաղկոցաձորոյն վայրիւք, գաղափար առեալ զլուսազարդ զհրաշալի զՍբ գրիգորն՝ զշինեալն 'ի Ներսիսէ հայրապետէ. և կատարեաց զմծակերտ փառաւոր բանաւոր հօտին քսի, 'ի Ռ. ամի մարմնանալոյ տն մերոյ յսի քսի || : Զայսոսիկ բանս բառ առ բառ օրինակէ և կիրակոս :

Զերրորդ եկեղեցին շինեաց Տ. սարգիս կաթողիկոս, որ յԷլս անդ Ժ. դարուն, զորմէ գրէ վարդան. * Շինեաց զվկայարան մեջ հռիփսիմեանցն, առընթեր կաթողիկէին Անոյ, և փոխեաց անդր զնշխարս նոցա բերեալ մեծաւ հանդիսիւ, և կարգեաց զօրն տօն մեծ || :

Բազմութիւնք յեկեղեցեաց ստորի կանգուն կան ասեն Ճանապարհորդք յանի մինչև ցայսօր, զորս առ 'ի որոշել հետաքննելին մեր Ճանապարհորդաց հարկ է նախ 'ի վերայ հասանել այսր ստորագրութե նախնեաց՝ զորս յառաջ բերաք : Տես 'ի Նոր հայաստան թղթ. 122 : (1)

(1) Նոր Ճանապարհորդ ականատես պատմեաց մեզ՝ քառասնիւ չափ եկեղեցի տակաւին կանգուն կացեալ յայժմեան յաւերակս հին Անի քաղաքին, գմբեթանօք և առ հասարակ կճեայք, որպէս և աւերակք տանց ըստ մեծի մասին կճեայք. զի առ եզերբք ախուրեան գետոյ՝ են ասէ առհասարակ հանք կճոյ, թող զբազմութիւն կիսաւեր եկեղեցեաց : Պարիսպք քաղաքին ըստ մեծի մասին անկեալ կան, այլ բազում դրունք պարսպաց կճեայ բարաւորօք կանգուն կացեալ մինչև ցայժմ, ունելով և ելանելիս 'ի վերայ : Գտանին և աշտարակք, յորոց 'ի միումն մարթ է գնալ գետնափոր գաղտնի իմն Ճանապարհաւ, որ բերեալ կայ 'ի ներքուստ ախուրեան գետոյն, ընդ որ գ[illegible]ւ յայնկոյս գետոյն լինի անցանել ընդ երկրաւ, և անդուստ յաշտարակ անդր ելանել : Մակագրութիւնք երկաթագրովք յանուն թագաւորաց աստ և անդ բազում ուրեք տեսեալ. ուրեք ընթերցեալ ասէր Պահապանաց Բագրատունեաց. և ուրեք այլ մակագրութիւն 'ի շիրմի թագաւորաց, ուրանոր տեսեալ ասէր

Այն 'ի քաղաքիս և ամբարանոցք շինեալք 'ի սմբատայ, զորս յիշէ ասողիկ Գ. 29։

Այս մայրաքաղաք համօրէն հայաստանեայց՝ այսպէս ամենայնիւ ճոխացեալ, աթոռ արքայի և կաթուղիկոսի սահմանեալ, սակաւատև գտաւ յիւրում փառաւորութէ, բազում փոփոխութիս և նեղութիս կրեալ 'ի յունաց և 'ի պարսից. քանզի յոհաննէս թագաւոր՝ որ և սմբատ անուանեալ 'ի սկիզբն ժա. դարուն, նեղեալ 'ի զանազան թշնամեաց՝ մանաւանդ 'ի թագաւորէն վրաց, առաքեաց զպետրոս գետադարձ առ կայսրն վասիլ՝ որ յայնժամ եկեալ էր 'ի կարին, խոստանալով * Տալ ձեռագրով զԱնի զկնի մահուան իւրոյ 'ի հռոմս ‖, եթէ պահեսցէ զնա կայսրն 'ի նեղչաց իւրոց, որպէս պատմէ վարդան (1). ուրախացեալ ընդ այն կայսեր՝ նուաճեաց զվիրս, աւերեալ զերկոտասան դաւառս նոցա։

Իբրև մեռաւ յովհաննէս, և թագաւորեաց գագիկ Բ. 'ի 1042. ոչ կամեցան հայք տալ զանի 'ի ձեռս յունաց՝ զոր ստիպով խնդրէին. վասն որոյ Է. միքայէլ կայսրն քալափատ ձայնեալ՝ առաքեաց 100 հազար զօրս պաշարել զանի. այլ վահրամ պահլաւունի 30 հազար հետևակօք, և 20 հազար հեծելովք յարձակեալ 'ի քաղաքէն 'ի վերայ յունաց ընդ դուռն անուանեալ Ծաղկոցի՝ (2) չարաչար հարուածս եած 'ի վերայ նոցա, մինչև ըստ գրե-

և տող մի անծանօթ տառիւք խնքեանն նաև այլոց հմտացելոց։ Իսկ չօղան քէլիսէսին գեղեցկակերտ և ամբողջ, արտաքոյ պարսպաց կայ 'ի հեռուն, զոր շինեալ ասեն հավուն ուրուք, որոյ յաւուր միում վտարեալ գոլով յեկեղեցւոյ առ գծծութեան հանդերձիցն, ինքն վասն իւր իւրովք ծախիւք արտաքոյ քաղաքին շինէ զայս եկեղեցի, հասոյթս սահմանելով [illegible]ան 'ի պէտս [illegible]իճանց նորուն. յայտնի առնելով յայնժամ զինքն լինել գաղտնի մեծատուն։ Եւ այսպէս յայնչափ յաւերական հայաստանեայց աշխարհի՝ մի միայն զայս քաղաք տեսանեմք մնացեալ, որ յայտնի ցուցանէ զիւր զաւերակս քարող իւրում նախնի մեծութե. ուրանօր եթէ դէպ լինէր ումեք խնամով ժողովել զայժմեան զերևեալ մակագրութիւնս, բազմօք օժանդակէր 'ի լուսաւորութե պատմութե նախնեաց առ 'ի մենջ ժողովելոց 'ի վերոյ։ 'Ի ճանապարհին կարսայ կառուցեալ, հարկ է ժամաչափ և աւելի 'ի ներքս կոյս քան զճանապարհն խոտորել, առաջնորդ առեալ զոմանս յերկուց հայաբնակ գիւղօրէից որ անդ. ուր իբրև լինի հասանել, երևի բազմութիւն աւերակաց մի զմիով կուտելոց, ընդարձակ տարածեալ ձգեալ 'ի չափ մեծութե կոստանդնուպօլսոյ. իբրև զայժմեան աւերակս բալմիրայի և իլիուպօլսոյ, որ արդ կոչին Պաալպէք և Համա։

(1) Այլազգ պատմէ գլխովին կեդրենոս. Թղթ. 761։

(2) Այսպէս կոչեցեալ երևի այս դուռն՝ սակս հանելոյ 'ի ծաղկոցաձորն։

լոյ Մատթէոսի՝ 'ի հազարէն հարիւր լինէր մնացեալ։

Յետ սակաւուց կայսրն կոստանդին մենամախ թագաւորեալ, 'ի սադրելոյ ոմանց իշխանաց հայոց, մանաւանդ հնարագործութեամբ սարգսի ուրումն վեստ կամ ազատ կոչեցելոյ՝ կոչեաց զգագիկ 'ի կոստանդնուպօլիս, երդմունս սաստիկս երդուեալ ոչինչ կարծիս նենգութեան 'ի մտի դնել վասն այնր. իսկ 'ի գնալն արքայի՝ դաւաճանն սարգիս, և այլք յազատաց նորին համախոհք՝ * զԱն. բանալի (1) քաղաքին Անւոյ ||, առաքեն առ կայսրն հանդերձ յետկարաւ, 'ի նա տուեալ զԱնի, և զամենայն հայս։

Իսկ գագիկ թէպէտ 'ի սկզբան անդ զաւուրս երեսուն ընդդադոյնս ընդդէմ եկաց հաւանելոյ կամաց կայսեր, քաջութեամբ ցուցեալ առաջի՝ թէ իւր էր իրաւունք տալ և չտալ զԱնի, բայց զինքն ոչ կարելով ելի աղագս ինչ գտանել, ակամայ կամօք հաւանեալ յանձն էառ։

Այնուհետև կայսրն ոչ եթող գագկայ գնալ յաշխարհն իւր, այլ 'ի 1046, զօրաժողով արարեալ բազմութեամբ յոյժ՝ առաքեաց 'ի տիրել քաղաքին, զօրավար կացուցեալ նոցա զոմն ներքինի Պառակամանոս (2) անուն, որպէս թէ ասէ Մատթէոս. * Ո այր կին կամէր դնել պահապան աշխարհին հայոց, փոխանակ հզօր քաջին գագկայ ||։ Իսկ քաղաքացիքն՝ որք զառաջինն ընդդէմ դարձեալ յունաց՝ կոտորեցին և հալածեցին, իբրև սատագեալ ծանեան զնենգութիւն նախարարացն, և զոչ գտանել թագաւորին իւրեանց, * Լային առ հասարակ (ասէ Մատթ.) ամենայն տունն հայոց, և արարին ամենայն քաղաքն ժողով՝ ուր էին գերեզմանք հայոց ամենայն թագաւորաց յառաջնոցն (3), և անդ լային զանտիրանալն ազգն հայոց, լային և զաթոռ թագաւորութեան իւրեանց ||։ Իսկ ապա հարկադրեալ ետուն զԱնի 'ի ձեռս յունաց։

Յետ անցանելոյ տէրութեան քաղաքիս 'ի ձեռս յունաց, տակաւին 'ի շինութեան կայր, և յիւրում առաջին բարեզարդութեան, որպէս պատմեն Մատթէոս և Կիրակոս. զորոց զբանս եդաք 'ի վերոյ. այլ զառաջին ապականութիւն և զաւերումն 'ի վերայ եած չարաչար՝ սուլտանն

(1) Այս թիւ գնի առ Մատթ. որ եթէ չէ վրիպակաւ եդեալ, պարտ է իմանալ ոչ սոսկ վասն արտաքին դրանց քաղաքին, այլ և բերդին և ապարանից արքային։

(2) Կեդրենոս կոչէ զզօրավարն՝ Նիկողայոս։

(3) Տես վասն այսր 'ի միւս Անի։

պարսից ալփասլանի (1), եղբայրն, (կամ ըստ վարդանայ հօրեղբայրն) տուղրիլ բռնաւորին ։ Որոյ կուտեալ բազմութիւն պարսից և թուրքաց՝ պաշարեաց զանի զաւուրս քսան և հինգ՝ ը̃ կիրակոսի, և զպարիսպն ցամաքակողման 'ի վայր ընկէց բաբանաւ. բայց և այնպէս ոչ կարացեալ մտանել 'ի քաղաքն առ ընդդիմամարտ զօրաց քաղաքացւոց, լքեալ սրտիւ մեկնել սկսաւ անտի ։

Բայց 'ի նմին աւուր և իշխանքն՝ զորս կայսեր կացուցեալ էր 'ի պահպանութիւն, տարապարտ երկիւղիւ թշնամեաց ըմբռնեալ մեկնեցան 'ի վերին և 'ի ներքին բերդն քաղաքին, ոչ գիտելով զլքումն, և զպատճառ մեկնելոյ թշնամեաց ։ 'Ի փախստենէ աստի իշխանաց՝ անկաւ ահ և խռովութիւն 'ի քաղաքացիս, որոց կոծ և աղաղակ լսելի լեալ 'ի մնացեալ զօրս ինչ թշնամեաց, աղդ արարին առ ալփասլան, մանուկ մի 'ի նշանակ այնր տարեալ յափշտակեալ 'ի քաղաքէն որ կայր 'ի շփոթս առանց պահապանաց ։ Անչափ դժուարին թուեցաւ ալփասլանայ խորտակումն քաղաքին, մինչև ո̃յ գրել զայն՝ ասելով. * Ա̃ծն նոցա մատնեաց զնոսա այսօր, (և) զանառ քաղաքն Անի 'ի ձեռս իմ || (2) ։

Այս դարձ արարեալ այն ահագին բանակաւ եմուտ յԱնի 'ի թուին ՇԺԳ (1064) 'ի տօնի տիրամօրն 'ի Ե̃շաբաթի՝ որպէս դնէ ընդ այլոց և սամուէլ, իւրաքանչիւր 'ի նոցանէ զինեալք երեքումբք սրովք, զերկոսին 'ի ձեռան, և զմի յատամունս. յայն սահման եհաս կատաղութիւն և անգթութիւն նոցա, մինչև 'ի քահանայից զոմանս այրեցին, և զայլս քերթեցին ։ Իսկ ալփասլան՝ ասէ վարդան՝ հազար այր 'ի քաղաքացւոց զենեալ 'ի փոս ինչ լուացաւ յարիւն նոցա. և որպէս պատմէ շարունակօղն թովմայի արծրունւոյ, * Այնքան բազումք 'ի տեսողացն՝ թէ զորդայս դիացիկս թաւալ տալով արեամբն 'ի գետն հասուցանէր, որ անցանէր ընդ դուռն քաղաքին || ։

Յետ այսչափ ապականութեան՝ թէպէտ մանուչէ ամիրայն անոյ՝ շինեաց զպարիսպն և զամրութիւնս նորա, մինչև ասել վարդանայ՝ թէ ոչինչ պակաս քան զառաջինն շինեցաւ անի, այլ յետ այնորիկ ստէպ ստէպ 'ի զանազան թշնամեաց հարստահարեալ՝ ոչ կարաց յառաջինն պայծա-

(1) Այսպէս գրի 'ի գիրս մեր. իսկ 'ի գիրս օտ. էլպարսլան, որ նշանակէ Հզօր առիւծ ։

(2) Տես 'ի մատթէոս ուռհայեցի, որ ընդարձակ պատմէ զայս ամենայն ։

ութին իւր դառնալ ։ Ի 1124 տեսեալ քաղաքացւոց՝ զի ամիրայն քաղաքիս արլըըւար ձայնեալ՝ կամէր վաճառել զքաղաքն ամիրային կարուց ընդ 60 հազար դենարի՝ ըս վարդանայ, ետուն զանի ՚ի ձեռս դաւթի վրաց արքայի ։

Յետ երբեւ ամի միոյ ՚ի վրաց եհանց առ փատլուն որդի արլըըւարայ, որ զրեթէ ամ մի պաշարեաց զանի, եւ առ վոյ չարաչար նեղեալ՝ պայմանադրութբ̃ եմուտ ՚ի ներքս՝ ոչինչ վնասեալ բնակչաց ։ Ի 1161 անդրէն եառ գորգի արքայն վրաց. այլ ՚ի 1163 հարկադրեալ ետ առ ասլան պարսից արքայն, որ զամս չորս ասպատակաւ աւերէր զերկիրն ։ Իսկ ՚ի 1174 վերստին եառ գորգի ։

Այսպէս յաճախ փոփոխութի տէրութե ՚ի միում դարու՝ զոր նշանակեցաք, եւ զոր այլ եւս յիշատակեն մեր պատմագիրք՝ ՚ի վրաց առ պարսիկս, եւ ՚ի պարսից առ վիրս, օրըստօրէ յապականութի հասուցանէր զանի ։ Այլ չարաչար յաւէր դարձոյց չարմաղան գլխաւորն բանակի մուղալ թաթարաց, որ ՚ի 1239 ձեռնտուութբ̃ իշխանաց քաղաքին եմուտ ՚ի ներքս, եւ կոտորած մեծ ՚ի վերայ ածեալ՝ մերկացոյց յամենայն ընչից ։

Իսկ վերջին կործանումն եւ աւերումն՝ յորում կայ մինչեւ ցայժմ այս քաղաք այսպէս լքեալ եւ ամայի, չէ յայտ թէ երբ, եւ զիարդ եղեւ. զորմէ տես ՚ի Նոր հայաստան թղթ. 122 ։ Պազար ջահկեցին պատճառ այնմ դնէ զգետնաշարժութիւն պատճառեալ յանիծից յովհաննու երզնկացւոյն, յորմէ փախեան ասէ բնակիչքն ՚ի ճուղայ, յեզերս կասպից ծովուն, ՚ի վան, ՚ի սիս, ՚ի յադ սերայ, մերձ ՚ի յաժտէրխան, ՚ի քէֆէ, յորոց փախուցեալքն միայն ՚ի լէհ՝ դնէ ըստ ոմանց՝ տուն 40 հազար ։

Երզնկայ ։ Գիւղաքաղաք մօտ յանի՝ որպէս երեւի ՚ի դրից, զոր ստորագրէ առողիկ Գ. 9. յասելն վասն խաչիկ կաթողիկոսին. * Յորոգեաց զտուն կաթողիկոսարանին ՚ի շիրակ գաւառի՝ ՚ի գիւղաքաղաքին Երզնկայ, յեզերս ախուրեան գետոյ. ՚ի հանգստարանի տն̃ անանիայի հայոց վերադիտողի. եւ ՚ի նմին գիւղ շինեաց զսբ̃ կաթուղիկէ եկեղեցին վիմարդեան կոփածոյիւք, հաստահեղոյս արձանօք, գմբեթարդ խորան երկնանման, հանդերձ եւ երեք եկեղեցովքն՝ նոյնաձեւ հրաշատեսիկ չքնաղագեղ յօրինուածովք. եւ զարդարեաց մեծապայծառ ծիրանածաղիկ ոսկեթել անգուածովք, ՚ի զարդ ոսկւոյ եւ արծաթոյ, եւ ամենազարդ պայծառութբ̃ ջահաբորբոք լուսաւոր անօթոց ։ Այլեւ զքնծախօս կտակս յոլովակի սստա-

ցեալ զգիրս մեր՝ զառաքելասացս և զմարգարէաբարող պատգամս հանդերձ ամենայն վարդապետացն ձայնիւք ||։

Ճարտարապետ սորա եղև Տրդատ՝ ըստ նորին ասողկայ. գ. 11։ Ըստանօր թաղեցաւ և նոյն ինքն խաչիկ կաթողիկոս։ * Դնի (ասէ ասողիկ գ. 31.) յիւրում հանգստարանի՝ ըստ հիւսիսոյ կուսէ եկեղեցւոյն Արգինայի՝ զոր ինքն շինեալ էր ||։ Այլ վասն այսր՝ զոր ուրեք Գինուաքաղաք կոչէ, և ուրեք Գինուղ, չունիմք այլուստ տեղեկութիւն ինչ։

ԵՐԱԶԳԱՒՈՐՔ։ Քաղաքագեօղ երեւելի 'ի ժամանակս Բագրատունեաց, որ ստէպ յիշատակի առ յովհաննու կաթողիկոսի։ * Հրամայեալ (ասէ վասն սպարապետին Սմբատայ՝ որ յաւուրս Բուղայի,) ժողով եպիսկոպոսաց լինել 'ի քաղաքագեօղն Երազգաւորս, ձեռնադրեն 'ի հայրապետութիւն զԶաքարիայ ||։ Ունի կոչեցաւ սա Շիրակաւան, որպէս վկայէ սամուէլ 'ի Թվին ՄՃԴ. * Շինէ (ասէ) սմբատ զմեծ քաւարանն պայծառ զարդու յԵրազգաւորս (1) որ արդ Շիրակաւանն կոչի (2) ||։ Այլ այս անուն գոյր նաև յաւուրս յովհաննու կաթողիկոսի, որ զերկոսին ևս անուանս 'ի գործ ածէ յասելն. * Հասանէ ըստ համբաւուն հասելոյ՝ սմպատ որդի արքային 'ի սեպհական կալուածս Երազգաւորաց (3) Շիրակաւան ||։ Սեր զԵրազգաւորաց անունն 'ի կիր առնու իբր անուն սահմանի և վիճակի. իսկ զՇիրակաւանն իբր քաղաքագեօղ նորին սահմանի։ Այնպէս Շիրակաւան գրի առ կիրակոսի. այլ առ ասողկայ ուրոյն գրի Վան Շիրակայ. իսկ առ վարդանայ աղաւաղմօք Շիրակաւան (4)։ Յանուանէ աստի սորա յայտ է թէ անկանի 'ի շիրակ գաւառի, թէպէտ և յայտնի ուրեք ոչ դնեն պատմագիրք զգաւառ սորա։

Իր սա կալուած Ա. սմբատայ, որպէս դնէ յովհաննէս

(1) Յերկուս ձեռ" գրի յԵրազգաւորս, այլ 'ի հնագոյնն գրի յԵրազգաւորս։

(2) 'ի նորագոյն ձեռ" գրի Շիրակաւան, այլ յերկոսին որք են հին, գրի Շիրակաւան։

(3) Այլուր առ նորին. յոհ. կաթ. գրի Երազգաւորէ. * Սմբատ առեալ ընդ իւր զուստր աբասայ եղբօր իւրոյ, և զգաղթն Երազգաւորից... չուէ գնայ յուտի գաւառ ||։

(4) Յայսմաւ. յուլ. 30. այս անուն դնի իբր անուն գաւառի, կոչելով զբարսեղ Արքեպիսկոպոս յանոյ, և վանն Շիրակաւանայ։ Այլ վրիպակաւ է եդեալ աստէն փոխանակ անուանս Շիրակայ, ըստ որում ուղղագոյն ևս գրի 'ի նոր ձեռագրի ինչ. Արքեպիսկոպոս յանոյ, և վանն Շիրակայ։ Զի բարսեղ համօրէն գաւառին շիրակայ կացուցաւ արքեպիսկոպոս, և աթոռ նորա էր յանի։

կաթողիկոս. ոչ միայն 'ի վերոյգրեալ բանս իւր, այլ նաև այլուր յասելն. * Արքայ սմպատ դարձեալ 'ի փախստէութէ իւրմէ՝ գայ 'ի սեպհական կալուածս տէրութեան իւրոյ յԵրազգաւորս||: Ունէր անդէն ապարանս՝ զոր յիշէ նոյն յովհաննէս կաթողիկոս. * Իսկ արքայ սմպատ շուէր գնայր յարքունական ապարանս իւր 'ի քաղաքագեօղն Երազգաւորս||: Շինեաց նոյն սմբատ և եկեղեցի Սբ փրկիչ անուանեալ ըստ վարդանայ, զոր ասողիկ գ. 3. կոչէ Ամենափրկիչ: * Շինեաց (ասէ ա. սմբատ) զԱմենափրկիչ եկեղեցին յԱնին շիրակայ գմբեթաւորեալ բարձրագոյն յօրինուածով, կոփածու քաղաքորմով||:

Մերձ էր սա յարքունի ապարանս ըստ գրելոյ յովհաննու կաթողիկոսի, զոր առանց անուան յիշատակէ, ասելով. * Ի այսու ժամանակաւ 'ի քաղաքագեօղն մեծ Երազգաւորս եկեղեցին որ նախ յարքայէ սմպատայ հիմնադրեալ եղև մերձ 'ի թագաւորական նորա յապարանս, բովանդակեալ շինութբ 'ի գլուխ ելեալ աստանօր (1), և ըստ օրինակի կարգաց ածայնոց՝ զնորայն նաւակատիս պատուեալ բարձրացուցանէին||:

Այլ եկեղեցի պարտ է համարել զյիշատակեալն 'ի սամուէլէ 'ի վերոյգրեալ բանս իւր (անվրէպ համարեալ զգրեալն նորա). քանզի շինեալ ասէ զայն 'ի սմբատայ սպարապետէ՝ որ աբլաբասն կոչեցաւ, և ոչ 'ի սմբատայ արքայէ (2): Նոյն սամուէլ 'ի թվին շձ. դնէ կործանեալ զեկեղեցի ամենափրկչին՝ որ ('ի հնագոյն, նաև յերկուս նոր օրինակս դնի յանի՝) ասելով. * Փլաւ ամենափրկիչն 'ի յանի 'ի մարերի 'ի ժե. յաւուր հինգշաբաթոջ||: Իսկ 'ի միջին օրինակի՝ որ և է ընտիր, չիք բառս յանի. յոյր սակս ոչ կարեմք որոշել, արդեօք նոյն պարտ է համարել զայս ընդ ամենափրկչին եկեղեցւոյ երազգաւորաց՝ զոր յիշէն այլք, թէ այլ եկեղեցի 'ի յանի քաղաքին, զորոյ ոչ գտանեմք յիշատակութի առ այլս.

Յետ շինութեց ա. սմբատայ՝ սոյն այս Երազգաւորք համարեցաւ գլխաւոր քաղաք մինչև 'ի ժամանակս բ. սմբատայ՝ որ զանի ընդարձակեաց. այսմ վկայէ վարդան յասելն, թէ Երազգաւորք էր * Նախադաս թագաւո-

(1) Այսինքն իբր 'ի ա. ամի կաթուղիկոսութե նորին յովհաննու, որ նստաւ 'ի 897:

(2) Զնոյն կրկնէ և կիր. յառեջն. * Յետ նորա սմբատ որդի աշոտոյ որ աբլաբասն կոչէր, ամս լէ. սա շինէ զքաւարանն մեծապայծառ զարդու յԵրազգաւոր, որ արդ Շիրակաւան կոչի||:

բայն բագրատունեաց, մինչդեռ չև էր ընդարձակ շինեալ քաղաքն անի ։ Իսկ ստեփաննոս օրպէլեան յոտանաւոր ողբումն կաթուղիկէին վաղարշապատու՝ դնէ 'ի կարգս արքայանիստ քաղաքացն բագրատունեաց զկնի անոյ՝ ասելով թէ արկին զաթոռ իւրեանց՝

> * Յերազգաւոր մեծ աւանին,
> Նաև 'ի կարսըն վանանդին ։

Թէպէտ և յայնմ ժամանակի թագաւորք ոչ միշտ նըստէին 'ի միում քաղաքի, և ոչ միշտ յԵրազգաւորս, այլ աստ և անդ, որպէս տեսանեմք 'ի պատմութիս ։

Արգինա ։ Գիւղ՝ յիշատակեալ 'ի յովհաննէ կաթողիկոսէ, յասելն վասն շահանշահ աշոտոյ. * Գնայ թագաւորն 'ի գաւառն Շիրակ ... և հանդիպեալ միմեանց 'ի գեօղն Արմոսանի(1)՝ մեծապատիւ զնոսա առնէ ըստ օրինի թագաւորաց ։

Բաւաց ձոր ։ Գիւղ՝ յիշատակեալ յասողկայ Գ. 11. յասելն վասն կուրապաղատին տայոց դաւթի. * Գնայ իջանէ 'ի Շիրակ, 'ի գիւղն՝ որում Բաւաց ձորն կոչեն ։

Բեռնաւս ։ Գիւղ՝ զորմէ ասողիկ Բ. 2 ։ * Նշխարք սորա (ասէ, այսինքն տն թագայ, որ զմարտիրոսականն ընկալաւ պսակ յաւուրս յովհ". մանդակունւոյ, է) 'ի Շիրակ գաւառի, 'ի գիւղն՝ որ Բեռնաւս կոչի, յեկեղեցւոջ՝ որ Տն թագ ասեն ։

Բշտէ ։ Թուի լինել յայս գաւառ՝ 'ի բանից ստեփաննոսի օրպէլեան գլ. ժէ. յասելն վասն վահանայ. * Սատակեաց 'ի պատերազմի զբուրդն ահագին զգդիհոն, 'ի գաւառին Շիրակայ, մերձ 'ի գեօղն՝ որ Բշտէ անուանի ։

Հոռոմոսին, կամ Հոռոմոսի վանք ։ Շինեցաւ այս մենաստան յաւուրս աբասայ արքային 'ի Ժ. դարուն, յորում առաւել քան զամենայն փայլէր գութ ողորմութեան ։ * Իսկ 'ի գաւառին շիրակայ (ասէ ասողիկ Գ. 7.) Հոռոմոսին կոչեցեալ վանք՝ շինեցաւ 'ի ձեռն յովհաննիսի՝ որ էր զարդարեալ յամենայն առաքինութիս, ևս առաւել յողորմածութե զարդս ... և անցաւորաց և Ճանապարհորդաց հանգստարան պատրաստէր զտեղին, մինչև համչել իբր յիւրեանց տան ամենայն օտարաց. որ մինչև ցայսօր երևի նոյն նշան ողորմածութե 'ի տանն յայնմ ։

Միաբանք սորա էին 'ի կրօնաւորացն հայոց, որք փա-

(1) 'ի կրկին օրինակս գրի Արգինի ։

խեան յաշխարհէն Հոռոմոց սակս Հալածանաց յունաց, և ուռմանոս կայսեր · վասն այսորիկ կոչեցաւ Հոռոմոսին, որպէս դնէ ասողիկ · կամ Հոռոմոց վանք ։ * Որպէս Թէ (ասէ վարդան) 'ի Հոռոմոց եկին կողմանց ‖ ։ Կամ զի զե-րիցունս՝ Հոռոմոց էրէց կոչէին, որպէս մեկնէ կիրակոս, յասելն · * Նա զի կոչէին զերիցունս՝ Հոռոմոց էրէց, անուանեցին զմի վանքն որ 'ի շիրակ՝ Հոռոմոց վանք, որ ցարդ ևս Հոռոմոցի վանք ասի ‖ ։

Իսկ 'ի 982 · ըստ գրելոյ ասողկայ գ· 12 · * Զհոռո-մոսի վանքն այրեաց ‖ աբլհաճայ ամիրայ պարսիկ, զոր կոչեցեալ էր մուշեղայ եղբօր գ · աշոտոյ ողորմածին ։ Նա Թաղեցաւ տ· սարգիս կաԹողիկոս, ըստ վկայելոյ լաստի-վերտցւոյն գլ· ա ։ * փոխի յաշխարհէ տր և արժանաւոր հայրապետն տր սարգիս, և է դերեզման նորա 'ի Հոռո-մոսի վանքն ‖ ։

Պողբեվանք ։ Նա վարդանայ գրի Պողբավանք, նոյնպէս և առ վարդանայ աշխարհագրի, որ և դնէ յայս գաւառ · որպէս և ասողիկ գ· 7 · յասելն՝ Թէ 'ի նոյն ժամանակս յորում շինեցաւ վերոգրեալ մենաստանն և այլք, շինե-ցաւ * Նա Պողբեվանս 'ի Շիրակ գաւառի ‖ ։ Յայս գա-ւառ դնէ և կիրակոս ։ Հաստատեցին (ասէ վասն Հալա-ծեալ կրօնաւորացն 'ի ուռմանոս կայսերէ) * Նա զՀոռո-մոսին կոչեցեալ վանք, և զՊողբեվանք 'ի շիրակ գաւա-ռին ‖ ։ Վարդան դնէ 'ի գաւառին անոյ, որ է նոյն ։

Զշինութիւն զոր պատմեն վերոգրեալ պատմագիրք, պարտ է համարել նորոգութի, քանզի բազմօք յառաջ քան զհալածեալ կրօնաւորսն՝ որք էին 'ի Ժ · դարուն՝ առաջնորդ էր այսր վանաց բարսեղ ձնն որ էր 'ի Է · դա-րուն · * Նա արար (ասէ վարդ") 'ի ձեռն սրբյն բարսղի մականուն ձնն կոչեցելոյ, որ էր առաջնորդ սր ուխտին՝ որ Պողբավանքն կոչի ի գաւառին Անոյ ‖ ։

Իսկ աստ խաչ հուշակաւոր՝ զորմէ գրէ նոյն վարդան · * 'ի Պողբավանից տարան զխաչն որ յանուն տր ամեն-նէն, որ արդ Մարծնոյ կոչի, յայնժամ Ճոխեանց կո-չիւր · · · և է տըյն մեսրոպայ օրհնեալ, և կամ բարսղի տըյ ձնեն · և ունի գիր հայերէն յաջ Թեւն, և ծածկեալ են ոսկով ‖ ։ Աքանչելեօք սորին բժշկեցաւ կին դեմե-տրեայ արքային վրաց, վասն որոյ 'ի հայոց առեալ տա-րան 'ի վիրս ։

Մարմաշէն · կամ Մարմարաշէն, և Հառիճայ ։ Նա մենաս-տանք յայսմ գաւառի, ըստ վկայելոյ վարդանայ աշխար-

հագրի ։ * Շիրակ գաւառն (տե՛ս) ուր կան՚ոք ուխտքն Հոռոմոս, և Մարմարաշէն, և Կարմնջաձոր, Դպրավանք, և Հառիճայ, և այլ բազումք ‖ ։ Սամուէլ կոչէ զառաջինն Մարմաշէն՝ յիշելով և զշինօղ նորա ՚ի Թվին ՆԼԵ․ * Սկիզբն շինուածոյ մեծանուն և վայելչաշէն զարմանակերտ և հոյակապ ուխտին Մարմաշինոյ՝ ՚ի քառասէր իշխանաց իշխանէն Վահրամայ ‖ ։ Յոր յաւելու ապա ընդարձակօղ սամուէլի․ * Սկսեալ ՚ի ՆԼԵ․ Թվին (այսինքն ՚ի 986․) և աւարտեալ ՚ի ԽԳին ‖ , այսինքն ՚ի ՆԽԳ, որ է ամ տն 994 ։ Գրէ վասն այսր և Կիրակոս․ * Յաւուրս սորա (այսինքն շահնշահ կամ տիեզերակալ սմբատայ) սկիզբն եղև շինուածոյ հռչակաւոր ուխտին Մարմարաշէննն կոչեցեալ ՚ի քառասէր իշխանէն վահրամայ (1) ‖ ։

Յիշատակէ զայս մենաստան և գրիգոր մագիստրոս ՚ի Թուղթս իւր, որպէս ՚ի Թղթին առ եղբարս ուխտին սանահնի, և ՚ի կրկին Թուղթս իւր որ առ սոսթենէս հայր ուխտին Մարմաշինոյ, յորոց ՚ի միումն կոչէ զնոյն մենաստան Սբ ուխտ և մայրաքաղաք Մարմաշինոյ ։

## ՎԱՆԱՆԴ ։

Ուրեք ուրեք գրի Վանանդ, որպէս առ յովհաննու կաթողիկոսի․ * Ճըջէր (ոգբա) Է կողմամբ Վանանդայ․ անդ ապա հասեալ ՚ի վերայ կամնարականն հանդերձ ազատօքն Վանանդայ՝ կոտորեցին սպառսպուռ զզօրս նորա ‖ ։ Նոյլին տառիւ գրի և անուն բնակչացն ուրեք առ նմա․ * Բակէր յարքայէ զոմանս և յայլոց ես նախարարացն Վանանդացեաց ‖ ։ Կոչեցաւ այսպէս յանուն Վընդայ որ յաւուրս Տ․ արշակայ արքայի մերոյ՝ ՚ի բուլղարաց հատուածեալ, բնակեցաւ աստէն․ քանզի յառաջ այս գաւառ կոչէր Նոֆայր և Սերեն բառեն ։ * Իջանէ (տե՛ս խոր․ Բ․ 6) ՚ի տեղիս խոտաւէտ, մերձ ՚ի սահմանն շարայի․ զոր հինքն Նոփայտ և Սերին Բասեն կոչէին․ իսկ յետոյ վասն հատուածին վղընդուր բուղկարայ վընդայ՝

(1) Ասողիկ․ Գ․ 41․ աշոտոյ պահլաւունոյ ընծայէ զշինութիւն սորա, յասելն․ * Գումարէ (զօրս գագիկ արքայ) ՚ի ձեռն իշխանաց իշխանին վահրամայ որդւոյ գրիգորոյ, և սմպատոյ մաժիստրոսի որդւոյ վահրամայ, և մարզպանին աշոտոյ պահլաւունոյ՝ որ զՄարմաշէնն և զԲջնիէրն շինեաց ‖ ։

բնակելոյ 'ի տեղւոջ, յանուն նորա անուանեցաւ Վանանդ. և անուանք շինիցն՝ յանուն եղբարց և զարմից նորա անուանեալ կոչին մինչև ցայժմ ||: Վասն այսորիկ Թերևս 'ի միում օրինակի աշխարհագրութեան Խորենացւոյն այս գաւառ գրի Վանդ:

Լաստիվերտցին գլ. ը. կոչէ զայս և Փորակ. * Անցանէ ընդ բասեանն և հասանէ 'ի վանանդ, կամ 'ի փորակ ||: Նոյն փորակ Թուի մեզ լինել տեղի կամ ձոր ինչ՝ ուր եհաս Թագաւորն, որ քանզի էր 'ի վանանդ գաւառի, նախ ընդհանուր զգաւառն դնէ, և ապա զտեղի գաւառին որոշէ՝ ուր եհաս (1): Յայսմաւ. մարտի 30. յիշատակի և փոքր վանանդ. * Յետոյ իմացեալ զօրացն յունաց, հասին 'ի փոքր վանանդ ||, որ Թուի լինել մասն ինչ սորին գաւառի, և ոչ սահման ինչ արտաքոյ նորա:

Սահմանակից է բասենոյ և շիրակայ, զոր ցուցանէ վերոգրեալ բան Խորենացւոյն՝ դնելով զվանանդ մերձ 'ի սահմանն շարայի՝ որ է շիրակ: Սահմանակից է նաև կող գաւառին տայոց, զոր ցուցանէ Խորենացին ը. 8. 'ի պատմելն զհատուածին վղնդայ՝ յաշխարհէն բուլղարաց: * 'Ի նորա աւուրս (ասէ, այսինքն ա. արշակայ) աղմուկ մեծ լեալ 'ի գօտիս մեծի լերինն կաւկասու յաշխարհին բուլղարայ, և բազումք 'ի նոցանէ հատուածեալք եկին յաշխարհս մեր ('ի վանանդ), և բնակեցան ներքոյ կողայ, յարգաւանդ և 'ի հացաւէտ տեղիս բազում ժամանակս ||: Ներքոյ կողայ՝ իմա զհարաւակողմն կողայ, ուր անկանի վանանդ:

Զպատուականութիւն երկրին երիւք բառիւք Խորենացւոյն ը. 44. մարթ է իմանալ, որ կոչէ Խոտաւէտ, Արգաւանդ, և Հացաւէտ. այսինքն բերող ցորենոյ. այլ ունի և Մայրիս 'ի լերինս իւր:

Բնակիչք գաւառիս ըստ մեծի մասին սերեալ գոլով 'ի կովկասական ազանց՝ որոց հայրենական են աւազակութիւնք և մարդադաւութիւնք, զնոյնս բարս և զգործ ունէին մինչև 'ի ժամանակս յետինս: * Քանզի վանան-

(1) Անծանօթ են բանք ընդարձակողին Վարդ" աշխարհագրի: * Վանանդ կառուցեր ղեւոնդ վարդապետն ||: Յայլում ձեռ" գրի: * Վանանդակարուցեր ղեւոնդ վարդապետն ||: Թերևս ասել կամելով. 'ի վանանդայ կարուց էր նըն ղեւոնդ երէց նահատակեալն 'ի պարսս առ ը. յազկերտիւ, ըստ որում էր նա 'ի վանանդայ. մանաւանդ զի անունս կարուց յերկուս ձեռ" ը տառիւ գրի: Նոյն ստոյգ է՝ զոր յաւելու զկնի թէ * Գողթան վանանդն որոշ է ||:

դացիք (տե՛ս խոր. գ. 44.) զաւազակութիւն գործ մեծ ցանկութեամբ գործէին, և որպէս ուղիղ իրք ախորժելի թուէին նոցա ||։ Մինչև յաւուրս գ. արշակայ և գ. խոսրովու՝ յայանի ապստամբեալ յերկոցունց թագաւորաց՝ արշաւէին 'ի սահմանս իշխանութեան նոցա. նոյնպէս և 'ի մէջն անդ Ժ. դարուն յաւուրս մուշեղայ արքային կարուց՝ աւազակէին ոչ միայն 'ի բացեայ տեղիսն. այլ և 'ի նոյն իսկ 'ի քաղաքին, այլ աբաս որդի և յաջորդ նորա խաղաղացոյց զգաւառն ։ * Նախ և առաջին (տե՛ս ստոդ. գ. 17.) եբարձ նա յաշխարհէն իւրմէ ('ի վանանդայ) զաւազակութիւն, զմարդադաւութիւն, զոր ազգն վանանդայ իբրև զհայրենիք ունէին, ըստ ասելոյ պատմագրին (այսինքն է խորենացւոյն)... և այնպէս խաղաղացոյց զաշխարհն իւր, մինչ զի 'ի գիշերի իբրև 'ի տըւընջեան, և յանապատի իբրև յապարանս շրջէին. ամենեքին շինութիւն և աշխատաժիր գործոց պարապեալ, և արդարադատ իրաւամբք ուղղեալք ||։

'Ի Ժ. դարուն 'ի կարս քաղաքի սորա կանգնեցաւ թագաւորութիւն սակաւատև, որպէս տեսցի ստորև ։ Այլ յովհաննէս կաթողիկոս 'ի Թ. դարուն եւս կոչէ զայս գաւառ Վետուրէ, գրելով վասն աբասայ եղբօր ա. աշոտոյ արքայի. * Աբաս սպարապետն հայոց՝ և եղբայր արքային աշոտոյ 'ի կողմանս պետութեան վանանդայ առկայացեալ կայր ||։

Եպիսկոպոս գաւառիս յիշատակի առ եղիշէի թղթ. 26. անուանեալ, * Գադ եպիսկոպոս վանանդայ (1) ||։ Յիշատակի նոյնպէս և 'ի ստորագրութեան անդ ժողովոյն դւինայ զկնի եպիսկոպոսին ուշտունեաց, և նախ քան զեպիսկոպոսն աշմունեաց ։ Աթոռ նորա 'ի վերջին ժամանակս թուի թէ էր 'ի կարս քաղաք, որպէս մարթ է գուշակել 'ի թղթոյ շնորհալւոյն առ բնակիչս քաղաքիս ։

Կարս ։ Այս քաղաք մինչև ցայժմ կոչի 'ի վրաց 'ի սեռականն՝ Կարսիս քալաքի. որ թարգմանի առ նոսա՝ Դրան քաղաք, որոյ ուղղականն լինի Կարէ, որ նշանակէ Դուռն ։ Յանուանէ աստի ածանցեալ է առ մեզ անունս Կարս. այսպէս անուանեալ՝ զի որում կարս քաղաք՝ դուռն մտից էր սահմանին վրաց և հայոց, յորժամ գուգարք էին ընդ տէրութեամբ վրաց, կամ թէ 'ի սահմանի վրաց համարեալ ։

(1) Ըստ միում ձեռ" այսպէս, պէս և առ ղազ. թղթ. 75. գրի այլ 'ի տպ". գրի Վանանդայ, որ. Տէր Գաթ Վանանդեայ եպիսկոպոս ։

Առ մատթէոսի 'ի թվին շճգ. յերիս տեղիս ես գրի Կարս, որ ոչ է ուղիղ հնչումն նախնեաց, այլ այժմեան հնչումն ռամկաց 'ի հայկական խօսս:

Յիշատակի այս քաղաք և առ յունաց պատմագիրս՝ առ կեդրենոսի, առ յոհաննու կուրոպաղատայ, և առ սկեւփիլուժէնի 'ի գիրս կառավար. գլ. 44. ուր ասէ. * Իշխանն իշխանաց (աշոտ) նստէր 'ի մեծ հայս 'ի քաղաքն Կարս ||: Զնոյն յիշէ և 'ի գլ. 50: Կարծէ դուրնըֆօր նոյն լեալ որ առ պտղոմեայ. գլ. ժԶ. կոչի Կորսա, այլ կասկածի ընդ իւր կարծիս՝ սակս դնելոյ պտղոմեայ զԿորսա առ եփրատաւ, և ոչ առ երասխաւ, յորոյ մերձակայս է Կարս. բայց որպէս բազում ուրեք գրեալ եմք, վրիպանօք՝ կամ գրչաց և կամ նորին պտղոմեայ՝ եդեալ է անդէն եփրատ, փոխանակ դնելոյ զերասխ, զի 'ի նոյն կարգի առ եփրատաւ յատակ հնչմամբ յիշատակին առ նմա, և արմաւիր, և արտաշատ, և նախջաւան, որք են առ երասխաւ:

Այս կարս քաղաք նոյն է՝ որ բազում ուրեք 'ի սեռականն կոչի Քաղաք Կարուց. որպէս յայտ է յասողկայ՝ որ 'ի Գ. 11. զմուշեղ թագաւոր քաղաքիս՝ դնէ 'ի կարս, ասելով. * Սկսաւ նա (այսինքն մեծատ արքայ սխեղերակալ ձայնեալ.) գոռալ ընդ հօրեղբօր իւրոյ մուշեղայ որ 'ի կարս ||: Իսկ 'ի Գ. 17. զնոյն մուշեղ դնէ թագաւոր քաղաքին կարուց. * Յայսմ ժամանակի (ասէ) նլԶ. թուականին, մուշեղ թագաւորն մայրաքաղաքին կարուց վախճանի ||: Այլ ես 'ի խորագրի նոյն գլխոյ աբաս որդի և յաջորդ մուշեղայ՝ դնի թագաւորեալ 'ի Կարս, որ յայտ է թէ թագաւոր էր կարուց, զի թագաւորէր անդ, ուրանօր և մուշեղ: Այլ գգագիկ զոր այլք թագաւորել դնեն 'ի կարս, կիրակոս կոչէ թագաւոր կարուց. * Գագիկ թագաւորն կարուց՝ գնաց տեսանել զկայսրն յունաց ||: Յայտ է ես 'ի բանից վարդանայ, զի ուր ասողիկ վասն աբասայ թագաւորի եղբօր երկաթ աշոտոյ գրէ՝ թէ շինեաց զեկեղեցի 'ի քաղաքին Կարուց, անդ վարդան վասն նորին եկեղեցւոյ շինեալ ասէ 'ի Կարս. զբանս նոցա տեսցես ստորև: Այլ այսպէս առաջին անունս Կարս՝ լինի ուղղականութի սեռականին վրաց. իսկ երկրորդ անունս Կարուց, սեռական հայկականին:

'Ի նախնումն առ յովհաննու կաթողիկոսի յիշատակի միշտ Աներդ անուամբ. * Կալեալ կապէ (ասէ աբաս եղբայր Տ. աշոտոյ) զնա երկաթի շղթայիւք, և դնէ 'ի բան-

տի 'ի բերդէն Կարուց ‖ ։ Եւ այլուր վասն ափշէն ոստիկանին. * Եղեթեալ պաշարէ զամուրն Կարուց 'ի վանանդ գաւառի ... իսկ արքայ սմպատ դարձեալ եկեալ յամրոյն Կարուց ‖ ։ 'Ի նոյն ամսուն կոչի 'ի պատմութեն Թովմայի արծրունւոյ յերկրորդ վարս գագկայ, ասելով վասն ափշնի. * Պաշարէ զբերդն Կարուց, և բացեալ զմթերեալ տունս գանձուց՝ առնու աւար բազում ‖ ։ Իսկ առ յետագայս յիշատակի ուրոյն և քաղաքն և բերդ նորա, որ էր 'ի բարձրաւանդակի քաղաքին, որոց առ Լաստիվերտցոյն գլ. ԺԵ. ուր զկարս կոչէ նախ 'ի խորագրի ·Քաղաքն յղփացեալ և ստորև գրէ. * Եթէ ոք ժամանեաց յամուրն եղանել՝ որ 'ի վերայ քաղաքին կայ, նա միայն ապրեցաւ ‖ ։ Զոր և շնորհալին 'ի թուղթն որ առ քաղաքացիս Կարուց, գովելով կոչէ զնոյն [illegible], և հոյակապ ·Քաղաք։ Իսկ բերդ կայ մինչև ցայժմ 'ի նոյն դիրս, զորմէ տես 'ի Նոր Հայաստան, թղթ. 120 ։

Զկաթուղիկէ եկեղեցին քաղաքիս շինեաց աբաս արքայն յաջորդ երկաթ աշոտոյ 'ի Ժ. դարուն։ * Նոր շինեալ թագաւորին (աբասայ՝ ասէ աստղ. Գ. 7.) զկաթողիկէն որ 'ի քաղաքին Կարուց, վիմարդեան արձանօք, որձաքար պողովատաշ վիմովք, բոլորապէս գմբեթաւորեալ պայծառ զարդուք՝ երկնանման խորան ‖ ։ Զնոյն գրէ և վարդան. * Շինեաց և թագաւորն աբաս զկաթողիկէն 'ի Կարս, գեղեցիկ յօրինուածով ‖ ։ Յիշատակի և այլ եկեղեցի սորա փայտակերտ՝ զոր յոյնք այրեցին ։

'Ի 961. եղև սա թագաւորանիստ առանձին թագաւորութեն, յորում նստան երեք միայն թագաւորք, մի զկնի միւսոյ պայազատելով. որոց սահմանն ձգէր ընդ համօրէն վանանդ. վասն որոյ սամուէլ զգագիկ որ թագաւորէր 'ի Կարս, կոչէ թագաւոր Վանանդայ՝ գրելով 'ի թվին շԺգ. * Մեռաւ թագաւորն վանանդայ գագիկ շահնշահ ‖ ։ Եւ կիրակոս զերկոսին անուանս ևս դնելով ասէ. * Եւ միւս ևս գագիկ (թագաւոր) վանանդեայ և կարուց՝ որ գնաց առ յոյնս ‖ ։

'Ի շԲ. թվին (1) 'ի 1053. յաւարի առին պարսիկք յանկարծ յարձակմամբ ։ Իսկ 'ի 1064. գագիկ վերջին թագաւոր քաղաքիս ետ զկարս 'ի յոյնս. զծամնդաւ և զայլ տեղիս առեալ փոխանակ այնր, ըստ մասին առ ահի թուրքաց, որպէս գրէ վարդան, և ըստ մասին առ բռնու-

(1) Այսպէս բերէ հաշիւ լաստիվ. գլ. ԺԴ։

թէ յունաց, որք ոչ ներէին հայոց նստուցանել կաթողիկոս, որպէս գրէ Շնորհալին 'ի վիպասանութեան:

* Յորժամ արքայն մեր կոչեցաւ,
զադիկ անուն վերածայնեաւ.
Այն որ զԿարս 'ի յոյնս տուեաւ,
և զՍամընդաւ դղեակն առեաւ....
Նաև ըզԿարս նախատացեաւ,
այնըր խնդրոյ փոխանակեաւ.
Զի հովուապետ հայոց դարձեաւ,
նստցէ յաթոռն ունայնացեաւ||:

Ի 1239 'ի վերջին ապականութիւն գրեթէ հասուցին կոտորածիւ մուղալ թաթարք առաջնորդութեամբ չարմաղանայ իշխանին. զնոյն անցս անցոյց և 'ի 1394. Լէնկթիմուր, որոյ նախ պաշարեալ ընդ ժամանակս ինչ, ոչ կարաց առնուլ մարտիւ. մինչև ապա ֆիրուզպախթ անուն իշխան քաղաքին՝ անձնատուր լինելով ետ նմա զԿարս: Զկնի տաճիկք առին 'ի ձեռաց վրաց, և 'ի տաճկաց վիրք. այլ անդրէն յառնուլ տաճկաց՝ գարա մուստաֆա փաշայն զօրապետ, զ. սուլթան մուրատայ ընդդէմ պարսից և վրաց, 'ի հիճր. 988 (1580. կամ 1579.) ամրացոյց զբերդ քաղաքիս պարսպաւ և խրամով շուրջանակի, շինեալ 'ի նմա նաև մզկիթ և բաղանիս:

Յառաջին ժամանակս վաճառականութիւն ծաղկեալ էր 'ի սմա. և բնակիչքն էին փարթամք, զոր յայտ առնէ լաստիվերտցին՝ յասելն վասն քաղաքացւոցս. * Հարստացեալք բազում ընչեղութեամբ՝ 'ի ծովէ և 'ի ցամաքէ ամբարեալ||: Նոյն ստորև առանձին յիշէ զվաճառականս սորա, կոչելով * Մեծահարկի և պատուական վաճառականք||:

Զեպիսկոպոսունս կարուց տես վերագոյնդ 'ի կարգի եպիսկոպոսացն Վանանդայ:

Զարիշատ: Զոր առ 'ի զանազանել 'ի միւս քաղաքէն որ յԱղիովիտ՝ խորենացին գ. 65. կոչէ Զարիշատ Վանանդայ. * Յղեցին և բազմունք եպիսկոպոսացն հանդերձ երանելեաւն Մեսրոպաւ, և բովանդակ ուխտիւ եկեղեցւոյն մաղթանս՝ զքահանայն տիրուկ զորդի մովսիսկան 'ի Զարիշատէ վանանդայ||: Այլ թէ քաղաք իցէ, կամ աւան ոչ ինչ յիշատակէ: Տես 'ի նոր հայաստան. թղթ. 121:

Կոքաղլեթ: Կիւղ՝ յիշատակեալ 'ի ղևոնդեայ 'ի գլ. Թ.

յասելն վասն սմբատայ կիւրապաղատի. * Միաբանեալ սմբատայ ընդ զօրավարին յունաց, եկեալ հասանէին 'ի գաւառն վանանդայ, 'ի գիւղն՝ որում Դրաշպետն կոչեն ||:

Ոթմուս գեօղ: Աստի էր գիւտ կաթողիկոս, և աստանօր թաղեցաւ, զորմէ գրէ ղազար. * Եդեալ 'ի դիրս հարց իւրոց խաղաղութբ, 'ի գեօղն որ կոչի Ոթմուս գեօղ, 'ի գաւառին վանանդայ ||: Առ ասողկայ Բ. 2. գրի Ոթմոս գեւղ, յասելն վասն գիւտայ. * Էր 'ի գաւառէն վանանդայ յՈւթմսոյ գեղջէ ||: Նոյնպէս գրի և յայլ երիս տեղիս 'ի պատմելն զբաբկէն, և զիսրայէլ, և զբ. տրդատ կաթողիկոսաց, որք նոյնպէս էին 'ի գեղջէ աստի: Իսկ առ յոհաննու կաթողիկոսի գրի Օ տառիւ. * Զ այսու ժամանակաւ մեծ հայրապետն գիւտ՝ որ յՕթմսոյ գեղջէ ... վախճանի ||: Նոյնպէս և առ Կիր. 'ի պատմելն զբ. տրդատայ կաթողիկոսէ ասէ լինել զնա յՕթմսոյ գեղջէ:

Յերեւեալ: Յիշատակի առ բուզանդայ Դ. 22. յասելն վասն զօրացն պարսից. * Հասեալ էին 'ի գաւառն վանանդայ, 'ի տեղւոջն՝ որ անուանեալ կոչի Յերեւեալ ||: Զնոյն յիշատակէ և խորենացին Գ. 46 և կոչէ Երեւել: * Եդիտ (խոսրով Գ.) զարշակ (արքայ) իջեալ յիւր սահմանն 'ի գաւառին վանանդայ. և պատահէին միմեանց 'ի դաշտին որ կոչի Երեւել, և տան պատերազմ ընդ միմեանս սաստիկ յոյժ ||:

Իջաւանից գեղ: Հայրենիք տ̃ըյն ղեւոնդեայ երիցու, զոր յիշատակէ եղիշէ թղթ. 181. * Ղևոնդ երէց 'ի վանանդայ 'ի գեղջէ Իջաւանից ||:

Կաձկաքար: Զորմէ ասողիկ Գ. 6. * Եւ ապա եկեալ հոռոմդի արանցն 'ի վանանդ, 'ի գիւղն Կաձկաքար, կոտորեցան 'ի ձեռն սահակայ որդւոյ խամայէլի ||:

Խաչի վանք: Յայսմաւուրս մարտի 30. * Եւ ապա տարան 'ի վանանդ (զսբ. խաչն նունեայ), և զտեղին ուր եդին զսբ. խաչն՝ կոչեցին Խաչի վանք ||: Աստի դերեցաւ յաւուրս Ա. բարսեղ կաթողիկոսին, յելս ԺԱ. դարուն:

## ԱՐԱԳԱԾՈՏՆ·

Կոչեցաւ այսպէս յանուանէ լերինն Արագածոյ. իսկ Արագած էառ զիւր անուն յարմենակայ նահապետէն որդւոյ Հայկայ. և որպէս անուն իւր յայտ առնէ՝ ձգի այս գաւառ առ ոտամբ նոյն արագած լերին. յորս սակս ուրեք ուրեք ուրոյն գրի անուն սորա՝ կոչելով Ոտն Արագածոյ. * Յայսմ խորութեն դաշտի (տես խոր. ա. 11.) բնակեալ Արմենակայ, շինէ զմասն ինչ 'ի հիւսիսոյ կողմանէ դաշտին, և զոտն լերինն 'ի նոյն կողմանէ, և ըզլեառն անուանէ յանգագոյն յիւր անուն Արագած, և զկալուածսն՝ Ոտն Արագածոյ ‖: Սոյնպէս 'ի գործ ածի և առ Թովմայի Արծրունւոյ, յասելն յերկրորդ վարս գաղկայ. * Ոստիկանս առաքեալ յայրարատեան գաւառ, և մինչև յԱրագածն կոչեցեալ Ոտն, որ է բաժին կալուածոց աբասայ որդւոյ սմբատայ ‖: Ուրեք առ յոհաննու կաթուղիկոսի Կողմ Արագածոյ. * Բայց ... յերկուցն եւ գաւառաց, որ է մասեաց ոտն, և Կողմ արագածոյ ‖.

Ունի այս գաւառ յոտս նոյն համանուն լերին՝ դաշտ ինչ ընդարձակ, յորոյ ընդ մէջ անցանէ գետակ. դաշտն է պատեալ լերամբք. առ ստորոտովք նոցին բազմութիւն աղբերաց, որք սկզբնաւորեն գետակ: Ո՜ այս ամենայն բանաստեղծօրէն իմն ստորագրէ Խորենացին յայս համառօտ բան: * Իսկ արմենակայ առեալ զամենայն բազմութիւն՝ խաղայ յարևելս հիւսիսոյ, և երթեալ իջանէ 'ի խորին դաշտավայրի մի, 'ի բարձրագագաթանց պարապեալ լերանց. գետս կարկաջասահ 'ի յարևմտից ընդ մէջ անցանելով, և զդաշտն արևելից իմն զոգցես իբր որսայսեալ՝ ձիգ յարեգակն կոյս զերկայնութիւն պարզեալ. և առ ստորոտովք լերանցն բազում ականակիտ բղխեալ աղբիւրք, որ գետոց հաւաքումն եղեալ հեզաբար առ սահմանօք նոցա, ծնիւք լերանց և եզերօք դաշտին պատանիք ոմանք իբր երիտասարդուհիք Ձնմիցին ‖.

Եպիսկոպոսունք գաւառիս կոչէին յանուն գլխաւոր ցեղին տիրողի յայս գաւառ, այսինքն է՝ Ամատունեաց, որպէս ուսանիմք 'ի յիշատակարանէ ղաքարիայ առաջնորդի ամատունեաց, ուր ասէ. * Ես ... զաքարիա 'ի տանէս արարատեան .. առաջնորդ Ամատունեաց ՍԲ կարապետիս՝ որ 'ի ստորոտս Արագածու, և 'ի գաւառիս

Կարբոյ, և յԱնբերդոյ [1]‖։ Զնոյն ցուցանեն և բանք առաքել պատմագրի։ Այս եպիսկոպոսական աթոռ է մին 'ի հնագունից անտի, բայց եպիսկոպոսունք յիշատակեալք 'ի գիրս են ա. Եղիշա եպիսկոպոս ամատունեաց առ ժամանակօք վարդանանց. բ. Մատթէոս եպիսկոպոս ամատունեաց 'ի ժամանակս ա. խոսրովու պարսից արքայի զոր յիշատակէ ասողիկ բ. 2. գ. Ասայել եպիսկոպոս ամատունեաց 'ի ժողովն դւնայ առ դ. Ներսէս կաթուղիկոսիւ։

Աշտիշատ, կամ Օշական։ Անկանի յայս գաւառ։ * Տարեալ հանգուցանէն զնա (այսինքն զերանելին մեսրովբ. ասէ Թովմա արծրունի) 'ի յԱւշական գեօղ, 'ի գաւառին որ կոչի Ոտն արագածոյ‖։ Նոյն այսմ և ասողիկ բ. 6. * Զսա (այսինքն զմօրիկ կայսր) ասեն լինել յերկրէն հայոց, յարագածոտն գաւառէ, 'ի գեղջէ որ Օշական կոչի, որ 'ի կոստանդնուպօլիս խնամ ածէր դեւղջն իւրում, և այս արդարացուցանէ զառասպելն՝ որ ասեն, Աստի յՕշական խունգ առաջի‖։ Բուզանդ ե. 7. բերդ կոչէ զայս, և դնէ յապառաժուտ դիրս՝ յասելն վասն զօրաց մասքթաց կմ կովկասականաց. * փախեան ելին 'ի քաղաքէ անտի յառապարն 'ի կողմն յՕշական բերդին, և զանապատն և զքարուտ տեղիսն՝ ապաւէն իւրեանց համարեցան‖։ Շրջակայ դիրքն էին քարուտք. այլ էր առանձին առապար՝ որ յանուն սորա կոչէր. զայս ակնարկէ բուզանդ. բայց յայտնագոյն ևս խորենացին գ. 9. յասելն վասն պատերազմի ընդդէմ նոյն կովկասայնոց. * Աստի մերժեալ զՕշական առապարաւն .... զհետ ունելով քաջաձիոցն 'ի դժուարս քարանց, և 'ի վիմուտ տեղիս‖։

Մերձ է 'ի վաղարշապատ, քանզի վահան ամատունի աստանօր կալով, տեսանէր զկաթուղիկէ եկեղեցին որ 'ի վաղարշապատ, որպէս յայտ առնէ անդէն խորենացին. տես վասն այսր 'ի նոր հայաստան, Թղթ. 266։ Եղև սեփական նորին վահանայ, զոր պարգևեաց նմա փոքր խոսրով արքայն սակս մեծի քաջագործութեան նորին. տես 'ի խորենացին 'ի նոյն գլ. ուրանօր զտեղի ճակատուն, կոչէ Օշական, թէպէտ և ճակատն ոչ եղև 'ի գիւղն անդ, այլ արտաքոյ 'ի շրջակայս։ Յայսմանէ խորենացին գ. 67. կոչէ Գիւղ Վահանայ. * Բարձեալ մարա-

(1) Տես զԱնբերդ յանձանօթս մեծին հայոց։

զնա ( այսինքն վահան զմարմին մեսրոպայ ) յիւրն գիւղն Օշական ‖ (1) ։ Այնպէս կոչէ և ղազար Թղթ . 64 ։

Աղձ ։ Առ խորենացւոյն Գ . 27 . կոչի Աղձն , և դնի յոտն արագած լերին ։ * Աւաղեցին ( զոսկերս Թագաւորացն հանեալս յամրոցէն անի ) յաւանին յԱղձս , որ յոտին արագած կոչեցեալ լերին ‖ ։ Այլ է յայս գաւառ, քանզի և նոյն իսկ լեառն անկանի ՚ի սմա . վասն որոյ յայտնի ես դնի առ ասողկայ Բ . 2 . * Տէր կոմիտաս (կաթողիկոս էր ) ՚ի գաւառէ արագածոտնոյ , ՚ի գեղջէ Աղցից ‖ (2) ։ Առ բուզանդայ դրի տառիւս ջ , և կոչի Գիւղ Ախոց , առաւել վասն ընտիր դրից , քան թէ սակս արուեստակերտ շինութեան . զի գրէ Գ . 24 ։ * Հանեալ Թաղեցին յամուր ՚ի գիւղն՝ որ Աղջքն անուանին , յայրարատ գաւառին՝ որ կայն ՚ի խնձս , ՚ի գոգս , ՚ի ծոցս , յանձուկս , ՚ի դժուարս լերինն մեծի՝ զոր Արագածն կոչեն ‖ ։ Յիշատակէ զնոյն և Թովմա մեծոփեցի . * Նա ազատորդի մի աղխդան անուն ՚ի յայրարատեան գաւառէ , ՚ի գեղջէն Աղցուց ‖ ։ Մինչև ցայսօր ստանի այս գիւղ սովին անուամբ որպէս լսեմք ։

Արուճ ։ Աւան , կամ Քաղաքագեօղ , զորմէ յիշատակի առ յոհաննու կաթուղիկոսի . * Իսկ արքայ (ա . սմբատ) իբր յապագայս իմն իմացեալ զչուելն յուսփայ . . . զումարտակ լինէր ՚ի քաղաքագեօղն Արուճ , ՚ի ծործորս Արագածոյ լերինն ‖ ։ Այլուր կոչէ Դաստակերտ , ուրանոր գրիգոր իշխանն մամիկոնեան որ յաւուրս անաստասայ կաթողիկոսի ՚ի մէջն անդ է . դարուն՝ շինեաց եկեղեցի , և ապարանս , զորոց զվայելչութիւն և զդիրս այսպէս ստորագրէ . * Ծայլին այցելականութ հիմնադրեալ զչքնաղագեղ եկեղեցին՝ որ ՚ի մեծ դաստակերտին Արուճ , շինէ զնա ստիպով երկնային իմն ձեմարան յարդարեալ ՚ի վերայ երկրի . և ՚ի հարաւոյ կողմանէ դնէ զարքունիսն իւր յեզր քարաժայռ ձորակին , յորում բղխէ ականակիտ աղբիւր պղպջակեալ ընդ քարածերպս վիմարդ քարանցն , որ զեզերս ունի իբրև զպսակ պատուարի ‖ ։

Բայց յառաջ քան զյովհաննէս կաթուղիկոս յիշէ զսա ղևոնդ պատմիչ ՚ի գլ . Գ . ՚ի գրելն վասն նորին գրի

(1) ՚Ի տպ . գրի ատէն Ուշջան այլ յերիս ձեռ" ևս (Թէպէտ և չէն հնագիր , ) գրի տառիւս Օ ։ Նոյնպէս և առ յով . կաթ ։

(2) Այսպէս գրի և առ յովհ . կաթ ։

գործ մամիկոնէի ։ * Շինեաց նա տուն աղօթից 'ի գաւառն արագածայ ոտին՝ յաւանն Արուճ՝ տաճար փառաց անուան ՏՆ՝ գեղեցիկ վայելչութբ զարդարեալ, յիշատակ անուան իւրոյ ։ Կորէ և ասողիկ Բ. 2. որպէս և կիրակոս գայսմանէ յասելն. * Ի Է. ամին անաստասայ եղև շինուած կաթողիկէին յաւանն Արուճ՝ զոր շինեաց գրիգոր պատրիկն, յորում մկրտի նահատակն քրի դաւիթ՝ ազգաւ պարսիկ ։ Նոյ վարդան՝ յասելն. * Յաւուրս սորա (այսինքն անաստասայ) շինեաց գրիգոր մամիկոնեան զկաթողիկէն Արճոյ ։

ԵՂԻՎԱՐԴ ։ Նախ էր մովսէս կաթուղիկոս. զորմէ յովհաննէս կաթուղիկոս. * Յետ սորա ապա զմովսէս զայրն ՏՆ որ յԵղիվարդ գեղջէ . . . կացուցանեն յաթոռ ։ Ասողիկ Բ. 2. նշանագրէ և զգաւառն ասելով. * Մովսէս 'ի գաւառէ Արագածոտնէ 'ի գեղջէ Եղիվարդայ ։ Ի նմին գաւառի դնէ և 'ի Գ. 3. յասելն վասն մաշտոց կաթուղիկոսի. * Սա էր հայրենեօք յարագածոտն գաւառէ 'ի գեղջէ Եղիվարդայ ։(1) ։ Վերոգրեալ գրիգոր իշխանն մամիկոնեան՝ շինեաց առ սովաւ մենաստան, որպէս ցուցանէ յովհաննէս կաթողիկոս՝ յասելն. * Շինեաց նա և նուիրանոց ուխտի կրօնաւորական դասուց, յորում և եկեղեցի պայծառապաճոյճ 'ի նմա յարդարեալ ըստ արևելից կուսէ դաստակերտին մեծի Եղիվարդայ. տուն բնակութե կուսակրօնից վնա հաստատէ 'ի փրկութի հոգւոյ իւրոյ ։

ԹԱԼԻՆ ։ Գիւղ՝ ուր բնակեցաւ ենիանոս բագրատունի յաւուրս արջամայ (կամ արշամայ) արքայի. յիշատակի այս առ թովմայի արծրունւոյ՝ յասելն. * Որ առեալ ջաջուռ աշխու (աղխիւ), և ամենայն պատրաստ կազմութբ բնակեցուցանէ 'ի կողմն Արագածոյ. 'ի գիւղն Թալին կոչեցեալ ։ Գեղաքաղաք կոչէ զսա յովհաննէս կաթողիկոս յասելն. * Յաւուրս սորա ( այսինքն Սիմոնի կաթ. ) եղև կոտորումն քաղինոյ, և արենոյ և Գեղաքաղաքին Թալինոյ, յորում սպանան ոգիք իբրև եօթն հարիւր, և

(1) Այլ յայսմաւ. հոկտ. 13. դնի 'ի կոտայս. ' Սբ վարդապետն մեր մաշտոց՝ էր 'ի գաւառէն կոտեաց, 'ի գեղջէն Եղևվարդայ ։ Այսպէս դնի 'ի միում ձեռ. որ համարի ընտիր քան զայլս ։ Իսկ յայլում ձեռ'' գրի. ' 'ի գաւառէն կոտէոց, 'ի գեղջէն Եղէվարդայ ։ Իսկ 'ի տպ. և 'ի նոր ձեռագրի ուղղագրեալ դնի. ' 'ի գաւառէն կոտէից, 'ի գեղջէն Եղիվարդայ ։ Այլ զիարդ և իցէ՝ ոչ ուղիղ 'ի կոտայս դնի այս Եղիվարդ ։

գերեզման ռ. ԺԾ ||։ Ասողիկ Գ. 2. յիշատակէ միայն զկոտորածն Թալինայ. իսկ սամուէլ զերեսեան ևս։ Թէպէտ և ոչ ոք 'ի նոցանէ որոշէ զգաւառն Թալինայ։

Կուաշ։ Որմէ խորենացին. Գ. 22. * Իսկ գնել եկեալ յաւանն Կուաշ, որ յոտին Արագածն կոչեցեալ լերինն, առ կուրացեալ հաւ (1) իւր տիրան ||։ Ոտն արագած լերին անկանի 'ի նոյն իսկ արագածոտան գաւառին, որպէս ասացաք 'ի վերոյ 'ի գիւղն Ագգք։ Յայսմ աւանի Թաղեցաւ նոյն տիրան արքայ։

Վարդենիս։ Յիշատակի այս գիւղ առ կիրակոսի, 'ի պատմելն զգնալն հեթմոյ արքայի առ մանգոյ խան Թաթարաց. ասէ. * Ո տեղի առ յոտն արագածու հանդէպ լերին արայի 'ի գիւղն որ կոչի վարդենիս ||։ (2)

Վժան։ Գիւղ յիշատակեալ առ յովհաննու կաթուղիկոսի։ * Ժողովէին (ասէ զօրքն հայոց առ արքայ սմբատ) 'ի գեղն Վժան որ 'ի ստորոտս Արագած լերին ||։

Սբ Գէորգ։ Յիշատակի առ յովհաննու կաթուղիկոսի. յասելն վասն Ե. յովսէփ կաթողիկոսի. * Բայց զկնի գէորգայ զյովսէփ 'ի գաւառէ Արագածոտան, 'ի բնակչաց 'սբյն Գրիգորի կացուցանեն 'ի հայրապետութեան ||։ Սոյնպէս և առ սամուէլի 'ի Թվին մխա. ուր նոյն յովսէփ դնի լինել * յԱրագածոտանէն 'ի բնակչաց 'սբյն գրիգորի ||։ Այսպէս գրի և 'ի գաւազանագիրս ինչ կաթողիկոսաց, զոր Թերևս արարեալ է ուրումն գրիգորի աշակերտի սարգսի, ասելով. * Տէր յովսէփ յԱրագածոտնէ 'ի մայրաքաղաքէ 'սբյն գրիգորի ||։ Իսկ առ ասողկայ գրի սա Սբ Գէորգ. * Տէր յովսէփ որ կարիճն կոչիւր, 'ի գաւառէ Արագածոտնէ, 'ի գեղջէ Սբ գէորգեայ ||։ Որ Թուի լինել վրիպակ, այլ յայտ է Թէ տեղին էր մենաստան, վասն որոյ կոչի Մայրաքաղաք՝ (որպէս և կոչին երևելի

(1) Այսպէս 'ի գրչագիր օրինակս, ուր 'ի տպ. գրի. Առ խուրացեալ հօրն իւր տիրան։

(2) Յայսմաւ. տպագրեալ 'ի յուլ. 30. ցուցանէ լինել 'ի Գ. հայս, զի դնէ զայն մի 'ի գիւղօրէից խարբերդու, որ է 'ի Գ. հայս, գրելով վասն բարսղի կաթողիկոսի. * Պատահեցաւ 'ի գիւղ մի խարբերթու, որ կոչի Վարդենի, մօտ 'ի յանծանիթ ||։ Այլ վրիպակ Թուի, և 'ի ձեռագիրս պակասի անուանս Խարբերդու. քանզի և այն պատմութիւն վախճանին բարսղի կաթողիկոսին՝ զորմէ բանն է 'ի յայսմաւուրս, խնդրէ տեղի ինչ մօտ 'ի սևալեառն և 'ի շուղր անապատ, 'ի սահմանս կիլիկիոյ։

վանք), և առընթեր ունէր գիւղ. յայն սակս յառողկայ գիւղ անուամբ յիշատակի։

## ՃԱԿԱՏՔ։

ՏԱՏԻԿ։ Յիշատակի առ Ասող. Գ. 11. * Սա սկսաւ նա (Սմբատ տիեզերակալ) գոռալ ընդ հօրեղբօր իւրոյ մուշեղայ որ 'ի կարս, և առնու զբերդն որ 'ի Ճակատն, որում Տատիկն կոչեն ‖։ Յիշէ զնոյն և Լաստիվ. գլ. Ը. առանց որոշելոյ զգաւառն. * Ի մէջ յիշխանացն 'ի կողմանէն աշոտոյ 'ի դատ կացեալ առաջի գեորգէ, ասէ թէ Տատիկ իմ բնական տեղի է՝ զոր անիրաւաբար տարաւ յինէն սմբատ ‖։

ԿՈՂԲ։ Յերկրին Ճակատուց դնէ զայս Թովմա Մեծոփեցի՝ ԳԻՒՂԱՔԱՂՔ կոչելով, որ մեզ թուի նոյն իսկ Ճակատք գաւառ։ Նոյն երևի լինել ընդ այսմ կողբայ որ յիշատակի առ յովհաննու կաթողիկոսի՝ յասելն վասն եզրի կաթողիկոսի. * Ընկալեալ պարգևս զերիր մասն գիւղաքաղաքին Կողբայ, և զաղտս նորին բովանդակաբար, դառնայ մեծաւ շքով 'ի տեղի իւր ‖։ Նոյնպէս յիշատակի և առ ստեփաննոսի օրբ. գլ. ԽԶ։ Զաղահանս Կողբայ յիշատակէ և կիրակոս գլ. ՀԶ. յասելն վասն Թաթարաց. * Զամենայն աղահանս առին որ 'ի Կողբ, և որ յայլ կողմանս կողմանս ‖։

Աշոտ սպարապետ որդի շապհոյ յաւուրս Թ. սմբատայ արքայի հիմնեաց աստէն եկեղեցի՝ որպէս գրէ յովհաննէս կաթողիկոս. * Զկնի ապա հիմնադրէ եկեղեցի 'ի քաղաքագեօղն Կողբ, բազմածախ փարթամութբ ‖։ Առ խորենացւոյ Գ. 60. կոչի ԿՈՂԲ. * Միւս ընկեր նորին 'ի Կողբ գեղջէ, որում եղնիկ անուն կոչէր (1) ‖։

Զայսոսիկ համարիմք մի և նոյն Կողբ. զի այլուր ոչ գտաք ցարդ 'ի գիրս նախնեաց Կողբ անուն գիւղ ինչ կամ քաղաքագեօղ, բայց եթէ գաւառ 'ի գուգարս, որ և տիրապէս կոչի Կողբոփոր։ Նոյնպէս և զՃակատք գաւառն համարիմք լինել այն՝ որ է յայրարատ, և ոչ որ 'ի տայս. զի բան յովհաննու կաթողիկոսի. գրեթէ յայտնի ցուցանէ լինել յայրարատ, քանզի շինութն և տէրութն

(1) Սոյն այս եղնիկ է որ սակս կոչի 'ի գիրս նախնեաց ԵՂՆԻԿ ԿՈՂԲԱՑԻ։

բագրատունեաց (յորմէ ցեղէ էր վերոգրեալ աշոտ,) էր յայրարատ ։

Սուրմառի, կամ Սուրմար ։ Բերդաքաղաք յիշատակեալ 'ի լաստիվ. գլ. Ժ. * Եւ նա (այսինքն վեստն սարգիս) ելեալ յամրոցէն (անիոյ) երթայ 'ի բերդաքաղաքն որ կոչի Սուրմառի ։ Թովմաս մեծոփեցի դնէ զնոյն 'ի Ճակատ գաւառի յասէն. * Եկին (զօրք լէնկթեմուրին) 'ի վերայ Ճակատուց երկրին Սուրմարու և կողբայ ։

Պատմիչն օրբէլ. գլ. Ե. թղթ. 24. կոչէ ՍԲ Սարէ. Առին (զաքարէ և իւանէ իշխանքն) զկարս և զվաղարշակերտ, զկաղզուան, զՍԲ Սարի, և զանի, և զանբերդ ։ Նոյնպէս գրի և առ կիրակոսի 'ի գլ. խը. վասն թաթարաց 'ի ժը. դարու, ասպատակողաց 'ի հայս. * Առին և զքաղաքն ՍԲ մարի՝ զոր սակաւ ամօք յառաջ առեալ էր զնա 'ի տաճկաց շահնշահի և աւագին, և դեռևս կարկատեալ էին, յանկարծակի եհաս 'ի վերայ նոցա մի ոմն յաւագացն (թաթարաց) զօրօք բազմօք՝ որում անուն էր ղարաբահատուր, և վաղվաղակի առ նա, և զոր ինչ եգիտ 'ի նմա յափշտակեաց ։

Նոյնպէս և առ Թովմայի մեծոփ. որ գրէ վասն թագաւորին ազախաց, դիմեաց * 'Ի վերայ երկրին Ճակատուց, էառ զքաղաքն ՍԲ մարի, և 'ի հիմանց տապալեալ զամուրն մեր՝ որ էր ամրափակեալ պատուական ազգին բագրատունեաց, և գերեաց զքաղաքն և զամենայն շրջակայ գեղօրայսն ։ Եւ անմիջապէս 'ի վերայ բերէ. * Իսկ բարեպաշտ տանուտէր մի մարտիրոս անուն.. 'ի գեղջէն կողբայ ելեալ 'ի լեառն Արարադ՝ որ կոչի յայլոց ազգաց Աղըրտաղ, յոյժ արի և քաջ մանկամբ գեղջն ապրեցոյց զամենայն հաւատացեալսն ։

## ՄԱՍԵԱՑ ՈՏՆ ։

'Ի միում ձեռագրի աշխարհագրութեան խորենացւոյն գրի Մասեաց ոտն, ըստ այսմ գրի և 'ի յայլ գիրս ինչ ուրեք ուրեք, որ յայտ է՝ լինել վրիպակ գրչաց (1) ։ Կոչեցաւ այս

(1) Սոյն այս անուն թուի լինել որ առ կիր. գրի Մասեաց ոտն ։ Իսկ ոչ. թվին. յարեաւ խանակալ ոմն քուրդ ազգաւ սալահատին անուն 'ի Մասեաց յոտնէ, ծառայ լեալ սուլտանին մերտինայ ։

պէս 'ի դրից իւրոց , սակս ձգեալ գոլոյ առ ոտամբ Մա-սիս լերին . նաև անուանն իսկ զնոյն յայտ առնէ ։

Ակոռի ։ Գիւղ հին՝ որ յիշատակի առ Ղազարայ . Թղթ . 215 ։ * Չուեալք բանակեցան ( զօրք Հայոց ) 'ի գեօղն Մասեաց , որում անուն էր Ակոռի ։ Բուզանդ կոչէ զնոյն գլ . Է . Մեծ առան . * 'Ի Մեծ աւանն Ակոռի ։ Առ յովհաննու կաթ . առաւել բացայայտ գրի անուն գաւառին . * Օկնի ապա մեծին Ներսիսի՝ յաջորդէ զաթոռ հայրապետութեն անաստաս 'ի գեղջէ Ակոռոյ՝ որ 'ի Մասեաց ոտին ։ Յիշատակի նոյնպէս և առ ասողկայ Բ . 2 . յասելն վասն նորուն անաստասայ . * 'Ի գաւառէ Մասեաց ոտնէ , 'ի գեղջէ Ակոռւոյ , որ և զեկեղեցին Ակոռւոյ վայելուչ շինեաց ։ Ոչ միայն եկեղեցի , այլ նաև բնակարան գղերց և մենաստան միանձանց , և հիւրանոց աղքատաց շինեաց անդէն , զորմէ ճոխագոյն պատմէ յովհաննէս կաթ . * Շինէ զպայծառապաճոյճ եկեղեցին 'ի հայրենի բնակութեն իւրում , 'ի վանս դաստակերտին Ակոռոյ , կացորդ զնա յարդարեալ քահանայական ուխտի միակրօնից , և այլոց ևս գղերց եկեղեցւոյ , 'ի պաշտօն ածային խորանին , և 'ի տածողութի հանգստեան հիւրոց և տնանկաց և աղքատաց ։

Գեօղ Արղուրի ։ Քրիստափոր կաթողիկոս մերձ յայս գեօղ շինեաց մենաստան՝ ըստ գրելոյ յովհաննու կաթ ։ * Երթեալ շինէ միայնարան մեծ՝ մերձ 'ի գեօղն Արղեաց , որ 'ի Մասեաց ոտան . և բազում միանձունս առ ինքն գումարեալ , առաքինաջան երկօք և բազմաշխատ քրտամբք փայլէր ։ Առ թովմայի արծ . յերկրորդ վարս դադկայ կոչի Արղուրի ։ * Առնու ( դադիկ ) և զբերդն Մակուայ . և անտի յառաջ մատուցեալ՝ առնու զբերդն Արղեոյ , և տիրէ գաւառացն , սկսեալ 'ի կոգովտէ մինչև ցմեջոց Արղեոյ և Մասեաց ոտն ։ Յիշատակի և առ ղեւոնդեայ յասելն գլ . Է . * Եւ նոքա գնացեալք ընդ եզր գետոյն երասխայ անցանէին ընդ սահմանս Արղայեոյ , և սահմանան էին 'ի մեծ աւանն ակոռի ։

## ԿՈԳՈՎԻՏ ։

Սա յոլնձամնու կաթ. կոչի և Կոգ. նոյնպէս և առ բուզանդայ, որ որպէս թուի՝ է բնիկ անուն գաւառին. իսկ Կոգովիտ կոչեցաւ 'ի հովտոյն իւրմէ ։ * Ս այնու ժամանակաւ (տես բուզ. դ. 12. վասն Ե. արշակայ) շինեաց իւր արքայն դաստակերտ մի 'ի հովիտն անուանեալ 'ի Կոգ գաւառի ||: 'Ի սեռականէ սորա եւ անունս Կոգայովիտ, որպէս գտնի 'ի միում ձեռագրի խոր. գ. 23. իբր Կոգայ հովիտ, կամ Կոգավովիտ, որպէս գրի յայլ յերկուս ձեռագիրս. * Նշանէ արքայ (Ե. արշակ) զթիկամբք մասեաց՝ առնել որս, յիւրում սիրեցեալ գաւառին 'ի Կոգայովիտի ||: Նոյնպէս գրի և 'ի գ. 37. յասելն. * Զերբակալ առնէ զվաղշուէրն յեզեր շամբին Կոգաովտի ||: Բայց անդ յերկուս ձեռագիրս գրի Կոգայովիտ. որ թէ իցէ ուղիղ գրչութի՝ լինի այլ տեղի ։

Ընկանի 'ի թիկանց կուսէ մասեաց լերին՝ ըստ որում եդ 'ի վերոյ խորենացին, և այլուր ես. զի զբագարան և զարշակաւան՝ զորս այլք դնեն 'ի կոգովիտ, խորենացին փոխանակ յիշելոյ յանուն գաւառին, զդիրս գաւառին յիշէ՝ կացուցանելով 'ի թիկունս մասեաց լերին, որպէս տեսցես ստորև ։

Սահմանակից լինել ցուցանէ շիրակայ՝ այս բան ասողկայ Ե. 3. * Նցանէ (հերակլ) 'ի շիրակ ընդ Կոգովիտ ||: Իսկ զևոնդ սահմանակից թուի կացուցանել Արտազ գաւառի 'ի գլ. Ե. յասելն վասն տաճկաց. * Նուագունդ մի հատեալ ասպատակէին ընդ գաւառն Արտազ 'ի վերայ զօրավարին յունաց որում անունն էր պրոկոպ. որ էր բնակեալ 'ի գաւառին Կոգովտի, 'ի սահմանս Բագրեւանդայ և Մարդաղայից (1): Որում իրազեկ (լեալ) իշխանն թէոդորոս՝ որ էր յազգէն ռշտունեաց ... հրամայեր զօրացն, որք ընդ իւրով իշխանութեամբ էին ... Նա նոքա ... դարանամուտք եղեն 'ի սարակն, որում

(1) Թէպէտ Բագրեւանդայ անուամբ գտանի գաւառ 'ի սինիս, բայց 'ի բանից աստի զեւոնդեայ յայտ է՝ թէ միանգամայն ընդ Մարդաղայից տեղւոյ (անծանօթ անուն յայլ գիրս.) են կրկին անղեք մասունք, որք անկանին 'ի սահմանս այսր Կոգովիտ գաւառի ։

Նախճաւան կոչէր, և կալեալ զառաջս կրծիցն զբազումս 'ի նոցանէ սատակէին ‖ : (1)

Սահմանակից է և ս Ծաղկոտան, քանզի Ապուսահլ քուեռորդի Գագկայ արքայի՝ տիրէր երկոցունց սոցա, իբրև միոյ գաւառի. վասն որոյ Ասողիկ զերկոսին զսոսա իբրև մի գաւառ Ապուսահլի կոչէ: Ընդ նոյն սահմանակցութիւն ցուցանէ և այս բան Յովհաննու կաթ: * Բայց Թագաւորն Գագիկ . . . ամրացուցեալ զնոսա 'ի ծործորս լերանցն Կոգովտի և Ծաղկոտան՝ զմտի դնէր զխիթաւութիւն՝ որ առ 'ի նմանէ բերիւր ‖:

Տէրութիւն այսր գաւառի՝ ըստ ակնարկելոյ Խորենացւոյն Բ. 45 ( զոնէ ըստ մասին ) էր 'ի ձեռս Բագրատունեաց, իբր զի քաջն Սմբատ որդի Բիւրատայ 'ի ժամանակս Բ. Արտաշէսի զիւր գերութիւնն 'ի գաւառի աստ բնակեցոյց, շինեալ և ձեռակերտ Բագարան անուն, զորոյ զբանս տեսցես փոքր մի զկնի 'ի գեօղն Բագարան: 'Ի հաստատութիւն այսմ գրէ և Ասողիկ Գ. 2. վասն Աշոտոյ Մսակերի, թէ զաքրոնիս իւր 'ի գաւառէ աստի յԱրշարունիս փոխեաց, և բանք նորա են. * Սա զանձագին արար զգաւառն Արշարունեաց յազգէն Կամսարականաց, և զաքրոնիսն 'ի Կոգովտէ յԱրշարունիս փոխեաց ‖: Վկայէ այսմ և Ղևոնդ, որ 'ի գլ. Դ. գրէ վասն Աշոտոյ պատրկի որ բազում ամօք յառաջ է քան զՄսակերն Աշոտ. * Շինէր զեկեղեցին Դարոյնից յիւրում ոստանին ‖. և փոքր մի զկնի՝ վասն նորին Աշոտոյ. * Նա թաղեցաւ 'ի կայս հանգստեան իւրոյ 'ի գիւղն Դարոյնս ‖. ուր և թաղեցան բազումք 'ի Բագրատունեաց. իսկ Դարոյնք է յայսմ Կոգովիտ գաւառի, զորմէ ստորև: Յետ ժամանակաց եանց այս գաւառ (զոնէ ըստ մասին) 'ի ձեռս այլոց, որպէս տեսաք 'ի վերոյ:

**Բագարան** : Յայս գաւառ կացուցանէ Յովհաննէս կաթ. յասեցն. * Յետ այսորիկ ըստ հրամանի կայսերն Մօրկայ՝ զՅոհան ոմն 'ի գաւառէ Կոգայ, 'ի Բագարան գեղջէ կացուցանեն կաթողիկոս յունական կողմանն ‖: 'Ի սոյն Կոգովիտ գաւառի դնէ և Կիրակոս՝ յասեցն վասն նոյն Յովհաննու՝ լինել * 'Ի Կոգովտէ, 'ի գեղջէ Բագարանէ ‖: Իսկ Խորենացին Բ. 45. կացուցանէ 'ի Թիկունս Մասեաց լերին, ուր և անկանի նոյն իսկ գաւառն Կոգովիտ, որ-

(1) Նոյնպէս և Թովմ. Արծր. տաղ գաւառի, զոր նա կոչէ Ա- սահմանակից դնէ զԿոգովիտ ար. տաւաղ:

պէս ասացաք 'ի վեր անդր. և առ առաւել որոշումն առաջնոյն բազարանի՝ որ յարշարունիս, կոչի սա 'ի խորագրի նոյն գլխոյ՝ Ոստան Բոփորան:

Յայս անուն անուանեաց զսա սմբատ դայեակ և սպարապետ Է. արտաշիսի. զոր և նոյն ինքն սմբատ շինեաց, որպէս ծանուցանէ խորենացին՝ Զարեհաւան կոչելով. * Յայնժամ սմբատայ (ասէ) զծառայսն երուանդայ՝ զոր գերեացն 'ի բազարանէ (արշարունեաց), տարեալ բնակեցուցանէ 'ի Թիկանց մասեաց, 'ի նոյն անուն Բազարան կոչելով զձեռակերտն ‖: Յաւել զբանս՝ Խոր:

Արշարունիք: Սուան շինեալ 'ի Է. արշակայ, որ յօրինակի միում մեսրոպայ՝ գրի ամենայն ուրեք Արշարունիք, և ուրեք յայլում օրինակի Արշարունեաց գաւառ. բայց յայլում օրինակի գրի միշտ Արշարունիք, համաձայն բուզանդայ, խորենացւոյն, և այլոց պատմագրաց: Ընկանի յայս գաւառ, որպէս դնէ բուզանդ. Գ. 12. զորոյ զբանս յառաջ բերաք 'ի վերոյ 'ի ստորագրութեան գաւառին, ուրանօր կոչէ Գոտաշխարհ. իսկ ստորև կոչէ Արշարունիս. * Սա տայր հրաման արքայն արշակ՝ դնել անուն գաւառակերտին, յիւրակից անուն Արշակաւան, շինեցին եւ անդ ապարանս արքունի ‖: 'Ի գլ. 13. կոչէ Գեղաշխարհ: Խորենացին Գ. 27. գծիրս գաւառին միայն յիշէ, ուր անկանի Կոգովիտ: * Բայց արշակ եւս ժպրհեցաւ առնել գործ անմտութեան, 'ի Թիկանց կուսէ լերինն մասեաց շինեաց ձեռակերտ ‖: Զոր աստ Զարեհաւան անուանի կոչէ, 'ի խորագրի գլխոյն, նաև ստորև յանուանէ որոշէ. * Իսկ նախարարացն հայոց ժողովեալ դիմեցին 'ի վերայ արքունական ձեռակերտին Արշակաւանից (1) ‖:

Շինեաց զսա արշակ լինել տեղի ապաստանի և ազատութեան ամենայն ազգ չարագործաց՝ յորոց առնոյր շահ. վասն որոյ 'ի սուղ ժամանակի լցաւ բազմութեամբ բնակչաց: * Նոյնժամայն (ասէ խոր.) լցաւ մարդկութեամբ հովիտն ամենայն ‖: Իսկ բուզանդ գրէ. * Իսկ տեղին աւանանայր քաղաքանայր, մեծացաւ բազմացաւ, և ելից զհովիտն ամենայն ‖: Մինչև 'ի ժամանակի հարուածոց՝ ո

(1) Այսպէս դնի 'ի միում ձեռ". յայլում գրի Արշարունեացոյ, և 'ի միւսում՝ Արշարունի, համաձայն եդելոյն 'ի մեսրոպայ, ուր միշտ այսպէս գրի. * Եղանէր (մեծ ներքս) 'ի բարձրաւանդակ տեղի մի յանդիման Արշակաւանի ‖: Իւ եւս. * Զի նա խնդրեաց զվէրն զայն վասն անիրաւ գաստակերտին Արշակաւանի ‖:

եղև փոքր ինչ յետոյ, 'ի միում աւուր 18 հազար տունք կորեան ըստ Մեսրոպայ. իսկ ըստ Բուզանդայ՝ 20 հազար 'ի մէջ երից աւուրց. * Անմարդացաւ (ասէ գլ. 23. և աւելի) քան զքսան հազարք սատակեցան երդք մարդկան, ոչ մնաց 'ի նոցանէ և ոչ մի ‖ (1).

Այս հարուած էր չարակեղ, կամ ժանտ անուանեալ հիւանդութիւն՝ պատճառեալ 'ի մարդիկ և յանասունս՝ յանիծից սրբոյն մեծին Ներսիսի, որ նախ յորդորեաց զարշակ թաւալ զայն աւան. և 'ի չանսալն՝ անէծ։ Իսկ իբրև տակաւին ոչ դադարէին չարագործք անդր ապաւինել, և խառնիլ 'ի մնացեալսն յախտէ, և այնպէս ազատիլ 'ի պատժոց դատաւորաց, նախարարք հայոց կոչեալ յօգնութիւն զպարսս, առ հասարակ քանդեցին, և զբնակիչսն կոտորեցին, յառնէ մինչև ցկին՝ բաց 'ի փոքունց մանկանց։ Այսպէս կարգէ զպատմութիւն կործանմանս սորա Մեսրոպ, որ յետ գրելոյ զհարուածն պատճառեալ 'ի նմա յանիծից սրբոյն Ներսիսի, ասէ. * Իսկ իբրև (յետ) միւս այլ ամաց՝ ոչ խրատէր քաղաքն Արշակաւան, և ժողովեալ զօրացն հայոց, և սրոյ ճարակ արարեալ զԱրշակաւան առհասարակ յետ հարուածոյն Ներսէսի ‖։

Բուզանդ և Կիրակոս պատմեն միայն զհարուածոց սրբոյն Ներսիսի. Խորենացին միայն զկոտորելոյ նախարարացն, զորս միաբանէ վերոգրեալ բան Մեսրոպայ։ Այլ այն ժամանակն նշանակեալ 'ի Խորենացւոյն՝ ոչ համաձայնի ընդ սոսա, և ոչ այն բան Բուզանդայ և Կիրակոսի, նաև նորին իսկ Մեսրոպայ, որք ցուցանեն բոլորովին անմարդացեալ և հիմնայատակ եղեալ աւանին յանիծից Ներսիսի. զի յետ այսպէս բոլորովին քանդելոյն, և չմնալոյն քար 'ի քարի վերայ՝ որպէս ասէ Մեսրոպ, ոչ կարէին մնալ 'ի նմա բնակիչք, և ոչ 'ի միւսում ամի հաւաքիլ 'ի նմա այնչափ բազմութիւն բնակչաց, որչափ ինչ համարին կոտորեալ 'ի նախարարաց։

Իսկ այսպէս այս աւան Կողոփ Նորդեան Մեղարարաց, ըստ կոչելոյ Խորենացւոյն, պատճառ գտաւ մեծամեծ վնասուց բնակչաց իւրոց՝ որք կոտորեցան, չինողին իւրոյ արշակայ՝ որ փախեաւ մինչև 'ի կովկաս առ վիրս, նաև նոցին իսկ կործանողացն իւրոց նախարարաց՝ որք կոտորեցան ապա յարշակայ. տես 'ի Խորենացին։

(1) 'Ի տպ. ոչ ուղիղ դնի վեր. այլ 'ի ձեռագիրս գրի այնպէս՝ որջակէտ առաջի բառիս Եւ..., պէս և եդաք։

Գառնոյնք. կամ Գառնիք: Յայս գաւառ դնէ զայս յո-հաննէս կաթ. յասելն վասն մարմնոյ քաջին սմբատայ բագրատունւոյ՝ որ յելս անդ Է. դարուն. * Բարձեալ տարան զմարմին նորա 'ի հայս, և դնեն 'ի Գառոյնս, որ 'ի Կոտ գաւառի: Այլուր առ նորին յոհաննու կաթ. գրի Գառնոյք, զի ասէ վասն մարմնոյ որդւոյ սորա՝ վա-րազտիրոցին կուրապաղատայ. * Տարեալ եդին 'ի Գա-ռօնս առ հօր իւրում քաջին սմպատայ: Նոյն դարձեալ վասն սմբատայ եղբօրորդւոյ ա. սմբատայ. * Տարեալ թաղեցին 'ի Գառօնս ընդ հարս իւր:

Առ բուզանդայ Գ. 40. գրի Գառնեան, և Գ. 7. Գառ-նեաց բերդ. որ 'ի պատմութեան թովմայի արծ. յերկրորդ-վարս գաղկայ 'ի բազմաւորականն գրի Գառնեանք, ուր և կոչի Անուր: * Ոչ որ առեալ արքայի (գաղկայ) դառ-նայ խաղաղութեամբ յամուրն Գառնինս: Նոյնպէս և այլ-ուր. * Գնաց և թագաւորն գաղիկ 'ի գաւառն Կոտա-յից, և պաշարեալ զամուրն Գառնինս, գողացեալ առ-նու 'ի գիշերի: Այլ զառաջին գրչութիւն հաւատարմա-ցուցանեն օրինակք և այլոց գրոց, նաև թովմա մեծոփեցի՝ որ Գեղոյ կոչէ. յասելն. * Նա եկեալ հասաք 'ի գաւառն Կոտայից. 'ի գիւղն Գառնի:

Իսկ զամրութիւն բերդի սորա բաց 'ի վերոգրեալ բանից թովմայի արծ, որ կոչէ Առաւէկ, ցուցանէ և այն՝ զի Ե. խոսրով խոյս ետ յերեսաց սանէսանայ յայս բերդ. որ-պէս գրէ բուզանդ. Գ. 7. յասելն. * Խոյս ետ թագա-ւորն հայոց խոսրով յամուր բերդն Գառնինից յերկիրն Կոտայ(1): Յաւուրս Ե. արշակայ աստ ամրացաւ նա ինքն արշակ, ըստ որում բուզանդ. Գ. 40. յուշ առնէ: * Նա թողոյր (վասակ զօրավար) զթագաւորն արշակ յամուր բերդն Գառնինաց: Որպէս զինի 'ի սմա պա-հեցան նաև գանձքն իբր յամուր բերդի. ընդ որում թէպէտ մարտեան պարսիկք, այլ ոչ կարացին առնուլ՝ մինչև 'ի թագաւորել և 'ի գալ պապայ՝ նմա յանձնեցին բերդակալքն: Խափեաց յինքն (ասէ բուզ. Ե. 1. վասն պապայ) զամուր ամուր բերդիցն, զոր կալեալ էր պարսկացն, և բերդն Գառնից(2) որ է յերկրին Կո-

(1) Պարտ է լինել Կոտայ, որ-պէս և այլուրեք զոր 'ի վերոյ յի-շեցաք 'ի նմին օրինակի բուզան-դայ՝ փոխանակ գրելոյ Կոտայոցն, վրիպակաւ գրչի գրեալ կայ Կո-տայոցն:

(2) Այսպէս գնի 'ի միում ձեռագրի, որում համաձայնի և

դայ, ուր կային գանձք արշակունեացն սաստիկ յոյժ ‖։

Աստանօր Թաղեցան բազումք 'ի մեծամեծաց, մանաւանդ 'ի բագրատունեաց։

Աշոտ Հրամանատար Հայաստանեայց 'ի Է. դարուն՝ շինեաց 'ի սմա եկեղեցի, զորմէ գրէ ղեւոնդ. * Յետ մահուան գրիգորի յաջորդէ զիշխանութիւն աշոտ պատրիկ, այր երեւելի և նախամեծար 'ի մէջ նախարարացն Հայոց 'ի տոհմէ բագրատունեաց. Ճոխ և պերճ յիշխանութեան, և յամենայն վարս երկրայինս զգաստ. և . . . փոյթ յուսումնասիրութեան, և զարդարէր զեկեղեցիս . . . երեւելի սպասուք յիւրոց գանձուց. և շինէր զեկեղեցին Դարունից յիւրում Աստանին, և զկենդանագրեալ զպատկեր մարդեղութեան քրի ածեալ 'ի մտիցն արեւու՝ մեծապանծ զօրութբ հանդուցանէր 'ի նմա, և նորա անուամբ զեկեղեցին անուանեաց ‖։ Նա 'ի վերջ գլխոյն գրէ վասն նորին աշոտոյ. * Առեալ ածէին զիշխանն 'ի կոգովիտ կաւարվէր խոցմամբ, որ և 'ի նոյն մահիճս վախճանեցաւ փառաւորապէս, և Թաղեցաւ 'ի Կայս Հանգստեան իւրոյ 'ի Գիւղն Դարունս ‖։ Ի սմանէ առեալ գրեն և այլք զինի, յորոց սակի է ասողիկ. որ 'ի Բ. Կ. գրէ. * Նա յաջորդէ զիշխանութիւն աշոտ պատրիկ՝ այր երեւելի և ուսումնասէր, և լի երկիւղիւն այ. որ շինեաց զեկեղեցին Դարունից, և զկենդանագրեալ պատկեր մարդեղութեան քրի՝ ածէր 'ի մտիցն արեւու, մեծապանծ զօրութբ հանդուցանէր 'ի նա. յորոյ զեկեղեցին անուանեաց անուն ‖։ Այժմն է՝ անուանեաց * Յանուն փրկչական պատկերին՝ զոր եբեր որդի նորա 'ի մտիցն արեւու մասամբ, և 'ի նաւակատիսն երգեաց (զերգն) Օրս ըստ պատկերին ‖, որպէս գրէ վարդան (1)։ Տես վասն այսր և զՀաւուց Թառ։

Արծափ։ Յիշատակէ ղեւոնդ. գլ. Բ. յասելն վասն զօրաց տաճկաց. * Նա միւս յառաջ հասեալ 'ի կոգովիտ՝ պաշարեալ էին զԱմրոց Արծափայ, և գտեալ զմուտ բերդին 'ի գիշերի գաղտագողի ելին 'ի նա. զի 'ի քունս զտին զպահապանսն, և առին զամրոցն ‖։ Յիշէ և ասողիկ Բ. Կ. * Նա մի առաջին հասեալ 'ի Կոգովիտ՝ առին 'ի գիշերի զԱներդն Արծափ ‖։ Թեոդորոս ռշտունի

այլ ձեռագիր, ուր գրի Դարօնից. ուստի ոչ ուղիղ գրի 'ի տպագրեալն Դարօնից։

(1) Ար. վարդ". 'ի միում հին ձեռագրի գրի. Դարօնից եկեղեցի. յերկուս ձեռ" գրի Դարօնից. իսկ յայլ յերկուս՝ գրի Դարօնի։

եաւ զամիոցն 'ի ձեռաց նոցա, և վաճառեաց զնոսա ։ Առ Թոլմեայ մեծոփ. Գնեղ կոչի ։ * Նկեալ ( ասէ ) զողապէս յերկիրն Կոգովիտ 'ի գիւղն Արծափ ։

Մարնափ ։ Յիշատակէ զայն Թոլմէս մեծոփ. * Ոմանք 'ի Մարթափու գոլ ասեն զնա ( այսինքն զլանկթամուր ) որ է 'ի գաւառն Կոգովիտ, մերձ 'ի լեառն մասիս. ուստի տապանակն նոյի է, և մերձ 'ի յարտաւազ գաւառի ։ Ալ յայսմաւուրս. համօրէն գաւառն Կոգովիտ կոչի յանուն քաղաքին Մարնափայ ։

Ածար. կամ Գոմեր ։ Օրմէ յայսմաւ. 'ի մայ. 24. յառաքելայօղ պատմութեան մատին 'որյն պետրոսի. * 'Ի գաւառէն Կոգովտի, 'ի գեղջէն որ Ածար կոչի. այսինքն է Գոմեր ։

ԱՌՈՅՔ.

Յերկուս ձեռագիրս աշխարհագրութե խորենացւոյն գրի 'ի միաւորականն Առոյ, որում համաձայնի և գրեալն 'ի պատմութե Բ. Դ. ըստ ձեռագրաց Ց. * Բայց զտէրութիւն Աշոցայ՝ և զսեփականութիւնն տաշրայ՝ կարգէ վաղարշակ 'ի զաւակացն գուշարայ հայկազնոյ ։ Ալ գրեալն առ յոհաննու կաթ. համաձայնի առաջնոյն. * Նշրթեալ ունէր ( ասէ Թ. սմբատ ) զկիրճսն, և նեղուցս պողոտայիցն, կողմանցն Աշոցաց՝ և տաշրայ ։ Վարդան յիշատակէ և զՉորն Առոյց յասելն վասն Թ. գագկայ արքայի բագրատունւոյ. * Օթայն տայ յովհաննու, և զանի և զշիրակ, զոր գրեգոր Չորոյն աշոցաց զՆոբերդ և զգաշտն այրարատեան ։

ՆԻԳ.

Այս գաւառ առ վարդանայ աշխարհագրի կոչի 'Նեփառն. * Այրարատ ունի բազում գաւառս . . . Արագածոտն, Մասեացոտն, 'Նիգատուն, ուր կան'որ ուխտքն Ծնեղենիս, և Նշլիպատրուշ (1) ։

Աջնի ։ Նոկանի յայսմ գաւառի, որպէս ակնարկէ մատթէոս 'ի գրեալն վասն դեղուհւոյ թագաւորին՝ թէ

(1) Առ ընդարձակոյն վարդ. աշխարհագրի ոչ տպագրի. Առ գոծոփն Նփառնն է ։

համանէր * 'ի Նիգս գաւառին Հայոց մերձ 'ի յԱմուրն Բջնի||։ Նաւ էր կառուցեալ առ հուրաստան գետակին ըստ Նորուն ակնարկելոյ. յորմէ և այժմ կոչի այն Բջնոյ ջուր ։ Առ ղաղարայ գրի Բանիէ, և կոչի Գետղ Երևեկն ։ Յովհաննէս կաթ. կոչէ Աբրոյ. զի գրէ վասն մայրագումեցւոյն. * Արկայանայր 'ի մայրոց վանս որ 'ի ծործորս լերինն Արմրոցին Բջնոյ||։

Սարգան զԲջնի Բերգաւաղա անուանէ՝ յասելն. * Պատուեաց ամ իջմամբ լուսոյ 'ի վերայ Նորա (այսինքն ոսկերաց ուրումն որբակաց քահանայի) ակներև բերդաքաղաքին Բջնոյ||։ Կիրակոս կոչէ Բաղաք։ Կացուցին ասէ կաթուղիկոս * Ողոր վահրամ զոր անուանեցին գրիգորիս, զորդին գրիգորի մագիստրոսի 'ի Բաղաքէն Բջնոյ||։ Նաւ Թէ՝ զաքարէ և իւանէ երկոքին եղբարքն 'ի սկիզբն ԺԳ. դարու առին զԲջնի քաղաք ։ Այս ամրոց ըստ գրելոյ Թովմայի մեծափեցւոյ 'ի ԺԴ. դարուն էառ Թագաւորն աղախու Թաթարաց. ուր և սպան զոր վանական՝ եպիսկոպոս գաւառին ։

Աստի էր գրիգոր մագիստրոսն՝ որպէս գրէ կիրակոս և վարդան բարձրբերդցի 'ի Ճառն որ 'ի վերայ գրիգորի և ներսէսի շնորհալւոյն. ուր գրէ եւս զՏօրէն մագիստրոսի՝ որ լեալ ամրոցին Բջնւոյ ։ Յայսմանէ և սամուէլ ծերունի 'ի յիշատակարանի մեկն. սաղմ. լամբր. զմագիստրոսն կոչէ Բջնեցի ։

Մայրոց, կամ Մայրոյ վանք ։ Յովհաննէս կաթ. դնէ զնոյն որպէս տեսաք 'ի վերոյ՝ մերձ 'ի Բջնի ։ Այլ եղ կաթուղիկոս * Սակս 'ի նմա բնակելոյն յոհաննու (ասէ յոհ. կաթ.) . . զանուն տեղւոյն Մայրոյ վանոյ՝ Մայրոյ գոմ զնա անուանէր, և զյոհան Մայրոգոմեցի||։ Կիրակոս զնոյն յովհան կոչէ Մայրավանեցի ։

Պռոշբեր ։ Եր 'ի սահմանին Բջնոյ, զոր յիշէ կիրակոս 'ի պատմելն զշինութէ վանացն գետկայ 'ի մխիթարայ գօշէ, ասելով. * Բնծայեցին եկեղեցւոյն (զաքարէ և իւանէ իշխանք) սահմանս ջրաղացաձիւք լեռնէ 'ի լեառն, և բոլոր մի յԱքատաշոր, և զՊռոշբերն 'ի նահանգին Բջնոյ||։

Փառաժնակերտ ։ Նշկանի յայս գաւառ ըստ յոհաննու կաթ. * Ապա փոխանակ Նորա կացուցանեն զեզր 'ի Նիգ գաւառէ, 'ի Փառաժնակերտ գեղջէ||։ Նոյնպէս և ըստ ասողկայ, որ 'ի Բ. գրէ. * Տէր եզր 'ի Նգա գաւառէ, 'ի գեղջէ Փառաժնակերտոյ||։ Յիշատակի նաև առ ստեփաննոսի օրպ. գլ. ԻԳ. վասն եզրի ։

Աշխպատրուղ: Յիշատակի առ. Պտղեայ Է. յասեն. Տր եսայի 'ի գաւառէ Նգայ, 'ի գեղջէ Աշխպատրշոյ ‖: Այլազգ գրի այս անուն առ յոհաննու կաթ. * Նաև ապա զեսայի՝ որ 'ի Նիգ գաւառէ, յԱշխպատրուղ գեղջէ կացուցանեն յաթոռ հայրապետութեան ‖: Այլազգ ես առ կիրակոսի. * Նաև ապա Տր եսայի յԱշխպատրոշ գեղջէ ‖: Վարդան աշխարհագիր Ոսխոփ անուամբ յիշատակէ զաս. յայտ է թէ էր անդէն մենաստան ինչ, զոր յանուն գեղջն անուանէ :

Թեղենիս: Անապատ կրօնաւորաց՝ զորմէ Պտղէկ Է. Գ. * Նաւ կիւրակոս գծծակերպ գիտնականն՝ որ վարուք առաւել քան թէ բանիւք վարդապետէր ('ի Ժ. դարուն), որ բնակէր յոլովակի յանապատին՝ որ Թեղենեաց կոչի 'ի Նիգ գաւառի ‖: Վարդան աշխարհագիր կոչէ Ոսխոփ անուամբ, զորոյ զբանս եդաք 'ի վերոյ: Հիմնօղ սորա չէ յայտ. բայց կարգաւորօղ նորին՝ դնէ կիրակոս զնին տուրքիկ անուն 'ի ԺԲ. դարուն. * Նոյն 'ի ժամանակին յայնմիկ վարդապետք երեւելիք, մխիթար որ գօշն կոչիւր... Տուրքիկն 'ի Թեղենեաց՝ որ բարւոք կարգաւորեաց զվանքն՝ զամենայն ինչ հասարակաց լինել, և առանձին ոչ ինչ ստանալ ‖:

Զկնավաճառ: Օ այսմանէ Պտղէկ Է. Կ. * Որոյ ընդդէմ երթեալ ամենայն զօրուն սմբատայ, և երկու որդիք նորին աշոտ և մուշեղ 'ի գաւառն Նիգ, և մարտուցեալ ընդ միմեանս 'ի տեղին որ Զկնավաճառն կոչի ‖: Երեւի լինել այս տեղի 'ի հովտի ինչ առ լերամբ. զի յովհաննէս կաթ. գրէ վասն տեղւոյ բանակի թշնամեաց սոյն պատերազմի ուր մարտեան աշոտ և մուշեղ. * Հասեալ (աշոտ և մուշեղ) 'ի Նիգ գաւառ, տեսին զի ճամբար այլազգեացն բունեալ դադարեալ էր 'ի հովիտս հարթայատակ վայրի միոջ, առ ստորոտով լերինն ‖:

## ԿՈՏԱՅՔ·

Այսպէս գրի 'ի տպագրեալն, և 'ի միում ձեռագրի աշխարհագրութեան խորենացւոյն. իսկ յայլում ձեռագրի գրի Կոտայս. և 'ի միւս յայլ Կոտաս:

Արեան: Յայս գաւառ դնէ ընդարձակօղ վարդանայ աշխարհագրի, ասելով. * Կոտայք Արեան է իւր շիձակովն ‖: Յայլ օրինակս գրի. * Կոտայք Արեան է

քաղաքն իւր վիճակաւն ‖ ։ Յիշատակի սա առ յովհաննու կաթ. յասելն. * Յայնմ ժամանակի ( այսինքն յաւուրս անաստասայ կաթողիկոսի՝ 'ի մէջն անդ է. դարուն) ասեն լինել զկուսին՝ որ 'ի Վաղարշապատեցոյն Երևանի ‖ ։ Նոյնպէս և առ սամուէլի որ Երևանու խուխան՝ որպէս կոչէ, զնէ դիպեալ 'ի թուականիս ԶՃ. յաւուրս Գ. Ներսէսի կաթողիկոսի ։

Աւանդութեն բնակչաց հնագոյն կացուցանէ զանուն քաղաքիս, համեալով մինչև 'ի Նոյ. իբր զի ցամաք այսր կողման նախ և առաջ եւ յերևան 'ի նուազիլ ջուրցն յետ ջրհեղեղի. վասն այնորիկ և 'ի Նոյէ կոչեցաւ Երևան ։ Առ վարդանայ յիշատակի ուրեք Աշխարհ Երևանայ ։ Տես և 'ի Նոր հայաստան թղթ. 252 ։

Զառ ։ Յիշատակի առ յովհաննու կաթ ։ * Տայ բնակութիւն նմա ( դաւթի դվնեցւոյ ) զգեօղն Զառ 'ի նահանգին Կոտայից ‖ ։ Նոյնպէս և առ ասողկայ Ե. յասելն վասն Ա. զաքարիայ կաթուղիկոսին՝ լինել * 'Ի գաւառէ Կոտայից 'ի գեղջէ Զառայ ‖ ։ Որպէս և առ կիրակոսի վասն նորին զաքարիայ կաթողիկոսի ։ 'Ի Կոտայս գաւառէ 'ի գեղջէ Զառայ ‖ ։ Յայս գիւղ թուի լինել և Զագաւանս, զոր ընդարձակօղ վարդանայ աշխարհագրի դնէ 'ի Կոտայս, կամ 'ի վիճակին Երևանու ։ * Իսկ Զագաւանքն անդ է ( ասէ ) ուր կայ գետարգել 'որ նշանն, և 'որ սարգիսն, և 'որ կիրակոսի աջն ‖ ։ զԶագաւանս յիշէ ուրեք և Թովմա Մեծոփեցի, յասելն. * Սարգիս վարդապետ Զագաւանից ‖ ։

Արամնա ։ Օրմէ առ ստեփաննոսի օրպ. գլ. ԺԷ. * Իսկ յոհան Ոմն 'ի Թէոդուպօլիս եղև կաթողիկոս, և եկեալ եդ աթոռ 'ի կոտայոյն յԱրամնս գիւղ ‖ ։ Յիշատակի և առ յովհաննու կաթ. * Կացուցանէն յաթոռ հայրապետութեն զդաւիթ 'ի գեղջէ Արամնից՝ որ 'ի Կոտայն գաւառի ‖ ։ Իւր այլազգ հոլովի առ ասող. Ե. * Տէր դաւիթ 'ի գաւառէ Կոտայից 'ի գեղջէ Արամնեայ ‖ ։

Պատմէ անդէն յոհաննէս կաթ. թէ * Այս գեղ սեպհական էր տան կաթողիկոսարանին՝ նախ քան ըղչարչարանս 'որյն գրիգորի յարքայէն տրդատայ նմա իսկ հոգեցատուր պայմանաւ ընծեռեալ. որոյ և յետկար վճռանն պահի մինչև ցայսօր ժամանակի ‖ ։ Արդ է կրկնակի իմանալ զբանս, այսինքն է՝ կամ էր սեպհական անձին 'որյն գրիգորի նախ քան զչարչարսն իւր 'ի տրդատայ, և կամ սեպհական էր տանն՝ ուրանօր զկնի չարչա-

րանաց 'ի նոյն գրիգորի շինեցաւ կաթողիկոսարան. քանզի նախ քան զլուսաւորչանս 'ի նոյն ոչ գոյր կաթուղիկոսարան, և ոչ իսկ համարձակ պաշտօն քրիստոնէութե.

Նոյն վերոգրեալ ա. դաւիթ կաթողիկոս շինեաց եկեղեցի և բնակարան: * Շինէ եկեղեցի (ասէ անդէն յոհ. կաթ.) 'ի գեօղն Արամնոս գեղեցկայարմար յարդարմամբ, և դնէ շուրջանակի նորա տուն բնակութե, վայելուչ իմն յարմարեալ: Նաև զաթոռն փոխեաց անդր ըստ վկայելոյ սամուէլի 'ի թուին ՃՀԸ. * Տէր դաւիթ յԱրամունեաց 'ի Կոտայից (1), յորում շինեալ եկեղեցի տուն բնակութե հայրապետական, 'ի նմա փոխելով զաթոռն 'ի դունայ. զի նեղեցաւ անդ յաձրագործ ազգէն: Զնոյն կրկնէ և կիրակոս. * Տէր դաւիթ ամս ԺԴ. սա էր որ 'ի յԱրամունեայս 'ի Կոտայս գաւառէ. սա փոխեաց զաթոռն 'ի դւնայ յԱրամունս, շինեալ եկեղեցի և տուն բնակութե հայրապետական: Մերձ առ այս եկեղեցի թաղեցաւ նոյն դաւիթ կաթողիկոս:

ԱՂՈՒԵՐԻՑ ԳԻՒՂ: Զօրմէ առ յովհաննու կաթ. * Յետ սորա զմուշէ 'ի նահանգէ Կոտէից, 'ի գեղջէ Աղուերից կացուցանեն 'ի հայրապետական աթոռն: Նոյնպէս գրի և առ գրիգորի մագիստրոսի 'ի խորագրի 65. թղթոյն. * Առ տէր Կրօնաւոր գրիգոր անուն 'ի գեղջէ Աղուերից: Իսկ առ ասողկայ Բ. 2. գրի ԱՂՈՒԵՐՏ. * Տէր մուշէ 'ի գաւառէն Կոտայից, 'ի գեղջէն Աղուերդից: 'Ի գաւազանագիրս կաթողիկոսաց, որոց հեղինակ կամ է յոհաննէս կաթ. և կամ հանեալ 'ի նորին պատմութե, գրի 'ի գեղջէ ԱՂԲԻՒՐԻՑ: Յայլում գաւազանագրի գրի ԱՂԲԵՐԻՑ:

ՕՎԱՅԻՑ ԳԻՒՂ: Յիշատակի առ յովհաննու կաթ. * Յաջորդէ զաթոռ նորա յովհաննէս 'ի գաւառէ Կոտայից, 'ի գեղջէ Օվայից: Նոյնպէս գրի և առ ասողկայ, և առ կիրակոսի (2):

(1) Այսպէս գնի 'ի միում օրինակի. 'ի հնագոյնն գնի 'ի Կոտայոյն, իսկ 'ի նորագոյնն 'ի Կոտայիցն:

(2) 'Ի գաւազանագրի միում գրելոյ 'ի կիլիկիա 'ի ԺԴ. դարուն, վասն Է. յովհաննու գրի լինել 'ի Խոտայ 'Ի ԳԵՂՋԷ ՎԺՈՅԻՑ:

## ՄԱԶԱԶ։

Որպէս գրի յերկս ձեռագիրս աշխարհագրութեան Խորենացւոյն, և վրիպակաւ Մաշաղ'ի տպ։ Յովհաննէս կաթ. կոչէ զսա Գեղամայէն. ուստի պարտ է լինել 'ի մօտակայս ծովուն Գեղամայ, և 'ի սեաւն կղզի, որպէս և նա ինքն ակնարկէ յայն բան. * Իսկ բշխն այն. . . ելանէ զկողմամբք Գեղամայեան գաւառին Մազազայ, քէ նախանձիր լինելով շահանն կոչեցելոյ շահ, վասն ոչ հնազանդելոյ նմա նոցա. և վասն զի նա յանմարմնչելի ամրոցին 'ի սեան կղզոջ առկայանայր, և բշխն զոր խնդրէր՝ այնմ ոչ եհաս ||։

Գիւղ Բերդկոյ։ Յիշատակի առ Յովհաննու կաթ. * Օձնի նր սահակ (երրորդ) կայ յաթոռ հայրապետութեն, որ . . . մայրենեօք 'ի Մազազ գաւառէ 'ի գեղջէ Բերդկայ ||։ Նորևի լինել նոյն գիւղ, որ առ Ղազարայ կոչի Բերդկունք։

Աշտաղոյ Գիւղ։ Յորմէ առ նորին յովհաննու կաթ. * Յետ սորա դաւիթ (երկրորդ) 'ի գաւառէ Մազազայ, 'ի գեղջէ Աշտաղոյ՝ յաջորդէ զաթոռն 'ոբ ||։ Իսկ առ Ասողկայ 'ի Գ. 2. գրի վասն նորուն դաւթի. * 'Ի գաւառէ Մազազայ, 'ի գեղջէ Աշտաղայ ||։ Իսկ կիրակոսի յերկուս ձեռագիրս գրի Աշտաղոյ. յասէն վասն նորին դաւթի, լինել * 'ի Մազազայ 'ի գեղջէ Աշտաղա ||։

## ՎԱՐԱԺՆՈՒՆԻՔ։

Զգի առ հրազդան վտակաւ, և կարգեցաւ 'ի ժամանակս Ա. արտաշէսի. քանզի յաւուրս նորա ոմն Վարաժ անուն 'ի սերնդոցն գեղամայ՝ կորովի գտեալ 'ի նետաձգութիւն, և որսորդ քաջ, արտաշէս կարգէ զնա վարժիչ որդւոյ իւրում միջնի տիգրանայ ։ * Նաև շինս պարգևէ նմա առ եզերբ գետոյն, որ անուանեալ կոչի Հրազդան ||։ Յայնմ հետէ յանուն նորա ազգն և տեղին նորին գաւառ լեալ, կոչեցաւ Վարաժնունիք։ Տես 'ի Խոր. Ա. 11։ Բ. 10։ Նաև թէ զինչ իցեն և այն միւս կրկին գաւառք՝ Վարաժնունիք, զորս Խորենացին կարգէ յաշխարհագրութեան 'ի նահանգն տուրուբերանոյ և վասպուր-

58

բակաւի, և ուստի այսպէս անուանեալք, չէ մեզ յայտ 'ի գրոց. և անծանօթ նոցին գիրք և գիւղօրէք, որպէս և սորայս:

## ՈՍՏԱՆ:

Այս անուն ածանցի առ մեզ 'ի Ոստան բառէն պարսից, որ բաց յայլ նշանակութեանց՝ նշանակէ առ նոսա նաև Սեամ դրան. յայսմանէ Դուռն կամ Դռնապանատան արքունական, և կամ նոյն իսկ Արքունիք կոչեցաւ Ոստան (1): Յայտ է այս 'ի բանից ատենի ղաղարայ. Թղթ. 268. * Այլ եկայք փութասցուք երթալ յՈստանն Հայոց (2) 'ի տեղիս, և ձեպաւ դեսպանօք գգացուսցուք արքային արքայի. վասն զի և նորա թէ աստուածոց օգնութեամբ վճարեալ է զիւր գործն, ժամ է յՈստանն դառնալոյ||: Այս բան յիշատակէն Ոստան (այսինքն դրունք, կամ արքունիք և պալատք) երկուց ազգաց. նախ Ոստան Հայոց՝ առ 'ի առաքել անտի դեսպան առ պերոզ արքայից արքայ, և երկրորդ Ոստանն պարսից, ուր ունէր դառնալ պերոզ. զի յայտ է թէ ոչերոզ՝ յետ պատերազմին եփթաղեայ քուշանաց արքային՝ չէր դառնալոց յայս Ոստան զաւառ այրարատու 'ի Հայս, այլ յիւր արքունիս որ էր 'ի պարսս:

Յայսմանէ ձահ եղև Ոստան կոչել զԵրուանդաշատ զնախագահ քաղաք կամսարականաց, (առ խոր. գ. 31.) որպէս և զՀադամակերտ՝ Ոստան Արծրունեաց, և զՎան Ձաւանն Ոստան Վասպուրականի, և զԴարոյնս՝ Ոստան Բագրատունեաց (3) եւն. վասն 'ի նոսա լինելոյ արքունեացն և դա-

(1) Որպէս առ օսմանեանս դուռն կամ դատաստանարանն կոստանդնուպօլսոյ՝ և յայնմանէ բոլոր քաղաքն կոչեցաւ Աստանէ, որ պարսկերէն նոյնպէս նշանակէ Սեամ:

(2) Կիրակ. գրէ յաւուրս յովհ. կաթ. յաջորդի Բ. Ներսիսի. * Յոստանին Հայոց (այսինքն 'ի Դուին) նշան սքանչելի եղև, զի հուր բորբոքեալ այրէր զապարանս համակարին պարսկի, որ վերակացու էր յաշխարհիս||: Առանց ինչ անուան դնելով յայտ առնէ՝ թէ անդ էր Ոստան, ուր էր յայնժամ վերակացու աշխարհիս:

(3) * Բնակեցաւ (ասէ Թովմ. արծ.) 'ի Հադամակերտ Ոստանին արծրունեաց||: Իսկ զՈստան աւանն կոչէ նոյն Թովմ. Ոստան Ռշտունեաց. որպէս և զՆախճաւան՝ Ոստան Վասպուրական աշխարհին: Զնոյն առնէ և ղևոնդ՝ որ զԴարոյնս կոչէ Ոստան Բագրատունեաց. և գլ. Գ. գրէ վասն աշոտոյ պատրկի բագրատունւոյ. * Շինէր զեկեղեցին Դարունից յիւրում Ոստանին||:

տաստանայանի գլխաւոր նախարարաց նոյն ցեղից, որպէս և կարի ևս առաւելութբ գրի առ Ղազարայ Թղթ. 22. վասն Վաղարշապատ քաղաքի։ Խողոյր ասէ Արշակ Դ. * Իսկ զընիկ սեփհական կալուածի ազգին արշակունեաց զքաղաքն Վաղարշապատ, զընակութի Ոստանին արշակունի Թագաւորացն ‖։

Որով յայտնի իմանամք թէ Ոստան անուն յիշատակեալ 'ի գիրս նախնեաց՝ պատասխանէ Երուանդեայ, կամ Երուանդական անուան։ Յայտ է այս նաև 'ի բանից ասոյ Խորենացւոյն. Բ. 7։ * Յարուցեալ գունդս և Ոստան անուանեալ ... զայլս 'ի տեղիս նոցա յարուցին գունդս՝ անուամբ Արքունի ‖։ Զայն գունդս՝ զոր նախ կոչեաց Ոստան, զնոյն՝ իբր մեկնելով կոչէ Երուանդ, մի և նոյն անուն համարելով զՈստանն և զԱրքունի։ Ըստ այսմ և առ Բուզանդայ Դ. 19. գտանեմք վասն Բ. Արշակայ ասացեալ, թէ զգաւառն արշարունեաց Ոնէր յՈստան, փոխանակ ասելոյ ունէր կամ գրաւէր յԱրքունիս։

Նաև պատճառ կոչելոյ զարմին տիգրանուհւոյ Ոստան անուամբ առ Խորենացւոյն, Ա. 29. է վասն լինելոյ Արքայական զարմ, յոյր սակս Ոստան կոչեցաւ փոխանակ կոչելոյ Երուանդական։ * Ոստանն անուանեալ կողմանցն այնոցիկ ազատութիւն, 'ի զարմից սորա ասէ լեալս, իբր Թագաւորական զարմն ‖։ (1) Նախինքն է՝ մարիբաս ասէ,

(1) Այսպէս իմանայ և յովհ. կաթ. միայն զսերունդն փոխանակ տիգրանուհւոյ՝ տայ տիգրանայ, յասելն. * Իսկ ամանէ ասեն լինել զՈստանիկ ազատութիւն բարձին, որ այժմ դեռ ևս կայ պահի անուամբ իբր Թագաւորական իմն զարմ զնոսա իմացեալ ‖։

Այս զարմ տիգրանուհւոյ՝ որպէս երևի յակնարկելոյ բանից Խոր. Բ. 7։ Ոստան կամ Ոստանիկ կոչիլ սկսաւ պարսկական անուամբ, յետ որոյ Ա. Վաղարշակ 'ի զարմէ ասոյ չորս գունդս զօրաց ընտրեաց և կացոյց 'ի պահպանութ իւր Դրան արքունի, (որ առ պարսիկս կոչի Ոստան)։ Եւ յայնմանէ առ յապայ այն չորս գունդք արքունի դրան կոչեցան Ոստանիկք, զի պահէին զՈստանն կամ ըզ-Դուռն արքունի։

'Ի գնդէ ասոյ են այն իշխանք յՈստանկաց, որք յիշատակին առ Ղազարայ, որպէս և այլուր Անգղան որ յՈստանկաց տանէն։ Եւ առ Եղիշէի. Թղթ. 10։ * Գունդս կազմէր 'ի հայոց մեծաց զազատ և զազատորդի, և յԱրքունի տանէ զՈստանիկ մարդիկ ‖։ Եւ 'ի Թղթ. 91։ * Բազում և այլ ազատ մարդիկ՝ զոր Ոստանիկ անուանէին յԱրքունի տանէ ‖։

Նա զի՝ Ոստան կոչելոյ յապագայս զարքունիսն յանուանէ այսր գնդի պատճառեալ յայտնի իմանամք յայնմանէ՝ իբր զի մեր և շրջէր արքունիքն, այս գունդ ևս Ոստան անուանեալ՝ անդ լինէր. զի գործ իւր էր հսկել 'ի պահպանութի Արքունեաց։ Եւ 'ի սովորութէ ընիկ արքունեացն հայոց առեալ՝ նաև զնախագահ քաղաքս ոմանց մեծամեծ նախարարաց օրէն եղև կոչել Ոստան իշխանանոց,

Թէ Ոստան անուանեալ Ազատութիւն՝ այս է՝ Ազատաց կամ Ազնուականաց սեռունդն՝ որ բնակի 'ի կողմանս տիգրանակերտի, է 'ի զաւրմից Տիգրանուհեաց. Զայն Ազատորդունեաց են. վասն զի անդ լինէին գունդք պահպանութեն նոյն նախարարաց: Յայտ առնէ զասացեալքս բան Խորենացւոյն Բ. Դ: *Եւ 'գունդս և պահապանս Դրան արքունի (որ պարսկերէն կոչի Ոստան,) պատրաստէ (վաղարշակ) զչորս, զմի մի իւրաքանչիւր վառեալս 'ի նոյն հին զաւրմից թագաւորացն որ 'ի Հայկայ. (այսինքն՝ յայն հին զաւրմից Հայկազուն թագաւորաց՝ զոր յիշեցի և բացատրեցի ասէ Խոր. Ա. 29, թէ են 'ի հին զաւրմից Հայկազուն տիգրանուհեայ.) որ ընդ ժամանակս ժամանակս ժառանգութեն 'ի հարանց ստացեալ զիւղս և գաստակերտս||:

Յաւելու ապա անդէն Խոր: *Իսկ առ ուրեմն ('ի ժամանակս) պարսից թագաւորութեն որպէս լսեմ յայլոց յարուցեալ գունդս, (ըստ այլ օրինակի գրի, Պարսից թագաւորութեանն՝ այլս ոմանս յարուցեալ գունդս,) և Ոստան անուանեալ, ոչ գիտեմ թէ վասն սպառելոյ ազգին առաջնոյ, թէ վասն ընդդիմութեն իրիք լինելոյ նշկահեալ, և 'ի բաց ընկեցեալ զազգն, զայլս 'ի տեղի նոցա յարուցին գունդս՝ անուանէր Արքունի||: Յերկուս տեղիս կրկնելով Խորենացւոյն, 'ի վերայ՝ թէ Այս գունդս յառաջին Ոստան անուանեալ, և սառորև՝ թէ Զայս 'ի մէջին նոցա յառաջին գունդս անուանէ Արքունի, կամի ասել, թէ Արքունի անունն՝ կամ պարսկական անունն՝ Ոստան՝ էր անուն նոյն գնդից. մինչև թէպէտ զարմն փոխեցաւ, բայց անունն Ոստան կամ Արքունի՝ ոչ փոխեցաւ. զի եղև այն անուն սեփհական նոյն պահապան գնդից: Այսպիսի պահապան գունդք նաև յարքունիս այլոց թագաւորութեց և իշխանաց կան մինչև ցայժմ, որք իտ. կոչին Գուարտիա տի Գորդէ, և իբր 'ի բազումս՝ լինին 'ի մեծամեծաց. որպէս և առ օսմանեանս՝ կոչին Գափուճի պաշի:

Վերոգրեալ բան Խորենացւոյն ցուցանէ՝ թէ այս զարմ նախ քան զԽորենացին ընկեցեալ եղև 'ի գործոյ իւր զինուորական պահպանութեն, կամ վասն սպառելոյ զարմի նոցա, և կամ վասն նշկահելոյ. և փոխանակ այնր՝ այլ գունդ կացուցին պարսիկք՝ Ոստան անուանելով: Բայց նախ՝ օրինակք Խորենացւոյն որք առ մեօք, չեն ինչ յայսմ վայրի այնչափ ուղղագիրք, մինչև վստահիլ առ 'ի որոշել ինչ: 'Ի միում օրինակի՝ յոյժ թերատ գտանի այս բան, իսկ յայլ օրինակս տարբերութիւնք գտանին, փոխանակ գրելոյ՝ Նշկահեալ գրին Շահեղեալ: Երկրորդ՝ Որպէս՝ լսեմ ասէ, 'ի լրոյ այլոց գրելով. զոր այսպէս ընթեռնուն ոմանք. Որպէս լսեմ յայլոց, այլս ոմանս յարուցեալ գունդս||:

Այլ զիարդ և իցէ, թողեալ զայս յետագայից, թէ 'ի մտի դիցուք փոխեալ զարմին, և թէ ոչ, այս ինչ յայտնի է նախ՝ յանուանէ գնդին պահպանութեան դրան արքունի՝ սկզբնաւորեալ անուանս Ոստան, և սեփհականացեալ թէ զարմին՝ և թէ քաղաքաց: Երկրորդ՝ յայտ է թէ առաջին զարմն էր Հայկազն 'ի զարմից Թագաւորաց առաջնոց Հայկազունեաց, որպէս ասէ Խոր. իսկ երկրորդ անգամ Յայնոց ընտրեցին, այսինքն՝ կամ յայլոց զարմից, և կամ յայլոց աննշանից արանց: Յորոց ոչ լինել Ոստանիկքն յիշատակեալք յեղիշէէ և 'ի ղազարայ. ցուցանէ այն՝ զի որպէս Խոր. Ա. 29. զայն հին Հայկազուն ոստանն կամ զզարմն կոչէ Աշոց. և Թագաւորական զարմ. նոյնպէս և եղիշէ և ղազար նոցին բանիւք կոչեն զոստանիկան Աշոց և Արքունի տուն:

տութի կամ Ազնուազարմութի՝ զոր 'ի վերոյ Ոստան անուանեաց, ստորև Թագաւորական կոչեաց:

Եւ այսպէս յասացելոցս աստի իմաստասիրեմք վասն գաւառիս՝ ընկալեալ զիւր անուն սակս 'ի նմա գոլոյ Արքունի դրան հայոց, կամ ընդ բազում, և կամ ընդ սակաւ ժամանակս:

'Ի տպագրեալ աշխարհագրութեան Խորենացւոյն և 'ի միում ձեռագրի որ բազում ուրեք համաձայնի ընդ տպագրելոյն, այս անուն յարակից գրի Ոստանն Դրան (կամ Դռնայ) իբր մի գաւառ. իսկ յայլ յերկուս ձեռ". ուրոյն գրի Ոստանն, և ուրոյն Դրան գաւառն, իբր այլ և այլ գաւառ: Զայս ուղղագոյն լինել ցուցանէ համաձայնութիւնն անուանց գաւառաց ընդ թուոյն՝ զոր Խորենացին նշանակէ 'ի վերոյ. քանզի զթիւ գաւառաց այրարատու դնէ լինել 20. արդ՝ զՈստան և զԴուռն մի գաւառ առեալ, ոչ լինին քսան, այլ՝ ինն և տասն:

Զնոյն հաստատէ և այն բան պատմագրաց՝ որք վասն Տ. Ստեփաննոսի կաթուղիկոսի գրեն լինել 'ի Դուինն քաղաքէ, որպէս դնէ յոհաննէս կաթ. և ասողիկ: Իսկ վասն յաջորդի նորա յովաբայ՝ դնեն լինել յՈստանէն 'ի Կուրապաղատէն ապարանից: Այսպէս դնէ յոհաննէս կաթ (1). նովին բառիւք և ասողիկ (2): Իսկ կիրակոս 'ի յՈստանէն 'ի Կուրապաղատէն: Սամուէլ՝ միայն 'ի Կուրապաղատէն: Արդ՝ եթէ Դուին և Ոստան նոյն լինէին, կամ թէ Դուին լինէր քաղաք 'ի յՈստան գաւառին, ոչ այսպէս զանազան անուամբ յայտ առնէին զտեղիս երկոցունց նոցա՝ միմեանց զկնի յաջորդելոց:

Այլ թէ ընդէր պատմագիրք մեր զԴուին կոչեն Ոստան, տես ստորև 'ի ստորագրութե՛ Դւնայ:

Եպիսկոպոսունք Ոստան, կամ Ոստանի յիշատակին ուրեք 'ի կանոնագիրս 'ի ստորագրութիւնս եպիսկոպոսաց, որպէս 'ի ժողովն Դւնայ յոհաննէս անուն. այլ քանզի յուղղագոյն օրինակի կանոնագրոց յոհաննէսդ այդ կոչի Եպիսկոպոս Ոստան և Մարդպետական. որ և էր երևելի աթոռ եպիսկոպոսական՝ հաստատեալ նախ 'ի Նախճաւան քաղաքի, և ապա փոխադրեալ այլուր, որպէս

(1) Ուր ցուցանէ թէ էր յոստանին ապարանք, կամ արքունի դատաստանարանք, և 'ի յապարանսն պաշտօն կուրապաղատի, զի անունս կուրապաղատ՝ էր պաշտօն պալատան, որպէս գրեալ ունիմք 'ի ներածութեան հին հայաստանեայց:

(2) Առ որում գրի 'ի Կուրապաղատէն:

ցուցեալ եղև յառաջագոյն . վասն որոյ և որք յիշատակին 'ի ժողովս մնացկերտի , և 'ի ժողովս պարտաւոյ 'ի սիւնէ կաթուղիկոսէ՝ եպիսկոպոսք Ոստանն , կամ Ոստանի , անորոշ մնան՝ արդեօք այսր գաւառի , եթէ մարդպետականն Ոստանի լիցին եպիսկոպոսք : Տես և 'ի Նախճաւան :

Դվնայ գաւառն կամ դաշտն Շարուր :

Շարուր է անուն դաշտի , և 'ի ծայր սորին դաշտի 'ի սահմանակցութե ոստան գաւառին կառուցեալ է Դուինն քաղաք , վասն այսր դուցէ ոմանք զդուինն դնեն յոստանի , որպէս տեսցուք առորև : Բայց խորենացին զոստանն զատուցանէ 'ի դվնայ քաղաքէն , կացուցանելով ուրոյն գաւառ համդերձ շարուր դաշտիւ : Թովմաս կիլիկեցի ևս զհետ երթեալ խորենացւոյն , զոստանն կացուցանէ ուրոյն գաւառ . իսկ զվերջին գաւառն ոչ կոչէ յանուն դըվնայ , այլ շարուր , և զդուինն քաղաք ս.այ երկոցունց՝ ասելով . Գաւառք այրարատու են Ոստան . Շարուր (1) , և Դվինէ գաւառ գոյա . յայտ առնելով թէ այս քաղաք էր 'ի սահմանակցութե երկոցունց նոցա :

Եւ այսպէս զվերջին գաւառ այրարատու՝ զոր խորենացին կոչէ յանուն դվնայ քաղաքին՝ իբր գլխաւորի , Թովմաս կիլիկեցի կոչէ յանուն Շարուր դաշտի : Ըստ այսմ և առ Թովմայի արծրունւոյ գտանեմք զՇարուր կոչեցեալ Դաշտ անուամբ , յասելն յերկրորդ՝ վարս գագկայ . * Զօրաւամբ ածեալ և զզօրս Շարուրին կոչեցեալ գաւառի ‖ :

Սոյն այս դաշտ է որ յիշատակի առ յովհաննու կաթ. յասելն վասն ափշնի . * Չուեալ գնայր 'ի Դուինն մայրաքաղաք . և անդ ... փոխանակ իւր թողեալ զգեղդատն ... գնայ յատրպատական . անդ ապա յառաջ աճապարեալ տիկինն մեծ՝ կին սահակայ եղբօր աշքայի , զկնի իւր տարեալ ոսկի և արծաթ , և կարասի բազում , և հանդիպեալ 'ի Շարուրին դաշտի (2) ‖ : Այս դաշտ՝ կամ

(1) Յօրինակին վրիպակաւ գրի Շարաւդ :

(2) Յելանելն ափշնի 'ի դըվնայ առ 'ի գնալ յատրպատական , 'ի շարուր դաշտի անդ՝ որ է արտաքոյ քաղաքին դվնայ՝ դիպանի նմա կինն սահակայ . այսպէս պարտ է իմանալ , և ոչ թէ յետ գնալոյն ափշնի յատրպատական՝ դիպաւ նմա կինն սահակայ :

որ նոյն է գաւառ, ձգի առ Երասխաւ, որպէս յայտ առնէ այն բան Թովմայի արծրունւոյ. * Նա այգուոյն անցեալ ընդ գետն Երասխ՝ յայնկոյս 'ի դաշտն Շարուր, բանակէին զգետովն || :

Յիշէ զայս և պտղոմէոս (պատերազմ. պարսից. Է. 25.) և զԴուին՝ Դուբիոս կամ Կողթն անուամբ կոչէ, յասելն. * Տուվիոս (Դուին) է գաւառ ինչ բարեբեր, որոյ օդ և ջուր պատուական ըստ բաւականին. ուխտօրեայ տարփակայեալ 'ի Թէոդոսուպօլեայ. ունի դաշտս քաջ ջայարմարս 'ի ձիընթացս, և յոլով գիւղօրէս բազմամարդս՝ և մերձ առ իրեարս, յորս բազում գտանին վաճառականք 'ի պէտս տուրևառութեան. քանզի անդանօր 'ի Հնդկաց, 'ի Մերձագաւառ վրաց, և գրեթէ յամենայն ժողովրդենէ պարսից և հռոմայեցւոց բերեն վաճառս, և տուրևառութիւն առնեն ընդ միմեանս || :

Առաջին եպիսկոպոս գաւառիս յանուն Դուինայ դաշտին՝ Դեմոփիլոս անուն կարգեալ 'ի մէջ լուսաւորչէն յիշատակի առ զենոբայ, որ յայտմաւուրս 'ի նաւասարդի ա. գրի Դորիգորիոս :

Դուին : Ուրեք ուրեք 'ի գիրս, որպէս առ յովհաննու կաթուղիկոսի գրի Դվին. և ուրեք Դվին : Առ յունաց պատմագիրս՝ առ կեդրենոսի Թղթ. 764. առ սկիլիծիս, նոյնպէս և առ պերփէրուժէն գիրք կառավար. գլ. 44. գրի Դուին : Այս անուն է պարսկական, որ նշանակէ Բլուր. 'ի դրից իւրոց ընկալեալ զանուն :

Պատմագիրք մեր տան այսմ քաղաքի և զանունս Ոստան, որպէս ղազար՝ յասելն. * Զուեալք անտի ('ի վաղարշապատէ) երթեալք հանգչէին 'ի բնական Ոստանին հայոց 'ի Դուին || : Նա և թէ, * Անտի չուեալ յՈստանն 'ի Դուին մտանէին || : Այլուր զնոյն այր՝ զոր յառաջն դնէ լինել յՈստանին, փոքր ինչ ստորև ասէ լինել 'ի Դվին : Որպէս և վասն վահանայ և սահակայ նախ գրէ՝ թէ մնացին յՈստանին, յորժամ զօրք ինչ հայոց գնացին 'ի պատերազմն որ եղև յակոռւիս. ապա սուղ ինչ զկնի գրէ, թէ սուտ գուժկանքն 'ի Դվին պատմեցին վահանայ և սահակայ զանցս պատերազմին : Նոյնպէս և ստեփ. օրպ. յոտանաւոր ողբս իւր զԴուին կոչէ Ոստան :

* Ոստան քաղաք հայոց Դուին,
անի ամուրբըդ շարային || :

Սոյնպէս և յոհաննէս կաթ. * Խնդրէ մօրին 'ի խորա-վայ զմիջագետս ... բայց յՈստանէն 'ի Դուին քաղաքէ ‖:

Պատճառ այսր անուանակոչութե է այն՝ զոր ծանուցաք 'ի վերոյ, քանզի 'ի գիրս մեր Ոստան անուանին այն ամենայն քաղաքք՝ ուր գտանին Արքունիք, կամ Դա-տաստանարան դրան, և քանզի յայնմ ժամանակի աստ 'ի Դուին էին Արքունիքն կամ Դուռն տէրութե հայոց, նո-րին աղագաւ Ոստան կոչեն զԴուին: Սմին զի 'ի Դվին նստէր յայնժամ մարզպանն աշխարհին հայոց՝ որ էր գլ-խաւոր ամենայն նախարարաց. 'ի Դվին նստէին և հագա-րացի ոստիկանք կառավարք իբրև 'ի մայրաքաղաքի հա-մօրէն հայաստանեայց, որպէս յայտ է 'ի պատմութենէ յովհաննու կաթուղիկոսի, և այլոց:

Յայսմանէ՝ պարտ է 'ի միտ առնուլ՝ թէ յայսոսիկ բանս պատմագրաց՝ չէ պարտ առնուլ զանունս Ոստան իբրև յատուկ անուն գաւառի. քանզի որպէս վերագոյնդ նշա-նագրեցաք, զՈստան և զԴվին ուրոյն ուրոյն գաւառ հա-մարել տան օրինակք աշխարհագրութե խորենացւոյն, նաև թիւ գաւառացն նշանագրեալ առ 'ի նմանէ, զի ա-ռանց այսմ՝ գաւառք այրարատու ոչ լինէին քսան, որ-պէս դնէ նա ինքն:

Յաւել և զայն, զի և առ այլ պատմագիրս զԴվին ոչ գտանեմք կացուցեալ յոստան գաւառին, և ոչ ուրեք նշանակեալ զգաւառ ինչ նորա, յայտ է ապա թէ Դվին քաղաք ինքն կացուցանէր ուրոյն գաւառ, որպէս և դնեն երկու օրինակք աշխարհագրութե խորենացւոյն:

Շինեաց զսա Բ. խոսրով փոքր ձայնեալ՝ 'ի մէջն անդ Դ. դարուն: * Նաև զարքունիսն (տես խոր. Գ. 8.) փոխէ վերոյ անտառին (խոսրովակերտի) յոստ մի, ա-պարանս հովանաւորս շինեալ. որ ըստ պարսկական լեզ-ուին Դուին (1) կոչի, որ թարգմանի Բլուր ‖: 'Ի ձեռա-գիրն զենոբայ. թիւ. 13. յաւուրս տրդատայ հօր խոս-րովու՝ յիշատակի այս անուն յասելն. *Տրդատ զգաւառս բազում, և քաղաքս՝ էր նոցա (հիւսիսային ազգի և թա-գաւորի) քանդեալ, և զվաթսուն հազար արս 'ի գերու-թե իջուցեալ 'ի Դվին (2) ‖: Ուր եթէ չէ վրիպակաւ ե-դեալ, մարթ է ասել, թէ և յառաջ քան զխոսրով շի-նեալ կայր այս տեղի. իսկ խոսրով միայն զարքունիս շի-

(1) 'Ի միում ձեռ". գրի Դուին: անուն, ուր և այլազգ են խօսք
(2) 'Ի տպ. զենոբայ չիք այս պատմութիւն:

նեաց անդէն. զի խորհեսցին՝ ուստի առնումք զպատմութիւն շինութեան, ոչ յիշէ այլ ինչ արարեալ խորհրդոյ 'ի Դուին, բայց եթէ զարքունեացն շինութիւն, և զփոփոխումն։ Կամ թէ ասել՝ թէ և յառաջ քան զխոսրով՝ տեղին անուանէր Դուին, ուր տրդատ իջոյց՝ ասէ զենոբ՝ զգերութիւնս, որպէս թէ օթագայեցոյց ընդ վրանօք առ ժամ մի, առ 'ի անդուստ բաժանել, կամ փոխել զնոսա այլուր. և ոչ թէ բնակեցոյց զնոսա անդամօր ընդ յարկաւ շինուածոց քաղաքի կամ գեղջ ինչ։ Պատճառ փոխելոյ յարտաշատէ զարքունիս, եղև ապականութի օդոյն արտաշատու։ * Յորմէ ոչ կարացեալ ժուժել (ասէ խոր.) որք յարտաշատն բնակէին՝ կամաւ յանձն առնուն զփոփոխումն || (1)։

Անկանի այս քաղաք 'ի հիւսիսակողմն արտաշատու՝ կառուցեալ 'ի դաշտի (2), ընդ որ անցանէ մեծամօր վտակ. զայս յայտ առնէ բուզանդ. Գ. 8. յասելն. * Յամուր բերդէն արքունի՝ որում կոչեն Դուանի, մինչև 'ի դաշտն մեծամօրի 'ի Ոլորն՝ որ անուանեալ կոչի Դուին, որ կայ 'ի հիւսիսոյ կողմանէ քաղաքին մեծի արտաշատու ||։ Սոյն անցանելոյ վտակին ընդ դաշտն կամ առ դաշտիւ՝ կոչէ զայն աստէն Մեծամօրէ ջուր։ Հանդէպ արտաշատու դնի և 'ի պատմութեան Թովմայի արծ. (Է. 9.) յերկրորդ վարս գաղկայ։ * Սաղվաղակի հասանէ 'ի դուռն Դվնոյ՝ յեզր գետոյն երասխայ, հանդէպ վիրապին մեջին, (որ 'ի յարտաշատ). յորմէ ելեալ մեծն 'նըն գրիգորիոս՝ լուսաւորեաց զհայաստան աշխարհս (3)։

Այս դաշտ գոլով խոնարհ, օդ նորա է ջերմ։ * Հարաւային ջերմագոյն օդն (ասէ Թովմ. արծ.) հնչեաց 'ի

(1) Զայս և ս մարթ է իմանալ միայն վն արքունեաց և մեծամեծաց յարտաշատ բնակելոց. զի ոչինչ շինութիւն յիշէ խոր. արարեալ 'ի Դուին 'ի պէտս հասարակ քաղաքացւոց. և ոչ իսկ արտաշատ դատարկացաւ յայնժամ 'ի բնակչաց իւրոց։

(2) Ասողիկ Բ. 1. դնէ զայս քաղաք լինել առ ստորոտով լերինն Գեղամայ, զի ասէ վասն Բ. խոսր։ * Շինեաց քաղաք առ ստորոտով լերինն Գեղամայ, և զարքունիսն փոխէ յոստ մի՝ ապարանս հովանաւորս շինեալ||։ Եթէ չգուցէ ինչ 'ի բանս այլայլութիւն, կամ վրէպ գրչաց, դժուարին է գուշակութե՛ ասել ինչ վասն լերին Գեղամայ, թէ իցէ առ Դուին քաղաքաւ։

(3) Զդուռն Դվնոյ աստանօր չէ պարտ առնուլ փոխանակ դրան քաղաքին, այլ սահմանի գաւառին, կամ թէ փոխանակ բառիս Ոստանին (որ է դուռն արքունական.) որպէս 'ի կիր առնուն այլք յասելն ՚Ոստանին Դվնայ. քանզի ոչ քաղաքն, այլ դաշտ սահմանի նորին ձգէր առ երասխաւ, որպէս նշանագրեցաք 'ի վերոյ։

խորագոյն դաշտն քաղաքին Գմնեաց ‖ ։ Նոյնպէս ջերմ է և օդ քաղաքին , յարմար ձմերոցի , ըստ որում գրէ նոյն Թովմա վասն բուղայի . * Գնաց եմուտ 'ի ջերմագոյն տեղին՝ 'ի քաղաքն Գունին ձմերել անդ ‖ ։ Նաև զագար վասն վաճառոյ և նախարարացն նորա գրէ՝ Թէ հանգչէին 'ի Գունի , * Մինչ զաւուրս ցրտաշունչ ձմերայնոյն սառնամանեացն անցուցանէին ‖ ։

Արդ Թէպէտ յաւուրս Է. խոսրովու արքայի 'ի Դ. դարու էառ դուին շինութիւն ինչ, և եղև տեղի արքունեաց , այլ կատարեալ շինեցաւ յաւուրս վարդանանց 'ի Ե. դարուն, պարսպաւ պատեցաւ, և եղև նաև աթոռ կաթուղիկոսի , ըստ գրելոյ Թովմայի արծ. * Քանդէին աւերէին զմեհեանն (որմզդական յորում վառէր հուր,) և յատակեալ զտեղին՝ շինէին նորին քարամբք զմեծ եկեղեցին սբ գրիգորին՝ 'ի Սուր (դուին) տեղւոջն . և փոխեն անդ զկաթողիկոսն հայոց զգիւտ . և շինեն նախարարքն հայոց իւրաքանչիւր պաղատս արքունականս , և դաստակերտս յականաւորս , և զքաղաքն (դուին) որմափակօք պարսպեն ‖ (1) ։

'Ի սկիզբն Է. դարուն դարձեալ ամրացոյց և ընդարձակեաց զդուին աբդլլազիզ ոստիկան : * Շինէր վերստին (գրէ ղևոնդ . 'ի գլ. Ժ.) զքաղաքն Դուին հզօրագոյն և ընդարձակագոյն մեծութբք , և դռնափակօք . անցուցանէր շուրջ զպարսպովն պարկէնս փոսից լցեալ ջուր՝ ապաստան ամրոցի : Քանզի ասէր ապտլազիզ զիւրմէ՝ յառաջնում զաւերածին դւնայ , եթէ 'ի ձեռն իմ եղև կործանումն քաղաքիս , և ես կանգնեցից զսա . զի էի ես ասէ՝ մանուկ երկոտասանամեայ , և ունէի զփածանելիս կարմիր , և յորժամ զօրն տաճկաց մարտնչէր ընդ քաղաքիս՝ մտի ես ընդ խողովակ մի , և եղի 'ի պարիսպն , և ('ի) բարբառ մեր ուժգին ձայնիւ աղաղակեցի առ զօրն մեր . և անդէն վաղվաղակի Թօթափեցան Պայլիկքն (2) նախամարտիկք՝ որք պահէին զպարիսպն , և 'ի փախուստ դարձան, և յաղթութե խմայելի զօրացաւ, և կործանե-

(1) Յոհ. կաթ. միայն զշինութիւն եկեղեցւոյն , և զփոխումն աթոռոյ կաթողիկոսին պատմէ յառաջն վասն վարդանայ . * Զպիղծն միհրոյ ձեռբակալ արարեալ , յառբուշանի կրակին՝ զոր շինեաց ինքն իւր (միհրոյ) 'ի Դուին , այրէր (վարդան) . և զորդի նորա զշերոյ 'ի վերայ բագնին զփայտէ կախէր . և 'ի տեղի բագնին շինէ եկեղեցի մեծ՝ անուանակոչութբ սբյն գրիգորի , անդ փոխելով զաթոռ հայրապետութեն . և հաստատեալ կացուցանէ 'ի նմա զմեծ հայրապետն զգիւտ ‖ ։

(2) Տաճկերէն կոչին փէյլիկ ։

ցաւք զ.քաղաքս ։ Զայս բերանով խորով ասի պատմել զինքենէ ‖ ։ Զսոյն պատմէ համառօտ և Ասողիկ. Գ. 4. առեալ 'ի Ղևոնդեայ ։

Յետ այսչափ շինութեց օրէ յօր ծաղկեցաւ բազմութբ բնակչաց և տուրևառութբ, մանաւանդ 'ի Ը. և 'ի Թ. դարուն ։ Իսկ 'ի ժամանակս բագրատունեաց այսպէս ստո-րագրէ զնոյն Թովմա արծ. 'ի Դ. ամի Թագաւորութեն Ա. սմբատայ, կոչելով զայն Ո ոստան ։ * Հանդէպ քա-ղաքին արտաշամու (արտաշատու), որ բլուրն նորուն ասի, յորում Ո աճասատանն Դուին մարդախիտ պարսպա-ւոր պատնիշօք պատուարեալ, և տուրևառին վաճառա-կանութբ, և ազգի ազգի պղծութբ յափրացեալ յղփա-ցեալ ‖ ։ Այլուր յերկրորդ վարս գաւգայ կոչէ Այրա-քաղաք. * Գայ հասանէ մինչև ցմեծ Այրաքաղաքն Դուին ‖ ։ Նոյնպէս և առ յովհաննու կաթ. բազում ու-րեք ։ * Իսկ արքայ սմպատ (ասէ) ընդ կրունկն դարձեալ հասանէր 'ի Այրաքաղաքն Դուին ‖ ։

'Ի մէջ եկեղեցեաց սորա՝ անուանի է Սբն Գրիգոր, զոր նախ քաջն վարդան շինեաց փայտակերտ՝ որպէս գրեցաք 'ի վերոյ, ապա յետ անդ Է. դարուն քարակերտ շինեաց սմբատ քաջ բագրատունի մարզպան՝ յաւուրս մօրկայ կայսեր և Բ. խոսրովու պարսից արքայի. և սակս շինու-թեան նոյն եկեղեցւոյ՝ բերդն դժնայ քակեցաւ ։ * Յեր-թալն իւրում (ասէ յովհ. կաթ.) ըստ հրամանին խոս-րովու խնդրէ (սմբատ) շինել զեկեղեցին 'ի Դուին քա-ղաքի, որ էր իսկ անուանակոչութի սբյն գրիգորի ... Ար-կանէ հիմն եկեղեցւոյն սբյ կոփածոյ քարամբք՝ գեղեցկա-դիր շինուածով՝ կրով ձուլեալ 'ի մի, զի յառաջ յաղիւ-սոյ և 'ի փայտէ կազմեալ էր նա 'ի սբյն վարդանայ ։ Իսկ պաշտնակ ամրոցին՝ ամբաստան առ արքայի լինի՝ իբր մօ-տակայ զնա գոլ բերդին, և վաղվաղակի հրամանս ընդու-նի՝ եթէ բերդդ քակեսցի ‖ ։

Յիշատակի 'ի գիրս և վկայարան Յիզտբուզտի Հնոյեն, զորոյ զգիրս նշանագրէ յովհաննէս կաթ ։ * 'Ի Դվինն քաղաքի պատկի մարտիրոսական մահուամբ 'ի քմէ, զոր բարձեալ զմբ մարմինն սբյ մարտիրոսին՝ մեծի հայրապե-տին (երկրորդ) ներսիսի, բովանդակ եպիսկոպոսօք և գղերիւք եկեղեցւոյ, եդին մերձ 'ի մբ եկեղեցին կաթո-ղիկոսարանի՝ յարևելից կողմանէ, շինեալ 'ի վերայ վկա-յարան մբ՝ կոփածոյ քարամբք ‖ ։

Նոյնպէս և եկեղեցին Սերգեայ զոր Հագարացիք այրե-

ցին, և Գ. ներսէս շինօղ անդրէն շինեաց: *Ի նմին տեղ (ասէ յովհ. կաթ.) վերստին շինէր զհրդեհեալ վկայարան մեծի նահատակին Սերգեայ‖: Ուր կոչեն յանուն Սարգսի որ է նոյն: *Սա շինեաց (ասէ կիր. վասն Գ. ներսիսի) զվկայարան սրբոյն սարգսի՝ որ 'ի Դվինն 'ի կոտորելն իսմայելին զքաղաքն Դվին‖: Նաեւ 'ի պատմութեն ժաղովոց գրի վասն նորին ներսիսի. *Երկաւորաբար յարդարեալ շինէ զոր զշողակաթն 'ի քաղաքս, և զՍԲ զՍարգիսն 'ի Դուին‖:

Աւերեաց զայս քաղաք հերակլ 'ի դիմելն 'ի վերայ պարսից ըստ գրելոյ ասողկայ. Բ. 3. *Հասեալ (ասէ) 'ի Դուին՝ աւերէ զնա‖: Իսկ 'ի 641. ըստ դնելոյ դիոնիսեայ առ ասսեմ. Բ. 16. այս քաղաք առաւ 'ի հագարացւոց, զորմէ ասէ յոհաննէս կաթ. *Չարակ բոցոյ նոցա վաղվաղակի հասանէր յայրարատ գաւառ, հարեալ զգաշտավայրն ամենայն, և պաշարեալ պատերազմաւ զԴվին քաղաք, և առեալ զնա‖: Ըստ բազմութեն սպանելոց անթիւ ասէ լինել. իսկ զթիւ գերելոցն 35 հազար ոգիք. այլ սամուէլ և կիրակոս զթիւ կոտորելոցն 'ի տօնի յայտնութեն՝ դնեն լեալ 12 հազար. իսկ զգերելոցն՝ աւելի քան զ35 հազար: Դարձեալ առին 'ի սկիզբն Է. դարուն հնարիւք աբդլաղիզ մանկան, որ զկնի ոստիկան եղեալ՝ շինեալ նորոգեաց, որպէս գրեցաք 'ի վերոյ:

Ապստամբեցաւ Դուին 'ի Ա. սմբատայ արքայէ, յորում ժամանակի հրամանատարք քաղաքին էին երկու եղբարք հագարացիք. այլ յետ երկեամ մի պաշարելոյ և նեղելոյ զքաղաքն, յինքն գրաւեաց սմբատ:

'Ի Թ. և 'ի Ժ. դարուն տիրէր սմա ամիրայն՝ որ նըստէր 'ի գողթն. զորմէ տես առ ասողկայ. Գ. 19. 'Ի ԺԱ. և 'ի ԺԲ. դարուն այլևայլ բռնաւորք յափշտակէին 'ի ձեռաց միմեանց: Խըզըլ ամիրայն՝ որ և մեռաւ 'ի շխղ թուին *Յառման քաղաքին Դվնայ 'ի զօրացն պարսից‖. որպէս ասէ կիրակոս: Յետ նորա փատլուն ամիրայն, ապա թագաւորն վրաց, որ չարաչար քանդմունս արար 'ի քաղաքին կոտորելով և այրելով. քանզի յառաջագոյն զգլուխս ոմանց 'ի զօրաց նորա եփեալ եդեալ էին թշնամիք յորմն շինուածոյ դռնայ 'ի նշաւակ: Յաղագս այսոցիկ առմանց ամենայնի տես 'ի մատթէոս և 'ի վարդան. որ զիշխանն Դւինայ՝ ամիրայ անուանէ կոչէ, յասեն. * Ըլոշէրն ամիրայն Դվնայ‖, որ տիրէր 'ի ռճէ. թվին:

Երկիցս չարաչար քանդեցաւ Դուին յերկրաշարժու-

թէ. մի՛ յաւուրս զաքարիայ կաթողիկոսին, զորմէ գրէ յովհաննէս կաթ.: * Զայսու ժամանակաւ ահագին իմն շարժմանց եղելոց 'ի Դուինն քաղաքի, բազում սասանութիւս և փլուզմունս տանց և պարսպաց և ապարանից լինէր. և առհասարակ քանդումն և դղրդումն առնոյր քաղաքն. այլև մահուանս յոլովից մարդկան 'ի վերայ հասանէր ‖: Նոյն եղև 'ի քառասներորդաց պահս՝ տևեալ ամիս երիս. 'ի թուին յժը. (ըստ ասող. Բ. 2. և ըստ միում օրինակի սամ. զի այլ կրկին օրինակք սամ. թուին դնել 'ի յժա. 862:)

Երկրորդ անգամ կործանեցաւ դուին յելս անդ Թ. դարուն յաւուրս տն. սմբատայ, յորմէ անկան յական թօթափել ըստ ասից նորուն յովհաննու կաթ. պատուարք պարսպաց, ապարանք, տունք հասարակք, եկեղեցիք կաթողիկոսարանին, և վկայարանք, և մեռան բազմութի բնակչաց, զորոց զթիւ նշանակէ թովմա արծ. յաւելն. * Ասի լինել թիւ մարդկանն՝ ապականելոցն 'ի շարժմանէ, ոգի առաւել քան Հ. հազար. այս շարժումն սաստկագոյն՝ քան որ եղև յամս զաքարիայի հայոց կաթողիկոսի. յետ Է. ամի գերութեան հայոց ‖:

Յերկրաշարժութենէ թուի լինել և վերջին կործանումն, յոր կայ այժմ այս Դուինն քաղաք 'ի ձոր ինչ լի աւերակօք, ըստ պատմելոյ մեզ ուրումն 'ի Ճանապարհորդաց:

Զանազան ժողովք եղեն 'ի սմա, յորս չորեքին առաւել յիշատակին: Առաջին՝ առ Բ. ներսիսիւ կաթ. երկրորդ՝ առ Բ. մովսիսիւ կաթ. յաղագս նորոգութե տօմարին, յորում եդաւ և թուականն հայոց. երրորդ առ Գ. ներսիսիւ կաթ. և չորրորդ՝ առ յովհաննու իմաստասիրիւ:

Խոսրովակերտ: Տաճար մայրի: Այս կրկին մայրիք կամ անտառք վայրենի կաղնեաց պարսպապատք, միայն լայնութբ Ճանապարհի բաժանեալք 'ի միմեանց, զորս տնկել ետ Բ. խոսրով փոքրն 'ի դաշտի. առաջինն սկսեալ 'ի դառնոյ ձգի մինչև 'ի դուին, և անտի 'ի գետն կոյս (որ ըստ խոր. Գ. 8. է ազատ գետ.) մինչև ցապարանն կոչեցեալ Տիկնունի. զայս անտառ կոչեաց խոսրով՝ Տաճար մայրի: Երկրորդն ձգի 'ի հարաւակողմն առաջնոյն. յորում շինեաց արքունի ապարանս, և կոչեաց զայն Խոսրովակերտ. յերկոսին ևս ժողովեաց երէս և գազանս. առ 'ի լինել տեղի որսոց 'ի զբօսանս արքայի. ըստ այսմ ստորա-

գրէ բուզանդ. գ. Ց. ասելով: * Օ երկոսեան տեղիսն սպառապեալ փակեցին, և ոչ կցեցին 'ի միմեանս վասն պա-ղատայի Ճանապարհին ‖: Այսպէս մերձ գոլով առ մի-մեանս, խորհնացին ոչ որոշէ յերկուս, այլ իբրև մի յի-շէ. և վասն սորին գրէ՝ անուանեալ յանուն խոսրովու. * Անտառ մի (1) առ ազատ գետովն տնկէ՝ որ յանուն նորա (այսինքն խոսրովու) կոչի մինչև ցայսօր ժամանա-կի ‖. և զապարանսն յիշէ, ոչ զոր յանտառին շինեաց, ըստ ակնարկելոյ բուզանդայ. Այլ (այսինքն յանտառին), շէ-նեցին զապարանսն արքունականս, այլ զոր շինեաց ի վերոյ անտառին 'ի դուին, ուր գուցէ մի և նոյն ապարանք են՝ զոր բու-զանդ դնէ յանտառին. իսկ խորհնացին վերոյ անտառին:

Գրչէժ: Յիշատակի առ ղազարայ Թղթ. 251: * Իսկ հասեալք մօտ 'ի քաղաքն Դուին ... և կարգեալ զգունդս 'ի միջոցէ մայրույն՝ որում Խոսրովակերտն ասեն, մնցու-ցանէր 'ի վերայ դաստակերտին, մինչև 'ի լեռնակողմն՝ զոր Գրչէժն կոչեն ‖: Անուն սորա յայտ առնէ՝ սակս ջրոց վիժման և հոսմանց ինչ որ անդ, այսպէս յորջոր-ջեալ:

Բարաւնջ: Քաղաքագեօղ՝ որ մօտ գոլով 'ի դուին, թուի լինել 'ի նորուն գաւառի. * Իբրև մօտ եղեն (ասէ յովհ. կաթ.) 'ի քաղաքագեօղն Բարունջոյ, ընդ յառաջ լի-նէին նմա գլխաւոր գահերէցք, և հօյակապ նախապետք ազգատոհմ 'ի քաղաքէն Դվնայ ‖: Սորա զճանապարհն որ ասի մինչև 'ի Դուին, ակնարկէ լինել համառօտ:

Լորաշէն: Յայսմաւուրս յունիսի 19. 'ի վարս յովսե-փայ նահատակին: * Անակէր 'ի նմին գաւառի Դունայ 'ի գեօղն՝ որ կոչի Լորաշէն ‖: Դարձեալ և վարդումն մի նորին յովսեփայ. * Էր պարսիկ ազգաւ 'ի սահմանացն Դունայ, 'ի գեղջէն որ Լորաշէնք կոչի ‖:

Մարակերտ: Յիշատակի առ խորհնացւոյն Ա. 29. բե-րելով 'ի գողթան երգոց: * Ի հիմնանալն արտաշատու՝ նա (Բ. արտաւազդ՝ որդի Բ. արտաշէսի) անց (ասէ) գնաց, և շինեաց 'ի մէջ մարաց՝ զՄարակերտ, որ է 'ի դաշտին՝ որ անուանեալ կոչի Շարուրա ‖: Դնելով զայս 'ի Շարուր դաշտին՝ յայտ առնէ՝ անկանիլ յայս գաւառ. իսկ դնէ 'ի մէջ մարաց, սակս բնակչացն, որք գէթ ըստ մասին էին 'ի մարաց անտի գերելոց 'ի մեծէն տիգրանայ:

(1) Այսպէս գրի յերկուս ձեռագիր օրինակի գրի Անտա-ռեւ". իսկ 'ի տպ. և 'ի միում առ ազատ. են:

Տեղիք այրարատոյ՝ որոց գտանին անծանօթք :

Վաղարշապատ : Արքայանիստ քաղաք հռչակաւոր 'ի գիրս մեր քան զամենայն արքայանիստս բոլոր Հայաստանեայց. իսկ 'ի գիրս յունաց և հռովմայեցւոց բոլորովին անյիշատակ : Առաջինն կոչէր սա Արտիմէդ քաղաք. գուցէ 'ի յունական անուանէ Արտեմեայ դից՝ որ 'ի հայս կոչի Անահիտ: Իսկ բլուրն յոր շինեալ էր՝ կոչէր Շրէշ, ապա կոչեցաւ Վարդգէսի աւան. յետ պարսպապատ առնելոյ վաղարշայ արքայի՝ կոչեցաւ Վաղարշապատ, և Նոր քաղաք :

Առաջին երկու անուանք ոչ 'ի գործ ածին 'ի գիրս (1), այլ երկու վերջին անուանք. որպէս յասելն ղազարայ Թղթ. 307. * Նախ գային 'ի քաղաքն Վաղարշապատ, որ այժմ անուանի Նոր քաղաք ||: Նա և 'ի Թղթ. 64. * Վախճանեցաւ երանելին մաշտոց 'ի վաղարշապատ քաղաքի, զոր և Նոր քաղաք անուանեն ||: Իսկ այլուր սոսկ զվերջին անունն 'ի կիր առնու, յասելն. * Նա զերանելի երեցն զերեմիայ 'ի Նոր քաղաքէ ||: Որպէս և 'ի Թղթ. ստեփ. օրբ. առ գրիգոր կաթ. ժողովն բաբգենի կաթողիկոսի ասի լեալ 'ի Նոր քաղաքի, զոր այլք դնեն 'ի վաղարշապատի :

Այս անուն 'ի յունականն ագաթանգեղոսի բազում ուրեք գրի Վաղերօգրեպատ. մանաւանդ ուրանօր 'ի հայկականն ընդ Վաղարշապատ անուանս յարակցեալ դնի և անունս Արտաշատ. որպէս 'ի Թղթ. դ. է. ը. յխե. և յկբ (2): 'Ի գործ ածի երբեմն 'ի գիրս՝ և այլ երրորդ անուն քաղաքիս, որ է Արտաշատայ, որպէս է տեսանել 'ի պատմութեան ժողովոց՝ յասելն. * Հինգերորդ ժո-

(1) Բայց եթէ ուրեք առ խոր. բ. 15. որ Աւան Վարդգէսի կոչէ նախ քան զպատմելն զշինութիւնն վաղարշայ: * Իսկ Թագաւորն հայոց տիգրան՝ զգերութիւնն հրէից նստուցեալ 'ի յարմաւիր. և 'ի յԱւանին Վարդգէսի՝ որ 'ի վերայ քասաղ գետոյ ||:

(2) Գուցէ եղեալ 'ի Գործոց բանէն յունաց, որ նշանակէ Աստուած. իբր Վաղարշու ստացուած՝ կամեցեալ ասել անուամբս Վաղերօգրեպատ. կամ մանաւանդ որպէս ինձ թուի՝ անունս Ընտրեցեալ՝ որ 'ի հայկականն ագաթանգեղոսի ուրեք 'ի գործ ածի իբր վերձակ Վաղարշապատ քաղաքի (զորմէ ստորև,) այն 'ի յունականն բազում ուրեք յարակցի ընդ անուանս վաղարշ կամ վալերս, իբր մի անուն, և գրի Վաղերօգրեպատ :

ղով արար բաբգէն 'ի Բագարուդաշտի‖։ Զոր այլք դնեն գումարեալ 'ի Նոր քաղաքի, կամ 'ի Վաղարշապատ։ Նա եւ առ Ասողկայ Բ. 1։ * Յետ սակաւ աւուրց անցելոց՝ մեծ վարդապետն Հայոց մեսրոպ վախճանեցաւ 'ի Բագարուդաշտի 'ի Վաղարշապատ‖։ Զորոյ զմահն խորենացին. Գ. 67. եւ յովհաննէս կաթ. գրեն դիպեալ լոկ 'ի Վաղարշապատ քաղաքի, որպէս եւ ղազար։

Յայս անուն կոչեցաւ 'ի գրեց իւրոց՝ սակս կառուցեալ գոլոյ 'ի դաշտավայրի. այլ առաւել շրջակայ ոլորտ քաղաքին, կամ վիճակն կոչեցաւ այսպէս. կամ թէ եւ քաղաքն, որպէս թէ ասել՝ Բագարաճին դաշտ, եւ ոչ թէ Բագարա 'ի դաշտի. զի եւ ուրեք 'ի կարգաւորութիւն օրհնութիւնաբեր ցուցակի գտանեմք զայս անուն 'ի կիր արկեալ վասն սահմանին որ արտաքոյ վաղարշապատու։ * Նոյնպէս եւ զաշխարհաժողովն (մինչ սահակայ է գործեալ) 'ի Բագարուդաշտի, 'ի վկայարանս մեծ հռիփսիմեանցն‖։ Արդ՝ վկայարան հռիփսիմեանց է արտաքոյ քաղաքին. եւ այսպէս 'ի վերոգրեալ բանս նախնեաց՝ մարթ է առնուլ զԲագարուդաշտն նաեւ փոխանակ վիճակի կամ փոքրիկ նահանգին վաղարշապատու. ուստի եւ ասողիկ 'ի վերագրեալ բանի նախ յիշեաց զվիճակն Բագարուդաշտ, եւ ապա զՎաղարշապատ՝ որ էր 'ի նմին վիճակի։

Զկառուցեալ գոլն քաղաքիս 'ի դաշտի՝ գտանեմք աւանդեալ 'ի պատմութեան Թովմայի արծրունւոյ յերկրորդ վարս գաղկայ, ուր ասի. * Իսկ արաս որդին սմբատայ հպարտացեալ՝ գայ իջանէ 'ի դաշտն վաղարշապատ քաղաքի‖։ Առ քաղաքաւս անցանէր Քասաղ գետակ. նաեւ Ոսոհ գետակ լինչ 'ի մօտակայս նորին ընթանայր, որպէս ցուցանէ կորիւն։

Ագաթանգեղոս յիշէ զսորա դուռն յարեւելեան կողմն Արեգ անուամբ (1). յիշէ եւ զԿամուրջ սորա՝ որ թուի ձգեալ 'ի վերայ վտակին մեծամօրի։ * Կէսքն անցեալ (ասէ 'ի թղթ. Ը.) ընդ կամուրջն վաղարշապատ քաղաքի, զոր եւ Կամուրջ Մեծամօրի կոչեն (2) աճապարէին հասանել յառաջ 'ի խելս կամրջին արտաշատու‖։ Այ

(1) Թղթ. Ժ։ * Ընթացեալ ը քաղաքամէջն, եկանէր ը արեւելա կոյս ը Արեգ դուռն քաղաքին‖։

(2) 'Ի յունականն դնի. * Իսկ կէսք անցեալ ընդ կամուրջ քաղաքին Վաղերօդգիսդայի, եւ ը կամուրջ գետոյն՝ որում անուն էր Մոթէոս, աճապարեցին ունել զանցս քաղաքին արտաշատու‖։

կամուրջ որպէս ակնարկէ Թղթ. ձզ. անկանէր 'ի կողմն հարաւային դրան քաղաքին ։

Յիշէ 'ի Թղթ. ձզ. և զփոսն, կամ զխրամն՝ անուանեալ Պարքէն, որ շուրջ գայր զքաղաքաւն. մերձ 'ի սոյն փոս 'ի հարաւակողմն քաղաքին՝ Ճախճախուտ տեղի, ուր սպանանէին զամենայն մահապարտս ։ * Ետ հանել զնոսա շղթայիւք 'ի քաղաքէն ընդ դուռն հարաւոյ, ը̈ կողմն պողոտային՝ որ հանէր 'ի մեծամօրի կամուրջն. 'ի տեղին յայն՝ ուր սովոր էին սպանանել զամենայն մահապարտս 'ի Ճախճախուտ տեղի մի մօտ 'ի Պարկէն փոսին, որ շուրջ գայր զքաղաքաւն ‖ ։

Յիշէ և զԲերդամէջս, յայտ արարեալ թէ ունէր նաև բերդ. Թղթ. հե. * Կայթիւք վազելով՝ ցուց բարձեալ մարդկանն, կէսք 'ի բերդամիջին, և կէսք զքաղաքամէջսն լցին խնձոյիւք ‖ ։

Մի էր սա 'ի ձմերոցաց Թագաւորութե. քանզի գրէ 'ի Թղթ. խԹ. * Եւ ինքն Թագաւորն խաղայր գնայր 'ի ձմերայնոցս յայրարատ գաւառ 'ի Վաղարշապատ քաղաք ‖ ։

'Ի մէջ եկեղեցեաց սորա անուանի դտաւ քան զամենայն եկեղեցիս հայաստանեայց՝ Կաթողիկէ եկեղեցին, ըստ որում կոչի առ ամենայն մատենագիրս. որպէս և խորենացին գ. 9. և 66. ուր ասէ. * Խոտեալ խարսխեաց (մեծն սահակ զմեսրոպ,) յեկեղեցւոջն Կաթուղիկէ, որ 'ի վաղարշապատ քաղաքի ‖ ։ Տեղի այսր հռչակաւոր եկեղեցւոյ 'ի հրեշտակէ ցուցաւ տեսլեամբ առ ս̃րն գրիգոր 'ի ձեռն հրեղէն սեան ։ * Ոսկի խարիսխն՝ վէմն հաստատութե անշարժութի է, և սիւնն հրեղէն Կաթուղիկէ եկեղեցի է (ասէ հրեշտակն առ ագաթ. Թղթ. ճը. և ճդ) ... տեղին այն լիցի տաճար ա̃յ, և տուն աղօթից խնդրուածոց ամենայն հաւատացելոց, և աթոռ քահանայապետութեան ‖ ։ Կամ զոր ասէ 'ի յլէ. * Շինեսջիր զտաճար անուանն ա̃յ 'ի տեղւոջն՝ որ քեզ ցուցաւ, որ (ուր) սիւնն հրեղէն ունէր ոսկի խարիսխ ‖ (1) ։ Վան

(1) Դուանըֆոր վրիպակաւ պատմէ զլուեալն իւր 'ի հայոց. որպէս թէ ո̃չ զտեղին ևեթ. այլ զնոյն իսկ զգաղափար շինուածոյ եկեղեցւոյն ցուցեալ յա̃յ առ ս̃րն գրիգոր. գրելով հատ. ը̈. Թղթ. 334. 'ի տպ. փարիզու 1717 ։ * Ճարտարապետն որ եա զգաղափար պատրիարդական եկեղեցւոյս՝ էր ներհուն կատարեալ, զհետ երթեալ ո̃չ գիտեմ որպիսի աւանդութե հայոց, որք պնդեն թէ նոյն ինքն յս̃ քս̃ ստուերագրեաց զգաղափարն առաջի ս̃րյն գրիգորի ... եթէ այսպէս է, տ̃րն 'ի կիր արկ կարգ ինչ Ճարտարապետուն

որոյ և 'ի ղազարայ Թղթ. 22. կոչի. * Հրեշտակացոյց հիմնարկութիւն սբյ տաճն այ մեծի եկեղեցւոյն ||. Եւ այս տեղի խարսխի և սեան անկանէր * 'Ի մէջ քաղաքին՝ մօտ յապարանս արքունի ||: Որպէս ընէ ագաթանգեղոս Թղթ. յիթ :

Սբն գրիգոր քանզի չև ևս էր ցայնժամ ձեռնադրեալ 'ի քահանայութիւն, զտեղի նոյն հրեղէն սեանն բարձր քաղաքորմով փակեալ 'ի պատիւ, և դրամբք և դռնափակօք ամրացուցեալ՝ կանգնեաց զնշան խաչին. տես յագաթանգեղոս. յիդ : Եւ այնպէս առաջին գտաւ տեղի 'ի մէջ հայաստանեայց որոշեալ 'ի շինութիւն եկեղեցւոյ. վասն այսորիկ՝ նաև վասն գոլոյ նախկին աթոռ կաթողիկոսի՝ որպէս գրեցուք զկնի, կոչի 'ի յոհաննէս կաթ. Մայր եկեղեցեաց : * Մեծ հայրապետն հայոց բաբկէն առնէ ժողով եպիսկոպոսաց հայոց, վրաց, և աղուանից՝ 'ի Նոր քաղաքի, 'ի սբ Կաթողիկէ, 'ի Մայր եկեղեցեաց հայոց (1) ||: Իսկ աշտիշատուն կոչի Մայր եկեղեցեաց, վասն զի յառաջ քան զսա շինեցաւ եկեղեցի. իսկ այս թէպէտ յառաջ քան զաշտիշատուն էր որոշեալ 'ի հրեշտակէն այ, բայց զկնի շինութեան աշտիշատուն և իննակնեան տեղեացն շինեցաւ 'ի սբյն գրիգորէ. զորմէ հարևանցի պատմէ ագաթ. յհե. ասելով. * Եւ զնկատեալ տեղի տաճն այ շինեաց, զցուցեալն նմա յայ 'ի տեսլեանն, զյառաջագոյն դրոշմեալն իւր. և կանգնեաց անդ զեկեղեցին այ ||:

'Ի հիմանց նորոգեաց զայս եկեղեցի վահան մամիկոնեան

կարի իմն արտաքոյ կարգի, քանզի գմբէթք և զանգակատունք են վրանաձև դարձուցեալք և 'ի խաչ աւարտեալք ||: Որպէս և վրիպակաւ պատմէ 'ի հետևեալ Թղթ. զլուեալն իւր 'ի ժամանակագրութէ հայոց, փոխանակ սբյն գրիգորի զգայիանէ ընկեցեալ 'ի վիրապն. զօձսն սատակեալ, և զամս 40 անդանօր ամբողջ մնացեալ. որք ոչ ուրեք յոչինչ գիրս հայոց պատմին : Այլ աւելորդ է զամենայն վրիպակս եւրոպեան ճանապարհորդաց յառաջ բերել և մերժել, որպէս և զՄօնիէռի քարողչի յնեան. որ փոխանակ գրելոյ մք եկեղեցւոյս՝ 'ի սբյն գրիգորէ, գրէ՝ յանուն սբյն գրիգորի կառուցեալ. շփոթելով ընդ միւս եկեղեցւոյն՝ զոր շինեաց ներսէս յանուն գրիգորի :

(1) Յաշխարհագր. խոր. գրի վասն եկեղեցւոյս. ' Մայր եկեղեցեացն 'ի Թագաւորաբնակ և յարքայանիստ վաղարշապատ քաղաքի ||: Այլ այս բան 'ի յետագայից յաւելաւ. քանզի յերկուս ձեռ". չեք գտանել. իսկ յերրորդումն գտանի միայն Մայր եկեղեցեացն, և ոչ յարակցեալ միւս բանքն, այլ այն օրինակ բազում ուրեք համաձայնի ը տպագրելոյն նաև ընդ վրիպանացն :

նախ քան զմարզպանութիւն իւր ։ * Ասկեալ համանէր այնուհետև (տես զաղ. Թղթ. 273.) 'ի վաղարշապատ քաղաք ... կատարէր զամլորական ուխտս և զպատարագս 'ի մօր եկեղեցւոյն Կաթուղիկէի. զոր հիմնարկեալ նորոգեաց մեծապայծառ շքեղութբ՝ զհնացեալ գործ նախնեացն իւրոց, քաջ զօրավարն հայոց մամիկոնեանն վահան (1) ‖ ։ Եթէ զբանս 'Խորենացւոյն իւրոյ՝ վասն ցեղին առցուք, որպէս բերէ ճշգութիւն բանիցն, հարկ է ասել՝ թէ և յառաջ քան զվահան նորոգեցաւ յայլոց մամիկոնեանց ։

Ասողիկ ՟Բ. 2. յաւելու և զշինութիւն մենաստանի ։ * Ի մեծն Կաթուղիկէ եկեղեցին որ 'ի հայս՝ վերստին մեծապէս նորոգեաց (վահան), զդասս կրօնաւորացն բազմացուցանելով, որ Սուրբենայ անապատն ասի, վերակացու նոցա կարգեալ զՂազար փարպեցին ճարտասան և պատմագիր ‖ ։ Կարգ բանիցն ցուցանէ անդանօր առ եկեղեցեաւն բազմացուցեալ զկրօնաւորս, այսինքն կանգնեալ մենաստան. այլ անուանն Սուրբենայ անապատ՝ անլուր է յայսմիկ կողմանս 'ի գիրս այլոց. բայց եթէ Սուրբենակէն առեալ զանունն առ յետագայս յեկեղեաց գաւառի ։

Իսկ հիմնադիր և ժամանակ շինութեան մենաստանին՝ որ 'ի վաղուց անտի կայ մինչև ցայսօր առ եկեղեցեաւս, անյայտ է մեզ գլխովին. շարտէն լուեալ 'ի բնակչաց՝ շինեալ ասէ 'ի Ներսիսէ, որ էր իններորդ կաթողիկոս. որ պարտ է լինել ՟Գ. ներսէս շինօղ ։ Բայց առաւել 'ի դէպ էր ասել 'ի մեծէն ներսիսէ, կամ յաւէտ 'ի սբյ լուսաւորչէն ։

'Ի սկիզբն ՟Է. դարուն կոմիտաս կաթուղիկոս քարայարկ շինեաց զգմբէթ եկեղեցւոյս, որպէս պատմէ յովհաննէս կաթողիկոս ։ * Քակեալ սորա զփայտայարկ գմբէթ սբյ կաթողիկէին որ 'ի վաղարշապատ քաղաքի, շինէ զնա գեղեցկայարմար և չքնաղատես կոփածոյ քարամբք ‖ ։ Նոյն վկայէ և Ասողիկ ՟Բ. 3 ։

Դարձեալ նորոգեցաւ մանաւանդ մենաստանն 'ի փոխադրել զաթոռ կաթուղիկոսին 'ի սոյ յէջմիածին առ կիրակոս կաթուղիկոսիւ 'ի 1441 ։ Իսկ 'ի սկիզբն ԺԷ. դարուն բազում նորոգութիս գործեաց մովսէս կաթուղիկոս. քանզի եղծեալ էր գլխովին մենաստանն, և եկեղեցին

(1) Սամ. դնէ զայս յամի ՟ՇՁ ցիս նորոգութբ, մանաւանդ զկա-
506 ։ 'Վահան պսակեաց զեկեղե- Թողիկէն ‖ ։

լքեալ բնակարան թռչնոց։ Յետ նորա Փիլիպպոս կաթուղիկոս որ վերստին նորոգեաց զքանդեալսն 'ի յաճախ պատերազմաց տաճկաց ընդ պարսս, լաւագոյն ևս շինելով քան զառաջինն, զորոց տես յառաքել պատմագիր՝ որ ընդարձակ պատմէ վասն շինութեան երկոցունց կաթուղիկոսացս։

Այսպէս երևելի գտաւ այս եկեղեցի՝ Կաթողիկէ անուանեալ 'ի նախնեաց, խոկ 'ի յետագայից Էջմիածին կոչեցեալ 'ի խորհուրդ տեսլեան սրբոյն գրիգորի, զի նա ըստ պատմելոյ ագաթ. 'ի յիթ. ընդ այլ նմանութեանց ետես * Տեսիլ ահաւոր մարդոյ բարձր և ահեղ, որ զառաջնն ունէր և զէջմն 'ի վերուստ մինչ 'ի խոնարհ... եկն էջ եհաս մինչև մօտ 'ի յատակս երկրիս 'ի շինամէջ քաղաքիս, և բախեաց զթանձրութիւն լայնատարած գետնոյս. և մեծ և անչափ թնդիւնք հնչեցին 'ի սանդարամետս անդնդոց‖։

Զայս կերպարան մարդոյ՝ մեկնեաց հրեշտակն 'ի խորհուրդ տեսչութեան տն՝ ասելով առ սբն գրիգոր. 'ի յլը. * Իսկ այս ահաւոր և շքեղաւոր՝ որ զառաջին ունի զլուսոյն, և զուռն ոսկի 'ի ձեռին իւրում, և բախեաց զսանդարամետս, այս Տեսչութիւնն տն է‖։ Իսկ յետագայք զտեսչութիւն տն 'ի նոյն ինքն 'ի միածինն յս քս մեկնեցին, որպէս և բան շարականոցին. * Էջ միածինն 'ի հօրէ, և լոյս փառաց ընդ նմա‖։ Եւ ոտանաւորն Ստեփ. օրբ.

* Այս ես, այս ես, Էջք միածին,
իմ կուսածին թագաւորին‖։

Յայնմանէ անուանս Էջմիածին՝ եանց ապա իբր առանձին անուն տեղւոյս, յոր անուն կոչէ և շնորհալին յողբսն եդեսիոյ։

Այս եկեղեցի կոչի այժմ բնիկ անուամբ յանուն Ուչքիլիսէ, ուստի և տօն եկեղեցւոյ՝ զոր կատարեմք Ուչքիլիսէ անուամբ յաւուր նաւակատեաց վերափոխման, է տօն այսր եկեղեցւոյ, իբր 'ի շնորհակալութիւն տն վասն առաջին եկեղեցւոյն հիմնարկութեան 'ի հայս։ Վասն այսորիկ յայսմաւուրս. յօգ. 14. դնի խորագիր. * Տօն է Շողակաթի Էջմիածնի (1) բանին տն 'ի վաղարշապատ քաղաքի‖։ Եւ ստորև զնոյն տաճար, զոր նախնիք կոչէին

(1) Տպ. և 'ի միում ձեռ". դնի Իջման Փածնէն։

Կաթողիկէ եկեղեցի, անուանի նոյնպէս Շողակաթ. *Մեծաւ ջանիւ կատարեցին զշինուածս տաճարացն, զՇողակաթին, և զՍբ. կուսանացն ||: Եւ 'ի տօնացուցին. * Տօն է Շողակաթին տեսլեան սրբոյն Գրիգորի ||:

Առ նախնիս ոչ գտանեմք յայտնի կոչել զայս եկեղեցի 'ի սոյն անուն. այլ 'ի պատմութիւնս ինչ ժողովոց Հայոց՝ ամի վասն Դ. ներսիսի կաթուղիկոսի. * Երկասիրաբար յարդարեալ շինէ զՍբ. զՇողակաթն 'ի քաղաք ||, այս ինքն 'ի վաղարշապատ: Եւ՝ առ աստղկաց Դ. 12. ամի վասն արքունական ամիրայից. * Զփրկական նշանն՝ որ 'ի վերայ սրբոյ Շողակաթի կմբէթին կանգնեալ էր, Ճօպանօք 'ի վայր ընկէր 'ի նմա. Թվին ||: Զայս ամենայն կարեմք իմանալ 'ի վերայ մի և նոյն եկեղեցւոյ (1) այլով բանիւ կոչեցեալ Կաթուղիկէ, և այլով բանիւ Շողակաթ. այսինքն վասն տեսլեան լուսաւորչին, յորոյ՝ տեսլեան * Սիւն գործեաց լոյս շողացեալ, և ծագեաց 'ի մէջ ներքին սեանցն խարսխաց ||: Ագաթ. 'ի ՃԼ. այլ զհաւաստին ոչ կարեմք ստուգել:

Երկրորդ եկեղեցի քաղաքիս յիշատակեալ 'ի գիրս, է ՍԲ Գեւորգ, զոր շինեաց Դ. ներսէս կաթուղիկոս շինող անուանեալ. զորմէ պատմէ յոհաննէս կաթուղիկոս. * Գեղեցիկ իմն մտութբ զնէ ապա հիմն մեծ և հրաշալի բազմապայծառ յարկի տան Տն՝ ըստ անուանակոչութե սրբոյն Գրիգորի ... Իսկ 'ի հիմնարկել զՏնծակերտ փառաւորն բանաւոր հօտին քնի, 'ի ներքոյ չորից սեանցն հաւտահեղուսիցն՝ բաժանեՆ զնէ զնշխարս ոսկերաց սրբոյն Գրիգորի ||: Սամուէլ զնէ զայս 'ի թուականիս ՄԹ. ասելով, * Հայրապետն ներսէս շինէ զՍբ. Գրիգոր զարմացուցիչ տեսողաց ||: Թովմա արծ. որոշէ և զքաղաքն: * Բայց երանելի հայրապետն Տր գէորգ ... Թողեալ զմնակէն 'ի դուռնն, ելեալ բնակեցաւ 'ի Նոր քաղաքին, 'ի մեծ եկեղեցւոջն՝ որ յանուն Սբյն Գրիգորի շինեալ էր երանելոյն Տն ներսիսի երկրորդի (երրորդի) Հայոց կաթուղիկոսի ||:

Ասողիկ Բ. 2. որոշէ և զտեղին. յասելն. * Սա շինեաց ... և զմիւս ևս հրաշապայծառ եկեղեցին զՍբն Գրիգոր 'ի Վաղարշապատու առապարին, զանազան յօրինուա-

(1) Զի թէպէտ այժմ է և այլ եկեղեցի նոյնպէս Շողակաթ անուանեալ, մօտ յայժ յէջմիածին. բայց զայն 'ի յետնոց ասեն շինեալ. տես 'ի նոր հայաստան, թղթ. 265:

ծով‖ ։ Յորմէ և 'ի Ճառս ինչ գովեստից լուսաւորչին կոչի այս եկեղեցի՝ Սբ Գրիգոր Լուսաւորիչ. * Այժմ (մարմնոյ սրբոյն գրիգորի) եղաւ 'ի ներքոյ չորից սեանցն Սբ գրիգորի առապարին‖ ։ Յորս Լուսաւոր անուամբ չէ պարտ իմանալ զՕշականն , թէպէտ և այն չէ ինչ հեռի 'ի վաղարշապատէ , այլ առ առաւելն՝ առապար ինչ արտաքոյ վաղարշապատու , բայց առընթեր նմին . զի նոյն աստղիկ այլուր . Գ . 47 . զնոյն եկեղեցի դնէ 'ի Վաղարշապատ , որով յայտ առնել կամի արտաքոյ վաղարշապատու . ըդ-րամս նորա տես 'ի ստորագրութե անոյ ։ Նաև յոհաննէս կաթուղիկոս 'ի պատմելն զշինուածս շինեալ 'ի նոյն ներսիսէ զինի ամաց ինչ անցանելոյ 'ի շրջակայս նոյն եկեղեցւոյն՝ ցուցանէ լինել արտաքոյ քաղաքին ։ * Բայց հայրապետն ներսէս պարապ անձին գտեալ , զարտաքոյս հրաշակերտ եկեղեցւոյն՝ զոր իւր իսկ էր շինեալ , շուրջանակի պատուար պարսպօք փակեալ ամրացուցանէր , յօրինեալ 'ի նմա յարկս բնակութե իւրեանն հաստահեղուս կոփածոյ քարամբք . այլ և կարգեալ կայուցանէր 'ի նմա ամբոխութիս երդուամարդաց՝ ըստ պայմանի քաղաքականաց . և ածեալ ջուր 'ի քասախ գետոյ զամենայն աւազախիր առապար դաշտավայրն 'ի գործ արկանէր , տնկէր այգիս և բուրաստանս ծաղկոցաց‖ ։

Սա ցուցանէ , թէ էր յաւազուտ և յառապար դաշտին . բայց եթէ ասասցուք՝ թէ զդաշտավայրն զայն այգեստանեայց՝ պարտ է առնուլ տարբեր 'ի տեղւոջէն յորում էր եկեղեցին (1) ։ Նաև այսպէս այս Սուրբ գրիգոր պարտ է լինել այլ 'ի միւս Սբ գրիգորէ՝ զոր դնեն յարագածոտն գաւառի ։

Ժամանակ առաջին հիմնարկութե վաղարշապատ քաղաքիս՝ անյայտ է 'ի գիրս , քանզի գողթան երգն ուստի յառաջ բերէ խորենացին , ցուցանէ՝ թէ նաև նախ քան զվարդգէս գոյր այս քաղաք , յորում ժամանակի կոչէր Արտիմէդ ։ Իսկ զժամանակ վարդգէսի՝ որ նորոգեալ շինեաց , յայտ առնէ խորենացին դնելով 'ի ժամանակս ա̃ռ. Երուանդայ , որ իբր 5 դարուք և կէսով յառաջ է քան զՔ̃ս ։

Անչափ ինչ եղև այս նորոգութ̃ի վարդգէսի , զի ըն-

(1) Յովհ. ազիզբէնկ յՈւեան. մի 'ի պոլլանտեանց , որ յօրինեաց զվարս սբյ լուսաւորչին , չփոթելով զայս եկեղեցի ընդ էջմիածնին , 'ի 303. Թղթ. զշինութիւն եկեղեցւոյն էջմիածնի՝ տայ Գ. Ներսիսի շինողի ։

կալաւ զանուն աւանի, և ոչ քաղաքի. Թէպէտ կոչելով Խորենացւոյն Հզօր աւան, յայտ առնէ՝ թէ ունէր նաև ամրոց: Միջին Տիգրան յորժամ աստ բնակեցոյց զգերեալ հրէայս, ծաղկեցաւ 'ի նմա շինութիւն և տուրևառութի. զայս կամի ցուցանել Խորենացին յասելն՝ յայնժամ եղև քաղաքագիւղ վաճառօք: Իսկ զշուք և զանուն կատարեալ քաղաքի էառ, յորժամ պատեաց պարսպաւ Վաղարշ արքայ:

Զայս ամենայն նշանագրէ Խորենացին սակաւուք ըստ իւրում ոճոյ՝ յայսչափ ինչ բան. Բ. 62. ըստ ձեռ. 65: * Սա (Վաղարշ) պատեաց պարսպաւ և զհզօր աւանն Վարդգեսի՝ որ 'ի վերայ Քասախ գետոյ, յորմէ յառասպելն (1) ասեն: Հատուած գնացեալ Վարդգես մանուկն 'ի Տուհաց գաւառէն՝ եկեալ նստաւ զՇրեղ բլրով (2) զԱրտիմէդ քաղաքաւ՝ զՔասախ (3) գետով, կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի: Այս Երուանդ առաջինն է սակաւակեացն՝ որ 'ի հայկազանց. զորոյ զքոյրն կին առեալ Վարդգեսի՝ շինեաց զաւանս զայս. յորում և Տիգրան միջին յարշակունեաց՝ նստոյց զհասարակ առաջնոյ գերութեան հրէից, որ եղև քաղաքագիւղ վաճառօք: Այժմ այս Վաղարշ պատեաց պարսպաւ և հզօր պատուարաւ, և անուանեաց Վաղարշապատ, որ և Նոր քաղաք ‖:

Յաւուրս փոքուն Խոսրովու արքայի՝ պաշարեցին զայս քաղաք հիւսիսային ազգք Կովկասու, զորոց գրէ Խորենացին Բ. 9: * Հասեալ 'ի դրունս Վաղարշապատու՝ պաշարեցին ‖: Այլ ոչինչ կարացին առնել. Իսկ յաւուրս Բ. Արշակայ՝ զօրք Շապհոյ պարսից արքայի քանդեցին: * Առնուին և զՎաղարշապատ զքաղաք (տես Բուզ. Դ. 55.) քանդէին բրէին զքաղաքն, 'ի հիմանց տապալէին, և խաղացուցին յայնմ ևս քաղաքէ ԺԹ. հազար երդս ‖ (4): Այլ և յետ այնր ուրեք ուրեք յիշատակի առ պատմագիրս, որպէս առ Յովհաննու կաթուղիկոսի, յաւուրս շահանշահ Աշոտոյ:

Մեծութի նորա որպէս ակնարկեն բանք Ագաթանգեղոսի և Խորենացւոյն՝ հասանէր 'ի Քասախ գետոյ մինչ 'ի

(1) Իմանայ զերգն պատմական խառն ընդ առասպելեաց, զոր երգէին բնակիչք Գողթան:

(2) 'Ի տպ. զՆի Զուրէն Բերդաւ:

(3) Այսպէս յօրինակ մի, և 'ի տպ. ուր յայլ օրինակս գրի զՔասաղ գետովն:

(4) 'Ի տպ. և 'ի միում ձեռ. վրիպակաւ գրի ԺԲ. երդս հազար:

մեծամօր, որով գիրք նորա լինի երկայնաձեւ. զի այժմեան էջմիածին էր 'ի մէջ քաղաքին՝ որպէս գրեցաք. իսկ տաճարք կուսանացն արտաքոյ. այլ այս տաճարք՝ մօտ են յէջմիածին: Տես 'ի Նոր Հայաստան Թղթ. 265: Ս.անգէն բնակիչքն՝ թէ ձգեալ տարածէր մինչ մերձ յերեւանայլ այժմ և ոչ հետք ինչ նորա երեւի. և ոչ գիտեմք՝ թէ երբ, և որպէս հիմնայատակ եղև:

Այս քաղաք այսչափ պանծալի և ծանօթ 'ի գիրս ընդհանուրէն հայոց, սակայն բնաւին անծանօթ գաւառ նորա, որ ոչ ուրեք յիշատակի 'ի գիրս. իսկ առ ագաթանգեղոսի միշտ գնի յայրարատեան գաւառ, որպէս 'ի Թղթ. ճ. * Թագաւորն հայոց (մեծն խոսրով) դառնայր 'ի մեծ կոտորածէն ... յԱյրարատ գաւառ 'ի Վաղարշապատ քաղաք ||: Նաև 'ի Թղթ. Ճ. * Երբև եկին հասին աւուրք ջերոտ հարաւահողմն գարուն դրանցն բանալոյ, եկին և ջին յԱյրարատ գաւառ 'ի Վաղարշապատ քաղաք ||: Նաև 'ի Թղթ. ճկե. * Զու արար յԱյրարատեան գաւառէ, 'ի Վաղարշապատ քաղաքէ, ընդ առաջ գրիգորի ||: Նաև 'ի Թղթ. ճղ. * Խաղայր գնայր յԱյրարատ գաւառէ, 'ի Վաղարշապատ քաղաքէ, անցանել 'ի սահմանս յունաց ||:

Այլ անուամբ Այրարատ գաւառ՝ է անուն առ հասարակ այրարատեան նահանգի, և ոչ մասնաւոր գաւառի: Ագաթանգեղոս ուրեք թուի որոշել զտեղին յասելն 'ի Թղթ. ճձե. վասն տրդատայ. * Հասանէր յառաջին դաստակերտն իւր յՈստանն (1) Այրարատեան գաւառին, 'ի Վաղարշապատ քաղաքի. ուստի նախ զառաջին ծածանեալ հրամանացն լինէր սկիզբն ||: Բայց անուն Ոստանն չէ մեզ յայտ ուստեք, որդեօք յատուկ անուն վիճակի, տեղւոյ, կամ գաւառի իցէ, թէ անուն նշանական: Մինչ յաշխարհագրութե խորենացւոյն 'ի կարգս գաւառաց աղուանից՝ զորս 'ի հայոց են հանեալ, գտանեմք յիշատակեալ յերկուս ձեռագիրս այսպէս: * Փոքր հարանդ, Միսական, Ոստանակ ||: Զորս չէք տեսանել 'ի տպագրեալն. բայց և այն որպէս յայտ է յանուանէ երկուց ընթերակայ գաւառաց, մնկանէր 'ի նահանգն արցախ, զոր հանեն աղուանք 'ի հայոց, և ոչ յայրարատ, ուր և ոչ տիրեցին աղուանք:

(1) 'Ի յունականն չէք բառս զանունս Վաղարշապատ դնէ Վ. Ըստոստան, այլ՝ որպէս և յայլ Աւրոգրիոգա. զորմէ ծանուցաք 'ի բաղում ուրեք, նոյնպէս և առ վերոյ:

Իսկ այսպէս բոլորովին անծանօթ գոլով գաւառ այսր քաղաքի, թուի ինձ թէ նոյն ինքն վաղարշապատ կացուցանէր առանձին փոքրիկ գաւառ, որպէս և յայլ աքքայանիստ մայրաքաղաքս ինչ է զայս տեսանել. ահա այժմեան ստամպօլ կացուցանէ ուրոյն գաւառ փոքր, որ կոչի ոչ տարբեր ինչ, այլ նովին ստամպօլ անուամբ, և ձգի ընդսուղ ինչ սահման արտաքոյ քաղաքին:

Այլ վասն գաւառին վաղարշապատու առաւել քան զայս երևի առանձին ինն անուամբ կոչեցեալ Արարատ գաւառ. և այս ըստ որում 'ի ժամանակս արշակունեաց էր երևելի արքայանիստ քաղաք, և իբր կեդրոն այրարատ նահանգին, կամ թէ յաւէտ վասն դաշտին որ տիրապէս կոչեցաւ Արարատ, որպէս յիշեցաք 'ի ներածութեան նահանգիս. զի այն դաշտն Արարատ՝ է նոյն իսկ դաշտն որ ձգի առ այրարատեան կամ մասիս լերամբ. իսկ այն դաշտ անցանէ նաև 'ի ձախակողմն երասխայ մինչ 'ի յարագած, և մինչ 'ի վաղարշապատ, որպէս յայտ է յայժմեան գրից էջմիածնի՝ որ էր 'ի վաղարշապատ. Տես 'ի նոր հայաստան թղթ. 260:

Իսկ այսպէս զայն անուն՝ որ էր նախ անուն դաշտի՝ համարիմք անցեալ յանուն գաւառի, որպէս տեսաք և յանուն շարուր դաշտի. և թէպէտ զնոյն դաշտն այրարատ ոչ համարիմք լինել արտաքոյ քան գաւառաց յիշատակելոց 'ի խորենացւոյն, այլ լինել 'ի միումն 'ի նոցանէ, (զոր օրինակ կամ 'ի մասեացոտն, և կամ յարագած ոտն,) բայց կամ յաճախ յիշատակուն 'ի գիրս անուան այրարատեան դաշտին գաւառ անուամբ, և կամ փոփոխութիւ ժամանակաց՝ անցոյց փոխանակ գաւառի: Այչափ ինչ է զոր առ այժմ կարեմք իմաստասիրել վասն անծանօթ գաւառին վաղարշապատու:

Վկայարան սբ Հռիփսիմեանց: Մովսէս Ճ. 2. կոչէ Հանգստարան, և վարդան՝ Տաճար սրբոյն Հռիփսիմեայ: Անկանի արտաքոյ վաղարշապատու. զորոյ զգիրս նշանակէ ագաթ. ՃԸ: * Կանգնեալ երիս վկայարանս, մի 'ի հիւսիսոյ յարևելից կողմանէ քաղաքին, ուր վկայեաց սանդկանն Հռիփսիմէ ԼԲ. ընկերօքն||: Շինեցին զսա՝ ամենայն բազմութիւն նորահաւատ քրիստոնէից այր և կանայք, որոց գլուխ նոյն գրիգոր: * Իսկ ինքն նոյն գրիգորիոս (ասէ ագաթ.) զկար ճարտարութեան շինողաց 'ի ձեռն առեալ, զերանելեացն վկայարանս հանգստարանացն հիմունս յօրինէր||: Իսկ ձեռօք իւրովք զմարմին սրբոյն յարկեղս ամ

փոփեալ, և խաչիւ կնքեալ՝ անդանօր զարկեղն զե-տեղէր ։

Կործանեաց զայս վկայարան շապուհ պարսից արքայ, այլ նորոգեաց մեծն սահակ ։ * Սա (տես առաղ. ե. 1. վասն սահակայ.) նորոգեաց զտաճար սրբց կուսանացն, զկործանեալն 'ի շապուհ թագաւորէ, և անգէտ տեղւոյն ոսկերացն սրբոյն հռիփսիմեայ, խնդրելով յԱյ գիտակ եղև ‖ ։ ըստ այսմ գրէ և վարդան ։

Երկրին անգամ նորոգեաց կոմիտաս կաթուղիկոս, որ յառաջին էր փակակալ նորուն վկայարանին ։ * Մեծ պատ-րիարգն մեր կոմիտաս (տես յոհ. կաթուղիկոս.) ըզ-վկայարան սրբ հռիփսիմեանցն՝ որ նախ խրթին և փոքր-ատեսակ լինի էր շինեալ, ես հրաշապէս և վայելուչ և նա-զելի և պայծառ շինուածով յարդարէր, ուր և պատա-հեալ խոկ ապա սրբ տիկնոջն հռիփսիմեայ ... կնքեալ մա-տանեաւ սրբոյն գրիգորի և սրբոյն սահակայ, ապա և մեծի հայրապետին ես կոմիտասայ ոչ համարձակեալ բանալ զնա, եդ և զիւր ես կնիքն 'ի վերայ նորա ... ապա շի-նեալ զեկեղեցին ՚որ, և անդ ամփոփեալ ժողովէ զնշխարս ՚որ տիկնոջն 'ի պատրաստեալ իւր կայանսն ‖ ։ Զայս նո-րոգութիւն արար կոմիտաս, * Քանզի խարխալեալ էր առաջին շինուած սրբոյն սահակայ ‖. տես առաղիկ ե. 2 ։

'Ի սկիզբն ԺԷ. դարուն դարձեալ քայքայեալ կայր այս տաճար. յորում ժամանակի յաւուրս մելքիսէթ կաթու-ղիկոսի 'ի ձեռն երից լատին կրօնաւորաց 'ի յայտ եկն գե-րեզման և տապան սրբոյն՝ որ գտաւ այսպիսի ։ 'Ի ներքոյ աւագ խորանի տաճարին՝ յարկ կամարակապ, կամ փոք-րիկ մատուռն գետնափոր. 'ի դետնի նոյն ընդերկրեայ մատրան՝ տապանաքար. իսկ 'ի ներքոյ տապանաքարին թաղեալ ընդ հողով բուն տապանն կամ արկղն նշխա-րաց. 'ի տաճարէ անտի դոյր ճանապարհ իջանելոյ յայս մատուռն, բայց գաղտնի առ խորանաւն որ 'ի հիւսիսա-կողմն. և դուռն նոյն ճանապարհին փակեալ կայր մի միայն վիմով 'ի կարգս վիմաց որմոյ տաճարին, զոր ոչ ոք կարող էր ճանաչել եթէ դուռն իցէ ։

Այս ամենայն երևի շինուած սրբոյն գրիգորի, և կոմի-տասայ կաթողիկոսի ։ Իբրև բացաւ տապան սրբոյն, նշխարք նորին ցրուեցան աստ և անդ. մասն ինչ 'ի սպահան, մասն ինչ անկաւ 'ի ձեռս պօղոսի վարդապետի ուրումն, որ եդ 'ի հիմունս եկեղեցւոյ քուլթափայ գեղջն մերձ 'ի նախջուան, զոր շինեաց նա ինքն յանուն հռիփսիմեայ.

մասն ինչ 'ի Կօա քաղաք Գանարա գաւառին Հնդկաց 'ի վանս կուսանաց. իսկ մեծ մասն մնաց անդէն 'ի տապանին 'ի գեղնափոր մատրանն որ 'ի մէջ տաճարին: Տես յառաջել պատմագիր:

Զայս տաճար քայքայեալ՝ նորոգեաց ապա Փիլիպպոս կաթուղիկոս, յորում ժամանակի գտին զնշխարս սրբոյն յերկս մասունս, և յերկս տեղիս համգուցեալ. զերկուսն 'ի մէջ վիմաց (1), և զմին յարկեղ 'ի գեղնափոր փոքրիկ մատրանման վայրի: Յորմն նոյն մատրան՝ յորում էր արկղն, եգիտ Առաքել՝ մակագրութիւն, ուրոյն ուրոյն գրեալ, այլ ինքն 'ի մի կարգելով բերէ այսպէս. Թղթ. 322: * Ով հրաշափառ և երջանիկ վկայ անքաւ ժանելի ծոցածնի հօր, և համազոյգ հոգւոյն կամողին ընդ ստորինս ասեմ. անոխակալ երկնաւոր փեսային հարսն. զրաբեգործակ արքայն ունող. գոլով գլուխ, միշտ և անընդհատ յաղագս ծանօթ քեզ սպասաւոր սոյն հոգւոյն: Ով սրբուհի, աղաչեմ յիշատակօղաց անուանն քոյ բարեխօսութք, և աննուաղ աղօթիւք լեր պահապան և անդիս (հիւանդիս). որով համդիսացիս ստորնոցս լինել սուրբ կոյս արագ օգնական, որ և պատսպարան եղիցիս յամենայնի յաղթօղ բարեբան: Յիշեա և զիս, զոր նուիրեցայց խնկապէս ըստ անուանս վերստին ա̃ծագործողին կամահաճոյ յարկիս. զոհն մանաւանդ որոյ շնորհօքն բաւականացայց աղաչեմ յանձն և յարանուն քեզ հանգստմէ: Յակոբ քահանայ տր կաթուղիկէ արհի եպիսկոպոսարանին: Ես Խոսրովիկ ծառայ տր հանգստի: Սուրբ ոլոգին: Ստեփաննոս‖: 'Ի մակագրութե աստ գոլով վրիպակք ինչ, ցուցանեն թէ կամ եղծեալ էր 'ի տեղիս տեղիս առ հնութե, և կամ Առաքել ոչ կարաց ճշգրիտ օրինակել: Իսկ վերջին բանն Յիշեա և զիս, ևն, կարծիս իմն բերէ այլում նորոգութե մատրան, զի զայն ցուցանեն բանքս Ս Երրորդն ա̃ծագործողին յարկիս: և թէ նորոգօղն կոչէր Յովսէփ, ակնարկելով 'ի բանսն, Նուիրեցայց ըստ անուանս յանձն և յարանուն քեզ Յովսէփ: Իսկ հետևեալ անուանք չեն յայտ, մրգեօք մի ըստ միոջէ 'ի միում վայրի գրեալ էին յորմն անդ, թէ 'ի զանազան տեղիս:

Ս Ջոյարան սէջն փոյեանէայ: Ընկանի 'ի հարաւոյ վաղար-

(1) Յայտ է 'ի բանից սդաթ. Թղթ. յլթ. յխբ. յխգ. զի ոչ մի ենթ արկղ, այլ բազմաց հարկ է դտանիլ աստէն. քանզի որպէս զորն Հռիփսիմէ, նոյնպէս և ղլդ. ընկերան յուրոյն ուրոյն արկեղս եդեալ, թաղեաց աստէն ընդ երկբաւ ոքն Գրիգոր:

շապատու ։ * Իւ զմիւսն (այսինքն զվկայարանն ասէ՝ ագաթ . 'ի ժը . ) շինեցին 'ի հարաւակողմն կուսէ անտի , ուր վկայեաց սրն գայիանէ նորուն (հռիփսիմեայ) մնացիւք ՟Է . ընկերօքն ‖ ։ Որպէս զհռիփսիմեայ՝ նոյնպէս և զտարայն շինեցին նոր հաւատացելոց բազմութիւք . իսկ թագաւորն առաւել ևս բրեր զփոս հանգստի սրբցն ընդ երկրաւ . թագուհին և քոյր թագաւորին զհողն արտաքս պեղէին . տես յագաթ . 'ի յժը ։

Ընդրէն նորոգ շինեաց եզր կաթուղիկոս (1) զորմէ յոհաննէս կաթուղիկոս ։ * Իսկ ապա հայրապետն եզր՝ զվկայարան սրբյն գայիանեայ , զոր երբեմն խրթին և մթին էր զնա շինեալ , քակեալ զայն , ևս ընդարձակագոյն և պայծառագոյն զնա շինեաց . կոփածու քարամբք և կրով զնա ձուլելով . և արտաքուստ յարդարէր կայանս բնակութե քահանայական դասուց , 'ի պաշտօն ածայնն խորանին ‖ ։

Նորոգեցաւ 'ի ժամանակս փիլիպպոսի կաթուղիկոսի . նախ քան զնորոգութի տաճարին հռիփսիմեայ . և 'ի շինելն 'ի 1652 , գտան նշխարք սրբյն գայիանեայ , և երկուց ընկերացն յերիս տապանս առ հիմամբք տաճարին ։ Նորոգութի երկոցունց տաճարացս տևեաց զամս երիս , սկսեալ 'ի 1651 . և աւարտեալ 'ի 1653 . տես յառաքել . թղթ . 321 . և 323 ։

Տաճարք սոյն կուսանացս , միանգամայն ընդ կաթուղիկէ եկեղեցւոյն վաղարշապատու՝ 'ի սկզբանէ անտի պատուեալ ուխտատեղիք 'ի մէջ ազգիս , իբր տեղիք որք եղեն աւիթք մարդասիրութե ՟այ և սքանչելեաց նորուն առ մեզ . ցուցեալք և նշանագրեալք առ յ՟այ , ամփոփեալքն 'ի նոսա անգին գանձք սրբց , և նոյն իսկ շինուածքն՝ ձեռակերտ սրբց ։ Յայսմանէ տեսանեմք զվահան մամիկոնեան զկնի յաղթութեանց և պատերազմաց իւրոց՝ հանդերձ բազմութբ նախարարաց ստէպ գնալ յուխտ , և զողորմութի և զպէտս աղքատաց անդ հատուցանել ։ * Կայր հասանէր (ասէ վասն նորա ղազար .) յԱյրարատ գաւառ , և կատարեալ զուխտ պատարագաց 'ի վաղարշա֊

(1) Թուի թէ սրն սահակ միայն զտաճար սրբյն հռիփսիմեայ նորոգեաց , և ոչ զգայիանեայ . քանզի զնոյն ցուցանէ բան ասողկայ (զոր բերաք 'ի վերոյ) , 'ի միաւորականն գնելով . Զտաճար սբյ կուսանացն , և ոչ զտաճարս ։ Իւ զյայտնութիւն նշխարաց միայն զհռիփսիմեայ պատմելով ։ Իսկ վարդ" . յանուանէ որոշէ յասելն . ՚Նորոգեաց սրն սահակ և զտաճար սրբց Հռիփսիմեանցն զաւերեալն 'ի շապհոյ ‖ ։

պատ քաղաքին հանդերձ ընդ իւր ուխտապահ նախարարօքն, և այլ զօրօքն հայոց 'ի տամն ՂԱ (ԽԱԺ զկաթողիկէն) և 'ի վկայարանս նահատակեալ կուսանացն, զուխտս պատարագաց և զամլորականն նուէրս ընծայիցն իւրոց : ||

Ἀρτάξατα : ‹Քաղաք հռչակաւոր առաւել առ մատենագիրս յունաց և հռոմայեցւոց՝ քան թէ մերոց, առ որս գրի Ἀρτάξατα, և 'ի գործ ածի 'ի բազմաւորական, իսկ 'ի միաւորականն սակաւ ուրեք, որպէս առ դաշխդոսի, զորոյ զերկու և եթ օրինակս յառաջ բերէ չէլլարիոս (1): Առ տիոնի (2) գրի Ἀρταξάτη, ըստ նշանակելոյ հարստութեան 'ի լուծմունս պլինիոսի : Առ սդրաբոնի կոչի նաև Ἀρταξιάσατα. որ առ ստեփաննոսի բիւզ." գրի Ἀρταξίασατα. * Արդաւքսադա (ասէ) քաղաք հայաստանեայց, զորմէ յիշէ սդրաբոն գիրք ԺԱ. զսա կոչեն. նաև Արդաւքսիասօդա||: Իւր պերքէլլիոս 'ի լուծմունս ստեփաննոսի իրաւամբք համարի վրիպակաւ գրեալ այսպէս, փոխանակ գրելոյ Ἀρταξιάσατα. որպէս գրի առ սդրաբոնի, յորմէ առնու ստեփաննոս (3): 'Ի յուստինիանու ագաթ. Թղթ. ԺԵ. գրի Ἀρταξερξοκέρτη : Կոչեցաւ նաև Νερώνεια, որ ոչ ուրեք 'ի գործ ածի 'ի գիրս : Զպատճառ անուանակոչութեցս տեսցես ստորև :

Դիրք նորա ըստ խորենացւոյն Բ. 46. 'ի վերայ բլրոյ, 'ի տեղւոջ անդ՝ ուրանօր մեծամօր վտակ խառնի յերասխ գետ : Սդրաբոն ԺԱ. 529. առաւել ևս ստորագրելով ասէ. * Իսկ Արդաւքսադա՝ գեղեցիկ կառուցեալ կայ առ Արդաւքսեան (4) դաշտիւ. արքայանիստ գոլով աշխարհին՝ եդեալ 'ի ցամաքակղզի պարոյր բազկիւ: Զորով պատ առնու ասէ գետն. որով խմանայ զերասխ (5). որ-

(1) Հատ. Բ. Թղթ. 329. տպ. լիպսիոյ յամի 1773 :

(2) Գիրք ԼԷ. Թղթ. 25. կամ ըստ տպ. որ 'ի համպուրգ. յամի 1750. հատ. Ա. Թղթ. 107 :

(3) Սորա անուն, կամ մանաւանդ անուն ընակչի, գտաւ և 'ի դրամ ինչ հանդերձ քանդակաւ օգոստոսի՝ նստեալ առ երասխաւ. զոր բերէ բիւրրոս լիկորիոս. այլ ընդ ստուգութե այնր տարակուսի հօլստէնիոս 'ի լուծ. ստեփ. Թղթ. 49:

(4) Չելլար. հտ. Բ. Թղթ. 329. ընթեռնու, Ἀρταξηνὸν πεδίον, այսինքն երասխեան, թէ պէտ նաև յընտիր տպ. սդրաբոնի գրի Ἀραξηνόν :

(5) Առ երասխաւ դնէ և պլին. Զ. 9. ուր 'ի թուելն զքաղաքս մեծին հայոց՝ ասէ. * 'Ի դաշտավայրս առ երասխաւ (է) Արդաքսադա||: Զնոյն ակնարկէ և տիոն հտ.. Ա. Թղթ. 107. ասելով : Եւ յն ինչ * Պոմպէոսի զգետովն երասխայ անցեալ, հուպ լինէր յԱրդաքսադէ, անդ առա տիգրանայ ինքնակամ 'ի բանակն պոմպէի աճապարեալ, յանձն առնէր նմին զքաղաքն ||: Յորմէ

ոչես դնէ 'ի վերոյ. Թողլով միայն կիրճ ինչ կամ պարանոց. իսկ այն պարանոց և ս փակեալ կայր խրամով և պատնչիւ: Այլ Թէ միաբանել կամեսցուք զպատմութիւնս ընդ խորենացւոյն՝ պարտ է ասել, Թէ ոչ մի և նոյն Երասխ գետ էր՝ որ շրջապատէր զքաղաքս. այլ առաւ Երասխ, անտի մեծամօր 'ի միասին ընԹանալով, գործէին 'ի մէջ ցամաքկղզի՝ յորում շինեալ կայր Արտաշատ:

Իսկ այսպէս արտաշատ անկանի 'ի ձախակողմն Երասխայ, գոլով մեծամօր ձախակողմեան վտակ Երասխայ հասեալ 'ի կողմանց վաղարշապատու, որ նոյնպէս է 'ի ձախակողմեան սահման Երասխայ: Զնոյն յայտ առնէ և պատմ. ղազարայ Թղթ. 250. ուր ասէ. * Զաւմինչ հազարապետն սասանիկ և բազում այրընտիր զօրօք դիմեալ անցանէր սոխպով ընդ կամուրջ գետոյն Երասխայ. և 'ի գիւղաքաղաքին որ կոչի Արտաշատ՝ բանակէր այն օր‖: Իսկ այս Ե՛կք հազարաւուխտայ էր 'ի կողմանց՝ որ անկանէր յաջակողմն Երասխայ:

Զմնէր բերդ առանձին, զոր յայտ առնէ ոմն բանից ագաԹանգեղոսի Թղթ. խԹ.* Հրամանն տայր (տրդատ վասն գրիգորի) ... խաղացուցանել զնա յայրարատ գաւառ, և տալ զնա 'ի գղեակ բերդին Արտաշատու քաղաքին‖: Նոյն ուրոյն յիշէ զբերդն, ուրոյն և զքաղաքն. և սորին Թղթ. Ծ. առաւել ևս որոշելով իմն գրէ. * Այն ոմն այրն որ բնակեալ էր 'ի բերդին յայնմիկ‖: Զնոյն յայտ առնէ և ղազար այլով իմն օրինակաւ յասելն. * Զերծեալք անկանէին 'ի բերդն Արտաշատու, որոց ոչ կարէին հասանել նախարարքն Հայոց. բայց ... հասեալք 'ի դուռն, երԹեալ պաշարէին զբերդն Արտաշատու‖: Նոր զանուանս Արտաշատ ցուցանէ լինել ոչ անուան բերդին, այլ գիւղաքաղաքին՝ որոյ էր այն բերդն. իսկ 'ի նախայիշատակեալ բանսն 'ի յիշելն զգիւղաքաղաքն, անդանօր՝ զանուանս Արտաշատ սեփականէ նմին ասելով. * 'Ի գիւղաքաղաքին որ կոչի Արտաշատ‖:

'Ի սմին բերդի էր վիրապ, որ սակս խորութեան կոչեցաւ Խոր Վիրապ. * Հրամանն տայր (ասէ ագաԹ. խԹ. վասն տրդատայ) ... իջուցանել զնա 'ի վիրապն ներքին, որ

յայտ է վրիպակն արգեալ 'ի գիրս պատմ. որ Ճ. 13. զԱրդաքսադա դնէ 'ի կարգս քաղաքաց մեծին Հայոց՝ որք անկանին առ Եփրատաւ, փոխանակ դնելոյ առ Երասխաւ, որպէս ուղղէ Սալմասիոս, կամ սոմէս:

անհնարին էր խորութեն ||: Եւ էր այն ՚ի բանտի նոյն բերդին՝ լի աղմով. *Եւ զայն ժդ. ամ (տես Թղթ. Ծ.) որ եղև գրիգորիոս ՚ի բերդի ՚ի բանտի ՚ի խոր վիրապին ... պահեալ լինէր կենդանի շնորհիւ տն լուսոյ. իսկ զայլ մարդիկ՝ որ միանգամ իջուցեալ էր անդր, ամենեքին մեռեալ էին վասն դժնդակ չարաչունչ դառնութե տեղւոյն. վասն կարակուռ աղմին օձախառն բնակութե և խորութեն. վասն չարագործաց իսկ շինեալ էր զայն տեղին, և ՚ի սպանումն մահապարտաց ամենայն հայոց (1) ||:

Ունէր արտաշատ կամուրջս ՚ի դրունս իւր, յորոց ոմանք կոչէին Տափերական. *Ոմանք ՚ի ցամաք անձապարեալ (տես ագաթ. Թղթ. Ը.) հասեալ ՚ի խելս կամրջացն առ դրունս Արտաշատ քաղաքի. զի գետն երասխ յարուցեալ գայր դարիւ և դարիւ ... կէսքն անցեալ ընդ կամուրջն վաղարշապատ քաղաքի, զոր և կամուրջ մեծամօրի կոչեն, անձապարէին հասանել յառաջ ՚ի խելս կամրջիցն Արտաշատու, ՚ի կիրճս ձմնապարհացն արգելին զնոսա. ՚ի մէջ արարեալ զնա Տափերական կամրջացն գետավէժս առնէին զնա ||: Զկամուրջն մեծամօրի՝ զոր ագաթանգեղոս յայս բանս տայ վաղարշապատու, վարդան տայ արտաշատու. քանզի զոր խորենացին Գ. 58. կոչէ կամուրջ արտաշատու, ՚ի գրելն վասն Գ. արտաւազդայ, *Անցեալ զկամրջաւն Արտաշատ քաղաքի, որսալ կինճս և իշավայրիս զակամբք Գինայ ... անկանի ՚ի խոր ինչ մեծ ||. զնոյն կոչէ վարդան յանուն մեծամօրի՝ յասելն. *՚Ի յորսս գետամօյն լինի առ կամրջօքն Մեծամօրի ||: Այլ մարթ է լինել երկու կամուրջ ՚ի վերայ մեծամօրի, մին՝ յանուն վաղարշապատու կոչեցեալ, իսկ միւսն յանուն արտաշատու:

Զկամուրջն տափերայ յիշէ և բուզանդ Գ. 12. այլ ՚ի միաւորականն Թիւ. *Անցեալ ընդ կամուրջն Տափերայ, մտեալ ՚ի քաղաքն մեծ Արտաշատ ||: Եւ ՚ի Դ. 55. *Անցուցին ընդ Տափերն կամուրջ ||:
Զվերոյիշեալ կամուրջս յագաթանգեղոսէ, համարիմ լինել արտաքոյ երասխ գետոյն. քանզի բան ագաթանգեղոսի է՝ թէ նախարարք հայոց կամեցեալ ունել զա-

(1) Այս կերակոսի գրի վասն շինեաց. ևս շինեաց զորն դրիգոր ներքևսի շինողի. *՚Ի նոյն վկայ- զարմացուցիչն տեսողաց, որ յե- տրանի և վիրապն ն֊ըյն գրիգորի տոյ աւերեցաւ ՚ի տաճկացն ||:

նակ, աճապարեցին դիմել 'ի ցամաքակողմն քաղաքին, ընդ կողմն վաղարշապատու, և ընդ կողմն մեծամօրի. իսկ ընդ կողմն երասխ գետոյն ոչ դիմեցին, զի չէր հնար անանկայ փախչել ընդ այն, սակս սաստիկ պղտորեալ գոլոյ առ լուծանելոյ ձեանց յայնմ՝ գարնան ժամանակի. և այնպէս կամուրջքն յիշատակեալք 'ի նմանէ, լինին աւտաքոյ երասխայ:

Այլ ունէր նաև 'ի վ՟ր նոյն գետոյ՝ զոր յայտ առնէ վերոգրեալ բան ղազարայ, որպէս և այս բան նորա Թղթ. 299. * Հասեալք յեզր գետոյն (երասխայ) (1). սաստկապէս ըստ ժամանակի իւրոյ պղտորութեն, և զկամուրջն Արտաշատու գտին աւերեալ. և էր ինչ որ 'ի սաստկութենէ ջուրցն դիմեցմանց ‖: Այս կործանումն կամրջին եղև յաւուրս վահանայ մամիկոնեայ: Զկամուրջն երասխայ յիշէ և հռոմայեցին դաշիդոս գիրք ԺԳ. գլ. 39. յասելն վասն քորպուլօնի. * Համարձակութի առեալ խաղալ յԱրդաքսադա 'ի մայրաքաղաք ազգին, այլ ոչ ընդ մերձաւոր ուղին աձեալ զզօրսն, զի մի վտանգ ինչ 'ի վերայ հասցէ յանցանելն կամրջաւ ընդ երասխ գետ, որ ընթանայ զպարսպաւ, անդուստ 'ի հեռուստ ընդ արձակ հունն անցեալ գնայր ‖:

Ի ժամանակս հեթանոսութե բագինն կամ մեհեան քաղաքիս յանուն անահտական դից՝ յիշատակի առ ագաթանգեղոսի յինէ. և յինը. զոր 'ի կամիլն քանդել 'ոյ լուսաւորչին, մարտեան բազմութի դիւաց ընդ քանդողս, այլ նշանաւ 'ոյ խաչին ինքնին տապալեցաւ 'ի հիմանց, և որ ինչ փայտակերտ կայր 'ի նմա հրդեհեցաւ: Իսկ նորահաւատ ժողովուրդք զմնացեալ հիմունս քանդէին, ըղձանձս նորա աղքատաց բաշխէին. * Եւ զդաստակերտսն և զապարանսն՝ քրմօքն հանդերձ և նոցունց գեանօքն

(1) Թէպէտ առ ղազարայ ոչ յիշատակի անուն Երասխայ յայս բան, բայց անտարակոյս պարտ է իմանալ զերասխ յայսմիկ բանս նորա. քանզի վահան դիմեալ էր երթալ 'ի դուին 'ի դարձի իւրում 'ի պարսկահայոց, և անցանէր առ արտաշատ քաղաքաւ զգետով, որպէս և հազարաւորութ պարսիկ (տես 'ի վեր զբանս ղազարայ) եկեալ 'ի նոյն կողմանց, և կամեցեալ պաշարել զնոյն Դուին քաղաք (յորում էր յայնժամ վահան իւրովքն,) ընդ նոյն գետ անցեալ առ արտաշատ քաղաքաւ (զոր ղազար անդէն նշանակէ յայտնի անուամբն՝ երասխ,) դիմէր 'ի վերայ Դունայ: Զնոյն հաստատէ և սաստիկ յորդութին և պղտորութն գետոյն զոր յիշէ աստէն ղազար. տես 'ի վեր զբանս ագաթանգեղոսի:

և սահմանօքն 'ի ծառայութիւն սպասաւորութեան եկեղեցւոյ նուիրէին ||։

'Ի ժամանակս քրիստոնէութեան կառուցան 'ի սմա եկեղեցիք, այլ 'ի ժամանակս Բ. յազկերտի պարսից արքայի քանդեցան. զորս վահան մամիկոնեան անդրէն շինեաց, որպէս ծանուցանէ վարդան՝ յասելն. * Իսկ վահանայ շինեալ զեկեղեցիսն արտաշատու, զաւերեալսն 'ի պարսից ||։

Շինող այսր քաղաքի՝ յայտ է 'ի պատմութենէ խորենացւոյն լինել Բ. արտաշէս արքայն մեր, որ յելս Ա. դարուն քնի, և 'ի սկիզբն երկրորդին ։ Իսկ յիշատակեն զարտաշատ մատենագիրք որք յառաջեն քան զԲ. արտաշէս, որպիսի են ստրաբոն որ էր իբր 20 ամօք զկնի քնի՝ յաւուրս տիբերեայ կայսեր, և պլինիոս որ մեռաւ յամին 79, յաւուրս տիտոսի կայսեր ։ Իսկ պատմագիրք՝ որք ժամանակակիցք են Բ. արտաշէսի, յիշեն զարտաշատ իբր 'ի վաղուց անտի շինեալ, և մայր քաղաքաց լեալ հայաստանեայց. որպիսի են դաքիտոս. (որ եղև բդեշխ յամին 97.) փլորոս (1). պլուտարքոս, և յուենալիս ։ Ի այս տարաձայնութեան յոյն և հռոմայեցի մատենագրաց (2) եթէ միաբանել կամիցիմք ընդ պատմութեան

(1) Գիրք. Դ. գլ. 5. ուր զԱրտաքսատա կոչէ Մայր քաղաքաց հայոց, իսկ որ յիշատակի գիրք. Դ. գլ. 12. անդ վրիպակաւ, կամ գրչաց՝ և կամ մանաւանդ նորին Փլորոսի (որպէս համարի խաչակ վօսսին 'ի լուծ. վէլլէյուսի գիրք. Բ.) մուծեալ է բառս Արտաքսատա փոխանակ անուանս Արտագէրս, որպէս և նշանակեցաք 'ի ստորագրութեան նոյն քաղաքի ։

(2) Երկու մատենագիրք յունաց՝ հիմնադիր արտաշատու դնեն զաննիբալ. այլ երկաքանչիւրոց ևս բանք են անղօր, առաջինն է ստր. որ Թղթ. 528. ասէ. * Քաղաքք արմենիոյ (հայաստանեայց) են Արտաքսատա, զոր և Արտաքսիասատա կոչեն, շինեալ յաննիբալայ վասն արտաքսիայ թագաւորին, նաև արքսատա երկաքանչիւր, և երկաքանչիւրքն (են) առ երասխաւ ||։ Վերջին բանն 'ի տպ. գնի. * Շինեալ յաննիբալայ վասն արտաքսիայ թագաւորին, որ խորհուրդ ետ վասն երկաքանչիւրոց ||։

Այս բան ստր''. է աղճատեալ և կրճատ, որպէս ծանուցանէ քսիլանտէր, և ամենայն տպագրօղք ստրաւոնի. յորմէ մտադինիէ համարի թէ այն վերջին բան՝ Շինեալ յաննիբալայ և այլն. է յայլուց յաւելեալ, նախ 'ի լուսանցսն՝ իբր մեկնութիւն ինչ բանից ստր''. և ապա 'ի գրչաց 'ի սկզբնագիրն անդ մուծեալ, որ խանգարէ զբանս նորա. զի վերաբերի այն և յայլ քաղաք ինչ՝ զորմէ յետոյ խօսի ստրաւոն ։

Եւ արդարև ստեփ. բիւզ. որ զբանս վասն արտաշատու առնու 'ի ստրաւոնէ, յիշէր արդեօք զշինութիւն աննիբալայ, եթէ ընթերցեալ էր զնոյն 'ի ստր. այլ ոչինչ յիշատակելով զաննիբալայ, այս մանաւանդ զշինութիւն արք

ազգին մերոյ, հարկ է հինագոյն սորա գնել զա̃ն. արտաշէս արքայն մեր արշակունի, կամ թէ զարդաքսիաս ա̃ն, որ նախ էր զօրավար մեծին անտիոքոսի. իսկ զշինութի ՟Բ. արտաշէսի՝ համարիլ նորոգութի, զորմէ ստորև։

Յետ հիմնելոյ քաղաքիս՝ առին զայն վիրք յամի տ̃ն 35. (1). իսկ 'ի 52. 'ի վերայ առին պարթևք (2). 'ի 58 (3)

տաշէսի ումեմն՝ յաւելու. * Պատմի արդաքսիոյ արքային արմենիոյ (հայոց) կառուցեալ զայս քաղաք ||։ Զայս քննութիւն իմաստասիրէ և պէլ 'ի բառարանին իւրում, այլ առանց հիման յաւելու այս ասել, թէ սդր. յիշատակեալ էր զնոյն, բայց համառօտող նորա (զոր միայն 'ի ձեռին ունիմք այժմ,) զանց արար 'ի յիշել։

Երկրորդն է պլուտարքոս՝ որ 'ի վարս լուկուլլոսի գրէ։ * Համբաւի՝ աննիբալայ կարթագինեցւոյ առ արամեանն Արդաքսիաս (թագաւոր հայոց) գնացեալ, յետ պարտելոյն անտիոքոսի 'ի հռոմայեցւոց. և նմա խորհրդատու բարեգզեաց գործոց լեալ, նաև շինութն քաղաքի 'ի վայելուչ գիրս, որ և հաճոյ եղեալ արքային, և 'ի նմանէ հայցեալ յանձն առնուլ զվերակացութի գործոյն, կառոյց անխիղտ քաղաք ընդարձակ և հոյակապ. որոյ յարքայէ զանուանակոչութի ընկալեալ, գլուխ եղև արմենիոյ ||. այսինքն հայաստանեայց։

Համբաւի ասէ պլուտ. որպէս թէ տարակուսելով ընդ իրին ճշմարտութի, որպէս քաջ ծանուցանէ չէլլար՞. և արդարև կոռնելիոս նէպոս՝ որ գրէ զողջոյն վարս աննիբալայ, ոչինչ յիշատակէ զգնալոյ նորա 'ի հայս, այլ 'ի կրետէ, անտի 'ի բիւթանիա, ուր և մեռաւ։ Յաւելու և մառգինիէ. թէ պլուտ. ընթերցեալ էր զսդրաբոն, զոր և կոչէ 'ի վկայութի 'ի գիրս իւր. արդ եթէ գրեալ էր սդր. զշինութէ աննիբալայ, ոչ արդեօք այսպէս տարակուսելով յառաջ բերէր պլուտ. զնոյն։ Տես վասն այսր 'ի չէլլար. և 'ի մառգինիէ. որոց երկոքին ևս երկբայլին վասն այսր։

Արդ՝ 'ի յերկբայելն զշինուէ աննիբալայ, ոչ զոք գտանեմք առ նախնի մատենագիրս յն՞. և հռոմ՞. շինօղ և հիմնօղ արտաշատու, բայց եթէ առ ստեփ. բիւզ. որ էր յետ Ե. դարուն, կրտսեր քան զխոր. քան թէ ժամանակակից, որ շինօղ սորա գնէ զա̃ն Արդաքսիաս թագաւոր հայոց. և զայն թէպէտ առանց ինչ որոշելոյ՝, թէ ո՞վ, և երբ. այլ յայտ է թէ՝ է նոյն Արդաքսիաս՝ զորմէ սդր. գիրք. ժա. թղթ. 528. 531. և 532. գրէ թէ սա Արդաքսիաս, ընդ նմա և զարիադրէս կամ զարիատրէս գոլով զօրավարք մեծին անտիոքոսի՝ հրամանաւ նորա տիրեցին հայաստանեայց. առաջինն կողմանց արտաշատու, իսկ երկրորդն կողմանցն սոփինոյ այսինքն ծոփաց. իսկ 'ի պարտելն անտիոքոսի, դաշնակից եղեալ ընդ հռոմայեցիս՝ զանուն ընկալան զթագաւորի. զորոց զժամանակն ուսսերիոս դնէ 188 ամօք նախ քան զթուականն քրի։

(1) Զորմէ տաշիտ. գիրք. Զ. գլ. 33։ * Վիրք զօրու ծանու յարձակին 'ի հայս, և զքաղաքն առնուն զԱրդաքսատա ||։

(2) Տաշիտ. գիրք. ԺԲ. գլ. 50։ * 'ի խաղալ անդ պարթևաց՝ առանց ինչ ճակատամարտի վանեալ վրաց, և քաղաքքն հայաստանեայց Արդաքսատա և Տիկրանոչէրտա՝ մտին ընդ լծով նոցա ||։

(3) Յայսմ ամի դնէ ուսսերիոս. այլ երնէսդոս յիւրում ապագրութե դաշիտոսի որ 'ի լիբսիա 1772. հատ. ա. թղթ. 674, դնէ յամին 59. իսկ յամի շին՞. հռոմայ 812։ Այսպէս պատմէ զայս դաշիտ.

քօրպուլոն զօրավար հռոմայեցւոց պաշարեալ, 'ի վաղու-եան աւուր եառ, անձնատուր լինելով քաղաքացւոց. և ոչ կարելով պահել՝ հրձիգ արար զայն: Նորոգեաց ապա արքայն Հայոց Տրդատ անուանեալ ըստ հռոմայեցւոց մատենագրաց՝ հրամանաւ Ներոնի կայսեր. զոր և 'ի պատիւ նորուն կոչեաց Ներոնիա (1):

Անդրէն նորոգեաց, կամ թէ ասասցուք 'ի հիմանց շինեաց Ե. Արտաշէս արքայն մեր, զորմէ այսպէս պատմէ Խորենացին Բ. 46. ըստ ձեռ. 49. * Երթեալ Արտաշիսի 'ի տեղւոջն՝ ուր խառնին Երասխ և Մեծամօր, և հաճեալ ընդ բլուրն, շինէ քաղաք յիւր անուն՝ անուանեալ Արտաշատ (2). ձեռնտու լինի նմա և Երասխ փայտիւք

Ժ՟. 41. * Հուր յԱրտաքսատա արկեալ, բնաջինջ լեալ հարթյատակ եղեն. զի ոչ (կարէին) պահել առանց մեծի պահպանութե՛ առ ընդարձակութե՛ պարսպացն. և մեր չէր այնչափ զօրութիւն՝ մինչև զզօրսն բաժանել 'ի պահպանութի (քաղաքին), և 'ի մղումն պատերազմի. իսկ թողուլ ամբողջ և առանց պահապանաց՝ ոչինչ յայնմանէ օգուտ կի՛ փառք առմանն: Անդանօր յաւելեալ սքանչելիք իբր յաստուծուստ ներգործեալ, զի որք արտաքոյքն էին (քաղաքին), մինչ 'ի տանիս պայծառացան յարեգականէ, իսկ որք ('ի ներքս) ընդ պարսպաւ փակեալք, յանկարծ մթին ամպով ծածկեալ՝ այնպէս իմն մեկնեցան 'ի լուսոյն, մինչև 'ի հակառակելոյ դիցն գոգցես 'ի կորուստ մատնեալ համարիլ ||:

Զայլաբանութիս գողթան երգոյն կարծեսցես այլայլութբ իմն գաշխդոսի ընդարձակեալ, և յարմարեալ առ մարտն քօրպուլոնի, որ 'ի հարևանցի յիշատակի առ Խոր. Բ. 46. ըստ ձեռ. 47: * Մարտ ընդ նոսա, և քաջքայումն յիշխանութեն, և սպանումն նոցա, և հրկիզութի շինուածոցն ||: Քսիֆիլինոս առանց յիշելոյ ըզհրկէզ առնելն քօրպուլոնի, կործանեաց միայն ասէ զԱրտաշատ:

(1) Քսիֆիլինոս 'ի վարս Ներոնի, ուր ասէ՝ թէ բազմութիւն արուեստաւորաց էառ Տրդատ 'ի հռովմայ վասն շինութե՛ քաղաքին. զորս ըստ մասին Ներոն ետ Տրդատայ, և ըստ մասին ինքն Տրդատ 'ի վարձու կալաւ. այլ քօրպուլոն ոչ թոյլ ետ զամենեսին տանել 'ի Հայաստան, այլ միայն զորս Ներոն էր որոշեալ: Այս նորոգութի քաղաքին եղև յաւուրս բդեշխից սուէտոնիոսի բաւլինոսի, և բոնցիոսի դէլէսինոսի՝ որոց բդեշխութի անկանի յամի տն 66. ըստ պետաւ. այլ մաուգինիէ այլազգ բերելով զհաշիւն, դնէ զնորոգութին յամին 59:

(2) Յանուն Արտաշէսի ուրուք կոչեցեալ զքաղաքն վկայէ և պլուտարքոս 'ի նախայիշատակեալ բանն իւր. այլ դաշիդ. Բ. 56. զհակառակն սորին աւանդէ 'ի գրեւն այսպիսի ինչ բան. * Ապա ձերմանիքուս 'ի քաղաքն Արտաքսատա՝ հաւանութբ նախարարաց առաջի պարառեալ բազմութեն զարքունի թագն եդ 'ի գլուխ նորա. իսկ այլոց երկրպագեալ առէին, կեցցէ արքայ Արտաքսիաս, զայն անուն տուեալ նմա յանուանէ քաղաքին ||:

Ուր իրաւամբ զարմանայ լիրսիոս 'ի լուծ". դաշիդ. ասելով, թէ բազում թագաւորք ավլին Արտաքսիաս անուամբ յառաջեցին, որով մանաւանդ յանուն նոցա կոչեցեալ պարտ էր գրել զայս Արտաքսիաս՝ որ էր յամի

մայրից. վասն որոյ անաշխատ և երագ շինեալ՝ կանգնէ 'ի նմա մեհեան, և փոխէ 'ի բագարանէ զպատկերն արտեմիդայ, և զամենայն կուռս հայրենիս. բայց զապաղոնի պատկերն արտաքոյ քաղաքին կանգնէ հուպ 'ի Ճանապարհն: Նաւ յարուցանէ 'ի քաղաքէն երուանդայ (այն է երուանդաշատ՝) զգերութի հրէից, որ փոխեալ էին անդ յարմաւիրայ. և նստուցանէ զնա յԱրտաշատ. նա և զամենայն վայելչութի քաղաքին երուանդայ՝ զոր տարեալ էր յարմաւիրայ, և զոր անդէն արարեալ նորա՝ փոխէ յԱրտաշատ. և առաւել ևս յինքենէ յօրինէ իբր զքաղաք արքայանիստ||:

Արդ հատարակ քանդեցաւ 'ի զօրաց շապհոյ պարսից արքայի՝ յաւուրս Ե. արշակայ արքայի. * Յետ այսորիկ (ասէ բուզ. դ. 55.) եկին 'ի քաղաքն մեծ յԱրտաշատ. և առին զնա, և կործանեցին զպարիսպ նորա, առին և անտի զգանձս մթերեալս որ կային, և գերեցին զամենայն քաղաքն. և խաղացուցին 'ի յԱրտաշատ քաղաքէ ի՛նն հազար տուն երդ հրէայս, զոր ածեալն էր գերի տիգրանայ արքայի արշակունոյ յերկրէն պաղեստինացւոց. և խռ. հազար երդ հայ. զոր յԱրտաշատ քաղաքէ խաղացուցին. և զամենայն շինուած քաղաքին հրձիգ արարին զփայտակերտն և զքարակերտն. քանդեցին զպարիսպն ըստ նմին օրինակի, և զամենայն շինուած քաղաքին մինչև 'ի հիմունս ապականեցին. և ոչ թողին մի, և ոչ թողին բնաւ քար 'ի քարի վերայ, անմարդի և թափուր յամենայն բնակչաց իւրոց կացուցանէին||: Տես վասն այսր և 'ի խոր. գ. 35:

Օկնի այնորիկ շինեցաւ, այլ Պ[illegible] անուամբ յիշատակի առ ղազարայ թղթ. 250. * Օ առամիհր հազարաւուխտ ... անցանէր սախալով ընդ կամուրջ գետոյն երասխայ. և 'ի գիւղաքաղաքին որ կոչի Արտաշատ՝ բանակէր այն օր||: Այն՝ որ առ ագաթանգեղոսի (1), առ բուզանդայ. և առ խորենացւոյն 'ի պատմութիս որ յառաջ քան զժամանակ իւր՝ կոչի Վ[illegible]: Իսկ եղիշէ նաև

տն 18, և ոչ յանուն քաղաքին. և նոյն իսկ քաղաքն ասէ յաւէտ ընկալաւ զիւր անուն յանուանէ միոյ ուրուք 'ի թագաւորաց, և ոչ թէ թագաւորն յանուանէ քաղաքին:

Վասն այսորիկ և յակոբոս կասնօվիոս, և մառդինիէ աղձատեալ համարելով զայս բան դաշիդոսի, ուղղէն զվերջին բան նորա այսպէս. " Զայն անուն տուեալ նմ յանուանէ շինողի քաղաքին||, կմ " 'ի շինողէ քաղաքին||:

(1) Որպէս 'ի թղթ. ձթ. գ. ղա:

'ի պատմութեանս իւրոյ ժամանակի՝ կոչէ զնոյն Է. 26. Մնագաւառանիստ քաղաք. և այլուր Է. 67. կոչէ Մեծ Արտաշատ:

Այլ յետ անդ Ը. դարուն, յաւուրս Խուզիմայ ոստիկանին, և Ժ. յովսէփ կաթուղիկոսին Պատմաչերոյ կոչի կաթողիկոսարանին որ 'ի դուին, զոր յափշտակեաց նոյն խուզիմայ 'ի կաթողիկոսէն. * Նա այսպէս (ասէ յով. կաթ.) տարապարտ զրկեալ գտանէր յԱրտաշատէն յայնմանէ և առ յապայ ||:

Յայս քաղաք գումարեցաւ ժողով ազգային 'ի մէջն անդ Ե. դարուն զորմէ ընդարձակ գրէ եղիշէ Է. Թղթ. ԺԹ. 26. եպիսկոպոսք, և բազում այլ եկեղեցական առաջնորդովք և աշխարհական իշխանօք՝ 'ի պատասխանի առնել նամակին պարսից. * Այս ամենայն (ասէ եղիշէ) եպիսկոպոսք, և բազում ևս քորեպիսկոպոսք, և պատուական երիցունք 'ի տեղեաց տեղեաց ... միահամուռ ժողովեալք 'ի թագաւորանիստ քաղաքն յԱրտաշատ՝ հաւանութեամբ մեծամեծ նախարարացն և ամենայն բազմութեան աշխարհին արարին նամակին պատասխանի ||:

Այժմ և ոչ իսկ անուանն գտանի քաղաքիս արտաշատու, այլ յանուն Խոր վիրապին իւրոյ կոչի. զորմէ տես 'ի նոր հայաստան. 257: Յեւրոպեանց գրեթէ միայն դավէռնիէ և շարտէն ճանապարհորդք են, որք զայս ծանեան. իսկ այլոց եւրոպեանց վրիպեալ 'ի պէսպէս կարծիս անկան. յորոց պօղոս ժուվ տարապարտ համարի լինել խոյ քաղաք: Օգոստինոս լիւպէն աշխարհագիր թագաւորին գաղղիոյ՝ 'ի բառարանին որ վասն տարեգրութեան ուսեբիոսի գրէ լինել թիֆլիս. ոչ մտադրելով թէ թիֆլիս է առ կուր գետով, որ է ծանօթ յոյժ նախնեաց. իսկ արտաշատ առ երասխաւ. որպէս և նա ինքն դնէ: 'Ի բառարանին մօրէրայ նախ դնի լինել թիֆլիս, ապա թաղտ որդատն. զհետ երթեալ շարտէնի՝ որ զաւերական խոր վիրապայ, և զաւերական թաղտ որդատայ 'ի մի շփոթէ. բայց թաղտ որդատայ է գառնի: Կօտրան ըստ ոմանց ասէ լինել թիֆլիս, և ըստ ոմանց երեւան. զոր մերժէ նաև մառդինիէ:

Այլ առ ոչինչ գրեմք զվրիպակս և զտատանեալ կարծիս այսց օտար ազգաց՝ որոց դժուարին է կատարեալ 'ի վերայ հասանել տեղեկութեան հեռաւոր աշխարհաց, բայց զի՞նչ ասասցուք զմերոց ոմանց մատենագրաց, որոց տարաձայնեալ 'ի նախնեաց՝ զդուին կարծեն լինել Ար-

տաշատ (1)։ Օ՛ի սարգիս վարդապետ գիտնական կոչե-
ցեալ, 'ի պատասխանիսն որ առ գրիգոր վէստասէր սախս
առաջնորդաց պահոց՝ գրէ այսպէս. *'Ի սոցա աւուրս
եղև նահատակութին սբյն սարգսի յԱրտաշատ քաղաք՝
որ այժմ կոչի Ղուկին ‖։ Որում թերևս զհետ երթեալ
և նալեանն՝ համաձայն նմին դնէ 'ի գանձ. ծան. թղթ.
241։ Նոյնպէս և յեւրոպեանց Միլֆռուա գաղղիացի
թարգմանիչ Ճառի ոսկեբերանին 'ի գովեստ լուսաւոր-
չին, 'ի լուծմունս նոյն Ճառին, որպէս է տեսանել յա-
ւարտ ժբ̃. հա. գործոց ոսկեբ. տպագրեալ 'ի մօն-
փօքօնէ։

Այլ որ առաւելն է՝ նաև առ Թովմայի արծ. գտա-
նեմք բան ինչ՝ որ զնոյն ակնարկէ. *Այլ հասեալ շաւա-
պայ արծրունոյ ամբարշտի յԱրտաշատ հանդերձ մարդ-
պանաւն, շինեն 'ի դուռն քաղաքին զորմզդական մե-
հեանն ‖. յորում վառէր հուր. իսկ սորա զնոյն որմզ-
դական մեհեանն և զկրակարան դնէ 'ի դուռն. (ուր և
էր, որպէս յայտ է 'ի բանից յոհ. կաթողիկոսի.) որով
ցուցանէ նոյն համարիլ զարտաշատ ընդ դվնայ։

Ընդ այլ իմն հին քաղաքի այսինքն ընդ վաղարշապա-
տու՝ գտանեմք զարտաշատ նոյնացուցեալ առ լըքինի,
հտ. ա̃. թղթ. 136. առեալ 'ի կալմնոսէ. այլ սուտութի
այսր յայտնի է 'ի մերոց պատմագրաց. զորոց զերկոցուն
և աշինօղս, զժամանակ շինութե, զդիրսն, զանուանսն առ-
հասարակ տարբեր դնեն 'ի միմեանց։

Արդ լինէր խնդիրն, թէ ոք առ 'ի միաբանել ըզ-
տարաձայնութի բանից խորենացւոյն (որ վասն շինութե
արտաշատու) 'ի մատենագրաց յունաց և հռոմայեցւոց,
ասէր՝ թէ Արդաքսատա յիշատակեալ 'ի գիրս նոյն օտար
ազգաց, (դէթ յայն մատենագիրս՝ որք յառաջին քան
զք̃. արտաշէս. զոր շինօղ արտաշատու ասէ լինել խոր.)
ոչ է նոյն Արտաշատ՝ զոր յիշատակեն մեր մատենագիրք,

(1) Կամ առ տգիտութե այս-
պէս համարեցան, կամ առ մեր-
ձաւորութե տեղեաց երկոցունց՝
ընդ միմեանս շփոթեցին, և կամ
թէ ասացուք վասն ոմանց,
դուցէ զդուռն անուանն առեալ
փոխանակ բլրոյ՝ որպէս և նշանա-
կէ. զարտաշատ կոչեցին դուռն,
այսինքն բլուր. սակս գոլոյ շինեալ
'ի վերայ բլրոյ։ Կամ թէ զդը-
ւաղն կամեցան ծանուցանել, որ-
պէս թէ արտաշատ էր 'ի գաւա-
ռին դունայ։ Զիարդ և իցէ առ-
նախնիս միշտ 'ի յիշատակելն զեր-
կոսին, գտանեմք որոշեալ 'ի մի-
մեանց, և՛ անուամբք, և՛ դրիւք,
և շինութեիւք։

այլ տարբեր քաղաք, և մանաւանդ Վաղարշապատ. պատճառ այսմ բերելով զայսոսիկ:

Նախ՝ զի Վաղարշապատ յառաջ քան զՎաղարշ՝ առ ժամանակօք Ստրաբոնի (1) և Պլինիոսի (որք յառաջին քան զՎաղարշ. և քան զՔ. Արտաշէս շինօղ Արտաշատու) կոչէր Ἀρτάξατα πόλις. և Ἀρταξιάσατα: Արդ՝ դիւրին էր զայսոսիկ անուանս փոխել 'ի յἈρταξατόπολιν. և 'ի Ἀρταξιασάταν. զի մանաւանդ Յունաց որպէս տեսցուք այլուր, յորս 'ի մեզ յանուանս տեղեաց, և նշանակէ քաղաք. և ապա նոյն անուանց 'ի գիրս օտար ազգաց աղաւաղանօք փոխեալ 'ի յἈρτάξατα, կամ 'ի յἈρταξιάσατα, որպէս և զἈρταξέρξην մեր փոխեալ տեսանեմք առ նոսա՝ յἈρτοξέρξασα, և յἈρταξισατα: Եւ ոչինչ է ընդդէմ թէ 'ի մեզ Արտախմէդ քաղաքն, և Վարդգէսի աւանն՝ ոչ յիշատակին Յունաց մատենագրաց, զի են և այլ քաղաքք ինչ ընտիր և սեպհական ազգիս Հայոց Յունաց մատենագրաց յառաջ բերեալ յօտար ազգաց, որք ոչ ուրեք յիշատակին 'ի գիրս մեր, որպիսի են Արգարշատն և Արշամուշատ. են և քաղաքք ինչ՝ որք Յունաց մատենագրաց և քաղաք անուամբ խառն 'ի գործ ածին 'ի գիրս մեր, որպէս Երուանդաշատն. որ 'ի գիրս Խորենացւոյն առաւել կոչի Երուանդայ քաղաք, քան թէ Երուանդաշատ:

Երկրորդ՝ դիրքն զոր նշանակէ Ստրաբոն վասն Արտաքսատու՝ ասելով, թէ էր 'ի ցամաք կղզի ինչ գործեալ յԵրասխայ, յարմարի նաև դրից Վաղարշապատու՝ զորոյ զտեղին 'ի բանից մերոց պատմագրաց, նաև յայժմեան դրից՝ տեսանեմք լինել ցամաք կղզի ինչ, գործեալ ոչ սոսկ յԵրասխայ՝ որ արդարև սուղ ինչ 'ի բացուստ անցանէ, այլ 'ի վտակաց Երասխայ՝ որք են Քասախ, Մեծամօր, և Ախաւ. զորս դիւրին էր Ստրաբոնի առնուլ փոխանակ Երասխայ՝ որպէս և առնու իսկ, դնելով զայն ցամաք կղզի Արտաշատու գործեալ միայն յԵրասխայ, զոր գործէին Երասխ և Մեծամօր 'ի միասին:

Երրորդ՝ այն տարակուսական գալուստ Աննիբաղայ առ Հայոց Թագաւոր, և շինութիւն Արտաքսատ քաղաքին 'ի նմանէ, Թուի յարմար իմն պատմութեան գալստեան Վարդ-

(1) Գիրք Ստրաբոնի կարի իմն աղճատք են և կրճատք, որպէս յայտ է հմտացելոց, սակս սակաւուց ձեռագրաց՝ որք գտանին. զի ընդ բոլոր Եւրոպա երկու միայն ձեռագիրք գտանին ամբողջք, որք և են օրինակք Նոր. իսկ մնացեալքն առ հասարակ թերատք են ըստ մասին, և այն եւս սակաւք:

գեսի 'ի Տուհաց (Թերեւս Տիւրացւոց կամ Կարթագէնեցւոց) գաւառէն առ Երուանդ Թագաւոր, և շինել նորա զԱրտիմէդ քաղաք ։ Տես զբանս Խորենացւոյն 'ի ստորագրութեն Վաղարշապատու ։

Չորրորդ՝ է ինչ 'ի դիրս Արտաքսատու Ստրաւոնի որ հակառակի դրից Արտաշատու Խորենացւոյն, և յարմարի Վաղարշապատու. զի Խորենացին դնէ զայն 'ի վերայ բլրոյ, իսկ Ստրաւոն դնէ 'ի դաշտի՝ ըստ որում էր Վաղարշապատ ։

Հինգերորդ՝ Խորենացին զպատմութիւն շինութեան Արտաշատու 'ի Բ. Արտաշիսէ կարի իմն ծիծաղելով յառաջ բերէ՝ առեալ զայն յերից զանազան աղբերաց, յՕլիւմպ կամ յՈւղիւմպ պատմագրէն, 'ի պարսից մատենից, և 'ի գողթան երգոյն՝ որպէս ինքն իսկ վկայէ յասելն (1). *[illegible] զայս մեզ ստուգապէս Ուղիւմպ քուրմ Հանեայ՝ գրող մեհենական պատմութեանց, և զայլ բազում գործս՝ զոր առնել կայ մեզ առաջի, որում և պարսից մատեանքն վկայեն, և Հայոց երգն վիպասանաց, որ է երգն գողթան ||։ Ապա իսկ և իսկ 'ի յետագայ գլուխն պատմէ զշինութիւն Արտաշատու 'ի Բ. Արտաշիսէ. ուր թէպէտ 'ի սկզբան անդ ըզգողթան երգոյն պատմութիւն միայն յիշէ, իսկ զի այն էր յայտնի Սահակայ՝ առ որ գրէր զՀայոց պատմութիւնս, այլ ինքն զկնի զնոյն պատմութիւն երգոյն հաստատէ, և զբանաստեղծութիւնն պարզէ յասելն. * Բայց յիշատակեսցուք և մեք կարճառօտիւք, և զայլաբանութիւնն ճշմարտեսցուք (2) ||։ Ո՛ որ զիա՞րդ կարէր արդեօք ճըշմարտել՝ եթէ չէր յայլուստ 'ի վերայ հասեալ ճշմարտութեան 'ի պարսից մատենից և Ուղիւմպ քրմէն ։

Արդ՝ զայսպիսի ճշմարտեալ պատմութիւն պարտ է մեզ ոչ ըստ ամենայնի ծիծաղելի համարել, եթէ զԱրտաքսատայն Ստրաւոնի նոյն առցուք ընդ Արտաշատու Խորենացւոյն. իսկ զի Խորենացին զտեղին Արտաշատու յառաջ քան զԲ. Արտաշէս ցուցանէ լինել լոկ բլուր ինչ առանց շինութեան ամենեւին, ուր նոյն Արտաշէս շինեաց քաղաք, փոխանակ ասելոյ՝ նորոգեաց ։ Գրէ և՝ թէ նոյն Բ. Արտաշէս կոչեաց զԱրտաշատ յիւր անուն, փոխանակ գրելոյ՝ թէ յանուն այլոյ ուրուք Արտաշէսի կաչէր նաև նախ քան զԲ. Արտաշէս ։

(1) Բ. 45 ։ (2) Բ. 46 ։

Այսքիկ են պատճառք՝ զորս կարէ ոք յառաջ բերել առ 'ի որոշել յերկուս քաղաքս, և այնպէս միաբանել զխորենացւոյն ընդ օտարաց։ Այլ որպէս և զիարդ կամք իցեն ընթերցողաց զայն կալցին կարծիս, քանզի առաւել իմն հետազօտութի 'ի միաբանութի այնչափ հնացեալ տարաձայնութե մատենագրաց՝ ընդ դատաստանօք է կշտամբեալ։

Գաւառ Արտաշատու անյայտ 'ի գիրս մեր, զոր համարիմ նոյնպէս լինել յայրարատեան դաշտին որպէս զվաղարշապատ՝ որ կացուցանէ իբր մասնաւոր գաւառ։ Քանզի ագաթանգեղոս՝ որպէս զվաղարշապատ, նոյնպէս և զարտաշատ դնէ (1) լինել յայրարատ գաւառ. և նոյն իսկ Արտաշատ գոլով մի յերևելի քաղաքաց, կացուցանէր առանձին գաւառ փոքր, զոր ակնարկէ բան եղիշէի (2) յասելն վասն վասակայ ։ *Եւ զՎահանդն Արտաշատու, և զԱրտաշատն ինքնին գլխովին, և զամենայն գիւղս և զաւանս որ շուրջ զնովաւ էին՝ առեալ աւերեալ և հրձիգ արարեալ‖։

Երազամոյն տեղին. կամ Երազացոյց Մեհեան։ Էր արտաքոյ արտաշատու առ ճանապարհաւն որ տանի 'յարտաշատէ 'ի վաղարշապատ (3), որ եղև առաջին 'ի կործանել ('ի ճանապարհորդութե անդ ՚ուրբն գրիգորի և տրդատայ վասն կործանման մեհենաց)։ Այս մեհեան այլ էր 'ի մեհենէն անահտայ՝ որ 'ի քաղաքի անդ արտաշատու. զի ագաթանգեղոս յայտնի դնէ Թղթ. յինէ, թէ ՚ուրբն տրդատ և գրիգոր 'ի վաղարշապատէ ելին գնալ յարտաշատ՝ առ 'ի քանդել * Զբագին անահտական դիցն, և որ (այսինքն նաև որ) Երազամոյն տեղին անուանեալ կարդայր‖։ Եւ զի 'ի ճանապարհին նախ դիպան այսմ երկրորդ մեհենին՝ նախ զայն քանդեցին, ուստի հալածեալք դիւաց 'ի նմանութի առն և ձիոյ բազմութե փախստեայ անկան յանահտայ մեհեանն որ 'ի քաղաքին յարտաշատ։

Սոյն այս մեհեան կամ բագին Երազամոյն՝ կառուցեալ 'ի Բ. արտաշիսէ, և է նոյն՝ զորմէ գրէ խորենացին (4). * Նաև զապողոնի պատկերն արտաքոյ քաղաքին (առ-

(1) Թղթ. խԹ։ (2) Թղթ. 78։ (3) Զայս ճանապարհ յիշէ ագաթ. 'ի Թղթ. Ձ. յասելն վասն հռիփսիմեայ. * Ինքն անցանէր հարուստ մի 'ի քաղաքէն (վաղարշապատու) 'ի կողմն մի հիւսիսոյ 'ի տեղի մի յօրևելս կոյս, 'ի սարաւանդակի 'ի բարձրաւանդակ աւազին տեղի մի մօտ 'ի բուն պողոտային՝ որ երթայր յԱրտաշատ քաղաք ‖։ (4) Բ. 46։

տաշատու) կանգնէ հուպ 'ի Ճանապարհն ||: *Անգի և ագաթանգեղոս թէպէտ ոչ կոչէ զմեհեանն յանուն աստղոնի, այլ աստ նիլին զայն անուանս՝ որք յայտ առնեն զաստղոն. զի ասէ թղթ. յիր. *Նախադիպեալ 'ի Ճանապարհի երազացոյց երազընդհան պաշտաման արի (1) դից դպրի գիտութե քրմաց, անուանեալ Տիւրեան դրչի որմզդի ուսմանն Ճարտարութեան մեհեան. նախ 'ի նա ձեռն արկեալ՝ քակեալ, այրեցեալ, աւերեալ քանդէին ||:

Արդ ըստ հեթանոսաց՝ աստղոն որդի որմզդի կամ դիտոսի է զօրէ բանաստեղծութե, երաժշտութե, և Ճարտասանութե, ընդ որոյ հովանաւորութեն էին մուզայք դիք գիտութեց. և 'ի մէջ ամենայն դից զոլով գերագոյն յարուեստի գուշակութե ապագայից աստղոն՝ պատգամատեղիք յանուն նորա էին բազում յոյժ 'ի մէջ հեթանոսաց. վասն որոյ և 'ի յունականն ագաթանգեղոսի յայտնի կոչի այս մեհեան՝ Ապողոնի տաճար:

Արմաւիր: (2) Զանուն սորա 'ի մէջ օտարազգի մատենագրաց մի միայն առ պտղոմեայ գտանեմք յստակագոյն հնչմամբ քան զայլ բազում քաղաքս հայաստանեայց. առ որում է. 13. դրի. Արմաւիրա, և ըստ բալադինեան օրինակի՝ Արմաւուրիա:

Մի է 'ի հնագոյն քաղաքաց աշխարհի, և առաջին արքայանիստ 'ի մէջ հայաստանեայց, զի 'ի սմա եղեն ոչ միայն բնակարանք առաջին նահապետաց բազմաց, այլ նաև արքունիք նախնի թագաւորաց մերոց: Շինեաց զսա արմայիս նահապետ թոռն հայկայ որդի արմենակայ: * Որդի նորա արմայիս (ասէ խոր. ա. 11.) շինէ իւր տուն բնակութե 'ի վերայ ոստոյ միոյ՝ առ եզերբ գետոյն, և անուանէ զնա յիւր անուն Արմաւիր ||(3):

Գետ անուամբ պարտ է իմանալ յայս բան խորենաց

(1) 'Ի ձեռ. գրի պաշտամանարի:

(2) Այս անուն 'ի հոլովմունս իւր յերկուս նորագիր ձեռ." խոր. գրի տառիւս ո: * Երուանդայ շինեալ զքաղաքն իւր, և փոխեալ անդր զամենայն ինչ յԱրմաւիրայ ||. բ. 37: * Յարուցանէ 'ի քաղաքէն երուանդայ զգերութիւն հրէիցն, որ փոխեալ էին անդ յԱրմաւիրայ. և նստուցանէ զնոսա յարտաշատ. նաև զամենայն վայելչութիւն քաղաքին երուանդայ՝ զոր տարեալ էր յԱրմաւիրայ ||. բ. 48: Այլ 'ի տպ. և 'ի միում ձեռ. միշտ գրի յԱրմաւիրայ:

(3) Յայտ է թէ աղաւաղեալ է անունս Արմաւիր. որ տարբերի հնչմամբ յանուանէս Արմայիս. թէ և ընդ շրջէրայ 'ի գանձն արամեան լեզուին թղթ. 15. ստուգաբանեսցուք Արմայիսի իւիւր գործ. կամ շինուածք:

ւոյն զերասխ. որպէս իսկ և իսկ հետևեալ բանք նորին ծանուցանեն. իսկ ոստ անուամբ իմանայ խորենացին զլուր՝ ա͞ռ որում յայտնի անուամբ կոչէ ͞Բ. Կ. յասելն վասն վաղարշակայ. * Հասանէ 'ի միջոց աշխարհիս՝ վերագոյն քան զակունս մօրին մեծի յափն երասխայ, մօտ յԱրմաւիրն որ ասի Լուր։ Նոյ ͞Բ. 36. * 'Ի սորա աւուրս փոխին արքունիքն յԱրմաւիրն անուանեալ Լուրոյն։ Նոյ այսպէս Արմաւիր էր կառուցեալ 'ի վերայ բլրոյ, յորմէ երբեմն արմաւիրն կոչէր բլուր. և երբեմն բլուրն՝ արմաւիր, որպէս ակնարկեն բանք խորենացւոյն. և էր առ երասխաւ, և ոչ առ եփրատաւ՝ որպէս վրիպակաւ սպրդեալ է 'ի բանս պտղոմեայ։

Աստանօր արամանեակ նախ քան զշինութ͞ի քաղաքին տնկեալ կամ սեփհականեալ ունէր անտառ սօսեաց, որ առ հեթանոսս էանց 'ի պաշտամունս կրօնի, մինչև նմին ձօնել զանձինս, և 'ի շարժմանց տերևոյն հմայել, որպէս գրէ խորենացին. ա͞ռ. 19. վասն անուշաւանայ. * Ձօնեալ էր ըստ պաշտամանց 'ի սօսին (1) արամանեկայ որ յԱրմաւիր, զորոյ զսաղարթուցն սօսաւիւն ըստ հանդարտ և կամ սաստիկ շնչելոյ օդոյն ևեթ ոստոց շարժումն՝ սովորեցան 'ի հմայս աշխարհիս հայկազանց. և այս բազում ժամանակս։

Արքունիք մերոց թագաւորաց էին յԱրմաւիր մինչև ցերուանդ ͞Բ. թէպէտ ոչ ամենայն թագաւորք նստան աստ, որպէս յայտ է 'ի վաղարշակ՝ որ նստաւ 'ի մծբին, յարտաշար՝ որ նստաւ յեդեսիա, իսկ երուանդ ͞Բ. փոխեաց զարքունիսն յերուանդաշատ, վասն պատճառին՝ զորմէ պատմէ խորենացին ͞Բ. 36. * Քանզի էր հեռացեալ (ասէ) գետն երասխ (յարմաւիրայ), և 'ի յերկարել ձմերայնոյն՝ և 'ի դառնահոտ հնչմանէ հիւսիսոյ՝ պաղացեալ ձուլեալ վտակն, ոչ ուստեք արբուցումն բաւական թագաւորականին գտանէր տեղւոյ. ընդ որ նեղեալ երուանդայ՝ նմա և ամրագունի ևս տեղւոյ եղեալ 'ի խնդիր, փոխէ զարքունիսն յարևմուտս կոյս։ Ընդ ար-

(1) Այս է հնագոյն յիշատակութ͞ի 'ի գիրս՝ նուիրեալ կամ սրբազան անտառի, որ բազմացեալ էր յոյժ 'ի մէջ հեթանոսաց, և 'ի գործ ածիւր յառաջին այն ժամանակս՝ փոխանակ տաճարի։ Եւ լինի առաւել հին քան զսրբազան անտառն տնկեալ յաբրահամէ յանուն յաւիտենականին ա͞յ. ծննդ. ի͞ա. 33, եդեալ թէ սոյն այս անտառ արմաւիրոյ՝ էր տնկեալ կամ նուիրեալ 'ի նոյն ինքն յարամանեկայ, որպէս ակնարկեն բանք խորենացւոյն։

քունեաց փոխեաց յարմաւիրայ՝ նաև զհրեայս, և զամենայն վայելչութի. տես 'ի խոր. Բ. 46 ։

Բայց շինուածք արքունեաց կային անդէն մինչև յաւուրս Բ. արշակայ, յորոյ աւուրս զարմաւիր կոչէ խորենացին Գ. 31. լքեալ արքունիք ։

Գաւառ սորա անյայտ 'ի գիրս, միայն գիտեմք մերձաւոր լեալ դրիւք յարշարունիս, որպէս ծանուցանեն նախագրեալ բանք խորենացւոյն, զերուանդաշատ քաղաք արշարունեաց գնելով յարևմտից արմաւիրայ. և որպէս մեզ թուի՝ անկանի արմաւիր 'ի նոյն առանձին յայրարատ գաւառ, յորում անկանին և արտաշատ և վաղարշապատ ։ Տես զՄիւրմէլի 'ի նոր հայաստան. Թղթ. 260 ։

ԲՆՋԻՆ. կամ ԱՐԴԵԱՆ։ Յիշատակի առ բուզանդայ. Ե. 6. *Ամ հասուցանէր 'ի գաւառն այրարատու, 'ի մեծ գիւղն Բնջին արքունի՝ որում Արդեանան կոչէին ։

ԱՐԱԾ։ Գիւղ՝ զոր յիշատակէ եղիշէ Թղթ. 181. յասեն. *Ամուքել երէց յայրարատոյ 'ի գեղջէ յԱրածոյ. աբրահամ սարկաւագ 'ի նմին գեղջէ ։ Յիշէ և ղազար Թղթ. 147 ։

ԱՐԿՈՒԼԻ ։ Զայսմանէ ղազար փարպ. Թղթ. 162. *Խոսրէն երէց, որ էր 'ի գաւառէն այրարատու, 'ի գեղջէն՝ որում անուն էր Արկուլի ։

ԲԼՈՒՐ. կամ ԼԵՌՆ ԳԻՆՈՅ։ Յիշատակի 'ի Թովմայէ արծր. Ե. 9. յերկրորդ վարս գագկայ, ուր յետ գրելոյ զնմանէ. *Ամաղաղակի հասանէ 'ի դուռն դունայ (1) յեզր գետոյն երասխայ՝ հանդէպ վիրապին 'որյն, յորմէ ելեալ մեծն 'որն գրիգորիոս լուսաւորեաց զհայաստան աշխարհս ։ 'Ի վերայ բերէ. *Իսկ այլազգին ( բռնաւորն արաբացի որ 'ի դւին՝ ) իբրև ետես զբանակ արքային մեծի սփռեալ առ լերամբն Գինոյ կոչեցեալ Բլեր, որ արդարև անուն բլրակին մարգարէաբար (գինւոյ կոչեցեալ), իբրու յանապակ Գինոյ զմայլեալ՝ ուրախ արար զարքայ յիւրումն սահմանեալ վայրի. որ թէպէտ և 'ի բարձանց առեալ զ շնորհ յաղթութեն բարեխօսութբ 'որբ լուսաւորչին ... սակայն և բլուրն շնորհս ունելով ոչ ունայնանայ 'ի գովեստից ասոր պատմութեցս ։

Իւ զկնի պատմելով զպատերազմն՝ ասէ. *'Ի վերին

(1) 'Ի դուռն դունայ՝ ասելով ղաքին, այլ զսահման դունայ, Թովմայի, ոչ իմանայ զդուռն քա. կամ զդաշտն դունայ ։

օղնականութեա՛ն զօրացեալ լինէր արքայ իւրականն զօրօք, մանաւանդ զի և որ Հայրապետն Հայոց մեծն Եղիսէ եղեալ ՚ի կատարս բլրին Գինոյ համդերձ քահանայական դասուքն համագոյն ոգին Ներսեսի անխոնարհելի ունելով զձեռս, մինչև պարտեցաւ երկրորդն Ամաղէկ ‖ :

Զտեղի պատերազմին՝ որպէս և զԲլուրն գինւոյ ցուցանեն բանք Թովմայի՝ լինել յարևմուտս Հարաւոյ Արտաշատու և Դունայ, յայսկոյս Երասխայ, քանզի ասէ անդանօր. * Այլ լինքն արքայ աճապարեալ անցանէ ընդ գետն Երասխ՝ կամելով հրձիգ առնել զքաղաքն ծագէ ՚ի ծագ, և զաշխարհն շուրջանակի. մինչև ծերք քաղաքին անկեալ առ ոտս նորա խնդրեն զխաղաղութիւն տալով հարկս և պատանդս : Զոր առեալ արքային՝ դառնայ խաղաղութեամբ յամուրն Գառնոյ ‖. որ էր ՚ի կողմ գաւառի :

Ասողիկ կրկին ապացոյց բանից մերոց, առաջինն Անցանել գագկայ զԵրասխ գետ, այրել զդուին յետ պատերազմին կատարման. երկրորդն՝ դիրք կոգովտի և գաւռունից ուստի դիմեացն գագիկ ՚ի վերայ արաբացի բռնաւորին որ ՚ի դուին, և եկեալ բանակեցաւ յեզր Երասխայ առ ստորոտով Բլրոյն գինոյ : Այլ թէ յոր ՚ի գաւառաց այրարատոյ անկանիցի Բլուրդ յԵրասխաձոր, կամ յոտն մասեաց, չունիմք ինչ ասել հաւաստի :

Վաւակերտ : և Ջռաձոր Հարք : Աւանք են դաստակերտք տան կաթողիկոսարանին, և որպէս թուի՝ ոչինչ հեռի ՚ի դուին քաղաքէ, և յարտաշատու : Զորոց գրէ յոհաննէս կաթողիկոս՝ թէ յաւուրս Ը. յովսէփայ կաթուղիկոսի ՚ի սկիզբն Թ. դարուն, կամ ՚ի վերջն ութերորդին՝ * Ոստիկան ոմն խուզիմա անուն եկեալ ՚ի դուին քաղաք.. և տեսեալ զգեղեցկութիւն մեծամեծ դաստակերտին տան կաթողիկոսարանին՝ զարտաշատն և զՎաւակերտն և ըզՋռաձոր մարդ հանդերձ նոցունց ագարակօք ‖ :

Պատմէ ապա զգործս խուզիմայի եթէ զմարդ բռնութբ զհետ եղև յինքն կորզել զդաստակերտն : Բայց հայրապետն ասէ. * Խաղում պնդութիւն և անբեկիւղաբար երկս աշխատանաց յառեանի ուղղոց ցուցանէր. (և) Հազիւ ուրեք միայն զդաստակերտն Վաւակերտ, և զՋռաձոր մարդ Թափէր ՚ի ձեռաց ոստիկանին չարի ‖ : Զգիրս Վաւակերտն աւանի յիշէ ստորև նոյն յովհաննէս կաթողիկոս՝ յասելն. * Բանակ նոցա նստէր առ

եղերբ Հուրազդան գետոյ, հանդէպ դաստակերտին Կյա-ւակերտի ։

Օշական ։ Սանք (1) յիշատակեալ ՚ի սամուէլէ, ՚ի կիրակոսէ, և ՚ի վարդանայ. որ թուի լինել յայրարատեան նահանգի ՚ի սահմանս անւոյ, թէպէտ և մատենագիրք ՚ի յիշելն ոչ ինչ որոշեն զգաւառն ։ ՚Ի ժա. դարու ՚ի վեսան սարգսէ պարսպեալ ՚ի բերդ փոխարկեցաւ. ըստ որում գրէ սամուէլ. * Նաև զՕշական վանքն բերդ-արարեալ՝ պարսպեալ հաստահեղյս բլգամբք. յորում և ընդ սբյ խորամարդ տաճարին կանգնելոյ ( յանուն ) սբ. գէորգայ՝ շինէ այլ երկու յարակիցս գմբեթաւորս զոր յովհաննէս և զոր սեքենոս ( կամ ըստ այլ օրին՝. սե-քենոս) ։ Զորոյ զբանս համառօտելով կիրակոսի, այս-պէս՚ի մէջ բերէ. * Զ Օշական վանքն բերդ արարեալ պարսպեաց ամրագոյն, և եկեղեցիս շինեաց փառաւոր ՚ի նմա ։

Զկրկին անգամ առումն բերդիս նշանակէ վարդան ՚ի պատմութե . * ՚Ի նոյն աւուրս (այսինքն ՚ի ոհզ. թուին) առաւ Օշական ՚ի գողոց հրամանաւ զարաչա ամի-րային կեչլորոյ՝ որ վաճառեաց զնա խղըլ ասլանայ ընդ բազում ոսկւոյ ։ Իսկ այլոցր գրէ . * ՚Ի ոշա. թվին խա-ռաչայն որ էառ զՕշաքար (2), և խորտակեաց կռանաւ զխաչն Գէորգայ կոչեցեալ, անկեալ ՚ի սիրտ նորա արհա-ւիրք երկիւղի՝ թողու յանկարծակի զատոն իւր զկեչլոր, և զուխթիմն, և զամենայն ձորն երասխայ ։ ՚Ի բանից ասաի վարդանայ դիւրաւ իմանամք եթէ՝ ոչ ինչ հեռի էր Օշաքար ՚ի մերձ նշանակեալ տեղեացն ։

Այլ թերևս բացայայտ ևս ցուցանէ այլոցր զՕշա-ռաքար լինել ՚ի սահմանս այրարատոյ, յասելն. * ՚Ի ոչէ. թվին առին անեցիք զՕշառաքար զՀայրենիս տն բարոզի ( եպիսկոպոսին անւոյ ), յանխնայ կոտորելով զորս անդ-բաց ՚ի կանանց և ՚ի մանկտոյ . զոր լուեալ ալիշէրն ամի-րայն դունայ՝ ժողէր զմորուս, և սեաւ զգենոյր ՚ի վերայ կնոջն և որդեացն որ անդ, և ՚ի վերայ զօրացն կոտո-րմանն ։

Աշտէ ։ Ըստ վարդանայ աշխարհագրի գրի Աշտէ .

(1) Եւ առ վարդանայ աշխարհ. փոր վանքն. ուր կայ գերեզման հայրի յիշատակի այս տեղի ձեռ+ խաչատուր վարդապետին կեչա-ռնուամբ, ուր ասի. * Անդ. կ̃ ռացի ։
( այսինքն յայրարատ ) կեչլոր . (2) Ըստ այլ օրինակաց Օշա-քաղաքն, և Օշառաքարի վիմա- ռաքար ։

*’Ի միւս կողմանէ (արագած լերին է) երկիրն Վրաց բրդ, ուր կան ՚ոք ուխտքն Սաղմոսավանք, և ՚ոք անապատն Հրեշտակարնակ, ուր կայ ՚ոք նշանն արագածոյ... Եւս և Յովհաննավանքն... և Գեղերդավանքն.. և Գօշավանքն.. այլ և Խաչիվանքն: Եւս և գեօղն Սուրբի Սբ գէորգ.. և այլ բազում վանորայք ‖: Գրի ուրեք առ Թովմայի մեծոփ. և ’ի սեռականն Արարատ: * Աշխն յերկիրն այրարատեան և Արագու, և յերկիրն կուտէից (այսինքն է՝ կոտայից) ‖:

Ո այս տեղի Թէպէտ յետին դարու յիշատակագիրք (1) երևին դնել ’ի գաւառին որ ’ի հնումն կոչէր Ոստն արագածու, այլ քանզի սահմանք և տարածութիւք գաւառաց ոչ միշտ նոյնպէս մնացին, յայն սակս ոչ համարձակեցաք կարգել անդանօր, քանզի և մեծոփեցոյն բանք անորոշ են, և միայն ակնարկեն լինել յայրարատ: Տես զհամանուն գիւղ ’ի Նոր հայաստան. Թղթ. 255:

Յովհաննու վանք. և Սաղմոսավանք: Յիշատակին ’ի կիրակոսէ ’ի գլ. ժը. ’ի կարգի երևելի վանորէից. * Նշ-գլխաւոր վանորայքն՝ սանահնին, և գետիկ, և հաւարծին, և կեչառուս, և հաւուց Թառ, և այրի վանք, և Յոհաննու վանք, և Սաղմոսավանք, և հոռոմոսի վանք, և որ շուրջ զնոքօք ‖: Որք զՅոհաննու վանսն դնելով ’ի կարգ վերջնոցն՝ յայտնի ցուցանէ լինել այնմ յայրարատ. որոց և այժմեան տեղիք՝ ոլք մինչև ցայժմ կան, յայտնի զայս հաստատեն: Տես յառաջեւ Թղթ. 79. և 302. և ’ի Նոր հայաստան Թղթ. 255:

Ռո Թովմայի մեծոփ. ’ի ժողովն էջմիածնի յամին 1446. յիշատակի * Կարապետ եպիսկոպոս Յովհաննու վանից ‖:

ԱՆԲԵՐԴ. գրի ուրեք և ՅԱՆԲԵՐԴ. իսկ առ գրիգորի մագիստրոսի. Թղթ. ԽԹ. յԱՆԲԵՐԴ: Յիշատակի առ միջին և յետին դարու մատենագիրս, յորոց վարդան. * ’Ի նիդԹևին (ասէ) մեռաւ գագիկ, տուեալ զԹագաւորութիւն երից որդոց իւրոց.. (և) զԹագն տայ յովհաննիսի. զանի և զշիրակ, զոր գրիգոր ձորոյն աշոցաց, և զԱնբերդ,

(1) Զբանս զաքարիայի եպիսկոպոսի ամատունեաց տես յԱՆբերդ: Իսկ բանք առաքելի ’ի Թղթ. 344 պատմութեն իւրոյ յայտնի են. զի դնէ զգիւղն Կարբի, ’ ’ի ստորոտս արագածլերին‖: Բայց և նա ինքն առաքել Թղթ, 79. ըստ օրինակի մեծոփեցոյն. և զաքարիայի Գաւառ կամ Երկիր անուանէ, յասէլն. Զգաւառն Կոտէս:

և զդաշտն այրարատեան ‖ ։ Նաև կիրակոս՝ վասն իշխանացն զաքարեայ և իւանէի՝ առին առէ 'ի պարսից և 'ի տաճկաց * Զբջնի քաղաք, և զդվին, և զՆորբերդ, և զամբ ‖ ։ Զնոյն գրէ և վարդան վասն նոցին իշխանաց, թէ * Նաւ ('ի) ոխե (թուէն) առին զՆորբերդ ‖ ։

Յիշէ կիրակոս և զՄխիթարիչ եպիսկոպոս Նորբերդայ. Իսկ զաքարիա եպիսկոպոս առաջնորդ ամառոտնեաց 'ի յիշատակարանին իւրում զկարբի և զամբերդ մի և նոյն գաւառ երևի դնել, և զնոյն 'ի ստորոտս արագածոյ, յասելն. * Ընչինս ես .. զաքարիա 'ի տանէս արարատեան .. Առաջնորդ ամառոտնեաց 'սբյ կարապետոյն՝ որ 'ի Ստորոտս Արագածու, և 'ի գաւառիս Կարբոյ և Յամբերդոյ ‖ ։

Կէչրոր (1) ։ Քաղաք՝ զոր վարդան աշխարհագիր դնէ յայրարատ, զնոյն ցուցանէ և բանք վարդանայ պատմագրի, զորս եդաք 'ի վերոյ 'ի Ծուաքար. տես անդ ։ Ի ժԸ. դարուն տիրէին սմա այլազգի ամիրայք՝ որպէս յայտ է 'ի վերոյիշեալ բանից վարդանայ ։

Ի սահմանս սորին քաղաքի երևի լինել և հռչակաւոր վանքն Կէչառուս, ուսումն էր մեծանուն վարդապետին Խաչատուր՝ որ մականուամբ Կէչառեցի կոչի ։ Կիրակոս ուրեք ուրեք յիշատակէ զառաջնորդս Կէչառուացն զԳրիգոր և զՆերսէս, որք մի զկնի միոյ առաջնորդ կացին Կէչառուացն. և այլուր՝ ընդ գլխաւոր վանորայս թուէ և զԿէչառուս ։ տես զբանս նորա 'ի վերոյ 'ի բանն Յոհաննու վանք և Սաղմոսավանք ։ Յիշատակէ և վարդան 'ի գրելն զմահ գրիգորի իշխանի որդւոյ վասակայ թուին ապիրատի՝ թէ * Տարեալ թաղեցին զնա 'ի Կէչառուս ‖ ։

(1) Առ վարդանայ աշխարհագրի գրի, Բէչրոր. տես զբանս նորա 'ի վերլուծ. ծուաքարին ։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Տեղիք Մեծին Հայոց՝ որոց գաւառք կամ նահանգք անծանօթք ։

Աբեղ ։ Տեղի՝ յիշատակեալ յասողկայ Գ. 36. ուր պատմէ զերկրաշարժն որ եղև առ Խուրովք ժամանակօք յաշխարհն չորրորդ հայոց. * Շարժեցաւ երկիր, բայց սաստկագոյն աշխարհն չորրորդ Հայոց, Հաշտեանք, Խորձեան, Ծոփք, Բալու, և պաղնատուն, և բոլորովին փլան շինուածք ամենայն 'ի հիմանէ դղրդեալք ... և բերդն Բալու համդերձ շինուածովն, և քարն ևս փլուզանիւր, խարխալեալ ճապաղաջուր բերդին դկլաթայ և Աթթախայ, և ամթայ ||։

Ածգանական ։ Յիշատակէ Խորենացին. Ա. 30. (բստ այլ. 29.) յասելն. * Իսկ 'ի միւս կողմանէ գետոյն՝ զբոլոր դաշտն, որոյ գլուխն Ածգանական, մինչև ցայն իսկ ամուրն Նախջաւանու || Թուի դնել 'ի գաւառին Նախջաւանու ։

Ալէ ։ Տեղի որ յիշատակի յայսմաւուրս 'ի Խթ. Հոկտ. յիշէ և Խորենացին Բ. 50. բայց առանց որոշելոյ զգաւառն ։

Ախուեան ։ Գիւղ՝ զոր յիշատակէ յովհաննէս կաթողիկոս 'ի պատմելն զառաջին յարձակմանէ Բ. աշոտոյ արքայի 'ի վերայ սահակայ աներոյ իւրոյ՝ որ էր իշխան գարդմանայ, զի ասէ. * Արկաքանչիւրք նոքա զօրաժողով լինէին 'ի մարտ ընդ միմեանս պատրաստեալ, և այնուհետև հասեալք 'ի մի վայր 'ի գեօղն Ախուեանս ճակատս ռազմի մարտկաց ընդդէմ միմեանց պատրաստէին ||։

Ածանայ ջուր ։ Տեղի՝ որ թուի լինել 'ի վասպուրական աշխարհի մերձ 'ի ոստանիս, զոր յիշէ Թովմա արծրունի, յասելն. * Առեալ ածեն 'ի տեղի վաճառուն ոստանին ուստանեաց՝ արկեալ տուռունս 'ի պարանոցս՝ հանեն ընդ սուր, և անտի գնացեալ 'ի Ձորն Ածանայ 'ի խնդիր փախստէիցն ||։

Աշտարակ, կամ Աշտակ ։ Տեղի՝ զոր յովհաննէս կաթողի-

ղիկոս ցուցանէ լինել 'ի գաւառին տաշրաց, զի ասէ վասն Է. աշոտոյ արքայի. * Եւ ապա անտի (այսինքն 'ի մայրաքաղաքէն վրաց տփխեաց) առեալ զօր և զկապուտ բազում, դառնայ 'ի գաւառն տաշրաց. և լուեալ եթէ զօր իսմայելեան զօղեալ նստեալ դադարեալ կայ յամուր խորաձորս Աղստևոյ, և յայնուհետև անձնընտիր զզօրս իւր արարեալ իբրև արս Ռ, և ... տուեալ անհնարին մարտ քաջութեան՝ առհասարակ զնոսա սրոյ ճարակ տայր. և առեալ զկապուտ կողոպուտն դառնայր 'ի բանակն իւր‖: Իսկ ասողիկ Գ. 45. յիշատակէ զնոյն՝ գաւառ անուամբ, յասելն վասն Ա. գագկայ արքայի բագրատունւոյ. * Գնաց զօրօք 'ի տաշիր՝ շրջան առեալ ընդ շամշուղէ և ընդ վրաց դաշտ՝ քանդեալ աւերեաց զամենայն ... և Ը գագ բերդ անցանելով եւ նա 'ի գաւառն Աղստև‖: 'Ի պատմ. օրբէլ. գլ. Է. Թղթ. 28. գրի Աղստաւ:

Աղխաբունից գետոյ: Այսր էր Ա. աբրահամ կաթուղիկոս, որպէս աւանդի առ յովհաննու կաթ. որ գրէ. * Այս կարգէ (սմբատ) 'ի վերակացութիւն հայոց զաբրահամ ըռըշտունեաց եպիսկոպոս 'ի գեղջէ Աղբաթանից‖: Նոյն յովհաննէս կաթ. 'ի գաւազանագիրս կաթուղիկոսաց թուի դնել զնոյն 'ի ռշտունիս՝ զի ասէ. * Տէր աբրահամ 'ի ռշտունեաց, 'ի գեղջէ Աղբաթանից‖: Նոյնպէս դնէ և ասողիկ Բ. 2. * Տր աբրահամ 'ի գաւառէ ըռըշտունեաց, 'ի գեղջէ Աղբաթանից‖:

Աղէ: Գիւղ յիշատակեալ 'ի Թովմայէ մեծոփեցոյ: * Զագաթա պարոն մի 'ի բերդէն բասենու եկն ԳՃ. մարդով 'ի գեղն Աղի‖: Թուի լինել 'ի կողմանս արճիշոյ: Ոչ այս գիւղ 'ի գերութիւն վարեաց նոյն ինքն չաղաթայն՝ ըստ գրելոյ նորին Թովմայի: Յիշէ և այլուր յասելն. * Եւ իէ. գերի 'ի գեղէ Աղոյ՝ որ մերձ էին մեզ (այսինքն վանացն մեծոփայ, և երկրին արճիշու)‖: Եւ տորև յիշատակէ զԳորդի * Մելիքն Աղոյ տանուտէրն‖:

Աղեր գետ, և Հուաճէն Աղեր: Յիշատակի 'ի լաստիվերտացոյն 'ի գլ. ԺԲ. 'ի գրելն վասն իւանէի որդւոյ լիպարտին, * Որում տուեալ էին 'ի պարգև տեղիս բնակութե զմեծ աւանն Արծղայ 'ի գաւառն հաշտենից, և որ շուրջ զնովաւ դաստակերտք: Սա իբրև լուաւ զայն՝ թէ թագաւորութին (յունաց) յերկուս բաժանեալ է, գնաց և խաբանօք էառ զամուրն Աղանց բերդ կոչեցեալ ('ի տարօն), և արարեալ զայն ընդ իւրով ձեռամբ՝ դառնայ անդրէն 'ի գաւառն Աղեր, և յամուրն որ կոչի

Հաւաձիչ (1), և բարեկամաբար ել քաղաքն ընդ առաջ նորա, և դատաւորն ... որ յայնմ հանդիպեցաւ. զոր իբրև ետես՝ վաղվաղակի ունել հրամայեաց, և ... եդ 'ի յԱրղնուտն 'ի բանդի, և ինքն փոյթընդփոյթ չոգաւ 'ի վերայ ամուր քաղաքին կարնայ: Եւ 'ի գլ. ՃԱ. վասն վասլի կայսեր. * Թագաւորն անցեալ (յեկեղեաց գաւառէ) յաշխարհն Աղօրի, մերձ յամուրն որ Հաւաձիչն կոչի:

Աղուանից բերդ, և Ողական գիւղ: Յիշատակի առ Թովմայի մեծոփ: * Իսկ սքանդար որ նստաւ Թագաւոր 'ի Թարվէզ շահստանին, պ՛ա. Թվականին եկեալ զօրօք իւրովք 'ի վերայ խլաթայ, և առեալ զերկիրն զամենայն, նստաւ 'ի վերայ բերդին Աղուանից, և .. առին զնա, և սուր եդեալ 'ի վերայ քրիստոնէից ՃԾ. ոգիս սպանին 'ի ժողովրդենէն որ անդ կային, և Կ. ոգի .. զենուլ եառն 'ի Ողաքայ, և Աղուանից, և այլ գեղօրէից:

Աղուեց ձոր: Յիշատակի առ ասողկայ Գ. 41. * Յառաջ երթեալ (զօրք կիւրապաղատին դաւթի) 'ի լեառն Սուկաւ 'ի Ձորն աղուեից, պահէին զառաջս պարսիկ զօրուն՝ կարծելով նախ 'ի Բագրևանդ մտանել:

Աղօք: Բուզանդ Գ. 6. սեփհական գեօղ դնէ մեծին Ներսէսի. * Զմարմին սորա Թաղեցին (ասէ) 'ի բուն գիւղն հայրապետին Ներսեսի՝ որում անուն Աղօքն կոչի:

Անահտայ աթոռ: Բուզանդ Ե. 25. գրէ վասն եպիսկոպոսնու անապատաւորին, թէ՝ * Նստէր սա 'ի մեծի լերինն 'ի տեղի դիցն՝ զոր կոչեն Աթոռ Անահտայ: Որ յօրէ նախս ինչ վրիպակաւ գրի Նահատայ:

Անգեղ տան գաւառ: Բուզանդ Գ. 24. Թուի դնել զսա 'ի մեծ ծոփս կամ 'ի Դ. հայս՝ յասելն վասն զօրացն շապհոյ. * Նա ինքեանք 'ի ծոփս մեծ արշաւեցին, և անդ էին բերդք զոր առին, և էր զոր ոչ կարացին առնուլ, և գային պահ արկանէին շուրջ զԱնգեղ զամուր բերդաւն՝ որ էր յԱնգեղ տանն գաւառին, զի անդ էին բազում հայոց Թագաւորացն գերեզմանք շիրմաց արքայիցն արշակունեաց, բազում գանձք մթերեալ մնացեալ կային 'ի նախնեացն 'ի հնոց ժամանակաց հետէ: Զայս բերդ՝ զոր ոչ կարացին առնուլ պարսիկք, որոշէ և այլ դնէ ան-

(1) Լեառն և Քաղաք անուամբ յիշատակի առ ասողկայ Գ. 43. յասելն վասն վասլի կայսեր. * Եւ ինքն չուեալ ('ի չորրորդ հայոց) հասանէ 'ի Լեառնն Հաւաձիչ 'ի Քաղաքն յայն. անդ ընդ առաջ եղեն նմա: Էն: Տես 'ի վեր. Թղթ. 374:

դէն 'ի բերդէն Անի. ուստի՝ եթէ հաւատարիմ են առա-
ցեալքն բուզանդայ, պարտ է իմանալ ոչ զգերեզմանաց
ամենայն թագաւորացն մերոց, և ոչ զամենայն գանձուց.
քանզի որպէս ասացաք՝ ընիկ չիրիմք թագաւորացն, և
գանձք էին յանի, զոր և նոքին բուզանդ 'ի նոյն գլ. յի-
շատակէ:

Օ գաւառ Մոգեղ տան բուզ. Ե. 18. զնէ լեալ Ոս-
տան արքունի. * Բայց աշխարհն՝ զի Ոստան արքունի
լեալ էր, վաղ բնակիչք գաւառին նոքեանք կային 'ի
հարկի ծառայութե||:

Աշխարհաբերդ: Յիշատակէ թովմա արծր. Գ. 12:
* Նա նոքն (գուրգէն) անցեալ գնայր առ իշխանին 'ի
յամուրն յԱշխարհաբերդն կոչեցեալ||: Նա թուի գնել
զնոյն 'ի կողմանս սպերոյ:

Աշնակ աւան: Առ եղիշէի գլ. Գ. թղթ. 78. դասի 'ի
կարգ ձմերոցաց զօրացն: * Աւերեալ (ասէ վասն ուրա-
ցեալն վասակայ,) զբազում տեղիս հայոց ... , մա-
նաւանդ զձմերոցս արքունի՝ որ կայեանք զօրացն էին,
զգառնին, և զերամանս, զդրահամակերան, զգաստա-
կերան մեծ զվարդանաշատն, և զամուրն աւշական, զխա-
ռախոտն, զարդեանխան, զձողկերան աւան, և զբերդն
արմաւրի, զկուաշն աւան, զարուճն, զԱշնակն, և զա-
մենայն տուն արագածու, և զնահանգն արտաշատու, և
զարտաշատն նոքնին գլխովին, և զամենայն գիւղս և զա-
ւանս որ շուրջ զնովաւ էին՝ առեալ աւերեալ և հրձիգ
արարեալ||: Յիշատակի և առ սամուելի 'ի թուին ոժբ:
* Զ մեծ աւանն զԱշնակ այրեաց չարագլուխն ելտկուզ||:
յորում զայրեցեալսն 'ի նմա ասէ լինել էռ: Տեղի և գա-
ւառ աւանիս անստոյգ, բայց յայտնի է լինել 'ի մեծն
հայս 'ի կողմանս այրարատու, քանզի և ելտկուզ դիմեալ
էր 'ի վերայ դւնայ յափշտակելոյ 'ի վրաց. և 'ի տեսանել
զդւին անմարդի կացուցեալ յարքայէն վրաց, դիմեաց
'ի վերայ Արենոյ, և Աշնակ աւանի, զոր և քանդեալ
աւերեաց, որք յայտ է թէ՝ չէին կարի խիճ տարակացք
'ի միմեանց:

Ապարանք: Գիւղ՝ զոր բանք մխիթարայ ապարանցւոյ
ցուցանէ լինել 'ի սահմանս նախիջևանու, կամ երնջակայ,
զի ասէ վասն իւր՝ լինել * 'Ի գաւառէն Նախիջևանոյ,
և յԵրնջակոյ, 'ի գեղջէն Ապարաներոյ||:

Ապահունեաց գեօղ: Թուի լինել մօտ 'ի շահապիվանն,
ուստի և յայրարատ նահանգի, որպէս ցուցանեն բանք

բուզանդայ Է. 15. * Նու էր բանակ Թագաւորին 'ի շահապիվանի ... (իսկ վարդան առաքեալ յարքայէ ածել զգնել,) եկն եգիտ զպատանեակն գնել 'ի մօտաւոր տեղւոջն՝ այսինքն 'ի գեւղն՝ Ոսկիւտոց անուանեալ ..: Ապա չուեաց ամենայն կազմութբ իւրով գնել երթալ հասանել 'ի բանակն արքունի զգիշերն ամենայն բաղում փութով տագնապաւ ||:

ՍԷ Ոծածէն: Գիւղ՝ յիշատակեալ յասողկայ Գ. 44. զոր և Թուի դնել 'ի բասեան գաւառ այրարատոյ: * Նու եկեալ 'ի համդիպումն միմեանց՝ գուրգէն և մաժխազոտոմն 'ի մայրաքուսակ լերինն Սեծբայ, 'ի գիւղն ոլում 'որ Ոծածինն կոչի՝ անուամբ եկեղեցւոյն որ 'ի նմա ||: Իսկ 'ի խորագրի, որպէս և սակաւ մի յառաջ քան զվերագրեալ բանդ գրէ վասն մաժխազոտոսին, * Նկեալ բանակի 'ի գաւառն բասեան ||: Նու * Սան գալոյն ... զօրայն յանուաց 'ի գաւառն բասենոյ ||:

ՍԷ Ոստոյ կոնէ: Յիշատակէ ասողիկ Գ. 3. առանց որոշելոյ զգաւառն՝ յորում էր, քանզի գրէ. * Յայսմ ժամանակի պայծառանայր առաքինութբ հայր գագիկ՝ առաջնորդ ուխտին 'որ Ոստոյ՝ որ գլիշատակ մարտիրոսացն միայարեալ 'ի գիր՝ որ աստմադիրն անուանի ||:

Որբածանս: Գիւօղ մերձ դուստական գեղջ յաղուանս հայոց. որ յիշատակի 'ի պատմութեան գիւտի նշխարաց սրբոյն գրիգորիսի. * Զու արարեալ արքայէն (վաչագանայ) 'ի դուստականէ ... հասանէին 'ի գեօղ մի Որբածանս ||: Սէ յոյժ հեռի Թուի յՈմարաս գեղջէ որ է յարցախ աշխարհի:

Որոյն: Նահապետք Որոցնոյ յիշատակին 'ի ժողովն վաչագանայ աղուանից արքայի, եթէ չիցէ առանձին սահման ինչ 'ի բուն յաղուանս, Թերևս մարթ է իմանալ Որցախ:

Որբեբանոս: Քաղաք՝ զոր Թէպէտ յայսմաւուրքն գնէ լինել յաղբակ, այլ խորենացին Բ. 31. ինչ որոշակի գրէ, յասելն. * Նու բարդուղիմէոս առաքեալն՝ որ և կատարեցաւ առ մեզ յՈրբեբանոս (1) քաղաքի ||: Հեղինակն առաքելական վարուց որ յանուն տորոթէոսի՝ կոչէ զսա Ուրիոնօփոլիս մեծին հայոց: Սոփրոնիոս կոչէ Ուլբա-

(1) Օրինակ մի խոր. * յԱրեւբանոս ||. այլ օրին. * յԱրեբոնոս ||. իսկ օրին. վենետեանց անգղիացւոց. * Արեւբենոս ||: Ալբանոս. * յԱրեբանի քաղաքի ||

Նօբօլիս. իսկ Նիկէտաս՝ Սոֆոնօբօլիս, համաձայն խորե-նացւոյն որ 'ի պատմ. պատկերին տիրամօրն գրէ առ սա-հակ արծրունի. * Նա ինքն 'ոք առաքեալն եղեալ աւե-տարանել 'ի հայս, և կատարեցաւ յՈւրբանոս քաղաքի 'ի Բարմ անուանեալ տեղւոջն յանուն առաքելոյն‖. յորմէ առնու և նոր խորայել հեղինակ յայսմաւուրաց 'ի դեկտ. ժԹ. զի ասէ. * Խաղեցին զնա հուպ 'ի քաղաքն Ուրբանոս, որ կոչի Բարմ‖. Բայս Բարմ յիշատակի և 'ի յեւմնաց, որպէս և յառաքելէ, և դնի յաղբակ.

Բորնի. Յիշատակի յուռհայեցւոյն՝ որ և կոչէ զնոյն, Մեծ ամրոց, և Բմուր բերդ. * Տեառնէր ( զօրավարն յունաց ) զամրութիւն բերդին՝ հիմնայր յոյժ, և ոչ կա-րէր պատերազմել, վասն զի բարձր էր յոյժ և անառ 'ի Թշնամեաց‖. Մերձ դնէ զնոյն՝ Թլխում գաւառի, զորմէ տես 'ի Թլխում.

Բորհնի. Յիշատակէ եղիշէ գլ. է. Թղթ. 67. ընդ ա-մուր տեղիս աշխարհին հայոց՝ զորս Թափեցին նախարարք միաբանեալք ընդ մեծին վարդանայ 'ի ձեռաց պարսից. զԵրէթայնորդունն, զԲորհնին և զսառնա խորհեանց. Այլ օրինակ ե-ղիշէի ունի՝ զԲոխնին, և զսառնոյն խոր.

Բոջ. կամ Բոջի. Յիշատակի 'ի գիրս զենոբայ 'ի պատ-մութե պատերազմին քրմաց. * Իսկ իշխանն Բոջայ փա-խուցեալ.. ընդ անտառն՝ կորօն փայտի եանց Է օրօ նորա, և անդէն մեռաւ... և անուանեցաւ տեղին Բո-ջուց ձոր(1)‖. Նոյնպէս և յովհան մամիկոնեան յիշէ զիշ-խանն Բոջուց յաւուրս գայլ վահանայ և տիգրանայ. որ-պէս և 'ի պատմ. ծիծառնէի խաչին գրի. * Իսկ իշխանն Բոջուց կողմանն գորգ շատախօս՝ որ կոչեաց զանուն գաւառին իւրոյ Տատախ վասն մականուան իւրոյ‖. Յիշատակի անդ և Եպիսկոպոս գաւառին Բոջուց՝ ուր ասի. * Իսկ վահան ետ զխաչն 'ի ձեռս եպիսկոպոսին Բո-ջուց‖. Որ և պատմի Թէ զխորդ գողանալ ետ իշխանն Բոջուց զմասն խաչափայտին 'ի 'ոք կարապետոյ, և տա-րաւ եդ յերկրի արջուց իշխանին յաւանն ծիծառնէի. Տես 'ի ծիծառնէ.

Բռընկիս, և Կապուտոսոս բերդ. Տեղիք՝ զորս յունաւ-նէ յիշատակէ ուռհայեցին 'ի պատմելն զպատերազմն յե-պարտեայ 'ի ժՊ. դարու. * Հասեալ նոցա 'ի բերդն որ կոչի Կապուտռոս, 'ի տեղին որ Բջնկիտ ասի‖. Օտե-

(1) Զտեղին Բոջուց ձոր տես 'ի գաւառն տարօնոյ.

զի պատերազմիս լատինլ. ԺԶ. գնէ լինել 'Ի Ճճ դաշտին Բասենոյ, առանց յիշելոյ յանուանէ զնշանակեալ տեղիսդ։

Արտանդան դաշտ։ Յիշատակէ Բուզանդ յասելն. Ե. 41. * Նա եկաւ զկողմն մի զերկիրն Հայոց, և բանակեալ էր յԱրտանդան դաշտին ։

Արճէոյ Գեօղ։ Յիշատակի 'ի պատմութե. օրբէլ. գլ. ԾԹ. Թղթ. 51. * Այս էր սարգիս (եպիսկոպոս Նորավանից) ․․ 'ի գիւղն Արփայ 'ի վերոյ գետոյն կանգնեաց զկամուրջս զարմանալիս տաշածու վիմօք, յոյժ բարձր ընդարձակ, և լայն հիացուցիչ տեսողաց բազում ծախիւք և անչափ աշխատութբ՝ հրամանաւ․․ տարսայիճ իշխանին ։ Զայս գիւղ առաքել պատմագիր Թղթ. 167. գնէ լինել 'ի վայոց ձոր։ * Այր ոմն քրիստոնեայ՝ անուն գրիգոր որ էր նախկին նա 'ի վայոց ձորոյ՝ զոր Եղեգաձոր ասեն, 'ի գեղջէն Արփայու ։ Յայս գիւղ էր դարպաս տարսայիճ իշխանին օրբէլեանց, որպէս գրի 'ի պատմութե. օրբէլ. գլ. ԾԹ. Թղթ. 52. * Տարսայիճն ... լցեալ զկետ կենաց իւրոց՝ վախճանի յորում (այսինքն յիւրում) դարպասին յԱրփա ։

Արփանեալ։ Յիշատակի յեղիշէէ Դ. Թղթ. 67. ընդ ամուր տեղիս աշխարհին Հայոց, զորս առին Հայք 'ի ձեռաց պարսից յաւուրս վարդանանց։

Բագնայր։ Յիշէ կիրակոս 'ի պատմեն վասն սմբատայ մագիստրոսի. * Շինեաց և սմպատ մագիստրոսն զփափագատես վանքն որ Բագնայրն կոչի ։

Բակուրակերտ։ Սա այսր տեղւոյ այսչափ ինչ ունիմք առ խորենացւոյն. Բ. 57. ուր ասի. * Հանդիպի արտաշիսի 'ի մարս (1) 'ի Սոհունդ անուանեալ տեղւոջ. պատմէ (2) և հիւանդանալ նմա 'ի մարընդի 'ի Բակուրակերտ աւանի ։ Նոյն սորա հայկական վերջաւորութբ՝ ցուցանէ լինել 'ի Հայս։ 'Ի միում ձեռագրի փոխանակ բառիս 'Ի Սարընդէ՝ գնի 'Ի Սարանդէ, որ է 'ի վասպուրական։ Բայց Թովմա արծր. 'ի վարս Նորին Բ. արտաշիսի զայս աւան դնէ 'ի մարս՝ յասելն. * Կայ զտանէ վախճանեալ զԹագաւորն արտաշէս 'ի Մարինդ, և մեռանի անձամբ ընդ այլ շքամարարն յաշխարհին մարաց 'ի Բակուրակերտ աւանի ։ Թերևս յայնմ ժամանակի այն

(1) Օրինակ մի և այլ. 'Ի Մարս։ գրեալք ունին այսպէս. Պարսին

(2) Երկու ձեռագիրք և տպա. Հիւանդանալ։

կողմանք գոլով ընդ տէրութե̄ Մարաց՝ կոչին աշխարհ Մարաց ։

Բարխողար ։ Տեղի կամ գաւառ յիշատակեալ 'ի պատմ. որբէլ. գլ. Ե. (տպ. թղթ. 24. 25. և 28.) ուր և գրի երկիցս Բարգողար, և գնի 'ի սիւնիս, կամ սահմանակից սիւնեաց ։ * Բազում ջանիւ Թափեցին (զաքարէ և իւանէ եղբարքն) զաշխարհս 'ի պարսից, և առին յառաջնայ մինչև ցներքին բասէն, և 'ի Բարկուշատայ մինչ 'ի մծնկերտ ||։ և ապա գրի. * Առին և զսիւնիս, զորոտն, զբռորոտայն, զբզէն, և զԲարգուշատ ||։ Տես 'ի նոր հայաստան զԲարկուշատ թղթ. 271. 272 ։

Բարձրաբերդ ։ կամ (ըստ այլ օրին. Բարձրաբերդոյ ։) Յիշատակէ եղիշ. Գ. թղթ. 67. Է ամուր տեղիս աշխարհին հայոց՝ զորս Թափեցին 'ի ձեռաց պարսից վարդանեանք ։

Բարմ ։ Տես Արտեմանոս ։

Բասեան, կամ Բասէն ։ Գաւառ՝ հայրենիք սիոնի կաթողիկոսի որ զկնի Է. տրդատայ յաջորդեաց, զորմէ յովհաննէս կաթ. * Սիոն տոհմաւ (այսինքն տրդատայ) սիոն 'ի գեղջէ Բաւանից ||։ Սամուել անեցի, և կիրակոս պատմիչ զսիոնէ գրեն լինել 'ի Բագուանէ ։ Այլ նոքին կիրակոս զտրդատ նախորդն սիոնի գրէ լինել 'ի Դաստառերէց (յայլ օրին. 'ի Դաստառերէց) և 'ի Բասենէ ։ Իսկ 'ի գաւազանագրի ինչ կաթողիկոսաց գրի. * Տր սիոն յաբագաձոտնէ 'ի գեղջէ Բագնայից ||։ Այլ զգրութե̄ Բաւանից կամ Բաւօնից 'ի յովհաննէ կաթող. յասողկայ, և 'ի վարդանայ, հաստատագոյն համարեալ մեր՝ յանձանօթս մեծին հայոց 'ի դէպ համարեցաք կարգել զնոյն ։

Բաքասներ ։ Բուզ. Դ. 13. * Արշակ (ասէ) երթայր ընդ առաջ նորա (այսինքն մեծին ներսէսի) մինչև 'ի կողմանս Բաքասներոյն ||։

Բերդակոր ։ Տեղի զոր յիշէ կիրակոս 'ի գրելն վասն յոհաննու ուրուան կաթողիկոսի ազուանից 'ի Թ. դարուն. * Սա փոխեաց զկաթողիկոսարանն 'ի Բերդակոր իւրեանց հովացաց տեղի, յորժամ հանեալ 'ի պարտաւայ||։

Բզնի ։ Տեղի յիշատակեալ 'ի տպագրեալ պատմութե̄ որբէլ. գլ. Ե. թղթ. 25. * Առին (զաքարէ և իւանէ իշխանքն) զսիւնիս, զորոտն, զբռորոտայն, զԲզնի, և զԲարգուշատ ||։ և 'ի գլ. Է. թղթ. 39. * Իսկ և Թափեաց զերկիրն որոտնայ բովանդակ՝ մինչ 'ի սահմանն բարողնայ, և Բզենոյ, յորում և կայր ընդ աւեր աթոռն սիւնեաց տաթև ||։

Բիւրական : Ամրոց՝ զոր յոհ. կաթ. կոչէ երբեմն Ամբողին՝ յասելն. * Ի վերայ Ամրոցկանն Բիւրականու հասեալ || : Իսկ թէ, * և զայլ բնակիչս Ամրոցկանն սրակոլս արարեալ || : Յայտ է թէ վասն փոքրկութեան ամրոցին : Այս Բիւրական ամրոց՝ զորոյ զգաւառն ոչ նշանակէ յոհաննէս կաթ. և ոչ այլք, սեպհական կալուած էր կաթուղիկոսին, որպէս ցուցանէ նա ինքն 'ի պատմել անդ զառումն ամրոցին 'ի նորայ հագարացի ոստիկանէն. * Ասին (ասէ) ոմանք և հեթանոսք 'ի բնակչաց տեղւոյն հողագործ մշակութեան պարապեալ, և հարկս մեզ հարկանէին || :

Բողն : Ամրոց երևելի, զոր պրոկոպիոս գիրք ա. պատերազմ պարսից գլ. 15. դնէ 'ի պարսկահայս. * Հռովմայեցիք առին զտեղիս պարսկական տէրութեան 'ի պարսկահայս՝ զԲողոն ամրոց և զՓարանգիոն || եւ : Պարսկահայք ասելով իմանայ զսահմանս հայոց որ էր ընդ տէրութեամբ պարսից, քանզի 'ի նոյն գլ. դնէ զսա մերձ յոյժ 'ի թէոդոսուպոլիս :

Գոգ բերդ, կամ Գոգայ բերդ : Ասողիկ գ. 30. երևի դնել 'ի սահմանին գուգարաց, կամ արցախոյ. քանզի յետ պատմելոյ վասն դաւթի որդւոյ գուրգենայ՝ թէ էառ * Զկողմանս տաշրայ և վրաց դաշտի, զշամշուլտեայ մեծ քաղաքանիստ գեղեակն . . . տիրէ (և) քաղաքին դմանեաց, հնազանդեցուցանէ և զամիրային տփխեաց՝ քաղաքաւն իւրով || : Իսկ յետ պատմելոյ թէ զխմրդնկուն արար պատերազմաւ զամիրային գանձակայ, 'ի վերայ բերէ. * Յայնժամ մարզպանն դեմետր՝ որ էր իշխան 'ի Գոգբերդի 'ի սահմանսն յայնոսիկ ||, եւ : Իսկ 'ի գլ. 45. 'ի պատմելն զպատերազմութիւն դաւթի եղբօրորդւոյ ա. գագկայ արքայի բագրատունւոյ՝ գրէ. * Յառուցեալ գագկայ արքայի գնաց զօրօք 'ի տաշիր՝ շրջան առեալ ընդ շամշուլդէ, և ընդ վրաց դաշտ քանդեալ աւերեաց զամենայն . . . և ընդ Գոգ բերդ անցանելով եկն նա 'ի գաւառն աղստև || : Յայս գիրս ցուցանեն և բանք վարդանայ և կիրակոսի՝ որք սոսկ յիշատակեն առ ժամանակօք ասպատակութեան թաթարաց :

'Ի ժբ. դարու էառ զնոյն դաւիթ արքայ վրաց, ըստ գրելոյ վարդանայ. * Ընդարձակեալ դաւիթ զսահմանս իւր, զԳոգ, զտէրունականն, զտաւուշ, զկայեան, և զկայծոն, զլոռէ, զտաշիր, զմահկանաբերդ, և զբոլոր իշխանութիւն հայոց կիւրիկէի և աբասայ || : Իսկ այլուր. * Գայ ընդ կողմն դաշտավայրացն Գոգայ 'ի տփխիս || :

Առին զնոյն և 'ի մջ· գարու զաքարէ և խուռնէ եղջարըն Հայկազունք, ուրպէս պատմէ Կիրակոս ։

'Ի նմին դարու յիշէ Վարդան և զՊաշտն Պարգայ, և զՏր խաչն որ յանուն սբյն սարգսի · * Յցաւ Պաշտն Պարգայ անթիւ և անհամար հեծելօք յամենայն ազգաց յանօրինաց հաւաքեալ, որ կամեցան այրել զՏր խաչն որ յանուն զօրավարին սարգսի ‖ ։ Ոնոյն կամեցաւ առնել և ելտկուզ պարսիկ ըստ գրելոյ Վարդանայ · * Պայ 'ի մրեան, և այրէ անդ զամրոցն . . . և դառնայ 'ի դաշտն Պարգայ, և այրել հրամայէ զխաչն հռչակաւոր · վասն որոյ 'ի բարկութենէն տն պատժեալ լինէին ‖ ։

Այլ ընդարձակ ևս գրէ 'ի Թուելն զգաւառս և զբերդս վահրամայ իշխանին խաչենոյ և շամքօրայ, յիշատակելով միանգամայն և զշինօղ բերդին գագայ ։ * Նաև զՊագ անուանի բերդ և գաւառ 'ի գագկայ Թագաւորէ շինեալ, որ կայր 'նք հռչակաւոր ուխտն յերևանի աշխարհի (յայլ օրին · յերևանի շինեալ) խաչ և եկեղեցի կազմեալ և օրհնեալ 'ի 'սբյն մեսրոպայ վարդապետէն և Թարգմանչէն հայոց՝ որ կայ 'ի գլուխս Պագայ, և հայի 'ի դաշտն լայնանիստ և երկայնատարած ‖ ։ Ոսոյն զայս անհարկէ և վերջին տուն շարականի սբյն սարգսի · * Խաչաչարչար 'նք դիտապետ նշանագործ անուամբ 'ի խաչ և յեկեղեցի, առաւել պայծառ 'ի գլուխս Պագայ · 'ի գագաթան տեղւոյն (1) օրհնեալ սբյն մեսրովպայ ‖ ։ Զայս բերդ զերծաւ վանական վարդապետ գնեալ արծաթով բնակչաց 'ի ձեռաց Թաթարաց, զորմէ գրէն Վարդան և Կիրակոս ։

Պայտեփոսձ ։ Տեղի՝ որոյ երէցն յիշատակի 'ի ժողովն աղուանից գումարելոյ հրամանաւ վաչագանայ արքայի, ուր և դնի 'ի սեռական հոլով՝ Պայտեփոսձոյ ։ Նշգաք առանօր, իբր զի մարթ է լինել թէ այս տեղիք էին յայնմ սահմանի հայաստանեայց՝ որոց տիրէին աղուանք ։

Պետրանիկ ։ Վանք՝ զոր յիշատակէ կիրակոս 'ի գլ · ժէ

(1) Զվերոյիշեալ բանս վարդանայ վս շինողի բերդին՝ եթէ չիցէ հիմնեալ 'ի հաստատուն ինչ վկայութի, մարթ է համարիլ անհիմն ինչ կարծեօք ասացեալ · քանզի 'ի ժամանակս տ · գագկայ Թագաւորի յաղողկայ ժամանակակցէ յիշատակի բերդ յայդ անուն · և կամ թէ բանք վարդանայ նորոգութիւն ինչ 'ի գագկայ արքայէ լեալ ցուցանեն · ապա թէ ոչ՝ առաւել հաւաստի կարծիք 'ի վեր ելանէ 'ի բանից ասողի շարականացին՝ Գագ կոչել տեղւոյն՝ սակս դրիցն Գագաթնաձև բարձրութեան ։

'ի գրեւն վասն աղօթարանաց ամն մանձնաբերդի (որ էր 'ի սերնդոց կիւրիկեի բագրատունւոյ, ամն լօռէ քաղաքի.) * Թուէ կրօնաւորեցաւ 'ի վանքն որ կոչի Գետակիցք || : Բայց թէ նոյն իցէ ընդ գետկայ վանիցն որ և կից էր գետոյն աղստեւոյ, կամ թէ այլ 'ի նմանէ՝ չունիմք ինչ ասել հաւաստի. միայն յուշ առնեմք՝ եթէ սահման այսր վանաց ոչ հեռի թուի 'ի սահմանաց գետկայ վանից :

Գետրատայ, կամ Գետրատեայ դաշտ : Յիշատակէ Թովմա արծր. յերկրորդ վարս գագկայ, յասելն. * Օ հետ մնեալ սակաւ զօրօք հասանէ նոցա 'ի դաշտին Գետրատայ || : Բայց 'ի պատմութե հացիւնեաց խաչին յաւելուածով իմն յիշատակի նոյն դաշտ. * Նկեալ (հերակլ կայսր) բնակեցաւ 'ի դաշտին Գետրատայ (1) մերձ 'ի քաղաքն Սամոսատու շաւարշայ || : Յորմէ մարթ է համարել զայս դաշտ լինել յարտաք գաւառի, կամ 'ի Տաւարշան գաւառի, և կամ զնոյն զայն դաշտ կոչեցեալ Սամոսատուն, տես յարտաք գաւառ :

Գետեշատ : Տես Նորեշատ :

Գիս, կամ Գիք : Գիւղ՝ որ յիշատակի յայսմաւուրս ամր խորայելի սեպտ. իթ. և յայլ յայսմաւուրս սեպտ. իա. 'ի վարս եղիշէի առաքելոյ աղուանից. * Նկին (եղիշէ) յուտի գաւառ, և անտի գնաց 'ի գեւղն որ կոչի Գիս, շինեաց եկեղեցի || : Մերձ յայս տեղի ասի անդաւնօր լինել և Գաշտակն՝ ուր և նահատակեցաւն. * Նջ նա 'ի դաշտակն Զարգանէ (յայլ օրին. յայսմաւ. գրի Զարդանէ. իսկ 'ի տպ. Զարդանէ) || : Յիշատակէ զԳիս և կիրակոս 'ի նմին պատմ. եղիշէի առաքելոյ 'ի գլ. իե :

Գիշոյ վանք : Թուի լինել 'ի կողմանս աղուանից, զորմէ վարդան 'ի պատմութեան. * Նա եկեալ խորայէլ (ամն) հրամանաւ վարազորդատայ աղուանից իշխանի, և խնդրեալ զձնոտ լուսաւորչին՝ տարեալ եդ 'ի Գիշոյ վանս կոչեցեալ տեղւոջ || :

Գոռող : Տեղի՝ ուր վկայեաց մուկաթլ վանանդացի առ ժամանակօք բուհայի կամ բուղայի 'ի Թ. դարու : * Նդին (ասէ Թովմ. արծր. գ. 10.) 'ի վերայ 'ի տեղւոջ վկայութեան նորա Գոռողոյ մերձ 'ի լեառն Բէէ՝ ուր էր բանակ այլազգեացն || (2) : Տես և զԳորող :

(1) Օրինակք ինչ գրեն Գետրատեայ :

(2) Է՛ լեառն Գոռող 'ի կողմանս տարօնոյ. այլ թէ նոյն իցէ ընդ յիշատակելոյն 'ի Թովմայէ՝ չունիմք ինչ ասել հաւաստի :

Գորբերս մէ Բոբոս. Տես Սալահատնի:

Գորող: Յիշատակի առ վարդանայ՝ որ վասն փառելուն ամիրայի՛ն զանձակայ գրէ. * Օ օրայեալ տիրէ խաչե-նոյ, և Գորողոյ, և սեւորդեացն‖: Սևորդիք կոչին Սե-ւեացիք: Յիշատակի առ Նորին վարդանայ և Խաչէն Գո-րողոյ կոչեցեալ. զորմէ տես 'ի Գորտուտ:

Գոստեննի Հերդ: Յիշատակի 'ի պատմ. օրբէլ. գլ. է. Թղթ. 36. ուր ասի. * Եղև սմա (այսինքն զաւթի ու-րուին փոքրիկ Թագաւորի սիւնեաց) անցանել ընդ գլուխ գեղջն՝ որ Գոստեննի կոչի. այդ լինի և տն գեղջն որ Թանկրեղուլ կոչէին .. և էր սա յազատացն սմբատայ‖ (կոչեցեալ օրբէլեան):

Գադէ Վանք: Որպէս գրի առ կիրակոսի գլ. կզ. * Եկն և Գադի վանից եպիսկոպոսն տր գրիգորիս, և վարդապետն վարդան .. բազում քահանայիւք 'ի գիւղն այն, 'ի սահմանս գիւղաքաղաքունոյ ծովուն 'ի կողմն խաչե-նոյ՝ հուպ 'ի բերդն Հանդաբերդ, ուր ջերմուկն է ծար-անուն .. քանզի նոցա վիճակին էր‖: Երևի 'ի բանից ասէ կիրակոսի՝ թէ այս մենաստան և եպիսկոպոսարան էր 'ի ծայրս սահմանաց սիւնեաց, և կամ արցախոյ:

Գաժդոյնք: Տեղի՝ որոյ գաւառն Թէպէտ և անծանօթ, այլ գծիրս և զսահման տեղւոյն ստորագրէ խորենացին տ. 30. կամ ըստ տպ. 29. * Օ բազում 'ի սերմանէ աժդահակայ աղջկունս հանդերձ պատանեկօք, և այլ բազում գերեօք՝ որչափ թէ աւելի քան զբիւր մի՝ բնակե-ցուցանէ յարևելեայ ուսոց մեծի լերինն (մասեաց), մին-չև 'ի սահմանս գողթանն՝ որ են տամբատ, ոսկիողայ, Գաժդոյնք ('ի տպ. Գիժդոյնք), և որ այլք առ եզերբ գետոյն դաստակերտք ... մինչև հանդէպ ամրոցին Նախ-ջաւանու‖:

Գաւառն. Տես Գաւառի դաշտ:

Գարահոձ: Գիւղ՝ որ Թուի լինել յաղուանս հայոց, և յիշատակի 'ի պատմ. գիւտի նշխարաց սրբոյն գրիգորիսի առ վաչագանաւ 'ի Է. դարու. * Բերեալ էր (զնշխարս ինչ սրբոյ լուսաւորչին) մատթէի իրիցու աշակերտի յոհան-նու հայոց հայրապետի մանդակունւոյ, և էր 'ի գեօղն Գարահոձ‖: Եւ 'ի ստորև: * Ընդ այն աւուրս առա-քէր (վաչագան արքայ) զմատթէ Գարահոձայ երէցն այլ ևս պաշտօնէիւք 'ի Սոհառ‖: Այս մատթէոս յիշա-տակի և 'ի կանոնգիրս 'ի ժողովն վաչագանայ, ուր յօրի-նակս ինչ գրի՝ * Գարահաձու‖:

Գարան դաշտ ։ Յիշատակի այս 'ի յաւելուածն պատմ. վարդանայ՝ որ թուի լինել նորին իսկ վարդանայ. * Գառնձաւ (ասէ) Հուլաւուն յիջեանս 'ի ձմեռոցս 'ի դաշտն մուղանայ, և 'ի Կայս ամարսն 'ի Գառնին գաւառ կոչեցեալն, կամ ըստ այլոց 'ի Գարան դաշտ, զի այրք և դերբուկք քարանց կան անդ շուրջանակի առ լերամբքն, զոր սիրեաց և շինեաց անդ շինուածս ըստ սրտի իւրում. և խորհեցաւ շինել քաղաք՝ յորմէ պատճառէ տառապեցաւ երկիր մարդ և անասուն, փայտս ծանունս 'ի հեռաստանէ բերելով ||։ Բայց թէ 'ի բնիկ սահման հայաստանեայց իցեն այս տեղիք՝ եթէ արտաքոյ, ոչինչ հաւաստի ստուգանօր ունիմք գրել։

Գանձակայ քաղաք, կամ Գանձակ, և կամ Գանձանակ։ Բազաք 'ի սահմանս տփխեաց և շամքուրեայ՝ որք են 'ի գաւառս․ յիշատակի ուրեք ուրեք 'ի գիրս, որպէս առ ասողկայ գ․ 30․ * Գաւիթ (գուրգենեան)․․ ունի զկողմանս տաշրայ և վրաց դաշտի, զշամքուրեայ մեծ քաղաքն, քանիստ դղեակն նիստ արքունական պատրաստեալ ինքեան՝ արագապէս տիրէ քաղաքին Գանձակայ․ հնազանդեցուցանէ և զամիրայն տփխեաց քաղաքաւն իւրով ||։ Նոյնպէս և կիրակոս գլ․ Խ․ գրէ վասն թաթարաց, թէ զկնի առնլոյ և աւերելոյ զլոռէ քաղաքն, նոյնպէս առնէին * Նաև ընդ այլ քաղաքս, և ընդ Գուամանիս, և (ընդ) շամքորէ, և ընդ մայրաքաղաքն տփխիս ||։ Իսկ վարդան յիշատակէ զնոյն՝ կոչելով Խերդ․ * Յետ երկուքեանն (այսինքն իւանէ, և հայր նորա ապուղէթ) արգելեալ 'ի Խերդն Գամանիս ||։

'Ի բանից աստի հեղինակաց ըստ բաւականին մարթ է խմաստասիրել զգիրս և զսահման քաղաքիս․ այլ 'ի տպագրեալ պատմութեան օրբելի․ գլ․ Ե․ թղթ․ 17․ 'ի գրեալն վասն ուրումն իւանէի օրբելեանց՝ թէ * Բռնու․․ և զԳամանիս ||, յաւելեալ է փակագծիւ յումեմնէ 'ի գրչաց կամ 'ի տպագրողէն․ * (Որ և կոչի Գուամանիս․ և էր քաղաք ինչ մեծին հայոց՝ յաշխարհին գուգարացւոց, որ այժմ ասի Շաքի) ||։

Վժան գեղ։ Յիշատակէ յովհաննէս կաթ․ և երևի դնել զնոյն մերձ յարագածոյն․ քանզի յետ գրելոյ՝ թէ * Բոքայի (սմբատայ) զթիկունս յամուր վայրս տուեալ ||։ Նաև թէ՝ բազմութիւն զօրաց * Ելեալք 'ի կոչունս արքայի․․ ժողովէին 'ի գեղն վժան՝ որ 'ի ստորոտս արագած լերին ||։ Բայց գրէ վասն ափշին ոստիկանին․ * Նա․

ինքն խաղայ գնայ ('ի կողմանցն դժնայ) 'ի վերայ ար-քային սմբատայ` մաւտ առ նա կալեալ իբրև բանակեալ 'ի գեօղն Դողս ||:

Դուռպախ: Դեօղ սեփհական արքային աղուանից. յիշատակի 'ի պատմ. գիւտի Նշխարաց սրբյն գրիգորիսի. * Նա հասարակ հասանէին փութապես 'ի սեպհական գեօղն արքունի Դուստական ||: և դարձեալ. * Դայլին հասանէին (դարձեալք յամարաս գեղջէ) 'ի սեպհական գեօղն Դուստական, և անդ համդուցանեն (զնշխարս սրբյն)..: մեծաւ պգուշութբ 'ի նը և յաղթուական սենե-կի` մինչև կատարեսցի հրամարկութին մատրանն 'ի Դուս-տականն գեօղ յանուն պանդալեոնի ||: Զգաւառ տեղ-ւոյս թէպէտ և ոչ որոշակի` 'ի պատմութէ անտի իմաս-տասիրեմք լինել յուտի գաւառի, որ և յանուանէ յի-շատակի 'ի պատմութե անդ:

Դրասխանակերտ: Յիշատակէ խորենացին բ. 88. զոր և կոչէ մեծ դաստակերտ` յասելն. * Յայնմ ժամու և ազ-գային նոցա կամար մկրտի իւրայովքն համդերձ 'ի ձեռն մեծին գրիգորի, արքայի ընդունելով 'ի ջրոյն` տայ նմա ժառանգութի զմեծ դաստակերտն արտաշիսի` որ այժմ ասի Դրասխանակերտ (1), և զգաւառն շիրակ ||: Նաև էր և յովհաննէս դ. կաթ. պատմաբանն, որ 'ի գաւա-ռանագրի կաթուղիկոսաց գրի լինել* Հայրենեօք 'ի մեծ դաստակերտէն Դրասխանակերտէ ||:

Դրոց աշխարհ: Զայս անուն յիշատակէ մատթէոս լէ. յասելն վասն աշոտոյ եղբօր յովհաննու արքայի բագրատունւոյ. * Հայրապետն պետրոս և իշխանքն ելին առ աշոտ, և մեծաւ երդմամբ նստուցին զաշոտ Դրոց աշխարհին թագաւոր ամենայն տանն հայոց, և յովհաննէս նստցի թագաւոր 'ի քաղաքն անի ||: Նոյնպէս և վարդան. * Գնայ կրտսերն աշոտ առ կայսրն վասիլ, և առեալ 'ի նմանէ զօր` գայ և հնազանդէ զամենեսեան, և նստի թագաւոր Դրոց աշխարհին ||: Այլին անուամբ թերևս կամին սոքա իմանալ զգաւառսն որ արտաքոյ էին սահմա-նացն շիրակայ` յոր թագաւորէրն յովհաննէս. քանզի և լաստիվերտցին գլ. բ. գրէ. * Սոքա ընդ միմեանս ան-կեալք հակառակութբ վասն բաժնից երկրին, կարօտա-

(1) 'Ի տպ. խոր. գրի. Դրաս-խանակերտ: Առ եղիշէի գ. տպ. Թղթ. 78. գրի ըստ ձեռ. Դրաս-խանակերտ. ուր 'ի տպ. գրի. Դրաս-խանակերտ: Յիշէ ընդ ձմերոցս ար-քունի` ուր կայեանք զօրացն էին:

ցան իրաւանց և դատաստանի. որոց եկեալ Թագաւորն ափխազաց գեորգ՝ 'ի խաղաղութի համոզեաց զնոսա: Եւ տայ բաժին երկանուանն ամբաստայ զամուրն անի, և որ շուրջ զնովաւ գաւառք՝ վասն անդրանկութեն. իսկ աշոտոյ զներքին կողմն՝ որ հայի 'ի վերայ պարսից և վրաց ‖:

ԵՐԱՄԱՆ: Յիշատակէ Եղիշէ Է. Թղթ. 78. ընդ ձմերոցս արքունի ուր կայեանք զօրացն էին, զոր աւերեաց ուխտանենգն վասակ առ վարդանամբք: * Աւերեալ զբազում տեղիս հայոց աշխարհին, մանաւանդ զձմերոցս արքունի որ կայեանք զօրացն էին, զդառնին և զԵրամանս (1) զդրսհանակերտն ‖:

ԵՐԱՆԳԱՆԻ: Գեօղ փոքրիկ՝ զոր յիշատակէ Թովմ. արծր. Է. 13. առանց յիշելոյ զգաւառն. որ թերևս էր 'ի վասպուրական աշխարհի: * Եւ երթեալ համանէ (զուրգէն իշխան արծրունի) 'ի գեօղակ մի Երանգանի անուն, առ մենաւոր մի՝ որ էր երեց վանիցն ‖:

ԵՐԻՇԱՏ: Գիւղ յիշատակեալ 'ի Թովմ. մեծոփ: * Եւ 'ի գեղն Երիշատ (2) զձեռնաւորն մկրտիչ անուն Ը. մարդով ընտանեօք տան իւրոյ (իշխանն բերդին ամկու) 'ի հուրն այրեաց ‖: Երևի գտնել 'ի կողմանս արճիշու և արծկէի:

ԵՐՃԱՅՆՈՐԴ: Յիշատակի առ Եղիշէի Է. Թղթ. 67. Ը ամուր տեղիս աշխարհին հայոց զորս թափեցին 'ի պարսից նախարարքն հայոց միաբանեալք ընդ վարդանայ:

ԵՕԹՆԱՂԲԻՒՐ ԳԻՒՂ: Յիշատակի առ մխիթարայ այրարանեցւոյ վարդապետ ոմն հայրապետ անուն յԵօթնաղբիւր գեղջէ, 'ի ԺԴ, դարուն 'ի սկզբան անդ ծագման ունիթոռաց:

ՈՒԼԽՈՅ ԳԱՒԱՌ: Յիշատակի 'ի մատթէոսէ ուռհայեցւոյ, որ և մերձ դնէ զնոյն առ ամրոցն արկնի: * Առին զմեծ ամրոցն որ կոչի Արկնի, որ էր մերձ 'ի գաւառն Ուլխոյ ‖: Երևի գտնել զարկնի և զայս գաւառ կամ 'ի սահմանս գաւառին պաղնոյ, և կամ մերձ նմին: Յիշէ նոյն մատթ. և 'ի թուին ՇԾԴ. զԱներդն Ուլխոյ, յասելն վասն իշխանին սլար խորասանայ. * Գայր 'ի վերայ բերդին Ուլխոյ, և մեծաւ պատերազմաւ 'ի նեղ արկեալ զբազում աւուրս, և ոչ կարաց առնուլ. և յարուցեալ բազում զօրօք գայր յերկիրն ուռհայոյ, և համանէր 'ի

(1) Այլ օրին. եղիշ. ունի Վերամատեան. տող. Վերամայիս:

(2) Այլ օրին. գրէ Երշատ. միւս այլ օրին. Գեշիշատ:

բերդն՝ որ կոչէր Մասրախ, այն է Մեերեք։ Թերեւս նոյն բերդ է՝ զոր այլուր Թլկուրան կոչէ մատթ. 'ի թուին չժե, 'ի գրելն վասն գօմէտին պարոնին ամիրայէն, թէ * Հասանէր .. 'ի վերայ գաւառին Թլխմոյ .. և մեծաւ պատերազմաւ էառ զբերդն որ կոչի Թլէթուխ, և անողորմ զամենեսեան սրով կոտորեցին ‖։

Թուլայլ։ Տեղի՝ ուր բնակէին Թոնդրակեցի աղանդաւորք։ Յիշատակէ գրիգոր մագիստրոս 'ի թուղթս ͞բ. առ նոյն աղանդաւորս։ * Բայց դուք յորում այժմ բնակէքդ՝ եթէ սուտագաբանեսցէ ոք ուղղակի, Թուլայլը ցրուեալ անուանի, կամ Թուլացեալ յանդամոց ‖։ Եւ զնոսակիչսն կոչէ Թուլայլեցիք 'ի ͞ա. թղթ. առ կաթուղիկոսն ասորւոց։ * Իսկ Թուլայլեցիքդ հրաժարեն՝ եթէ մեք Թլփատեալ ͞ած ոչ խոստովանիմք ‖։

Թուլին վանք։ Յիշէ ասող. ͞գ. 17. առանց յիշատակելոյ զգաւառն։ * Մայր թագաւորին աբասայ ... զվարս կրօնաւորութե յանձն առեալ՝ երթեալ բնակէ 'ի տեղին՝ որ Թուլին վանք անուանի. զի են եկեղեցիք փորածոյ 'ի սալիտակ քարի ընդդէմ հարաւոյ ‖։ Թերեւս է նոյն՝ որ 'ի բասէն տեսանի մինչև ցայժմ։

Լաստիվերտ։ Հայրենիք արիստակիսի վարդապետի, յորոյ 'ի խորագրի պատմագրութեն արձանագրեալ կայ. * Պատմագիրք արիստակիսի վարդապետի լաստիվերտացւոյ, վասն անցիցն անցելոց 'ի յայլասեռ ազգաց որք շուրջ զմեօք են, ընդ աշխարհս հայոց ‖։ 'Ի կամելն գուշակել զգաւառ տեղւոյս, յակն արկանելով 'ի նորին իսկ պատմագրին բանս, գտանեմք զԿարին գաւառ բարձր հայոց. քանզի ստէպ զկողմն կարնոյ երևեցուցանէ իւր հայրենիս, որպէս և զքաղաքն Արծն 'ի նմին գաւառի՝ բազում անգամ կոչէ Արծոյ քաղ։

Խաղամախոյ դաշտ։ Տեղի մեծի պատերազմի հայոց ընդ պարսից առ ͞բ. վարդանաւ մամիկոնէիւ 'ի ͞զ. դարու. յիշատակի 'ի յոհն. կաթող։ * 'Ի ժամանակի սորա խոսրով արքայ պարսից զօր բազում գումարեալ առաքէ հրոսակս վարդանայ. և լինի պատերազմ սաստիկ 'ի դաշտին Խաղամախոյ (1) ‖։

Խաղտոյ ջուր, կամ ըստ այլ օրինակի՝ Խաղտայ ջուր։ Յիշատակէ թովմ. արծր. ͞բ. 2։ * Գնէ (քրիստափոր կաթուղիկոս) և 'ի կողմանս դերջանու և Խաղտաձորոյ բնա֊

(1) Առ վարդանայ 'ի կրկին հնագոյն օրինակս գրի Խաղամախոյ։

կիցն, և աշխարհական տեարս, և առ եպիսկոպոսունս‖. (զգուշանալ յաղանդոյն բարծումայի նեստորականի):
Խուփ լինել սահմանակից դերջանու:

Խաղտոյ առիճ: Ասուր՝ զոր լատին. գլ. դ. ցուցանէ լինել սահմանակից կարնոյ, զի ասէ. *Ածեալ մինչև յամուրն որ կոչի Խաղտոյ առիճ 'ի սպառուածն կարնոյ. և հասեալ յագարակն՝ որ հայի ընդդէմ ամրոցին . . . հատին զգլուխս նոցա‖: Զայս տեղի հաստատէ վասիլ կայսրն տալ դաւթի կիւրապաղատի տայոց՝ 'ի լինել նորա նիզակակից կայսեր ընդդէմ սկլերոսին վարդայ բռնաւորի: *Խոստանայ (ասէ ասող. դ. 15.) տալ նմա զԽաղտոյ առիճն կղէսուրան, զջոր մայրի, և զկարին‖: Յիշէ նաև ինքն ասող. և 'ի գ. 43. և ցուցանէ լինել մերձ առ կարին: *Դարձաւ նա (այսինքն կայսրն վասիլ) 'ի կարին և ընդ Խաղտոյ առիճ 'ի կոստանդնուպօլիս‖:

Խաչէ վանք. Տես 'ի Անտիոք:

Խաչաքարայ վանք: Յիշատակի 'ի գիրս ինչ մեկնութեան տօնից տէրունականաց. 'ի մեկն. առաջաւորաց պահոց:

Խծիկուն, կամ ըստ այլ օրին. Խծիկոն: Վանք շինեալ 'ի ժա. դարու 'ի վեստն սարգսէ իշխանէ, զորմէ գրէ սամուէլ 'ի նծա. թուին. *Վեծապատիւ վեստն սարգիս զկնի բազում շինուածոց բերդից և եկեղեցեաց՝ զհրաշալի զվանս զԽծկունս (1) շինեաց, պայծառապէս զարդարեալ զսբ. քաւարանն՝ որ ճանաչի անուն սր. սարգիս‖:

Խնատի վանք: Այս վանք յիշատակի առ գրիգորի մագիստրոսի 'ի խորագրի կ. և կա. թղթոց՝ որոց առաջինն է, *Առ հայրն սամուէլ առաջնորդ վանիցն Խնատի‖. և երկրորդն՝ *Առ կրօնաւորսն Խնատին‖: Յերկոսին իսկ 'ի թուղթս զսամուէլ կոչէ *Կրօնաւոր քահանայ, և ծայրագոյն հարց‖: Որով յայտնի ցուցանէ ոչ լինել Խնատի վանիցն Եպիսկոպոսարան, կամ Աթոռ եպիսկոպոսի:

'Ի վախճան բ. թղթոյն ցուցանէ զանձն ունել իշխանութիւն 'ի վերայ նոյն վանաց. քանզի լուեալ զմահ ծերունւոյն սամուէլի առաջնորդի վանացն՝ գրէ առ կրօնաւորսն: *Զգուշասջիք ժողովեալ բազմութիւնդ, և 'ի միասին ընտրեցէք զառաջնորդն՝ զոր և կամի ած և դուք. և միաբանութբ գրեցէք առ իս, և փոյթ առ իս առաքե-

(1) Առ կիրակոսի 'ի մեր օրէ. զԽծկուանս (կամ Խծկօնս) շինակս գրի Խոչկուանս, որ է վրէ. նեաց, պայծառ պաճուճեալ զարդարակ: Իսկ կրկին օրինակք՝ սամ. րեալ զսբ. քաւարանն՝ որ է սուրբ մուէլի ունին. 'Զհրաշալի զվանս սարգիս‖:

ցէք . . . և եկեսցեն առ մեզ յանուանէ և այսոքիկ յեղ-բարցդ՝ զորոց և զանուանսն գրեալ եմ իմոյս ձեռնար-կութե՛ . և այսոքիկ փոյթ՝ զի մի՛ յապաղեսցեն . վասն զի գրեցից նոցա վճիռ ինչ հաստատական՝ զի մի՛ երբէք յայ-լում ժամանակի դղրդեսցին , և լիցի աւերումն այսպիսի Մայրաքաղաքացեաց‖ : Վերջին բառդ զհռչակաւոր գոլն մենաստանին յայտ առնէ , քանզի սովորեցան նախնիք մեր զերևելիսն 'ի վանորէից՝ Մայրաքաղաք վանս ան-ուանել :

Խնձիկ : Դաստակերտ 'ի սահմանս իշխանութե աղուա-նից, շինեալ 'ի վաչագանայ արքայէ յանուն դստեր իւրոյ, ըստ որում գրի 'ի պատմ . գիւղի նշխարաց մէջն գրիգո-րիսի . * Այս դուստր մի ողջական հասակաւ Խնձիկ ա-նուն յոյժ սիրելի արքային՝ յորում անուն շինեալ էր դաս-տակերտ , եւ մասն նմա 'ի նշխարաց մէջն , և 'ի նորին դաստակերտի մեծապէս կատարի յիշատակ պէսպէս պատ-ուով‖ : Թուի լինել յուտի նահանգի :

Խնուն : Յիշէ գրիգ . մագիստ . 'ի թղթ . ա . առ կա-թուղիկոսն ասորւոց : * Այն ոմանք յանիծեալ ազգէդ թոնդրակեցեաց՝ որք անուանեն զինքեանս Կաշեցիք , և այն են չարութեն արմատ , և . . . թոնդրակեցիքն որ 'ի Խնուն են , և գրեն վասն քոյ‖ ԺԵ . Այլ 'ի Ժ . թուղթն առ Թուլայլեցի թոնդրակեցին՝ 'ի ստուգաբանել զան-ուանս տեղեաց բնակութե նոցա . * զԽնուն ( ստուգա-բանէ ) Խցակեալ և Խաւարեալ , և Խորամթեին բնա-կեալ‖ : Իսկ թէ նոյն իցէ սա ընդ Խնուս բերդաքաղաքի , ( զորմէ 'ի Նոր Հայաստ . թղթ . 81 . ) չունիմք ինչ ասել հաւաստի :

Խամամ : Յիշատակի 'ի Կիրակոսէ , զոր և ցուցանէ լի-նել 'ի կողմանս պարտաւայ և բէլուկանայ : * Օրա-ժողով լեալ թաթարացն վրաց լաշան , և մեծ հազարա-պետն իւանէ՝ եկաց ընդդէմ նոցա մարտիւ պատերազմի, և իջեալ 'ի դաշտավայր տեղիս՝ զոր Խամամն անուանեն, քանզի անդ պատահէր թշնամեաց‖, այսինքն թաթարաց . Իսկ վարդան զտեղի պատերազմին դնէ լինել առ գե-տովն կոտմանայ մերձ 'ի գուգարս , յասելն . * Այլին մոնին ( թաթարք ) յերկիրն գուգարացւոց առ դաշտավայրօքն 'ի կողմանցն աղուանից իբրև թէ ի՛ռ . և կոտորէին զա-մենայն կենդանի զորս գտանէին , և փութով դառնային . զորոց զհետ մտեալ ամենայն ուժով լաշն՝ հասանէ առ գետովն կոտմանայ‖ : Այն թուի ընդ Խամամայ և Խա-

նան Քաղաք՝ յիշատակեալ 'ի վարդանայ, որ 'ի գրեն զգեմետրեայ վրաց արքայէ՝ ասէ. * Պլահեաց նոյնպէս զիշխանութիւն հօրն, և յաւել ևս զԱմանիս, և զԽու- նան քաղաք առեալ 'ի պարսից ‖ .

Խոշախոնի : Յիշէ խորենացին 'ի ա̃ . 29 : բ̃ . 6 . 8 . ընդ խրամոյ, և Ջուղայի :

Խորանիստ : Յիշատակէ եղիշէ 'ի գլ . գ̃ . Թղթ . 67 . ընդ ամուր տեղիս աշխարհին հայոց զորս առին վարդա- նանք 'ի ձեռաց պարսից : * Բանուին զամրացոյց ամուրսն՝ զգաւառի քաղաք, զանին, զարտագերս, .. զերկայնորդսն, զարհնին, .. զբարձրաբերդն, զԽորանիստն, զծխանիստն, զանկասկածելի զողակսնն ‖ Եղ̃ :

Ծիծառնէ : Աւան յերկրին արջուց մերձ 'ի տարօն, կոչեցեալ յանուն Ծիծառնիկի ուրումն առն՝ որ գողա- ցաւ զմասն խաչափայտին 'ի մե̃ կարապետէ տարօնոյ հրա- մանաւ իշխանին արջուց յաւուրս գ̃ . ներսէսի կաթու- ղիկոսի, և վահանայ կամսարականի, զորմէ ընդարձակ գրի 'ի պատմ. տարօնոյ : * Իշխանն արջուց կողման գորդ- շատախոս . . . եկն 'ի դաշտն տարօնոյ առ այր մի որում անունն էր ծիծառնիկ . աղաչեաց զնա իշխանն և ասէ, թէ երթ հնարեա գողացիր զխաչն . . և առ յինէն զը̃ . դահեկան : Նա նա ասէ . դրամն քեզ, զխաչն առնում, և զամ յերկիրն քո, ընտրեմ ամուր տեղի, և շինեմ աւան, և զիմ անունն դնեմ նմա ‖ : Նա ապա ասէ . * Ըն- տրեաց տեղի, և շինեաց եկեղեցի, և անդ եդ զՏերու- նեան նշանն, և անուանեաց զանուն տեղոյն Ծիծառ- նէ ‖ : Նա սակաւ մի զինի . * Ասայլ տեղր՝ զի երկիրն այն ամուր է, և ոչ կարեն գողանալ ‖ : Նա 'ի վախճան պատ- մութեան . * Օ այս պատմութիւն գրեալ եղեն յեկեղեցին Ծիծառնոյ ‖ :

Ծխանիստ : Ամուր տեղի յաշխարհին հայոց յիշատա- կեալ յեղիշէէ . զորոյ զբանս տես 'ի վերոյ 'ի բառն Խո- րանիստ :

Ծովք : Տես Բզնունեաց ծովը :

Ծոսան : Գիւղ՝ յիշատակեալ 'ի թղթի յովհաննու քանեցւոյն, ուր ասի վասն յովհաննու ուրումն վարդա- պետի լինել 'ի ծոսան գեղջէ :

Կածան [illegible] : Տեղի՝ զոր յիշատակէ պատմիչն ուռպէլ- եանց ( տպ . թղթ . 29 . ) և ցուցանէ լինել 'ի սահմանս հայաստանեայց :

Կածարէթ : Կիրակոս դասէ զսա ընդ ամուր բերդս ար-

ցախոյ և գուգարաց. քանզի գրէ 'ի գլ. ԺԹ. պատմու-թե̃ խուրոյ վասն իշխանաց ոմանց հայոց 'ի ԺԲ. դարու յաւուրս զաքարիայ և իւանէի եղբարցն. * Առին և նոքա բազում գաւառս 'ի պարսից, և բերդս ամուրս զպարդմանն, զքարհերձ, և զերգեվանք, զտաւուշ, զկածարէթ, զտէրունականն, և զգագ, և զշամքոր քաղաք || ԽԶ. և զինի 'ի գլ. ԼԸ. գրէ վասն թաթարաց 'ի ԺԴ. դարու ։ * Այնոքիկ որ առին զշամքոր՝ եկին ամենայն ախուռն խուրեանց 'ի տաւուշ, և 'ի Կածարէթ, և 'ի նոր բերդն, և 'ի գագ, և որ շուրջ զնոքօք, և 'ի նեղ արկեալ պաշարեցին զնոսա || ։

Կայծոն ։ Յիշատակէ զայս վարդան երկիցս, և ցուցանէ լինել 'ի կողմանս գուգարաց՝ զի ասէ. * Եւ կրտսեր եղբայրն (Ժ̃Բ. սմբատայ) ժառանգէ զտաշիր սևորդւովքն ձորոգետին, և զկայեան, և զԿայծոն ... 'ի գաւառն տաշրայ, և այլ բերդք անուանիք եհաս գուրգենայ՝ զոր վիրք Սամխէթ կոչեն || ։ Եւ այլուր գրէ վասն գրիգորի մագիստրոսի. * Տայ զբջնի 'ի մանամասն, և զկայեանն, և զԿայծոն՝ զոր ընդ ձեռամբ իւր ունէր || ։ Որով բանիւ թերևս սահմանակից կացուցանէ ՝Նիգ գաւառին այրարատոյ (յորում բջնին էր,) զԿայեան որ էր 'ի գուգարս, ևս և զԿայծոն՝ որ ոչ հեռի թուի 'ի Կայեանէ ։

Կորդ ձոր ։ Յիշատակի առ թովմայի մեծոփ. 'ի պատմելն վասն սքանդարին. * Ելեալ գնայր առաջի նոցա սակաւ զօրօք Ճ̃. ոգւով աւելի կամ պակաս՝ Ճանապարհաւն Կորդ ձորոյ, յետ լերին սբ̃ ուխտին Սքանչելագործին || ։ Երևի գնել 'ի սահմանս արՃէշ քաղաքի ։

Կաստակ ։ Գետոյն յիշատակեալ 'ի ղազարայ թղթ. 213 ։ * Եւ քաջ սեպուհն մամիկոնէից վասակ՝ քանզի առաջապահ էր այն օր՝ գնայր յառաջ 'ի գետոյն որ անուանի Կաստակ || ։ Եւ զինի ասէ. * Եւ երթեալ 'ի Կաստակս յօթ, յանկարծակի յառաւօտուն ծագել՝ հասեալ 'ի նոյն գետ և մարզպանն պարսիկ ատրվշնասպ || ։ Եւ որպէս յայտ է 'ի բանից ղազարայ, այս տեղի չէր ինչ հեռի 'ի նախջուանայ ։

Համամաշէն ։ Քաղաք եպիսկոպոսանիստ, յառաջն կոչեցեալ Տամբուր, յարևմտեան կողմն Ճորոխ գետոյն, որպէս յայտ է 'ի պատմութե̃ յովհ. մամիկ. (ըստ ձեռ. քանզի պակասի 'ի տպ. այն գլուխ) ուր գրի վասն վաշտեայ վրաց արքայի. * Անց ընդ գետն Ճորոխ, և գնաց 'ի քաղաքն Համամաշ՝ որ կոչի Տամբուր || ։ Սա ինքն հա-

մամ քանզի նորոգեաց զսա 'ի Է. դարուն, կոչեաց յիւր անուն զքաղաքն Ջամնամաշէն. այլ 'ի ժամանակս նորին համանայ, և յետ մահուան նորա բազում քանդմունք գործեցան յայս քաղաք. քանզի նոյն ինքն արքայն վրաց սրով և հրով գերեաց զքաղաքն, և զքահանայս, և զեպիսկոպոս նորա զմանկնոս սպան յեկեղեցւոջ քաղաքին կոչեցելոյ Սբ սիոն. և յայնմանէ ՟Ռ ամելոյ պատմագրին՝ զանեծս ընկալաւ քաղաքն յեպիսկոպոսէն, թէ՝ * Եղիցի քաղաքս այս խոպան և աւերակ, և մի ոք իցէ որ բնակիցէ 'ի սա յաւիտեանս յաւիտենից ‖: Եւ փոքր ինչ զկնի՝ երեք հազարք 'ի միում գիշերի սատակեցան, և այլքն փախեան՝ թափուր և աւերակ թողեալ զքաղաքն: Այլ որպէս թուի՝ վերստին նորոգեցաւ քաղաքն, թէ և ոչ ըստ առաջնոյն: Տես զՋամնչէն 'ի Նոր Հայաստան. թղթ. 395. 398:

Ջերգ: Գաւառ՝ յիշատակեալ 'ի կիրակոսէ, որ գրէ վասն առեփ. կաթուղիկոսի աղուանից ('ի ԺԳ. դարու,) թէ * Այր անգր կացեալ մինչև մեռաւ 'ի Ջերգ գաւառի ‖: Զոր չէ մարթ որոշել՝ արդեօք 'ի Հայս, եթէ յաղուանս անկանիցի:

Ջիղուն: Ըստ Թովմ. Մեծոփ. յիշատակի Մկրտէն (ուն) 'ի Ջիղնայ. և այլուր յիշէ Օձոյն Ջիղունին: Տես և 'ի Նոր Հայաստան. թղթ. 231:

Ջնարակերտ: Այսպէս գրի 'ի ձեռագիր օրինակս խորենացւոյն. Բ. 7. իսկ 'ի տպ. որպէս և առ յովհ. կաթուղիկոսի ըստ միում օրինակի գրի Ջոնարակերտ, ՟Ռ այլում Զոնարակերտ: Խորենացին Ամուր կոչէ զնոյն, և երևի դնել ուրեք կամ յաղուանս, և կամ 'ի Հայս առ սահմանօք աշխարհին աղուանից. զորօրինակ 'ի Բ. 7. (ըստ ձեռ. 8.) յասելն վասն սխալեան ցեղին՝ յորմէ էր առաննահապետ աղուանից. * Զաւանդեաց զգաւառն աղուանից, և զլեռնակողմն նորին դաշտի՝ 'ի գետոյն Երասխայ մինչև ցամուրն որ ասի Ջնարակերտ ‖: Եւ զկնի գրէ վասն գուշարայ՝ որ յորդւոյն շարայի. * Զաւանդեաց զլեառն մթին որ է Կանգարք, և զկէս մասինն Ջաւախաց, զկողը, զծոբ, զձոր, մինչև ցամուրն Ջնարակերտ ‖: Իսկ վերջին բանքն ցուցանեն զՋնարակերտ սահմանակից գուգարաց: Իսկ յովհ. կաթուղիկոս կոչէ զնոյն Բաղաք, և յուտի գաւառ ձգել երևի զգիրս նորա 'ի գրելն զսահմանաց տէրութեան Ա. սմբատայ արքայի: * Ձգեալ անձնցուցանէր զշաւիղ տէրութեն իւրոյ յարև-

մօրից հիւսիսոյ մինչեւ ցկարնոյ քաղաք, և անդր ևս քան զկղզերջն քերեալ... զկուր զետովն մինչ 'ի քաղաքն տփխիս, և զուտի գաւառ՝ մինչ 'ի քաղաքն Հունարակերտ, և մինչ 'ի սուս և 'ի շամքոր ‖ ։

Չողկերտ ։ Աւան յիշատակեալ յեղիշէէ (գլ. Գ. Թղթ. 78.) ընդ արքունի ձմերոցս ։ * Աւերեալ (ուրացեալն վասակ) զբազում տեղիս հայոց աշխարհին, մանաւանդ զձմերոցս արքունի՝ որ կայեանք զօրացն էին, զգառնեն և զերամանն... զփառախոտն, զարդեանխոտն, զՉողկերտն աւան, և զբերդն արմաւրի ‖ Եղ ։

Չորայոյ ճանապարհ ։ Յիշատակի առ ղեւոնդեայ պատմագրի գլ. Ե. ուր գրէ վասն Թէոդորոսի ռշտունւոյ՝ թէ 'ի դիմել երկրորդ անգամ իսմայէլեան զօրուն 'ի հայս 'ի Է. դարուն, * Առեալ զզօրս իւր կամէր ունել զկիրճս ճանապարհին Չորայոյ, այլ ոչ կարաց ժամանել յառաջս նոցա ‖ ։

Չոր աղբեր ։ Ասողիկ Գ. 41. երեւի դնել զնոյն 'ի սահմանս բագրեւանդ գաւառի՝ մերձ 'ի լեառն նպատ ։

Մոխրոյ վանք ։ Յիշատակի յայսմաւուրս յունիսի 19. 'ի վարս յովսեփայ դւնեցւոյ՝ որ նահատակեցաւ 'ի Թուականիս ոճզ. յորում ժամանակի կային 'ի նմա բազմութիւնք կրօնաւորաց ։

Մահկանաբերդ ։ Յիշատակեն զայս տեղի վարդան և կիրակոս, որոց երկոցունց իսկ բանք ոչինչ որոշակի նշանակեն զգաւառ տեղւոյն, այլ ընդհանրապէս ցուցանեն լինել 'ի կողմանս գուգարաց, մերձ կայենոյ. վարդան այսպէս գրէ վասն դաւթի արքայի վրաց. * Առեալ... զկայեան, և զկայծոն, և զլոռէ, և զտաշիր, և զՄահկանաբերդ ‖ ։ Ըստ այսմ գրէ և կիրակոս վասն իշխանի ուրումն. * Ապա դարձ եղեւ իշխանին քրդի 'ի հայրենիս իւր՝ գալ յաշխարհն կայենոյ և Մահկանաբերդոյ ‖ ։ Իսկ զՄահկանաբերդ որպէս ասացաք՝ սահմանակից թուի կացուցանել կայենոյ ։ Այլ զկնի թերեւս որոշել թուի յասելն. * Որդիք քեռ բարեպաշտ իշխանին քրդին՝ որ ընդ այն ժամանակս իշխէր բերդին կայենոյ և գաւառին. և ցուցին նմա ‖ Կիր ։ Եւ ահա 'ի բաղդատել զվերջին բանս կիրակոսի ընդ առաջնոյն, զՄահկանաբերդ պարտ է դնել 'ի գաւառին կայենոյ. զի յառաջնումն զաշխարհն կայենոյ և զՄահկանաբերդ հայրենիք ասէ քուրդ իշխանին, իսկ 'ի վերջին բանսն թէպէտ չյիշէ զՄահկանաբերդ, այլ զիշխանն տիրել ասէ կայենոյ և

գաւառին՝ յորում իմանայ և զԱհկանաբերդ ։

Աղխաղեան տեղի ։ Յիշատակի 'ի բուզանդայ Դ. 30. ուր գրէ. * Պայլն համանէին 'ի տեղին որ կոչի Աղխա-ղեան ‖ ։ Յայլ օրինակի՝ Աղխաղեան կամ Աղաղեան ։ Նոյն-պէս յիշէ և Դ. 47. ուր և գրի Աղխաղան ։ Թուերև է 'ի խորխոռունիս, ըստ որում Աղխազութեն պաշտօն՝ նոցին տոհմին էր սեպհական ։

Աճուկ, կամ Հաճուկ աւան ։ Պատմիչն օրբէլեան գլ. Է. Թղթ. 25. դնէ զսա 'ի Նախջուան գաւառի, այլ քան-զի նաև զբերդն Երնջակայ 'ի նոյն կարգ դասէ (ըստ վիճակի իւրոյ ժամանակին,) յայն սակս չէ մարթ որո-շել՝ թէ արդարև 'ի Նախջուան անկանիցի Աճուկ կամ Հաճուկ աւանն, եթէ 'ի սիւնիս ։ Զբանս օրբէլեան պատմագրի տես 'ի Նախջուան գաւառի ։

Այրեաց Ջուրք ։ Միճակ հանդէպ գանձակայ, Նախնա-կան ժառանգութիւն օշնի իշխանի՝ զորմէ գրէ չարուննա-կողն սամուէլի. * 'Ի չիր. ամին 'ի բռնակալութեն տաճ-կաց՝ եւ օշին իշխանն 'ի ժառանգութենէ իւրմէ որ կոչի Այրեաց Ջուրք հանդէպ գանձակայ ... և եկեալ յաշ-խարհն կիւլիկեցւոց ‖ ։

Աջառոց գիւղ ։ Յիշատակէ Թովմա մեծոփ. յասէն. * Նա տասն գերի (տարեալ էին) 'ի միում տանէ 'ի գե-ղէն Աջառուց ‖ ։ Երևի դնել զնոյն 'ի կողմանս քաջ-բերունեաց ։

Աժնկերտ ։ Այս տեղի յայտնի է մեզ լինել 'ի սորին բասեն. տես 'ի Նոր Հայաստան. Թղթ. 91 ։ Այլ զի ոչ ուրեք 'ի գիրս եղև մեզ գտանել թէ յոր գաւառ անկա-նիցի Աժնկերտ, յայսմ վայրի 'ի կարգ անծանօթից հարկ եղև դասել ։ 'Ի ստորագրութիւս եպիսկոպոսաց ժողովոյն Սսոյ 'ի ԺԴ. դարուն գտանի և ստորագրութի Կիրակոսի եպիսկոպոսին Աժնկերտոյ ։

Անփոր ։ Գաւառ՝ որպէս թուի 'ի հիւսիսակողմն հայ-աստանեայց, զոր և յիշատակէ յովհաննէս կաթուղիկոս յասէն վասն հայկազուն իշխանացն սահակայ և վասա-կայ՝ որք ամրացեալ էին 'ի սեւան կղզի յերեսաց ապս-տամբութեց յուսփայ՝ եթէ * 'Ի միտ եդեալ 'ի միասին սիրելի եղբարցն՝ թէ գուցէ ... մատնեսցին 'ի ձեռս հե-թանոսական բռնադատացն .. Նաւեալ անկանէին հապ-ճեպիւ յամուր գաւառն Անփորոյ ‖ ։ Գրէ զկնի, թէ յորժամ և անդ զհետ պնդեցան նոցա թշնամիք, * Երթեալ ... դադարէին յանձաւախիտ ամրոցս մայրեացն

գարդմանայ և արցախայ ։ Զնոյն բանս ընդօրինակէ և ստեփ. օրպել. 'ի գլ. լը ։ Արդ՝ 'ի վերջին բանից յովհ. կաթուղիկոսի. յայտ է թէ Միափոր գաւառ էր ը̄ մէջ արցախոյ և գարդմանայ որ էր յարցախ, և սահմանացն ծովակին գեղամայ ։

Յիշէ զայս գաւառ՝ Քաղաք անուամբ և կիրակոս 'ի պատմ. 'ի գրելն վասն յովհաննու աղուանից կաթուղիկոսի, թէ դիմեաց նա գալ յերկիրս հայոց 'ի կողմանցն գանձակայ, և * Բնակեցոյց զնա իւանէ 'ի քաղաքն Միափոր՝ 'ի վանքն որ կոչի Խամշ ։ Նա սկսաւ շինել անդ եկեղեցի մեծ և հրաշալի, և մինչև էր աւարտեալ՝ փախանուին եղև, զի եկին սուլտանն խորասանայ ջալալադինն կոչեցեալ ։ Այլուր նա ինքն կիրակոս 'ի գրելն կրկին անգամ զնոյն յովհ. կաթուղիկոսէ՝ կոչէ զՄիափոր՝ Գաւառ ։ * Տր յովհաննէս ամս ի, որ շինեաց եկեղեցի մի հրաշալի 'ի Գաւառն Միափոր, 'ի վանքն որ կոչի Խամշի ։

Մղոնիք ։ Գեօղ անծանօթ, յիշատակեալ 'ի թովմայէ արծր. դ. 11. ուր գրէ վասն արշաւանացն գուրգէնի եղբօր գագկայ արքայի արծրունւոյ, թէ * Հասին 'ի գոգ տեղի մի 'ի Մղոնիս գեօղ ։ և որպէս թուի 'ի նախընթաց և 'ի հետևեալ բանից՝ էր 'ի կողմանս պարսկահայոց ։

Մշկավանք ։ Յիշատակի 'ի վարդանայ 'ի ոճր. թուին ։ * Նոյն շարժ ահագին, և փլաւ պանծուճագարդ եկեղեցին որ 'ի Մշկավանս, 'ի մետասանին յունուարի 'ի ժամ ճաշոյ, և դ. պատարագող ը̄ մեծ զենմանն նուիրեցան ։

Մռող ։ Գաւառ 'ի մեծն հայս, ուր ըստ գրելոյ խորենն. գ. 10. յարշաւրէ կամսարականէ 'ի պարտութեն մատնեցան պարսիկք ։ * Գումարէ (շապուհ արքայ պարսից) զօրս բազում 'ի ձեռն ներսեհի եղբօր իւրոյ .. և առաքէ յաշխարհս մեր ... որոց պատահեալ քաջին արշաւրի կամսարականի՝ հանդերձ ամենայն հայաստանեայցս զօրու, ճակատ տուեալ 'ի Մռուղն անուանեալ դաշտի .. փախստական առնեն զզօրս պարսից ։

Մրէն ։ Քաղաքագեօղ յիշատակեալ նախ 'ի ղազարայ թղթ. 98. * Նա զերանելի երէցն խորէն 'ի Մրենոյ ։ (և թղթ. 75.) ուր յետ յիշելոյ զեպիսկոպոսունս ժողովոյն արտաշատու առ ա̅. յովսէփ կաթողիկոսաւ, 'ի վերայ բերէ. * Այոքիկ ամենեքին եպիսկոպոսքս, և 'ի պատուական երիցանց՝ ո̃րն ղևոնդ, և խորէն 'ի Մրե-

նեայ ։ Սոյն շինեցաւ մեծապայծառ եկեղեցին 'ի Է. դարու 'ի ժամանակս իշխանութեան դաւթի սաՀառունւոյ ։ * Իւ 'ի Հրամանէ նորուն շինէր իսկ (ասէ յովՏ. կաթ.) եկեղեցին գեղեցկայարմար որ 'ի քաղաքագեղն Արէն ։. զոր սամուէլ՝ Կաթուղիկէ անուանէ յաղիւսակին առ կք. Թուականաւն Հայոց, * Շինուած Կաթուղիկէին Արենոյ ։ (1) ։ Ըստ աստղկայ ե. 2`. գրի Արենն՝ ուր ասէ վասն դաւթի սաՀառունւոյ. * 'Ի Արուէն զեկեղեցին սա շինեաց ։ Իսկ վարդան զնոյն կրկնէ յասելն. * Սա շինեաց զեկեղեցին Արենոյ ։

'Ի ժբ. դարուն առաւ յեղտկուզայ ամրոցն Արենոյ և այրեցաւ, ըստ որում պատմէ վարդան ։ * 'Ի ոժբ. Թւին (իբրև առին մերք զդուին և այրեցին) ... լուեալ Եղտկուզն՝ գայ յայրեցեալ և 'ի քանդեալն դուին, և խոցոտեալ սրտիւ և մռմռեալ իբր զգազան կատաղի՝ գայ 'ի Արէն, և այրէ անդ զամրոցն, ուր ողջակիզեցան վասն քնի ոգիք իբրև ռ, և դառնայ 'ի դաշտն գազայ ։ 'Ի բանից սոսի վարդանայ երևի եթէ Արէն անկանէր 'ի Հիւսիսոյ դունայ, որպէս թէ ը մէջ դունայ և գազայ ։

Նեարես ։ Գիւղ յիշատակեալ 'ի ստեփ. օրպել. գլ. Թ. ուր գրէ վասն տարսայիճի որդւոյ լիպարտին. * Սմբաքան ողորմած և գթած եղև առ ամենեսին, մինչ զի 'ի Նեաւիս գիւղ՝ որ է 'ի վերայ Հուրաստան գետոյ՝ զխաչ կանգնէին, և անուամբ նորա կոչէին զնա ։

Նոր Բերդ ։ Յիշատակեն վարդան և կիրակոս 'ի կարգի այլոց տեղեաց արցախոյ, գուգարաց, և ուտիոյ ։ * Օտամենայնն առեալ էին (Թաթարք, գրէ վարդան,) զՏաւուշ, զԿածարէթ, զտէրունականն, զերգեվանքն, ըզմածնաբերդն, որ էր կիւրիկեանց սախաթանայ, զՆոր բերդ, որ էր վասակայ Թագաւորազնին, և զքաւազինն անմարտնչելի ամրոցն ։ Իսկ կիրակոս գրէ վասն դաւթի Հօր վասակայ. * Խաղբակաց վարեցաւ (ընդ կիւրիկեանս) դաւիթ իշխան Նոր բերդին, զի էր և նա յազգէն բագրատունեաց, Հայրն վասակայ իշխանին՝ որ շինեաց զեկեղեցին Հրաշազան 'ի վանքն որ Նապաստն կոչի, Հուպ 'ի Նոր բերդն, առաջնորդութբ և ձեռնտուութբ արքեպիսկոպոսին յոՀաննիսի տուեցոյ ։ Պատմէ զՏնի և զպա-

(1) Կիրակոս զշինութիւն կա. ինքն դաւթի) 'ի կբ. Թվականին Թուղիկէիս դնէ 'ի կբ. Թուին եղև շինուած կաթուղիկէին Արենոյ. " Ցաւուրս սորա ( այս նոյ ։

շարունն ՝Սոր բերդին 'ի Թաթարաց ։

՝Սոր Շիրաքան ։ Ս իշխան այսր սահմանի յիշեն նախնիք ընդ մեծամեծ իշխանս հայաստանեայց, որք 'ի գլխաւորութեան կարգի էին առաջինք, և կոչէին բդեշխք, և սահմանակալք ։ Ագաթ. Թղթ. յհէ. գրէ. * 'Ի գլխաւորական կողմանէն (անհոյր տրդատ 'ի գնալն 'ի Հռոմ.) չորեսին գահերէցս իւրոյ տաճարին, որ բդեշխին կոչէին ։ Ա առաջին սահմանակալն 'ի ՝Սոր շիրական կողմանէն. Երկրորդ սահմանակալն յասորեստանեայց կողմանէն, երրորդն յարուաստան կողմանէն, չորրորդն 'ի մազքթաց կողմանէն || ՃԺ ։ Սոյնպէս և բուզանդ Գ. 50 ։ * Բայց այսմ գնալոյ (ապստամբութք 'ի թագաւորէն հայոց աշխարհաց) սկիզբն առնէին մեծամեծ աւագանին. նախ բդեշխն աղձնեաց. և ՝Սոր շիրականն բդեշխն, և մահկերտանն, և նիհորականն ... և յետ սորա գոգորեաց բդեշխն ... և ամուր աշխարհն կորդեաց. և տոր գաւառն կորդուաց || ։

Արդ՝ թէպէտ այսպէս մեծ էր իշխան սորա, բայց թուի թէ այս իշխանութն չէր կարգեալ 'ի վաղարշակայ, այլ 'ի տրդատայ, զի ոչ յիշէ զայն մարիբաս, ուստի և ոչ խորն, այլ ագաթ, բուզանդ, և յետագայք ։ Նա թէպէտ այսպէս երևելի ինն էր այս իշխանութի, բայց ոչ որոշեն ինչ բնաւ պատմագիրք մեր զսահմանն՝ ՝Սոր շիրական անուանեալ, միայն յայտ առնեն թէ էր առ սահմանօքն ասորւոց ։ Ագաթ. 'ի յիշելն զսահման քարոզութե սրբոյն գրիգորի, և իշխանութեն տրդատայ, գրէ. * Նա յամդացւոց քաղաքէն մինչև առ մծբին քաղաք, քերէր առ սահմանօքն ասորւոց, առ ՝Սոր շիրական երկրաւն, և առ Կորդուօք մինչև յամուր աշխարհն մարաց, մինչև առ տամբն մահքրտեան (1) իշխանին, մինչև յատրպատական ձկտէր զքարոզութի իւր || ։ 'Ի նոյն կողմանս դնէ և թոմա արծ. Բ. 3. յասելն. * Նա յասորւոց կողմանէ զասորեստան, և զմծուին, (որ է մծբին), և զՍոր Շիրական, մինչև ցսահմանս տաճկաց || ։

Արդ՝ բանք պատմագրացս զայս ինչ քաջայայտ տան իմանալ ։ ՝Նախ՝ թէ ՝Սոր շիրական երկիրն ոչ էր 'ի հայս, այլ արտաքոյ մեծին հայոց ընդ տէրութբ մերոց թագաւորաց. յոյր սակս թէպէտ անկ էր յայնմ վայրի ճառել զայսմանէ, ուր ունիմք ճառել զաշխարհաց որք էին ար-

(1) Նոյն անուն է, զոր բուզանդ 'ի վերոյ կոչեաց Մահկերտան ։

տաքոյ Հայաստանեայց՝ այլ ընդ տէրութ̃ մերոց Թագաւորաց. բայց քանզի մթին բանք պատմագրաց զիշխանն սորա դասելով ընդ մեծամեծ իշխանս բնիկ Հայաստանեայց, հարեւանցիկ ընթերցողաց ցուցանեն լինել 'ի Հայս, առ 'ի բաց բառնալ զդժուարութիւնն՝ յայսմ վայրի ծանուցաք:

Երկրորդ՝ այս երկիր ոչ էր նորոգ ինչ յաւելեալ 'ի տրդատայ, որպէս թէ առաւել ընդարձակ տիրելով նորա քան զվաղարշակ, այլ ընդ տէրութ̃ Հայոց էր նաեւ յաւուրս վաղարշակայ. վասն որոյ մեզ թուի զանունն միայն փոխեալ եւ զիշխանութիւնն, որպէս դէպ լինի բազում անգամ: Արդ՝ 'ի քննելն գտանեմք յաւուրս վաղարշակայ սոսկ յիշատակել զԿղէսուրն, զոր ոչ գտանեմք յիշատակեալ յայլ պատմագիրս յաւուրս տրդդատայ:

Այս Կղէսուր էր ընդ տէրութ̃ մերոց Թագաւորաց, որ յն. անուանէր Կլէիսուրա, և լտ. Չլէիսուրա: Այն այս անուամբ Սէբէա որ է Ծոփք, ըստ դատման իմոյ փոխեալ կարծեմ յաւուրս տրդատայ 'ի Շէրական անուն, և առ նմին յաւելեալ ապա զանուանս Նոր. կոչելով Նոր Շէրական: Հաւանական համարիմք ևս՝ թէ նաև ընդ նոր անուանս՝ նոր սահմանք եղեն կղէսուրայ յաւուրս տրդդատայ. իբր զի Նոր շիրականն ոչ բովանդակէր զհամօրէն կղէսուրն՝ որպէս յաւուրս վաղարշակայ. և որպէս ինձ թուի՝ էր խառնեալ ըստ մասին 'ի կղէսուրայ, ըստ մասին 'ի միջագետաց, և նմին յարակցաց, զի զայս թուի ակնարկել վերոգրեալ բան թովմ. արծ. զնու շիրականն ձգելով մինչև ցսահմանս տաճկաց, և ըստ մասին նաև 'ի Հայաստանեայց. որով 'ի դէպ էր համօրէն կոչել զայս երկիր ոչ գելիսուրա, այլ Նոր սէբէա, որ է Նոր շէրական:

Ստեփ. օրբէլեան, գլ. Է, 'ի յիշելն զիշխանս տրդատայ արքային, ոչ յիշէ զիշխանն Նոր շիրական. զի այսպէս ունի բանն. * Նախ զօրացն և աշխարհին՝ Դ. միայն կացուցանէ իւրոյ թագաւորութեան երկրորդ հրամանատար 'ի վերայ ամենայնին: Արեւելեան կողմանն՝ իշխանն սիւնեաց իռ. իշխանօք: Հիւսիսային կողմանն՝ բդեշխն գուգարացւոց իբ. իշխանօք: Արեւմտեան կողմանն՝ կորդուացին իռ. իշխանօք: Հարաւային կողմանն՝ իշխանն անգեղ տանն իբ. իշխանօք: Զայս այսպէս (գտաք) 'ի 'ի գահ Նամակի իշխանացն Հայոց, զոր ղեւոնդ գրեաց, և սակայն մի ցուցանէ պատանդեղին, և ներսխսին‖: Զա-

զաթանգեղոսին յիշելով, զվերագրեալ նորին բանն ամփ-արկէ. բայց զարմանք են, զի Ագաթանգեղոս յիշէ զիշ-խանն Նոր Շիրական, իսկ Ստեփաննոս՝ ոչ։

Այլ որպէս երեւի՝ զեռնդ ուստի առնու Ստեփաննոս՝ զիշխանութիւնս Հայաստանեայց կամեցաւ անուանել ոչ յանուանէ սահմանացն՝ այլ յանուանէ կողմանցն համօ-րէն աշխարհին, 'ի ցուցանել թէ որ իշխանք տիրէին 'ի հիւսիսային և 'ի հարաւային, յարեւելեան և յարեւմտեան կողմն Հայոց. վասն որոյ և 'ի վերոգրեալ բանս Ստեփան-նոսի՝ զիշխանն Կորդուաց և Անգեղտան՝ չէ պարտ առ-նուլ փոխանակ երկրին Կորդուացւոց, և երկրին Անգեղ-տան. զի երկիրն Կորդուացւոց ոչ անկանի յարեւմուտս Հայոց, և ոչ երկիրն Անգեղտան 'ի հարաւակողմն Հայոց։ Այլ պարտ է առնուլ փոխանակ անձանց. կամելով ա-սել՝ թէ Տրդատ՝ 'ի վերայ արեւմտեան կողման Մեծին Հայոց հրամանատար կացոյց զայն՝ որ էր իշխան ցեղին Կորդուաց, և 'ի վերայ հարաւային կողման Մեծին Հայոց հրամանատար կացոյց զայն՝ որ էր իշխան ցեղին Ան-գեղտան։

Այս աշխարհ Նոր Շիրական՝ թէպէտ ապստամբեալ էր յաւուրս Արշակայ արքայի ըստ գրելոյ Բուզանդայ, այլ յաւուրս Պապայ արքայի 'ի հնազանդութիւն նուաճեաց Մուշեղ սպարապետ նորա, որպէս գրէ նոյն Բուզանդ. Ե. Գ. ուր Նոր Շիրական աշխարհն՝ յօրինակս ինչ գրի Նոշի-րական։

Շահապան Բնանշիժի։ Տես զբանս Ղազարայ 'ի բառն Ուրծ։

Շամբոր։ Քաղաք՝ զորոյ զառաջին շինութիւն Կիրակոս ընծայէ Շաթայ ուրումն Խազրի որդւոյ Ջաբուխայ յա-ւուրս Խոսրովու պարսից արքայի 'ի Է. դարու։ *Սա շի-նեաց (ասէ) քաղաքս Է. յանուն Շաթայ. զՇաթար, զՇամբոր, զՇաքի, զՇիրուան, զՇամախի, զՇապօ-րան‖։ Յիշատակեալ քաղաքդ երեւին լինել յԱղուանս, բայց վասն Շամբոր քաղաքի բանք Յոհ. կաթուղիկոսի ցուցանեն դնել 'ի ծայր սահմանացն Ուտի նահանգին (1). զնոյն ակնարկեն և բանք Վարդանայ և Կիրակոսի, որք և ստէպ յիշատակեն։

'Ի Ժէ. դարու տիրէր այսմ քաղաքի Վահրամ ոմն իշխան, որ և տէրն էր Տէրունականին, Երդէվանից, և Մածնա-

(1) Տես զբանս նորա 'ի բառն Հնարակերտ։

բերդին. յորոյ 'ի ձեռաց առին Թաթարք, և անդրէն դարձուցին առ նա։ * Մի 'ի ոմն յաւագացն (Թաթարաց, ասէ կիրակոս) որում անուն էր մոլար նուին, որոյ հասեալ էր բաժին կողմանքն այնոքիկ ... առաքեաց ('ի մուղան դաշտէ աղուանից՝ ուր բանակեալ էին,) առ կազոր իբրև արս հարիւրս, որ եկեալ հասին առ դրունս քաղաքին Շամքորոյ ... Իսկ քաղաքն այն էր յայնժամ ընդ իշխանութեամբ վահրամայ և որդւոյ իւրոյ աղբուղային՝ զոր առեալ էին յառաջագոյն 'ի պարսկաց ... Իսկ զօրք այլազգեացն օրըստօրէ յաւելուին 'ի թիւն, մինչև եկին գլխաւորն իւրեանց ... և ետ պատերազմ ընդ քաղաքին, և զփոսն որ շուրջ զպարսպաւն էր քաղաքին՝ ելից փայտիւ և ցօղնով՝ զի դիւրաւ ելցեն ընդ պարիսպն, և նոքա 'ի ներքուստ հուր ընկեցեալ 'ի գիշերի այրեցին զնա։ Իսկ 'ի վաղիւն ետես զայն մոլար նուինն՝ հրամայեաց զօրացն բառնալ բեռն մի հող իւրաքանչիւրոցն, և արկանել 'ի փոսն. և իբրև արկին, լցաւ հաւասար պարըսպին. և դիմեաց զօրն իւրաքանչիւր հանդէպ երեսաց իւրոց 'ի քաղաքն, և առին զնա, և կոտորեցին զամենեսին բերանով սրոյ, և այրեցին զշինուածն որ 'ի նմա ||։ Ի բանից աստի կիրակոսի յայտ է լինել այսր քաղաքի մերձ յոյժ մուղան դաշտի. քանզի և ըստ գրելոյ վարդանայ՝ Թաթարք զառաջինն բանակեալք 'ի դաշտն մուղան՝ նախ առին յարձակմամբ զայս քաղաք. * Եւ նախ առնու (ասէ՝ մոլար նուինն) զՇամքոր հնարիւք, և վահրամ (տէր երկրին) փախչի 'ի տեղաց 'ի տեղիս ... և ապա եկեալ առնոյր զառեալն 'ի նոցանէ զգղեակս և զգաւառն որ սեպհական լեալ էր նոցա 'ի հայրենեաց, որ և զամենայնն առեալ էին ||։

Շատուանոյ ձոր։ Յիշատակէ Թովմա արծր. Գ. 2. * Պատմեաց զայս մեծ քահանայն սամուէլ յաւանին արտամէտ. նորա լուեալ էր 'ի պարսկէ ումեմնէ 'ի Ձորոյն Շատուանոյ ||։ Գուցէ պարտ է լինել Գատուանոյ ձոր, որ յարդ գտանի նմանանուն տեղի առ ծովուն բզնունեաց՝ Գատուան կոչեցեալ։ Տես 'ի Նոր Հայաստան։

Շաքէ։ Յիշատակի 'ի կիրակոսէ և յայլոց. և առ ստեփ. օրպէլ. գլ. ժԸ. 'ի սեռականին Շաքոյ, որ և ակնարկէ լինել իբրև տեղի 'ի նահանգին սիւնեաց. տես զբանս նորա յանձանօթս սիւնեաց։ Առ կիրակոսի յիշատակի և տէրն Շաքոյ. 'ի գրելն վասն գաւթի աղուանից կաթուղիկոսի 'ի Թ. դարու. * Սա օրհնեաց զանօրէն

անուանութեն Տ. աքոյ ամն ||։

Ր գեղ։ Յիշէ զսա Լաստիվ. Գ. զոր և ցուցանէ լինել մերձ ՚ի սալքորայ գիւղ բասենոյ. * Յետ այսորիկ թողեալ թագաւորին զբանակեալ իշխանսն ՚ի սալքորայ, խաղայ զօրօքն յառաջ ՚ի տեղւոջ որ կոչի Ր գեղայ ||։

Ողէն, որ կոչի և Ր տեայ։ Յիշատակի ՚ի Ղազարայ Թղթ. 395. * Երթեալ հանգչէր զմնացեալ մասն ՚ի գիշերոյն յՈղէն գեղջն՝ զոր Ր տեայ անուանեն՝ ՚ի գոմս տեղեացն, մինչև յառաւօտուն ծագել, և ՚ի ծագել լուսոյն՝ երթեալ բնակէր ՚ի գիւղն Ր տեայ ||։ Կարգ պատմութեն զանազան ցուցանեն լինել զՈղէն և զՐ տեայ, բայց այսպէս պարտ է զգուշութբ իմանալ, որպէս՝ զի վահան զմնացեալ մասն գիշերոյն հանգեաւ ոչ ՚ի յՈղէն, այլ ՚ի գոմսն որ էին առ Ողէն կամ Ր տեայ գեղօքն. առ պա ՚ի ծագել լուսոյն՝ եմուտ ՚ի նոյն իսկ ՚ի գիւղն Ողէն, որ և Ր տեայ։ Մերձ ցուցանէ լինել ՚ի հաշտեանս և յարշամունիս՝ յորում էր գիւղն Նորիգայ։

Որթք։ Տեղին բնակութե ողայոյն արշակունի, զորս յետ աւերման քաղաքին մեծն Ներսէս ըստ գրելոյ խորենն. Գ. 27։ * Հրամայեաց կրել որթալք ՚ի գոմ մի, և դարմանս և մուցօղս նոյին կարգեալ, որք յետոյ Ռամնացեալ⁽¹⁾ անուանեցան Որթք այնորիկ աղագաւ ||։ Ո գաւառ տեղւոյն ոչինչ յիշատակէ, և թերևս էր ՚ի նոյն սահմանս արշակունի։

Որդ, և Րասուն, և կամ Ոստուխ։ Յայտնաւորս տէր խորայէնէ փետր. 16. ՚ի վարս յուդայի յակոբեան գրի վասն նորա. * Գնաց ՚ի յՈրդ քաղաք հայոց, և անդ կատարեաց զընթացս իւր.. և անդէն թաղեցաւ ||։ Նաև վասն սիմոնի եղբօր յուդայի գրի անդ. * Կատարեցաւ յՌուսթա՝ մօտեալ ՚ի մէջ եղբօր իւրոյ (յուդայի՝ որ յՈրդ կատարեցաւ) ||։ Օ այս տեղի՝ այլ օրինակք յայտմաւ. գնեն ՚ի Թիկանց որմեայ, զորօրինակ ՚ի յուն. 30. գրի վասն սիմոնի կանանացւոյն. * Կատարեցաւ ՚ի քաղաքն յՈսուսթա՝ որ ՚ի Թիկանց յՈրմոյ կայ ||։ Իսկ ՚ի փետր. 16. ասի վասն շմաւոնի՝ որ է նա ինքն սիմոն. * Քարոզեաց զքն ՚ի քաղաքս և ՚ի գիւղս և ՚ի գաւառս հայոց և մարաց և ասորոց, և կատարեցաւ յՌուսթայ

(1) ՚ի տպ. խոր. գրի Աննա ուածգ, թէպէտ և մթութիւն ներէ․ առաւնեցան՝, այլ որպէս կայցէ և ՚ի բնագրին ըստ ձեռագրաց է՝ չէ հարազատ ընթերց. գրոց՝ որոց զհետ գնացաք։

քաղաք որ 'ի Թիկանց Ուրմոյն կայ, և անդ Թաղեցաւ ||։ Պատմէ զաւուրմն Ուրմեայ 'ի սքանչարայ Թովմ. մեծոփ. 'ի ԺԵ. դարուն, յասելն.* Գնաց 'ի յՈւրմի քաղաք Հայոց, և աւերեաց զամենայն աշխարհն ||։ Այսչափ ինչ վասն Ուրմեայ, և Ուսաթաւայ Եէ. յիշատակեն մատենագիրք վկայաբանք՝ ակնարկելով լինել 'ի Հայս, առանց որոշելոյ զգաւառն ։ Տես զՈւրմի և 'ի Նոր Հայաստան ։

ՈՒՐՄԻԿ ։ Տես ՈՒՄՆԻԿ, 'ի գաւառին բասենոյ յայրարատ ։

ՈՒԽԹԻՔ ։ Վարդան յիշատակէ զայս տեղի լինել իբրև 'ի սահմանս այրարատոյ, քանզի յիշէ զնոսին ընդ կեչըորայ, և ընդ ձորոյն երասխայ ։ * Խյաուաչային ... Թողու յան կարծակի զտուն իւր զկեչըոր և զՈւխթիսն, և զամենայն ձորն երասխայ, և երթայ ... 'ի դւին ||։ Միայն թէ Լաստիվ. 'ի գլ. Ճ. և Ը. յիշէ զաւանն կամ զքաղաքն ուխթեաց, իբրև յաշխարհին տայոց, կամ մերձ 'ի նոյն սահմանս, և ոչ յայրարատ ։

ՈՒՂՔ, կամ ՅՈՒՂՔ ։ Տեղի յիշատակեալ յայսմաւուրս յուն. 31. 'ի վարս սրբյն սարգսի ։

ՈՒՏԵԿԱՆ. ԶՈՂ. ԳԻՍ. ՔՐԻՍՏԻ։ Յիշատակին տեղիքս 'ի վարս եղիշէի առաքելոյ աղուանից, առ որ խորայելի՝ որ գրէ ։ * Եհաս (եղիշէ) յաղուանս, և մտեալ 'ի Զողա, և 'ի բազում տեղիս քարոզեաց զքս, եկն յուտի գաւառ, և անտի գնաց 'ի գիւղն որ կոչի Գիս, շինեաց եկեղեցի ... և էջ նա 'ի դաշտակն Զարքունի ||։ և ապա ասի. * Գտեալ զոր նշխարս (նորա) բերին 'ի գիւղն Ուտեկան, և անդ հանգուցին, և յետոյ տարան 'ի վանքն ՔՐԻՍՏԻ ||։ Այս ամենայն տեղիք թուին լինել յաղուանս Հայոց, այսինքն է յուտի կամ յարցախ ։

ՈՒՐԾ ։ Զիշխան սորա Ներսէհ անուն յիշատակէ ղազար թղթ. 114. որպէս և եղիշէ Գ. թղթ. 73. առանց յիշելոյ զանունն ։ Իսկ ղազար այլուր թղթ. 210. գրէ ինչ որոշակի. * Սեպուհ մի Ուրծացի՝ որում անուն էր վարազներսէհ որդի կողթեկայ իշխանին Ուրծայ, որ էր յերդմանն ընդ նախարարսն Հայոց, նենգեալ ուխտին ոչ՝ երթեալ աւերէր զՇԱՀԱՊԻՒԱՆ ԲԱՆԱԿԻՆ. և առեալ զամենայն կարասի շահաստանին, դիմեալ ամրանայր 'ի բերդն՝ որ անուանեալ կոչի ՈՍԿՐՈՅ ԲԵՐԴ, որ էր բերդ ամուր իշխանութեն իւրեանց ||։ ՇԱՀԱՊԻՒԱՆ ԲԱՆԱԿԻՆ՝ յայտ է թէ, էր ընդ տէրութը և յաշխարհին Հայոց, զի Ներսէհ 'ի Հայոց երկպառակեալ՝ զանեղխ Հայոց աւերէր ։ Իսկ ԲԵՐԴՆ Ոսկրոյ՝ էր բերդ ամուր սեպհական իշխանայն

ուրծայ, ուր և ամրացաւ յերեսաց ուխտապահ Նախարա-րայն Հայոց։ Տես 'ի սիւնիս 'ի գաւառին վայոց ձորոյ զՎրա-ղահամբ։

Զարաբերդ. Մխանա. Կարմիր։ Տեղիք 'ի սահմանս խա-չենոյ կամ արցախոյ՝ ըստ որում յիշատակէ կիրակոս 'ի գլ. Ձ. վասն իշխանին խաչենոյ և արցախոյ՝ Ջալալն կոչեցելոյ. * Նա 'ի նաա զհայրենիս իւր զԶարաբերդն, և զՄխանա, և զԿարկառ, զոր հանեալ էին յառաջա-գոյն 'ի ձեռանէ ազգին Թուրքաց և վրաց ‖։ Յիշատակի Զարաբերդն և 'ի պատմ. օրբէլ. գլ. Ե. տպ. Թղթ. 2կ. ուր ասի վասն զաքարէի և իւանէի Բ. եղբարց։ * Առին զգարդման, զգանձակ, զԶարեաք, զհեր, զշամքոր, զշա-քի, զպարտաւ, զԶարաբերդ ‖. ուր յայտնի զանազանէ զԶարաբերդ 'ի Զարեքէ, զորմէ ստորև։

Զարեք։ Բերդ՝ զոր յիշէ կիրակոս 'ի գրեւն վասն կա-Թուղիկոսին աղուանից և որոց ընդ նմա։ * Պնեալ եղե-նոցա գալ 'ի քաղաքն մի 'ի սահմանս բերդին որ կոչի Զա-րեք, և անդ դադարել, և անդուստ հովուել զհօտ իւր ‖։ Նա այլուր վասն յոհաննու յաջորդին սորին. 'ի ժդ. գա-լուն գրէ. * Սա հաստատեաց զաթոռն իւր 'ի սահմանս Զարեքին, 'ի քաղաքի անդ՝ զոր ասացաք վերագոյն ‖։ Ի նմին դարու յարձակեցան 'ի վերայ սորա մուղալք։

Պայեկայ դաշտ։ Ղևոնդ 'ի գլ. Ե. գրէ վասն զօրացն յունաց յաւուրս աբսիմարոսի կայսեր յաջորդին յուս-տինիանու, թէ * Նկեալ պատերազմեցան ընդ նմա (այս-ինքն՝ ընդ սմբատայ վարազտիրոցեան) 'ի մօրամէջ դաշ-տին Պայլկայ. և բազում եղեն հարուածք զօրացն հայոց‖։ Նաև 'ի խորագրի նոյն գլ. գրի. * Սամն մօրին կռուեին ‖։

Պղնձահանք։ Տեղի՝ ուր էին գերեզմանք իշխանացն իւա-նէի, և աւագայ. * Թաղեցաւ (ասէ կիրակոս՝ վա աւագ-իշխանին,) 'ի Պղնձահանքն 'ի գերեզմանի հօր իւրոյ իւա-նէի ‖։ Նաև վարդան. * Ի ոՃԹ. Թւին մեռաւ աւագն որ-դին իւանէի, և Թաղեցաւ 'ի Պղնձահանքն ընդ հօր իւ-րում ‖։

Քրդշտէն։ կոչի և Մնհրնեբուեհեայ վանք, ըստ որում յիշէ ստեփ. օրպէլ. զորոյ զբանս տես 'ի սիւնիս 'ի բառն Մա-քենիս։ Յիշատակի և 'ի Ճառընտիրս 'ի պատմութեան գիւտի Նշխարաց սրբոյն գրիգորիսի։ Տես 'ի վերոյ և զՄ-ռեկան։

Սագրայ բերդ։ Տես 'ի բառն Սործ։

Սախուրէն։ Ամրոց՝ մերձ 'ի շամշուդէ, զոր յիշէ յոհ.

կաթողիկոս ։ * Նաև ինքն ապա (աշոտ Ը.) վայելուչ եղ-բարբըն իւրով արուեստ և մծ. արամբք երթեալ առկայա-ցեալ դադարէր դարէր մերձ յամրոցն որ կոչի Սակու-րէթ ‖ ։ Խօսի լինել յաշխարհին Հայոց, քանզի ասորէ յիշէ զվրաց աշխարհն իբրև այլ 'ի Հայոց, յանելն վասն նորին աշոտոյ՝ թէ գնայ չկողմանէ Վրաց աշխարհին ։ Խօսի լինել 'ի գուգարս, յորում էր և շամշուղէ ։ Զայս բերդ-կուրապաղատն տայոց դաւիթ առեալ 'ի Ծագաւորէն ափխազաց՝ ետ Ը. սմբատայ արքայի, ըստ գրելոյ ասողկայ Գ. 28. այլ զկնի մահուանն սմբատայ էանց վերստին առ ափխազս ։

Սերկեւիլ ։ Յիշատակի առ վարդանայ ։ * 'Ի գալ թուր-քին 'ի դուին, և սփռեալ ասպատակս՝ եւ ընդդէմ նոցա քաջն վասակ, և ցուցեալ մեծ քաջութիւնս՝ դառնայ 'ի Սերկևլի, և հանգչելն անդ սակաւ մի քնով, քարիւ հա-րեալ զգլուխն այր մի յանդէտս՝ մեռանի ‖ ։

Սասնոյ ։ Յիշատակի առ եղիշէի Գ. թղթ. 67. Ը ամուր տեղիս աշխարհին Հայոց՝ զորս առին վարդանանք 'ի ձեռաց պարսից ։ * Առնուին զանմատոյց ամուրսն, զզառնի քաղաքն, զանին, ... զվանն աւան, զՍասակա-շատն ‖ ։

Սարաշերտ ։ Գիւղ՝ յիշատակեալ 'ի ղազարայ թղթ. 213. յարևմուտս հիւսիսոյ երասխայ, 'ի նախճաւան, և կամ 'ի սահմանս գողթնայ, 'ի դաշտավայրի ։ * Նաև եկեալք 'ի գիւղն որ անուանի Սարաշերտ, լուան եթէ գունդն պարսից անցին ընդ գետն (երասխ) ամենեքին ։ Նաև քաջ սեպուհն մամիկոնէից վասակ՝ քանզի առաջապահ էր այն օր, գնայր յառաջ 'ի գեօղն որ անուանի Կռուակք, թերևս լինիցի ինչ հնար ... առնուլ զգնդին պարսից զհանգամանս ‖ ։ Նաև զկնի. * Հրաման տայր (վասակ մա-միկոնեան) երկուց երկուց զոյգ, և կամ երից, և կամ ևս յոլովից ընդ այլ և այլ անյայտ տեղիս և ընդ փողոցս ելանել 'ի շինէն (կռուակաց), և զատ 'ի միմեանց փու-թալ հասանել 'ի գեօղն Սարաշերտ. ուր նախարարքն և այրուձի Հայոց էին ‖ ։ Նա 'ի թղթ, 214 ։ * Նաև եկեալ քաջն (վասակ) 'ի գունդն Հայոց՝ պատմեաց նոցա թէ գունդ բազում է, այլ յոլովք 'ի նոսա անպիտանք են ... Նաև լուեալ ... ամբ զօրուն Հայոց՝ խորհուրդ 'ի մէջ ա-ռեալ ասաց, թէ պարտ է զի 'ի Դաշտէն 'ի լեռնակողմն փոխել. խորհելով միաբան զայս ... չուեալք բանակե-ցան 'ի գեօղն մասեաց, որում անուն էր ակոռի ‖ ։

Մարգաստան։ Յիշատակէ Եղիշէ ընդ արքունի ձմերոցս 'ի գլխն վասն ուրացելոյն Վասակայ Գ. Թղթ. 78։ * Աւերեալ զբազում տեղիս Հայոց աշխարհին, մանաւանդ զձմերոցս արքունի որ կայեանք զօրացն էին, զԳառնին, և զԵրամանոս, զԶբօսանակերտն, զԱստուածակերտն մեծ ընդ Մարգաստանաւն, և զամուրսն աւշականն ||։

Մրջնջանէք։ Աւան առ Երասխայ մօտ 'ի Նախջուան։ Յիշատակէն Խորէն. Ա. 29. (1) և Ասող. Բ. 3։

Տամբառ, և Տամբառք։ Տեղիք առ Երասխաւ՝ յիշատակեալք 'ի Խոր. Ա. 29։

Տարեանս։ Աւան՝ զոր հանդերձ ագարակօքն ետ Տիրան Ա. արքայն՝ Դրուասպայ պարսկի։ Խոր. Բ. 59։

Տերունական։ Լեռն ամուր, յիշատակեալ 'ի Կիրակոսէ. զոր առին 'ի պարսից Զաքարիա և Իւանէ. և զկնի յարձակեցան 'ի վերայ նորա մուղալ Թաթարք. Տես զբանս Կիրակոսի՝ զոր եդաք յՅաւելուածս։

Ցոլակերտ։ Աւան 'ի կողմանս լերինն Մասեաց, շինեալ 'ի Ցոլակայ որդւոյ Ամասիայ նահապետին։ Տես առ Խորենացւոյն. Ա. 11։

Փարախոտ։ Աւան 'ի կողմանս Մասեաց լերին, շինեալ ըստ Խոր. Ա. 11. յԱմասիայ նահապետէն, յորում և բնակեցոյց զորդի իւր զՓառոխ, յորոյ անուն կոչեցաւ և աւանն։ Եղիշէ 'ի գլ. Գ. Թղթ. 78. դասէ ընդ արքունի ձմերոցս, զորս աւերեաց ապստամբութիւն ուրացելոյն Վասակ։

Քարահերձ։ Լեռն ամուր՝ զոր առին 'ի պարսից Զաքարէ և Իւանէ եղբարքն, որպէս պատմէ Կիրակոս։

(1) 'Ի Խորէն. ըստ ձեռ" գրի. 'ի Նախճաւան փոխանակ 'ի Վաղրջնջանէք։ Տես զբանս առողջ պարականն։

# ՑԱՆԿ ԳՐՈՑՍ

## ԸՍՏ ԿԱՐԳԻ ԱՅԲՈՒԲԵՆԻՑ

